# ՀՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԱՇԽԱՐՀԻ

ՏՆ. Հ. ՂՈՒԿԱՍ ԱԹՈՌԱԿԱԼ ՎԱՐԴԱՊԵՏԻ
ԻՆՃԻՃԵԱՆ

ՏՊԱԳՐԵԱԼ ՅԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ
ՏՆ. ՍՈՒՔԻԱՍԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՍՈՄԱԼԵԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՍԻՒՆԵԱՑ
ԵՒ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՅԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԻՆ

ԱՐԴԵԱՄԲՔ ԵՒ ԾԱԽԻՒՔ
ԱՍՏՈՒԱԾԱՍԷՐ ԿԱՐՆԵՑԻ ԵՐԱՆՈՒՀԻ ՏԻԿՆՈՋ
ԿՈՂԱԿՑԻ
ՄԱՆՈՒԿ ԱՂԱՅԻ ՄԱՀՏԵՍԻ ԱՍՏՈՒԱԾԱՏՐԵԱՆ

## ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ





Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1835 ՌՄՁԴ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ի հնախօս օրինակագրաց ոմանք յայլ եւ այլ դարս կացեալք եւ զանցելոց ժամանակաց մատենագրեցին, գովելի եւ անստգիւտ նոքա եւեթ կալեալ են 'ի կաճառս իմաստնոց, որ անաչառ քննաբանութեամբ յանձեալ ընդ համօրէն մատեանս հնոց՝ վկայ հաւատարիմ բանից իւրեանց զնոցին պատգամն պատկառելիս առեալ ածեն յանդիման ընթերցանելեացն, զանձ յաճախաբան հմտութեանց պատրաստեալ առաջի քննողական մտաց։ Քանզի եղեն արդարեւ բազումք, եւ 'ի նոցանէ ոչ սակաւք հարուստք 'ի հանճարոյ եւ 'ի հմտութենէ, որք ճառեցին զհնութեանց ազգաց. այլ առաւել բախտի դիւրաբաստ մարդկութեանս, զի յոլովք 'ի նոցանէ կապեալք 'ի սէր ինքնահնար վարկածիցն անյագ երկայնաբանութեամբ մոլորեցան 'ի վրիպակախօս բանից 'ի բանս, մինչեւ բազում անգամ հնախնդիր ուսումնասիրին մնայ փոխանակ առաջնորդ ճշմարտութեան ունելոյ զայնպիսին յանելանելի բաւիղս գտան պարանեալ։

Ոմանք 'ի մեծամեծար օրինակագրաց Եւրոպիոյ այսմ մոլորաշաւիղ հետոց 'ի վերայ հասեալ ստուարակարկատ մատենիւք յօժարեցին լուսաբանել զհեռաւոր ժամանակաց հնութիւնս, երաշխաւոր ճշմարտութեան բանից իւրեանց ոչ այլ ինչ կալեալ, բայց զնախնի մատենագրացն զամբոխս բանից։ Զի զի՞նչ այլ մարթէր ունել առաջնորդ 'ի մուայլ մթութեան անցելոց դարուց բայց 'ի բանից

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ի հնախօս օրինակագրաց ոլք յայլ եւ այլ դարս կացեալք եւ զանցելոց ժամանակաց մատենագրեցին, գոլելք եւ անստգիւտ նոքա եւեթ կալեալ են 'ի կաճառս իմաստնոց, որ անաչառ քննաքանութեամբ յածեալ ընդ համօրէն մատեանս հնոց՝ վկայ հաւատարիմ բանից իւրեանց զնոցին պատգամմն պատկառելիս առեալ ածեն յանդիման ընթերցանելեացն, գանձ յաճախաբան հմտութեանց պատրաստեալ առաջի քննողական մտաց. Վանզի եղեն արդարեւ բազումք, եւ 'ի նոցանէ ոչ սակաւք հարուստք 'ի հանճարոյ եւ 'ի հմտութենէ, որք ճառեցին զհնութեանց ազգաց. այլ աւաղ բախտի գեղասասհ մարդկութեանս, զի յոլովք 'ի նոցանէ կապեալք 'ի սէր ինքնահնար վարկածիցն անյագ երկայնաբանութեամբ մոլորեցան 'ի վրիպակախօս բանից 'ի բանս, մինչեւ բազում անգամ հնախօսնդիրք ուսումնասիրին միտք փոխանակ առաջնորդ ճշմարտութեան ունելոյ զայնպիսիսն յանելանելի բաւիղս գտան պարանեալ.

Ոմանք 'ի մեծամեծար օրինակագրաց Եւրոպիոյ այսմ մոլորաշաւիղ [illegible] 'ի վերայ հասեալ ստուարակարկառ [illegible] նել զհեռաւոր ժամանա- [illegible] ճշմարտութեան բանից [illegible] մատենագրացն [illegible] ել առաջնորդ- [illegible] բաց 'ի բանից [illegible]

73 475 ք.

# ՀՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԱՇԽԱՐՀԻ

ՏՆ. Հ. ՂՈՒԿԱՍ ԱԹՈՌԱԿԱԼ ՎԱՐԴԱՊԵՏԻ
ԻՆՃԻՃԵԱՆ

ՏՊԱԳՐԵԱԼ ՅԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ
ՏՆ. ՍՈՒՔԻԱՍԵԱՆՑ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՍՈՄԱԼԵԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՍԻՒՆԵԱՑ
ԵՒ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՅԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԻՆ

ԱՐԴԵԱՄԲՔ ԵՒ ԾԱԽԻՒՔ
ԱՍՏՈՒԱԾԱՍԷՐ ԿԱՐՆԵՑԻ ԵՐԱՆՈՒՀԻ ՏԻԿՆՈՋ
ԿՈՂԱԿՑԻ
ՄԱՆՈՒԿ ԱՂԱՅԻ ՄԱՀՏԵՍԻ ԱՍՏՈՒԱԾԱՏՐԵԱՆ

## ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ





Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1835 ՌՄՁԴ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ի հնախօս օրինակագրաց որք յայլ եւ այլ դարս կացեալք եւ զանցելոց ժամանակաց մատենագրացն, գովելի եւ անստգիւտ նոքա եւեթ կարեալ են 'ի կաճառս իմաստնոց, որ անաչառ քննաբանութեամբ յածեալ ընդ համօրէն մատեանս հնոց՝ վկայ հաւատարիմ բանից իւրեանց զնոցին պատգամսն պատկառելիս առեալ ածեն յանդիման ընթերցանելեացն, զանձ յաճախաբան հմտութեանց պատրաստեալ առաջի քննողական մտաց: Վ՛անզի եղեն արդարեւ բազումք, եւ 'ի նոցանէ ոչ սակաւք հարուստք 'ի հանճարոյ եւ 'ի հմտութենէ, որք ճառեցին զհնութեանց ազգաց. այլ առաւել բախտի դիւրահաւատ մարդկութեանս, զի յոլովք 'ի նոցանէ կապեալք 'ի սէր ինքնահնար վարկածիցն անյագ երկայնաբանութեամբ մոլորեցան 'ի վրիպակախօս բանից 'ի բանս, մինչեւ բազում անգամ հնախնդիր ուսումնասիրին մնայ փոխանակ առաջնորդ ճշմարտութեան ունելոյ զայնպիսին յանելանելի բաւիղս գտան պարանեալ:

Ոմանք 'ի մեծամեծար օրինակագրաց Եւրոպիոյ այսմ մոլորաշաւիղ հետոց 'ի վերայ հասեալ ստուարակարկառ մատենիւք յօժարեցին լուսաբանել զհեռաւոր ժամանակաց հնութիւնս, երաշխաւոր ճշմարտութեան բանից իւրեանց ոչ այլ ինչ կալեալ, բայց զնախնի մատենագրացն զամբոխս բանից: Զի զի՞նչ այլ մարթէր ունել առաջնորդ 'ի մառայլ մոռացութեան անցելոց դարուց բայց 'ի բանից

տրանցն 'ի դարուն յաջողակ ծաղկելոց, որք անտուպս լեալ էցեն որոց եղեն ուսմնդապահք, կամ գործողք իսկ հրաշակաւոր անցից՝ ընդ ձեռն նոցա ժամանելոց մինչեւ ցհետաւոր զաւակս նոցին ։

Բայց եւ այլ դժուարայաղթ խոչընդակն ելանէ առաջի հնախոյզ ուսումնասիրին դիւրապատիր մոլորութիւն աստուածանգէտ մատենագրացն հեթանոսաց, որք վրիպեալք 'ի Ճշմարտութենէ հնախօս բանից աստուածապատում Ճառիցն՝ մտացածին առասպելօք զամենայն հնախօսութիւնս ազգաց վեր 'ի վայր արարին. եւ նահապետաց աստուածախօս մատենիցն առասպելականս անուանս ինչ կարկատեալ դուն գործեցին մարդացածոյ Ճոխութեամբ ըղհայրենիս իւրաքանչիւր բարեբել կամամտածականս բանիւք ։ Այսու 'ի Ճախարակեալ պաճուճազարդ բանից առաւ եւ 'ի յղկեալ Ճարտարախօսութենէն գեղեալ բազմաց մերոյ ժամանակիս մերձաւոր արանց եւ ոճոյս մերոյ խառնականողաց զհետ չոգան նոցին, մինչեւ իմաստնահնար մեկնութեամբք խեղաթիւրել եւ զբանս սրբագիր մատենիցն, մինչ 'ի Յունաստան պանդխտեցուցեալ զնահապետս որբոց մատենից, միւսոյն յԵգիպտոս նժդեհս փոխս արեալ, այլ ոք 'ի Սպանիա, կամ 'ի Գերմանիա, եւ մինչեւ 'ի Շվետս անդամ յեզերս տարեալ սահմանաց երկրի, եւ զ՚Նոյ յաշխարհ Սինէացւոց տարագիր աքսորեալ ։ Իսկ ազգիս մերոյ եւ մերոց հնութեանցն յիշատակ չիք եւ ոչ ուրեք. եւ եթէ յիշեսցեն եւս, ոչ 'ի պարծանս ինչ մեր, մանաւանդ թէ Ճշմարտութեան, այլ առաւ եւ վեր 'ի վերոյ բանիւք եւ լի վրիպակօք. որպէս եւ զսկզբնաւորութիւն ազգիս համարուն աւելով տարուոյն. զնախաքարբառ լեզուն մեր զլեզու մարդկութեան համօրէն, որպէս գեղեցիկ պատՃառաբանութեամբք հաւանեցուցանէ մատեանս, ծնունդ նորագիւտ եւ աշխատորոյզ լեզուաց խառնաղանձ մարդկան, այլովքն հանդերձ ։

Իսկ այժմ հայրենասէր ազնիւ արգոյ ծերունւոյն մերոյ Տեառն Տ. Պօղոսայ վարդապետի Ինճիճեան վարեալ 'ի նախանձ հայրենի փառաց՝ ուսումնասէր եւ ազգասէր Հայոցս ետ 'ի վայելումն զայս մատեան, զոր խոստացեալն էր կանխաւ 'ի Ստորագրութեան իւրում Հին Հայաստանի։ Որոյ զամս յոլովս յածեալ բազմաշխատ զննութեամբ 'ի խուռն մատեանս հնոց եւ նորոց օրինակագրաց այլ եւ այլ ազգաց, եւ յստակեալ մանր քննութեամբ եւ անձանձիր աննինջիւ որ ինչ պէտք էին յաղագս անթերի գլխաւորե-լոյ Ներածութեանս Հնախօսութեան Հայաստանի, ա-ւարտեաց ըստ ամենայն հանգամանաց 'ի վերջին ամս ծե-րութեան իւրոյ։ Թէպէտ եւ զայս մատեան բազմաքիրտն աշխատութեանց արդասիք՝ բազում ամօք յառաջ երկասի-րեալ էր միանգամ անխոնջ վաստակաւորն, այլ անգութ ժանիք ամենածախ հրդեհին յաճիւն լուծին 'ի Բիւզան-դիոն յամի 1815։ որպէս և զայլ բազում օգտակար եւ բազմաքիրտն մատեանս ծերունւոյս այսորիկ, եւ զայլոց բազմահանճար մատենագրաց հնոց և նորոց յայլ եւ այլ ժամանակս։

Եթող մեզ սա ինքն եւ զանկերպարան եւ զթերակա-տար Հնախօսութիւնս եօթանց աշխարհաց, որք 'ի հնումն եղեն երբեմն ընդ տէրութեամբ Թագաւորացն Հայոց. այն ինքն են Փոքր Հայք, Կիլիկիա, Միջագետք, Եփ-րատացիք, Խաղտիք, Ատրպատական, Աղուանք եւ Ի-բերք, զորս վեր 'ի վայր յիշէ ինքն 'ի մատենիս, զանթերա-ցազն 'ի Հնախօսութիւնս նոցին աւարտեալ։ Այլ աւաղ մեծի ցաւոցս ամենայն Հայկազնի եւ օտարազգի ուսումնա-սիրաց. զի ժամանեալ հրաւէր մահուն և ոչ զտապագրու-թիւն մատենիս կարաց աւարտել բազմավաստակ անձինն, փութացեալ յեթերական խորանսն 'ի վայելս անանց բա-րեաց արիասուր բազմամթեր վաստակոցն իւրոց։

Նորա և այլ մատեանն Մարդապատում, որ այն ինքն

է ստորագրութիւն մարդոյս ըստ բնական կազմուածոյն եւ ըստ բարոյական յօժարութեանցն. այլ եւ զսա չժամանեաց 'ի լրումն ածել, որպէս եւ ոչ իսկ յաջողեցաւ սկիզբն առնել վերլուծութեանց Աշխարհագրութեան Մովսէսի Խորենացւոյն, զոր եւ յիշատակէ ուրեք 'ի մատենիս յայսմիկ.

Այսու սակաւ բանիւք հատուցեալ զհակիրճ ծանօթութիւնս անտի երկասիրութեանց ծերունւոյս, ասասցուք արդ քանի մի համառօտ տեղեկութիւնս զհանգամանաց մատենիս Հնախօսութեան, ընթերցողացն թողեալ անձամբ խելամուտ լինել ամենայն մանր զննութեանց եւ չափոյ անխոնջ երկոցն մատենագրիս.

Ա. Բանզի մատենագրիս կամք այն էին թէ ամենայն ասացեալքն իւր գրոց վկայութեամբ հաստատեսցին, ուրանօր յաղագս աշխարհագրական հնութեանց հայատանի են բանքն, զհայ մատենիցն վկայութիւնս նախամեծար ընտրէ քան զօտարացն իբրեւ զառաւել հմտիցն բնիկ երկրին իւրեանց. Իսկ պատճառք ամենայն ասացուածոցն ածել վկայութիւնս այն իսկ է, որպէս զի նախ պայծառեսցի 'ի նոսա չափ հաւատարմութեան մատենագրաց իւրաքանչիւր թէ յո՛ր կէտ իցեն միաձայն գտանեն այլք ընդ մերսն եւ ո՛ւր տարաձայն, լուսաբանեալ բացայայտ եթէ կայցէ հարկ մեկնութեան 'ի չմիաբան կարծեցեալ բանս նոցին. Երկրորդ զի թէ 'ի բանից անտի նախնեաց ինքն մատենագիրս խմբագիր արարեալ եւ յանձնէ խօսէր, չգիտեմ եթէ առ ամենեսեան համարէ՞ր հաւատարիմ. այլ աստ աչօք տեսեալ զբանս նոցին եւ զլուծումն, ոչ եւս յընթերցողացն ոք բամբասիցէ, եթէ ինքն այլ ազգ լուծումն տայր քան զոր մատենագիրս խելամուտ, եթէ զվկայութիւնսն ընթեռնոյր. Եւ դարձեալ զի ուր բանասէրն առ 'ի զբօսանս եւեթ իղձ լինի յընթերցումն Հնախօս մատենից, զխնամականն ուսումնասէր ստուգութեան լինի 'ի խնդիր 'ի խուռն վկայութեանց անտի. Այս ոչ մա-

տեղագրութեան կալան եւ բազումք յերեւելի հնախօսաց եւ աշխարհագրաց. որպէս Կռօնօվիոս, Կէլլարիոս, Մէուրսիոս, Պօշար, Տիւքանժ, Ռէլանոս, այլովքն հանդերձ.

Բ. Ապա թէ իցեն յօտարազգի մատենագրաց որք տարաձայն իցեն ընդ այլ եւ այլ հանգամանաց յառաջացուածոյն իւրոյ, եւ ոմանք եւս ամենեւին ժխտիցեն զոր ինչքն հաստատութեամբ ասէ, անդ եթէ հայ մատենիցն քան չզօրիցէ համոզել իբրեւ անծանօթից առ օտարս, 'ի սուրբ գրոց առնու զհաւաստիս բանից իւրոց. զոր այլք եթէ այլ ազգ իմացեալ իցեն եւ մեկնեալ, ցուցանէ եւ զանհարազատութիւն նոցին.

Գ. Ապա թէ յաղագս կարեւոր իրաց ոմանց, որք հնախօսութեան հայաստանի իցեն պատկանաւոր, չգուցէ յիշատակութիւն առ հայ եւ յօտարազգի մատենագիրս, անդ զայլ եւ այլ բանս նոցա 'ի մի վայր ածեալ մատենագիրս մեր, եւ ուղիղ կանոնաւ զթուեցեալն ինքեան հետեւութիւն ածէ 'ի մէջ. եւ եթէ այլք այլ ազգ ինչ խօսեցեալ իցեն զայնմանէ, յոր թէ իցէ չափ հաւանականութեան, ոչ զիւրն պնդէ եւ ոչ զնոցուն ժխտէ. այլ զերկոսին եւս իբր միակշիռ վարկածս յընթերցողս անդր առնէ դատաստան.

Դ. Ապա թէ իցեն ինչ 'ի սուրբ գիրս յաղագս երեւելի հնութեանց հայաստան աշխարհիս բաց 'ի բացայայտ վկայութեանց եւ լռելեայն ինչ վկայութիւնք, յայնպիսիս թափէ մատենագիրս մեր զամենայն հանճար իւր հզօր եւ անժխտելի փաստիւք ցուցանել զհաւաստիս առաջացուածոյն: Թէպէտ եւ թուիցի ուրեք եթէ բազում համարձակախօսութեամբ յաջ եւ յահեակ խոտորիցէ զկարծիս բազմահանճար մատենագրաց, սակայն չիցէ արդեօք առ բաղձեալ ընծայել զայն պայման բանից նախանձու հայրենասէր ոգւոյն, եւ կամ ներողամիտ լինել մատենագրաց բազում հմտութեանն քան զնա ընդ որում հակառակա-

խօսէ 'ի բանի անդ։ Եւ վարկածք մատենագրիս միոյ եւ ընաւ հաստատութեամբ ասացեալքն ոչ եթէ առ այնոսիկ որ 'ի լոյս ստուգութեանն չամոքիցին՝ արձանագրեալ իցեն, այլ որոց չիցէ ինչ այնպէս ցանկալի յէիցս զգալեաց քան զգիւտ ճշգրտապատում աւանդից, եւ ոչ այնպէս պարտաւելի քան զծառայ կանխակալ սովորութեանց լինել, պատկառելեացն ասեմ ազանց Եւրոպիոյ։ Սմին իրի աղաչի ուսումնասէրն եւրոպէացի իրաւունս տալ, եթէ այլ ազգ քան զոր գիտէին եւ կարծէին՝ լուիցէ 'ի մատենէս։ Զի որ միանգամ ճշմարտասէր տենչիւ մանր զննիցէ զնշանախեցս անգամ աստուածեղէն տառիցն եթէ զինչ հանգամանք իցեն դրախտին տեղւոյ, ուր այն լեառն զոր յանուանէ կոչեն գիրք յանցս ջրհեղեղին, եւ ուր այն երկիր որ յերկրորդումն տեղի ետ զարշապարաց ապրեցելոցն տապանաւ, անտի ապա դիւրաւ խելամուտ լիցէ եթէ ուրանօր սերեալ բազմացաւ ազգ մարդկան զառաջինն, ո՛ր նախկին բարբառ եւ զինչ հաւատոք թէ անայլայլելի կացեալ իցէ, զիա՛րդ եւ ո՛ւր սկիզբն կալան արուեստք եւ գիտութիւնք կարեւորքն 'ի քաղաքաժողով ընկերութեան մարդկան. զորոց եթէ չմատենագրեաց ոք, կամ ոչ որպէս արժանն էր, սակայն ոչ եթէ ըստ արդի դարուց են կշռելի ամենայն ինչ նախնի դարուց ազգաց իւրաքանչիւր։

Զայսոսիկ կարեւոր ծանօթութիւնս ազգ արարեալ աստէն, մինչ իմաստասիրին դատաստան առնել զինչ նկարագիրք մատենիս իցեն. մի՛ վեր 'ի վերոյ տեսութեամբ անցանել ընդ ընաւ գրեալսն 'ի սմա, եւ մի՛ զի պերճ վայելչաբանութեան չհանդիպեսցի՝ ընդ դոյզն ոք մատենագիրս շարեսցէ եւ զսա. այլ 'ի յընտանի եւ 'ի բնական ոճ մատենագրութեան ստուգութիւն եւեթ խնդրեսցէ, որպէս ինքն մատենագիրս կամէր։ Եւ չյուսամք թէ յընթերցասիրացն ոք ընդ սեամս մատենիս կոխեալ եւ բամբա-

տանէր մտօք յուսմպէսս գրեսցէ եւ զմատեանն եւ զմատենագիրն, իբրեւ զի յանդգաստակին անդ զինքեան ցանկալեան չնշմարիցէ. կամ ստնփոխ մի արարեալ 'ի ներքս եւ գաւեհկաբար 'ի դուրս արշաւիցէ. Թէ ինձ զի՞ փոյթ է եթէ այս նիշ լեռան ուր իցէ, զինչ անցս կրեալ իցէ. կամ ակն այն նիշ գետոյն ուստի ելանիցէ, զիարդ արշաւիցէ, եւ ընդ քանի բերանս 'ի ծով Թափիցի. եւ որ այլ եւս: Մայլ 'ի գիւղնոց եւ 'ի կարեւոր չախորժելեացն տակաւ յառաջ անցեալ, տեսցէ եւ զպերճութիւն վաճառականութեան նախնեաց իւրոց, եւ բերկրեսցի ընդ զարմանալի նաւագնացութեան հանդէսս: Նաեւ զքաղաքսն զայնոսիկ որ յաճիւնացեալ աւերակն նստին այսօր, տեսցէ 'ի սմա Թէ քանի պայծառք էին 'ի նախնումն բնակչօք, բարեկարգութեամբ, խուռն ազգաց երթեւեկութեամբ: Նաեւ Թէ որպէս ազգ մարդկան սերեալ անձեցին ցլին զհայաստան, եւ 'ի դառս դառս ցեղից եւ տոհմից, ջոկատեալ տեղչութիւնս տանուտիրական սահմանեցին. որպիսի օրինօք քաղաքավարեցան, զիարդ կարեւորացն եղեն 'ի խնդիր եւ յաջողեցան որ ինչ 'ի քաղաքաժողով ընկերութեան էին պիտանիք: Որպէս հայաստան աշխարհ արուեստից եւ գիտութեանց իցէ եղեալ խանձարուրք, յորժամ տակաւին աշխարհ ամենայն ամայի նստէր եւ անբնակ 'ի մարդկանէ: Որպիսի ոք Թագաւորքն էին, որոց իմաստուն քաղաքավարութեամբն, իշխանաց եւ խուռն նախարարութեանց պերճ դատաւորութեամբ եւ վայելուչ օրինօք պատկառելի հանդիսացան ընդ արեւելս համօրէն: Զինչ կարգ ճակատու եւ մրցմանց մարտի, եւ որպիսի ինչ զարդք զինուց զինուորականացն դասու. քանի քանի զօրապետք անուանիք, եւ ո՛ր ախտք մոլորութեան 'ի նոսա զի տկարացան 'ի զօրութենէ եւ ստնակոխ եղեն Թշնամեաց: Տեսցէ եւ զխումբս 'ի բնաւ առաքինեացն կարգէ յեկեղեցականաց եւ յաշխարհականաց Թէ

որպիսի ուղղութիւնս գործեցին, քանիպատիկ հրաշալի մեծագործութեամբ եւ աշխարհաշէն կարգօք ցնին զհայաստան ծայր 'ի ծայր, յիշատակ յաւիտենից եղեալ յաշխարհին եւ սքանչելի օրինակ բարեկրաց ամենեցուն։ Այք դարձեալ այնոքիկ էին որք յաւեր ապականութեան դարձուցին զաշխարհն անօրէն գնացիւքն իւրեանց։ Զինչ բարք էին մարդկան 'ի սկզբան, զիարդ այլափոխեցան ժամանակաւ, եւ որ պատճառք նոցա։ Որպիսի՛ սովորութիւնք կրօնից եթէ յաստուածպաշտութեան կարգի եւ եթէ 'ի հեթանոսութեան։

Նայեսցին եւ որ այլ ազգին նման անբաւ հմտութեանց ծանօթ լեալ հայկազն ուսումնասէր, ակն ունիմք եթէ ըստ բարեսէր միտացն պարծանս համարեսցի անձին եւ ազգիս զմատեանս եւ զբարեյիշատակ մատենագիրն։






Ստեղծեալ Նախահայրն ի դրախտին
յառնէ՛ ընդ առաւօտս

# ՀՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԱՇԽԱՐՀԻ

---

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

### ԱՆՈՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

### ՅՕԴՈՒԱԾ Ա

*Անուանք 'ի մերոց մատենագրաց առեալք ։*

### ՀԱՅՔ

ՕԱՅՍ *անուն այսպէս վարէ Մովսէս Խորենացին ա. 11 'ի Մարաբասայ առեալ, դնելով նաև զպատճառն այսպէս անուանելոյն. "Իսկ աշխարհս մեր կոչի յանուն նախնոյն մերոյ Հայկայ՝ Հայք ,,։ Զոր Յովհաննէս կաթողիկոս 'ի նոյն ինքն 'ի Հայկայ եղեալ աւանդէ զայս անուն. "Եւ այնպէս զնա (զՆեբրովթ) սատակեալ, ինքն տիրէ հայրենատուր մեծամեծ աշխարհի իւրոյ, յիւր անուն անուանելով զնա Հայք ,,։ Հայրենատուր մեծամեծ աշխարհ կոչելով հաստատէ զայն կարծիս՝ նախ 'ի նոյն նահապետէ բաժանեալ զաշխարհս իւրաքանչիւր նահապետաց ։ Յայս անուն անուանէ և ինքն Խորենացի ը. 36. ասելով. "Յաւուրս ձմերայնոյ ձմնապարհորդեալ 'ի Հայս քոյր Արտաբու Օղէ ,,։*

### ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀ կամ ԵՐԿԻՐ

*Այս անուն է յոլովակի 'ի կիր առեալ 'ի գիրս մեր. զոր օրինակ առ Ագաթանգեղոսի Թղթ. ժզ. "Տրդատիոս*

'ի տոհմէ Թագաւորին Հայոց աշխարհին ,,: Եւ նոյն Տրդատ 'ի գրեալն առ Նախարարս իւր 'ի Թղթ. ծդ. " Եւ մեք հաւանեք ընդ. մեր Հայոց աշխարհիս շինուեն ,,: Եւ 'ի Թղթ. կա. յամեն վասն Հռիփսիմեանց. " Գային հասանէին յերկրին Հայոց յԱյրարատ գաւառ ,,: Եւ Խորենացւոյն գրեթէ ամենայն ուրեք յայս անուն կոչի , յորս յիշատակելին է զոր ասէ յողբն. " Ողջամ դքեզ Հայոց աշխարհ ,,: Եւ յառեն, Բ. կդ. զԱրտաշէս "Թագաւորեցուցանէ (Սմբատ) 'ի վերայ ամենայն Երկրիս Հայոց ,,: Սոյնպէս է տեսանել և առ Եղիշէի միշտ. Իսկ առ Ղազարայ յաճախագոյն. զոր օրինակ 'ի 201. " Ցուցի անկեալ զնայր յաշխարհն Հայոց. և կեցեալ առաւելապէս պատուովք քան զառաջինն 'ի Հայս ,,: Նոյնգունակ և 'ի զանազան գիրս 'ի գործ ածի այս անուն, որպէս և առ Մատթէի ուռհայեցւոյ՝ 'ի Թիւն խդ. " Գնաց մեծաւ ուրախութ. յաշխարհն Հայոց 'ի մեծ տունն Շիրակայ ,,: Որպէս և 'ի հին վարս Վահանայ գողթնացւոյն :

## ՀԱՅԱՍՏԱՆ կամ ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀ կամ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՐԿԻՐ

Անուն յաճախեալ առ Ագաթանգեղոսի. 'ի Թղթ. Թ. "Այսպատակ սփռէր զկողմամբքն Հայաստան աշխարհին ,,: Եւ 'ի Թղթ. ծը. " Որք միանգամ եկեալ հասեալ յերկիր Հայաստան աշխարհիս ,,: Եւ 'ի Թղթ, յծ. " Եւ երթայր՝ զի և յայլ կողմանս սահմանաց Հայաստան աշխարհին սերմանեսցէ զբանն կենաց ,,: Եւ 'ի Թղթ. յղ. "Առեալ զիւր վիճակն Հայաստան Երկրին ,,: Սոյնպէս և առ Բուզանդայ. " Յիշեցուցինք պատմութեց ազգացն Հայաստան աշխարհին որդւոց Թորգոմայ ,,: Եւ 'ի դպրութ. Գ. գլ. 3. կոչէ Հայաստան աշխարհ: Ի դպրութեան Դ. գլ. 25. ասէ. " Խաղացեալ գայր 'ի վերայ Հայաստան Երկրին ընդդէմ սոցա ,,: Ըստ այսմ և առ Ղազարայ Թղթ. 191 և 229. " Եւ էր այնուհետև լեալ յամ եկեղեցիս Հայաստանեայց աշխարհիս ,,: Եւ առ Ասողկայ և առ Կիրակոսի 'ի գործ ածի Հայաստան աշխարհ :

## ՄԵԾ ՀԱՅՔ

Տե՛ս վասն այսր 'ի գլուխն Բաժանման :

## ՅԱԲԵԹԵԱՆ ՆԱՀԱՆԳ

*Նոյնպէս կոչէ Գրիգոր մագիստրոս 'ի Թուղթն իւր որ առ Սարգիս վարդապետ. «Այդէ հարցմեր ընդ բոլոր Յաբեթեան նահանգին»։*

## ԹՈՐԳՈՄԱԿԱՆ ԱՇԽԱՐՀ

*Նա Բուզանդոյ 'ի պատմութեան Գ. գլ. 13. «Եւ յետ այսր անցեալ ժամից զկնի Թագաւորացն լինելոյ երանելոյն Յուսկան, անաստուածորդք եղեալ իբրև զկայրս մոլորեցան երկիրն լեզուին Թորգոմական աշխարհին»։ Որ և 'ի Ե. 30. կոչի տուն Թորգոմայ. «Ամենայն բնակիչք տանն Թորգոմայ հայ լեզուն առ հասարակ»։ Սոյն նման և առ Ագաթանգեղոսի 'ի Թղթ. յծդ։ «Այս իշխանք ընտիրք... 'ի մէջ հայաստան աշխարհի տանն Թորգոմայ, զորս գումարեաց Թագաւորն»։*

## ԱՐԱՄԵԱՆ ՆԱՀԱՆԳ

*Նա Գրիգորի մագիստրոսի միայն 'ի գործ ածի այս անուն, որ 'ի Թուղթն առ Աքրեհիմ ամիրային գրէ. «Քանզի հզօր ես գրչաւդ և ընթերցողաւդ Արամեան նահանգիս»։ Եւ 'ի պատասխանին Թղթոյ Յոհաննու Սիւնեաց արքեպիսի. «Յաղագս անեզրական և անստանելի տարակուսանաց կործանման բոլոր Արամեան նահանգի»։ Դարձեալ 'ի պմնին առ Սարգիս վարդապետ. «Վասնիշ հայկեանս նահանգի պարտ վարկանիմք. վա՛յ վա՛յ 'ի վերայ հայկեան և Արամեան նահանգի»։ Թողցուք յիշատակել և զայլսն։*

## ՅՕԴՈՒԱԾ Բ

Անուանք յօտարալեզու մատենագրաց տուեալք։

## ԱՌՄԷՆԻԱ

*ԱՆՈՒՆՍ Հայք և Հայոց աշխարհ՝ անլուր է ամենեւին 'ի գիրս նախնեաց օտար ազգաց. այլ փոխանակ այնր՝ այս Առմենիա անուն է հասարակ առ ամ օտար ազգս որով կո-*

չէին զաշխարհ մեր . որպէս գրէ Խորենացին ա. 12. «Արա-
մայ բազում գործք քաջութե . . . յորոյ անուն և ամ(ենայն) ազգք
զաշխարհս մեր անուանեն . որպէս Յոյնք Արմէն և պար-
սիկք և ասորիք՝ Արմէնի»: Զնոյն կրկնէ և 'ի ժդ. ասե-
լով. «Այսպէս հզօր և անուանի եղեալ (Արամայ), յա-
նուն սորա մինչև ցայսօր՝ որպէս ամենեցուն յայտնի է՝ որ
շուրջ զմեօք ազգք զաշխարհս մեր անուանեն»: Սովին բա-
նիւ քաջայայտ երևի սոսուն պատմութիւն հնարեալ 'ի Յու-
նաց [1]. որպէս թէ Արմէնիոս ոմն 'ի Յունաց ընկեր Յա-
սոնի յարգոնաւական նաւաստութե եկեալ 'ի Հայս և շի-
նութի արարեալ, յանուն իւր կոչեաց:

Իսկ զոր Շնորհալին 'ի վէպսն իւր յանուանէ Արա-
մանեակ յորդւոյն Հայկայ ակնարկեալ ասէ զայս ա-
նուն, թուի ինձ չփոթեալ նորա 'ի նմանութե Արամանեակ
տեղւոյն՝ զոր յիշեալ է մեր 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 26. զի
զայն տեղի քանզի Արամ բնա գրելոյ Վաղդամայ Արա-

1 Զայս յառաջ բերէ Ստրաբոն գիրք ժա. Թղթ. 530. ըստ առ. Փարիզու. ասելով. «Որ ինչ առ հնագոյնն ազգին (Հայոց) վերաբերի՝ այսպէս բերէ պատմութիւն. Արմէնիոս ծնեալ յԱրմէնիոս քաղաքէ Թեսաղիոյ . . . ընկերացաւ արշաւանացն Յասոնի յԱրմէնիա ('ի Հայաստան) . 'ի սմանէ ընկալեալ հաստատեն զանունն Արմէնիա՝ Կիւրսիլոս Փարսաղացի, և Մեդիոս Լարիսացի, որք ընդ բանակին Աղեքսանդրու գնացին»: Եւ 'ի 503 գրէ. «Պատմեն Յասոնի ընդ Արմէնիոսի Թեսաղացւոյ 'ի նաւարկութեն որ 'ի Կողքիս՝ յառաջ խաղացեալ մինչև ցծովն Կասպեայց . . . Իսկ զԱրմէնիոսն պատմեն ծնեալ յԱրմէնիոս քաղաքէ . . . և յիւր անուն Արմէնիա ճանաչեալ»: Զայսպիսի Ստրաբոն յառաջ բերէ ոչ յիւրմէ գրելով, և ոչ հաստատելով. այլ ըստ այլոց պատմագրաց երկուց Մա-կեդոնացւոց պատմելով: Բայց ընդ Յուստինոս պատմագրի անկ է զարմանալ, որ առանց քննելոյ իւր վճռաբար բերէ ասելով. գիրք ԽԲ. գլ. 3. «Նաև Արմէնիոսն և ինքն Թեսաղացի՝ մի 'ի թուոյ առաջնորդացն Յասոնի՝ ժողովեալ զցրուեալսն՝ որոց կորուսեալ զՅասոն Թագաւոր Թագաւորեալ չքեղին, կառուցեալ զԱրմէնիա . . . որ է Հայաստան: Այլ չէ հարկ զեկուցիւ 'ի մերժել զայսպիսի կեղծիս Յունաց, քանզի և զմեծամեծս եղծանեն՝ մեծամեծաց ներհակ խօսելով. զի Ստեփաննոս բիւզանդացի յայլմէ Արմէնիոսէ ածանցեալ բերէ զայս անուն ասելով. «Արմէնիա, է աշխարհ մերձ 'ի Պարսս, որ յԱրմէնոսէ հաստատեցաւ ընկալաւ զանունն, որպէս գրէ Անտիոքացւոս յերրորդ գիրս որ յաղագս Հաւգաւ. բնակիչք կոչին Արմէնք ըստ մեկնելոյ Եւդոքսոսի 'ի ա. գիրս որ յաղագս շրջագայից երկրի»: Վասն որոյ և քաջ քննողացն առ Եւրոպացիս ոչ ընդունելի պայտախ. յորս և Բոչարտոս առ բանն Ստրաբոնի որ 'ի Թղթ. 503. ասէ. «Սովորութիւն էին առ Յոյնս զամենայն ազգս կերծել յեւրեալց զիւրացաղաքաց անուանակոչելով»: Եւ Փռանսելէոն 'ի պատմութե սեւ ծովու հա. ա. Թղթ. 59. յետ 'ի մէջ բերելոյ զԾանօթագրեալ բան Ստրաբոնի, 'ի գէպ առնու յիշել զհին առածն համբաւեալ առաւել առասպել պատմութե Յունաց ասելով. «'ի բազմաց ասացի խնոնանք, որչափ ինչ յանդգնի առասպելաւերն յանձնառու 'ի պատմութեն»: Այս է և մերժելի մերոյ Խորենացւոյն ա. 14. որ յետ զնելոյ զպատճառս Արմէնիոս անուանելոյն յանուն մերոյն Արամայ՝ յաւելու. «Իսկ որ այլ (իւր թէ յանուն այլոյ Արամայ) յաճախեաց ասել 'ի յունական կողմանն՝ մեզ ոչ է հաճոյ»:

մանեակ կոչեաց, 'ի նմանութիւն անուանն Համարեցաւ Արամանեակ նահապետին այսպէս կոչեցեալ զաւեղն, և 'ի տեղւոյն Հայորէն աշխարհն : Բայց Յոհաննէս կաթողիկոս, Կիրակոս և Վարդան համաձայն Խորենացւոյն յանուն մերոյն Արամայ այսպէս անուանեալ զնեն և զաշխարհն և զազգն :

Նաև իմն շփոթութիւն գտանի առ մատենագիրս եւրոպացւոց վասն Արմէնիա անուանս . պատճառ այսմ է բան Նիկողայոսի դամասկացւոյ, որ ասէ . " Ի վերոյ Մինիադայ գտանի լեառն մեծ 'ի Հայաստան Բարիս կոչեցեալ, ուր զբազումս զերծեալ համբաւեն 'ի ջրհեղեղէ ,, : Զայս անուն՝ որոյ ուղղականն է Մինիաս՝ Պօշար [1] կասկածի լինել նոյն ընդ Մինեայ գաւառին՝ որ յիշատակի յԵրեմիայի ըստ լա . [2] և այս անուն գուցէ կազմեալ է ասէ յեբրայականն անուանէս Հառ Մինի, այսինքն է Լեառն Մինի . մանաւանդ զի փոխանակ Արարատ անուանս քաղդէական թարգմանութիւն դնէ անունն Արմէնիա . որով ըստ նորա Հառ Մինի էր 'ի սկզբանն անուն լերինն, և 'ի լեռնէն " ապա համօրէն Արմէնիա կոչումն ընկալաւ ,, ասէ : Յաւելու 'ի վերայ և զթարգմանութիւն նախնեաց բանին Ամովսայ Դ. 3. զի ուրանօր եօթանասնիցն՝ յորմէ է և մերն՝ դնէ " Անկանիցիք 'ի լերինն Ռեմմանայ ,, , լա. դնէ 'ի յԱրմոն . Յովնաթանու բացատրութիւն դնէ Յախեռայ տան դրբբնս Արմենիոյ : Սիմմաքոս դնէ յԱրմէնիա . զորմէ գրէ Թէոդորետոս, թէ Սիմմաքոս զանուն Արմոնա թարգմանեաց Արմէնիա : Ակիւղասայն դնէ 'ի լեառն Արմոնա : Թէոդոտիոնին 'ի լեառն Մօնա : Եւ Հերոնիմոս, 'ի տեղւոջ Արմէնիոյ որք կոչին Արմոնա . և զնոյն գրէ . 'ի յԱրմոն լերինս Արմէնիոյ, որք սահմանակից են, ասէ, Մարաց և Պարսից : Այսպէս յայսմանէ 'ի վերայ բերէ Պօշար ասելով, ապա ուրեմն բազումք 'ի թարգմանչաց կարծեցին ածանցեալ յեբրայական անուանէ . նմին իրի և ինքն յաշխարհացոյցն դրախտին թղթ. 9 . վասն Արարատ լերինն դնէ այսպէս . " Ըստ այլոց կոչեցեալ Արմինի, այսինքն լեառն Մինի . և յայսմանէ աշխարհն անուանեալ Արմէնիա ,, [3] : Եւ մեծն այն Նեւտոն յիւրումն ժամանակագրութեան 'ի բանին Երեմիայ՝ զանուանս

1 Աշխարհագրութ. սրբազան. գիրք ա. գլ. 3. թղթ. 20 :

2 Ուր առ մեզ դրի յԵրեմիայ ծա. 22 . " Պատուէր տուք յԵհէն [illegible] թագաւորութեանց և [illegible] զնա զնդքն ,, . առեալ 'ի լա. 'ի մէջ երկոցունց անուանց գտանի անուն Մինեայ :

3 Զայս յիշէ և Նշանեան 'ի մեկն. Երեմիայ ծ. 27 :

Արարատ և Մինի 'ի մի յօդէ, յերկոցունց մի անուն կազմեալ։ Այլ ոչ Պօշար և ոչ Նեւտոն այսպէս իմաստասիրեցին՝ եթէ ունէին 'ի ձեռին աղբիւր ինչ պատմութեան, որ զպատճառ, զծագումն և զժամն Արմենիա անուան մերոյ աշխարհին յայտնի 'ի վեր բերէր, այն է պատմութիւն և աշխարհագրութիւն մերոյ ազգին. այլ քանզի չունելով գրեցին՝ վայրապար ոչ դեգերեսցուք 'ի մերժել զանլուր հիւսուածս զանուանց անծանօթ եղելոց 'ի մէջ իւրեանց, որ հեռի են ամենևին 'ի ճշմարիտ պատմութենէ ։

## ԱՐԱՐԱՏ

Այս է անուն սեփհական 'որ գրոց, զի զայս անուն տան մերում աշխարհի եբրայեցիք 'ի սուրբ գիրս. որպէս 'ի Ծննդ. Ը. 4. գրի. «Եւ հանգեաւ տապանն . . . 'ի վերայ լերանց Արարատայ»։ Այսպէս դնէ և եբրայականն սամարեանն, ուր Թարգմանութեան եօթանասնից՝ յորմէ է և մերն՝ պահեցին զնոյն անունն Արարատ, բայց լատին և ասորի Թարգմանութիւնք 'ի նշանակութիւն հայելով եդին Արմենիա. «Եւ հանգեաւ տապանն . . . 'ի վերայ լերանց Արմենիոյ»։ Նոյն համարելով Արարատ ասել, և նոյն Արմենիա։ Սոյնպէս և յԵսայ. ԼԷ. 38. յեբրայականն և 'ի լատին Թարգմանութեան դնի վասն Ադրամելէքայ և Սարասարայ. «Փախեան յերկիրն Արարատ»։ Իսկ յեօթանասնիցն՝ ուստի է և մերս՝ դնի «Գնացին փախստական 'ի Հայս»։ Սոյնպէս դնի և 'ի Թարգմանութեան արաբացւոց և 'ի քաղդէական բացատրութեան։ Իսկ 'ի պատմեան զնոյն պատմութեան 'ի Դ. Թագ. ԺԹ. 37. յեբրայականն, յարաբացին, յեօթանասնիցն, ոմ և 'ի մերս գրի, «Զերծան յերկիրն Արարատայ»։ Այլ 'ի լա. դնի «Յերկիրն Հայոց»[1]. կամ որպէս նոքա կոչեն Արմենիոյ. որպէս և յարտաքնոց Բերոս քաղդէացի յԱրմենիա դնէ զփախչիլն նոցա, զոր բերէ Յովսեպոս[2]։

Եւ այսպէս 'ի վկայութեանց աստի յայտնի է թէ 'որ գիրք Արարատ կոչեցին զաշխարհս Հայոց. վեր և 'ի Նախնեաց Թէոդորետոս առ բանն Երեմիայ. ԾԱ. 28. յայտնի գրէ

1 Քաղդէական բացատրութիւն որով հեռաւ զԱրարատ լեառն Կորդուաց կոչէ, զորմէ ունիս ուսանել 'ի աստուածաբանութեան լերին Մասեաց, որպէս և ասէ յերկիրն Կորդուաց դնէ. Նոյն ա-նուն է՝ որ աղաւաղեալ 'ի Թարգմանութեան աստուածոց կոչի ասէ ... յեր-կիրն Արարատ։

2 Յովսեպոս 'ի Հնախօսութեան գիրք Ժ. գլ. 1։

թէ “Արարատ կոչի Ադամէնիայն„ որ է Հայաստան։ Եւ Գօշար զայս ամենայն վկայութիւն տեսեալ, գրէ[1]. “Հասարակաց կարծիք այս է՝ թէ Արարատ է Ադամէնիա„ այսինքն Հայաստան։ Եւ ճշմարիտ է այս կարծիք նոցա, բայց յայտնէ վրիպակ՝ զի չունելով զաղբիւր պատմութեան ազգին մերոյ՝ համարեցան զԱրարատ լինել բնիկ անուն լերինն, զոր մեք կոչեմք Մասիս. և յանուն այնր լերին, ասեն, սուրբ գիրք եբրայեցւոց զՀամօրէն Հայաստան կոչեն Արարատ, որ չէ այնպէս։ Այլ Այրարատ գաւառին էր անուն դաշտավայրին, ապա յանուանէ նորին դաշտին կացուցաւ նահանգ լինել. և զի թագաւորանիստ եղև նահանգդ այդ նախ առաջին նահապետաց մերոց և ապա թագաւորաց, նմին իրի յանուն նորին երևելի նահանգին կոչեն ՚ի գիրք զՀամօրէն Հայաստան իբր յանուն գլխաւոր տեղւոյն. զոր օրինակ և յանուն Հռոմայ զտէրութիւն Հռոմայեցւոց։ Վասն որոյ զլեառն տապանին առ մեզ չէ սովորական կոչել յանուն Արարատայ, այլ առ օտար ազգս։

Իսկ թէ ընդէր Արարատ կոչեն ՚ի գիրք զաշխարհս մեր և ոչ յանուն Արամայ, որպէս կոչեն այլ ամենայն օտար ազգք, յայտնի կան պատճառքն, և մեծաւ հմտութեամբ եդեալ է զայն Մովսէս, որում և զհետ գնացին այլ մատենագիրք ՚ի գրոց։ Քանզի գիտէր նա, թէ Արամ զորմէ ինքն գրեաց՝ էր որդի Սեմայ, յորոյ անուն կոչէին եբրայեցիք զազգն Ասորւոց[2], որպէս և նոյն ինքն Մովսէս յանուն Արամայ կոչէ զԱսորիս. զոր օրինակ, ուր ծննդ. իը. 2. 5. գրեալ է ՚ի մերում թարգմանութեան “ի Միջագետս Ասորւոց„, յեբրայականն դնի “ի Միջագետս Արամայ„. գիտէր նաև թէ աշխարհս մեր և ազգ՝ կոչի Արամեան կամ Արմէնիա, ոչ յանուն այնր Արամայ որդւոյ Սեմայ, այլ միւս Արամայ սերելոյ յորդւոցն Յաբեթայ, որոյ սերունդք տարբեր էին յոյժ յԱսորւոցն. նմին իրի առ ՚ի չշփոթել զերկոսին ՚ի մի՝ կոչեաց զաշխարհս մեր Արարատ յանուն գլխաւոր և արքայանիստ նահանգին։

Եւ մատենագիրք մեր անուանս Այրարատ կամ Այրարատեան աշխարհ ՚ի գործ ածեն ոչ վասն համօրէն Հայաստանեաց, այլ վասն բնիկ այրարատեան նահանգին՝ որում

1 Գօշար ՚ի պարսպեան աշխարհագրութեան գիրք ա. գլ. 3. թւղթ. 16։

2 Յովսեպոս ՚ի հնախօսութեան. գիրք ա. գլ. 6. գրէ. “Իսկ ՚ի յԱրամայ (որդւոյ Սեմայ) սերեալք արամեանք. զոր Յոյնք կոչեն Ասորիս„։ Ըստ որոյ և Հոմերոս զԱսորիս կոչեաց Արիմս, ըստ ասելոյ Պոսիդոնիոսի առ Ստրաբոնի։

սեփական է այս անուն ։ Մինչ և առ Բուզանդայ, որ 'ի Յունաց էր ուսեալ, վասն համօրէն հայաստանեաց գաւանեմ 'ի կիր արկեալ յատենն գ. 10. " Ի սահմանս այրարատեան տէրութեան ",: Եւ 'ի գ. 12. " Դարձան անդրէն մեծաւ խնդութեամբ եկեալք առողջութեամբ յաջողեալք հասանէին յարարատեան աշխարհն ",։ Ըստ այսմ և 'ի պատմութեան Մարիբասայ կարծեմ առեալ է փոխանակ համօրէն հայաստանեաց, յորմէ առնու և Խորենացին Ա. 10. գրելով վասն Հայկայ. "Գնաց յերկիրն Արարադայ, որ է 'ի կողմանս հիւսիսոյ ",։ Այլս միոյն երկրէն գրէ. " Հայկ շինէ անդ տուն բնակութեան կալուածոց, և տայ 'ի ժառանգութիւն Կադմեայ ",։ Իսկ ինքն Հայկ, ասէ, մեկնեալ անտի, ընդ արեւմուտս հիւսիսոյ՝ բնակէր 'ի բարձրաւանդակ դաշտի, զդաշտն կոչելով Հարք, և շինեալ գիւղն Հայկաշէն. արդ Հարք և Հայկաշէն են 'ի Տուրուբերան և ոչ յայրարատեան նահանգի, որք չէին հեռի 'ի բնակութենէ Կադմեայ, ըստ որում զԿադմոս փութով հասեալ ցուցանէ առ Հայկ 'ի տալ զլուր գալստեան Բելայ, և Հայկայ յաճապարելն փութանակի հասեալ ցուցանէ յեզր Աղի ծովուն, որ է Բզնունեաց, ոչ այնչափ հեռի 'ի Հարք, ուր և եղև ճակատումն նոցա, և անկումն Բելայ 'ի տեղւոջն Հայոց ձոր, և Գերեզմանք կոչեցեալ, որք են յերուանդունի գաւառ Վասպուրականի, և ոչ յԱրարատ նահանգի։ Զնոյն կրկնէ և 'ի գլ. 11. յորժամ գրէ զԲելայ, թէ "Գայ հասանէ 'ի հիւսիսի յերկիրն Արարադայ մերձ 'ի տունն Կադմեայ ",։ Տունն Կադմեայ է նոյն իսկ վերոյիշեալն, զորմէ գրեաց 'ի նախընթաց գլուխն, որ էր 'ի Հարք։ Արդ քանզի Մարիբաս 'ի հին քաղդէացւոց մատենէն առեալ գրէ, առ նոսա ևս պարտ է ըստ հրէից Արարադ կոչեցեալ համարել զհայաստան աշխարհս. ուր և տեսանեմք խոտոր ինչ, զի յայսմ պատմութեան Խորենացւոյն որ Մարիբասայն է՝ գրի Արարադայ, և ոչ Արարատայ, որպէս գրէ նոյն ինքն Խորենացի անձնայն ուրեք ։

## ՍԿԻՒԹԻԱ ԿՈՎԿԱՍԱԿԱՆ

Վասն հին անուանց հայաստան աշխարհիս առ օտար ազգաց մատենագիրս Յունաց և հռոմայեցւոց՝ է և այլ ինչ 'ի գիտել, զոր անկ համարիմ յուշ առնել աստանօր։ Որպէս գրեցաք՝ անծանօթ էր առ նոսա անունս Հայք, և միայն անուն Արամայ ծանօթ. արդ արժան է խնդ-

րել թէ յառաջ քան զԱրամ որով անուամբ կոչէին Յոյնք և այլ հեռաւոր ազգք զաշխարհ մեր ։ Ինձ թուի կոչել նոցա և պարփակել յայնժամ զաշխարհս Հայաստան ընդ Սկիւթիա և Կովկասեան անուամբք , որք էին անուանք ընդհանուրք ։ Պատճառ այսպէս կարծելոյ է՝ զի առ բազումս 'ի նախնի մատենագրաց Յունաց՝ ուր ուրեք գտանի յիշատակութիւն ինչ զառաջին նահապետաց աշխարհիս՝ որոց տեղիք յայտնի են մեզ լինել 'ի Հայս , զնոցա տեղին դնեն 'ի Սկիւթիա կամ 'ի Կովկասեան լերինս , որպէս ասեն տեսանել յընթացս այսր Ներածութեան , և առաւել 'ի գլուխն Դպրութե ։ Քանզի արդարև նախ քան զԱրամ 'ի լինելն անծանօթ անուանս Հայք և Հայաստան՝ ոչինչ այլ անուամբ կարէին անուանել զաշխարհ մեր . այլ քանզի Սկիւթիա և Կովկասեան անուանք առաւել հին և ընդհանուր անուանք էին առ նոսա . Եւ որում 'ի լինելն բան ինչ ընդհանուր աշխարհագրութե առ Հոմերոսի , առ Երոդոտոսի , և առ այլս , այսորիկ յիշատակին իբրև ընդհանուր անուանք , բազմաց աշխարհաց պարունակօղք , որք և ճըշգրտիւ առաւել թէպէտ արտաքոյ էին մերոյ աշխարհիս , բայց երկոքին ևս սահմանակիցք ։ Նորին աղագաւ երևի թէ նախնիք նոցա յառաջ քան զԱրամ՝ ընդ նոյին անուամբք իմանային և զՀայաստան , յորմէ և ինքեանք թէպէտ էին մատենագիրք յետոյ քան զԱրամ , բայց 'ի ճառելն զհնունց՝ զայս անուանս տային աշխարհի մերում , զոր ինչ 'ի կիր արկեալ էին նախնիք իւրեանց ։

## ՍՕՄԽԷԹ

Յայս անուն կոչեն Վիրք զՀայաստան , որպէս գրեալ է մեր 'ի Նոր Հայաստան 276 . և այս չէ ինչ նոր սովորութի , զի և Վարդան զբազում տեղիս Հայաստանեաց յիշեալ յաւուրս Գուրգենայ եղբօր Ե . Սմբատայ 'ի տասներորդ դարուն , 'ի Վրաց կոչին ասէ Սօմխէթ , յորմէ յայտ է թէ նաև 'ի գիրս նոցա կոչի այնպէս ։

## ՅՕԴՈՒԱԾ Գ

Անուանք զանազան կողմանց հայաստանեայց ’ի ձեռս մատենագրաց տուեալ:

### ՎԵՐԻՆ ՀԱՅՔ

ՄԻԱՅՆ ուրեք առ Վարդանայ յիշատակի այս անուն, յասելն. «Ի չմ̄. մնացեալ եկն ’ի Վերին աշխարհն Հայոց»:

### ՍՏՈՐԻՆ ՀԱՅՔ

Մխային առ Եղիշէի յիշատակեալ, որ ’ի պատմելն զչարութիւն ուրացելոյն Վասակայ, զի քակտէր զամենեսին՝ նաև զՑոյնս ’ի միաբանութենէ վարդանանց՝ ասէ. «Եւ ’ի թշուառութեանց ժամանակին այրն այն սպարապետ էր Ստորին Հայոց, հաւատարիմ զօրացն Հռովմայեցւոց ’ի սահմանին Պարսից» 162: Ուր երեւի յայտնի ’ի Ցուցնաց այսպէս կոչեցեալ մասն ինչ իւրեանց բաժնին. մանաւանդ հարաւակողմանք փոքուն Հայոց:

### ԽՈՐԻՆ ՀԱՅՔ

’Ի թղթին դաշանց յժԸ. այսպէս կոչի կողմն Վաղարշապատու: Սմին նման և առ Խորենացւոյն Բ. 14. «Զմնաս ածեալ զի մի ’ի Խորագոյն Հայս վարիցին»: Առ Մատթէի ուռհայեցւոյ ’ի թւին ՇԾԴ. «Հանդէպ բարկութեան ոչ կարաց մնանել յաշխարհն Աղուանից որ առ Խորին աշխարհն Հայոց». իմա զայն երկիր հայաստանեաց՝ յորս Աղուանք տիրէին՝ և ’ի ժամանակս իւր գուցէ յոմանց այսպէս անուանէին:

### ՎԵՐՆԱԳԱՒԱՌ ՍՏՈՐՆԱԳԱՒԱՌ

Ըստ Բուզանդայ Դ. 23. յասելն վասն ուրացելոյն Մերուժանայ. «Առնուին կոտորէին զա̄մ բնակիչսն Վերնագաւառին Հայոց: Մինչդեռ թագաւորն Արշակ ’ի կողմանսն Ստորին գաւառին յԱնգեղտան էր յուտեստ»: Զոր Թովմա Մեծոփեցի այլով անուամբ կոչէ Վերին կողմանք. յասելն վասն Միրանշահ Չաղաթին որդւոյ Լանկթամու-

րին. Եւ առ զԹաւրէզ. « Եւ արար խաղաղութիւն 'ի վերին կողմանս աշխարհիս Հայոց »:

## ՄԻՋՆԱՇԽԱՐՀ

Ըստ Բուզանդայ Դ. 24. այսպէս անուանի կողմն Այրարատ նահանգին. « Եւ ինքն գայր հասանէր 'ի Միջնաշխարհն Հայոց 'ի գաւառն Այրարատու »: Զսոյն զայս իմանայ և 'ի Դ. 23. յասելն. « զՄիջնաշխարհն քանդեալ բրեալ զօրքն Պարսից ապականէին »: Եւ 'ի Դ. 50. « Միջնաշխարհն ձեռացեալքն յերկուացանն յաղքայէն և ոչ կամէին լսել թագաւորին իւրեանց, ոչ մի ինչ իրս զոր նա կամէր »: Ըստ այսմ յիշատակի և 'ի Ե. 4. և այլուր:

## ՄԻՋՈՑ ԱՇԽԱՐՀԻ

Ըստ նշանակութեան նոյն է ընդ վերնոյն. զի սովորին անուամբ իմանամ զԱյրարատ նահանգ՝ նաև զշրջակայս նորա որք անկանէին 'ի միջին վայրս աշխարհիս Հայոց: Խոր. Ա. 14. « Միխաքանէ և Վաղարշակ զօր բազում յԱտրպատականէ և 'ի Հայոց՝ որ 'ի Միջոցի աշխարհէս »: Դարձեալ անդ՝ ուր բացատրէ լինել Այրարատայ նոյն ընդ ասացելումս. « Հասանէ 'ի Միջոց աշխարհէս վերագոյն քան զակունս մօրին մեծի յայլն Երասխայ մօտ յԱրմաւիրն »: Յաճախեալ է սորայս գործածութիւն առ Եղիշէի. Գր 'ի 128. « Ցանեցի ցրուեցի ընդ ամենայն Միջոցս աշխարհիս »: Եւ 'ի 136. « Եւ զունդն, որ էր 'ի կողմանս Ատրպատականի, ոչ ժամանեաց ձեռն տալ 'ի Միջոց աշխարհէն. և զօրքն որ անդ մնացեալ էին՝ խոյս տուեալ յանօրինէն (Վասակայ) մերժեցան յեզր աշխարհին »: Նոյնպէս 'ի 221. « Եւ այլք ոմանք անդէն 'ի Միջոց աշխարհէն բռնացան 'ի վերայ քաղաքամրացացն »: Ուր ցուցանել կամի զայրարատեան նահանգ և զշրջակայս նորին, զի սուղ ինչ զկնի գրէ. « Եւ յառաջ խաղացին 'ի Միջոց աշխարհէն, մարտ եղեալ կռուէին ընդ մեծ ամուրս Կապոյտ լերինն »: Զի Կապոյտն էր յԱյրարատ: Այլով իմն անուամբ յիշատակի առ Ղազարայ 223. անուանելով Միջոց կողմն աշխարհիս Հայոց:

## ՄԻՋԵՐԿՐԵԱՅ

Սովին անուամբ իմանայ Խորենացին զսահմանս որ ընդ մէջ երկուց ծովուց Պոնտոսի և միջերկրականն ծովու, ուր է և փոքր Հայք, նաև արևմտեայ մասն ինչ մեծին Հայոց, որ էր յայնժամ ընդ տէրութ̃ Յունաց. զոր օրինակ յասելն Բ̃. 15. վն Պոմպէի. «Զօրօք բազմօք եկեալ հասեալ 'ի Մէջ Երկրայս»: Ուր եղև պատերազմի նմա ընդ Միհրդատայ, և առնուլ 'ի նմանէ զՄաժաք, որ է 'ի փոքր Հայս: Զնոյն սահմանն փոքուն Ասիոյ իմանայ Միջերկրեայ անուամբ և 'ի Բ̃. 25. զի ընդ ասելն ասէ Հերովդի Միջերկրեայ, զունդ յարոյց 'ի գաղատացւոց և 'ի պոնտացւոց որք են 'ի փոքրն Ասիա: Նոյն այսմ են և գրեալքն 'ի Գ̃. 5. 12. 19:

## ՄԻՋԱԳԵՏՔ

Քանզի Եփրատ և Տիգրիս գետք ըստ վերին մասին ընդ հայաստան ընթանան, այն մասն մեծին Հայոց, որ անկանի 'ի մէջ երկուց գետոցս, Միջագետք կոչի ուրեք ուրեք առ մատենագիրս: Պլինիոս Զ. 9. յայտնի նշանակէ զայս յասելն վասն մեծին Հայոց. «Զերկոսին ևս (գետս զԵփրատ և զՏիգրիս) ինքն (մեծ Հայք) բովանդակէ, և զսկիզբն Միջագետաց գործէ, որ է 'ի մէջ երկուց գետոցս»: Այս մասունք կամ սահմանք մեծին Հայոց Միջագետք կոչեցեալ՝ են նահանգքն չորրորդ Հայք և Աղձնիք, որք են այլ յաշխարհէ անտի՝ որ տերապէս սեփական անուամբ Միջագետք կոչի: Սովին անուամբ զԱմիդ, կամ որ նոյն է Տիգրանակերտ, զքաղաքն Աղձնեաց մերոյ նահանգին, Կիրակոս և նախնիք ոմանք 'ի Յունաց և 'ի հռոմայեցւոց դնեն 'ի Միջագետս. զորմէ տեսցես 'ի մեծ Հայս 77. 78:

## ԴՐՈՒՑ ԱՇԽԱՐՀ

Այսպէս կոչի առ յետագայ մատենագիրս մեր յաւուրս վերջին Թագաւորաց Բագրատունեաց այն սահման մեծին Հայոց, որ մնացեալ կայր 'ի ձեռս Հայոց արտաքոյ Շիրակ գաւառին. զի Շիրակ գաւառ, ուր էր Անի քաղաք, էր բնիկ Թագաւորանիստ սահման Հայոց. արտաքոյ այսր մնացեալքն՝ կոչին առ սոսա Դրուց աշխարհ. իբր ըստ աշխարհիկ բարբառոյ Դրսի աշխարհ. որպէս և յայտ առնէ

ուռՀայեցին Մատթէոս 'ի Թիւն լէ․ Թէ յորժամ Աշոտ եղբայր Յոհաննու Թագաւորին բռնանայր տիրել, Նախարարըքն և կաթողիկոսն առ 'ի միա խաղաղել՝ զՅոհաննէս նստուցին Թագաւոր յԱնի քաղաք իւրով գաւառաւն, իսկ զԱշոտ նստուցին Դրսոյ աշխարհին Թագաւոր ամենայն փանն Հայոց․ կամելով ասել, ամենայն երկրին Հայոց բաց 'ի Շիրակայ՝ ուր էր Անի, որչափ ինչ մնացեալ կայր յայնժամ 'ի ձեռս Հայոց, որ էր փոքր ինչ։ Քանզի պարտ է 'ի բաց առնուլ և զՎասպուրական և զՎանանդ, յորս տիրէին այլ Թագաւորք Հայոց՝ որք յայնժամ բազմացեալ էին․ պարտ է 'ի բաց առնուլ և զայն գաւառս Հայոց՝ յորս յայնժամ տիրէին Վիրք, Աղուանք, և զանազան ամիրայք Տաճկաց, ընդ որովք էր և Դուին։ Այս է ասելն ընդարձակողին Սամուէլի 'ի ՆԿ․ Թուին․ "Աշոտ եղբայրն նորա (Յոհաննու) Դրսոյ աշխարհին Թագաւորեաց„։ Զորմէ տես և 'ի մեծ Հայս 'ի Թղթահամարսն 518։ Սովին առամամբ, բայց վասն այլոց աշխարհաց, նոյն ընդարձակող Սամուէլի 'ի պծԶ․ Թուին գրէ և վասն Լանկթամուրայ․ "Թիւ ժամանակաց նորա՝ որ տիրեաց Դրսոյ աշխարհին ամս ութ և տասն„։ Այսինքն է աշխարհիս, զորմէ խօսի ինքն անդէն, որ արտաքոյ էին Հայաստանեաց․ զի 'ի Թիւն պլԵ․ գրեալ էր Թէ Լանկթամուրն ելեալ 'ի Սըմըրղանդայ գնայր աւերելով զաշխարհս մինչ 'ի ծովն Ովկիանոս կամ միջերկրական։ Այս այսուքիկ էին, զորս կոչէ անդէն Դրսոյ աշխարհ։

## ՀՈՌՈՄՈՑ ԱՇԽԱՐՀ կամ ԵՐԿԻՐ

Յորժամ Սուլտանք Իկոնիոյ (Ղօնեայու) օր ըստ օրէ զըբանալով զզանազան տեղիս գրաւէին 'ի ձեռաց Հոռոմոց կամ Յունաց, զայն ամենայն երկիրս կոչէին Արզըռում, որ նշանակէ Երկիր Հոռոմոց․ յորս գլխաւոր տեղիքն էին փոքր Հայք, և արևմտեան մասն մեծին Հայոց, որք յառաջին էին ընդ տէրութ Հոռոմոց․ ընդ որս և Կարնոյ քաղաք, որ լեալ մայր քաղաք այնր սահմանին՝ տիրապէս այն կոչեցաւ 'ի նոցանէ Արզըռում․ այսինքն Երկիր Հոռոմոց․ որ և մնաց այն անուն մինչև ցայսօր։ Զնոյն անուն և մեր վերջին մատենագիրք 'ի կիր արկեալ, որպէս զՍուլտանն կոչեցին Սուլտան Հոռոմոց, նոյնպէս և զերկիրն Երկիր կամ աշխարհ Հոռոմոց․ որպէս յասելն ընդարձակողին Սամուէլի 'ի Թուին ոկԵ․ վասն Լևոնի Թագաւորին․ "Յաշխարհն

Հոռոմոց արշաւեաց, և սաստիկ աւերեաց զաշխարհն Սուլտանին ,,: Զոր նախ աշխարհ Հոռոմոց կոչեաց՝ զնոյն աստ կոչէ աշխարհ ոչ Թագաւորին Հոռոմոց կամ Յունաց, այլ Սուլտանին՝ որ էր Իկոնիոյ. յոր՝ որպէս ասացաք՝ անկանի և փոքր Հայք, նաև մասն ինչ մեծին Հայոց, որպէս յայտ առնէ այս բան Վարդանայ. «'Ի ողա. Թուին Հայոց Բաչու Նուինն . . . էառ զԿարնոյ քաղաք . . . և 'ի ողբ. Թուին զամենայն աշխարհն Հոռոմոց կոչեցեալ, և զանուանի քաղաքսն զԿեսարիա նախ, ապա զՍեբաստ . . . ապա զԵզնկա ,,: Որք են առ հասարակ տեղիք փոքուն և մեծին Հայոց: Սոյնպէս և առ Մատթէի. 'Ի Թւին ծզ. կողմն Սեբաստիոյ կոչի աշխարհ Հոռոմոց: Զկնի ամիրայք պարսիկք կամ Թուրքք տիրեցին այսմ Հոռոմոց աշխարհին, յորոց զմին ընկէց հայկազն դնէ լեալ Մատթէոս 'ի Թւին մԹ. «Յայսմ ամի (շծզ) մեռաւ Դանիշմանն մեծ ամիրայն Հոռոմոց աշխարհին, որ լեալ յազգէն Հայոց, այր քաջ և շինող աշխարհի, և էր յոյժ ողորմած 'ի վերայ հաւատացելոց Քնի ,,: Երբեմն զայս երկիր սոսկ Հոռոմք կոչեն. զոր օրինակ Վարդան 'ի ոհզ. Թուին գրէ. «Եւ առեալ զնա (զԽլաթ), և հարստացեալ երթայ 'ի Հոռոմս, 'ի վերայ Ալադին (Ալայէտտին) Սուլտանին և Մելիք Աշրաֆին ,,: Եւ ընդարձակօղ Սամուէլի 'ի Թուին ողէ. զնախագրեալ բան Վարդանայ պատմելով ասէ. «Եկն Թաթարն 'ի Հոռոմս, որոյ զօրավարն էր Բաչօ Նուինն, և խանգարեաց զԽիաթադին Սուլտանն, և էառ զբոլոր Հոռոմս և տիրեաց ,,: Եւ 'ի շղզ. յասեն զԹորոսէ. «զՍուլտանին երկիրն զՀոռոմս աւերեաց ,,. որ էր Խլիճ Ասլան Սուլտանն Իկոնիոյ: Եւ 'ի ոկե. կոչէ «Սուլտան Քաղաքացն Հոռոմոց ,,. այսինքն Հոռոմոց երկրին. զի էր Քէյքաւուզ Սուլտանն Իկոնիոյ կամ Ղոնեայու: Սոյնպէս կոչի և առ Մատթէի 'ի Թւին ճժդ. Թէպէտ և յարակցեալ դնելով զանուանս աշխարհի. «Եւ դարձաւ 'ի Հոռոմս աշխարհն ,,:

## ԱՐԵՒԵԼՔ կամ ԱՐԵՒԵԼԻՑ ԱՇԽԱՐՀ

Վասնզի յերկոտասաներորդ դարու և 'ի հետևեալս՝ յաւուրս Ռուբինեանց Թագաւորաց՝ բազմութիւն Հայոց գտանէին սփռեալ 'ի Կիլիկիա, 'ի փոքր Հայս, և յաշխարհին Եփրատացւոց, սոքա զբուն աշխարհն մեծին Հայոց կոչէին Արևելք. ուստի և նոքա զվերոգրեալս կոչէին Կողմն Արևմտից. զորս զերկոսին ևս յուշ առնէ Շնորհալին 'ի սկզբան ընդհանրական Թղթոյ ասելով. «Որք յԱրևելս 'ի

սեպհական աշխարհին հայաստանեայց ընակեալք, և որք յա-
րևմտեան կողմանս սահեալք նժդեհութք „: Յայտնանէ ու-
րեք ուրեք 'ի գիրս զանուանս Արևելք անուանեալք իբր ընդհ
անուան լեալ Մեծին Հայոց. զոր օրինակ 'ի պատմութեան
միաբանական Թղթոց Շնորհալւոյն յասեն. “ Զայսոսիկ
զնամակս (Միքայէլ պատրիարգին Յունաց) համագումար
հայաստանեայց եպիսկոպոսք և վարդապետք՝ որ են 'ի
Միջագետս և յամենայն լեառնս Տորոսի՝ ընթերցեալ սըր-
բոյ կաթուղիկոսին՝ անպատշաճ վարկան առանց Արևելե-
կան (Մեծին Հայոց) եպիսկոպոսացն կատարելապէս գրել
պատասխանի „: Իսկ 'ի պատասխանին որ առ նոյն Թուղթ՝
յայտնի բացատրէ Շնորհալին՝ թէ զինչ իմանայ Արևելե-
կան անուամբ, ասելով. “ Որպէս զի 'ի համադրեալ լինել
ժողովոյն մերոյ՝ որ 'ի Մեծ Հայս „: 'Ի Թուղթն խոստա-
վանութե հաւատոյ գրէ նոյնպէս. “ Յառաջ ժամանակաւ
յաշխարհն Արևելից սովորութի ունէին իշխանքն Հայոց „:
Փոխանակ ասելոյ յաշխարհն Մեծին Հայոց: Դարձեալ
անդ. “ Որպէս և այժմ գտանեմք յԱրևելս ('ի Հայաստան)
յունարէն գրով „: Զոր աստ Արևելք կոչէ՝ այլուր 'ի
Թղթի դաւանութե գրեալ առ Մանուէլ կայսր յայտնապէս
գրէ. Մեծն Հայք: Ըստ այսմ են և հետևեալքս. “ Թուղթ
առ 'ի Ներսիսէ եպիսկոպոսէ յեղբօրէ տեառն Գրիգորիսի
կաթողիկոսի Հայոց՝ պատասխանի Թղթոյն Գէորգեայ
Արևելեան եպիսկոպոսի առաջնորդի սրբոյ ուխտին Հաղ-
բատայ „: Եւ “ Նորին տեառն Ներսէսի սուրբ կաթողիկո-
սի . . . գիր շրջաբերական առաքեալ 'ի կողմանս Արևելից
'ի Կարս „: Իսկ 'ի բնագրի Թղթոյն ասէ. “ Որպէս լսեմք
զամենայն եպիսկոպոսաց Արևելից „: Սոյնպէս և առ Կիրա-
կոսի. “ Յաւուրս ժամանակաց Թագաւորութե Հայոց
Լևոնի արքայի՝ էին յԱրևելս ('ի Հայաստան) երկու եղ-
բարք „: Եւ թէ “ Գրեաց Թուղթ մի յԱրևելս այսպէս „:
Եւ այլուր ասէ. “ Եւ այսպէս շփոթումն ունէր եկեղեցիս
Արևելից „: Փոխանակ ասելոյ Մեծին Հայոց: Ուրեք ու-
րեք բացատրելով դնէ. “ Վասն իշխանացն որ յԱրևելս
հայաստանեայց „: Իսկ ուրեք ուրեք զանուանս կողմն յա-
րակցեալ ունելով. “ Իսկ Հայոցն ժողով (որ 'ի Սիս) գրե-
ցին 'ի կողմանս Արևելից 'ի մէջ Մեծ Հայոց „: Եւ թէ “ Մե-
ծապատիւ աթաբեկն և Շահնշահ Արևելեան կողմանց Զա-
քարիա „: Եւ փոխադարձ այսմ Արևմտեան կողմն կոչէ
զԿիլիկիա. յասեն “ Վասն Թագաւորութե Լևոնի որ 'ի
կողմանս Արևմտից „:

## ՅՕԴՈՒԱԾ Դ

Աշխարհք զանազան ժողովրդոց հայաստանեայց յանուն օտար ազգաց, անուանեալք 'ի մերոց և յարտաքին մատենագրաց։

### ՅԱՆՈՒՆ ՎՐԱՑ

ՅԻՈՂՆԱԼ զառաջին ժամանակաց պատմութիւն՝ յորս հիւսիսային կողմն աշխարհիս մերոյ, մանաւանդ նահանգն Գուգարք, ուրեք ուրեք յանուն Վրաց կոչի, որովհետև յաւուրց անտի Խորենացւոյն Վիրք ունէին զայն. վասն որոյ և նոյն ինքն Խորենացի յաշխարհագրութեան զոր ինչ գաւառս դնէ 'ի Գուգարս՝ փոխանակ դասէ և 'ի կարգս գաւառաց Վրաց, բայց 'ի պատմութիւնս վերջին ժամանակաց սկսեալ 'ի տասն և 'ի մետասաներորդ դարու, բազում ուրեք Վիրք անուամբ պատմագիրք մեր իմանան զհիւսիսային կողմն աշխարհիս, և յաւէտ զԳուգարս, որպէս ունիս ուսանել յընթերցանութեան մատենիս զանուն նոցա բազում ուրեք 'ի ներածութեան մերում և 'ի Մեծ Հայս։ Որպէս և յայս բան Ասողկայ գ. 45. մասն ինչ Գուգարաց կոչի յանուն Վրաց. յասելն վասն Գագկայ արքայի որ 'ի տասներորդ դարու. « Գնաց զօրօք 'ի Տաշիր (որ է 'ի Գուգարս), շրջանս առեալ ընդ Ղամշուղէ, և ընդ Վրաց դաշտ, քանդեալ աւերեաց զամենայն »։ Ըստ այսմ գտանեմք և առ Մաթէի, որ 'ի թուին Ճժզ. գրէ թէ յամին շժզ. « Յարուցեալ Սուլտանն (Ալփասլան) ահագին բազմութեամբ, մտաւ յաշխարհն Վրաց . . . և իջեալ բանակեցաւ 'ի գաւառն, որ կոչի Ջաւախս, և պատերազմաւ մեծաւ պատեաց զքաղաքն, որ կոչի Ախալ »։ Բայց Ջաւախք էր գաւառ Գուգարաց։

### ՅԱՆՈՒՆ ԱՂՈՒԱՆԻՑ

Բազում ուրեք 'ի գիրս աշխարհ Աղուանից կոչին Ուտի նահանգ յաւուրց անտի Խորենացւոյն, և Արցախ նահանգ զկնի տասներորդ դարուն. վասն որոյ զԱմարաս գիւղ և զՀաբանդ նորին գաւառ յաշխարհին Աղուանից դնեն Ճառընտիրն 'ի վարս Գրիգորիսի. և Ստեփաննոս օրպէլեան. տես 'ի Մեծ Հայս 311։ Նոյնպէս և Փայտակարան

կոչի աշխարհն Աղուանից, զորմէ տես 'ի մեծ Հայս 317։ Եւ գիւղն որ է 'ի Տաշիր գաւառ Գուգարաց նահանգին՝ Մատթէոս դնէ յԱղուան գաւառի։ Զայլ բազում վկայութիւնս վասն այսոցիկ բազմաւորութք ունիս տեսանել 'ի գիրս պատմագրաց յայս գիրս մեր, մանաւանդ 'ի գլուխս Պատմութե̄ եւ կառավարութե̄։

## ՅԱՆՈՒՆ ԱՍՈՐՒՈՑ ԵՒ ԼԵՒԿՈՍՒՐԱՑ

Խորենացի Գ. 44. գրէ վասն վանանդացւոց ելուզակաց՝ թէ հալածեալ 'ի Սահակայ ասպետէ՝ անկանի 'ի կողմանս չորրորդ Հայոց, եւ անդ « զաւազակս ամանս՝ որ 'ի կողմանս չորրորդ Հայոց էին 'ի սահմանս Ասորւոց՝ զինեցին ապստամբ առնել »։ Այսինքն զինեցին ապստամբ առնել ինքեանց զաւազակս ամանս՝ որ էին 'ի կողմանս չորրորդ Հայոց 'ի սահմանս Ասորւոց։ Արդ՝ որպէս յայս բանս՝ նոյնպէս եւ յայլ բանս ինչ մերոց մատենագրաց՝ հարաւային կողմանք չորրորդ Հայոց հանդերձ շրջակայիւք՝ եւ մանաւանդ փոքուն Հայոց՝ ուրեք ուրեք յանուն Ասորւոց կոչեցեալ երեւին։ Ըստ այսմ առ Դիոդորոսի Ասորւոց մատենագրի՝ որ 'ի գիրս Ասսեմանեայ, յայսմի գաւառ Ասորւոց կոչին այն քաղաքք՝ որք են յԱղձնիս եւ 'ի չորրորդ Հայս. զորոյ զբանս տեսցես 'ի գլուխն Արզնեաց, 'ի լեռան Արիա։

Իսկ նախնի մատենագիրք Յունաց եւ հռոմայեցւոց ըզտեղիս ինչ՝ որք մեզ յայտնի են լինել յաշխարհիս Հայոց՝ նոքա յանուն Ասորւոց յիշեն. զոր օրինակ Պոմպոնիոս Մելա գիրք Ա. գլ. 11. զՍոփենէ որ է Ծոփք՝ 'ի կարգս գաւառաց Ասորւոց դնէ եւ ոչ Հայոց, ընդդէմ այլոց օտարազգի մատենագրաց. որպէս եւ Պլինիոս գիրք Ե. գլ. 12. նաեւ Զ. 13. յԱսորիս դնէ. եւ չեն ինչ զարմանք, զի եւ նա ինքն Մելա զԱտրպատենէ եւ զԲաբիլոն՝ որք յԱսորեստան էին, դնէ յԱսորիս. որպէս եւ Կիկերոն զՔաղդէացիս դնէ յԱսորիս՝ փոխանակ դնելոյ յԱսորեստան։ Սմին իրի եւ բազում ուրեք զբազում բերս եւ զայլ ինչ յանուն Ասորւոց կարծեմ յիշատակեալ սոցա եւ այլոց մատենագրաց՝ որք էին բերք սեփականք աշխարհիս մերում. զոր օրինակ Պլինիոս ԺԶ. 17, եւ 25. զբերս ինչ որ յԱմանոս լերին՝ դնէ յԱսորիս. այլ Ամանոս լեառն էր 'ի Կիլիկիա եւ 'ի փոքր Հայս, ձգեալ մինչեւ 'ի Մելիտինէ քաղաք իւր։ Եւ այս չեն ինչ զարմանք, մանաւանդ զի յայտնի գիտեմք արդէն զմեծ

մասն փոքուն Հայոց կոչեցեալ առ նոսա յանուն Ասորեստանեայց, որ է Մոփրոնք Ասորւոց, զորմէ ասելոյ ուսանիլ 'ի նկարագրութեան փոքուն Հայոց։ Որպէս և կապադովկացիք իսկ, որ մասն է փոքուն Հայոց, յանուն Ասորւոց կոչեցան 'ի Յունաց. "Կապադովկացիք, ասէ Երոդոտոս (գիրք ա. գլ. 72) 'ի Յունաց կոչին Ասորիք. և այս Ասորիք էին ընդ տէրութ Մարաց յառաջ քան զտիրելն Պարսից, զի յախճամ Կիւրոսի հնազանդեցին ,,։ Նոյն իւրքն Երոդոտոս 'ի Ե. գրքին գլ. 49. ասէ. "Փռիւգացւոց առ եւրի կան կապադովկացիք, զորս մեք Ասորիս կոչեմք ,,։ Եւ գիրք Է. գլ. 72. 'ի Պարսից ևս այսպէս կոչեցեալ ասանդէ. "Եւ այս Ասորիք 'ի Պարսից կոչին կապադովկացիք ,,։ Այս իսկ յայտնի է առ հմուտ աշխարհագրիս. վասն որոյ գրէ և Մաղթնիէ 'ի բառն Էռէն. "Պարտ է որոշել 'ի մէջ տիրապէս ասեալ Ասորւոց, որ ձգի միայն 'ի մէջ Եփրատայ և Անտի Լիբանանու և 'ի շրջակայս. և 'ի մէջ Ասորւոց՝ որ բառ ընդարձակ նշանակութեան տարածէր 'ի հնումն զԿապադովկիա, զՄիջագետս, թող և զհամօրէն սահման աշխարհին տարածեալ 'ի մէջ հայաստանեաց, միջերկրական ծովու, Եդոմայ, Արաբիոյ, և Եփրատայ ,,։

## ՅԱՆՈՒՆ ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՑ

Խորենացին 'ը. 53. գրէ. "Սմբատայ տեղի տուեալ գընաց զկողմանմբք Ասորեստանի . . . հրամանաւ Արտաշիսի բնակէ 'ի Տմորիս, որ այժմ կոչի Կորդրիք . . . քանզի էր 'ի ծերութեան կնն արարեալ յԱսորեստանեաց հուպ յայն կողմանս . . . վասն որոյ և զնորին կողմանմբք բնակեցաւ ,,։ Ուր Տմորիս կամ Կորդրիք գաւառ Կորճէից նահանգին՝ կոչի կողմանք Ասորեստանեաց։ Իսկ յօտարազգի մատենագրաց կինամոմոն կամ ըստ նոցա ամոմոն բերք Տմորեաց կամ Կորդրեաց՝ կոչի յանուն Ասորեստանեաց. զոր օրինակ կոչեն Վիրգիլիոս, Ստատիոս, և Սիլիոս։ Իսկ ոմանք կոչեն յանուն Հայաստանեաց. զոր օրինակ Դիոսկորիտ, Պլինիոս, Աւիկեննա և այլք. զորս մեկնել կամելով Պօշար ա. 19. ասէ. "Կորդուք այնպէս միջանկեալ է ընդ մէջ ասորեստանեաց և հայաստանեաց, մինչև երբեմն սմա և երբեմն նմա ընծայեն ,,։ Այլ պարտ էր գրել. Կորդուք է գաւառ Հայոց, զոր երբեմն ընծայեն ասորեստանեաց. զի Կորդուք չէ այլ աշխարհ 'ի Հայոց, որպէս յայտ է 'ի բանից իւրոց։ Եւ ոչ միայն այս՝ այլ նաև Աղձնեաց նահանգ՝ առաւել ևս բացայայտ 'ի

գիրս մեր կոչի հողն Ասորեստանեայց, զորմէ տե՛ս 'ի մեծ Հայս 'ի Թղթահամարն 62 ։ Այլ կատարեալ անտեղեկութիւն նախնի մատենագրաց մանաւանդ օտար ազգաց՝ պատճառ է և զայս գիտել, զի 'ի ժամանակի առաւելագոյն ընդարձակութեան ասորեստանեայց տէրութեան բազում աշխարհք 'ի նմա բովանդակէին, կամ անմիջապէս և կամ իբր հարկատուք. 'ի ճառելն յայնժամ զնոցանէ՝ Ասորեստան կոչէին նաև զայն աշխարհս, որք ոչ էին բնիկ ասորեստան, այլ ուրոյն աշխարհք՝ բայց ընդ հզօր տէրութեամբ ասորեստանեայց. որպէս են Մարք, Պարսիկք, Քաղդեայք, Միջագետք, Հայաստան, Ասորիք, Արաբիա. Թող և զայլս [1] ։

## ՅԱՆՈՒՆ ՄԱՐԱՑ

Տէրութիւն Մարաց երբեմն ընդարձակ ձգեալ ծաւալէր. Հերոդոտոս [2] գրէ թէ կապադովկացիք 'ի Յունաց կոչէին Ասորիք. "Եւ այս Ասորիք (ասէ) ընդ տէրութեամբ Մարաց էին նախ քան զիշխելն Պարսից, որք յայնժամ Կիւրոսի հնազանդէին. քանզի զտէրութիւն Մարաց և լիւդացւոց բաժանէր գետն Ալիս„ ։ Տե՛ս ահա զանուանն Մարաց ձգեալ մինչև ցԿապադովկիա, որ է ասել մինչև ցփոքր Հայս և մինչև ցԱլիս գետ ։ Կալմէտ 'ի մեկն. Ծննդ. Ժ. 11. զբան Հերոդոտեայ Դ. 40. ուր յիշէ զՍապիրս, զԿողքիս և զՄարս, անդ իմանայ թէ ըստ Հերոդոտեայ Սապիր ժողովուրդք, որ ըստ մեզ է Սպեր, բաժանեն զԿողքիս 'ի Մարաց ։ Եւ սոյնն պատճառաւ 'ի գիրս օտարազգի մատենագրաց բազում ուրեք է տեսանել Մարս կոչեցեալ աշխարհս մեր, մանաւանդ հարաւային կողմանք նր. զի առ Դիոդորի սիկիլիացւոյ [3] ուր խօսի զշինուէ Եկբատանայ որ է Վան, հարաւային կողմն Հայաստանեաց գրեթէ յայտնի երևի յորջորջեալ յանուն Մարաց, զորմէ տե՛ս 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 182 ։ Իսկ առ Պտղոմեայ և առ Ստեփաննոսի բիւզանդացւոյ նաև զԿարդուք որ է Կորդուք

1 Թէ նախնի մատենագիրք օտար ազգաց զիարդ այլ և այլ առնեն ի մանաւանդ զանուն Ասորեստան, կարես 'ի միտ առնուլ և 'ի տարագրութենէ Սեբեոսեայ, որ զասորեստան առաքագրէ 'ի մէջ Խաղտեաց՝ որք են Խաղտիք, և 'ի մէջ Պափլագոնացւոց, և անդ յասորեստան գնէ զԹերմոդոն գետ, զոր խորհրդոյ ընդ այլս գնէ 'ի Պոնտոս Պոլեմոնեան. անդ յասորեստան գնէ զԹեմիսկիւրիա քաղաք, զԱլիս գետ, զՍինոպ քաղաքն (որ կայ առ Պոնտոս ծովու), զԱմիսոս քաղաք իւրով նաւահանգստիւ ։ Տե՛ս 'ի Ա. Հատոր փոքունց աշխարհագրաց 'ի Թղթ. 33 ։

2 Հերոդոտոս գիրք Ա. գլ. 72 ։

3 Դիոդորոս սիկիլիացի գիրք Բ ։

և կորճէք նահանգ՝ գաւառներն յանուն Մասեաց կոչեցեալ[1]։ Եւ չէին նոյն գաւառներ. զի որպէս գրէ Դիոդորոս[2] վասն Մասեաց. «Բազում անուամբք կոչին»։ Բայց առաւելապէս ըստ Փայտակարան դնեն 'ի Մասիս, զորս Պտղոմէոս կոչէ Փաւտէնէրան, զոր գուցէ Փաւտէնէրանս պարտ է ընթեռնուլ, ասէ Կելլարիոս[3]. և Ամմիանոս[4] 'ի շրջակայս Մասեաց դնէ ըստ Փաւտէնէրան քաղաք, անյայտ թողլով զտեղին, զի էր մերս Փայտակարան, որ ոչ մտանէր յառաջին գաւառս Մասեաց, այլ էր յաւելեալ նմա։ Կեդրենոս 'ի վարս Է. Վասլի կայսեր զՎասպուրական նահանգ մեր՝ Ասպրականիա անուանեալ 'ի նմանէ, կոչէ Վերին Մարս. վասն որոյ և զմերս Մենաքերիմ կոչէ Իշխան Վերին Մարաց. զորմէ ասեմ 'ի Մեծ Հայս 'ի Թղթ. 156։ ԶՊարսկահայք նահանգ մեր դիւրաւ լինէր ստարազգի մատենագրաց կոչել Մարք, սակս անուան միոյ 'ի գաւառաց նորա Մարն կոչելոյ. զոր և ընդծնիկ Մարս շփոթեալ՝ մարթ էր 'ի նոցունց ըստ խուսեանց բարբառոյ յարմարել և անուանել Մէդս, որ առ մեզ դասանեալ Մարք։ Այս ամենայն ըստ ստարազգի մատենագրաց։

Բայց նաև 'ի գիրս մեր յանուն Մասեաց կոչեցեալ գաւանեալք զկողմանս նոյն Հայոց աշխարհիս, և առաւել զՓայտակարան նահանգ. զի ասէ Կորիւն. Յետ գիւտի գրոյն՝ Մեսրոպ «հրաման առեալ 'ի թագաւորէն սկիզբն առնելոյ զխուժադուժ կողմանսն Մասեաց, որք ոչ միայն վասն դիւական սատանայականիր բարուցն ճիւաղաւէ, այլ և մի խեցբեկագոյն և խոշորագոյն լեզուին դժուարամատոյցք էին»։ Այս կողմանք Մասեաց ոչ էին արդարև արտաքոյ Հայաստանեայց, զի ասորև ոչինչ նշան այսպիսի ցուցանէ, այլ յաւէտ խօսի զժողովրդոց Հայկազնեայց, որք 'ի Հարկէ էին 'ի Հայաստան. վասն որոյ մեզ յայտնի թուի լինել Փայտակարան. որովհետև Խորենացի դնէ՝ թէ յանժամ զՓայտակարան ունէին Ատրպատականք, որք էին Մարք։ Նոյնպէս և 'ի բանին Խորենացւոյն Գ. 47. ուր ասէ՝ թէ յաւուրս նորին Մեսրոպայ դևք հալածական լեալ 'ի Գողթնեաց, «մարմնաւոր աւելեամբ անկանէին 'ի կողմանս Մարաց», թուի ինձ կոչել զՓայտակարան. զի ոմն ասէ Կո-

1 Տե՛ս 'ի Մեծ Հայս, 'ի Թղթահամարն 142։

2 Դիոդորոս սիկիլիացի գիրք ԺԸ. գլ. 630։

3 Կելլարիոս գիրք Գ. գլ. 18։

4 Ամմիանոս գիրք ԻԳ. գլ. 22։

ըիւն՝ սուրբն Մեսրոպ իսկ և իսկ անդր գնաց 'ի հալածել զդևս փախուցեալս 'ի Մարս. եթէ 'ի բնիկ Մարս գնայր՝ պարտ էր նմա բազում ճանապարհս հատանել, և ոչ իսկ անկանէր նմա հոգալ զժողովուրդ իւր որ արտաքոյ էր իւրոյ հօտին; զոր օրինակ էին Մարք[1]: Սակայն և յասելն Ասողկայ Բ. 4. վասն արքայացն. «Զմեծ մասն զօրուն ապստամբ ստիպեալ, յաւարի առեալ զՄարս, զԳողթն, զՆախճաւան»: Մարք անուամբ 'ի դէպ երևի իմանալ զՓայտակարան. զի անդ բանն է զհայաստանեաց:

Բայց այսմ զՓայտակարանէ 'ի դէպ է իմանալ՝ որ ասէ Բուզանդ Գ. 24. վասն Վասակայ զօրավարի. «Թողոյր զԹագաւորն Արշակ յամուր տեղւոջ ուրեմն յերկրին Մարաց»: Զի վասն Արշակայ գրեալ էր յառաջն լինել յԱտրպատականն. եթէ Վասակ անդ Թողոյր զնա, յայտնի Ատրպատականն անուամբ կոչէր. այլ քանզի Մարք կոչէ զտեղին, ապա զայլ երկիր իմանայ, և երկիր Հայոց աշխարհիս. զի յայտ է թէ ոչ Թողոյր զնա 'ի բնիկ Մարաց աշխարհին՝ յորոյ վերայ Արշակ չունէր ինչ իշխանութիւն. յորմէ յայտ է լինել սահմանակից երկիրն Փայտակարան:

Այլ առաւել հաւաստի թուեցին քեզ ասացեալքս՝ եթէ մտադրիւր ընթերցցիս 'ի մեծ Հայս 'ի թղթ. 319. թէ Փայտակարան կոչէր և Կասբք. ևս առաւել եթէ ընթերցցիս անդ 'ի թղթ. 325. զբանն Բուզանդայ Գ. 50. որ ասէ՝ թէ ապստամբեաց 'ի թագաւորէն Հայոց աշխարհն Ատրպատականն, աշխարհն Մարաց, և աշխարհն Կասպից. յայտ է թէ Մարաց աշխարհ ասելով ասաէն՝ չիմանայ ոչ զԱտրպատականն, ոչ զԿասբս, և ոչ զբնիկ աշխարհն Մարաց, որ չէր երբէք եղեալ ընդ տէրութ. մերով, ուստի և չէր ապստամբեալ. ապա յայտնի իմանայ զկողմանէ ինչ Հայաստանեաց, և զոր այլ տեղի կարեմք դնել յայս կողմանս՝ բայց եթէ զՓայտակարան: Յորոյ հաստատութիւն բեր և զայն, զի ոչ յիշատակի ամենեւին 'ի պատմութիւն այնր ժամանակի Փայտակարան նահանգ, ոչ յիւր անուն, և ոչ յիւր գաւառի ինչ անուն[2]. այլ յիշատակեալն առ Եղիշէի 152, և 165. է միայն քաղաքն Փայտակարան:

1 'Ի բնիկ Մարս գտանելոյ յայն ժամ այնչափ ժողովրդեան յազգէս Հայոց՝ որչափ համարի լինել պատմութիւն այնր ժամանակի, ոչ ուրեք գտանեմք ամենեւին նշմարանս ինչ:

2 Որպէս յիշատակէ Գարրիկահայք յանուն երկուց գաւառաց իւրոց հեր և Զարեւանդ: Եւ կորճայքն յանուն Կորդուք գաւառին իւրոյ:

## ՅԱՆՈՒՆ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ

Զնախայիշեալ Փայտակարան նահանգ ուրեք ուրեք Ատրպատական կոչեցեալ, կամ ընդ Ատրպատականաւ դասեալ ցուցանեն բանք ոչ միայն մերոց պատմագրաց, այլ և օտար ազգի մատենագրաց։ Որպէս և բանն Եղիշէի 'ի Թղթահամարն 118. զի 'ի բնիկ Ատրպատականի ոչ կարծեմ լեալ այնչափ քրիստոնեայ, որք յուրացութէ դարձեալ անդրէն ընկալան զքրիստոնէութիւն։ Տես վասն այսր 'ի մեծ Հայս Թղթ. 318. և 336։

## ՅԱՆՈՒՆ ՊԱՐՍԻՑ

Խորենացին յաշխարհագրութեան իւրում զմի 'ի հնգետասան նահանգաց մեծին Հայոց յանուն Պարսից կոչէ Պարսկահայք, թերեւս և զպատճառն ոչ ծանուցանէ. զորմէ կարես տեսանել 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 150։ Այլ 'ի գիրս Յունաց մատենագրաց Պարսկահայք, կամ ըստ բարբառոյ նոցա Պերսարմենիա կոչի այն ամենայն սահման հայաստանեաց՝ որ անկանէր ընդ տէրութեամբ Պարսից, զոր մերքն Պարսից բաժին կոչեն։ Ըստ այսմ Պրոկոպիոս [1] գրէ վասն Կաւատայ Պարսից արքայի. “Առաքեաց յաշխարհն Հայոց որ էր 'ի բաժնի տէրութեան Յունաց՝ զզօրութիւն զօրաց, զորս գումարեաց 'ի Պարսկահայոց„։ Եւ թէ, “Յայնմ ժամանակի ասէին Յոյնք յաշխարհէն Պարսկահայոց (կամ Պերսարմենիոյ) գնացեալն՝ որք էին ընդ տէրութեամբ Պարսից„։ Եւ այլուր Է. 7. յայտնի գրէ. “Բնակիչք աշխարհին մեծին Հայոց՝ որ այժմ Պարսկահայք կոչի (կամ Պերսարմենիա)„։ Իսկ Մենանդրոս յետ ասելոյ, թէ “Յանձն էառ կայսրն թողուլ անդրէն 'ի ձեռս Պարսից զՊարսկահայս (Պերսարմենիա)„, մինչ ստորև աշխարհ Հայոց կոչէ՝ ասելով վասն Թագաւորին Պարսից. “Խնդրէր ընկալուլ զայն, որովհետև ոչ ընդդէմ դառնային Յոյնք թողուլ 'ի ձեռս նորա զաշխարհն Հայոց„։ Ըստ այսմ գտանեմք և առ Սիմոկատտայ և Թէոփիլակտոսի և այլոց, ուրեք Պարսկահայք, և ուրեք Հայք կոչեցեալ։

Նոյն թողեալ զայս, 'ի բառարանին Սանտփանտոսի բիւ-

1 Պրոկ. պատերազմ Պարսից. գիրք Ա. գլ. 15։

զանդադացեալ և զԿորտինեա որ է Կորդուք՝ գաւառնեմբ անուանեալ Գաւառ պարսկական, յայտ է թէ սակս մերձելոյ առն Պարսից։ Սոյնպէս և զՔարտաս կոչեցեալ ժողովուրդն 'ի ԺԵ. գիրս Ստրաբոնի, զորս ասէ ուսուցիչս լինել խստութեան կենաց 'ի Պարսս, պարտ է համարել նոյն իսկ Քարտուս կամ Կորդուս խառնեալ 'ի զօրս Պարսից, զի Կորդուաց կեանքն էր այնպէս խիստ և պատերազմական, որպէս ասէ լեալ զՔարտուս։

Զոր ինչ գրեցաք մինչև ցարդ՝ թէ յանուն Մարաց և Պարսից կոչեցեալ գաւառնեմք 'ի գիրս զկողմանս ինչ աշխարհին Հայոց՝ չեն ինչ զարմանք. զի նաև զբառս ինչ լեզուին մերոյ՝ մատենագիրք ոմանք ընծայեցին սահմանակից ազգաց, Մարաց և Պարսից. օրինակի աղագաւ զանուանս տէգ, Պլինիոս համարի լինել բառ Մարաց. իսկ Կուրտիոս բառ Պարսից, մինչ Վարդան Հռոմայեցի առնէ լինել բառ Հայոց լեզուի։

## ՅԱՆՈՒՆ ՊԱՐԹԵՒԱՑ

Պլինիոս թէպէտ զՀայաստան ուրոյն կացուցանէ 'ի Պարթևաց՝ յասելն Զ. 25. թէ Պարթևաց թագաւորութիւնք են առ հասարակ ութ և տասն. 'ի սոցանէ մետասանքն վերինին 'ի սահմանակցութէ Հայաստանեաց, և 'ի Կասպից ծովեզերաց. բայց 'ի Զ. 12. 'ի սահմանի Պարթևաց թուի դնել զՀայաստան յասելն. "Զի թագաւորութիւնք Պարսից՝ որովք այժմ զՊարթևացն իմանամք, 'ի մէջ երկուց ծովուց պարսկականին և Վրկանին կովկասեան լերամբք ամբարձեալ կան"։ Եթէ զՊարսիցն տէրութիւն ընդ անուամբ Պարթևաց իմանայցեն յայնժամ, ձգեալ մինչև 'ի կովկասեան լերինս, ևս առաւել զՀայոցն մարթ էր իմանալ. զայս հաստատեն նոյն ինքն Պլինիոս և Յուստինոս [1], որք ասեն, թէ որպէս տէրութիւն՝ նոյնպէս և անուն Պարթևաց՝ ընդարձակ ձգէր երբեմն, նաև զայլ յոլովագոյն ազգս յինքեան փակելով. զորոյ և զգործադրութիւն գաւառնեմք ուրեք ուրեք 'ի գիրս. զի Ստրաբոն [2] գրէ. "Առ Տիգրիսիւ են տեղիք Պարթևաց, զորս նախնիք Կարդուքս անուանէին"։ Իսկ Կարդուքս է Կարաթունիք կամ Կարթունիք, մի 'ի գաւառաց Կորճէք նահանգին, որ ըստ այլ օ-

1 Պլինիոս գիրք Զ. գլ. 25։ Յուստինոս պատմագիր գիրք ԽԱ. և ԽԲ։

2 Ստրաբոն գիրք ԺԶ. Թղթահամար 747.

ընծայեաց զօրն Կարապետեանք : Աֆրիկանոս [1] զնաւանն տրա- պատեան դնէ ’ի Պարսիս : Կեդրենոս ’ի Թղթ . 10 կամ 8. գրէ . “ Զկերիկոս Արտաշատայ զխտեմք լինել ’ի Պարսիս Հայոց ” :

## ՅՕԴՈՒԱԾ Ե

Անուանք ընդհանուր գաւառաց հայաստանեայց՝ ինչ ինչ կամ այլ- օտար յիշատակեալ յարտաքին մատենագրաց :

Մի ’ի կարևոր գիտելեացն է և այս վասն աշխարհիս Հայոց, զի Յոյն և հռոմայեցի մատենագիրք բազում ու- րեք զհայաստան՝ աշխարհ փոքր և անձուկ երևին ցուցա- նել . ուր ոչ սակաւ հանճարոյ պէտք են ’ի համեմատութիւն նոցին զճշմարիտն ’ի վեր հանել : Օրինակի աղագաւ, առ Քսենոփոնի յերրորդ գիրս արշաւանաց Կիւրոսի՝ Գոր- դուաց իբր այլ իմն աշխարհ յիշատակի, ընդ որ անցեալ՝ ապա լինի մտանել ’ի Հայաստան . բայց ահա ’ի համեմա- տելն զնա Պլինիոսի Զ. 15. գաւառաւ՝ զի Գորդուաց այս է նոյն իսկ Գօրդուաք . “ Ադիաբենեայց առ երի կան, ասէ, Գորդուացիք կոչեցեալք ’ի նախնումն, իսկ այժմ Գօրդուէնք, առ որովք ընթանայ Տիգրիս ” : Իսկ ’ի համեմատելն զպատ- մութիւն և զաշխարհագրութիւն մերոյ ազգին՝ գտանեմք զի Գօրդուէնք է Կորդուք, կամ նոյն իսկ Կորճայք, որ էր մի ’ի գաւառաց Կորճէից նահանգին մեծին Հայոց [2]. ուստի և ոչ օտար աշխարհ ’ի Հայոց : Արդ ո՛ կարէր իմանալ թէ մի ’ի գաւառացն է այս աշխարհիս Հայոց, եթէ ’ի բա- նից այլոց մատենագրաց մերոցն և օտարաց այսպէս չէաք լուսաւորեալ . որպէս արդարև Պօշար ոչ կարելով իմա- նալ [3], զԿորդուք ասէ լինել աշխարհ ինչ ’ի մէջ Հայաստա- նեաց և Ասորեստանեաց : Կելլարիոս [4] զՔարդուքս նշանա- կեալս յաղիւսակս Պտղոմեայ դնէ ’ի Մարս, և զանազանէ ’ի յիշատակելոյն առ Քսենոփոնի :

Իսկ այժմ և Սանէփանիոս ընդդիմադարձի ’ի յիշեալն զԿօ- հարենէ, իբր զօտար աշխարհէ խօսելով և ոչ զՀայոց աշ-

1 Աֆրիկանոս առ Սինկելլոսի Թղթ. 22. կամ 17 :

2 Տե՛ս վասն այսր ’ի մեծ Հայս ’ի Թղթահամարն 138—142 :

3 Պօշար ’ի սրբազան աշխարհա- գրութեան գիրք Ա. գլ. 3 :

4 Կելլարիոս ’ի հին աշխարհագրու- թեան հատոր Բ. Թղթ. 665. տպ. Լիպ- սիոյ յամին 1773 :

խարհէ՝ կոչէ « Տեղի ինչ 'ի մէջ Կողքիսոյ և արևելեան Իվիրոսի », այն է Վրաց [1] . բայց բան Ստրաբոնի յայտ առնէ՝ թէ էր 'ի Հայս , և աշխարհագրութ ազգիս յայտ առնէ՝ թէ էր Գուգարք մի 'ի հնգետասան նահանգաց մեծին Հայոց :

Պլինիոս Գ. 10. յետ աւարտելոյ զմեծ Հայս , յիշելով զազգս բնակեալս առընթեր Հայոց աշխարհին՝ զկողքիսեան անապատս , զԱռմէնոքալիւբս , որք են Խաղտիք , և զՄոսքս , ապա իբրև զմի 'ի սոցանէ դասելով ընդ օտար աշխարհս՝ ասէ . Իսկ «ստորև քան զսոսա Սագասանիք » : Բայց բան Ստրաբոնի յայտ առնէ՝ թէ Սակասենէ որ է նոյն , որպէս համարի նաև Հարտուին , էր գաւառ մեծին Հայոց [2] . և աշխարհագրութ ազգիս յայտ առնէ՝ թէ էր Շակաշէն գաւառ Ուտի նահանգին մեծին Հայոց :

Նախ յայսմանէ մարթ է իմաստասիրել թէ են և այլ տեղիք և գաւառք աշխարհիս Հայոց . այլ կամ առ աղաւաղելոյ անուանց , և կամ առ այլայլութեան դպրաց , ընկղմեալ կան յայլևայլ բանս մատենագրաց , և անծանօթ մնացեալ : Ըստ այսմ Պլինիոս 'ի նախագրեալ բանի յետ յիշելոյ զԳորդուէնս՝ յիշէ անդէն զԲրոդիդէն իբր ազգ կամ ժողովուրդ ինչ , և սահմանակից ասէ զնոսա լինել Գորդուէնաց՝ կամ որ նոյն է Կորդուաց , համարիմ՝ թէ նոյն իսկ Թրուաթի գաւառ մեր իցէ որ 'ի նահանգին Պարսկահայոց , կամ որ նոյն է 'ի Հեր և 'ի Զարևանդ գաւառին , որք ունէին ասէ զդրունս Կասպից . զի և ազգ Կասպից՝ յորոց անուն կոչեցաւ և դրունք և ծովն՝ որպէս ասէ անդէն , էին առ ծովեզերբք 'ի սահմանակցութեան Հայոց : Սոյնպէս և 'ի Զ. 9. ուր ասէ . « Իսկ 'ի ձորավայրս մերձակայս հայաստանեաց են (բնակին) Մէնօպարդք և Մոսքէնք », համարիմ լինել զՄոկս , աղաւաղանօք Մոկքէնք կոչեցեալ , շփոթելով ընդ Մոսք ժողովուրդս՝ որք բնակին 'ի Մոսքիքեան լերինս . զի ըստ բանի Պլինիոսի է ընդ հարաւային կողմանէ հայաստանեաց , իսկ Մոսքէնք կամ Մոսք բնակին 'ի հիւսիսային կողմն հայաստան աշխարհիս :

Յիշատակին և առ Երոդոտոսի [3] իբր օտար աշխարհք Մատիէնք , Սասպիրք , և Ալարոդք , զորս համարիմ տեղիս մեծին Հայոց . այսինքն է՝ Աղձնիք , Սպերք [4], և Աղանդրոտ գաւառ Վասպուրականի :

1 Տես 'ի մեծ Հայս Թղթ. 354 :
2 Տես 'ի մեծ Հայս Թղթ. 340 :
3 Երոդ. գիրք Գ. գլ. 94 :
4 Զայսմանէ ունիմք խօսել ճոխագոյն 'ի գլ. Վաճառականութե :

# ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## ԴԻՐՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

### Ա. Ի ՀԻՒՍԻՍՈՅ

Մեծ Հայք, ըստ Խորենացւոյն յաշխարհագրութեան իւրում, "ընդ հիւսիսոյ առ երի կողմ Աղուանից և Վրաց և Եգերաց՝ մինչև ցնոյն դարձուածս Եփրատայ 'ի հարաւ կոյս"։ Եւ 'ի առաջագրեալն զԿողքիս՝ որ է Եգեր, գրէ ըստ ձեռագրին. "Առ երի (կայ) Սարմատիոյ առ Վրօք և մեծ Հայովք"։

'Ի բանից աստի Խորենացւոյն՝ և 'ի գրոց նահանգաց մեծին Հայոց՝ զոր նա դնէ յաշխարհագրութեան իւրում, իմանամք թէ Մեծ Հայք 'ի հիւսիսոյ արևմտից սահմանակից է Եգերաց կամ Կողքիս 'ի ձեռն Տայք նահանգին. բաժանիչ է մէջ երկոցուն է գօտի Պարխար լերին. զորմէ ասա 'ի Լերինս։ Սահմանակից լինելն Կողքիս յայսմ կողմանէ՝ վկայէ նաև Պտղոմէոս. զի 'ի խօսելն զԿողքիս ասէ. "Ի հարաւոյ յանգի ասոր ծոցոյն Կապադովկիոյ է նշանագրեալ գծի. և միացեալ մասամբ՝ մեծին Հայոց ընդ նոյն գիծ մինչև ցեզրն"։ Է. 10։ Յայսմ կողմանէ, այսինքն է 'ի հիւսիսոյ արևմտից, պարզ է սահմանակից գտնել աշխարհիս ընդ խօսելոյ նախնեաց նաև զՍկիւթացիս. զի նախնիք զՍկիւթացիս ձգեն հասուցանեն մինչև 'ի Փասիս գետ. իսկ Փասիս գոլով նոյն իսկ Ճորոխ գետ, որպէս ունիմք ցուցանել 'ի գլուխն Գետոց, է 'ի վերջին սահմանի աշխարհիս յարևմտից հիւսիսոյ։ Յայս հայի բան Յուստինոսի պատմագրի. "Սկիւթիա է արևելս թևակոխեալ փակեալ կայ 'ի թիկանց Ասիայիւ և Փասիս գետով"։

Իսկ 'ի բուն հիւսիսոյ՝ մեծ Հայք սահմանակից է Վրաց 'ի ձեռն Գուգարք նահանգին, և 'ի հիւսիսոյ արևելից

սահմանակից է Աղուանից 'ի ձեռն Ուտի նահանգին . իսկ բաժանիչ է մէջ երկոցունց սոցա և մեծին Հայոց է Կուր գետ . որպէս յայտնի գրէ Բուզանդ Ե . 15 . ուր յետ գրելոյ՝ թէ Մուշեղ սպարապետ Պապայ արքայի՝ զեղեռնիս Գուգարաց զապստամբեալն կալեալ գլխատէր , ապա ասէ . « Եւ զհին սահմանսն՝ որ յառաջ ունէր լեալ ընդ երկրին Հայոց և ընդ երկրին Վրաց , որ է ինքն մեծ գետն Կուր , այնուհետև յինքն վարեալ (Մուշեղ) դառնայր անտի »։ Սոյնպէս և Խորենացին յաշխարհագրութեան իւրում 'ի սահմանելն զՎիրս՝ գրէ ըստ ձեռագրին . Վիրք « յելից կալով Եգերայ առ երի Սարմատիոյ առ Կովկասիւ՝ մինչև ցԱղուանից սահմանն՝ և Հայոց՝ առ Կուր գետով »։ Որով և ըստ բանի ես Խորենացւոյն՝ Կուր գետ բաժանիչ էր ընդ մէջ Հայոց և Վրաց ։

Համաձայնին մերոց՝ և օտար ազգաց մատենագիրք . յորս Ստրաբոն գրէ [1] . « Արևմտեան Իվերք (Վիրք) փոխադրեալ եղեն 'ի տեղիս՝ որ յանկոյս Փասսոսի և Կողքիսայ (Եգերայ) , զորս Քորաքսի (Կղարջք) , որպէս ասէ Ապողոդորոս , բաժանէ 'ի Հայաստանեաց . այլ հաւաստեաւ (բաժանեն) Կիւրոս (Կուր գետ) , և Մոսքիքս լերինք »։ Զսոյն յայտ առնէ և Պտղոմէոս [2] ասելով . « Մեծ Հայք 'ի հիւսիսոյ յանգի մասամբ Կողքիսայ (Եգերայ) , և Իվերիոյ (Վրաց) , և Ալւանիոյ (Աղուանից) ըստ նշանագրեալ գծի Կիւրոս (Կուր) գետոյ »։ Կամելով ասել՝ թէ Կուր գետ էր որ բաժանէր զՀայս ։ Դարձեալ զսոյն հաստատէ Պտղոմէոս [3] . զի 'ի խօսելն զԿողքիսայ ասէ , թէ 'ի հարաւոյ աւարտի ծոցովն Կապադովկիոյ , և միացեալ մասամբ մեծին Հայոց ։ Բայց զսահմանակցութիւն Վրաց ընդ աշխարհին Հայոց յիշէ նաև Վաղերիոս 'ի խօսելն զարդմնաւորդաց , Ե ։

Այս Կուր գետ է՝ որ բաժանէ զմեծ Հայս նաև յԱղուանից , որպէս ասացաք 'ի վերոյ . զի գրէ Բուզանդ Ե . 13 . ասելով վասն զօրաց նախայիշատակեալ Մուշեղայ . « Եւ զԿուր գետ որպէս և յառաջին լեալ էր ըստ երկրին Աղուանից , և ընդ երկրին իւրեանց (Հայոց) , սահման արարեալ կացուցանէին »։ Զի յայնժամ Աղուանք անցեալ էին յայնկոյս Կուր գետոյ , և առեալ 'ի Հայոց զՈւտի , զՇակաշէն , և զձորն Գարդմանայ , որք են առ հասարակ

1 Ստրաբոն գիրք . ա . Թղթահամար 61 . ըստ տպագրութն Փարիզու ։ 2 Պտղոմէոս գիրք Ե . գլ . 13 ։ 3 Պտղոմ . գիրք Ե . գլ . 10 ։

սահմանք Հայոց. այլ զնոյնս 'ի նոցանէ վերստին առեալ՝ 'ի Հայս գրաւեաց Մուշեղ: Այնպէս զԿուր գետ դնէ բաժանիչ և Խորենացին յաշխարհագրութեան յասելն. «Աղբանիա, այսինքն է Աղուանք, յելից կալով Վրաց, յերի Սարմատիոյ առ Կովկասու մինչև 'ի Կասպից ծովն, և (մինչև) 'ի Հայոց սահմանս առ Կուր գետովն»:

Ստրաբոն ոչ յիշէ ինչ վասն Կուր գետոյ բաժանիչ լինել ը֊ մէջ Հայոց և Աղուանից, այլ միայն զսահմանակից լինելն երկոցունց. զի 'ի ստորագրելն զԱլվանիա կամ զԱղուանս 'ի Թղթ. 501. ասէ՝ թէ 'ի հիւսիսոյ նորա պատեալ կան լերինք Կովկասու, իսկ 'ի հարաւոյ Աղուանից ձգի «Հայաստան յարակցեալ ըստ մասին լայնածաւալ դաշտավայրիւ, իսկ ըստ մասին լեռնային, զոր օրինակ են Գամբուխեանք, յոր Վիրք, Աղուանք և Հայք յարակցին»: Զնոյն յիշէ և 'ի ստորագրելն զՀայս ժա. 527. ասելով. «Ի հիւսիսակողմն (Հայաստանեաց) են լերինք Բարաքոխթրեանք, որք առ երի կամ Կասպից ծովուն. (որք մեզ թուին լինել Փայտակարանին 'ի հիւսիսոյ նորա). ապա Ալվանիա (Աղուանք), Վիրք և Կովկաս, որ շուրջ պատէ զազգս, և յանգի 'ի Հայս. և ապա ընթացակցի (Կովկաս). նաև Մոսքիքեանք (լերանց) և Կողքիսեանց, մինչև առ Նոսա որք Դիւարեանք կոչին»:

## Բ. ՅԱՐԵՒՄՏԻՑ

Զսահմանակցութիւն այսր կողման այսու բանիւ յայտ առնէ Խորենացին յաշխարհագրութեան իւրում. «Մեծ Հայք յելից կալով Կապադովկիոյ և փոքր Հայոց առ Եփրատ գետով մերձ ի Տորոս լեռան»: Եթէ յելից կայ Կապադովկիոյ. ապա յայտ է՝ թէ ինքն Մեծ Հայք յարևմտից ունի սահմանակից զԿապադովկիա և զփոքր Հայս. բաժանիչ ը֊ մէջ Մեծին և փոքուն Հայոց է գետն Եփրատ, զոր և ամենայն աշխարհագիրք օտար ազգաց յիշեն: Համաձայն Խորենացւոյն և Ստրաբոն [1] յարևելից Կապադովկիոյ դնէ զՀայաստան և զԿողքիս. որով Մեծ Հայք յարևմտից ունի զԿապադովկիա: Նոյն ինքն Ստրաբոն 'ի ստորագրելն զՀայս [2] ասէ. «Յարևմտից (Հայաստանեաց) են այս ազգք, (զորս 'ի վերոյ յիշեաց, որք են Մոսքիքեանք,

1 Ստրաբոն գիրք ժբ. Թղթ. 533   2 Գիրք ժա. Թղթ. 527: ըստ տպ. Փարիզու:

Կողքիսեանք, և Տիվարք.) առաս Բարխարիս լեռան [1], և Աքիսիսք, մինչև ցփոքր Հայս և ցԵփրատ գետ, որով Հայք 'ի Կապադովկիոյ և 'ի Գամիրացւոց անջատի,,: Զեւ փոքր գետ ոմն է բաժանիչ և Պտղոմէոս [2] 'ի գրելն վասն մեծին Հայոց. "Ցարևմտից (յանդի) մասամբ Կապադով-կիոյ ընդ նշանագրեալ գծի Պոնտոսի կապադովկացւոց մինչև ցԿողքիս է Մոսքիքեան լերինս, և մասամբ Եփրատայ՝ որ է 'ի մէջ Մոսքիքեան լերանց,,: Նոյնպէս և Պլինիոս [3], յոր ժամ զարևմտեան կողմն մեծին Հայոց սահմանագրելով ասէ. "Իսկ մեծ Հայք սկսեալ 'ի Բարխարիս լերանց՝ գետովն Եփրատաւ անջատի 'ի Կապադովկիոյ,,:

## Գ. Ի ՀԱՐԱՒՈՅ

Յայսմ կողմանէ այսպէս սահմանագրէ Խորենացին յաշխարհագրութեան իւրում. Մեծ Հայք, ասէ, "ընդ հարաւոյ սահմանի Ասորեստանիւ, և գաւառաւ առ Արուաստանաւ ընդ Մասիս, մինչև 'ի մուտս Եփրատայ 'ի Կառկեայ ծով,,: Բայց բաժանիչ ընդ մէջ սոցա և մեծին Հայոց ոչ յիշատակի ինչ. վասն զի և չիք գետ ինչ կամ գօտիք լերանց բաժանօղ 'ի հարաւոյ. մանաւանդ վասն Միջագետաց յիշատակէ 'ի սահմանագրելն զմեծ Հայս, թէ կայ "առ Եփրատ գետով մերձ 'ի Տօրոս լեռան որ բաժանէ զնա 'ի Միջագետաց,,: Այսպէս զՏօրոս դնեն աշխարհագիրք օտար ազգաց բաժանիչ է մէջ Հայոց և Միջագետաց, որ 'ի հարաւոյ սահմանակից է աշխարհիս Հայոց, զորմէ ուրոյն խօսել ունիմք 'ի Միջագետս: Այլ գօտի նորին Տօրոս լերին յետ անջատելոյ զՄիջագետս՝ մտանէ և 'ի Հայաստան, որպէս ունիս տեսանել 'ի սահմանագրութեան նորին լերին:

Համաձայն Խորենացւոյն է և սահմանագրութիւն Պտղոմեայ վասն այսր կողման մեծին Հայոց. որ սահմանի, ասէ, "'ի հարաւոյ Միջագետաւ, առ գծիւն լերինն Տօրոսի, որ առ Եփրատ գետ յարակցի... նաև Ասորեստանիւ առ գծիւն Նպատ լերին ձգեալ... մինչև առ նախադրեալ եզր Կասպից լերին,,: Իսկ Ստրաբոն [4] ասէ. "Մա

1 Ըստ Ձեռագրաց Ղուկիանոսի:
2 Պտղոմ. գիրք Ե. գլ. 13:
3 Պլինիոս գիրք Զ. գլ. 9:
4 Գիրք ԺԱ. Թղթ. 527:

ունիք Հայաստանեաց որք 'ի Հարաւ կոյս դաշտին՝ առաջին իւրեանց ունին զլեառն Տօրոս՝ որ անջատէ զնոսա 'ի Համօրէն աշխարհէ անտի՝ որ 'ի մէջ գետոցն Եփրատայ և Տիգրիսի անկեալ, յաջմամէ ընկալեալ զանուանն Միջագետաց „: Իսկ 'ի ստորագրելն զասորեստան [1] ասէ. “Բաբելոնացւոց աշխարհ (իմա վասն ասորեստանեաց, սահմանի) . . . յարևմտից՝ 'ի յարաբացւոց Սգէնիդից մինչև ցԱտիավինի և 'ի Կորտիէա. 'ի հիւսիսոյ՝ Հայովք և Մարօք մինչև ցլեառն Զագրոն, և ցազգս շրջաբնակս „: Որով Հայաստան 'ի Հարաւոյ սահման ունի, ասէ, զասորեստան և զՄարս: Իսկ 'ի Թղթ. 745 գրէ. “Մեծ մասն Ատիավինոյ (որ է գաւառ ասորեստանեաց) դիւր է, յաւէտ այն մասն որ առ Բաբիլոն Հայի, Թէպէտ ունի իշխան սեփականն, 'ի տեղիս տեղիս սահմանակից է Հայաստանեաց„: Պլինիոս [2] 'ի ստորագրելն զՄարս, 'ի հիւսիսոյ նորա դնէ զՀայաստան. յորմէ զհետ գայ 'ի Հարաւոյ Հայաստանեաց ընդ Մարաց՝ համաձայն Ստրաբոնի. Իսկ զԱտիաբենէն Պլինիոս դնէ անդէն յարևմտից կողմանէ Մարաց, և 'ի Հարաւոյ Հայոց. որպէս և 'ի գրեն Զ. 13. “Ատիաբենաց առ երի կան որք երբեմն Քարտուքք կոչէին, և այժմ Կորդուք „: Ուր Կորդուաց գաւառաւ իմա առ հասարակ զԿորճէս. արդ՝ զԱտիաբենս դնելով սահմանակից Կորճէից նահանգին մեծին Հայոց՝ զասորեստան դնէ սահմանակից, զի որպէս ասացաք 'ի վերոյ՝ Ատիաբենք է մի 'ի գաւառաց ասորեստանեաց:

Սահմանակից նահանգք վերոյգրեալ աշխարհացս են՝ չորրորդ Հայք կամ Ծոփք, որ սահմանակից է Միջագետաց. իսկ Աղձնիք, Տուրուբերան, Մոկք, Կորճէք կամ Կորդուք և Պարսկահայք, որքս ամենեքին սահմանակից են ասորեստանեաց և Մարաց:

## Դ. ՅԱՐԵՒԵԼԻՑ

Զայս կողմն ոչ յիշէ Խորենացին որոշակի. զի 'ի նշանագրելն զՀարաւային կողմն մեծին Հայոց՝ անդ 'ի հարևանցի ծանոյց յաւելն. “Դաշտաւն առ Ատրպատականաւ ընդ Մարս մինչև 'ի մուտս Երասխայ 'ի Կասպից

1 Ստորագրութ. գլուխ Ժա. Թղթ. 526 ըստ առաջ. փոփոխութ.:

2 Ստորագրութ. գլուխ ԺԶ. Թղթ. ահաւասիկ 739: Զոր և կրկնէ 'ի Թղթ. 745:

ծով,,: Ուր նշանագրելովն զԿասպից ծովն նշանագրեաց և զարևելեան կողմն մեծին Հայոց. զի Կասպից ծով ոչ 'ի հարաւոյ՝ այլ յարևելից է սահմանն մեծին Հայոց՝ զորմէ անեցեալ ասորև: Այլ Պտղոմէոս[1] որոշակի նշանագրէ զայս կողմն արևելեան ասելով. Մեծ Հայք «յարևելից (յանդգի) մասամբ Վրկանի (Կասպից) ծովուն, որ է 'ի բերանոյ Կիւրոս (Կուր) գետոյ մինչև ցվերջն ... նաև աշխարհաւն Մարաց ըստ գծին որ առնի ձգի մինչև ցլեառն Կասպից, նաև յայնկոյս քան զլեառն,,: Սարաբոն[2] 'ի ստորագրելն զՄարս՝ յարևմտից սահմանակից կացուցանէ զԱտրպատականս և զՀայս, որով համաձայն նախագրեալ բանից Խորենացւոյն ինքն մեծ Հայք սահմանակից լինի Ատրպատականի և Մարաց, որպէս և յայտնի գրէ ասա ինքն 'ի ստորագրելն զՀայս 'ի Թղթ. 527. «Արևելեան (կողմանք Հայոց) 'ի Մարս յանգին 'ի մեծն, և յԱտրպատականն,,: Սմին նման գրէ և Պլինիոս[3]. «Պատեալ կան զնովաւ (զՄեծ Հայովք) յարևելից լերինք Կերաւնեանք՝ այլ ոչ նոյնհետայն, (որպէս) և ոչ Ատրպատկենէ գաւառն (նոյնհետայն պատի յարևելից կողմանէ մեծին Հայոց. իսկ) 'ի սահմանսն որ 'ի մէջն կայ՝ Սոփենք (Ծոփք) ունին. զկնի սոցա լերինք. յայնկոյս (քան զլերինս) Ատրպատկենք ունին. իսկ 'ի ձորավայրս մօտակայս հայաստանեաց՝ են Մէնոպարոք և Մոքէնք,,: Իսկ զոր աստ Սոփենս ասէ, որ է Ծոփք, վրիպակ է կամ գրչաց և կամ իւրն. պարտ էր դնել Մոկք. զի Ծոփքն է 'ի կողմն Եփրատայ և Միջագետաց, հեռի յԱտրպատկենաց. իսկ միւս երկու անուանք թուին լինել աղճատեալ անուանք գաւառաց կամ Մոկաց, կամ Պարսկահայոց և կամ Կորճէից, որոյ Որսիրանք գաւառ մերձ է յանուանն Մոքենաց:

Մինչև ցաստ յառաջ բերեալ բանիւքս որոշեալ եղեն ընդհանրապէս դիրք և սահմանք չորեցունց կողմանց մեծին Հայոց. զոր և Սարաբոն. ԺԱ. 532. համառօտիւ յայս բան որոշէ. «Այն որ տիրապէս անուանի Հայաստան, սահմանակից Մարաց և Աղուանից և Վրաց մինչև ցԿողքիս և ցԿապադովկիա առ Պոնտոս ծովու,,: Իսկ սահմանք մասնաւոր կողմանց նորա որոշին 'ի ձեռն տեղեաց ինչ՝ զորոց զդիրս յիշեմ 'ի սահմանագրելուս տեղիս. զոր օրինակ Գարդմանն գաւառ Ուտի նահանգին՝ էր

1 Պտղոմ. գիրք Ե. գլ. 13:
2 Ստր. գիրք ԺԱ, Թղթ. 524:
3 Պլինիոս գիրք Զ. գլ. 9:

'ի ծայրի սահմանակից Աղուանից ըստ բանից Վարդանայ. «Զօգաւ յԱղուանս 'ի գլուխ Գարդմանի գաւառին»։ Մերինք կանգառք գաւառին Գուգարաց էին 'ի վերջին ծայր Հայոց մերձ 'ի սահմանակցութե Վրաց, որպէս իմանամք 'ի բանից Ղազարայ։

Որոշին նաև 'ի ձեռն տեղեաց և քաղաքաց ինչ՝ որք 'ի նախնեաց անտի մնացեալ իցեն մինչև ցայժմ. զոր օրինակ 'ի հիւսիսակողմն մինչև ցայժմ գտանի քաղաք անուանի Ախալքէլէք կամ Ախալքալաք, որ էր 'ի Ջաւախք հին գաւառ Գուգարք նահանգին [1]։ Ազգոր էր հին գաւառ Տայոց նահանգին կոչեցեալ Ազորդ. և մինչև ցայժմ գըտանի տեղի նովին անուամբ կոչեցեալ [2]։ Սոյնպէս են և քաղաքքն մինչև ցարդ մնացեալք, որք են Պարտաւ (Պէրտէ), Լօռի, Գանձակ (Կանձայ) և այլն։ Ըստ այսմ յարևելից հարաւոյ Սաղամաս էր հին քաղաք Կորճէից. և մինչև ցայժմ կայ մնայ քաղաք նովին անուամբ Սալամաս ձայնեալ։ Ցայսմ կողմանէ, այսինքն է յարևելից հարաւոյ, վերջին սահմանն որոշի 'ի ձեռն Գանձակ քաղաքի, զորմէ գրէ Բուզանդ Ե. 34. թէ Մուշեղ զօրավար Պապայ արքայի կամեցաւ քաղաքս «զօրանիստս հաստատել ընդ սահմանօքն երկիրն Հայոց. մինչև 'ի Գանձակ սահմանն երկիրն, որ 'ի Պարսից կուսէ էր, Հայոց սահմանն էր»։ Արդ կողմն Պարսից անկանի յարևելից հարաւոյ մեծին Հայոց, յորմէ յայտ է թէ էր Գանձակ Ատրպատականի. և այս Գանձակ էր, ասէ, վերջին սահման Հայոց։

Այս դիրք հայաստան աշխարհիս, զոր ստորագրեցաք վկայութեամբ նախնեաց, յայտ առնեն՝ թէ հայաստան է յԱսիա։ Վասն որոյ և 'ի գրեանն Վարդանայ աշխարհագրի՝ թէ «Հայաստանեայց աշխարհ խառն է յԱսիոյ և յԵւրոպիոյ, սկսեալ նախ 'ի դրանէն Հոնաց, որ է դուռն Ալանաց երկաթի», շփոթութիւն կայ 'ի բանի աստ, զի սկսանիլն աշխարհիս Հայոց 'ի դրանէն Հոնաց՝ ոչ կարէ լինել պատճառ լինելոյ նորա խառն յԱսիոյ և յԵւրոպիոյ։ Ստրաբոն ևս սմին նման յիշէ ինչ վասն դրից աշխարհիս Հայոց, այլ ոչ այնու խառն յԱսիոյ և յԵւրոպիոյ ասէ լինել. զի 'ի սահմանսն, ասէ, որ ձգեալ կայ 'ի մէջ Վրկանայ ծովուն և Պոնտոսի [3]» մեծագոյն մասն հայաստանեաց

1 Տե՛ս 'ի հին մեծ հայք 'ի թղթահամարն 366։

2 Տե՛ս 'ի նոր հայաստան 'ի թղթահամարն 127։

3 Ստրաբոն յերկրորդ գիրս՝ 'ի թղթահամարն 129. ըստ տպագրութեանն փարիզու։

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

### Տ Ա Ր Ա Ծ Ո Ւ Թ Ի Ւ Ն

### ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅ

ՄԵԾՈՒԹԵՆԷ Հայաստան աշխարհիս գրէ Ստրաբոն[1]. «Մեծութի Հայաստանեաց այսպէս ստորագրի՝ ի Թեոփանիսէ. Երկայնութիւն հարիւր սքինոս, լայնութիւն կրկին. սքինոսն առեալ քառասուն ասպարէզ[2]. յորում էանց քան զչափն։ Զերկայնութիւնն եդեալ զոր ինչ նա ինքն նշանագրեաց՝ հաւանական է զլայնութիւն դնել ՚ի կէս նորին, կամ զուցէ և սուղ ինչ նուազ»։ Իսկ Պլինիոս[3] այսպէս գրէ. «Զմեծութի համօրէն (հայաստանեաց) Աւֆիդիոս յիմնեցս հարիւր հազար (քայլ) լինել աւանդէ. Կղոդիոս Կեսար զերկայնութիւն ՚ի Տաւգուսայ (մինչև) ՚ի սահմանակցութի կասպից ծովուն՝ երեքտասան հազար քայլ[4]։ Զլայնութիւն կէս նորա (դնէ) ՚ի Տիգրանակերտէ (մինչև) ՚ի Վիրս»։ Եւ քանզի զՏաւգուսա ՚ի վերոյ եդ լինել քաղաք առ Եփրատաւ, յայտ է թէ Կղոդիոս միայն զմեծին Հայոց զերկայնութիւն մինչև ՚ի ծովն Կասպից դնէ ասէն։ Ցուստինոս պատմագիր[5] առաւել անձուկ դնէ զմեծութիւն, այսպէս գրելով վասն Հայաստանեաց. «Զի և չէ անկ լաւութի անցանել զախչափ Թագաւորութի. որովհետև սահմանք նորա յետ Պարթևացն զանցանեն զմեծութի ամենայն Թագաւորութեանց. քանզի Հայաստան ՚ի Կապադովկիոյ մինչև ցծովն Կասպից՝ մե-

1 Ստր. գիրք ԺԱ. Թղթ. 530։

2 Վասն չափոյ Սքինոսի տես ՚ի Հասարակախօսութե աշխարհագրութ. Թղթ. 17։

3 Պլին. գիրք Զ. գլ. 10։

4 Իմա երեքտասան հարիւր հազար քայլ։

5 Գիրք ԽԲ. գլ. 2։

տասան հարիւր հազար (քայլ) տարածի, այլ ընդ լայնութիւն եօթն հարիւր հազար քայլ ձգի »:

Այս այսպէս երկայնութիւն հայաստանեաց է յարեւելից յարեւմուտս. իսկ լայնութիւն նորա է 'ի հիւսիսոյ 'ի հարաւ, որպէս է տեսանել և յայս բանս Պլինիոսի Զ. Ց. « Իսկ մեծ Հայք սկսեալ 'ի Բարխատրեան լերանց՝ գետովն Եփրատաւ անջատի 'ի Կապադովկիոյ... զաւարտ իւր ձգէ մինչև ցԱտրպատենէ, պատեալ 'ի նմանէ լերամբք՝ որ 'ի կողմս [1]: Զլայնութիւն իւր ձգէ 'ի ձախակողմն առ Կիւրոս (Կուր) գետ խառնեալ յԵրասխ: Իսկ զերկայնութիւն մինչև ցփոքր Հայս, զատուցեալ 'ի նմանէ Ապոսար գետակաւ՝ որ 'ի Պոնտոս հոսի, և Բարխատրեան լերամբք որք բղխեն զԱպսար »: Այսքա յարեւմտից հիւսիսոյ բաժանեն զՄեծ Հայս 'ի փոքր Հայոց, զի անդ անկանին Ապոսար գետակ և Բարխատրեան լերինք, զորմէ խօսի Պլինիոս. իսկ ընդ մացեալ մասին Եփրատ գետ բաժանէր զերկոսին. որով և երկայնութիւն մեծին Հայոց սկսեալ յԵփրատայ ձգէր մինչև 'ի ծովն Կասպից:

Ընդ ձգիլ մեծին Հայոց մինչև 'ի ծովն Կասպից՝ չէ պարտ երկուանալ. քանզի զայս ցուցանեն նախագրեալ բանք Պլինիոսի և Ցուտոմէոսի, յորս յաւել և զայս բանս նորուն Պլինիոսի [2]. « Ատրպատական զծովն Կասպից, և զազգս շրջակայս, ընդ որս և զՀայաստան որոշեալ » և այլն: Ուր զՀայաստան դնէ 'ի մէջ այնց ազգաց՝ որք շուրջ զԿասպից ծովու բնակեալ կան: Զայս ցուցանէ և բան Ստրաբոնի [3], ուր ասէ՝ թէ 'ի վեր քան զՎրկան խորանայ ծովն Կասպից, մինչև ցհասանել 'ի լերինս Մարաց և Հայոց, որոց ստորոտք լուսնաձև խոնարհեալ 'ի ծովն յանդգնին. ընդ այս զաւառ զստորոտովք լերանց անցեալ 'ի ծովն կոյս՝ յետ սակաւուց ասէ, Մասն է Աղուանից և Հայոց: Եւս առաւել յայտնի յիշէ Խորենացին յաշխարհագրութեան 'ի ստորագրելն զծովն Վրկանի՝ որ է Կասպից. « Սահմանի, (ասէ, ծովն Կասպից), յարեւմտից՝ Հայովք. իսկ յարեւմտից հիւսիսոյ Աղուանիւք ». այսպէս հեռահետ անուանէ զազգս բնակեալս շուրջ զԿասպից ծովու: Զնոյն անհարկէ

1 Ի կողմս եզերս զայն՝ զոր Պլինիոսին եղեալ բառ ճշմարտիւ [illegible], կողմանց, առ 'ի չէր. բայց այս [illegible] [illegible] ընդ [illegible] 'ի ստորագրութիւն լերանց, այլ [illegible] նութիւն [illegible] խօսին զերանց. որպէս [illegible] յաւարտ հատուածական աշխարհագրութեան 'ի բառն Լեառն:

2 Պլինիոս գիրք Զ. գլ. 12:

3 Ստրաբոն գիրք ԺԱ. Թղթ. 508:

և յառաջին վասն Ադրուանից, թէ ձգի «մինչև 'ի Կասպից ծովն և 'ի Հայոց սահմանս առ Կուր գետովն»:

'Ի քննելն մեր թէ ո՛ր 'ի նահանգաց մեծին Հայոց էր՝ որ ձգէր հասանէր 'ի Կասպից ծով, գտանեմք զՓայտակարան նահանգ. զի զայս յայտ առնէ աշխարհագրութիւն Խորենացւոյն 'ի ստորագրելն զՈւտի նահանգ և զՓայտակարան, որոց վասն տե՛ս 'ի մեծ Հայս Թղթ. 319. և 336: Ցուցի՛լ և զայս բան պատմութեան Խորենացւոյն Գ. 3. ուր բարբարոսքն, ասէ, որով խմբեալ զփայտակարանեցիս, սպանին զսուրբն Գրիգորիս զիւրեանց հովիւ «'ի վատնեան դաշտին մերձ 'ի կասպիականն կոչեցեալ ծով»: Որով յայտ առնէ թէ Փայտակարան էր առ ծովուն Կասպից [1]:

Սոյնպէս ինչ 'ի գիրս օտար ազգաց գտանեմք յիշատակութիւն սակս մեծութեան հայաստանեաց՝ չափ և սահմանս որոշելով. իսկ 'ի գիրս մեր անորոշ գտանեմք զյիշատակութիւն, միայն 'ի գովեստ աշխարհիս յիշելով զմեծութիւն նորա. որպէս այն՝ զոր Միհրներսեհ ասէ 'ի պատմութեան Վարդանանց առ Ցազկերտ արքայ. «Նախ առաջին ո՛րպէս Հայոց մեծ աշխարհն պիտոյ է և օգտակար»: Եւ սուղ ինչ զկնի. «Դուք ինքնին գիտէք և ամենայն Արիք զաշխարհն Հայոց՝ թէ ո՛րպէս մեծ է և պիտանի»: Եւ Դեհշապուհ առ քահանայսն ասէ (Ղազար 167.) «Թող թէ պիտանի աշխարհին մեծի որպէս Հայքն են», եղէք պատճառ աւերմանն: Իսկ Վահան Մամիկոնեան ասէ առ Միհրան զօրավար Պարսից (Ղազ. 238.) «Հայոց աշխարհս որպէս մեծ և պիտոյի աշխարհ է. և արդ ցոյց ինձ այր մի յայտնապէս աշ-

1 Այսմ առնմանի եթէ մատագիր զնէր Սէն Մարտէն՝ ոչ դնէր 'ի յիշատակարանի խորում համար Ը. Թղթ. 216. «Թագաւորք Հայաստանեաց չունէին այնչափ ինչ զօրութիւն առ 'ի յառաջն կալուցանել զիւրեանց տէրութիւն 'ի վերայ ծովեզերաց Կասպից: Ի ժամանակս Սասանեանց ոչ ինչ ունէին յեզերս այսր ծովու. իսկ 'ի ժամանակս Գաղատիայ Թուի թէ Հայք եւս առ այսր երկրէն՝ որ մերձենայր 'ի քերանըս Կուր գետոյ»: Զի փայտակարան զորով մի 'ի նահանգաց մեծին Հայոց, ցորչափ փայտակարան եկաց ընդ տէրութեամբ մերովն՝ այն տէրութիւն նոցա ձգէր մինչև 'ի ծովն Կասպից. որովհետև որպէս ցուցաք առ և 'ի մեծ Հայս՝ փայտակարան նահանգ ձգեալ էր յեզերս ծովուն Կասպից: Ոչ կարէր դնել թէ յառաջ Սասանեանն ոչինչ ունէին Հայք 'ի ծովեզերեայս Կասպից. զի որպէս անտի 'ի վերոյ՝ Սասանեան զկերպնս Հայոց գնէ յանդգնեալ 'ի ծովն Կասպից: Չէր ապա և վասն Գաղատիայ գրել "Թուի թէ", զի Գաղատեա յայտնի ասէ զայն և ոչ երկուանօք, որպէս տեսեր զայն նորա 'ի յառաջատեալ դրութիւն որ ըզԴրոնց: Եւ զի Վիմնոս, Ցուսանիոս, Գաղատեա և Սասանեան և մերս խորենացի յայտնի ստորագրեն զաշխարհս Հայոց ձգեալ մինչև 'ի ծովն Կասպից. ընդ բազում ժամանակս 'ի հարկէ թագաւորք մեր տիրէին ծովեզերացն Կասպից. ուստի և չէր անկ Սէն Մարտէնի այսպէս 'ի հարևանցի խօսել:

խարհի՝ որ թէ առաւելու թագաւորութե՟ն, արժանաւորապէս հասանել 'ի տանուտէրութիւն»: Եւ Անդեկան մարզպան առ Վաղարշ թագաւոր Պարսից (Ղազ. 309.) «Օտար մարզպանն՝ որ երթայ յաշխարհն Հայոց. աշխարհն մեծ է. յամն երկուս և երիս հազիւ կարէ ճանաչել, նախ զլերս աշխարհին զդիւրն և զդժուարն, ապա զմարդիկ աշխարհին»:

## ԴՐՈՒՆՔ ՅԻՇԱՏԱԿԵԱԼՔ Ի ԳԻՐՍ ԵՒ ՃԱՆԱՊԱՐՀՔ

Բանից զանազան դրունք յիշատակին 'ի գիրս, կամ 'ի Հայաստան և կամ 'ի մերձակայս, կամ եղև մեզ յիշել զնոսա յայսմ վայրի, զի ընթերցօղք մեր որոշեսցեն, և մի շփոթեսցեն ընդ մեծս Դրունս անուանեալ տեղեաց՝ որք լինին 'ի սահմանագլուխս տեղիս, ուրանօր յանդի տարածութե՟ն աշխարհի ինչ, և աւարտի սահմանն նորա:

Պլինիոս [1] 'ի ստորագրելն զՏօրոս, որոյ մասն կացուցանէ զԿովկաս, ասէ այսպէս. «Տօրոս ուրանօր ընդհատի և անցս տայ ժողովրդեան, բայց (անդ ևս) անուանէ Դրանց միութե՟ն յինքն բերեալ, որք ուրեք (դրունք) հայաստանեաց կոչին, ուրեք Կասպից, այլ ուրեք Կիլիկեայ»: Ուր յաւելու Հարդուին ասել. «Դրունք հայաստանեաց՝ նոյն և կովկասեանց կոչին». որպէս է տեսանել գիրք Զ. յօդ. 22:

ԶԴրանս Հայոց յիշէ և Ստրաբոն [2] նման Պլինիոսի առանց որոշելոյ զտեղին: Իսկ Մելա գիրք Ա. գլ. 15. 'ի ստորագրելն զՏօրոս՝ յիշէ զդրունս Կասպից, զՆպատ, և զդրունս Հայոց:

ԶԵրկուս Դրունս սահմանաց Հայոց յիշէ Բուզանդ Գ. 24. ասելով. «Ցանկանէին պահ ունել իւրեանց աշխարհին (Հայոց). արքայն Արշակ հանդերձ զօրավարաւն Վասակաւ յերկոսին Դրունս սահմանացն (Հայոց) զգուշանային մինչև զամենայն աւուրս կենդանութե՟ն իւրեանց»:

ԶԵրկուս Դրունս Եկեղեաց Աշտոյ դնէ Խորենացի յաշխարհագրութե՟ն 'ի փոքր Հայս ըստ տպագրելոյն և ըստ միում ձեռագրի. որ ինձ թուի նոյն՝ զոր Պլինիոս կոչէ Դրունս Կիլիկեայ 'ի նահանգին Հալպայ. զորմէ յիշեալ է մեր 'ի Նոր Հայաստան. 'ի թղթ. 325:

ԶԴրունս Աղձնեաց յիշէ Բուզանդ Դ. 50. գրելով թէ յորժամ Աղձնիք ապստամբեցան յԱրշակայ Հայոց ար-

1 Պլին. գիրք Ե. գլ. 27: 2 Ստրաբոն Ա. 80:

քայէ, « Պարիսպ ածէին 'ի Հայոց կուսէ՝ որ Ձորայն կոչէին, Դրունս ղնէին. և զատուցին զիւրեանց աշխարհն 'ի Հայոց »: Ուր գուցէ այլաբանութիւն անուանէ:

Օ Դրունս Ասորեստանի զկողմամբք Աղձնեաց յիշէ Թովմա Արծրունի. Է. 8. « Տեսեալ մերձ 'ի Դրունս Ասորեստանի ամրոց մի յիշխանութեանն Աղձնեաց »:

Վասն Դրանց Կաւկէց գրեալ է մեր 'ի մեծ Հայս 'ի Թըղթ. Թաճկամարն 323 [1]:

Դռնան Պահլաւայ Պարսից. յիշատակեալ առ Ջենոբայ 'ի Թղթի սորայն Գրիգորի առ Ղևոնդ. կանգնեալ 'ի գօտի լերինն Տօրոսի՝ որ յաշխարհէս Հայոց ձգի մինչև ցանոյ, որում մարթ էր լինել 'ի սահմանակցութեան Հայոց և Պարսից:

Դրունք Ալանաց: Զայս մերձ ցուցանէ լինել Յոհան կաթողիկոս 'ի Գուգարս՝ յասելն. « Անդ այսպ մեծ քորխկուպան՝ որ պայապանէրն իսկ զմասն Գուգարաց մերձ 'ի Դրունս Ալանաց՝ գայր հասանէր 'ի Թիկունս »: Դարձեալ և յասելն նորա վասն արքային Սմբատայ ա. Ասեալ է « զգուգարացիս և զծանարս մինչև ցԴրունս Ալանաց »: Նոյն իսկ Խորենացին. Բ. 86. 'ի գրելն վասն սահմանաց՝ ուր քարոզեաց Նունէ, որ և էր սահման տէրութեան Տըրդատայ, ասէ. « Քարոզեաց 'ի Կղարջաց սկսեալ առ Դրամբք Ալանաց և Կասպից »:

Իսկ Ճանապարհ որք յիշատակին 'ի Նախնեաց, զոր օրինակ են Ճանապարհ, Կապիճական, են 'ի շրջակայս հայաստանեաց, որպէս վասն կապոյտականին կարես տեսանել 'ի մեծ Հայս 323: Իսկ վասն բանալոյ և հորդելոյ զճանապարհս՝ միայն 'ի յետագայ ժամանակս գտանեմք յիշատակութիւն գործեալ 'ի Թաթարաց, զորմէ պատմէ Մաղաքիա՝ թէ 'ի Թուին չԶ. (1257) եկին եօթն Ղանի որդիք. Խուրաքանչիւրք դումանս մի հեծելովք. մի դումանն էր, ասէ, երեսուն հազար. յորս առաջին և մեծն էր Հուլաւուն, որ էր եղբայր Մանկու Ղանին: Սոքա ասէ կառօք եկին և կառօք շրջէին, մինչ զի զլերինս և զբլուրս հարթէին յաշխարհն արևելից, վասն հեշտ գնալոյ կառաց նոցա և սայլից:

1 Վասն գրոյն Կաւկէց Զախարդոյն տես Գ. Թղթ. 33:
Ճառք 'ի վերլուծութեան Յանկխտոսի հա-

## ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ

### ՕՐ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

#### ՅՕԴՈՒԱԾ Ա.

Բարեխառնութիւն օդոյ և ցրտութիւն աշխարհին :

ԶԳՈՎՈՒԹԻՒՆ օդոյ Հայաստանեայց առ Խորենացւոյն ա̃. 16 գտանեմք, յաւելն վասն Շամիրամայ. « Եկեալ 'ի լեռնակողմանս երկրի հարաւակողմանն, քանզի ժամանակ ամառնային էր, զբօսնուլ կամելով 'ի հովիտս և 'ի դաշտս ծաղկաւէտս. և տեսեալ զգեղեցկութիւն երկրին և զՕդոյն մաքրութիւն... Պարտ է մեզ, ասէ, յայսպիսում բարեխառնութեան օդոյ` և մաքրութեան ջուրց և երկրի` քաղաքս և ապարանս շինել բնակութեան, որպէս զի զչորրորդ մասն 'ի բոլորմանէ տարւոյն` որ է ամառնայինն եղանակ, ընդ ամենայն բարեկեցութեան անցուցանեմք 'ի Հայս. և զայլն եւս երիս ցրտաշնչունս օդոցն զովութեան ասածիցեմք 'ի Նինուէ » : Զկողմանցն Տարօնոյ գովութիւն գտանեմք առ Զենոբայ, զորմէ ասացեալ 'ի մեծ Հայս 'ի թղթ. 90 :

Նաև եւս երանելին եւս հաւաստեալ 'ի գիրս Յոհանու և Համամայեցւոց` է ցրտութիւն օդոյ մերոյ աշխարհիս, զորմէ բազում ուրեք յիշատակեն մատենագիրք օտար ազգաց. իսկ 'ի գիրս մեր` անդստին 'ի սկզբանն անդ 'ի ժամանակս Հայկայ մերոյ առաջին նահապետին գտանեմք զյիշատակութիւն, յորժամ Նեբրովթ (Խոր. ա̃. 11.) մեղոյն յուշ առնէ առ 'ի յորդորել զՀայկ թողուլ զՀայաստան. « Բնակեցեր ասէ 'ի մէջ ցրտութեան սառնամանեաց » : Իսկ Եղիշէ 344. զՀայաստանեայս կոչէ « Ընդարձակատուն բնակիչք ձիւնեղէն լերանց » :

զի առաւնոց նոցին մինչեւ ցորովայն ունէին երիվարք ընկղմիլ 'ի ձեան ։ 'Ի նմին պատմութեան Ճանապարհորդութեան Յունաց այսպէս գտանեմք ստորագրեալ զցրտութիւն առ Դիադորի սիկիլիացւոյ [1] ․ « Այն ինչ լինէր նոցա ընդ լերինս Հայոց թեւակոխել, յանկարծ թանձրութեան ձեան լինէր նոցա անկանել, զի վայրկեան մի եւս եւ կորուսեալ էր անդէն նոցա ամենեցուն ․ քանզի պղտորեալ օդոյն նախ նուազիմն ձիւն առ սակաւ սակաւ 'ի բարձանց իջանէր, ոչինչ խոչ ընդ առն լեալ ճանապարհորդաց ․ այլ ապա 'ի սաստկանալ հողմոյն յորդացեալ առաւելոյր, խիտ առ խիտ ամենայն ուրեք ծածկեալ զերկիրն՝ մինչեւ ոչ կարել զճանապարհն տեսանել, եւ ոչ զսահմանս տեղեացն ճանաչել ․․․ որչափ ինչ զէնք կային՝ ահագին յորդութեան ձեան որ անդադար իջանէր՝ ծածկեալ էր զամենայն ․ իսկ մարմինք նոցա 'ի լինել պարզոյ սառուցեալ մորմոքէին առ խստութե օդոյն, եւ առ գժնդակութեան աղէտից զգիշերն ողջոյն անքուն մնային ․․․ ամենք 'ի պայծառութեան ձեան խտացեալ բբաց աչաց իբրեւ կուրացեալ իմն կային ․․․ զաւուրս եօթն անդէն մնացեալք ապա հասին 'ի գետն Փասիս ․ եւ զաւուրս չորս անդէն կացեալք անցին յերկիրն Դաոքաց եւ Փասեանց » ․ որ է երկիրն Տայոց եւ Բասեանց ։ Իսկ 'ի գիրս մերոց նախնեաց առ Թովմայի արծրունւոյ գտանեմք վասն Մոկաց նահանգին լինել որպէս լեռնային՝ նոյնպէս եւ ցրտային, զորմէ Ե․ Յ․ գրէ ․ « Ձիւնապատ սառնասոյր առհասարակ պատեալ էր (Մոկաց) երկիրն ; ամենայն բնակչօքն հանդերձ փախստեայ եղեալ, մազապուր եղեալ, փախստեայ մնային յամրոցս բերդիցն »։ Այլ առ սաստովք լերանց ձորք Մոկաց խորինք գոլով հարկ էր ունել կարի իմն ջերմութիւն, յոյր սակս մի 'ի գաւառաց Մոկաց Թուլի կոչեցեալ Ջերմաջոր ։ Սոյնպէս ցրտային գտանեմք յԱղձնեաց նահանգի զՍասուն, զորմէ ասէ 'ի Մեծ Հայս 'ի Թղթ․ 73․ որ է 'ի կարգս լերանց Տօրոսի ․ իսկ ձիւն եւ ցրտութիւն Տօրոս լերանց յիշատակեալ է եւ 'ի գիրս օտար ազգաց ։

Տարապայման ցրտուն կողմանցն Տայոց թէ զինչ մնասեած, յիշատակէ Լաստիվերացի գլ․ Է․ յասելն վասն կայսեր Վասիլի ․ « Եւ մինչեւ խաղացեալ զօրօքն պատի զՀայովք, եւ իջանէ բանակի հեծելովք ․․․ եւ մինչ նա յայս խորհրդի էր ․․․ յանկարծակի խառնացան ամպովք երկինք,

1 Դիոդ․ սիկիլիացի․ գիրք ԺԴ․ գլ․ 411 ։

և յորդութիւք անձրևաց յերկիր հեղաւ. զկնի այնր շնչեաց հիւսիսայինն կծու հողմ. և դարձոյց զանձրևն 'ի կարկուտ և 'ի ձիւն և 'ի սառն, և թանձրացեալ իջիւք ծածկեաց զերեսս երկրին. քանզի և ժամանակն իսկ ձմեռնային էր այնմ, զի քաղ 'ի ձմերոց հասեալ էր: Եւ յերկարեալ յորդութեն ձեանն և խստութեն սառնամանեացն, Ջոկի ձիոցն և Ջորեացն ընդարմացեալ ոչ կարացին շարժել. իսկ հետևակ զօրացն 'ի դառնութէ սառնամանեացն ծայրք ոտիցն և ծայրք ձեռացն իբրև 'ի հրոյ կիզեալք հատեալք անկանէին, և վրանաց լարքն և ցիցք ընդ երկիր կապեալ 'ի սաստկութէ դառնութեն արկածիցն անշարժ մնացին... դառն սառնամանեօք տանջեցան ոչ 'ի բարձր լերինս, այլ 'ի խորագոյն դաշտս, և 'ի կարի ջերմինս,,: Վասն կողմանց Տայոց պարտ է իմանալ և զբան Պրոկոպիոսի[1], ուր մինչ ձեռամբք, ասէ, ծածկեալ զերկինս հայաստանեաց՝ յորոց բղխէ գետն Փասիս, զի Փասիս՝ որ է Ճորոխ, բղխէ և անցանէ առ Տայովք: Աղետալի է և դիպուածն 'ի ցրտութէ պատահեալ յաւուրս բռնաւորին Աքանդարի որդւոյ Լանկթամուրին. զի որպէս պատմէ Թովմա Մեծոփեցի, զօրք նորա յարձակեալ 'ի վերայ գաւառին Դերջանու, հանին "զամենայն կահիւք և կարասիւք, որդւովք և դստերօք, և կամեցան անցանել յերկիրն այրարատեան և Սիւնեաց, և էին աւուրք դառնաշունչ և դժնդակ յօդոյն ձմերայնի. և յետ երկուց աւուրց յանկարծակի ձիւն սաստիկ եկն 'ի վերայ նոցա. և 'ի գիշերի յանխմիկ պաղեցաւ երկիրն, և բազում քրիստոնեայք սառեալ մեռանէին... և մեռան 'ի սոյն աւուրս աւելի քան զերօթն հարիւր ոգիս անմեղ քրիստոնեայք 'ի դառնաշունչ օդոյն, և ոչ գոյր ժամանակ թաղելոյ զնոսա զի կերակուր եղեն 'գազանաց, և ոչ գոյր չինուէ զերզորէից մերձ առ նոսա,,:

Այս ցրտութի հայաստանեաց էր՝ որ ետ բողոք բառնալ և մեծին 'ի սուրբս Յովհաննու ոսկեբերանի, պանծալւոյն հայաստանեաց, յորժամ հայաստան յիւրում սահմանի 'ի փոքր Հայս 'ի Կոմանա քաղաքի աքսորեալ պահէր զնա. որ 'ի ՃԺ. թուղթ իւր առ Ողիմպիա սարկաւագուհի այսպէս գրէ. " Վասն խստութե ձմերայնոյ... չէ ինչ քեզ հարկ 'ի պատճառս մեր նեղիլ և հոգալ. քանզի եղև ձմեռն՝ զոր օրինակ սովոր է լինել 'ի հայաստան. զի առաւել քան զայս

1 Պրոկոպիոս պատերազմ Պարսից. գիրք Բ. գլ. 15:

չէ ինչ մարթ ասել, այլ մեզ չէր ինչ վնաս մեծ . . . անընդհատ հուր ունելով վառեալ, և զանձնական յորում բնակիմք՝ յամենայն կողմանց փակեալ»։ Սոյնպէս գրէ և առ Թէոդորոսն սարկաւագ։ Ուր անուանք աշխարհին Հայոց միայն բացատրել կամելով զցրտութիւն նորա, յայտ առնէ զի և յայնժամ հռչակեալ էր յոյժ 'ի Բիւզանդիա ցրտութիւն Հայաստանեաց։

## ՅՕԴՈՒԱԾ Բ

Ձիւն, և կարկուտ նորանշան։

ՄԱՏԹԷՈՍ 'ի թիւն ՁԳ. գրէ. Ի թուին ՇԵ. (1056). «Ցաւուր միում յորժամ լուսանայր առաւօտուն, և ելանէր ամենայն մարդ 'ի տանէ իւրմէ, տեսանէին 'ի պարզոյ 'ի վերայ ցամաքս գետնոյն կարմիր ձիւն եկեալ, և էր լցեալ զչորս կողմն աշխարհիս 'ի յարևելս և յարևմուտս, 'ի հիւսիսս և 'ի հարաւ. և սկիզբն արար գալոյ 'ի յաւուր երկուշաբաթին. և զաւուրս վաթսուն անդադար եկեալ. գիշերն գայր և ցերեկն հոսէր ընդ երեսս երկրի. բայց կարմիր ձիւն մէկ օր եկեալ։ Եւ այն ամին եղև անցումն (կոտորած) ամենայն չորքոտանեաց, անասնոց և գազանաց և թռչնոց . . . անասունքն ջոկէր ջոկէր լինէին, և թռչունքն երամ երամ 'ի փողոցս և 'ի տունս մտանէին . . . իսկ (որք) ողորմածքն էին, 'ի տունս իւրեանց կերակրէին զնոսա զամենայն աւուրս ձմերանն, և արձակէին զնոսա խաղաղութեամբ»։ Պատճառ այսր կոտորածի կենդանեաց եղև և սովն, զորմէ գրէ զկնի. իսկ վասն պատճառի կարմիր ձեան տես 'ի Հասարակախօսութ. աշխարհագրութ. 'ի թղթ. 343։

Գրիգոր երէց 'ի թիւն ՃԻ. գրէ. «Ի թուականութեան Հայոց Ո. (1151) եկն 'ի յերկիր Ջահնայ ձիւն կարմիր 'ի նաւասարդի ամսոյ քսան և երեք. և 'ի նմին աւուր յորժամ անդ կարմիր ձիւն եկն, յերկիրս քրիստոնէից եկն ձիւն սպիտակ և մոխրագոյն, որպէս յանցեալ ամին»։

Մատթէոս դարձեալ միւս. այսպէս գրէ 'ի թուին ՇԾԷ. (1108). «Ցայսմ ժամանակիս եղև դառնաշունչ և 'ի զազան ձմերոց. և 'ի բարկութենէ օդոյն հատան (սպառեցան) բազում վայրի անասունք և թռչունք. կոտորեալ եղև ընդ ամենայն երկիր. և եկն 'ի յաշխարհն Պարսից [illegible] ձիւն. և եղև այն ահաւոր նշան 'ի վերայ Պարսից ազգին,

զոր ոչ կարացին իմաստունքն իւրեանց գիտենալ»։ Աշ-խարհ Պարսից ասելով՝ դուցէ իմանայր և զմասն Հայաս-տանեաց՝ որ էր յայնժամ ընդ տէրութեամբ Պարսից. վասն այնորիկ եդաք աստ։ Կիրակոս գրէ. «Ի ողթ թուին Հայոց (1250) եղև այսպիսի ինչ... 'ի սահմանս Խաչենոյ կարկուտ եկն. և խառն կարկտին ձկունք բազումք անկանն յերկիր 'ի չափ թզոյ միոյ. մեք աչօք ոչ տեսաք, բայց բա-զումք էին որ հաւաստարմացուցանէին՝ թէ ականատես լեալ եմք»։ Այսպիսիք թուին լինել փոքրիկունք երկայ-նաձևք, զորոց նման բազում ինչ գտանեմք 'ի գիրս բնա-պատմից, յորոց ոմանք դուցէ երևէին 'ի ձև ձկան[1]։

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

### Հիւսիսայգ։

Երբ պատմագիրս մեր յիշատակի մերթ ընդ մերթ գիշերային երևեալ ընդ օդս Հայաստան աշխարհին տեսիլ ահաւոր, որ 'ի նշանացն յիշատակելոց յայտնի երևի լի-նել այն օդերևոյթ՝ որ 'ի բնաբանից կոչի Հիւսիսայգ կամ Արշալոյս հիւսիսային, զի պատմեն երևեալ ընդ հիւսիս արևմտեան, և գոյն նորա հրատեսիլ և արիւներանգ։ Զյիշատակեալս 'ի նոցանէ բաւ կարգի գարուց յառաջ բերցուք յայսմ վայրի առ 'ի պէտս բնաբանից։

## ԴԱՐ Զ

Կիրակոս յաւուրս Ներսէսի աշտարակեցւոյ 'ի սկիզբն վեցերորդ դարուն գրէ երևեալ «նշան ահեղ և հրաշա-փայլ յերկինս արիւնատեսակ»։

Նոյնպէս Տ. 2. յաւուրս Տ. Մովսէսի կաթողիկոսի, որ 'ի մէջին սոյն վեցերորդ դարու, գրէ. «Նշան ահեղ հրափայլ և արիւնատեսակ յերկինս սկսաւ երևիլ, որ յոլովագոյն ընդ կողմն հիւսիսոյ յարևմտից մինչև յարևելս, յամենայն գիշերի սիւնաձև ցոլացեալ զնայր յամիսս ութ»։ Այս-ինքն 'ի մէջ ութ ամսոց յաճախ երևէր ընդ օդս այս տե-

1 Տես 'ի Համառօտաբանութեան աշ-խարհագրութեան, 'ի թղթահամարն 345։ Իսկ վասն Յորդանանձրևոյ ինչ 'ի նոր ժամանակս 'ի Վան քաղաքս Հայաս-տանեայց, տե՛ս 'ի յԵւրոպական լրա-գրեան 1809 ամին, 'ի թղթահամարն 56։

տիլ. որպէս և մեզ եղև յամս լինել աստէպ աստէպ տեսանել 'ի Վենետիկ ։

## ԴԱՐ Ը

Ընդարձակօք Սամուէլի պատմէ զայս լինել «'ի ՃԿԴ. թուին (715) եղև նշանք մեծամեծք 'ի մարտի ամսոյ մինչև յապրիլն. օդք հող և փոշի տեղայր, և ցերեկն գիշեր թուէր. և երևեցան երեք սիւնք ամպեղէնք հրախառն 'ի կողմն հիւսիսոյ երեք օր, և ելանէին 'ի վեր և իջանէին 'ի վայր ։ Եւ յետ այնորիկ երևեցաւ աստղ մի 'ի չափ լուսնին, և 'ի ցերեկի երևէր զերիս աւուրս, և շարժեցաւ պատառեցաւ, և ելին աղբիւրք 'ի գոյն արեան » ։

## ԴԱՐ ԺԱ

Սամուէլ 'ի ՆՀԶ. թուին (1027) գրէ զայս. «Յայսմ ամի եղև ահաւոր նշան. զի հերձաւ երկինք յերկուս յերեկոյին ժամու, և լոյս սաստիկ տարածեցաւ, և դողաց ամենայն երկիր » ։

Նոյն Մատթէոսի 'ի թուին ՇԽԶ. յիշատակի. « Յայսմ ամի (չխզ. 1097) լինէր նշան ահաւոր և զարմանալի յերկինս 'ի կողմն հիւսիսոյ, որ ոչ երբէք ոք եւտես այնպիսի զքանչելի նշան ։ 'Ի յամենայն մասերի բորբոքեցաւ երեսք երկնից 'ի բոց հրոյ, և կարմրացաւ սաստկապէս 'ի պարզոյ, և բլուր բլուր կապեցաւ երկնիքն. և բորբոքեալ լինէր 'ի գոյնս գոյնս, և սահեալ ելանէր դիմօք յարևելս, և դիզացաւ եղև մասն, և ծածկեաց զմեծ մասն երկնից, և գունովն յոյժ կարմիր և զարմանալի, և հասանէր 'ի կամարն երկնից » ։

Նոյն առ Մատթէոսի 'ի թուին ՇԽԷ. « Յայսմ ամի (չխէ. 1098) դարձեալ երկրորդ նշան եղև յերկինս 'ի կողմն հիւսիսոյ, և չորրորդ ժամ գիշերոյն հրով բորբոքեալ լինէր երկինք առաւել քան զառաջինն ։ Եւ եղև 'ի գոյն սաստիկ կարմրութե յերեկորէն սկիզբն արարեալ մինչև չորրորդ ժամն գիշերոյն, որ ոչ ոք երբէք եւտես այնպիսի նշան ահաւոր. և ծառացեալ բարձրանայրով, և երակ երակ ելից զերեսս հիւսիսոյ մինչև 'ի գագաթն երկնից, և ամենայն աստեղքն եղեն 'ի գոյն հրոյ » ։

Դարձեալ առ նմին Մատթէոսի 'ի թուին ՇԽԸ. «Յայսմ ամի (չխը. 1099) դարձեալ եղև երրորդ նշան հրակերպ 'ի յերկինս, 'ի գոյն սաստիկ կարմրութե. և կացեալ զէ.

ժամ գիշերոյն 'ի հիւսիսային կողմանէն գնալով գնայր յարեւելս, և դարձաւ 'ի սեւութիւն ,,:

Նոյն 'ի թուին ձղէ. գրէ. " Յայսմ ամի (շխթ. 1100) եղև չորրորդ նշան կարմրութեան 'ի հիւսիսային կողմանէն ահաւոր և հրաշալի քան զառաջինսն. 'ի դոյն արեան երևեալ լինէր, և դարձեալ սեւացաւ. և այս չորրորդ նշանացն՝ լուսնին փոխ հանդիպէր ,,:

ԴԱՐ ԺԲ

Սամուէլ 'ի թուին շկէ (1118) ասէ. " Աջ աստուածային երեւեցաւ 'ի սուրբ մատրանն, այլ և նշան ահեղ հրափայլ և արիւնաներկ յերկինս ,,: Նոյն թուի և յիշատակեալն յընդարձակողէն Սամուէլի. զի 'ի շկը. (1119) պատմէ լեալ պատերազմ սաստիկ, ուր զօրք Փռանկաց և Հայոց կոտորեցան. " Եւ յառաջ քան զայս պատերազմն (ասէ) սիւնք հրեղէնք երեւեցան յերկինս 'ի հիւսիսոյ և յարեւելից, յերեկորեայ մինչև ցառաւօտն, և երկիր ամենայն իբրև զխանձիւ բորբոքէր ,,:

Ի թուին մձդ. գրէ Մատթէոս. " Յայսմ ամի (շղբ. 1143) նշան երեւեցաւ յերկինս 'ի կողմն հիւսիսոյ, և իբրև զսիւն լուսոյ յաւուրս հինգշաբաթի օրն. և ութ օր միապէս երեւեալ ,,:

ՅՕԴՈՒԱԾ Դ

Երկրաշարժութիւնք յիշատակեալք 'ի Գիրս :

ԴԱՐ Ը

ՍԻՐԱԿՈՍ գրէ՝ թէ յետ մահուան Ստեփաննոսի սիւնեցւոյն 'ի մէջն անդ ութերորդ դարուն՝ " Խաւար կալաւ զՄողան սահմանն, և զաւուրս քառասուն շարժեցաւ տեղին, և խորասոյզ եղեալ ընկղմեցան հոգիք իբրև տասն հազար. վասն այն Վայոց ձոր անուանեցաւ ,,: Այլ յայտ է 'ի պատմութեանց ազգիս, զի և 'ի վաղուց հետէ կայր տեղին կոչեցեալ Վայոց ձոր յաշխարհին Սիւնեաց. ուստի էր և սուրբ Յովհան կաթողիկոս 'ի հինգերորդ դարու :

## ԴԱՐ Թ

Շարունակող Սամուէլի գրէ 'ի Թուին ՄԾ (801). «Ցայսմ ժամանակիս եղև շարժ սաստիկ, և լերինքն կուղոտու՝ մերձ կան ասոր և անդր՝ հայեցան առ միմեանս, զոր օրինակ մարդիկ, և փլաւ լեառն մի և անկաւ յեփրատ, և արգելեաց զնա օր մի, և գնայր գետն 'ի վեր, և բազում լերինք խլեցան, և յոլով աղբիւրք բացան՝ ջրոյ և կալրոյ և նաւթոյ, և բազումք խցան յաղբերաց»:

Մաղլէկ Է. 2. գրէ. «ՅԺԲ. Թուին (863) 'ի քառասներորդ պահոցն 'ի փոքրիկ շաբաթուն եղև շարժումն ահագին, և զբազումս կոտորեաց, և գգեղեցիկ շինուածս տապալեաց, և տևեաց մինչև 'ի ժամանակս երից ամսոց»: Այս է շարժումն Դունայ, զորմէ պատմէ Յոհան կաթողիկոս. տե՛ս 'ի մեծ Հայս Թղթ. 469. յիշէ և Սամուէլ:

Երկրորդ անգամ շարժումն 'ի Դուին յետ անդ հինգերորդ դարուն, զոր յիշէն Յոհան կաթողիկոս, և Թովմա արծրունի: Տե՛ս նոյնպէս 'ի մեծ Հայս 469: Զթուականն այսորիկ գտաք 'ի յիշատակարանի հին մաշտոցի գրեալ 'ի Ստեփաննոսէ յաշակերտէ Մաշտոց վրդպի, որ ասէ. «Հայոց նոր տումարիս ՅԽԲ (893) կատարեցի ... 'ի մեծի հինգշաբաթին 'ի վեցերորդ ժամու, 'ի թագաւորութեան Հայոց Սմբատայ որդւոյ Աշոտոյ բագրատունւոյ, 'ի առհմի կաթողիկոսութեան տեառն Գէորգեայ գառնեցւոյ, յորում աւուր կործանեցաւ Դուին քաղաք 'ի շարժմանէ, և բազումք մեռան, և եկեղեցիք տապալեցան»:

## ԴԱՐ Ժ

Մտ. Ասողիկ Գ. 36. «Ի ՆԽԴ. Թուականին (995) շարժեցաւ երկիր. բայց սաստկագոյն՝ աշխարհն չորրորդ Հայոց, Հաշտեանք, Խորձեան, Ծոփք, Բալու և Պաղնատուն, և բոլորովին փլան շինուածք ամենայն 'ի հիմանէ դղըրդեալք ... հերձան լերինք, և պատառեցան վէմք, բացան աղբիւրք և ջուրք յանջրդին տեղիս, և ցամաքեցան ելք ոռոգականն ջուրց. դաշտք ծածանէին, և լերինք որպ թէ առ միմեանս խոնարհէին, ծխոյ նմանութ փոշւոյն ծաւալելոյ զօդսն խոյր. և ամենայն շինուած քաղաքաց, գիւղից և ագարակաց տապալեալ զբնակիչսն 'ի ներքոյ առնէին մեռեալս և կիսամեռս զնոսա առնելով: Եւ մնացելոցն կենդանեաց ձիչք լալեաց և վայք ողբոց 'ի վեր բարձրա-

ցան 'ի հիմանց. և զազգս քրիստոնէից պաշարեաց առեր մին-չև ցայժմ. և անդադար լինէր շարժն մինչև 'ի փոխել թուականիս, որ ոչ կայր համար կամ թիւ շարժմանն զա-մաս չորեքտասան»: Քանզի ընդ ամենայն երկիր, ասէ, լեալ այսր երկրաշարժութիւն, յայտ է թէ և 'ի Հայաստան էր լեալ:

### ԴԱՐ ԺԳ

Վարդան գրէ թէ մօտ ամաւ յառաջ քան զձեռնա-դրելն տ: Կոստանդնի կաթողիկոսի, որ է յամի տեառն 1219, «Եղև շարժ ահագին, և փլաւ պաճուճազարդ ե-կեղեցին որ 'ի Մշկավանս (կամ Մշակավանս), 'ի մեծա-տօնին յունական 'ի ժամ ճաշոյ, և չորս պատարագօղ ընդ մեծ զենմանն նուիրեցան»:

## ՅՕԴՈՒԱԾ Ե

Հիւանդութիւնք և մահք յիշատակեալք:

### ԴԱՐ Դ

Վասն հիւանդութեան որ անկաւ յԱրշակաւան յանի-ծից սրբոյն Ներսէսի՝ գրէ Բուզանդ Դ. 13. «Զոր Զառա-կեալս իմն կոչեն. իսկ կէսքն ժանտ անուանեն»: Ուր 'ի մէջ երից աւուրց քան հազար երդք մարդկան սատակեալ ասէ: Իսկ Մեսրոպ յիշելով զնոյն 'ի թիւն ժէ. գրէ. «Եւ ցաւն այն անուանեցաւ ժանտ. և ոմանք ասեն զնա Ցաւ Ներսէսի... և ցաւն այն ժանտ չէր լեալ 'ի վերայ երկրի»: Իսկ զմեռեալսն 'ի միում աւուր գնէ լեալ ութևտասն հա-զար տուն:

### ԴԱՐ Զ

Ըստ Կիրակոսի յաւուրս Յուստինիանոսի կայսեր յիշատա-կեալ. «Եղև մարդամահ տարաժամ, որ ընաւ ոչ էր լեալ. առաջին օր, երկրորդ օրն տասն հազար, և երրորդ օրն եօթնևտասն հազար, և չորրորդ օրն ութևտասն հազար. և թուեցին մինչև երեքհարիւր հազար՝ որք մեռանէին 'ի յօրն: Ի մէջ ձեռացն բուշտ ելանէր, և առժամայն մե-ռանէին. մարդ 'ի տանն (գայր), և տեսանէր զամենեսին մեռեալ. և նեխեցաւ քաղաքն, զի ոչ կարէին թաղել զմեռեալս. և տարածեցաւ ընդ ամենայն տիեզերս, և

բազում քաղաք անմարդ մնաց »: Սակս տարածեալ աւե-լոյ ընդ ամենայն տեղիս՝ եղաւ սով, բայց բանն է զԹուա-կանս կայսերն, զոր մին Յուստինիանոս կոչէ: Այս է և յիշատակեալն 'ի Սամուէլէ յամի տեառն 546. « Սաստիկ մարդամահ, որպէս ոչ ոք յիշէ, ակնեալ յարևմտից »:

. ԴԱՐ Թ

Ըստ Ասողկայ Գ. 3. յիշատակեալ. « Եւ 'ի նորին ամի ('ի յԻԴ. 875) յորում նստաւ տէր Գէորգ կաթողիկոս, Մահն ահագին համաշխարհական »:

Ըստ Կիրակոսի. « Իսկ յետ Ներսէսի ամենայն կաթողի-կոսութեան տէր Յովհաննէս ամս հնգետասան. յաւուրս սորա մեկս (812) մահ սաստիկ եղև ակնեալ յարևմտից, և յա-տանիսն Հայոց նշանս աքանչելիս եղև, զի հուր բորբոքեալ այ-րէր զապարանս համանկարին պալատի՝ որ վերակացու էր աշխարհիս »:

ԴԱՐ ԺԱ

Ընդարձակող Սամուէլի գրէ 'ի թուին ՆԾԵ. 1006. « Եղ աստղ մի 'ի տեսիլ հրոյ, որոյ զհետ եղև շարժ սաստիկ, և ցաւն որ կոչի խոյնկ. և պակասեցան մարդ և անասուն յոյժ »:

# ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ԼԵՌԻՆՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

ԼԵՌՆԱՅԻՆ լինել մերոյ աշխարհիս վկայէ Ստրաբոն [1] յասելն. « Իսկ 'ի Հայաստան բազում են լերինք, և բազում լեռնադաշտակք, յորս և ոչ իսկ որթ դիւրաւ բուսանի. և բազում հովիտք, ոմանք չափաւոր՝ և ոմանք կարի իմն արգաւանդք »: Զնոյն վկայէ և 'ի գրեւն խառն զՄարաց և զՀայոց [2]. « Ի մէջն անկանին Մարք և Հայք, բազում լերինս ունելով և բազում լեռնադաշտակս, և մեծամեծ հովիտս, և բազում լեռնաբնակս »: Որպէս և 'ի Թղթ. 520 'ի գրեւն զՄարաց. « Անկեալ 'ի մէջ Տօրոս (լեառն) անդադնօր 'ի բազում մասունս բաժանի, և 'ի խոխոմս խորաձորս. զոր և 'ի Հայաստան է տեսանել »: Արդարև բազմօք բարձրաբերձ լերամբք զարդարեալ գոլով աշխարհս, բազում են և նորա խորաձորք. բայց լերինք նորա են երևելիք, որպէս և վկայէ Պտղոմէոս՝ [3] որ յետ յիշելոյ լերինսքանի մի՝ Հայաստան աշխարհիս, զոր և մեք ունիմք առորև յիշել, ասէ. « Են և այլ լերինք արժանի յիշատակի »: Ցորս յամենեսին Մասիս գոլով մի միայն լեառն յանուանէ ծանուցեալ 'ի մէջ նախնական լերանցն՝ որ յառաջքան զջրհեղեղն, արժան է նախ և առաջ զայնմանէ գրել ըստ կարգի, մանաւանդ զի վասն տեղւոյ նորա 'ի բազում օտարախորթ կարծիս մտաբերեալ տեսանեմք նաև զերևելիս յաշխարհագրաց ; սակս անտեղեակ գոլոյ պատմութեան աշխարհիս:

1 Գիրք ԺԱ. Թղթահամար 527. և 528. ըստ առ. փարիզու:

2 Ի Թղթահամարն 522:

3 Գիրք Ե. գլ. 13:

ասէր փրկեալ Արարատեան աշխարհէն. այս ճիւղն է Հայաստանեաց։ Եւ սխալին որք զՀակառակն գնեն. ոչ թէ սուրբ գիրք եբրայականք Արարատ անուանեն միայն զգօտի լերանցն Համարին՝ ուր Հանգեաւ տապանն Նոյի. որպէս և Պօշար Հտ. ա. Թղթ. 16. կարծէ թէ անուն այսր լերին էր պատճառ Արարատ անուանելոյ սուրբ գրոց եբրայեցւոց զՀայաստան. զի անծանօթ էր Պօշարայ արքայանիստ նաՀանգն Արարատ։

## ՍԱՐԱՐԱԴ

Այս անուն կոչէ Բուզանդ[1], առ որում միշտ այսպէս գրի լեառն. կոչելով Սարարադ լեառն կամ լեառն Սարարադեան. դպր. Գ. գլ. 10. իսկ տեղւոյն կամ սաՀմանն գրի Արարատեան։ իսկ տարբերութիւնս այս ՚ի ռամկական անուանակոչութենէ թուի ծագիլ. զի որպէս այժմ զլեառնն կոչեն Սար, թուի թէ և յայնժամ կոչէին, և զՀետևեալ անունն ՚ի մի յօդելով առ Համառօտելոյ կոչէին Սարարադեան, փոխանակ կոչելոյ Սար Արարադեան. որպէս և Կաղմէա ՚ի մեկնութեն Ծննդոց. Է. 4. յառաջ բերեալ զայժմեան անունն ռամկական Մասիս Սար, ՚ի մի յօդելով իբրև մի բառ՝ նոր անուն Հնարէ՝ Մէսէսմասր, կամ Մասէսսար ՚ի ճանապարՀորդութեան Կեմմելերայ։

## ԼԵԱՌՆ

Այսպէս սոսկ Լեառն կոչեցաւ առ Եպիփանու[2]. առ որում յունական Հնչմամբ գրի Լիվառ. իսկ լատինն Հնչմամբ Լուպար. զոր այլևայլ օրինակաւ մեկնել ջանին մեկնիչք, բայց նոյն իսկ անունն ցուցանէ լինել Հայկական, այսպէս կոչեցեալ ՚ի բնակչաց իբր անուն սեփական այսր լերին, որ գլխաւորն էր ՚ի մէջ ամենայն լերանց սակս մեծութեան դիրից և սակս Հռչակաւոր անցից՝ որ անցին ՚ի վերայ նորա. զոր վասն աշխարՀիկ և Եպիփան իբր յատուկ անուն յիշատակէ. որ առաւել մերձենայր յուղիղ Հնչումն Հայկական, թէ յունական տառիւ գրէր Լիվառն։ Ըստ

1 Այսպէս գրի և ՚ի Ճանապարհորդութեն Հաֆիֆոսեանց. « ԵՀաս տապանն ՚ի գլուխ լերինն՝ որ է Սարարադայ »։ Բայց օրինակն է մի միայն, և ըստ ասելոյ Աւգերեան, ոչ գրի անդէն։ Նոյնպէս գտանելք գրեալ և ՚ի քանի մի Հայերէն օրինակս աստուածաշնչի, թերևս շփոթ գրչութեամբ ՚ի լերին սարարադայ՝ փոխանակ գրելոյ ՚ի լերինս արարադայ։

2 Եպիփան ՚ի գիրս Հերձուածոց. գիրք ա. Հատ. ա. յօդ. 4։

ամէն օրինակի և սուրբ Քաղաք անուանեցան 'ի բնակչաց Հին և Նոր Հռոմք :

## ԿՈՐԴՈՒԱՑ ԼԵԱՌՆ. կամ ՔԱՐՏՈՒ և ՔԱՐՏԱ

Այսպէս կոչեցաւ 'ի բազմաց նախնեաց սակս միացեալ համարելոյ զՄասիս ընդ գօտւոյ լերանցն Կորդուաց, զոր և արեւելեան ազգք ամենայն կոչէին Քարտու կամ Քարտա. յանուանէ Կորճէից գաւառին. այլ և վասն այսր ստորև, ուր ունիմք խօսել զգօտւոյ լերինս : Նա և սակս մերձաւորութեան անուանցս Արարատ և Քարտու, զոր դիւրաւ կարէին շփոթել և փոխել 'ի Քարարատս, և կրճատելով Քարատա: Ցանել և զայլ պատճառ, ըստ որում 'ի վաղուց ժամանակաց բազմօք յառաջ քան զՄծբնայ Հայրապետն՝ պահեալ լինէին երևելի մասունք տապանին Նոյի, ոչ 'ի միում տեղւոջ, այլ 'ի զանազան տեղիս լերանցն Կորդուաց, որպէս ունիմք գրել 'ի գլուխն Բնակչաց, վասն բնակութեան Նոյի. և նորին աղագաւ ուր պահեալ գտանէր մասն ինչ տապանին՝ անդ կարծէին բնակիչք նոյն տեղեաց և զհանգչել տապանին և զելանել Նոյի, որ էր վրիպակ: Որով զանուն Կորդուաց լերին մանաւանդ արաբացի մատենագիրք՝ սեփականեցին լերին՝ ուր հանգեաւ տապանն Նոյի, այս ինքն Մասիս լերին, և գտանել նոյեան տապանին սեփականեցին զերեթէ համօրէն գօտւոյն Կորդուաց լերին :

## ՃՈՒՏԻ

Այս նոյն իսկ անուանս Կորդիք, այսպէս հնչեալ առ արաբացի մատենագիրս, որպէս է տեսանել առ Ասսեմանեայ, և առ Երպելօայ :

## ԿՈՐԿԻՒՐԵԱՆ

Այս անուն գտանի 'ի բանս Աղէքսանդրի բազմավիպի, զորոյ, գրեալ 'ի ներքոյ Միւնոկեղոսի 'ի Քրոնիկոնին Եւսեբեայ հանեալ, գրէ Կորկիւրեան. բայց վրիպակ գրչաց համարեալ զայս Կատրոյ՝ ուղղէ յանուն Կորդուան. այս ինքն է՝ Կորդուացւոց. որ արդարև այնպէս գրի և 'ի բնիկ Քրոնիկոնին Եւսեբեայ, որ գտաւ հայերէն: Այլ Պօշար գիրք ա. գլ. 3. ուղիղ համարեալ զԿորկիւրեանդ անուն՝ զայլ և այլ բանիւք անկանի, հաւատալով թէ այսպէս կոչէր 'ի բնակչաց Հայ-

ոց . որոց լեզուն, ասէ, քանզի ըստ մասին էր արաբական՝ որպէս գրէ Ստրաբոն, 'ի դէպ էր նոցա այնպէս կոչել . ըստ որում Քօրդոս 'ի բարբառ արաբացւոց նշանակէ նաւ երկայնաձև, կամ նաւ մեծ, որք են բանք ստորք 'ի ճշմարտութենէ : Բայց Պոշար մերձենայր 'ի ճշմարտութիւնն՝ եթէ դիտէր լինել մինչև ցայժմ 'ի Հայս գաւառ ինչ ըն-բանից Գրգառա ձայնեալ, պար առեալ զհիւսիսակողմամբք Ռահվայի 'ի սահմանս Բաղիշոյ, զորմէ մինչև ցայժմ ոչ պակասին և առ բնակիչս բանք յարմարեալք առ պատմութիւն Ջրհեղեղին, բանաստեղծելով իմն առասցեալ . որպէս թէ նոյեան տապանին նախ յայս լեառն պատահեալ, իսկ նորա առ Մասիս առաքեալ ասելով . Գնա 'ի Մասիս, զի բարձր է քան զիս[1] : Զայս եղեալ մարթ էր ասել, թէ որպէս այլք 'ի զանազան լերինս եդին զնաւն տապանին, այնպէս և բազմավէպն Աղէքսանդր եդ 'ի լերինս Գորդուաց, ուր կամ հաւաստեաւ կայր մասն ինչ տապանին, և կամ զԳըր-գուռն նոյն համարելով ընդ գաւառս Կորդուաց և Մասեաց՝ յայս անուն կոչեաց :

## ՏՕՐՈՍ կամ ՏԱՒՐՈՍ

Զայս անուն տայ Հերոնիմոս լերին կամ մանաւանդ լերանց՝ յորս հանգեաւ տապանն Նոյի ասելով[2] . « Արարատ նահանգ 'ի Հայաստան է դաշտավայր, ընդ որ հոսի Երասխ, բարեբեր ըզանչելի, առ ստորոտովք լերին Տօրոսի, որ մինչև ցայն վայր ձգի : Արդ և տապանն յորում զերծաւ Նոյ ընդ որդւոց իւրոց 'ի դադարելն Ջրհեղեղին, ոչ հանգեաւ 'ի լերինս ընդհանրապէս Հայաստանեայց, որ կոչի Արարատ, այլ 'ի բարձրագոյնս լերինս Տօրոսի, որ առ երի կան դաշտացն Արարատայ » : Կելլարիոս գիրք Գ . գլ . 11 . յայս բանս անդէպ համարի զդնելն Տօրոսի առ Երասխաւ . բայց ասելն Հերոնիմոսի յայս բանս նախ Արարատ կոչէ զնահանգն որ առ Երասխ գետով, որպէս է հաւաստեաւ . ապա զհամօրէն Հայաստան ըստ եբրայեցւոց կոչէ Արարատ . իսկ զինքն անուն լերինն՝ որ է Մասիս՝ անդրխառնելով Տօրոս կոչէ . զոր չէ պարտ վրիպակ համարել . զի որպէս ասելն անտանել 'ի ստորագրութեան Տօրոս լերանց, Ստրաբոն առ նախնիս այնպէս ստորագրէ զՏօրոս՝

1 Տե՛ս վասն այսր 'ի Նոր Հայաստանն . 'ի Թղթահանդէսն 178 :

2 Հերոնիմոս 'ի մեկն . Եսայ . ԼԷ :

որպէս թէ ոչ միայն 'ի Հարաւոյ Հայաստանեայց, այլեւ 'ի մէջն անդ աշխարհիս Հայոց ընթացեալ ցուցանէ. որով եւ լերինք աշխարհիս ըստ մեծի մասին ըստ նորա մարթ են կոչել Տօրոս. նախ իբրեւ ուղղին Հերմոնիման՝ եւ զայս լեռան տապանին ըստ Ստրաբոնի համարեցաւ լինել Տօրոս, հե-տեւելով անշուշտ աւանդութեան Նախնեաց։ Ըստ այսմ եւ մերքն զլեռանն Սասնոյ կոչեն Տօրոս. եւ 'ի ժամանակս ե-պիսկոպոսապետաց Լեւոնի եւ Անդրոնիկեայ՝ Վարագ կամ մանաւանդ Մարաթ լեռանն համարի 'ի կարգս լերանց Տօրոսի։

ՎԱՐԻՍ կամ լատին հնչմամբ ԳԱՐԻՍ

Տես վասն այսր սարոյ, ուր ասիւք խօսել զգօտւոյ լերինս։

ՄԻՆՆԻ կամ ՀԱՌՄԻՆԻ

Այս է անուն կարծեօք միայն հնարեալ 'ի յետագայից վասն անուան լերինս, զորմէ ըստ բաւականին տուաք տե-ղեկութիւն 'ի գլուխն Անուան Հայաստանեայց, 'ի խօսելն զանուանէս Արմենիա. անդ կարես տեսանել զամենայն։

Բ. Մերձաւորք Մասիս լերին։

ՄԵԾ

Սովին անուամբ կոչէ Խորենացին. Ա. 30. յասելն. "Բնակեցուցանէ յարեւելեայ ուսոյ Մեծի լերին մինչեւ 'ի սահմանս Գողթանն"։ Եւ ստորեւ. "Բնակեցուցանէ որ-դւովքն իւրովք յանդորրութեան պատառուածի փլածին Մեծի լերին"։ Եւ թէ այս Մեծ ասացեալ լեռանն է նոյն իսկ Մասիս, յայտ առնեն անուանքն անդէն յիշատակեալք, ուր բնա-կեցոյց մեծն Տիգրան զգերութիւն Մարաց, որք են Խրամ, Ջուղայ, Խոշակունի, որք անկանին ընդ արեւելս ուսոյ Մասիս լերինն. եւ առաւել յայտ առնէ 'ի վերջին տող նոյն գլխոյն, ուր 'ի մեկնելն զանուն Գողթան երգոյն՝ զգե-րութեան Մարաց աժդահակեանց յայտնի դնէ անդէն բնա-կեալ 'ի Մասիս։

## ԱԶԱՏ

Այս մականուն տուեալ լինի միայն յերգսն Գողթան 'ի պատմութեան զգերութիւն Մարաց, զորս 'ի շրջակայ աւանս բնակեցոյց մեծն Տիգրան: Զայս բան երգոյն յառաջ բերէ Խորենացի 'ի պատմութեանն Ա. 61. Թէ Արտաւազդ Թագաւոր 'ի խոր իմն ահագին անկեալ, անհետ եղև. զոր առեն երգիչքն Գողթան յանիծից հօր նորա Ա. Արտաշէսի պատահեալ նմա. քանզի Արտաշէս 'ի մահուան իւրում անէծ զԱրտաւազդ ասելով. "Եթէ դու յորս հեծցիս յԱզատ 'ի վեր 'ի Մասիս, զքեզ կալցին քաջք, տարցին յԱզատ 'ի վեր 'ի Մասիս, անդ կայցես, և զլոյս մի տեսցես": Զնմանն ինչ այսր բանի յառաջ բերէ և 'ի Բ. 30: Եւ քանզի միայն 'ի պատմութեան գերելոց Մարաց յիշատակի Ազատ անուամբ այս, Թուի 'ի պատճառս նոցա ընկալեալ զայս մականուն. զի 'ի գերեալսն Մարաց էին և զարմք Աժդահակայ, "որ ունէին զամենայն զառ ստորոտովն Մասեաց". որպէս գրէ Ա. 49. յորս էին Թագաւորազունք, նաև Թագուհիք առաջին տիկնինն Աժդահակայ. ըստ գրելոյ նորա Բ. 30. "Իսկ զԱնոյշ զառաջին կինն Աժդահակայ, և զազգումն 'ի սերմանէն Աժդահակայ աղջկունս հանդերձ պատանեկօք... բնակեցուցանէ", և այլն: Արդ որպէս յայտ է, և որպէս ունիմք գրեալ 'ի գլուխն Կառավարուն, առ մերսն քանզի Ազատ կոչէին Ազնուականք և քաջազունք, յայնմանէ երգիչք Գողթան բանաստեղծք՝ զտեղին ևս բնակութեան ազնուականաց կոչեցին Ազատ: Ի նշան այսմ յաւելլ և զայս, զի Թէպէտ արտաքոյ այսր երգոյ սակաւ ուրեք յիշատակի Ազատ մականուամբ, առ երկուս մատենագիրս ևեթ, սակայն նաև առ նոսա 'ի նմին պատմութեան անկման Արտաւազդայ յիշատակի. որպէս առ Թովմայի արծրունւոյ Դ. 11. յասելն. "Ընդդէմ նայելով լերանց այրարատեան Ազատն Մասեաց, ուր Արտաւազդն արտաշէսեան քարավիժեալ": Եւ 'ի վէպսն Շնորհալւոյն վասն նորին Արտաւազդայ.

Քաջաց առեն ըմբռն. կալեալ,
ՅԱզատ Մասեաց լերին տարեալ:

## Գ. Տեղի Մասեաց լերին :

Զլինելն Մասիս լերին 'ի Հայաստան՝ յայտ առնեն վկայութիւնք սուրբ գրոց, և նախնի երեւելի մատենագրաց, զորոց կարես տեսանել 'ի գլուխն Բնակչաց յօդ. Ը. այլ թէ յորում նահանգի Հայաստանեայց, արդեօք յայ-տարարեսցին, զայս յայտ առնէ նոյն իսկ անուն միոյ 'ի գաւառաց աշխարհիս, որ կոչի յանուն լերինն՝ Մասեաց ոտն, և է մի 'ի գաւառացն Այրարատ նահանգի, ուր և Ոտն ասելով յայտ առնէ՝ թէ զայր Մասիս լեառն, առ որոյ ստորոտ ձգէր այս գաւառ. մինչ ցուցանէ և Ակոռի գիւղն, զոր նախնիքն գնեն 'ի գաւառն Մասեաց ոտին, այս գիւղ մինչեւ ցայժմ տեսանի կառուցեալ 'ի մասին միում նոյն իսկ Մասեաց լերին : Յայտ առնէ զայս և պատմութիւն Խոր-ենացւոյն Ա. 12. ուր 'ի պատմելն զԱմասիայ նահապետէ, ասէ. "Ամասիա բնակեալ յԱրմաւիր (որ էր յԱյրա-րատ նահանգի) անցանէ զգետովն (Երասխայ) մերձ 'ի լեառնն հարաւոյ. և շինէ անդ առ խորշիւք լեռնառանին մեծամեծս ծախիւք երկուս տունս. զմին յարեւելս կոյս մօտ յականս աղբերցն՝ որ առ ստորոտով լերինն ելանեն, իսկ զմիւսն յարեւմտաւ կոյս նորին տանն": Զկնի յաւե-լու, բայց զլեառն անուանէ Մասիս. յայտ առնելով թէ զոր նախ լեառն հարաւոյ կոչեաց ըստ դիրից Արմաւրայ հայելով, նոյն է որ կոչեցաւ Մասիս : 'Ի գրելոցս առաջի ի-մացցիս, թէ առ օտարազգի մատենագիրս սուրբն Հերո-նիմոս աւելորդ եդ զԱրարատեան լերինս, կամ զառ Հմմանն ուր էջ տապանն Նոյի առ Երասխ գետով, թէպէտ և զլեառն անուանէ Տօրոս, զորոյ զպատճառն գրեցաք 'ի վե-րոյ : Բայց այլ եւս զանազան մատենագիրք եդին 'ի զանա-զանս տեղիս, զորս մի առ մի յիշեսցուք յառաջիկայս, զա-տուցեալ 'ի սոցին որոշելով :

## Ա. Ի ՓՌՒԿԻԱ

Ըստ ոմնի ըստ բանին գտելոյ 'ի պատգամն Սիբիլլեայց այսպէս. "Ի սահմանս մեծաւ Փռիւգիոյ (ասէ) ամբար-ձեալ կայ լեառն խիստ դժուարին և բարձրագագաթ, զոր ա-նուանեալ կոչեն Արարատ": Ուրանօր բղխէ, ասէ, Մար-սիաս գետ, որ մերձ 'ի Կելենաս քաղաք, և հուպ 'ի յաղ-բիւր Մէանդր գետոյն բղխեալ զեղու 'ի նոյն Մէանդր :

Այս Սիբիլլա զինքն դնէ լինել նու Նոյի, զերծեալ ընդ-նմա և ընդ առն իւրոյ 'ի ջրհեղեղէ, զորոյ զառաւն կրկին բանիւ ցուցանէ Գօշար գիրք ա. գլ. 3: Մի՛ զի Մարսիաս անուն եւ զինի. զի նախ յանուն Միդասայ Թագաւորի կո-չէր աղբիւր Միդասայ. զինի նորա եղև Մարսիաս, յորոյ անուն և գետն կոչեցաւ Մարսիաս. արդ նու Նոյի յա-ռաջ քան զառաս գոլով զիարդ կարէր յիշել: Երկրորդ՝ Արարատ լեառն, ասէ, էր մի 'ի բարձրագոյն լերանց, այլ անեղին մերձ 'ի Կելենաւ՝ ուստի բղխէ գետն Մարսիաս; և ոչ իսկ լեառն է, այլ բլուր ինչ կամ դաշտավանդ: Ձեր-րորդն մեք յաւելցուք. Թէ անուանս Արարատ, քանզի յա-ռաջ քան Արայի նահապետին եղաւ՝ ոչ կարէր զայն յիշել Սի-բիլլայն նաւ նահապետին Նոյի, բաղմօք յառաջ գոլով քան զԱրայ: Եւ այսպէս յայլոց յետնոց յարմարեալ է այս բան սխալականն. որում պատճառ զայն դնէ Գօշար՝ զի մերձ 'ի Կելենաւ առ Մարսիաս գետով քաղաք կառուցաւ կամ 'ի Ցելեւկոսէ, և կամ 'ի Սոտէր Անտիոքոսէ Ապամիա ա-նուամբ, ուր խաղացին բնակիչք Կելենայց. այսմ Ապա-մեայ մականուան եղաւ Կիբոտոս, որ նշանակէ Տապան. վասն որոյ և դրէ զինի Սիբիլլային, Թէ ուր բղխէ Մար-սիաս գետ, անդ 'ի գլուխ բարձր լերին հանդչի տապանն: Այլ մարթ էր, ասէ Գօշար, զայլ պատճառ յառաջ բե-րել վասն Տապան կոչելոյ, այս ինքն է զձև երկրին, որ յերից գետոց պատեալ գոլով բերէր զձև տապանի. որ-պէս և նաւահանգիստն Աղեքսանդրիոյ կոչեցաւ Կիբոտոս, այսինքն Տապան, 'ի պատելոյ ջուրց ծովածոցին:

## Բ. Ի ՄԻՋԱԳԵՏՍ

Նոյն դնի առ Ստրաբոնի և առ Պտղոմեայ լեառն ինչ Մասիոս անուամբ. բայց այս լեառն այլ է 'ի մերոյս Մա-սիս լեռնէ. զայս որոշումն յայտնի առնէ և նոյն ինքն Ստրաբոն, զի 'ի յիշելն զմերս Մասիս կամ ըստ նորա Մա-սիոս ժա. 506, յայտնի դնէ զանուանն ասելով. « Զայս է տեսանել և յԱրտաշատ Մարաց, և 'ի Մասիոս լեռանն Հայաստանեայց »: Իսկ 'ի յիշելն զմիւս Մասիոս ժա. 527. դնէ « Ի վերայ Միւգդոնիոյ 'ի Միջագետս ընդ հարաւա-կողմն եղելոց, յորս է Նսիբիս (Մծբին), ընդ հիւսիսա-կողմն է Սոփենի 'ի մէջ Մասիոսի և Անտիտորոսի »: Եւ 'ի ժզ. 747. որոշակի դնէ զՄծբին 'ի ներքոյ Մասիոս լերին: Սոյնպէս և Պտղոմէոս Ե. 18. զՄասիոս յայտնի

դնել 'ի Միջագետս, և ոչ 'ի Հայաստան: Արդ այսպէս որոշ զանազանութիւն յայտնի կացուցանէ՝ թէ Մասիս Միջագետաց էր այլ լեառն: Այսմ'ի վերայ հաստատէ և Նիքողայի 'ի ծԹ. ճառ ծննդոց, գրէ. "Պարտ է գիտել թէ Մասիս լեառն Միջագետաց՝ այլ է 'ի Մասիսէ հայաստանեաց": Տես վասն այսր և 'ի Միջագետս, զորմէ ուրոյն ասնիմք խօսել: Ցայլ միոս 'ի Միջագետս դնի լեառն տապանին Նոյի 'ի յետագայ մատենագրաց աւանդութեանց, զորմէ տե՛ս 'ի սորին. նաև 'ի գլուխն Բնակչաց. յօդ. Ե:

## Գ. Ի ՄԷՋ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ ԵՒ ՊԱՐԹԵՒԱՑ

Պրոկոպիոս գազացի որ 'ի վեցերորդ դարուն, 'ի մեկն. Ծննդ. առ նուազ տեղեկութեան մերոյ աշխարհին՝ 'ի յիշելն զԱրարատ, վասն տեղւոյ նորա այսպէս գրէ. "Արարատ միջին 'ի մէջ Հայաստանեաց և Պարթևաց": Ափրիկանոս առ Սինկեղոսի դնէ 'ի Պարթևս. իսկ Կեդրենոս գուցէ լաւ ևս ասէ. "Զլերինս Արարատայ գիտեմք լինել 'ի Պարթևս Հայոց": Ընդ որ չէ պարտ զարմանալ, զի զայս սխալութիւն և յայլ մատենագիրս օտար ազգաց է տեսանել վասն այլոց նահանգաց մերոց. զոր օրինակ առ Ստեփաննոսի բիւզանդացւոյ Գուգարք նահանգ մեր դնի "Տեղի 'ի մէջ Կողքաց (Կողքիսաց) և Վրաց արևելեայց":

## Դ. Ի ՄԷՋ ՀԱՅՈՑ ԵՒ ԿՈՐԴՈՒԱՑ

Եպիփան յայտնի դնէ զտապանն Նոյի իջեալ յարարատեան լերինս, բայց զնոյն Արարատ ոչ դնէ ուղղակի 'ի Հայս, այլ առ նուազ տեղեկութեն դնէ 'ի մէջ Հայոց և Կորդուաց[1]. "Ցետ ջրհեղեղին (ասէ) յորժամ տապանն Նոյի հանգուցեալ կայր 'ի լերինս Արարատայ, 'ի մէջ Հայոց և Քարդուանեաց, 'ի լերինն որ կոչի Լուբար": Քաջտուն առնումք իմա աստանօր զԿարթունիս կամ զԿորդուս, ուր և գրեալն 'ի լերինս Արարատայ, զԱրարատ առնու փոխանակ նահանգին:

1 Եպիփան ընդդէմ հերձուածոց. գիրք ա. հատոր ա. յօդ. 4:

## Ե . Ի ՉԻՆՍ

Մեր եւ զկեանս Արտաւազդ Շուքերիւր ամն մատենագիր՝ ոչ առ նուազ տեղեկութեանն ստացելով որպէս նախագրեալքն, այլ առ կարի իմն զմայլելոյ ընդ հնումն Չինաց և առ նորաստրութեան, յորմէ դժուարին է խորշել հեռաքննին 'ի գիտաս պատրաստելոցն : Բայց զանազան փաստիւք մերժեն զայն անգղիացի հեղինակք ընդհանուր պատմութեան, որպէս նշանագրեալ է մեր 'ի գլուխն Բնակչաց . յօդ . է :

### Դ . Դիրք Մասիս լերին և փոփոխ լինելն նորա :

Սամս այսոր հռչակաւոր լերինս թէպէտ չիք ինչ ուրեք որոշակի յիշատակեալ զօտեւոր լինել, բայց բանք նախնեաց ցուցանեն զսա դասեալ 'ի կարգս զօտեւոր լերանց. մի՝ զի բազում ուրեք 'ի բազմաւորականն յիշատակեն Արարատեան լերինք կոչելով, որպէս է տեսանել 'ի բանս նոցա յառաջ բերեալս : Երկրորդ զի և առ մեր մատենագիրս՝ որպէս և առ օտարազգիս ոմանս՝ որք 'ի հայաստան դնեն զՄասիս, կամ զկեանն՝ ուր էջ տապանն Նոյի, յանկարծ տեղիս յիշատակեն՝ յորս ոչ անկանի ընդ լեառն Մասիս . զի Բուզանդ Գ . 20 . դնէ յԱպահունիս գաւառ Տուրուբերանոյ . "Այլ յերկրին Ապահունեաց՝ յառինն մեծի լերինն Մասեաց տեղին զայն որոասցուք" : Բայց Ապահունիք էր գաւառ ծովեզերեայ, մերձ 'ի ծովն Բզնունեաց, ուր ոչ անկանէր առն Մասիս լերինն : Թովմա Արծրունի Դ . 11 . այնպէս խօսի՝ զի երեւի մերձ 'ի Ճուաշռոտ գաւառ Վասպուրականի դնել զՄասիս և զկեհն ուր անկաւ Արտաւազդ արքայ, զոր մեք ցուցաք լինել 'ի Մասիս . "Խաղացեալ, ասէ, 'ի Ճուաշռոտ 'ի Գետս աւանն՝ շինէ անդ . . . ընդդէմ նայելով լերանց այրարատեան ազգաց Մասեաց, ուր Արտաւազդն արտաշէսեան քարավիժեալ խոհամանայր 'ի կոշտն կոհակին" :

Ի ծանօթութիւն եպիսկոպոսարանաց Լեոնի և Անդրոնիկոսի՝ իջանել տապանին Նոյի դնի 'ի Վարաթիզէն լեառն Հայոց . "Եւ է լեառն բարձրագագաթն Վարաթիզէն անուն, յորում տապանն Նոյի բարձեալ 'ի ջուրց՝ հանգեաւ 'ի գլուխ նորին" : Այս Վարաթիզէն անուն եթէ է աղաւաղումն անուանս Վարազ, լեառն տապանին Նոյի լինի 'ի Տոսպ գաւառ Վասպուրականի . իսկ թէ առցուք

չենցիոս Պէլլօվաչէնցի որ 'ի Հինգերորդ դարուն՝ գրէ. « Այս լեառն Արարատայ բարձր է յոյժ. և ոչ ոք երբէք 'ի մարդկանէ պատմի ելեալ անդր, բայց միայնակեաց ոմն ևեթ »: Սոյնպէս բարձր յոյժ դնէ Գէորգ Ելմակինոս 'ի պատմութիւն արաբացւոց, զորոյ զբանս եդաք 'ի վերոյ: Իսկ 'ի Հին Ճանապարհորդաց Մարկոս Պօղոս գրէ յիւրում Ճանապարհորդութեան, որ յերեքտասաներորդ դարուն. « Ի մեծ Հայս է լեառն մի յոյժ և բարձր, յորոյ վերայ հաստատեալ ասի տապանն Նոյի. այնչափ է լայն և երկայն, մինչև չէ մարթ ընդ երկուս աւուրս շուրջ պատել. 'ի գլուխ նորա գտանի միշտ ձիւն այնչափ բարձրացեալ՝ մինչև ոչ ուրեք մարթ է ելանել. վասն զի ձիւնն ոչ լուծանի իսպառ, այլ տակաւ 'ի վերայ միմեանց տեղացեալ հանապազ թանձրանայ »:

Իսկ Հրեայք 'ի սկզբանէ անտի զայս լեառն Արարատեան բարձրագոյն դնեն քան զամենայն լերինս աշխարհի. և զայս իմն յայտնի ցուցեալ 'ի սուրբ գրոց. զի (Ծն. Է. 4.) գրի, ասեն. « Եւ նստաւ տապանն յեօթներորդում ամսեանն 'ի քսան և եօթն ամսոյն 'ի լերինս Արարատայ ». յորում ժամանակի տակաւին ընդ ջրով էին ծածկեալ գլուխք ամենայն լերանց աշխարհի. զի գլուխք այլոց լերանց բազմօք զկնի սկսան երևել. այսինքն « յամսեանն մետասաներորդի ( որպէս ասէ անդէն սուրբ գիրն ) որ օր առաջին էր ամսոյն՝ երևեցան գլուխք լերանց »: Բայց Լուդովիկոս Քաբէլլոս 'ի պատմութեան ջրհեղեղին բազմօք մաքառի յայսմ ընդդէմ Հրէից, պատճառս բերելով՝ թէ բեռնաւորեալ նաւ մեծ, զոր օրինակ էր տապանն Նոյի, երկու մասամբք ընկղմեալ կայր 'ի ջուր, և միով մասամբ միայն մնայր արտաքոյ 'ի վերոյ ջրոյն. վասն որոյ 'ի կանխագոյն նստելոյ տապանին 'ի գլուխ Արարատեան լերին՝ չէ մարթ իմաստասիրել զլինել նորա բարձր քան զայլ լերինս: Այլ մտադիւր հաստատեալ զբանն սուրբ գրոց Է. 3. տեսանեմք, զի 'ի խօսելն զչափոյ զիջանելոյ և նուազելոյ ջրոյն յերեսաց երկրի, և ասել անդէն առ նմին թէ նստաւ տապանն յարարատեան լեառն, իբր 'ի նշան չափու զիջման ջրոյն յառաջ բերէ զայս: Վասն որոյ պարտ է դնել այսպէս, թէ ջուրն այնչափ զիջաւ, մինչև գլուխ լերին Արարատայ բարձրագոյն գոլով երևեցաւ, և տապանն Նոյի յանկեան ինչ լերին՝ ուրանօր դեռ ծածկեալ ունէր ջուրն ըստ բաւականին՝ նստաւ, ոչ կարելով շարժիլ: Այսմ ապացոյց այն է՝ զի անմիջապէս զկնի

լեալ սեաւն դղրանն եկեղեցւոյ՝ պարտ էր լինել ոչ քար հաստարակ , այլ կիճ :

## Է. Այլք Մասիս լերին :

Մասայլին անցք այս է՝ զի հանդերձ տապանաւն Նոյի 'ի վեր լերինս 'ի համաշխարհական ջրհեղեղին , և անկեցաւ արթ 'ի վերայ նորա . զառաջինն ունիմք 'ի սուրբ գրոց . իսկ զերկրորդն յաւանդութենէ ընկալեալ , որք զայգի անկեալն Նոյի զնեն 'ի գիւղն Ակոռի . իսկ Ակոռիս այս է 'ի միում մասին նորին իսկ Մասեաց լերին , որպէս և մինչև ցայսօր տեսանի : Մի յերևելի անցիցն է որ պատմի 'ի գիրս և եղանակէն նոյ Յակոբայ Մծբնայ յայս լեառն , և բանալն աղբիւր ջրոյ : Իսկ առ Խորենացւոյն ա . 30 . յիշատակի երկրաշարժումն , և յայնմանէ փլուզանիլ մասին հնչ այսր լերին . "Բայց զնախատասցեալ կինն Անուշ բնակեցուցանէ որդւովքն իւրովք յանդորրութեան ստորոտ փլածին մեծի լերինն , զորմէ լեալ ասեն յահագին իմն շարժմանէ , զոր պատմեն որք բազմաշրջութեամբ հրամանաւ Պաղամեայ ստուգաբանողք զննականէ մարդկան չափեցին ,, : Կամ 'ի յերկրաշարժութենէ ասեն՝ և կամ յաւէտ 'ի հրաբղխից՝ որպէս կարծեցին ոմանք 'ի բնաբանից մեզ ծանօթ եղելոց՝ ձևացաւ այն ահագին խոր վիհն մինչև ցայժմ մնացեալ , ուր անկաւ Արտաւազդ արքայ . "Ադմկեալ իմն , ասէ Խորենացին (բ. 61), 'ի ցնորից խելագարանաց , ընդ վայր յածելով երիվարաւն՝ անկանի 'ի խոր իմն մեծ . և խորասոյզ լեալ անհետի ,, : Զայս խոր մեծ ոչ յիշէ Խորենացին յայս բանս թէ ուր էր , բայց աստի որոշէ յասելն՝ թէ զայս պատահար ընծայեն անիծից Արտաշէսի հօր Արտաւազդայ , որ անէծ զնա նորա անկանել 'ի խոր իմն Մասիս լերին , զոր աստ կոչէ Ազատ [1] :

[1] Զբանս Խորենացւոյն տե՛ս 'ի մեր. 61 : Տե՛ս և 'ի Նոր Հայաստան 258 : որ 'ի մանկանանց լերինս Ազատ . երեւ

# ՏՕՐՈՍ

## Ա. Անուն լերին:

Լեառն անուանի գրեթէ քան զամենայն լերինս Հայաստանեայց 'ի պատմութիւնս մեր, նաեւ 'ի պատմութիւնս օտար ազգաց. առ որս գրի Դաւրոս, որ նշանակէ Ցուլ. որոյ տառադարձութիւն է առ մեզ Տաւրոս, և իբր ռամկօրէն Տօրոս: Բայց որպէս նշանագրեալ է մեր 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 89 և 90. բնիկ նախկին անուն պարտ է համարել զՏաւրոս. այսպէս անուանեալ յանուն միոյ 'ի կրտսերագունից որդւոց Սեմայ. և աստ 'ի Յունաց մակեդոնացւոց եկելոց յաւուրս մեծին Աղեքսանդրի փոխեալ 'ի Դաւրոս, որպէս էր սովորութիւն նոցա, որ և էանց առ հռոմայեցիս. և 'ի գրոց նոցա և Յունաց՝ էանց աստ առ մեզ և կոչեցաւ Տօրոս. զորոյ զնշանակութիւն գտանեմք 'ի կիր արկեալ առ Բուզանդայ Գ. 14. 'ի գրելն վասն Դանիէլի. "Եւ յաճախ (գնայր) յականս աղբերս 'ի ներքոյ սարաւանդի մեհենատեղւոյն Հերակլեայ (որ յԱշտիշատ), որ կայ դէմ յանդիման լերինն մեծի՝ որում Ցուլն (Տօրոս) անուանեալ կարդան": Նոյնպէս և վասն լերինն Տօրոսի համարիմ 'ի կիր արկեալ առ նորին Բուզանդայ, Գ. 7. ուր ասէ վասն սարմատացւոց ազգաց բնակչացն Կովկասու, որք զեղան 'ի Հայաստան. "Բանակեալ էին նոքա 'ի լերինն որ կոչի Ցլու գլուխ": Այսինքն է՝ գլուխ Տօրոսի լերին: Եւ 'ի Գլ. 8. կրկնէ զնոյն առանց յիշելոյ զլեառն իբրեւ տեղի ինչ կամ գիւղ. "Եւ ետ Վաչէի զօրավարի զգաւառս Ջանջանակին, և զՋորաբաշխիս, և զՑլու գլուխ ամենայն գաւառակօքն համդերձ":

Առ հռոմայեցիս այնչափ ընդարձակ համարեալ եղեւ լեառնս այս Տօրոս աշխարհիս Հայոց, զի յետ գրաւելոյ նոցա զմասն ինչ Հայաստանեաց՝ իբրեւ դէպ եղեւ նոցա դրամ հատանել, 'ի նշան հայաստան աշխարհին եդին 'ի վերայ դրամոյ քանդակ Ցլու, որ առ նոսա կոչի Դաւրոս, այն է՝ Տօրոս. և 'ի վերայ ցլու նստեալ կերպարան մարդոյ ձեռամբն կալեալ զեղջերացն ցլու. շուրջանակի գիր դրոշմեալ 'ի բարբառ հռոմայեցւոց, Հայաստան նուաճեալ: Իբր մի և նոյն անուն ասել կամելով Լեառն ցլու, որ է Տօրոս, և նոյն որ Հայաստան:

### Բ. Ընթացք գօտւոյն Տօրոսի :

Աշխարհագիրն 'ի զանազան տեղիս խօսելով զՏօրոսէ՝ յայտ ընդարձակ ձգէ զընթացս նորա, զոր համառօտելով բերցուք աստանօր : Ի Թղթահամարն 130 ասէ. " Ի մէջ Տօրոսի են Լեռնաբնակք, Բռնօրամիտասք, Բռողիք, Միդք (որ է Մարք), Հայք, Կիլիկեցիք, Լիկաոնացիք, Բիսիդք (Պիսիդացիք) ": Իսկ գիրք Ժա. Թղթ. 490. երկու գօտի լինի ընդ մէջ հատանէ, ասէ, Տօրոս զցամաքն Ասիոյ յարեւմտից յարեւելս ընթանալով, սկսեալ 'ի ցամաքէ՝ որ է հանդէպ Հռոդոս կղզւոյ, մինչեւ յարեւելեան ծայրս Հնդկաց եւ Սկիւթիոյ. զլայնութիւն Տօրոսի բազում ուրեք դնէ ձգեալ ստադարէզս երեք հազար, 'ի բազում մասունս բաժանելով : Ցայնչափ լայնութիւն լերինս պարփակեալ կան զանազան ազգք, ոմանք անծանօթք, իսկ ոմանք յայտ ծանուցեալք ասէ. զոր օրինակ են Պարթեւք, Մարք եւ Հայք. զոսա եւ զկապադովկացիս 'ի 491 եւ 492. ընկալեալս դնէ 'ի մէջ Տօրոսի : Ի Թղթ. 497. դրէ վասն Մասքիքեան, Աքիտիս, եւ բարխարեան լերանց. " Սոքա ամենեքին են մասունք լերինն Տօրոսի, որ զհարաւային կողմն հայաստանեաց պատէ. անջատելով զնա 'ի Նամանէ, եւ 'ի հիւսիսակողմն ընթանալով մինչեւ 'ի Կովկաս եւ 'ի ծովեզերս Եւքսինոս (Պոնտոս) ծովու ": Ի Թղթ. 520 եւ 521. ասէ՝ թէ Մարաց աշխարհ անկանի 'ի մէջ Տօրոսի. " Զի սա (Տօրոս) յայն տեղիս 'ի բազում մասունս հերձանի, ահագինս ունելով խոխոմս ձորոց, զոր եւ 'ի Հայաստան է տեսանել ":

Բայց նորա սկսանի Տօրոս 'ի Կարիոյ եւ 'ի Լիւկիոյ, այլ անդ չէ ինչ բարձրութիւն նորա եւ լայնութիւն. ապա ընդ արեւելս թեւակոխեալ ձգէ բազուկս 'ի միոյ կողմանէ զլեառն Ամանոս, եւ 'ի միւս կողմանէ զԱնտիտօրոս : Ցետ անցանելոյ ընդ Եփրատ՝ առաւելու յայտ բարձրութիւն նորա եւ լայնութիւն 'ի բազում մասունս հերձանելով, որոյ մեծ մասն ձգի ընդ հիւսիս, " որ զհայաստան բաժանէ 'ի Միջագետաց ": Աստի հասին, ասէ, երկոքին գետքն, Եփրատ՝ որ բղխէ 'ի հիւսիսային կողմանց Տօրոսի, եւ Տիգրիս՝ որ 'ի հարաւոյ նորին լերին. բազում մասունք կամ բազուկք հերձանին 'ի Տօրոսէ, յայսկոյս Եփրատայ՝ Անտիտօրոս, իսկ յայն-

կոյս Եփրատայ ընդ հիւսիսակողմն՝ լեռանն Բօլխառաւին [1], Մօսքիքանք և այլ լերինք, որք ձգին մինչև 'ի դրունս Կասպից. իսկ ընդ հարաւակողմն, ասէ Թղթ. 522. 'ի Կապադովկիոյ և յԵփրատացւոց ընդ արևելս Թևակոխեալ, զառաջինն ընդ անուամբ Տօրոս կոչեն. որ "զԿափկսի (զԾոփս) և զՄնացեալ հայաստան բաժանէ 'ի Միջագետաց,,: Այսր Տօրոսի մասն կացուցանէ ըստ ոմանց և զլերինս Կորդուաց, և զՄասիս որ 'ի վերոյ Մծբնայ, և զՆպատ զառաւելն վերամբարձ. "Եւ այսպէս ասպա, ասէ Թղթ. 522. 'ի մէջ Տօրոսի դնեմք զՄասիս՝ որոյ են և դրունք Կասպից, և զՀայաստան . . . Արտաքոյ Տօրոսի 'ի հարաւակողմն չիք ինչ մասն Մարաց կամ Հայաստանեաց,,:

Նոյնժամ յառաջ բերցուք և որ ինչ յիշատակի 'ի գիրս մեր վասն ընթացից ղօտւոյն Տօրոսի: Առ Զենոբայ գրէ Լուսաւորիչն մեր 'ի Ա. Թուղթ իւր. "Զի է սար յերկրին Հայոց 'ի չորրորդ բաժինս և յերրորդ Հայոց աւարտին, 'ի լերինն որ կոչի Տօրոս, և հատեալ անցանէ մինչև 'ի դրունս Պաղհաւայ Պարսից, և առ ոտամբ (առ Տօրոսիւ) բնակին երկիրն մամիկոնէից,, [2]: Կամի ասել թէ Տօրոս 'ի ծայրէ երրորդ Հայոց սկսեալ մտանէ 'ի Տարօն գաւառ Տուրուբերանոյ, որ է երկիր մամիկոնէից:

Ոչ ուրեք այսպէս ստէպ յիշատակին մերքն զՏօրոս՝ որպէս 'ի Տարօն, համարեալ զայն իբր բնիկ իւր գաւառ ներփակեան նմին, որ է հաստատութիւն ասացելոյն 'ի մէնջ. իբր զի անդ նախ յաւուրս Նոյի բնակեալ զիւր անուն՝ որ էր Տարօն, առ օտար ազգս այլայլեալ 'ի Դաւրոս, կամ Դաւրուս, և 'ի նոցունց առ մեզ փոխեալ ասա 'ի Տօրոս: Ի ստէպ յիշատակելոցն զոմանս յառաջ բերցուք. Մատթէոս 'ի Թուին ՃԺԹ. գրէ. "Գնաց զօրքն այլազգեաց 'ի գաւառն Տարօն, որ և բռնակալեալ առ ստորոտ լերինն Տօրոսի մերձ 'ի Սասուն,,: Եւ Յոհան կաթողիկոս վասն Բուզայի, որ եկն 'ի կողմանս Տարօնոյ՝ ասէ. "Առպատակ զզօրս իւր սփռէ ընդ ծործորս լերինն Տօրոսի, և ընդ երեսս գաւառին, և նախ զբնակեալսն 'ի խոխոմս լերինն զօրս ըմբռնեալին՝ ստորպասս երկրին տայլին անողորմ սրով,,: Այս է լեառն՝ զոր այլք Սասուն կոչեն:

1 Բօլխառաւին Թարգմանիչն Բաղդադայ ըհւր, յորս անուն կայր գիւղ 'ի սահմանս Մանանաղւոյ, զորմէ գրեալ է մեր 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 23: Որոյ գիրք յառաջերեն յիշատակեալ 'ի Մարգարանէ, զոլով ասաւզիւ 'ի հիւսիսակողմն Եփրատայ:

2 Գտանի զանազանութիւն ինչ յայլ օրինակս, զոր կարես տեսանել 'ի Զենոբ երես 8. և 'ի մեծ Հայս Թղթ. 91:

Սոյնպէս և լեառն՝ առ որով շինեցաւ Ղազարու վանքն՝ կոչի առ Զենոբայ Տօրոս.“Ցայանեցաւ նմա (սրբոյն Գրիգորի) Հրեշտակ տեառն և ասէ. յարուցեալ երթիցես 'ի սատորոս լերինն Տօրոսի, և ցուցից քեզ զանեղին ուր հաճեցաւ տէր... և գնաց 'ի տեղին զոր եցոյց նմա հրեշտակ տեառն... և եդ անդ զգերեզմանս սրբոց առաքելոց... և անուանեաց Ղազարու վանք„: Իսկ այս վանք Ղազարու էր 'ի Տարօն: Ագաթանգեղոս 'ի յԿԷ. 'ի յիշելն զլեառն Քարքէ որ էր 'ի Տարօն՝ ասէ.“ Որ հանդէպ նայի մեծի լերինն Տօրոսի„:

Իսկ արտաքոյ Տարօնոյ յիշատակեալքն 'ի մերոց՝ են այսոքիկ: Խորենացին յաշխարհագրութեան իւրում զՏօրոս համաձայն Ստրաբոնի բաժանիչ դնէ ընդ մէջ Հայոց և Միջագետաց.“Մեծ Հայք կալով... մերձ 'ի Տօրոս լեառն, որ բաժանէ զնա 'ի Միջագետաց„: Դնէ նաև 'ի Մոկաց նահանգի յասելն.“Մոկք յեւլից կալով Աղձնեաց յամուրան Տօրոս լերինն„: Սոյնպէս և Թովմա արծրունի Ա. 15. զՏօրոս դնէ 'ի Մոկս.“ Իսկ Վարդան մամիկոնեանն որդի Համազասպայ մամիկոնէի՝ Թոռն սրբոյն Սահակայ՝ խոյս տուեալ գնաց զկողմամբքն Մոկաց, 'ի խոխոմս Տօրոսական լերինն, 'ի լեառնս Ջերմաձորոյ„: Եւ զլեառն Ջուայլ 'ի Ը. 1. կոչէ Տօրոսական: Զինակիրս Սասուն լերին որ է յԱղձնեաց նահանգի՝ մերքն կոչեն Բռնկիւ ճղին Տօրոսի: Եւ այսպէս ըստ մեր մատենագրաց գօտի Տօրոսի անցանէ 'ի հարաւոյ կողմանէ հայաստանեաց միայն 'ի Միջագետս. բայց մտանէ ապա և 'ի Սասուն գաւառ Աղձնեաց, 'ի Տարօն Տուրուբերանոյ և 'ի Մոկս: Իսկ ըստ Ստրաբոնի անցանէ և ընդ Կորդիս. զի Կորդուաց լեառն մասն Տօրոսի համարի գէթ ըստ ոմանց: Ընդ Այրարատ, զի 'ի Տօրոս դնէ զակն Եփրատայ, որ է 'ի Ծաղկոտն գաւառ Այրարատու. և զի զՆպատ ևս համարի նոյն ընդ Տօրոսի, որպէս և Պտղոմէոս, որ էր յԱյրարատ: Ընդ չորրորդ Հայս, զի 'ի Սոփենի որ է Ծոփք, կամ չորրորդ Հայք, անցեալ դնէ Ստրաբոն զՏօրոս: Ընդ Վասպուրական, զի զՏօրոս դնէ մերձ 'ի Թոսբիդիս, որ է Տոսպ գաւառ Վասպուրականի.

Իսկ հայելով և 'ի բանն՝ ուր զլերինս Բոլխառուի, Մոսքիքան և զայլ լերինս ձգեալս մինչև 'ի դրունս Կասպից՝ համարի Ստրաբոն մասունս կամ բազուկս Տօրոսի, յայնժամ պարտ է ասել՝ թէ այն բազուկք Տօրոսի անցանեն ընդ հիւսիսային նահանգս Հայոց. այսինքն է՝ ընդ Տայս,

Գ. Գօտի Կորդուաց լերանցն ։

Օ գօտաւոր լինել լերինս յայս առնեն աշխարհագիրք, կոչելով զայն ՚ի բազմաւորականն, Կորդուացւոց լերինք, զոր օրինակ Պտղոմէոս Ե. 13. և այլք. բայց զգօտի այսր լերին առ մեր մատենագիրս ձգեալ գտանեմք ՚ի Մոկս, որ է սահմանակից գաւառին Կորդուաց, զոր օրինակ ՚ի Ճառն Աղթամարեաց խաչին յաւելու. «Ի գաւառէն Մոկաց, ՚ի լեռնէն Կորդուաց»։ Եւ դարձեալ ասորև. «Ի ծործորս միջոցի լերանցն Կորդուաց վիճակին Մոկաց»։ Ձգեալ գտանեմք և ՚ի յակն Տիգրիսի, ըստ որում զմի ակն Տիգրիսի դնեն ՚ի լերինս Կորդուաց, որպէս ունիս տեսանել ՚ի գըլուխն Գետոց։

Բայց առ օտարազգի մատենագիրս առաւել տարածեալ գտանեմք զգօտի սորա, յիշատակելով առ Տիգրիս գետով, ՚ի Հայս, այլ և արտաքոյ Հայոց ՚ի Միջագետս. զի Պլինիոս Զ. 27. առ ընթացիւք Տիգրիս գետոյ դնէ զլերինս Կորդուաց։ Եւ ՚ի Զ. 26. ՚ի գրելն զՄիջագետաց՝ զԿորդուենան՝ որ նոյն է ընդ Կորդուք գաւառին՝ ուր էին համանուն լերինք՝ սահմանակից Ադօնք կամ Ադիլի գաւառին, որ էր ՚ի Պարսկահայք նահանգ. «Իսկ Կորտիենաց, ասէ, առ երի կան Ադօնք, ընդ որս Զերպիս գետ ՚ի Տիգրիս անկանի»։ Եւ Քսենոփոն զՔարտուքեանս լերինս առ Տիգրիսիւ դնէ, որ է նոյն ընդ լերանց Կորդուաց։ Յաւելուլ և զայն բանս Ստրաբոնի ժԶ. 747. և զՊտղոմեայ, որք առ Տիգրիսիւ յիշեն զԿորդիս կամ զՔարտուս. զի թէպէտ ոչ յիշեն անուն յանուն լերանց, այլ գաւառին, բայց յայտ է թէ բնիկ Կորդուաց լերինք անկանէին ՚ի գաւառն Կորդուաց։ Ստրաբոն ձգէ և ՚ի Միջագետս. զի յետ գրելոյ ՚ի ժա̃. 522. թէ Տօրոս լերինք զծոփս և զմնացեալ Հայս բաժանեն ՚ի Միջագետաց, յաւելու ասել թէ զսոսա «ոմանք կոչեն լերինս Կորդուաց»։ Դիոն պատմագիր զլեառն Կորդուաց դնէ առ Ատիապենիւ, որ է ասել առ Ասորեստանիւ։

Մատենագիրք արաբացւոց զՃուտի լեառն, որ է լեառն Կորդուաց, դնեն ՚ի Միջագետս արտաքոյ Հայոց աշխարհիս յերկիրն Ռապիահ ՚ի Մուսուլ, որպէս գրէ Էրպըլօ. և քանզի նաև զլեառն՝ ուր նստաւ տապանն Նոյի՝ կոչեն լեառն Ճուտի, որ է Կորդուաց, յայտ է թէ զգօտի Կորդուաց լերին ձգեցին. և ևս մինչև ցՄասիս, մի գօտի լե-

րանց՝ և կամ մի և նոյն լեռան համարելով զՄասեացն և զԿորդուացն, թէև ուրեք ուրեք ընդհատեալ էր այս գօտի, և ոչ միապաղաղ կցեալ։ Զայս հաստատէ մանաւանդ բացայայտութիւն քաղդէականն, և արաբացի Թարգմանութիւն Աստուածաշունչ գրոց, որք, որպէս յիշեցաք 'ի վերոյ, Քարտու կամ Քարտա կոչեցին զայն լեռան՝ որ 'ի սկզբնագրին երբայեցւոց կոչի լեռան Արարատեան, այն է Մասիս, յոր էջ տապանն Նոյի. ուր չէին արդեօք այսպէս փոխեալ զբան սուրբ գրոց, եթէ ոչ համարէին մի և նոյն լեռան [1]։

Իսկ առ Պղինիոսի ուրեք կարի իմն ձգեալ տարածեալ գտանեմք զգօտի սորա 'ի հիւսիսակողմն աշխարհիս. զի գիրք Զ. գլ. 11. յետ ընթեռլոյ զգլուխս Կովկասու, յիշելով և զայգս՝ որք անուն յառաջ գնալով ընկալեն 'ի կողմն Պոնտոս ծովու, յիշէ անդէն և զլերինս Կորիէտ, որ է լերինք Կորդուաց, ուր և Հարտուկին յաւելու 'ի մեկնութեան՝ թէ այսպէս կոչին զլուխք լերանց՝ յորս են դրունք Կովկասու։ Բայց որպէս իմանամք 'ի գրոց այլոց, գօտիքն Կորդուաց լերանց ոչ տարածին մինչև ցանդր, և ոչ ձգին յարևելից յարևմուտս, որպէս ձգեալ ցուցանէ Պղինիոս յայս բանս, այլ 'ի հարաւոյ 'ի հիւսիս. զի որպէս նշանակէ անդէն և Հարտուկին, Կորտիեանք "զասորեստան յամաստնայէն մինչ փակեն". այսինքն է՝ յարևմտից ասսորեստանեաց կան Կորտիեանք. արդ յասորեստանեաց մինչև ցդրունս Կովկասու (որով կոչէ աստէն Պղինիոս ըզգաւառն Ալանաց կամ Դարբանդայ) ձգել զգօտի լերանց Կորդուաց ոչ գիտեմք այլուստ, վասն որոյ ես համարիմ վրիպանօք գրչաց ապրդեալ զայս անուն, զի ոչ ուրեք զԿորդիս գտեն 'ի հիւսիսակողմն հայաստանեաց. գուցէ Պղինիոս եդեալ էր Կանգարաց, որ կարէ յարմարել. զի և 'ի գիրս մեր յիշատակին լերինք Կանգարք։

Բարձրութիւն լերանցս Կորդուաց և ապառաժուտ լեռնելն յիշատակի առ Քսենոփոնի 'ի Դ. գիրս արշաւանաց Կիւրոսի. "Այն ինչ եղև նոցա, ասէ, անդր հատանել, ուրանօր չէր մարթ ամենևին անցանել ընդ Տիգրիս գետ

1 Կեդրենոս գիրք Դ. գլ. 11. 'ի դրելն զԿորդուաց լերանց հայաստանեայ աշխարհիս, ասէ. "Չէ ինչ տարակոյս ասելն թէ լերինք Կորդուաց և Տօրոս են միակցեալք, կամ են մասունք նորին Տօրոսի. զի յընդունելն զայս՝ 'ի գէպ իսկ հաստատի կարծիքն թէ Կորդուաց լերինք են արարատեանք, յորս հանգեաւ տապանն Նոյի"։ Տես վասն այսր և 'ի պատմութեան Մասիս լերին. և 'ի գլուխն Բնակչաց, ուր ունիմք խօսել զբնակութէ Նոյի։

առ խորութիւն և մեծութիւն, և չէր իսկ այլ ինչ անցք, բայց եթէ լերինք Քարդուքեանք, (այն է՝ լերինք Կորդուաց), սեպացեալք և առ գետովն բարձրացեալք, թուեցաւ առաջնորդացն ընդ նոյն լերինս Ճանապարհորդել»:

## ՊԱՐԽԱՐ կամ ԲԱՐԻԱՏՐ

Յառաջին անուանն է 'ի կէր արկեալ 'ի գիրս մեր, իսկ երկրորդն 'ի գիրս օտար ազգաց. զոր Պտղոմէոս Ե. 13. դնէ ընդ լերինս Հայոց անուանել. Լերինք Հայոց են Մօսքիքան, «և լեառն որ Բարիադրէս կոչի»[1]. Դիրք սորա անկանին 'ի հիւսիսային արեւմտեան ծայր մեծին Հայոց. վասն որոյ և Պտղոմէոս սուղ ինչ առաջեւ գրէ. «Իսկ առ եզերբ Բարիադրեան լերանց է Սիսպիրիտի». կամ ըստ լատին հնչման Սիսպիրիտենէ. որ ըստ մեզ է Սպեր: Այլ Պլինիոս Զ. 9. որոշէ յաւելու. «Իսկ մեծ Հայք սկսեալ 'ի Բարիադրեան լերանց՝ գետովն Եփրատաւ անջատի 'ի Կապադովկիոյ»: Արդ Կապադովկիա և սկիզբն Եփրատայ անկանին յարեւմտեան հիւսիսակողմն մեծին Հայոց: Զայս առաւել որոշէ Ստրաբոն ԺԲ. 548. յաւելու. «Լեառն դժուարակոխ Սկիդիսիս, որ յարակցի Մոսքիքան լերանց, որք 'ի վերայ կան Կողքիսոյ, զորոյ զծայրն ունին Եօթնագիւղք. զհետ գայ Բարիադրէս (լեառն), որ մինչև ցփոքր Հայս թևակոխեալ 'ի տեղեացն սահմանակցաց Սիդենիոյ և Կապադովկիոյ՝ զարեւելեան կողմն Պոնտոսի առաւել. ամենեքին որք բնակին յայսոսիկ լեռնակողմանս գաժան են անհնարին»: Եւ 'ի Թղթ. 556. 'ի յիշելն զՓառնակեա որ մասն է Պոնտոսի, «Յարեւելականն կողմն նորա (ասէ) ձգի լեառն Բարիադրէս»: Արդ 'ի բանից աստի Պլինիոսի և Ստրաբոնի յայտ է թէ զօտի այսր լերինն ըստ մասին անկանի յարեւմտեան հիւսիսային ծայր մեծին Հայոց, և ըստ մասին 'ի փոքր Հայս:

Այս լեառն է նոյն որ 'ի գիրս մեր կոչի Պարխար. զայս յայտ առնէ նախ մերձաւորութիւն անուանց, զի 'ի բաց թո-

[1] Այսպէս գրի 'ի Բալատինեան ձեռագիր օրինակի, որ մերձենայ յուզեղ անուանս Պարխար. իսկ յայլս գրի Բարիադրէս: Նոյնպէս և 'ի Բեւզին-կերեան աշխարհացոյցս գրի Բարսոէրգս, ուր և գնէ զակն Եփրատայ:

զեալ զվերջաւորութիւն յունականն, Բարերդն որպէս զերեալ կայ յընտիր օրինակի Պտղոմեայ՝ լինի նոյն, միայն զատառն Ի եղեալ փոխանակ տառիս Խ։ Երկրորդ նոյնութիւն գրից. զի որպէս զԲարերդըս դնեն յարեւմտեան հիւսիսային ծայր աշխարհիս Հայոց, նոյնպէս և մերքն 'ի նոյն կողմանս դնեն զՊարխար. զի Լաստիվերտացին գլ. ժդ. մերձ 'ի Կողկաս յիշատակէ ասելով. «Մինչև 'ի լեառն՝ որ կոչի Պարխար, և մինչև ցստորոտն Կողկասայ»։ Ղազար 'ի Թղթ. 127. դնէ առ Խաղտեօք, յասելն. «Առ վայր մի առ լերամբն՝ որ կոչի Պարխար, մերձ առ սահմանակցութիւնս Խաղտեաց, ամրագոյն տեղի մի գտեալ դադարեցին»։ Արդ և Պլինիոս Զ. 10. զԲարիսադրեան լերինս դնէ առ Կողքիսիւ՝ որոյ գաւառ է Խաղտիք. զի ընդ յիշելն զԲարիսադրեան լերինս՝ անդէն յաւելու ասել. «Ցախնկոյս (քան զայն) են անապատք Կողքիսեանք»։ Եւ որպէս ցուցանեն բանք մերոց պատմագրաց, ընդերկ գօտի այսր լերին Պարխարայ ընթանայր ընդ այն նահանգ մեծին Հայոց՝ որ կոչէր Տայք. որպէս է բանն Ղազարայ՝ որ յետ վերոգրեալ բանից ասէ. «Ի գիւղն՝ որ անուանի Որջնհաղ, 'ի գաւառին Տայոց. քանզի 'ի ժամուն իջեալ էին 'ի յամրոցացն լերինն Պարխարայ»։ Որջնհաղ գիւղ գոլով 'ի Տայս, իսկ Պարխար լեառն 'ի վերոյ գեղջն՝ ուստի իջին 'ի վայր 'ի յՈրջնհաղ, յայտ է թէ Պարխար լեառն ևս էր 'ի Տայս. վասն որոյ ընդ մեռանել Համայեկայ՝ զօրք ուխտապահացն «զարհուրեալք (ասէ Ղազար 128) անդէն 'ի վեր 'ի լեառն դառնային 'ի Պարխար»։ Մանաւանդ զի զոր աստ «Ամրոցք լերինն Պարխարայ» կոչէ Ղազար, սուղ մինչ 'ի վերոյ Թղթ. 125. Ամուրք Տայոց կոչէ՝ ասելով վասն Ատրորմիզդ մարզպանին. «Սա և 'ի վերայ ժողովելոցն առ երանելին Համայեակ յամուրսն Տայոց գունդ կազմէր»։ Արդ Համայեակ հանդերձ իւրովքն ամրացեալ կայր յամուրսն Պարխարայ, և մինչդեռ իջեալ էին 'ի լեռնէ աստի, հասեալ 'ի վերայ գունդն Պարսից նահատակեցին զՀամայեակ և զայլս։ Սոյնպէս 'ի Տայս դնէ զՊարխար և Խորենացին Բ. 6. յասելն վասն Վաղարշակայ. «Դառնայ զհիւսիսեաւ առ ստորոտով Պարխարայ ընդ մէջ Տայոց»։ Եւ այսպէս Պարխար լինելով 'ի Տայս, լինի սահմանակից Կողքիսոյ, որպէս և դնեն զԲարիսադրիսն. զի Տայք սահմանակից է Խաղտեաց, որ է մի 'ի գաւառացն Կողքիսոյ։

Երրորդ յայտ առնեն արգասիք երկրին. զի վասն Բարիսադրեան լերանց գրէ Ստրաբոն ԺԲ. 555. «Քանզի

նեայ է. զմասն ինչ նորա ունին Գօլք (կամ կողքիսացիք). զմասն ինչ Վիրք, և զմասն ինչ Հայք»: Եւ թէպէտ ասա զՄոսքիքան նահանգէն խօսի, բայց յայտ է յայլոց բանից նորա՝ որպէս և յայլոց աշխարհագրաց՝ թէ էին լերինք. զի նոյն ինքն Ստրաբոն ժա. 492. գրէ. «Ցետ Խոխողեանց է Կողքիս¹ ընդ կովկասեան և Մոսքիքան լերամբք»: Եւ 'ի ժբ. 548. ասէ. «Ընդ սոսա անցանէ դժուարակոխ լեառն Աքիտոխասոս, որ յարակցի Մոսքիքան լերանց»: Ա-Հայս վերաբերէ զայնս նոյն ինքն Ստրաբոն և 'ի ժա. 521. ուր 'ի ստորագրելն զՏօրոս՝ գրէ. «Իսկ առաջ յանձեայս Ե-փրատայ յետ Անտիտօրոսի ընդ հիւսիսակողմն ձգի լեառն մեծ, բազմապատիկ խրամատեալ. մասն ինչ նորա կոչի Բօլխատուխն (այն է բազմաղբիւր), այլ ինչ մասն Մոսքի-քան լերինք, և այլ մասն այլով անուամբ. սոքա պարփա-կեն զհամօրէն հայաստան մինչև ցՎիրս և ցԱղուանս»: Եւ Պղինիոս Ե. 27. 'ի ստորագրելն զերկայնաձիգ զօտի լերինն, որ ըստ երևելի մասին Տօրոս կոչեցեալ. իսկ ըստ այլևայլ մասանց այլևայլ անուամբ ազգաց յորջորջեալ, «Ցաջմէ (ասէ) Հիւրկանոս (Վրկան) կասպիոս անուա-նեալն է. 'ի ձախմէ Բարիադրէս, Մոսքիկոս, Ամազոնիքոս, Քորաքսիքոս, Սկիւթիքոս²:

Իսկ Պտղոմէոս Ե. 13. յայտնի քան զամենեսին գրէ. «Իսկ լերինք հայաստանեաց անուանին նոքա որք կոչին Մոս-քիքան. և ձգին մինչև առ յարակցեալ մասն Պոնտոսի Կապա-դովկիոյ»: Եւ սոյն ինչ 'ի վերոյ 'ի ստորագրելն զդիրս մեծին Հայոց՝ յարևմտից սահմանակից դնէ զՀայս՝ Պոնտոսի Կապա-դովկիոյ մինչև ցԿողքիս ընդ գիծն Մոսքիքան լերանց:

1 Ես մեծս ընդ կասկածանօք կամ սակս երկուց անուանցս Կողք, և Կող-քիս, որպէս թէ մատնանշողաց Յունաց և հաւանեցուցեալ զերկուսին անուանեալ խառնեալ և շփոթեալ 'ի միասին սակս մերձաւորութեան անուանց. յորոց Կողք էր գաւառ Տայոց, և Կողքիս աշխարհ եգերացւոց, այլ կցեալ ընդ Տայոց, գոլով անմիջապէս սահմանակից. և յայնմանէ բազում ինչ որ Կողք գա-ւառին Տայոց էր՝ առնեալ լինէր 'ի նոցանէ կողքիսացւոց:

2 Յիշատակի և 'ի Է. գիրս և 'ի Ձ. գլուխ Պղինիոսի. ուր յետ յիշելոյ զԾոփս և զԱմփասպէնս, ասէ. «Իսկ 'ի ձորակսն մերձ 'ի հայաստանեան Մէ-նոպոտամայ, և Մոսքինք»: Բայց ինձ երևի մերձաւորութեամբ ստառնոր աղաղեալ անուանս Մոսքինք, զի 'ի կողմանս Ամփա-սպէնաց՝ որ է յաստիճանս՝ ոչ անկա-նին Մոսքիքանք որպէս ցուցանեն այլ բանք աշխարհագրաց. մանաւանդ զի նոյն ինքն Պղինիոս Զ. 4. և 10. յայտնէ զՄոսքս յակին առ Փասիս գետոյ և առ Խալիւր վտակաւ որ Թափի 'ի կուր: Սոյնպէս և զատուցին յիշեալ զԱմփասպէնս անուանեալ Ծոփաց՝ հա-մարիմ լինել Ասփունակ գաւառ Կոր-ճէից, և այլափոխեալ գրեալ անգէն Ամփասպէնք. սոյնպէս և զՄոսքինս կարծեմ եղեալ փոխանակ անուանս Մոկաց, որ արդարև անկանի յայն կողմն:

Աշխարհագրութիւն Խորենացւոյն յիշատակէ այս լեառն, բայց Մոսխական անուամբ. այսչափ ինչ միայն գրելով թէ այս լերինք են բաժանիչ կապադովկեան Պոնտոսի և Մեծին Հայոց. « Պոնտոս կապադովկեան (ասէ) յերկից կողմ պա-զիմանական պեղպաղումն առ եւր ծովուն մինչև ցՄոսխա-կան լերինան¹, որ բաժանեն ընդ նա և ընդ Մեծ Հայս »: Եւ արդարև որպէս 'ի բանից Ստրաբոնի առեալ նշանա-գրէ Կելլարիոս գիրք Գ. գլ. 10. Մոսքիքեան լերինք՝ յորս բնակէին Մոսք՝ անկանէին ընդ մէջ Կապադովկիոյ, Կող-քիսոյ, Վրաց և Հայոց: ԶՎիրս և զՀայս 'ի միմեանց ան-ջատեալ, ձգէին և ցԿապադովկիա. (ցայն մասն՝ զոր Խո-րենացին կոչէ Պոնտոս կապադովկեան). և զնա բաժանեն 'ի Կողքիսէ, 'ի փոքր Հայոց և 'ի Վրաց:

Այսմ անուան սորա կարծի յոմանց 'ի հայկական բա-ռէս ածանցեալ. որպէս թէ սակս մերձակայ հանքաց ոս-կւոյ 'ի գօտիս սորա՝ ոսկեկոյ անուանեալ. և ապա փոխեալ 'ի Մոսքիքան: Գուցէ մարթ է ածանցեալ համարել և 'ի Մոսքիէ, իբր Մոսքիէան կամ Մշակեան, այսինքն սկսեալ 'ի կողմանց Կեսարիոյ կապադովկացւոց:

## ՀԵՆԻՈՔԵԱՆ կամ ԵՆԻՈՔԵԱՆ

Ի կարգս լերանց յայտնապէս յիշէ զայսոսիկ Պլինիոս Զ. 9. յասելն. « Կիւրոս (Կուր գետ) բղխէ 'ի Հենիոքեան լերինս, զորս այլք Քորաքսեանս կոչեցին »: Եւ զի Կիւրոս կամ Կուր գետ բղխէ 'ի Հայս, վասն որոյ և ընդ լերինս աշխարհիս Հայոց պարտ է դասել զսա. մանաւանդ զի ինքն Պլինիոս նոյն համարի զսա ընդ Քորաքսեան լերինս, որք են Կղարջք: Հաստատի 'ի վերլուծութիւն նախագրեալ բանից Պլինիոսի նոյն դնէ և ընդ Մոսքիքեան լերինս՝ յայնմ կողմանէ ուստի բղխէ Փասիս: Այլ Հենիոքեանք կացուցանէին և զանազան ազգս 'ի զանազան տեղիս. վասն որոյ Պլինիոս Զ. 4. յետ ստորագրելոյ զգետան Փա-սիս գետոյ, և զզանազան գետս՝ որք զեղուն 'ի շրջակայս Պոնտոս ծովու, կոչէ զնոսա, « Բազմանուն ազգք Հենիոքեանց ». զորոց և զծագումն բերելով 'ի զրուցաց հին յունա-կան առասպելաբանութեանց ծագեալ, 'ի կառավա-

¹ Ի տպագրեալն վրիպակաւ գրի. « Առ եւր ծովուն 'ի ցՄոսխական լերինան »:

տային »։ Ցաւալուս Հայոց զնելով Թերեւս Թուրքի ամանց վերաբերեալ առ Հայս, բայց ոչ նոյն հետայն առելածն՝ ծանուցանէ ստոր և հեռի լինել 'ի հայաստանեաց։ Եւ արդարև լերինք Կերաւնեանք որք են մասն Կովկասու լերանց՝ անկանին 'ի հիւսիսակողմն Աղուանից կամ Ալվանից, որպէս գնէ Ստրաբոն ժա. 501. վասն որոյ 'ի զուր յիշեալ գտանեմ աստէն 'ի բանս Պլինիոսի։ Նոյն ինքն Պլինիոս գրէ. "Ցայնկոյս են անապատք Կողքիսի, առ որոյ 'ի կողմն Կերաւնեանց բնակեն Արմենոքալիբք"։ որք են Խաղտիք։ Բայց յայսմ կողմանէ ես հեռի անկանի 'ի Հայաստանեաց։

# ԱՆՏԻՏՕՐՈՍ

Վասն այսր լերինս ունիմք խօսել 'ի Փոքր Հայս. այլ քանզի Ստրաբոն զգօտի սորա բերէ և 'ի Մեծ Հայս, յայսմ վայրի ևս հարկ է յիշել զսա։ Արդ ասէ Ստրաբոն ժա. 527. "Ի հիւսիսակողմն է Սոփենի (Ծոփք) 'ի մէջ Մասիոսի և Անտիտօրոսի, որ յեփրատէ և 'ի Տօրոսէ սկիզբն առեալ (այս Անտիտօրոս) յարևելեան կողմանս հայաստանեաց յանգի, ընդ մէջ Սոփենիոյ (Ծոփաց) անցանելով"։ Որով և լերինք գետակերպ Եփրատայ՝ որ այժմ 'ի կապան Մատէն երևին, 'ի հնումն կոչէին Անտիտօրոս[1]։

## ՅՕԴՈՒԱԾ Բ

### Լերինք անփոփք։

ՄՕԴՈՒԱՑ ՔԱՐ ։ Կոչան զորմէ տես ԿԱՆԳՈՒԱՐ ԼԵՐԻՆՔ։

1 Ի գրեալըս մինչև ցայս՝ ինմանամբ թէ 'ի գիրս նախնեաց մի միայն է յիշատակեալ զօտի լերանց, համարէն 'ի մէջ հայաստանն աշխարհին ընթացեալ. այն է Լերինք Կորդուաց միանգամայն ընդ Մասեաց։ Զի Տօրոս թէպէտ ընթանայ յԱղձնիս, 'ի Մոկս, 'ի Տուրուբերան, բայց ընդ հարաւային կողմն աշխարհին է համարեալ, Կովկասուն՝ քանի մի բաղուկք են միայն որք յանդգին 'ի Հայս. իսկ Պարխար, Մողաքեան, Ինկուզեան, Քօրաքեան՝ են առհասարակ զօտիք ընդ արևմտեան հիւսիսակողմն աշխարհին, որոց և գաւառք եղանին նաև արտաքոյ Մեծին Հայոց։

## ԱԼՀԱՐԱԿ

Յիշատակի առ Կիրակոսի 'ի կողմանս Գանձակայ. "Իսկ 'ի շձը. թուին եղև շարժ սաստիկ, և կործանեցաւ քաղաքն Գանձակ ... փլաւ և լեառն Ալհարակ 'ի շարժմանէն. և արգել զձորակն որ անցանէր ընդ մէջ նորա. եղև ծովակ, որ է մինչև ցայսօր. և լցին 'ի նմա ձկունք ազնիւք": Զսոյն կրկնէ և զկնի:

## ԱԿԱՆԵԱՑ ԼԵԱՌՆ

Զայսմանէ Յոհան կաթողիկոս 'ի գրելն վասն Յուսուփայ, թէ յետ ելանելոյ նորա յերկրէն Անձևացեաց, "Չուէ գնայ ընդ կողմն լերինն Ականեաց, 'ի գաւառն Աղբակոյ": Յորմէ երևի լինել կամ յԱղբակ գաւառ Վասպուրականի, և կամ մօտ առ նա:

## ԱՂՁԻ ԼԵԱՌՆ

Յիշատակեալ 'ի Մեծոփեցւոյ, որ թուի լինել յԱղիովիտ գաւառ Տուրուբերանոյ: Տես 'ի մեծ Հայս 128. զգետօղն Աղձեաց:

ԱՄԱՆՈՍ: Տես 'ի փոքր Հայս:

ԱԳՈՍ: Տես ԱԿՈՍ:

## ԱՌԻՒԾ ԼԵԱՌՆ

Զորմէ Բուզանդ Դ. Կ. "Եւ արքայն Արշակ ընդ առաջ երթայր նոցա (այսինքն որոց ընդ մեծին Ներսէսի դառնային 'ի Կեսարիոյ). մինչև 'ի լեառն որ անուանեալ կոչի Առիւծ": Ի նմին պատմութեան յիշէ զայս լեառն և Մեսրոպ 'ի Թիւն Թ: Դարձեալ յիշէ Բուզանդ և 'ի Ե. 25. ասելով. "Բայց Շաղիտայն, որ էրն յԱռիւծ լերինն": Ի բանիցն երևի կամ յԵկեղեաց գաւառի լեալ, և կամ 'ի սահմանակից վայրի. զի վասն նորին Շաղիտայի և Եպիփանու ասէ. "Յիւրաքանչիւր լեռնէ ընթացեալք փութով յԵկեղեաց գաւառ ... տեսին զի կատարեալ էր սուրբ Հայրապետն Ներսէս ... և եկին մինչև 'ի Թիլ գեօղն, և տեսին զտեղին յորում եդեալ էր զնա": Տեղին ուր

ունիմք 'ի գլուխն Գետոց վասն երկրորդ ականն Եփրա-տայ եկեալ 'ի ծաղկոտանէ ։

## ԱՐԱԳԱԾ

Նախապէս անուանեալ զսա յիւր անուն Արամանեակ նահապետ մեր, որդի Հայկայ, որպէս գրէ Խորենացին ա. 12. յետ նորա նաև Վարդան յասելն. «Ի Հայկայ (ծնաւ) Արամանեակ, յորմէ կոչեցաւ Արագած լեառն»։ Տեղի առաւ անկանի յԱյրարատ նահանգի՝ 'ի գաւառին որ յիւր անուն կոչի Արագածոտն. զի զաւանն Արուճ, զոր Ղեւոնդ գլ. Է. ասէ «Ի գաւառն Արագածոյ ոտին», միոյն Արուճ՝ Յովհան կաթողիկոս ասէ «Ի ծործորս Արագածոյ լերին»[1]։ Զի էր լեառն լայնանիստ, որոյ շրջա-պատ եւօրեայ ճանապարհ, որպէս ստորագրէ Խորենացին անդէն. «Այլ հարաւային արեգակնաճեմ լեառն՝ սպի-տակափառ ունելով զագաթն, ուղղորդ 'ի յերկրէ բու-սեալ. երկքօրեիւ՝ որպէս ասաց ոմն 'ի մերոցն՝ քաղաքա-ւուոյ ասանի շրջապատեալ ճանապարհաւ. և առ փոքր փոքր 'ի շեշտումն անկեալ, ծեր ոմն արդարև լեառն 'ի մէջ երի-տասարդեալ լերանց»[2]։ Բուզանդ Է. 24 կոչէ զսա Ձծ-կուռն, և ցուցանէ լինել ապառաժուտ՝ յասելն. «ՅԱրա-րատ գաւառի որ կայր 'ի խնձս, 'ի գոգս, 'ի ծոցս, յան-ձուկս, 'ի դժուարս սերին Ձծի, զոր Արագածն կոչեն»։ Ծործորք լերինն յիշատակին առ Յովհաննու կաթողիկո-սի, որ ասէ. «Գումարեալ լինէր 'ի քաղաքագեղջն Ա-րուճ, 'ի ծործորս Արագածոյ լերինն»։

## ԱՐԱՑԻ ԼԵԱՌՆ

Յիշատակեալ առ Կիրակոսի յասելն վասն Հեթմոյ արքայի. «Ձմեռէր առ յոտն Արագածու. հանդէպ լերինն Արայի, 'ի գիւղն՝ որ կոչի Վարդենիս»։ Թուի լինել նոյն իսկ լեառն արարատեան. բայց այլ օրինակ ասէ «Հան-դէպ լերինն Արի»։

## ԱՐԱՐԱՏԵԱՆ ԼԵԱՌՆ. ՏԵ՛Ս ՄԱՍԻՍ ։

1 Տե՛ս և 'ի մեծ Հայս 'ի Թղթահաս-մասին 438։

2 Վասն այսորիկ երիտասարդեալ լերանց տե՛ս անդէն 'ի մեծ Հայս։

## ԱՐԱՐՏԱԿ

Զայսմանէ յիշէ Ասողիկ Գ. 2. «Իսկ 'ի գալ չորրորդ ամին՝ Յուստինիանոս ինքն խաղաղացեալ զօրու ծանու եկն 'ի կողմն մի Հայոց 'ի լեառն, որ կոչի Արարտակ»:

## ԱՐԻՏ

Յիշատակի առ Դիոնեսիոսի ասորւոյ 'ի գիրս Ասսեմանեայ, ասելով. «Ապականեցին զամենայն գաւառս Ասորւոց, որք անկանէին առ ստորոտով լերինն Արիտի. այսինքն զԱրզուն, զՄայֆարղքայ, զԱմիդ, զՀանձաղէթէ և զՍամոսատայ»: Ի սոցանէ Արզուն և Ամիդ են յԱղձնեաց նահանգի մեծին Հայոց. իսկ Մայֆարղքա և Հանձաղէթէ, որք են Մարտիրոսաց քաղաք, և Հանձիթ, են 'ի նահանգին չորրորդ Հայոց: Արդ յայտ է թէ այս լեառն էր 'ի մեծ Հայս, և էր գօտեւոր, որ ընթանայր յերկայնին եւ նահանգսն մեծին Հայոց:

## ԱՐՁԱՆ

Նշկանի 'ի Տարօն գաւառ, զորմէ Զենոբ 'ի Թղթահամարին 27. «Յայնժամ 'ի մէջ անցեալ իշխանին Անդեղ տան և Արձանին (որ էր քրմապետ Գիսանեայ կռոց) ... ասէ. գիտեմ զայս, Արձան, զի անդուստ այս Արձան են կոչելոց, զի քեզ արձանանալ պիտի յայսմ վայրի: Եւ 'ի վեր ամբարձեալ զձեռն իւր իջուցանէր զսուրն 'ի վերայ... և կատեցին արձան 'ի վերայ նորա, և կայ 'ի Թաղման 'ի նոյն տեղւոջն՝ որ գեղ եւս Արձան կոչի անուամբ լերինն»: Սուղ ինչ զկնի գրէ. «Կանգնեցին 'ի վերայ գերեզմանացն արձանս, և գրեցին 'ի նոսա այսպէս. Առաջին պատերազմ որ եղև յոյժ սաստիկ, պատերազմին գլխաւոր Արձան քրմապետն, որ կայ այսր 'ի Թաղմանն, և ընդ նմա արս հազար երեսուն և ութ. և զայս պատերազմ արարաք վասն Գիսանեայ կռոց և վասն քոյ: Զայս գրեցին ասորի և հելլենացի գրով և յոյն և հռոմայեցւոց նշանաւ»:

## ԸՆՁԱՔԻԱՐՍ

Տե՛ս 'ի գլուխն Բերոց զՀանք երկաթոյ · տես և 'ի մեծ Հայս 165 ։

## ԼԵՍՈՒՆ

Մատթէոս 'ի Թիւն ՇԺԸ · 'ի յիշելն զերթ Ալպասլանն Սուլտանին յՈւռՀայ, ասա չուեալ անտի, ասէ, « անցեալ անցանէր 'ի սաՀմանացն, և գնաց յարեւելս 'ի լեառն որ կոչի Լեսուն »: Ուր Թէպէտ չիք ինչ որոշումն զանեղւոյ, բայց յընթացից պատմութեան Թուի լինել 'ի Հայս ։

## ԽՈՅԹ

Այս լեառն բաժանէ ընդ Աղձնիս և ընդ Տարօն, զորմէ տես 'ի մեծ Հայս 71 և 73 ։

## ԾԱՂԿԻ կամ ԾԱՂԿԱՑ և ԾԱՂԿՈՑ

Լեառն 'ի ծաղկոտն գաւառին Այրարատու, որ 'ի Հին վարս սրբոց Ոսկեանց 'ի Ճառընտրի առաջին անուամբն կոչի, իսկ առ Խորենացւոյն Գ. 23. երկրորդ անուամբ ծաղկոց կոչի. « Տեսցես տեղիս քաջերեւս 'ի լերինն ծաղկոց զպարկացիր ջրով »: Այլ 'ի Ցայսմաւուրս Տէր Իսրայէլի յերիս տեղիս եւս երրորդ անուամբ ծաղկոց կոչի, զորմէ տես 'ի մեծ Հայս 413 · 414։ Սակս առատութեան ծաղկանց իւրոց զայս անուն էառ լեառն, բայց և այլովք զանազան անուամբք կոչեցաւ։ Զի սակս յորդութեան ջուրց իւրոց ծմակայն կոչեցաւ 'ի Ճառընտրի, և ծմակ 'ի Ցայսմաւուրս Տէր Իսրայէլի ։ Սակս բնակութեան սրբոց Ոսկեանց կոչեցաւ Ոսկէ, զորոց տեսցես անդէն 'ի մեծ Հայս ։ Այլ զանունդ Ոսկէ՝ բաց 'ի Ցայսմաւուրաց Տէր Իսրայէլի ոչ գտանեմք այլուր. որպէս և ոչ զանունդ ծմակ։ Առ Խորենացւոյն Գ. 23. և այլով անուամբ յորջորջեալ գտանեմք զայս լեառն, որ է Շահապիվան. զորմէ տես 'նոյնպէս 'ի մեծ Հայս։ Եւ քանզի 'ի բազմաւորականն կոչեցեալ գտանեմք 'ի Ճառընտրի զայս լեառն՝ յայտ է Թէ էր լեառն գօտեւոր, որոյ զանազան կողմանք զանազան անուամբք կոչէին, զոր և օտարազգի մատենագրաց կցեալ Համարելով ընդ գօտիս Կորդուաց և ընդ մասանս Տօրոսի գաւառին, 'ի Տօրոս զնե-

լով զանկն Եփրատայ, որ էր յայսմ լերին։ Այժմ այս լերանն ծագելոց՝ կոչի Ալա դաղ. տես 'ի Նոր Հայաստանն 115. Յաւէլ 'ի վերայ և գեղեցիկն այսր անուանակոչութեան որ պատմի 'ի պատմութեան Թաթարաց. "Մեծացաւ, ասէ, Հուլաւուն Ղանն, և հարստացաւ տիեզերն՝ որ ոչ գոյր թիւ հեծելոց և զօրաց նորա, նոյնպէս և անասնոյն իւրոց. զի պատուական ակն և մարգարտեան խորք զառաջ ծովու էր առաջի նորա, Թող զայլ ցեղ մեծութե, և զգաղմունս ոսկւոյ և արծաթոյ, և ձիոց և անասնոյն հօտից՝ որոց ոչ գոյր չափ և թիւ... Յայնժամ հրամայեաց դարպաս շինել իւր մեծամածախորս 'ի Դաւան դաշտին, զոր կոչեցին Լեռքեանք զանուանն տեղւոյն Ալա դաղ. որ էր յառաջին տեղին այն նախնեաց ամառանոց մեծ թագաւորացն Հայոց, այսինքն Արշակունեաց,,։ Կարծեմ յիշել կամի զոր 'ի Շահապիվանեանն էր բանակեալ թագաւորաց մերոց, զորմէ 'ի մեծ Հայս 'ի թղթահամարն 414։

ԾԻՐԱՆԵԱՑ ԼԵԱՌՆ կամ ԾԻՐԱՆԻՍ

Տե՛ս 'ի մեծ Հայս 385. տես և 386 Ախուրզումն. այժմ կոչի Հասանդաղալայա լեառն, զորմէ տե՛ս 'ի Նոր Հայաստանն 'ի թղթահամարն 87.

ԿԱՆԳԱՐՔ

Կոչի և Կեառն մէջն. տե՛ս 'ի մեծ Հայս 'ի թղթ. 365 և 5a5։

ԿԱՆԳՈՒԱՐ ԼԵՐԻՆՔ

Յիշատակեալ 'ի Խորենացւոյն հարեւանցի 'ի Ճանապարհորդութե Հռիփսիմեանց, ուր ասէ. "Լեռնամէջ վիմաց 'ի վերայ գետոյն մեծի՝ որ կոչի Տիգրիս, հուպ 'ի բերդն ամրոց՝ որ կոչի Կանգուար, և միւսոյն՝ Աղուանց քար, ուստի ջուրք բազումք հոսին 'ի լերանց ամրոցին,,։ Ուր նախ զամրոցն կոչէ Կանգուար, ապա յիշելով զլերինս ամրոցին՝ կամի յիշել զլերինս Կանգուարայ, զի Կանգուար էր ամրոցն։ Տեղի սորա անկանի յԱնձաւացեաց գաւառ Վասպուրականի, զորմէ տե՛ս և 'ի մեծ Հայս 197. և էր մերձ 'ի Տիգրիս, զի գրէ անդէն թէ ջուրքն՝ որք հոսին 'ի լերանց Կանգուարայ՝ "խառնեալ օժանդակեն զգետն մեծ Տիգրիս,,։

## ԿԱՊՈՅՏ ԼԵԱՌՆ

Յիշատակեալ առ Եղիշէի, զորմէ տես 'ի մեծ Հայս 398 ։ Պլինիոս Ե. 24. յիշէ զլեառն Կապոտէն, 'ի Մուկիանոս Լիկինիոսէ բերելով, որոյ մերձաւորութն անուանն յայտ առնէ լինել նոյն ինքն լեառն Կապոյտ, այլ զոր առէ վասն Եփրատայ բղխել յայսմ լեռնէն՝ ոչ յարմարի ամենեւին, որպէս ունիս տեսանել 'ի ստորագրութեան նոյն գետոյն ։

ԿԱՊՈՒՏՈՂՆ ։ Նոյն որ Ընձաքիսար ։

## ԿՈԳՈՎՏԻ ԼԵՐԻՆՔ

Յիշատակեալ առ Յովհաննու կաթողիկոսի, ասելով. « Ամրացուցեալ փոսոս 'ի ծործորս լերանցն Կոգովտ եւ ծաղկոտան »։ Յայտ է յանուանէն լինել 'ի Կոգովիտ գաւառ Այրարատու ։

## ԿՈՀԵՐԱՑ ԼԵԱՌՆ

Տես 'ի մեծ Հայս 'ի Թղթահամարն 40 ։

## ԿՈՂՈՏՈՒ ԼԵՐԻՆՔ

Առ Եփրատաւ, յիշատակեալ 'ի շարականակողէն Սամուէլի. զորոյ զբանս կարես տեսանել 'ի գլուխն Օդոյ, յերկրաշարժաւն որ 'ի Թ. դարու ։

ՀԱՒՃԻՋ ։ Տես 'ի մեծ Հայս 375 եւ 507 ։

## ՄԱՐԱԹ

Տես 'ի մեծ Հայս 71 ։ Ի ծանօթութիւնս եպիսկոպոսաբանաց Լեւոնի եւ Անդրոնիկոսի յիշատակի լեառն Վարաթեկիս. մեք 'ի ստորագրութեան մեծին Հայոց 'ի Թղթ. 190. եդաք լինել աղաւաղումն անուանս Վարագ. բայց առաւել Թուի լինել աղաւաղութն անուանս Մարաթ. որում յարմարին եւ այլ պարագայք. մի՝ զի զԿարաթիդէն դնէ 'ի կարգս լերանց Տօրոսի. եւ զնմանին կոչէ Սասունցին, որ

վերնականաւ գրեալ կայ Նաւասարդէ. եզերօք՝ ասէ լինել լեառն բարձր յոյժ ։ Արդ և Թովմա Մեծոփեցի զՄարութ կոչէ լեառն Խութայ և Սասնոյ, իսկ զՍասունն նախնիք մեր դնէին ՚ի կարգս լերանց Տորոսի. նշանակէ և բարձր և անմատոյց լեառն դնէ Թովմա Մեծոփեցի զՄարութ ։ Տես և ՚ի Նոր Հայաստան 202 ։

ՄԵԾԲԱՑ

Լեառն ՚ի Բասենու գաւառի. տես ՚ի Մեծ Հայս 509 զգիւղն Սուրբ Աստուածածին ։

ՄԵՂՑԵԱՑ ԼԵԱՌՆ

Յիշատակեալ առ Զենոբայ միայն ըստ միոյ ձեռագրի. « Իսկ զօրքն Հայոց ելեալք անցանէին ընդ ստորոտ լերինն Մեղրեաց »։ Յայտ է այսպէս անուանեալ յանուանէ աւա-նապետին Մեղրեաց, զորմէ գրեալ եմք ՚ի Մեծ Հայս 105. բայց անուն լերինս ոչ գտանի յայլս ձեռագիրս, և ոչ ՚ի տպագրեալն Զենոբայ ։

ՄԹԻՆ ԼԵԱՌՆ ։ Նոյն որ Կանգառք ։

ՄՇԿՈՒՆԵԱՑ ԼԵԱՌՆ

Յիշատակեալ ՚ի խորհրդացուցին ՚ի Ճանապարհորդութեան Հալիփախեանց. « Եւ անտի (՚ի կողմանէ Տմորեաց) փո-խեալ եկեալ էին ՚ի Հայաստան գաւառ ՚ի խորին խորշ լերինն Մշկունեաց »։

ՆԻՓԱՏԻՍ

Ի յունական հնչմամբ Նպատ լերինն ՚ի գիրս աշխարհագրաց Յունաց. առ Պտղոմեայ Ե. 13. գրի և Նիֆատ. ուր թարգմանեալն օրինակին գրէ Նիֆատ ։

ՆՊԱՏ

Տես ՚ի Մեծ Հայս ՚ի Թղթ. 403 ։ Այս տողաւ անցանէ գետն Եփրատ, որպէս յայտ է ՚ի բանից Ագաթանգեղո-սի յԺԳ. « Հասանէր առ ստորոտով Նպատական լերինն. ընդ առաջ լինէր Թագաւորն ամենայն զօրօքն հանդերձ

առ ափն Եփրատ գետոյ ,, ։ Այլ և 'ի բանից Բուզանդայ Ե. Դ. « Անցին փոխ զգանձակաւն իւրեանց մօտ 'ի լեառնն 'ի Նպատ, մերձ 'ի գետն Եփրատ ,, ։ Առ ստորոտ էր և Զիրաւ դաշտն հռչակեալ սակս պատերազմին զոր Խորենացին ճոխ բանիւ ստորագրէ Գ. 37 ։ Ստրաբոն ԺԱ. 522. մասն կացուցանէ զնա Տօրոսի. զի ասէ անդէն վասն Տօրոսի. « Այլ ևս քան զևս վերամբարձեալ (Տօրոս) Նիփատես կոչի ,, [1] ։

ԸԱՀԱԳԻՎԱՆ ։ Տես 'ի մեծ Հայս 414 ։

ԸՐԻԶ

Ըրիզ յիշատակեալ 'ի Խորենացւոյն Բ. 65. ուր Վարդգէս, որ զքոյր Տ̃Թ. Երուանդայ առեալ էր իւր կին, շինեաց աստ զաւանն Վարդգիսի, որ ապա 'ի Վաղարշայ պարսպեալ կոչեցաւ Վաղարշապատ ։

ՈՍԿԻ ։ Տես 'ի վերոյ զլեառն ԾԱՂԿԻ ։

ԿԵՐԱԻՆԵԱՆ ։ Տես 'ի Գոտեւոր լերինս ։

ԳԱՂԱՑՈՑ ԼԵԱՌՆ

Յիշատակեալ 'ի Ճանապարհորդութե Հռիփսիմեանց, որ անկանի 'ի շրջակայս Անձևացեաց ։

ՁՈՂԱ

Օրմէ Թոմա արծրունի Գ. Դ. յասելն վասն Գուրգենայ. « Անցեալ 'ի գաւառն Որսիրանից . . . անդ լինելին ժողովեալ ամենայն բազմութիւն աշխարհակոյտ ամբոխից զաղթականաց գաւառացն կողմանցն Աղբակոյ, Զարեհաւանի և Ալկէոյ, և 'ի լեռնակողմանցն Աղզոյ, և ամենայն Առնոյ. մի կողմն 'ի Ձողա լեռնէն և անդր. և էին անհուն բազմութիւնն մածեալ շուրջ զերամբն իբրև զմարախ ,, ։

1 Ստրաբոն 'ի Նպատ լեառն զնէ և զԻբուս ասէ Ցերգերտ, զորմէ ասէ 'ի ստորագրութեան Ցերգերտ. և որպէս Թուի՝ զօտեար ասէ լինել զայս լեառն համեմատելով մասն Տօրոսի ։

## ՋՐԲԱՇԽ կամ ՋՐԱԲԱՇԽ

Նոյն լերանն զմին կոչեցաւ Սուկաւ լերանն, տես առաջեւ. ՂՍՈՒԿԱՒ:

ՍԱՆԱՑՐՈՒԿ : Տես 'ի մեծ Հայս 203 :

## ՍԱՍՈՒՆ

Տես 'ի մեծ Հայս 70. որ առ Թովմայի մեծոփեցւոյ կոչի և Լեառն Սասնոյ. « Ի նոյն ամի վարդապետն Բարսեղչու Ղազար, յոյժ հռչակաւոր և բանիբուն, աղօթաւոր և ճգնաւոր, փախեաւ 'ի յանօրինաց, և գնաց 'ի լեառն Սասնոյ »:

## ԾԵՐԿԵՒԵԼԱՑ ԼԵԱՌՆ

Յիշատակեալ առ Մատթէի Թիւ Ծ. յասէն վասն քաջին Վասակայ, որ պատերազմէր 'ի կողմանս Բջնոյ. « Ելանէր 'ի լեառն, որ կոչէր Ծերկեւելոյ »:

## ՍԻՄ

Կոչի և Սասուն, և Ցօլոս, և Խոյթ, կամ Խութ. զորմէ կարես տեսանել 'ի մեծ Հայս 70. 73. այլ քան զամենայն նախկին անունն է Սիմ, յանունն Սիմ կամ Սեմ նահապետին որդւոյ Նոյի: Այս լեառն էր 'ի Սասունն գաւառի Աղձնեաց նահանգի, բայց միւս կողմն լերին էր 'ի Տարօն գաւառին Տուրուբերան նահանգին, որպէս բաց յայլոց և այս բանն Յովհաննու կաթողիկոսի յայտ առնէ. « Իսկ մեծն Վրթանէս մինչդեռ էր նա 'ի Տարօն գաւառի, 'ի մատրանն Յովհաննու Մկրտչի և Աթանագինեայ վկայի՝ մահ սպառնացեալ լինէր նմա 'ի ծածուկ իմն 'ի բնակչաց Սիմ լերինն, որք վասն ապիրատ և անաղդական չար գործոց մերա յանդիմանեալ առ 'ի նմանէ լինէին »: Հռչակաւոր է աղբիւրն որ « առ ստորոտ Սիմ կոչեցեալ լերինն », զոր Սիոն կաթողիկոս դարձեալ բղխեցոյց աղօթիւք 'ի մէջն անդ ութերորդ դարուն, որպէս պատմէ նոյն ինքն Յովհան կաթողիկոս, Կիրակոս, և այլք.

## ՍԻՈՆ

Յիշատակեալ առ Ստեփաննոսի Օրբելեան ըստ. «Բարձին զնշխարս որդւոյն (Ստեփաննոսի Ուռնեցւոյն) և տանէին 'ի սուրբ միայնարանն, 'ի լերանն Սիոն կոչեցեալ»: Էր 'ի Սիւնիս, և որպէս թուի' 'ի Վայոց ձոր գաւառի նորա:

## ՍՄԲԱՏԱՅ ԼԵԱՌՆ

Ըստ Լաստիվերտցւոյն գլուխ ԺԱ. 'ի խորագրին այսպէս կոչի, ասելով. «Յաղագս կոտորածին որք եղեն 'ի գաւառն Բասենոյ, և 'ի լերանն որ կոչի Սմբատայ». իսկ 'ի բընագրի բանիցն կոչի Սմբատաբերդ. զորմէ տե՛ս 'ի Մեծ Հայս 23:

## ՍՈՂՈՓԻ

Լեառն' յիշատակեալ 'ի Խորենացւոյն 'ի Ճանապարհորդութեն Հռիփսիմեանց 'ի գաւառին Բերկրացոց:

## ՍՈՒԿԱՒ կամ ՍՈՒԿԱՒԷՏ

Այս լերանն նախ կոչէր Զրաբաշխ կամ Զրբաշխ, որպէս կոչի առ Յովհաննու կաթողիկոսի յասելն վասն Սուքիասեանց. «Թաղուցեալ 'ի Զրաբաշխն լերինն ... և գտեալ զնոսա 'ի Զրաբաշխն կոչեցեալ լերինն ... սուր 'ի վերայ եդեալ կոտորէ»: Այլ յետ նահատակելոյ Սուքիասեանց յայսմ լերին' փոխեցաւ անուն լերինն, զորմէ նոյն ինքն Յովհան կաթողիկոս. «Եւ լերաննն ապա յայնմհետէ յանուն Սուքիանոսի գլխաւորի սրբոցն Սուկաւ անուանի»: Նոյնպէս և 'ի Ճառընտրի 'ի վարս նոյն սրբոցն. «Բնակեցան 'ի Սուկաւէտ լերինն. որ յանուն գլխաւորի նոցա Սուքիաս' կոչեցաւ Սուկաւ»: Զերկու անուանս տայ ատէն' Սուկաւ և Սուկաւէտ, որպէս և սուղ ինչ զկնի յառաջն. «Եւ գտեալ զնշխարս վկայիցն անապատաւ 'ի Սուկաւէտ լերինն»: Նոյնպէս երկրորդ անուամբս կոչի և 'ի շարականին Սուքիասեանց: Անկանի 'ի Բագրեւանդ գաւառի, որպէս դնի 'ի Ճառընտրի. «Արի երթ 'ի Հայս, 'ի Բագրեւանդ գաւառի 'ի Սուկաւէտ լերանն: Տե՛ս և 'ի Մեծ Հայս 406. և զծաղկէ լերանն 'ի վերոյ: Այժմ կոչի Քէօսէ տաղի, զորմէ տե՛ս 'ի Նոր Հայաստան 'ի թղթ. 117:

## ՍՊԵՐԱՑ ԼԵԱՌՆ

Տես 'ի Մեծ Հայս 26։ Սոյն այս լեառն է որ 'ի գիրս Ծննդոց Ժ. 30. յիշատակի, և կոչի Սոփերայ լեառն արեւելեան, զորմէ կարեն առանձնել 'ի աստուածաբանութեան Մասիս լերին յերես 55։

## ՎԱՅԿՈՒՆԻՔ

Զայսմանէ յիշէ Խորենացին Գ. 14. յասելն վասն միջին Տիգրանայ. «Լուեալ էր համբաւ, թէ Վայկուն անուն յեղուզակ խուզէ զերկիրն Հայոց, գլխաւոր աւազակ կալեալ. որ և այժմ յանուն յեղուզակին կոչին Վայկունիք»։ Ի բազմաւորականին ասելով նոցին, ծանուցանել կամի՝ թէ ոչ միայն լեառն՝ այլ նաև երկիրն շրջակայ կոչեցաւ յայս անուն. յորմէ գտնի գայ՝ թէ էր երկրորդ գաւառն Արցախայ Վայկունիք անուանեալ յանուն նորա լեառն և գաւառն միանգամայն։

## ՎԱՂԳԻՆԱԿ

Յիշատակեալ առ Ասողկայ Ի. 2. յասելն վասն Բուղայի. «Որոյ եկեալ 'ի Տարօն, և կալաւ զերիս որդիսն Բագարատայ, և կոտորեաց զխուժացեալսն առհասարակ 'ի վերայ լերինն՝ որ Վաղգինակ ասի»։

## ՎԱՐԱԳ

Տես 'ի Մեծ Հայս 190. զոր Թովմա Մեծոփեցի մականուամբ իւին կոչէ ասելով. «Եկին 'ի վերայ աշխարհին Ռշտունեաց, և Վանաջերրին Վարագայ»։ Տես 'ի վերայ և ըղ-լեառն Մարաթ։

## ՎԱՐԱԶ

Յիշատակի առ Բուզանդայ Ե. 43. գրելով թէ Մանուէլ զօրավար և զօրք իւր էին 'ի Բագրաւանդ գաւառի 'ի Բագաւան աւանի, ուր լուեալ նախարարք՝ թէ Մերուժան բազմունք զօրաց 'ի վերայ գայ, «Զտիկինն Արշակունի (զԶարմանդուխտ) համբերձ մանկամբքն Արշակայ և Վաղարշակայ՝ փոքու և գլխաւորաց կանանեօքն՝ ընդ նոսա արձակեալ յամուր յուղարկէին, 'ի լեառնն մեծ՝ որ անուանեալ կոչի Վարազ»։ Այս անուամբ յիշատակի և առ-

Թովմայի արծրունւոյ Է. 11. յասելն նորա. "Անցեալ ընդ ծովակն Յրմեայ և ընդ Վարայն Զարեհաւանի",: Բայց չէ մարթ որոշել յայս բանս՝ արդեօք անուն ծովակի է, թէ անուն լերին կամ այլ ինչ տեղւոյ:

## ՎԱՐԱԶԱԲԼՈՒՐ

Յիշատակեալ առ Յովհաննու մամիկոնենից, զորմէ տես՝ 'ի մեծ Հայս 111:

## ՎԱՐԱՍՊԱՅ ԼԵԱՌՆ

Յիշատակի առ Ասողկայ Բ. 3. "Եւ դարձեալ դաշնայ (Շահրվարազ պարսիկ) զօրօք 'ի Հայս., անցանէ 'ի Շիրակ ընդ Կոգովիտ, Ճանապարհ կալեալ ի Հեր և Զարեւանդ գաւառ դէպուղիղ 'ի Տիզբոն 'ի վերայ Խոսրովու (Պարսից արքայի), և անցեալ յայնկոյս լերինն Վարասպայ, յերկիրն ասորեստանեայց",: Մարթ է այսմ լերինն լինել 'ի սահմանագլուխն մեծին Հայոց, զոր յետ անցանելոյ ապա եմուտ յերկիրն ասորեստանեայց. իսկ յիշելն նորա 'ի վերոյ զՏիզբոն, զընթացս ճանապարհորդութեն նորա կամի յայտ առնել, և ոչ թէ ինքն յայնժամ էր 'ի Տիզբոն: Ուստի այսպէս պարտ է ընթեռնուլ. Ճանապարհ կալեալ 'ի Հեր և Զարեւանդ գաւառ առ 'ի գնալ 'ի Տիզբոն, անցեալ յայնկոյս լերինն Վարասպայ, եմուտ յերկիրն ասորեստանեայց:

## ՏԱՐՕՆՈՅ ԼԵԱՌՆ

Յիշատակի առ Յովհաննու մամիկոնենոյ. "Բանակեալ էր մերձ 'ի քարաղլուխն՝ որ հայի հանդէպ Տարօնոյ լերինն",. 'ի Թղթահամարն 45:

## ՔԱՐՔԵԱՅ ԼԵԱՌՆ կամ ՔԱՐՔԷ

Ոսկան գրէ վասն երից որդւոց Գիսանեայ և Դեմետրեայ. "Յետ ժամանակաց խորհուրդ 'ի մէջ առեալ Կուառս և Մեղտէս և Հոռեան, ելեալք 'ի լեառն Քարքեայ, և գտին զայն տեղի բարեհամ և գեղեցիկ. զի ընդարձակութն էր որսոց և հովասուն, խոտոյ և փայտի առատա-

ձեան . և չքնեցին անդ դատաստակերտս , և կանգնեցին երկուս կուռս ,, ։ Տես և 'ի մեծ Հայս 93 ։

## ՔԹԻՌ կամ ՔԻՌ

Յիշատակի առ Թոմայի արծրունւոյ Է. 9. "Եւ զայլս 'ի յերկրէն Աղուանից . . . զօրականս 'ի լեռանէն ամուր (ժողովէ) անուանեալն Քթիղ,,։ Զոր Թէպէտ յերկրէն Աղուանից դնէ, բայց քանզի յիշէ անդէն զդաշտն Գարգարացւոց և զՊարտաւ՝ որք են 'ի նահանգն Ուտի, յայտ է Թէ և այս լեռան անկանէր յՈւտի , վասն որոյ և յաշխարհիս Հայոց . այլ սակս գոլոյ 'ի ձեռս Աղուանից՝ առ հասարակ կոչէր յանձամբ Աղուանք ։ Ի գլուխն Ժ . այս անուն գուցէ վրիպակաւ գրի Քիղ, յասելն՝ Թէ զմարմին Մուշկաթլի վանականացն "եդին 'ի վերայ 'ի տեղւոջ վկայութեան նորա 'ի Գառգառ մերձ 'ի լեռան Քիղ, ուր էր բանակ այլազգեացն ,, ։

## ՅՕԴՈՒԱԾ Գ

Լեառն Հրաբխոյն ։

ՈՒՆԻՑԻՑ չէք յիշատակ հրաբուխ լերինս առ հին մատենագիրս մեր երևեալ յաշխարհիս մերում, սակայն գտանի 'ի յիշատակարանի միում Յայսմաւուրաց գրեալ 'ի Վարդան գրչէ 'ի հնգետասաներորդ դարու . զորոյ զբանսն ածեմք աստանօր. "Եւ արդ գրեցաւ սա 'ի Թուականութեան Հայոց մեծաց ՊՂ. ամին (1441) յերկրիս Վասպուրականի, 'ի քաղաքիս Վան կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս և այլ սրբոցս , 'ի հայրապետութեան մեծ աթոռոյն Սսայ, որ յայսմ ամի զԼուսաւորչի աջն գողացեալ տարան, և աթոռն ունայն մնաց , 'ի դառն և 'ի չար ժամանակիս , 'ի պարոնութեան Ջհանշահին . . . Յայսմ ամի մեծ նշան եղև . քանզի լեառն Մածրուտ կոչեցեալ՝ որ 'ի մէջ 'ի Խլաթ և 'ի Բաղէշ է, յանկարծակի գոռաց իբրև զսաստիկ որոտումն ամպոյ, որ երկիրն ամենայն ահաբեկ եղեալ սասանեցան . որ և տղայքն ընդ հարս և ընդ մայրս ողջս առեալ լային . վասն զի տեսին որ սառն (սարն) պատառեցաւ լայն իբր զքաղաք մի, և այլ փոքր փոքր, և 'ի պատառուածէն 'ի վեր հուր ցոլացեալ ելա-

նէր մառախլապատ ծխով և ժահահոտութեա՛. որ և տը-ղայքն 'ի հոտոյն հիւանդանային. և քարինք եռային յա-հագին բոցոյն. և մեծամեծ վէմս ընդ երկինս ձգէին ձայնիւ որոտմամբ. որ և 'ի՛ դղրդմանէն Խլաթ քաղաք կարծիս առեալ դողային: Զայս ամենայն տեսին աչօք բա-ցօք և այլք գաւառք „:



# ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

## ԳԵՏՔ ԾՈՎԱԿՔ ԼԻՃՔ

### ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

ՋՐՈՑ առատութե՛ն Հայաստան աշխարհիս, միանգամայն ընդ քաղցրութեան երկրին և օդոյ այնչափ էր՝ մինչև զսիրտ աշխարհակալին Շամիրամայ յինքն ձգել. և 'ի մէջ այնչափ աշխարհաց նորոց զՀայս ընտրել յիւր ամարանոց. "Տեսեալ, ասէ Խորենացին Ա. 16. զգեղեցկութիւն երկրին և զօդոցն մաքրութիւն և զաղբերացն յստակագոյն բղխմունս և զկարկաջասահանութիւն գետոց բարեգնացից, Պարտ է մեզ, ասէ, յայսպիսում բարեխառնութեան օդոց և մաքրութեան ջուրց և երկրի, քաղաք և արքունիս շինել բնակութեան, որպէս զի զչորրորդ մասն 'ի բոլորմանէ տարւոյն, որ է ամառնայինն եղանակ, ընդ ամենայն բարեվայելչութեան անցուցանեմք 'ի Հայս":

Սոյն բազմութիւն գետոց աշխարհիս վկայէ և Ստրաբոն գիրք ԺԱ. Թղթ. 529 ասելով. "Գետք Հայաստանեաց են բազումք, յորս ծանօթագոյնք՝ որք իջանեն 'ի ծովն Պոնտոս՝ են Փասիս և Լիգոս (Գայլ), փոխանակ որոյ ոչ ուղիղ դնէ Երատոսթենէս զԹերմոտոնդա։ Իսկ 'ի ծովն Կասպից՝ Կուր և Երասխ։ Ի ծովն Կարմիր (իմա՛ 'ի ծովն Պարսից) Եւփրատ և Տիգրիս": Զայսոսիկ յիշելով Ստրաբոն՝ յիշեաց միայն զմեծամեծ գետս Հայաստան աշխարհիս, 'ի բաց թողեալ զփոքունս. զի արդարև սոքա են մեծագոյն գետք մեծին Հայոց, բաց 'ի Լիգոս գետոյ՝ որ չէ 'ի կարգի սոցա, և առաւել սեփական է փոքուն Հայոց:

Մերս Խորենացի յաշխարհագրութեան այսչափ ինչ գրէ վասն մեծին Հայոց, ունել "գետս մեծամեծս և մանունս": Իսկ վասն նահանգին նորա կոչեցեալ Բարձր

Հայք, ասէ, « Ի չորս կողմանս արձակէ գետս մեծա-մեծս »: Որով Հայաստանն ըստ արժանւոյն դասի ընդ այն աշխարհս՝ որք կոչին Ջրաբաշխ [1]: Կամելով յայսմ վայրի գրել զգետոցս աշխարհիս, նախ գրեսցուք զչորեցունց մեծամեծ գետոց, ապա զմնացելոց:

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

Զորեքեանն մեծամեծ գետոց Հայաստանեայց, որք են գետք դրախտին:

### ԵՐԱՍԽ

ՔԱՆԶԻ 'ի մեծամեծ գետոց անուն սա միայն բոլորովին սեփական է Հայաստան աշխարհիս, որ անդստին յականց իւրոց մինչև ցբերան իւր՝ ընդ հանօրէն Հայս ընթանայ, նմին իրի զմանէ նախ խօսեսցուք:

Ա. Անուն գետոյս:

Կոչեցաւ Երասխ՝ յանուանէ Թոռին Արամայիսայ նահապետին մերոյ, որպէս գրէ Խորենացի Ա. 12. « Իսկ որդի նորա (Արմենակայ որդւոյ Հայկայ) Արմայիս շինէ իւր տուն բնակութեան 'ի վերայ ռոտոյ միոյ առ եզերբ գետոյն, և անուանէ զնա յիւր անուն Արմաւիր. և զանուն գետոյն յանուն Թոռին իւրոյ Արաստայ՝ Երասխ »: Առ մատենագիրս Յունաց Երասխ անուանի այս գետ Արաքսիս. իսկ առ Հռոմայեցւոց մատենագիրս Արաքսէ. որ առ Պլինիոսի Գ. 10. վրիպակաւ գրեալ կայ Արոկէ. յասելն՝ թէ մեծ Հայք ունին քաղաքս Արտաշատ առ Արոկէ գետով, փոխանակ գրելոյ Արաքսէ գետով, որպէս կոչեն Եւրոպացիք զԵրասխ գետ:

Ի նախագրեալ բանից մերոց Խորենացւոյն, զոր 'ի Մարիբասայ առնու, 'ի յայտ եկանէ առասպելաբանութիւնն յունական վասն պատճառի անուանակոչութեան Երասխայ, զոր յիշէ Ստրաբոն ԺԱ. ժդ. 531. և ոչ հաստատէ. « Արաքսէս կոչեցեալ համարին », ասելով, յԱրմենոսէ ումեմնէ, որ ընդ նոցա էր ընկեր Յասոնի 'ի Ճանապարհորդութեան Արգոնաւորդաց, սակս նմանութեան ընդ Պենէոսի

1 Տես 'ի համառօտախօսութեան աշխարհագրութեան, 'ի Թղթահամարն 216:

գետոյն յունաստանի, որ նոյնպէս Արաքսիս կոչէր. զի և Պենէոս մի այնորիկ Արաքսիս կոչեցաւ, ըստ որում զՕսսա տեղին անջատէր յՈլիմպոսէ, և ընդ Տեմբէի ընթանայր. “Ըստ այսմ, ասէ, և Արաքսիս (Երասխ) որ 'ի Հայաստան՝ իջեալ 'ի լերանց վաղ՝ ուրեմն ասեն ծաւալեալ զեղոյր, և անդուստ ողողէր զդաշտավայրս՝ որ 'ի ներքոյ, չունելով ինչ ելս. իսկ Յասոնի բերեալ զնմանութիւն Տեմբեայ՝ եհաց անցք ինչ խորին, ընդ որ այժմ ջուրն թափի 'ի ծովն Կասպից. յայնմհետէ բացաւ դաշտն արաքսեան՝ ընդ որ Արաքսիս (Երասխ) բերի 'ի քարավաղս„: Այլ ամէնր ստուէ յայտնի ցոյց այն է՝ զի գետս այս արդէն իսկ յառաջագոյն Երասխ կոչէր 'ի մերում Հայաստան աշխարհի բազում ամօք յառաջ քան զոր դնէ յունականն զրոյցս այս. զի Արմայիս նահապետ էր յառաջ Աբրահամու, իսկ Նաւա-պարհորդութիւն Արգոնաւորդաց յառաջ դատաւորաց Իսրայէլի իբր առ Դեբովրայիւ:

## ՌՈՀ կամ ՌՈՍ

Զայս անուն տայ Երասխայ արաբացի աշխարհագիրն Նուպեան. բաժին Ե. մասն 6. ասելով. “Ի Հայաստան կըր-կին են գետք անուանիք. այսինքն՝ գետն Ռոշ. և գետն Քօռ (Կուր), երկոքեան ևս յարևմտից յարևելս հոսեալ. Քօռ, որ մեծ է և նաւարկելի, բղխէ մերձ 'ի լեառն (Կով-կաս), և ընթացեալ առ Տփխիս, անդուստ առ սահմանս Հանձայ և Շամքուռի թևակոխեալ, ընթացակցի ընդ Ռոշ գետոյն, և հեղանէ 'ի ծովն Խազար (իմա՛ զծովն Կասպից). սոյնպէս և գետն Ռոշ՝ է մեծ յոյժ. բղխէ 'ի կող-մանց խորին Հայոց 'ի Գալիգալայէ„: Պօշար Ք. 13. հա-ւանեալ է յոյժ՝ թէ Նուպեանն յայս բան Ռոշ անուանէ իմանայ զԵրասխ գետ. “Ի բանից սորա, ասէ, առաւել քան զբաւականն յայտնի է՝ թէ Ռոշ է գետն Երասխ„: Այլ 'ի գիրս մեր որպէս և Յունաց և հռոմայեցւոց ան-ծանօթ է Ռոշ անունս այս Երասխայ. նա մանաւանդ բան Ակաթիմերայ այլ իմն գետ ցուցանէ լինել զերկոսին. զի գիրք Ե. գլուխ 1. ուրոյն յիշէ զՌոս գետ, և ուրոյն զԵ-րասխ, որք անկանին 'ի ծովն Կասպից. որպէս ունիս տե-սանել 'ի հատոր Ե. փոքունց աշխարհագրաց. որով և սխալ լինի նոյնացուցանելն Նուպեան արաբացւոյն: Լաւ ևս է ասել, թէ անունս այս՝ ոչ է անուն նոր, այլ աղաւաղեալն Երասխ անուան. զի Յոյնք և հռոմայեցիք զԵրասխ կոչեն

Ռաս. այլք կրճատելով կոչեցին Ռաս. զնոյն ապա և ևս այլայլելով կոչեցին Ռօս, և Ռօշ։ Տես վասն այսր և 'ի գլուխն Բնակչաց, 'ի բնակութե սերնդոց Յաբեթի զՄոսոք։ Տես առաւել և զՌահ վտակ Երասխայ։ Իսկ զԳալիգալայն Տաճիկք Գարա գալէ կոչեն, ասէ նոյն ինքն Պօշար [1]։

## ԳԵՀՈՆ կամ ՃԵՀՈՆ

Նայս անուն կոչէ զԵրասխ Մովսէս ծնն. բ. 13. որ 'ի բարբառ եբրայեցւոց նշանակէ յորձանաձև հոսել, կամ թէ ընթացեալ վազս առնուլ։ Այսպէս կոչեցաւ, ասէ Կալմէթ, ըստ որում Երասխ յառաջատանալ իւրում սաստիկ սրընթաց վազս առնու. բայց մեք պատճառ այսպէս կոչելոյն Երասխայ առաւել յարմար դատեսցուք զիւր Քորաղակն. զի որովհետև առաջին և երկրորդ գետք դրախտին հեռի գոլով 'ի տեղեաց ուր էին յայնժամ Հրեայք՝ անծանօթք էին Հրէից, Մովսէս զերևելի նշանս զիւրաքանչիւրոց սեփականս յառաջ բերել նկրտի առ 'ի ծանօթ կացուցանել Հրէից. և զի՞նչ առաւել երևելի և սեփական նշան քան զայս Քորաղակ, զոր չիք տեսանել յայլ գետս մինչ այնր կողմանն, ուր համօրէն գետն միանգամայն վազս առեալ յանչափ բարձրութէ 'ի վայր անկանի այնպիսի նորատեսիլ կամարակապ ձևով. զորմէ առաւել լիցին բանք։ Վասն որոյ և Մովսէս 'ի Քորաղակ անուանէս առեալ, զՀամօրէն գետն Երասխ նովին անուամբ կոչէաց թարգմանաբար յիւր բնիկ բարբառ։

### Բ. Ակն Երասխայ։

Ի գիրս մեր 'ի Համառօտ ստորագրութե գետոց, որ տպագրեալ կայ զկնի աշխարհագրութեան Խորենացւոյն թղթ. 52. Երասխ դնի բղխեալ 'ի Բասեն։ Առ օտարազգիս Ստրաբոն՝ որ ժա. 501. 'ի Հայաստանեաց ելեալ ընթացեալ ասէ, 'ի 527. զտեղին որոշելով դնէ բղխեալ 'ի լեառն Աւոս, որ լատին հնչմամբ կոչի Աբոս։ Պլինիոս Զ. 9. բղխէ, ասէ, "Արաքսէս (Երասխ) 'ի նմին լեռնէ՝ ուստի (բղխէ) և Եփրատ վեց հազար քայլ (վեց մղոն) անջրպետ 'ի միջի

1 Բայց ինձ թուի մանաւանդ անուն յունականն, որք գուցէ այսպէս կոչէին զՀասան ղալայն, առ որով անցանէ Երասխ 'ի ծագման անդ իւրում, չփոթեալ է բառախս հետ ղալայ. որ առ-գարև նշանակէ բարի կամ գեղեցիկ բերդ, որպէս և յունականն ձայնդ Կալօս, Կալէ, նշանակէ բարի. զոր նուազեալն գուցէ 'ի Յունաց լուեալ եզ փոխանակ հարազատ անուանն։

ունելով, և անձնեցեալ Մուս (Մուրց) վտակաւ, և սա՝ որ-պէս բազումք կարծեցին, 'ի Կիւրոսէ ('ի Կուր գետոյ) բաժանեալ ջրոյ 'ի ծովն Կասպից»: Եւ զի 'ի Ե. 24. գրեալ էր՝ թէ գետան ուստի ելանէ Եփրատ՝ ոմանք Արփա կոչեցին, և ոմանք Քարօղէն, յայտ է թէ վասն լեռանն նշանակել կամի, զոր ինչ Սարաքոռն. արդ Արփա կամ Արփօ լեռանն ըստ մեզ է լեռանն Արփահունեաց, որպէս գրեցաք 'ի գլուխն Սերանից. իսկ Քարօղէն ըստ անուանն է լեռանն Կապոյտ, այլ զծագումն Եփրատայ դնել 'ի Կապոյտ լեռանն՝ ոչ 'ի դէպ գայ. քանզի Եփրատ ոչ բղխեալ, այլ արդէն գետացեալ առատացեալ գայ անցանէ զկողմամբքն՝ ուր էր Կապոյտ լեռանն յԱյրարատ նահանգի. Վասն որոյ յայտ է թէ սորա զվտակս ինչ Եփրատայ տեսեալ զայնու կողմամբ, կարծեցին լինել բնիկ նախկին ակն Եփրատայ: Երոդոտոս գիրք ա. գլ. 202. գրէ. «Իսկ Արաքսիս (Եփրատ) գետ 'ի Մատիենեանց... հոսի, այլ 'ի քառասուն բերանոց բղխեալ ամենեքին 'ի լիճս և 'ի մօրս թափին բաց 'ի միոյն»[1]: Այլ

[1] Զայս բան Երոդոտոսի՝ վասն մերոյն Եփրատայ ասացեալ դնէ Կալմետ 'ի մեկն. ծնն. բ. 13. բայց Իսահակ Վարդի 'ի վերլուծութեան Մելայ գիրք Գ. գլ. 5, վասն Օքսոս գետոյ Մարգիանայ աշխարհին ասացեալ համարի, զոր նախ քան զմեծն Աղեքսանդր Յոյնք Արաքսիս կամ Եփրատ կոչէին սակ: Բայց նոյն ինքն հանէ անդէն ընդդիմութիւն, թէ զիարդ արդ բղխեալ դնէ Երոդոտոս 'ի մատիանեան լերանց, փոխանակ ասելոյ 'ի Բարոպամիսեան լերանց, որպէս գրէ Արիանոսն: Կելլարիոս և գիրք Գ. գլ. 21. 'ի գրեալն զՄարգիանայ աշխարհէն՝ համառօտեալ է 'ի կարծիս Վարդեայ. մի՝ զի Երոդոտոս 'ի գրեալն անդէն վասն Կիւրոսի առըստյք թէ կամէր խաղալ 'ի վերայ Դամիրայ ակինաղն Մասսագեթաց, զՄասսագետս դնէ ընդ արեւելս յայնկոյս Եփրատ գետոյ: Արդ Եփրատ հայոց ոչ անկանի ընդ արեւելս՝ այլ յաւէտ յարեւմտից և 'ի հիւսիսոյ Կիւրոսի՝ որոյ առըստյանիւս սեթոս էր 'ի Պարսս, յորմէ յայտ է, սակ՝ թէ Երոդոտոս խօսի անդէն զայլ ինչ Եփրատայ որ էր Օքսոս:

Երկրորդ՝ Սանտիֆանդոս բիւզանդացի զՄասսագետս դնէ լինել առդ սկիւթացւոց, որպէս և նոյն ինքն Երոդոտ գրէ՝ թէ ոմանք զՄասսագետս համարին ժողովուրդ սկիւթացւոց. իսկ զսկիւթացիս սակ Կելլարիոս ոչ որ դնէ յայնկոյս Օքսոս գետոյ. յորմէ խմաստասիրէ թէ Եփրատ՝ քանզի ոչ է անուն միոյ գետոյ, վասն այնորիկ «Ձէ ինչ օտար ինձ և երկրորդ Եփրատ դնել 'ի շըջակայս բաբելացւոց և մարկիանեանց, այն է Օքսոս գետ՝ այսպէս կոչեցեալ յոմանց»: Բայց նոյն ինքն Կելլարիոս սակ անդէն վասն Մասսագեթաց՝ թէ ստոյգ նոցա չէ յայտնի. զի որոյ և Մաագինիէ 'ի բանն Մասսագեթդէ, որ է Մասսագետք, բազմիցս մերձե զայս կարծիս Կելլարիոսի և Վարդեայ. մի զի սակ, զՄասսագետս պարտ է դնել համառօտեալ 'ի բազում ժողովուրդս յորոց ոմանք բնակեալ կային և 'ի մէջ Պոնտոս և Կասպից ծովուց: Զոր և արդարև հաստատէ պատմութիւն մերոյ ազգին. զի Բուզանդ Գ. 5. զՄասսագետս յիշէ ընդ Ալանաց, որ է աւել յայնկոյս Կասպից ծովուն առ մերով Եփրատաւ. իսկ 'ի Գ. 6. յիշէ զՄասսագետս որ յայնկոյս Կասպից ծովու, յորժամ յիշէ զՍանեսան զարքայն Մասսագեթաց զարշաւանն, զազգականն Հայոց արքայի. զերկուսն հանաց. արդ կամի նշանակել ըղցելն արշաւանի պատճառաւն. նոյն

մադլիճնեանք, որպէս ունիմք գրեալ այլուր, եւ 'ի Հայս։ Պատմութիւն Մելայ գիրք Գ. գլ. 5. զԱրաքսիս. որ է Երասխ, զնէ բղխեալ 'ի լանջաց Տօրոսի ։ բայց որպէս գրեալ եմք 'ի գլուխն Լերանց, զՏօրոս լերինս ոմանք 'ի Նախնեաց ընդարձակ առեալ, գրեթէ զամենայն լերինս Հայաստանեաց մասն համարէին Տօրոսի ։

Գ. Ընթացք Երասխայ ։

Աստրաբոն ժա. 527. ստորագրելով զընթացս Երասխայ գրէ. “Արաքսէս (Երասխ ընթանայ) յարեւելս կոյս մինչեւ ցԱտրպատականի, ապա խոտորի յարեւմուտս կոյս եւ 'ի հիւսիսակողմն, եւ նախ ընդ Ազարա անցեալ, ապա ընդ Արտաշատ քաղաք Հայաստանեաց, զկնի ը̄ Երասխեան դաշտ 'ի ծովն Կասպից զեղու„ ։ Եւ զի Երասխեան դաշտ ըստ

Մաղքութք են և յիշատակեալն Աստղեայ Է. 3. 'ի Բահղ, և յերկիրն Քուշանաց։

Թէ քանի՛ ընդհանուր անուն էր Մաղքութք՝ ցուցանեն և այս բանք օտարազգի պատմագրաց. զի Փոխփիլեան նոյն համարի զԱլանս ընդ Մաղքթաց. որպէս և Ամմիանոս գիրք ԻԳ. գլ. 5. խոկ Դեգեծէս նոյն համարի ընդ Ախխազս. սոյն Ալանք և Ախխազք էին յայսկոյս Կասպից ծովուն։ Թէոփ զՊրոկոպիոս և զՆուագր Է. 2. որք զՀոնս համարին լինել Մաղքութս։ Այդ Մոսեփինիէ զԴոմիոս զնէ արկեն լեալ Մաղքթաց բնակելոց 'ի մէջ Պոնտոսի և Կասպից ծովուն, որ անկանին յայնկոյս մերոյս Երասխ գետոյ. զոր Երոդոտոս զնէ Է արեւելս ոչ Կիւրոսի՝ այլ իւր ինքեան ուրանօր գրէր, կամ թէ առել՝ ընդ արեւելս յունաստանի առ որս գրէր. և վասն սկիւթացւոց հաստատէ Մոսեփինիէ բնակեալ ոչ միայն յայնկոյս Օքսոս գետոյ՝ այլ և յայսկոյս ընդդէմ Կելլարիոսի։

Ի լինելն այսպէս՝ վայրապար է այնուհետեւ բաղդատեցուցանել զԵրասխ գետ, և զանուանեալ Երասխն յայս բան Երոդոտոսի՝ համարել զգետն Օքսոս, յոր առեա չունիմք ինչ յայտնի վկայութիւն 'ի նախնեաց, այլ ինքնակամ հնարեալ է 'ի Վոսսեայ. բստ որում զոր ինչ Մելա և այլք Երասխայ ընծայեն, միայն Պողիպիոս Օքսոսի ընծայէ. մանաւանդ զի 'ի գնելն Երոդոտոսի բղխեալ 'ի մադլիճնեան լերանց՝ յայտնի ճշմարտեալ զրոյց Օքսոս գետոյն, և ցուցանէ լինել զմերն Երասխ։ Հաստատուն այսմ է և այն՝ զի 'ի նախնեաց նոյն խոկ Աստրաբոն ժա. 531. վասն մերոյն և ոչ վասն այլ ինչ Երասխայ խնամայ զպէշեալն Երոդոտոսի. միայն ընդ ստորագրութե նորա ոչ հաւանի. զի արդարեւ գոյ 'ի բանս նորա շփոթութիւն խառնելով ընդ ստորագրութե այլոց գետոց. որպէս և յայլ ինչ ստորագրութիւն նորին է անտանել. զի Կելլարիոս գիրք Գ. գլ. 8. 'ի խօսելն զԱլիս գետոյ առէ, թէ Երոդոտոս 'ի ստորագրելն զընթացս Ալիս գետոյս՝ խառնէ զԿիլիկիա յայնկոյս Տօրոսի ընդ Կապադովկիոյ. զի ոչ որ զԱլիս գետ յայնկոյս Տօրոսի զնէ, և մերձ 'ի ծով և 'ի Կիլիկիա; որպէս զնէ Երոդոտոս։

Բայց վասն Մոսեփինեայ պարտ է առել զկնի ստուգեալ զայս հնութիւն զոր յիշեցաք 'ի վերոյ. զի յիւրում բառարանի 'ի ստորագրելն նախ զշարժ բորդ Արաքս (Երասխ) գետ, զհետ երեթայ անգէն կարծեաց Կելլարիոսի. ապա 'ի գրելն զանուանեալ Մասսաձէտէ, որ է Մաղքութք, ընդդիմանայ կարծեաց Կելլարիոսի, առանց յիշելոյ զառաջին գրեալն իւր։

Ստրաբոնի է 'ի Հայաստան, յայտ է թէ որպէս ակն Երասխայ՝ նոյնպէս և բերան Երասխայ ըստ Ստրաբոնի ևս անկանի 'ի Հայաստան. ժուր թողցուք զի և ըստ առաջագրութեան մերոց մատենագրաց 'ի Փայտակարան աշխարհի անկանի բերան Երասխայ, որպէս ունիս տեսանել 'ի մեծ Հայս 319. վասն որոյ պարտ է ասել՝ թէ Երասխ զամենայն ընթացս իւր կատարէ 'ի Հայաստան, և ոչ ըստ Կելլարիոսի "Զմեծ մասն ընթացից իւրոց„: Վասն որոյ և Պտղոմէոս 'ի խօսելն զԵրասխայ ընդ աշխարհն Հայոց ընթանալ ասէ, կամելով ասել ըստ համօրէն ընթացից իւրոց. իսկ 'ի գրելն զԵփրատայ և զՏիգրիսէ՝ ըստ մասին ասէ ընթանալ 'ի Հայաստան: Այս Երասխ գետ լինի ըստ Ստրաբոնի 523. բաժանիչ Հայաստանեայց և Ատրպատականի ընդ ասպարէզս 1400:

Ըստ նշանագրելոյ պատմագրաց մերոց՝ այսպէս են ընթացք Երասխայ: Ելեալ 'ի բարձր Հայոց ընթանայ ընդ Այրարատ նահանգ, որպէս յայտ առնեն քաղաքք Այրարատու շինեալք առ Երասխաւ. անցանէ ընդ Սիւնիս, որպէս յայտ առնէ Խորենացի յաշխարհագրութեան յասելն վասն Սիւնեաց, թէ կայ "ընդ մէջ Երասխայ և Արցախայ„. և որպէս ցուցանէ նաև քարավաճն Երասխայ, զորմէ ստորև: Անցանէ առ Ուտի նահանգաւ, զորմէ գրէ Խորենացի յաշխարհագրութեան. "Ուտի 'ի մնից կայ Երասխայ, 'ի մէջ Արցախայ և Կուր գետոյ„: Հուսկ ապա անցանէ ընդ Փայտակարան, զորմէ գրէ. "Ցելից կայ Ուտիոյ առ Երասխաւ„: Եւ յայնմ նահանգի թափի 'ի ծովն Կասպից, որպէս ցուցեալ է մեր 'ի մեծ Հայս 'ի թղթ. 319. տես անդ: Քաղաքք երևելիք յանուանէ յիշատակեալք առ Երասխաւ՝ են Վաղարշաւան, Երուանդաշատ, որ էր իբր կղզեակ ինչ պատեալ 'ի ջուրց նր. Արտաշատ, սոյնպէս յիշատակեալ և առ օտար մատենագիրս, և Արմաւիր. այս չորեքին ևս քաղաքք էին յԱյրարատ նահանգի: Առ Երասխաւ էր և Նախճաւան քաղաք Վասպուրականի, որպէս ունիս տեսանել 'ի մեծ Հայս 218:

Ի կողմանս Արտաշատու գոյր և անտառ առ Երասխաւ, որպէս ակնարկեն բանք Խորենացւոյն Գ. 49. յասելն. "Ձեռնտու լինի նմա և Երասխ փայտիւք մայրից„: Զպաղիլ կամ զսառիլ գետոյս առ Արմաւիր քաղաքաւ՝ յիշէ Խորենացի Բ. 39. յաւուրս Բ. Երուանդայ, զի ասէ. "Քանզի էր հեռացեալ գետն Երասխ, և յերկարել ձմերայնոյն և 'ի դառնահոտ հնչմանէ հիւսիսոյ՝ պաղացեալ

Ձուլեալ վտակն, ոչ ուստեք արբուցումն բաւական թագաւորականին գաւառեր տեղւոյ „։

### Դ. Քարաճաղ Երասխոյ ։

Երասխ յընթացս իւր ունի սահմանք երևելի, զորմէ յիշատակէ Խորենացին Բ. 12. ասելով. "Մինչև ցդաշտ մի ընդ որ [1] գետն Երասխ հատեալ զքարանձաւս լերանց՝ անցանէ ընդ խոխոմաձիգս և նեղս, ահագին դղրդնչմամբ իջանէ 'ի դաշտն „։ Որոյ տեղին էառ այս զանուն մինչ սեփականն՝ զոր Յոհան կաթողիկոս ծանուցանէ ասելով. "Մինչ 'ի դաշտ մինչ՝ է որ հատեալ անցանէ գետն Երասխ յորձանուտ խոխոջիւք վազս առեալ, և թափ անկեալ ընդ նեղ և ընդ նուրբ խոխոմս քարանձաւի միոյ՝ որ այժմ 'ի բազմաց Քարաճաղ անուանի „։ Այս դաշտ որով և Քարաճաղն՝ էր 'ի Սիւնիս. զի Խորենացին իսկ և իսկ յարէ անդէն. "Աստ բնակեալ Սիսակ ընդ շինութե զսահմանս բնակութե իւրոյ. և զաշխարհն կոչէ իւրով անուամբն Սիւնիք „։ Զայս առաւել որոշակի նշանագրէ Սամուէլ ասելով. "Ծնանի Գեղամ զՍիսակ. և սահմանս հատանէ նմա 'ի ծովէն ընդ արևելս կոյս, ընդ որ անցանէ գետն Երասխ յորձանուտ խոխոջիւք 'ի դաշտն՝ որ կոչի Քարաճաղ. և աշխարհն այն անուանի Սիւնիս „։

Ու զանց արարին և օտարազգի մատենագիրք յիշել զայս Քարաճաղ երևելի. յորս Ստրաբոն ԺԱ. 531. յետ յիշելոյ զԵրասխեան դաշտս, ասէ. "Ընդ որ Արաքսիս (Երասխ) բերի առ Քարաճաղս „։ Առաւել ստորագրութի և բացատրութի գտանեմք յիշատակեալ առ Պոմպոնիոսի Մելայի գիրք Գ. գլուխ. 5. "Արաքսէս (Երասխ) 'ի լանջակողմանց Տօրոսի արձակեալ ցորչափ հատանէ զդաշտս Հայաստանեաց՝ հեզիկ և լռիկ ընթանայ, և ոչ ընդ կողմն մինչ խոտորի, թէպէտ և քաջ նշմարիցես։ Իսկ 'ի հասանելն 'ի դժուարին տեղիս՝ աստի և անտի 'ի քարանձաւաց ձնշեալ, որչափ անձկանայ՝ նոյնչափ առաւել երագագոյն վազս առեալ, հարկանի ընդ հանդիպակաց քարան-

1 Այս օրինակք Խորենացւոյն գնեն միայն որ։ Բայց քանզի Յոհան կաթողիկոս և Սամուէլ 'ի պատմելն զայս զայս պատմութիւն գնեն ընդ ու, վասն որոյ և մեք այնպէս եդաք 'ի բնագիրս Խորենացւոյն, զի և նոքա 'ի Խորենացւոյն առնուն զայս պատմութիւն. յորմէ յայտ է թէ յօրինակս Խորենացւոյն որ 'ի ձեռս նոցա էին՝ այնպէս էր գրեալ։ Եւ յայսպիսի ժամանակս վրիպակաւ գրչաց նախդիրս ընդ անկեալ։

ձաւս, յորմէ և աՀագին դղրդմամբ և խոխոջալով ափնչափ շտապաւ սաՀի, մինչև ոչ ուր ունէր 'ի բարձանց դաՀավէժ-իլ 'ի սոոր, այլ անդր քան զձորափոր իւր Թափ առեալ ձգէ զջուրսն առաւել քան զօրավար չափն ամբարձեալ, առկախեալ ջրովք առանց ձորափորոյ ճանապարհ Հա-տեալ. ապա ուրանօր կործանեալ կամարաձև գետաՀե-տեալ իջանէ, անդ խաղաղանայ, և անդրէն ընդ դաշտա-վայրս լաւիկ և Հանդարտիկ ընդ նոյն Հուն երթայ ,,:

Մրդարև գեղեցիկ ստորագրութիւն ընթացից մերոյն Երասխայ, որպէս և Հարստուն վկայէ 'ի վերլուծութեան Պլինիոսի Է. Գ. գեղեցիկ ստորագրութիւն է և Քուրա-կայն մերոյն Երասխայ, յար և նման ամենևին որպէս պատմեն Ճանապարհորդք մեր մինչև ցայժմ. ընդ որոյ կամարաւն անցանեն և այժմ կարաւանք ողջոյն, զորոյ և զպատկերն իսկ տեսեալ է իմ 'ի Ճանապարհորդարան ինչ եւրոպեանց. զորմէ տե՛ս. և 'ի Նոր Հայաստան 26 : Այլ զբանինգիր նորուն Սահակայ Վատեայ 'ի վերլուծութեան Մե-լայի, կարծիս տան Թէ 'ի զրուցաց Յունաց նախնագունից քան զԱղէքսանդր առեալ իցէ զայս Մելա, որք Երասխ անուանեն զգետն Օքսոս Իմանային, ըստ որում և Պողի-բիոս վասն Օքսոս գետոյ պատմէ : Զայս եղեալ, և զայժ-մեան Քուրաւկայն մերոյն Երասխայ [1] Նկրտի ցուցանել ան-Համաձայն նախագրեալ ստորագրութեան Մելայի, ոչ գետ-օրէն Համօրէն ջրոյն տանել 'ի վայր առեալով, այլ կա-Թիլ առ կաԹիլ միայն, որ անլուր է ամենևին և անՀիման զրոյց : Զայսօրինակ յանձն առնու առել, առ 'ի Համատաել զիւր նոր Երասխն, որ է Օքսոս գետ. այլ փոխանակ այսմ պարտ էր նմա առել, առ նախնի մատենագիրս ոչ միշտ զամենայնն ճշգրիւ լինի առնուլ. զի ոմանք սխալին յանուան գետոյն կամ քաղաքին, ոմանք 'ի դիրսն, և ոմանք 'ի ստա-րագրութեանն :

Ե. Կամուրջք Երասխայ :

Առ Երոդոտեայ ա. 205. յիշատակին կամուրջք շի-նեալք 'ի Կիւրոսէ, զոր Համարիմք ասացեալ վասն մերոյն Երասխայ, որպէս ծանուցաք 'ի վերոյ : Իսկ 'ի գիրս մեր առ Ագաթանգեղոսի յերեսս Է. զանազան կամուրջք Ե-

1 Զայս լուեալ էր նորա 'ի Ճանա-պարհորդաց իւրոյ ժամանակին՝ լինել մերձ 'ի գիւղն Օրտուպադ, որ պարտ է լինել Ուրդուվար յՈրդուբադէնտն յի-շատակեալ առ 'ի մենջ 'ի Նոր Հայաստան 271 :

Երասխայ յիշատակին առ Արտաշատաւ և Վաղարշապա-տաւ. «Հասեալ 'ի խելս կամրջացն առ դրունս Արտաշատ քաղաքի. զի գետն Երասխ յարուցեալ գայր դարիւ և դա-րիւ, սաստկացեալ ջրակուտակ ձիւնառոյգ ձիւնախաղաղ բազմութիւն յաւուրս իւրոյ պղտորութեանց. կէսքն անցեալ ընդ կամուրջն Վաղարշապատ քաղաքի, զոր և կամուրջ Մեծամօրի կոչեն. և աճապարէին հասանել յառաջ 'ի խելս կամրջին Արտաշատու, 'ի կիրճս ճանապարհացն արգելլին զնոսա, 'ի մէջ արարեալ զնոսա տափերականն կամրջացն՝ գե-տավէժս առնէին զնոսա»:

Տափերայ կամուրջը յիշատակին և առ Բուզանդայ Գ. 12. «Իբրև լուաւ ինքն արքայն, ընդ առաջ ելանէր նմա 'ի դաշտն յայնկոյս գետոյն Տափերի կամրջի ամենայն բանա-կօքն բազմութեամբ. անցեալ ընդ կամուրջն Տափերայ, մտեալ 'ի քաղաքն մեծ յԱրտաշատ, յեկեղեցին դառնայքն»: Եւ 'ի Դ. 55. յետ պատմելոյ զքանդումն Արտաշատայ 'ի զօրաց Շապհոյ Պարսից արքային, ասէ. «Եւ անցուցին (զգերիսն) ընդ Տափերի կամուրջ, և առնէին համար գե-րեացն, 'ի մէջ շերտափակ զօրացն պատէին»: Ի բանից աս-տի Բուզանդայ յայտ է թէ կամուրջն Արտաշատու ասա-ցեալ յԱգաթանգեղոսէ՝ է նոյն իսկ կամուրջ Տափերայ. և է նոյն իսկ կամուրջ Երասխայ առ Արտաշատաւ, որ յի-շատակի առ Տակիտոսի գիրք ԺԳ. գլուխ 39. որպէս և առ մերոյն Ղազարայ 250 և 299. որ և էր մեծ, քաջայարմար անցից այնչափ բազմութեանն զօրացն՝ զոր յիշէ. «Սաս-տիկ և բազում այրընտիր զօրք դիմեալ անցանէր (զօրա-վարն Պարսից) սուրալով ընդ կամուրջ գետոյն Երասխայ. և 'ի գիւղաքաղաքին՝ որ կոչի Արտաշատ՝ բանակէր այն օր»: Բայց այլ էր կամուրջն Մեծամօրի՝ առ Վաղարշապատաւ գոլով, որ և յիշատակի յԱգաթանգեղոսէ 'ի վերոյ, և 'ի Թղթ. ծգ. ասելով. «Ընդ կողմն պողոտային որ հանէր 'ի Մեծամօրի կամուրջն... 'ի ճախճախուտ տեղի մի մօտ 'ի պարիսպն փոսին՝ որ շուրջ գայր զքաղաքաւն» Վաղարշա-պատու:

Սակս շինուածոյ կամրջացս չէ յայտ 'ի գիրս, արդեօք փայտաշէն էին թէ քարաշէն. բայց պատմի 'ի վաղեմի ժամանակս կամուրջս քարաշէնս կանգնեալ 'ի վերայ մերոյն Երասխայ և 'ի նոյն իսկ 'ի մեծէն Աղեքսանդրէ, և 'ի սաստկութէ ընթացից ջուրց նորա քակեալ ամենայն, զոր և յիշէ Կալլիստ. Ծննդոց Ա. 12. զորոց և զմնացորդս կամարաց մինչև ցայսօր է տեսանել ասէ. յայնմանէ դէպ

լինէր մեծի քերթողին Վիրգիլիոսի յիւր Ենէական երգսն գիրք Ը. տող 727. քերթողական բարբառովն ճահապարել. «Զայրացուցիս առնուլ Երասխայ ընդ կամուրջն »: Այլ ՚ի նորոգել առաջ Օգոստոս կայսեր՝ փոխեալ բարբառոյն ասել, բանիւ Ստատիոսի քերթողին ՚ի ա. գիրս Անտառաց. «Արգ-ընդունօղ կամրջոյն Երասխ »: Բայց և այս կամուրջ՝ սուղ ինչ զինի քակեալ առի յԵրասխայ: Եւ քանզի յաղագս ժամանակս ՚ի գիրս մեր յիշատակին կամուրջք Երասխայ, և այժմ իսկ յաւուրս մեր է տեսանել զանազան կամուրջս ՚ի վերայ նորա, որպէս նաև Կալմէտ գրէ, զորմէ տես և ՚ի նոր Հայաստան 83. առաջս վնասակարգեալ բան Վիրգի-լիոսի վասն ոչ ընդունելոյ կամուրջ, անկ է իմանալ վասն առանձին ինչ կողմանց Երասխայ, զոր օրինակ կողմանն Բասենոյ, զորոյ և զաւանդութիւն արդարև նաև այժմ իսկ լսեմք ՚ի բնակչաց, բազում անգամ ՚ի հնումն փորձ փորձեալ բազմաց ՚ի Հասանղալայ քաղաք Բասենոյ շինել կամուրջ, և ՚ի դերև ելեալ՝ առաջս հնարիւք հովուի. ու-րումն կարացեալ շինել. վասն այնորիկ և յանուն նորա Չօպան քէօփրիւսի անուանեալ մինչև ցայժմ[1]:

## Զ. Հունն Երասխայ:

Ուրեք ուրեք յիշատակին և Հունք կամ ծանծաղ տեղիք Երասխայ, քաջայարմարք անցանելոյ ընդ այնս առանց նաւակի: Առ Ղազարայ 299. յիշատակի Հունն մերձ յԱրտաշատ. «Եւ հասեալ յեզր գետոյն (Երասխայ) տատանկայլէս ըստ ժամանակի իւրոյ պղտորութեն, և զկա-մուրջն Արտաշատու գտին աւերեալ, և էր ինչ որ ՚ի տեղեացն բնակչացն, և էր ինչ որ ՚ի սաստկութէ ջուրցն դիմեցմանց. և տարակուսեալ զօրքն խնդրէին տեղիս անցից և ոչ գտանէին... իսկ քաջ զօրավարն Հայոց Վա-հան մամիկոնեան մերձեալ ՚ի տեղի մի յեզր գետոյն, և տեառնագրեալ զինքն նշանաւ խաչին սրբոյ կենդանարարի իջանէր ՚ի գետն. և ոչ ընդ յոյժ տեղի ծանծաղ ան-ցանէր խաղաղութբ ընդ ջուրսն, որ և տեղին ամենայն զօրքին լինէր ճանապարհ անցից անհոգութբ »: Այս էր Հունն, կամ տեղի անցից. բայց առ սաստկութե ջուրցն և առ Թշնամութեան բնակչացն պարտ է համարել զայն

1 Զորմէ տես ՚ի Նոր Հայաստան Թերթն ՚ի գլ. Դպրութեան, ուրանոր Թղթ. 90: Տես և յայսմ հնախօսու- խօսիմք զճարտարապետութենէ:

դժուարութեան, զոր պատմէ: Զի եւ առ Տակիտոսի [1] սուղ ինչ հեռի յԱրտաշատայ յիշատակի հուն Երասխայ: Այլ իմն հուն Երասխայ յիշատակի առ Ղեւոնդեայ [2] որ էր առ Ջուղա քաղաքաւ. "Անհունին 'ի գերութեն... զդատաստ կերպս Նախջաւանու... եւ զայլս գերի վարեալ կանամբք եւ մանկտեաւ, անցուցանէին ընդ գետն Երասխ, ընդ հունն Ջուղայու":

Է. Խառնումն Երասխայ 'ի Կուր եւ 'ի ծով:

Մերս Խորենացի յաշխարհագրութեան, 'ի ստորագրութեան Աղուանից, վասն Երասխայ դնէ խառնիլ 'ի Կուր գետ յաւելուն. "Մինչեւ 'ի խառնմանն Երասխայ 'ի Կուր գետ": Բայց 'ի ստորագրութեան Մեծին Հայոց՝ Կուր գետոյն տայ խառնիլ յԵրասխ՝ յաւելուն. "Մինչեւ 'ի մուտս Երասխայ 'ի Կասպից ծով": Ուր Երասխայ տալով զմուտս 'ի Կասպից ծով եւ ոչ Կուր գետոյ, կամի ասել՝ թէ Երասխ է որ ընդունի զԿուր, եւ ոչ Կուր զԵրասխ: Զիարդ եւ իցէ՝ օտար ազգաց մատենագիրք վասն Կուր գետոյ ասեն ընդունել զԵրասխ, եւ Կուր գետոյն տան զմտանելն 'ի ծով. բայց վասն բերանոյ նորա ընդ որ մտանէ 'ի ծով՝ ոչ միաբանեն, յասել ոմանց՝ թէ միով բերանով մտանեն Կուր եւ Երասխ, եւ ոմանց՝ թէ ուրոյն ուրոյն: Զորոց զկարծիս յիշէ Պղուտարքոս 'ի վարս Պոմպէոսի [3]. ուր 'ի գրելն զԿուր գետոյ ասէ. "Ի լերանց բղխեալ 'ի Վրաց եւ յինքն ժողովեալ զԵրասխ յաշխարհէն Հայոց, գնայ ընդ երկոտասան բերանս թափէ 'ի ծովն Կասպից. իսկ կէսք ասեն՝ ոչ 'ի միասին ընդ նմա գնալ Երասխայ (ընդ Կուր գետոյ), այլ ուրոյն (բերանով.) եւ անկանէ ապա 'ի նոյն ծով մօտ առ նա": Երկոցունց միանգամայն միով բերանով մտանել դնէ Պլինիոս Զ. 9. 'ի բանն յառաջ բերեալ 'ի վերոյ, որ դնէ Երասխայ նախ խառնել 'ի Կուր գետ, եւ ապա նովաւ հանդերձ զեղուլ 'ի ծով: Սոյնպէս մի դնէ Ապպիանոս 'ի միհրդատեան պատմութեան, յորժամ զԵրասխ դնէ մի 'ի վտակացն Կուր գետոյ, միայն մեծ քան զայլ վտակսն: Այլ Ստրաբոն ժա. 501. ուրոյն ուրոյն դնէ. զի յետ ստորագրելոյ զԿուր գետ, ասէ. "Ոչ հեռի անտի եւ Երասխ զեղու ('ի ծով), սաստիկ ընթանալով 'ի Հայաստանեաց":

1 Տակիտոս գիրք ժԳ. 39:
2 Ղեւոնդ. Կլ. Ի:
3 Հատոր Գ. Թղթահամար 286:

Եւ 'ի 527 . 'ի ստորագրեալն զԵրասխ՝ վասն նորուն միայնոյ գրէ, թէ յետ անցանելոյ առ Արտաշատաւ, " առա ընդ երասխեան դաշտն 'ի ծովն Կասպից զեղու „ ։ Պտղոմէոս Ե. 13. զմիջինն ունի զերկոցունց կարծեաց՝ ասելով վասն Երասխայ, թէ յականց ելլոց " սաստկագլխն ընդ արեւելս խաղացեալ մինչեւ ցլեառն կասպիականն, եւ ընդ հիւսիս խոտորեալ, ըստ մասին մտանէ 'ի ծովն Վրկանայ, եւ ըստ մասին խառնի 'ի Կիւրոս (Կուր) գետ „ ։

Յայսչափ տարաձայն կարծեաց ստուգագոյն համարիմ զմերոյ Խորենացւոյն, միով բերանով ընկալեալ զմուտ երկոցունց 'ի ծով. որպէս յայտ է 'ի մերայգրեալ բանից նորա, որ առաւել տեղեակ էր քան զայլսն՝ իւրում աշխարհի, եւ տեղեկացեալ նաեւ 'ի մերոց համազգի Ճանապարհորդաց [1]. վասն որոյ յասելն նորա 'ի ստորագրութեան Վրկան կամ Կասպից ծովուն, թէ " Զգլի երկայնութեն նորա 'ի բերանոյ Երասխայ և Կուր գետոյ „, չէ պարտ ուրոյն ուրոյն առնուլ, այլ մի եւ նոյն բերան համարել երկոցունց գետոցս սակս 'ի մի խառնելոյ նոցա յառաջ քան զմտանելն 'ի ծով, զոր եւ այժմեան ընթացք նոցա հաստատեն. որում հաւանեալ է եւ Վասսի ։ Զայս եդեալ, մեք աստանօր վասն Երասխայ ունիմք գրել, զոր ինչ օտարազգի մատենագիրք գրեն վասն բերանոյ Կուր գետոյն ։ Արդ զթիւ բերանոց Կուր գետոյ, որպէս Պղուտարքոս՝ նոյնպէս եւ Ապպիանոս երկոտասան դնեն թուով. նոյնպէս դնէ եւ Ստրաբոն, բայց ոչ հաստատելով այլ պատմեն, ասելով անցանէ. եւ 'ի թղթ. 531. զԵրոդոտոսին գրեալն յիշէ, որ 'ի քառասուն բերանս կամ առաջս բաժանեալ դնէ զմերս Երասխ [2] ։ Ապպիանոս զերկոտասանեսին եւս բերանս յարմարս

1 Որպէս ինքն իսկ վկայէ յասելն յաշխարհագրութեան իւրում. " Քանզի զիլլուռնականաց եւ զկասպիականաց (ծովաւ) եւ մերոց իսկ արանց պատահեաց շուրջ անցանել „ ։

2 Եւ զԵրոդոտոսին զչափոյթ առացուածն կամելով ուղղել, համարիմ թէ վասն ականց կամ աղբերացն մերոյն Երասխայ լուեալ էր զայս Երոդոտոս. որպէս եւ խմանոյ Կոլմէտ ծննդոց Ե. 13. զի յայնժամ կատարեալ ուղղեալ գտանեմք զբան Երոդոտոսի վասն ակունսյն՝ ուստի բղխէ մերս այս Երասխ, եւ համաձայն գտանեմք յայս եւ նման ամենեքեան այժմեան գրեց ականց Երասխայ, որ ելանէ 'ի լերանց Պինկէօլայ. ուստի արդարեւ բղխեն քառասուն եւ առաւել եւս աղբիւրք սառ եւ անդ, որք սկզբնաւորեն ոչ միայն զմերս զայս Երասխ, այլ նաեւ զայլ գետս մեծամեծս ։ Երոդոտոս օտարազգի զայս նշանաւոր լեառն Մադիանք անուամբ ծանոյց, զոր եւ կարծեմ լինել աղաւաղութիւն մերս Հաշտեանք անուան. ընդ որ արդարեւ անցանէ գօտի այսր բազմաղբիւր եւ Ջրաբաշխ լերինն ։ Զայս այսպէս եդեալ՝ ասեմ, թէ սխալմամբ կամ իւրն եւ կամ գրչացն վասն բերանոյն եդեալ կան այն թիւք 'ի բանս Երոդոտոսի, եւ յաւելեալ նաեւ այլ բանք արդարեւ շփոթք, որք ոչ յարմարին

ակնարկէ լինել 'ի նաւարկութի. բայց Ստրաբոն զանմանս միայն. զի գետք որք խառնին, ասէ, 'ի նմա՝ բազում տիղմն բերեն, և բազում մանր կղզեակս գործեն և լճակս, զոմանս 'ի բերանոց նորա ընուն տղմով, անմատոյց գործեալ նաւուց, զորոց կարես տեսանել 'ի գիրս նորա 'ի Թղթ. 501. որպէս և զայլ ստորագրութիս [1] :

## ԿՈՒՐ

Այս գետ թէպէտ այլ է 'ի չորեցունց գետոց՝ զոր 'ի սկզբան անդ առաջարկեցաք ստորագրել, բայց նախ քան զխառնել նորա յԵրասխ՝ իբր վտակ ինչ նորա համարելով կամ մասն, միանգամայն ընդ նմա յայսմ վայրի կամեցաք ստորագրել, որոց և երկոցունց տեղեկութիք յարակից են միմեանց :

Անուն սորա ածանցեալ է գուցէ 'ի Կուր քաղաքէ, որ կայ այժմ առ նովին գետով. առ Մատթէի 'ի մէջ. և առ Թովմայի արծրունւոյ Գ. 8. գրի Կուառ: Առ Ցունաց և Հռովմայեցւոց մատենագիրս գրի Գիւրոս և Չիւռոս, որ 'ի մեզ դառնայ Կիւրոս. զոր 'ի Կիւրոս Թագաւորէ այսպէս անուանեալ ասէ Ամմիանոս [2], զնախկին անունն խափանեալ, յորժամ եդեալ էր 'ի մտի գրաւել զԹագաւորութիւնն զսկիւթականն : Եւ այսպէս ոչ ուղիղ Գիւրրոս գրի առ Պտղոմեայ, և Գիւռնոս առ Պլուտարքոսի և առ Դիոնի. իսկ առ Ապպիանոսի 'ի միհրդատեան պատերազմի Գիւրգոս : Սոյնպէս մականուանեն զսա Գետ մեծ նախնի պատմագիրք մեր Խորենացի, Եղիշէ և Ղազար :

Ակն սորա 'ի Ստրաբոնէ դնի 'ի Հայս. զի յետ գրելոյ 'ի ժա. 500. թէ բազումք ինչ Կովկասու լերինն ձգին 'ի Հայս և 'ի Կողքիս՝ ասէ. “ Ի մէջ նոցա է դաշտավայր գետովք ոռոգեալ, յորս Գիւրոս (Կուր) է մեծագոյնն, որ 'ի Հայաստան բղխեալ նոյնհետայն 'ի նոյն դաշտավայր զեղու „: Իսկ Պլինիոս Զ. 9. գրէ. “ Կիւրոս (Կուր) բղխէ 'ի Հենիո

ոչ մազքանեան կողմանց, և ոչ բերանոյն. զի որպէս ասէ նաև Վլասի, ոչինչ գետ այնչափ բերանովք մտանէ 'ի Կասպից ծով, բայց միայն Եթիլ կամ Վօլգա գետ :

[1] Աշխարհագիրք դնեն և զայլ երկուս Երասխս 'ի Միջագետս և 'ի Պարսս, ընդ որս չէ պարտ շփոթել զայս մեր Երասխ : Վասն Պարսից Երասխայ է՝ զոր գրէ Ստր. ժե. 429. “ Մերձ 'ի Պերսէպօլիս Աղեքսանդր էանց ընդ Երասխ „: Բայց 'ի սոցունց դնեն և այլ երրորդ 'ի Մարկիանոս աշխարհին, զՕքսոս գետն նաև Երասխ կոչեցեալ համարելով. այլ այս աւելորդ է, որպէս և 'ի վերոյ յիշեցաք :

[2] Ամմիանոս գիրք ԻԳ. գլ. 6. Թըղթահամար 254 :

քեանն լերինս, զորս այլք Քօրաքսեանս կոչեցին „: Եւ Դ. 13. կրկնէ. " Կիւրոս բղխէ 'ի Քօրաքսեանս, որպէս ասա_ ցաք „: Այլ Հէնիոքեան և քօրաքսեան լերինք՝ քանզի ըստ մասին 'ի Հայաստան անկանին, յայտ է թէ 'ի Հայաստան եղելոց մասանցն բղխեալ կամի նշանակել զԿուր, որով և համաձայնի ընդ Ստրաբոնի: Ի ստորոտէ նոյն քօրաքսեան լերանց բղխեալ դնէ և Մելա Գ. 5:

Ընթացք սորա քերէ առ հիւսիսային կողմամբք մեծին Հայոց. որ և բաժանէ զՀայս 'ի Վրաց և յԱղուանից. վասն որոյ և աշխարհագիրք 'ի Վիրս և յԱղուանս դնեն զընթացս սորա. նախ իբր ասէ Ստրաբոն ԺԱ. 491. " Ի ծովէն Կասպից մինչև ցսահմանակցութիւն Աղուանից և Հայաստանեայց ընդ որս Գիրոս (Կուր) և Արաքսիս (Ե- րասխ) գետք ընթանան. սա (Երասխ) ընդ Հայաստան, նա (Կուր) ընդ Վիրս և ընդ Աղուանս հոսեալ „: Եւ 'ի Թղթ. 500. ստորագրելով զընթացսն ասէ. Կուր գետ " ընկա- լեալ և զԱրրաւան որ 'ի Կովկասայ իջանէ, և զայլ ջուրս, ընդ անձուկ ձորաձոր յԱղուանս հոսի. այլ 'ի մէջ սորա և Հայաստանեաց յորդահոս ընթանայ ընդ դաշտավայրս պարարտարօտս, յինքն ընկալեալ նաև բազում վտակս, զԱլազոնն, զՍանտովանն, զՌէդաքիոն, և զԽանիոն, յար- մարս 'ի նաւարկութի, թափի 'ի ծովն Կասպից, որ երբեմն Գորոս կոչէր „[1]: Ստրաբոն գրէ ապա. " Ի Հայաստանեաց ան- ձուկ է ճանապարհ առ գետս Կիւրոս (Կուր) և Արակոս[2], որք նախ քան զխառնիլն 'ի միասին՝ ունին քաղաքս պարսպափակս՝ յապառաժուտս կառուցեալս, վեշտասան ասպարիզօք 'ի միմեանց տարաբաժանեալս „: Առ մերոյն մի- այն զերկուց քաղաքաց յիշատակութիւն գտանեմք, ընդ որ անցանէ Կուր գետ. մին է Տփղիս, զորմէ Թովմա արծրունին Դ. 8. " Հրամանն ետ հատանել 'ի վերայ քաղաքին Տփղիս կոչեցեալ . . . հատեալ Բուղայ անց ընդ գետն մեծ՝ որ Կուրն կոչի. և յարձակեալ շարժմամբ գարնանային հո- սմանացն ուղղի ատուեալ եղանել զօրուն, և ընակել շուրջ զքաղաքաւն „: Իսկ միւս քաղաքն է Խաղխաղ. զորմէ Ղազար 110. " Փութացան անցանել ընդ գետն մեծ՝

1 Այս դաշտավայր է կարծեմ որ յիշատակի առ Խոր. Բ. 8. " Առ մեծ գետովն որ հատանէ զդաշտն մեծ, որ անուանի Կուր „:

2 Զայս Արակոս գետ զոր ընդ Կիւրոսի խառնիլ ասէ, եւ համարիմ վրի- պակ գրչաց, փոխանակ գրելոյ Արաք- սէս, որ է Երասխ: Որպէս և առ Զենոփոնի ասեալ գրելով կայ Ար[illegible], որ նոյնպէս պարտ է լինել Արաքսէս, որ է Երասխ. զորմէ անդ [illegible]:

զոր Կուր գետն կոչեն, և ընդ առաջ եկեալ նորա մինչև 'ի գետոյն որ կոչի Խաղխաղ յերկրին Աղուանից ,, : Ուրանօր գրէ Եղիշէ. "Փութանակի անցանէր ընդ մեծ գետն Կուր առ նուն, և պատահէր նմա մերձ 'ի սահմանս Վրաց հանդէպ Խաղխաղ քաղաքի, որ ձմերոց էր թագաւորաց Աղուանից ,,[3] : Թոմա մեծոփեցի զայս Կուր գետ կոչէ "Աղուանից գետ ,, , սակս անցանելոյ գետոյն առ աշխարհաւն Աղուանից :

Վասն բերանոյ Կուր գետոյն թէ որպէս դժուարին գործեն զնաւս նաւուց ընդ նա ոտիղմք և կղզեակք՝ գրեցաք սուղ ինչ յերասխ գետ, այլ զառաւելն կարես գտանել 'ի ժդ գիրս Ստրաբոնի. թղթ. 501 :

Զ խոճըղայ սորա չունիմք ինչ յիշատակութիւն 'ի գիրս մեր, բայց եթէ առ Մատթէի 'ի Թիւն մէջ. որ յիշատակէ կամուրջ շարժական ասելով. "Եկեալ Սուլտանն Գանձակայ բազում զօրօք, և 'ի վերայ Կուր գետոյ կամուրջ կապեաց, նաւէր անտ, և այս մամթուն հազար անցուցանէր յերկիրն Աղուանից. և լուեալ թագաւորն Վրաց առաքեաց զզօրս, և ընկղմեցին փլայց, և զամենայն զօրսն զոր անցանն առ հասարակ կոտորեաց ,, :

## ԵՓՐԱՏ

### Ա. Ակունք գետոյս :

Ի գիրս Ծննդոց և հռովմայեցւոց գրի Եւփրատ : Ամերում Ագաթանգեղոսի յՃԿ. կոչի Եփրատական գետ : Ի սուրբ գիրս մականուանի Մեծ գետ. իսկ առ Եղիշացւոյն 'ի Ճառն Լուսաւորչի, Գետ Եդեմաբխուղին :

### Բ. Ակն Եփրատայ :

Այս գետ մեծ յերկուս զանազան տեղիս ունի զիւր ակն, զոր և յայտնի ցնէ Վարդան աշխարհագիր ասելով. "Գետն Եփրատ յԵկեղեաց գաւառին է, և գ Ակն 'ի յԱրզրում ('ի Կարին) է, և երկրորդ Ակն 'ի յԱրճէշ է. 'ի

3 Խաղխաղ որ էր յՈւտի նահանգին՝ յառաջնոյդ այն ձմերոց էր թագաւորացն Հայոց, որպէս յայտ է յԱգաթանգեղ. զոյն. բայց զինի Աղուանք տիրեցին Ուտի նահանգին, և այս քաղաք նոցին թագաւորացն եղև ձմերոց :

սուրբ Ոսկեանց [1]. ելանէ և անցանէ ընդ Տարօն և գնայ ընդ Ասորեստան,,: Վասն որոյ և 'ի ստորագրութեան չորից գետոց տպագրեալ զկնի աշխարհագրութեան՝ գրեալ կայ վասն ականց Եփրատայ. "Ելանէ 'ի Հայք 'ի Բագրեւանդայ, և 'ի Կարնոյ լերանց մօտ 'ի յԱրծն քաղաք,,: Բագրեւանդ այլուր է, և Կարին այլուր. այլ տովին կամի ասել, թէ յերկուս յայլևայլ տեղիս ունէր զակունս իւր, զմինն 'ի Բագրևանդ, մանաւանդ թէ 'ի Ծաղկոտն գաւառի՝ որ սահմանակից էր Բագրեւանդայ, և զմիւսն 'ի լերինս Կարնոյ: Զսոյն կամի ծանուցանել և Խորենացի յաւելն Գ. 59. վասն դրից Կարնոյ քաղաքին. " Ոչ կարի 'ի բացեայ տեղեացն՝ ուր Եփրատայ մասինն ինչ բղխեն աղբիւրք ականց,,: Ուր խորհրդով յաւել ձայնն ինչ. կամելով ասել՝ միայն մասն ինչ Եփրատայ է, որ աստ 'ի Կարին բղխէ. զի և մասն ինչ բղխէ այլուր: Եւ այսպէս Եփրատ յերկուց երևելի վտակաց ունի զսկիզբն իւր, որք լինին մասունք նորա. մի մասն կամ մի վտակն ելանէ 'ի Կարնոյ լերանց, իսկ միւս վտակն 'ի Ծաղկոտանէ սկզբնաւորելով առաջի Բագրեւանդայ ընթանայ: Աստանօր նախ գրեսցուք զվտակէն Կարնոյ, ապա ստորև զվտակէն Բագրևանդայ:

## Գ. Առաջին վտակ Եփրատայ, որ 'ի Կարին:

Յարտաքնոց Պլինիոս Ե. 24. յիշէ զբղխելն 'ի Կարնոյ. "Եփրատ ծագի 'ի նախարարութեան Հայոց մեծաց 'ի Քարանիտիդէ. (որով կամի նշանակել զԿարին, իբր Կարնոյն ասելով.) անդ աւանդեցին նոքա որք 'ի մօտոյ տեսին. Դոմիտիոս Կորբուլոս 'ի լերանն Աբա (եդ զակն Եփրատայ), իսկ Լիկինիոս Մուկիանոս առ ստորոտով լերին զոր Քապոդէն կոչեն՝ երկոտասան հազար քայլիւ (12 մղոնօք) 'ի վեր քան զԶիմարա, 'ի սկզբան անդ կոչեցեալ Բիքսուրադէս,,: Այս վտակ եկեալ յականց իւրոց, յետ սուղ ինչ ընթանալոյ գործէ լիճ, որպէս նշանագրէ անդէն Խորենացի՝ թէ այն աղբիւրք Եփրատայ "Հանդարտ գնացիւք յառաջացեալ ծովանման մօրաքար երեւութիւք,,: Զոր այսպէս

[1] Իսկ զանեղծն տպոյ Ոսկեանց միայնացելոց 'ի լերանն Ծաղկէոյ կամ Ծաղկեաց, ԺԲ այնմ 'ի Շարականոցի. "'ի յակունս Եփրատայ 'ի Ծաղկադբերվայելչութիւնս,,:

տողագրէ Մելա Գ. 8. յասելն. «Եփրատ ահագին բացեալ զերանօք ոչ միայն ելանէ ուստի ծագի, այլ և լայնացեալ անկանի. ոչ անընդհատ հատանէ զանդաստանս, այլ ընդարձակ ճապաղեալ 'ի լիճ, և ընդերկար զնստեալ, և առանց ձորափորոյ յարուս հանդարտացեալ, ապա ուղա-նօք հատանէ զամբարտակս, գետանայ»։ Այս լիճ է նոյն զոր Խորենացին կոչէ Ճամբ, մօտ 'ի Կարին. զորմէ տես տորև 'ի ծովն Կարնոյ. իսկ այժմ կոչի Սազլըխ. զորմէ տես 'ի Նոր Հայաստան 'ի Թղթ. 60։

Բանք Բուզանդայ Դ. 16. ակնարկեն և 'ի կողմանս Սեպուհ լերին ունել այլ ակունս այսր վտակի Եփրատայ, ուրանօր ասէ վասն Գինդ ճգնաւորին. «Վիճակ բնակու-թեան ունէր զանապատն՝ ուստի բղխեալ հոսեն ակունք Եփրատ գետոյն. անդէն բնակեալ ընդ ծագս վիմացն, ուր յառաջու կայեանքն էին մեծին Գրիգորի առաջնոյ, որում տեղեացն Ոսկիք կոչեն»։ Այս անապատ առաջին բնակութեան նորին Գրիգորի՝ որով կամի նշանակել զՍեպուհ, է նոյն՝ զոր Եզնկացին 'ի Նախադրութեան մեկնութեան քերականին կոչէ՝ Անապատ 'ի սահմանի լերին հանդըր-տեան սրբոյ Լուսաւորչին, այն է Սեպուհ։

Դ. Երկրորդ վտակ Եփրատայ, որ և Արածանի։

Բղխէ 'ի լեառն Ծաղկաց որ 'ի Ծաղկոտն գաւառին Այրարատու. որպէս դնի 'ի Ճառընտրի, 'ի հին վարս սրբոց Ոսկեանց. «Կրօնաւորեցան 'ի լերինս ուրեմն ծմա-կայինս, յակունս Եփրատայ, 'ի խառնուրդս ձորոց ու-րեմն, որ սկիզբն առեալ իջանեն ('ի լեռնէն) որ կոչի Ծաղկէ. յորոյ անուն և շէնքն կոչին մինչև ցայսօր ասն Ծաղկոյ»։ Եւ 'ի Ցայսմաւուրս Տր Խորայէլի յօգոստ. ԻԵ. ասի. «Սոքա բնակեալ 'ի լեառն Ծաղկոց, յակունս Եփ-րատայ գետոյն»։ Վասն այսր ականն պարտ է իմանալ, զոր Պլինիոս Ե. 24. յետ յիշելոյ զակն Կարնոյ, որպէս տե-սաք 'ի վերոյ, ասէ թէ Կորբուլոս 'ի լեառն Ապա ասաց լինել զակն Եփրատայ. իսկ Լիկինիոս առ ստորոտով Քա-րոդէն լերին։ Լեառն Ապա կամ Ապոս, պարտի լինել լե-րինք Ապահունեաց գաւառին Տուրուբերանոյ [1]. իսկ Քա-

1 Իսկ եթէ զանուն Ապա առ-ցուք որպէս կրճատեալ յանուանէս Ջահապիճան, որ ծանուցաք 'ի գրելն զԼեռնէն Ապոս, յայնժամ ուղիղ լինի տեղի ականն Եփրատայ, բայց այսր երկրորդ վտակին միայն, և ոչ առաջ-նոյն, զորմէ գրէ Պլինիոս։

թողլեն՝ է լեառն Կապոյտ յԱրշարունեաց գաւառին Այրարատու. երկոքեան եւ լերինք հեռի են 'ի կողմանց Կարնոյ, այլ մերձ 'ի կողմանս Ծաղկոտան, ուստի բղխէ այս երկրորդ վտակ Եփրատայ: Աստի յայտնանէ իմաստասիրեմք, թէ սոքա երկոքեան համամայեցեալք 'ի շրջելն զայնու կողմամբք՝ անուն առեալ զայս երկրորդ վտակ Եփրատայ, ծանեան եւ զերկոսս Ապահունեաց եւ զԿապոյտ, այլ մեր 'ի վերոյ լուեալ 'ի բնակչաց վասն ականց Եփրատայ՝ մին յայսմ լերին եւ միւսն յայնմ լերին եդ զակն Եփրատայ: Բայց այն էր ակն երկրորդ վտակին Եփրատայ, օտար յայժ 'ի նշանագրելոյն 'ի Պղինիոսէ. Նախն իրք եւ Պղինիոս իբր այլ ինչ կարծիք յիշատակելով միայն զնոսին, ինքն զիւր եդեալ վտակն ստորագրէ անդէն. որ է վտակն Եկեալ 'ի Կարնոյ [1]:

Այս երկրորդ վտակն է՝ այս ինքն եկեալն 'ի Ծաղկոտանէ եւ 'ի Բագրեւանդայ՝ որ 'ի գիրս մերոց պատմագրաց 'ի պատմութիւն Տարօնոյ եւ Բագրեւանդայ տանէր յիշատակի Եփրատ անուամբ. զոր օրինակ եւ յայս բան Յոհաննու կաթողիկոսի. « Իսկ բերդն բռնաւորն Ահմատ Նոստէր յարեւմտից Տարօնոյ, բանակեալ անդ կալեալ առ ափն Եփրատ գետոյ »: Որպէս եւ առ Վարդանայ աշխարհագրի 'ի յիշելն զմկրտութիւն Տրդատայ 'ի Բագրեւանդ գաւառի, « 'ի գիւղաքաղաքն Բագաւան առ ափն Եփրատ գետոյ, 'ի ստորոտ Նպատ լերինն »: Բայց սոյն այս վտակ է՝ որ յի-

1 Իւ այսպէս առ բարւոք բացատրութ բանից Պղինիոսի՝ պարտ է ասել, թէ ինքն զակն Եփրատայ զնէ 'ի լերինս Կարնոյ. իսկ բանքն զինի հետեւեալք՝ են կարծիք այլոց զոր ընրէ ասելով. թէ Կորդուլոս 'ի լեառն Աբոս զնէ զակն նորա, իսկ Լիկինիոս 'ի լեառն Քապոտէն: Իւ զի յերկուս զանազան տեղիս էին ակունք Եփրատայ որպէս ասացաքն՝ Պղինիոս զմին յիշէ որ է Կարնոյինն, իսկ Կորդուլոս եւ Լիկինիոս զմիւսն յիշեն որ է Ծաղկոտան. բայց ոչ կարելով որոշակի նշանագրել զլեառն ուստի բղխէր ակն, Կորդուլոս եդ զակն յԱպահունեաց լերինս, իսկ Լիկինիոս 'ի լեառն Կապոյտ, որք գուցէ էին ակունք այլեւայլ փոքրիկ գետակաց որք խառնէին յԵփրատ. բայց նոցա թուեցաւ լինել բուն ակն Եփրատայ: Այլ Կելլարիոս որ ոչ գիտէր յերկուս զանազան տեղիս լինել ականց Եփրատայ, 'ի գիրսն Թղթ. 323. ասէ. Լիկինիոյ զԱբոս լեառնէ, այնպէս կարծէ՝ թէ Պղինիոս զակն Եփրատայ զնէ 'ի լեառն Աբոս, վասն որոյ եւ զայս լեառն յարեւմտեան հիւսիսոյին ծայր Հայոց աշխարհին եդ, սակս Պղինիոսի բան որում զաղբիւրն Եփրատայ անդ զնէ, եւ անտի հոսեցուցանէ ընդ Կապադովկիա 'ի հիւսիսոյ 'ի հարաւ: Բայց մեք որք գիտեմք զերկուս ակունս լինել եւ զերկուս վտակս, ասեմք թէ Պղինիոս զակն Կարնոյ եդ 'ի հիւսիս արեւմտեան որպէս էր. իսկ Կորդուլոս միւսն զլեառն յիշէ Աբոս, որ ոչ էր 'ի հիւսիս, այլ 'ի միջնաշխարհին Հայոց. եւ այն էր այլ թէ Եփրատայ, կամ երկրորդ վտակ ընթացեալ յարեւելից յարեւմուտս, օտար յեզերոյն 'ի Պղինիոսէ:

շատակի և Արածանի անուամբ. որպէս յայտ առնէ այս բանս Զենոբայ յերես 38. « Դէմ եդեալ կամէաք անցանել յայնկոյս գետոյն յամրոց մի կոչեցեալ Թարձենք [1]. և իշխանքն անցեալ գնացին մինչև 'ի դուռն Մուշ քաղաքին . . . և դարձուցեալ զմեզ յեզերացն Արածանւոյ . . . իբրև հեռացաք 'ի գետոյն իբր ձիոյ արշաւանօք երկու կամ երեք, և իբրև մերձեցաք առ փոքր ձորակին, և կամէաք անցանել միաբան և գնալ 'ի տեղի մեհենիցն, քանզի անդ իսկ էր խորհեալ դնել զմնացեալ նշխարսն, առաջորիք կառացն յայն կոյս ձորոյն ոչ կարացին անցանել »: Ուր առ Ագաթանգեղոսի 'ի սմին պատմութեան նշխարացն և ջորւոցն ոչ յիշատակի Արածանի, այլ Եփրատ. յորմէ յայտ է թէ էր նոյն: Սոյնպէս և առ Յոհաննու Մամիկոնենի յերես 28. յիշատակի. « Եւ փախստական արարեալ անցուցին ընդ Արածանի, և հանին 'ի Քարքէ »: Եւ քանզի առ Ագաթանգեղոսի Քարքէ լեառն առ Եփրատաւ դնի, յայտ է յայսմանէ' զի ասեն Արածանի ասելով իմանայ զԵփրատ. վասն որոյ և Վարդան աշխարհագիր իբր մի գետ երկոքումբք անուամբք կոչէ. « Արածանի գետն է Եփրատէս »:

Այս Արածանի վտակն է' որ յիշատակի առ օտարազգի մատենագիրս Արսանիա անուամբ. որպէս առ Պլինիոսի Ե. 24. առ Տակիտոսի. ԺԵ. 15. առ Դիոնի գիրք ԿԲ. Թղթ. 710. և առ Պլուտարքոսի 'ի վարս Լուկուղղոսի Թղթ. 66: Ի գիրս մեր ոչ միայն այս վտակ, այլ և յետ միանալոյ երկոցունց վտակացս' համօրէն մեծ գետն Եփրատ' որ գնայ 'ի Բաբելոն, և ընդ մէջ նորա անցանէ, Արածանի կոչի. զոր օրինակ 'ի հին հայկական Թարգմանութեն Քրոնիկոնին Եւսեբեայ Ա. 18. ուր գրէ' թէ Բերոս « ասէ զբաբելացւոց երկիրն հաստատել 'ի վերայ Դկղաթ գետոյ, և Արածանւոյ ընդ մէջ անցանել »: Եւ 'ի Թղթ. 53. յԱբիւդենոսէ բերելով. « Զի և ընդ մէջ Տարսոնի գետն Կիւդնոս անցանիցէ, որպէս գունակ Արածանւոյ ընդ մէջ Բաբելոնի ». զոր և օրինակելով կրկնէ Ասողիկ Գ. 42: Եւ 'ի Թղթ. 55. Նաբուգոդոնոսոր զԲաբելոն պարսպէր, ասէ. « Եւ զգետն Արմակաղէս յԱրածանւոյ հանեալ տանէր »: Ըստ նմին և 'ի գիրս Փիլոնի Եբրայեցւոյ' ուր յունարէն գրի Եւփրատ, Թարգմանիչն մեր

[1] Այսպէս դնի 'ի տպագիրն ըստ ուղղի փոխանակ անուանս Թորքենք, չորից ձեռագրաց. իսկ 'ի միում ձե- դնի Հոյնքանք:

տանէպ ընդ հայերէն Արածանի ։ Եւ քանզի զայս անուն էառ Եփրատ յանուն Արածանի վտակին՝ որ գնայ 'ի նմա, զայլ գիտելիս ունիս տեսանել առաւել 'ի տառադարձութե անդ Արածանի վտակին ։

### Ե. Ընթացք Եփրատայ ։

Սալմասիոս (Սօմէ) հաւանելով զաւանդութիւն պատմութե և աշխարհագրութե ազգիս, վասն որոյ և անտեղեակ գոլով սկզբնաւորութե ընթացից Եփրատայ յերկուց զանազան վտակաց, բազմօք տառապի 'ի պլինեան ընդդիմադրութիւն իւր առ լէ. գլուխ Սոլինոսի, 'ի միաբանել զբանս Նախնի աշխարհագրաց, և ոչ կարէ ։ Մեք յայսմ վայրի յառաջ բերելով զբանս Նախնեաց՝ ջանասցուք ըստ կարի միաբանել և ուղղել ։

Նախ՝ Պլինիոս 'ի Ե. 24. գլուխն վտակն Եփրատայ յիշէ. զի յետ ընթերցեալ զակունս նորա 'ի սահմանս Կարնոյ, զորոյ զբանս տես 'ի վերոյ, ապա վասն ընթացից նորա ասէ. "Նախ հասի ընդ Տէրքսէնէն (Դերջան) [1]. ապա ընդ Անահտականն [2] (Եկեղեաց). զգաւառս հայաստանեաց տարանջատեալ 'ի Կապադովկիոյ . . . ընդունելով զգետս Լիգոս (Գայլ), Արսանիաս, Արսանոս "։ Զհետեւեալ բանս Պլինիոսի իմա յետ միանալոյ ընդ նմա միւս վտակին Արածանւոյ եկեալ 'ի Ծոփականէ, ուր ասէ. "Առ Էլեգիայիւ ընդ առաջ պատահէ նմա Տօրոս լեառն, ոչ զդէմ ունի, թէպէտ և երկոտասան հազար քայլ (12. միղոն) լայնութեամբ առաւելեալ. ուրանոր 'ի վեր բղխէ՝ կոչեն Օմիրա, իսկ ուրանօր ընդհատանէ՝ (կոչեն) Եփրատ. ուր նոյնպէս է ապառաժուտ և սրընթաց . . . Առ Կղաւդիուպօլեաւ Կապադովկիոյ զընթացսն յարեւմուտս դարձուցանէ. յայնմ վայրի զառաջինն Տօրոս զնմի ընդ նմա, որ և պարտեալ և ընդ մէջ իւր հերձեալ, այլով իմն օրինակաւ յաղթող ելանէ, և խորտակեալ 'ի հարաւ կոյս մղէ. և այսպէս այս վէգ բնութե հաւասար ելանէ. այսմ՝ գնալով ուր կամի, այնմ՝ խափանելով գնալ ուր կամէր "։ Սոյնպէս և Մելա զառաջին վտակն Եփրատայ տարագրէ եկեալ 'ի Կարնոյ, զորոյ զբանս եդաք 'ի վերոյ.

1 Սխալի Սաղմասիոս որ զՏէրքսէնէն վրիպակաւ գրեալ կարծէ առ Պլինիոսի. և հեռանալով անտի ուղղէ 'ի Քսէրքսէնէ ։

2 Եկեղեաց գաւառն է որ առ Պլինիոսի կոչի առաւել Անահտական, սակս հռչակաւոր մեհենին Անահտայ որ անդ ։

Սամոսատն և 'ի Թղթահամարն 527 . " Եփրատ 'ի հիւսի-սային կողմանս Տօրոսի բղխեալ, 'ի սկզբանն անդ յարևելս կոյս[1] հոսի ընդ հայաստանն, ապա 'ի հարաւ զծնկոն դարձուցեալ, զՏօրոս հատանէ ընդ մէջ հայաստանեաց, Կապադովկիոյ և Կոմմագինոյ ,, :

Պտղոմէոս և Ե. 13. զայս վտակ Եփրատայ ստորադրէ, այս ինքն է՝ զԱրածանին, զի զակունս Եփրատայ դնէ յարևելս, և զընթացս նորա ընդ արևմուտս, ապա զխոտորումն նորա 'ի հարաւ, որպէս եդ Սամոսատն . բայց ոչ յիշէ բղխել 'ի լերանց Տօրոս, և 'ի լերանց Ամոս, որպէս յիշեաց Սամոսատն : Այլ ամենևին չէ դժար աստ համարել 'ի ստորագրութենէ Սամոսատի և այլոց, որպէս համարի Սալմասիոս . զի որպէս յառաջին տեսցուք, Սամոսատն զլերինս Տօրոսի ընդարձակ ձգէ յոյժ . և զի Սալմասիոս զզանազանութիւնն առնու առաւել յայլևայլութենէ թուոյ աստիճանաց Պտղոմեայ, բայց և նոյն ինքն Սալմասիոս գրէ, թէ քանի՛ վրիպակք գտանին յաստիճանս նշանակեալս 'ի Պտղոմեայ . գրէ և յիշէ իսկ թէ զիարդ վրիպեալ զանեղծն զորս պարտ էր Պտղոմեայ դնել առ Երասխաւ՝ դնէ առ Եփրատաւ : Վասն որոյ չէ պարտ յամենայն գրեալսն Պտղոմեայ ճշդութիւն խնդրել :

Նոյնպէս զայս վտակ Արածանի իբրև ընիկ Եփրատ ստորագրել, որպէս ստորագրեաց մանաւանդ Սամոսատն 'ի վերոյ՝ չէ ինչ ընդդէմ մերոց մատենագրաց . զի և մերքն իբրև ընիկ Եփրատ կոչեն զսա, և ոչ վտակ կամ գետակ ինչ հոսեալ յԵփրատ . նոյնպէս դնեն անցանել ընդ լերինս Տօրոսի, որպէս գրեցաք 'ի գլուխն Արածնոյ : Եւ թէպէտ զլերանն Ծաղկոց, ուր դնեն մերքն զակունս Եփրատայ, ոչ յիշեն լինել մասն Տօրոսի . այլ գիտեմք զի Սամոսատն յոյժ ընդարձակ առնու զգօտի Տօրոս լերին, որպէս գրեցաք 'ի ստորագրութեան Տօրոսի . վասն որոյ և 'ի գիրս ժա . 'ի Թղթ . 521 . դնէ զԵփրատ բղխել 'ի հիւսիսային մասունս Տօրոսի, որպէս զՏիգրիս 'ի հարաւային մասունս Տօրոսի, յայտնելն անդէն՝ թէ Տիգրիս բղխէ 'ի նոյն լեռնէ ուստի և Եփրատ, միայն թէ զտեղի միաւորութեան այսր վտակին՝ ընդ միւս վտակին Եփրատայ իջելոյ 'ի հիւսիսոյ կամ 'ի Կարնոյ՝ յոյժ 'ի վեր յեկեղեաց ստանի դնէ Սամոսատն : Իսկ եթէ Սամոսատն 'ի Թղթ . 527 . զԵփրատ միայն

1 Վրիպակաւ եղեալ կայ աստանօր Ծոփք . որպէս նա ինքն Սամոսատն նշանագրեալ էր յառաջ : Ցուրնէյս, փոխանակ գրելոյ Ցուրն-

դամայն ընդ Երասխայ գնել բղխել 'ի լերանց Ալլոս կամ Ալոս, այս ևս չէ ինչ ընդդէմ վերայիշեալ բանից իւրոց, այլ է որոշակի նշանագրել զանուն լերին. զի 'ի Թղթ. 531. զԱլաս լերանն կացուցանէ մասն Տօրոսի, և որպէս յայտ է զԱլլոսն ևս համարի լինել լերանց գօտևոր:

Իրդ քանզի Հայք բնակիչք աշխարհին զերկոսին ևս վտակսն համարեցան իբրև զնոյն Եփրատ, Մուրադն ևս որ մերձակայ էր Հայոց՝ ըստ նոցա Եփրատ կոչեցաւ և սառրագրեաց զայն վտակ՝ որ ունէր զընթացս յարևելից յարևմուտս: Այժմեան քննաբանից եւրոպեանց վասն այնորիկ հակառակ երևին բանք նախնի աշխարհագրաց, զի ոչ գիտեն զամփոփական բարբառ բնակչաց, այլ կարծեանք զմին 'ի վտակացս համարին իբրև այլ գետակ ինչ խառնեալ յԵփրատ, որպէս և յայտնի յիշէ Կելլարիոս Գ. 11. 'ի խօսելն զԵփրատայ. "Իսկ վասն զի այլովք գետովք առատանայ (Եփրատ) յարևելից և 'ի հիւսիսոյ իջեալ, յայնմանէ եղև ոմանց՝ զմեծագոյնն 'ի նոցանէ որ գայ յարևելից՝ համարել փոխանակ զնոյն Եփրատայ, իսկ ոմանց զհիւսիսայինն»: Լաւագոյն էր զայս համարումն առնել ոչ աշխարհագրաց՝ այլ զնոյն բնակչաց, որք ոչ զմին եղեն, այլ զերկոսին ևս, այս ինքն՝ զեկեալն 'ի հիւսիսոյ կամ 'ի Կարնոյ, այլ և զեկեալն յարևելից կամ 'ի Ծաղկոտանէ՝ համարեցան և կոչեցին Եփրատ. իսկ աշխարհագրաց անկ է գրել, որպէս համարին և որպէս 'ի կիր առնուն բնակիչք իւրաքանչիւր աշխարհաց:

Եթէ զայս տեղեկութիւն 'ի պատմագրաց ազգիս ունէր Մալմատիոս, ոչ այնչափ տատանէր 'ի լէ. զքելս զորոյն Մոլինոսի, կամ 'ի միաբանել զբանս այլևայլ մատենագրաց, Պլինիոսի, Մելայի, Ստրաբոնի և Պտղոմեայ, և կամ առ 'ի մերժել՝ մինչև ցքառեակ մեծամեծ Թուղթս երկարաձգել զվէճ իւր. և ոչ գրէր 'ի Թղթահամարն 442. "Եփրատ ոչ կոչէր՝ բայց եթէ ուրանօր հատանէր 'ի սահմանս Կիլիկիոյ և Կոմմագինոյ»: Զի բնակիչքն և նախ քան զհատանել յայն սահման՝ Եփրատ կոչէին զերկոսին ևս վտակսն, թէ զեկեալն 'ի հիւսիսոյ 'ի կողմանց Կարնոյ, և թէ զեկեալն յարևելից 'ի կողմանց Ծաղկոտան և Բագրևանդայ: Իսկ այն անծանօթ անուանքն Բիքսուրադէս և Օմիրա կոչեցեալք 'ի նախագրեալ բանս Պլինիոսի, զուցէ էին փոքրիկ գետակք ինչ խառնեալք յԵփրատ:

Այսչափ ինչ վասն յիշելոցն Ստրաբոնի և այլոց զըն-

Թացից Եփրատայ 'ի Հայաստան ։ Իսկ զոր գրէ Սարաֆեան Ը. 80. յՆերատութեանց բերելով, թէ զանազանութիւն երկայնութեան այսոցիկ կողմանց յայնմանէ պատճառի, ըստ որում " Եփրատ ուր ուրեք 'ի Հարաւ կոյս հոսի, բազմօք գծիւ յարեւելս կոյս ընթանայ ", անդանօր բան նորա է զընթացից յետ ելանելոյ Եփրատայ արտաքոյ Հայաստանեաց, որ ոչ հայի 'ի բանս մեր ։

## Զ. Նաւարկութիւն Եփրատայ, եւ առատութիւն ։

ԶՆաւարկութիւն 'ի վերին կողմանս Եփրատայ 'ի Հայաստանեայս յիշէ Պլինիոս Ե. 24. ուր 'ի խօսելն զընթացից Եփրատայ, ասէ. " Տարքուստ հեռի է 'ի Զիմարայ եօթանասուն եւ հինգ հազար քայլիւ (75 մղոնօք). անդուստ նաւարկելն 'ի Բարզալոն (յորմանակս նոյն Սամոսատ) յիսուն հազար քայլիւ (50 մղոնօք) 'ի Մելիտինէ Կապադովկիոյ "։ Նոյնպէս սուղ նոյն ասորև գրէ. " Ի սահմանացն դարձեալ նաւարկելն քառասուն հազար քայլիւ (40 մղոնօք). անդուստ 'ի Սամոսատա գլուխ ( գլխաւոր քաղաք ) Կոմմագենայ "։ Նաեւ Երատոսթենէս գիրք Ե. գլ. 52. յիշէ զնաւարկութիւն 'ի նոյն վերին կողմանս Եփրատայ ասելով. " Եզր Հայաստանեաց (փոքուն Հայոց) է գետն՝ ընդ որ անցանեն նաւուք՝ Եփրատ անուն "։ Իսկ Սարաֆեան ժէ. 740. 'ի խօսելն զատորեստանեաց պատմէ՝ թէ զիարդ 'ի հարաւային յայն կողմանս մարթ է նաւարկել 'ի ծովէ 'ի վեր ընդդէմ ջրոյն մինչեւ ցԹափսակոս ընդ երեք հազար ասպարէզս. եւ թէ որպէս պարսիկք կամօք խորհեալ սահմանս գործեցին [2], ընդ որս զահավէժ հոսին ջուրքն, առ 'ի խափանել զնաւարկութիւն առ ահի արշաւանաց թշնամեաց, զորս մեծն Աղեքսանդր քակեալ հարթեաց որչափ եւ կարող եղեւ ։

Նոյն 'ի թղթ. 740. գրէ զառատանալոյն Եփրատայ.

1 Վասն սահմանացն զոր յիշէ աստէն Պլինիոս, ոչ ուրեք յիշատակի առէ Սալմասիոս 'ի լէ. գիրս Սոլինոսի 'ի թղթ. 443. այն զի՝ հին ձեռագրահորդութիւն, ասէ, 'ի Սամոսատայ 'ի Մելիտինէ, եւ անտի մինչեւ ցՍամոսատա, ընդ գետեզերս Եփրատայ ճանապարհ լինել ցուցանէ, եւ ընդ այն ամենայն միջոց նաեւ նաւարկութիւն լինել յԵփրատ ։ Այժմեան սահմանք եւս առաւել են յայտ արտաքոյ աշխարհիս Հայոց, զորոց կարես տեսանել 'ի Նոր Հայաստան 'ի թղթ. 21 ։

2 Բուզանդ գ. 14. յերես 115. 'ի Հայաստան 'ի կողմանս Աշտիշատ յիշել երեւի զայսպիսի սահման՝ բայց ընկալեալ, Հաւանէ կոչելով. որ եւ մինչեւ ցայժմ գտանի անդէն, զորմէ տես 'ի Մեծ Հայս 113. եւ 'ի Նոր Հայաստան 194. որ փոքր է եւ զնատագոյն քան զՆերատական ։

« Գետն Եփրատ առատանայ յամառնային սկսեալ յերս գարնանն, յորժամ ձիւնք լուծանին 'ի Հայաստան »: Ցայր ամիս, ասէ, հարկ լինի անդէն յասորեստան փոսս բանալ, որպէս բանան յԵգիպտոս վասն Նեղոսի: Այլ վասն այսր Ճոխագոյն գրէ Արրիանոս յարշաւանս Աղէքսանդրի գիրք Է. « Եփրատ 'ի լերանց Հայաստանեաց հոսեալ 'ի ձմեռնային ժամանակի, 'ի մէջ գետեզերաց իւրոց ընթանայ, ըստ որում ոչ բերէ յինքեն յորդութիւն ջրոց, այլ 'ի մտանս գարնանն՝ եւ առաւել ընդ ամառնային արեւադարձիւ առատացեալ ընթանայ, եւ 'ի վեր ամբարձեալ քան զգետեզերս իւր՝ ողողէ զանդաստանս Ասորեստանեաց. զի յայնժամ ձիւնք 'ի լերինս Հայաստանեաց լուծեալ՝ զջուր նորա առաւելուն յոյժ յոյժ »: Պատմէ ապա թէ որպէս 'ի դադարել լուծանելոյ ձեանց՝ նուազանայ յոյժ Եփրատ յայն կողմանս Ասորեստանեաց, մինչեւ հարկ լինի խնուլ զանցս, ընդ որս հոսի 'ի ջրանցս ձեռագործս բնակչաց, յորս գլխաւորն էր ջրանցքն Պալլակոպայ:

Այլ եւս հաւաստի իմն պատմէ Պողիբիոս գիրք Թ̃. « Գետն Եփրատ, ասէ, զառաջին սկիզբն իւր 'ի Հայաստան կալեալ, անդուստ ապա ընդ Ասորիս խաղացեալ, եւ ընդ սահմանս նմին յարակցեալս, բերի 'ի Բաբելոն . . . Նախ քան զմտանելն 'ի ծով սպառի 'ի փոսս բացեալս յանդաստանս, յորմէ դէպ լինի Եփրատայ ունել բնութիւն հակառակ այլոց գետոց, զի ձորափորք այլոց գետոց այնչափ առաւել առատանան՝ որչափ առաւել սահմանս հատանեն, նոքա 'ի ձմեռային ժամանակի բարձրանան յոյժ, իսկ 'ի տօթ ամարան զիջանին. սա յայնժամ լայնեալ ծաւալեալ զեղու առաւել՝ յորժամ շնիկ աստղն ծագի, եւ ձաբոփոր նորա ընդարձակի յԱսորիս (իմա եւ 'ի Հայս). ուստի ցորչափ երկար ընթանայ, նոյնչափ եւ փոքրկանայ. որոյ պատճառն է, զի ոչ 'ի հաւաքմանէ ձմեռնային անձրեւաց ունի զիւր աճումն, այլ 'ի լուծեալ ձեանց, եւ նուազի յորժամ 'ի ձորագետոյ նորա յանդաստանս դարձուցանեն զջուր նորա, եւ բազմապատկեն յոռոգումն »: Վասն որոյ անապանին, ասէ, յայնժամ նաւարկութիւնք. քանզի նախնիք բազում ջրանցս բացեալ, ընդ նոյն անցս զջուրն Եփրատայ յայլ եւ այլ պէսս իւրեանց ածէին, որպէս պատմէ Ստրաբոն: Իսկ Երոդոտոս ա̃. 180. վասն Նիքօդրիս թագուհւոյն, որ զկնի Շամիրամայ, պատմէ բազում փոփոխութիւնս ընթացից Եփրատայ գործեալ 'ի նոյն կողմանս Բաբելոնի:

վասն այսր իմանայ զյիշատակեալն Ստրաբոնի 'ի ԺԶ. 746. ուր կոչէ Հին կամուրջ Եփրատայ առ Թափսաքաւ. Նոյն ինքն Ստրաբոն յիշէ առաջ 'ի 747. և "զկամուրջն որ այժմ առ Կոմմագինիւ է, ասէ, և զայն (կամուրջ) որ երբեմն առ Թափսաքաւ էր ", որ էր 'ի ձեռս Մակեդոնացւոց, ուր էր Մծբին :

Նեղուցք Եփրատայ յիշատակին առ Քսենոփոնի 'ի Դ. գիրս արշաւանաց Կիւրոսի, ուր գրէ. "Նաև վասն աղբերացն Եփրատայ ոչ յոյժ տարակուսեալ ասէին 'ի Տիգրիսէ. և ուրեք ուրեք ունել վայրս անձուկս ": Յորոց մին յիշատակի և առ մերումս Խորենացւոյ 'ի Գ. 40. յասելն. "Իսկ նոցա անցեալ ընդ նեղուցս Եփրատական կամրջին, ընկեցին զփայտսն զկնի իւրեանց, այլ նորա (Վարազդատայ) հասեալ վաղվաղակի զԵփրատաւ առաւել քան զղակեդմոնացին Քիոնեայ վազս քսան և երկուց կանգնոց չափ ". Այս տեղի մարթ է լինել 'ի վերին կողմանս Հայաստանեայց և Եփրատայ 'ի սահմանի Դարանաղեաց գաւառի. զի սուղ ինչ 'ի վերայ յիշէ զդժուարս Դարանաղեաց. Բայց Եփրատ 'ի սորին կողմն աշխարհիս Հայոց լայնանայ և խորանայ, զոր օրինակ յիշատակի առ Խորենացւոյն Բ. 79. 'ի գրելն զՏրդատայ. "Անցեալ զգետն իւր և զկազմած ձիոյն 'ի լուղ ընդ լայնատարած խորացեալն անցանէր ընդ Եփրատ, 'ի բուռն զօրուն իւրեանց ուր Լիկիանոսն էր ": Իսկ Հերոդոտոս գիրք Ա. գլ. 180. Թղթ. 85. վասն սորին կողմանց Եփրատայ՝ ուր Բաբելոնն էր, գրէ. "Ընդ մէջ բաժանէ (զԲաբելոն) գետն անուանեալ Եփրատ, որ է մեծ և խոր և արագընթաց, 'ի Հայաստանեայց ընթանայ 'ի ծովն Կարմիր [1] ":

Ակունք Եփրատայ բազում են քան զՏիգրիսի, որպէս գրէ Ստրաբոն ԺԶ. 742. զի յետ ասելոյ՝ թէ Տիգրիս 'ի հարաւային կողմանց Հայաստանեայց ընդունի զջուրս, ասէ վասն Եփրատայ. "Իսկ Եփրատ յերկոցունց կողմանց և սա (Հայոց աշխարհի) ընդունի զջուր, ոչ 'ի միոջէ լեռնէ միայն՝ այլ 'ի բազմաց ": Յաւելու, ասէ, և զերկարութիւն ընթացից գետոյն Եփրատայ, որ ընթանայ ընդ միջոցս մեծին և փոքուն Հայոց, առաջ ընդ Կապադովկիա, և ընդ Տօրոս " և այլն :

1 Իմա զծովն Պարսից. քանզի նախնեաց, Արաբիոյ, և Ասորւոց, կոչէին նոքա զհարաւակողմն ծովն որ առ նոյն Պարսից Ծոցն կոչի :

# ՏԻԳՐԻՍ

## Ա. Անուն գետոյս:

Անուանեցեալ է 'ի տէգ բառէս Հայոց, որպէս և վկայէ համամայնեցելին Տերենտիոս Վարռոն 'ի գիրս Լատին լեզուի Դ. 20. « Տիգրիս ... անուն 'ի Հայկական լեզուէ (է ածանցեալ). զի 'ի նմա և ուժգին և արագընթացս գետոյն՝ Տիգրիս կոչի »: Բայց ոմանք զՏէգն յայլոց լեզուաց ածանցեալ ասեն, որպէս Պլինիոս Զ. 27. Ստրաբոն և Եւստաթէոս 'ի լեզուէն Մարաց. իսկ Կուրտիոս. Դ. 9. 'ի լեզուէն Պարսից, որք այսպիսիք կամ զի չէին տեղեակ Հայկական լեզուիս, և կամ զի մի և նոյն լեզու համարէին զմերն ընդ նոցին, վասն այսորիկ այսպէս ասեն. այլ զանուն գետոյն պարտ է տալ այնմ լեզուի՝ որում է սեփական գետն. արդ Տիգրիս է գետ սեփական մերում աշխարհի, և անունս Տէգ՝ է սեփական մերում լեզուի և ստէպ 'ի կիր արկեալ: Կոչեցաւ և Դկղաթ առ Յովսեպոսի 'ի քաղդէական թարգմանութեան սուրբ գրոց, և 'ի թարգմանութիւն արաբացւոց և Պարսից, որպէս երբեմն և առ մեր մատենագիրս [1], և 'ի Հայկական թարգմանութիւն Փիլոնի, և յայլ գիրս, որ ածանցեալ է յերկուց անուանց Տէգ և Շոփ, որ է անուն տեղւոյ՝ ուրանօր բղխէ. զի մին յականց Տիգրիսի բղխէ առ Շատախաւ, յորմէ եղ անունս Դկղթ և Շոփ. որպէս կոչի մինչև ցայժմ յայլոց ազգաց: Սոյն այս անուն է որ 'ի սուրբ գիրս յեբրայականն կոչի Հիդդեքել, փոփոխմամբ ինչ տառից. իսկ առ մեզ 'ի Դանիէլի Ժ. 5. երկոքումբք եւս անուամբք կոչի. « Առ ափն գետոյն մեծի՝ որ է Տիգրիս Դկղաթ »: Գտանի և այլ անուն Բասիտիգրիս, զոր տան նմա Պլինիոս Զ. 27. և Ստրաբոն ԺԵ. 729. այլ այս է անուն ստորին կողմանց Տիգրիսի, զկողմամբք ներքնոյն հեռի յոյժ 'ի Հայաստանեայց:

[1] Զոր օրինակ առ Առաքելոյ Ի. 3. կոչի Դկլաթ. և առ Մատթէի 'ի Թիւն խա. « Իջանէր 'ի վերայ Տիգրանակերտ քաղաքին որ անուանեալ կոչի Ամիթ, 'ի վերայ Դկղաթ գետոյն »: Ուր յայլում օրինակի գրի Ակղաթ: Եւ 'ի Թիւն խէ. « Եղ քակեաս զԿանդաղարսն, որ կայ 'ի վերայ Աշկուղաթ գետոյ »: Ուրանօր խօսի զԱմիթայ:

## Բ. Ակն Տիգրիսի.

Սարգսեան աշխարհագիրն այսչափ միայն նշանակէ վասն տեղւոյ ականց Տիգրիսի. « Չորրորդ Հայք, ուստի ելանէ գետն Տիգրիս, որ Դիկլաթ կոչի »: Այլ Վարդան 'ի մեկնութեան ծննդոց ԺԲ. 14. մի ըստ միոջէ որոշէ զտեղին ասելով. « Տիգրիս, որ Դիկլաթ կոչի, ելանէ 'ի չորրորդ Հայոց, 'ի Հաշտէն գաւառէ, և 'ի գեղջէ Ոլորայ »: Վասն որոյ և առ Յոհաննու մամիկոնենի Գիրեհ կամ Կրեհ գիւղն Հաշտենից՝ անուանի Ջրաւոր վայրք: Ցարտաքին մատենագրաց Պլինիոս Զ. 27. գրէ վասն Տիգրիսի. « Բղխէ 'ի գաւառին Հայոց մեծացյականաւոր մինչ աղբերբ 'ի դաշտավայրի. անուն տեղւոյն է Էլէկօսինէ[1], ուրանօր դանդաղ ընթանայ՝ անուանի Տիգրիս. ուրանօր արագ ընթանայ՝ յերագութեն Դիգրիս (Տիգրիս) սկսանի կոչիլ. այսպէս կոչեն Մարք զՏէգն »: Իսկ Ստրաբոն ԺԱ. 521. վասն Տիգրիսի գրէ բղխել յայնմ լերանէ՝ ուստի բղխէր և Եփրատ. որով բղխեալ գնէ 'ի լերինն Ասլոս կոչեցեալ. զի յԱսլոս լերանէ եղ և զակն Եփրատայ: Կուրտիոս գիրք Ե. ընդհանրապէս 'ի լերանց հայաստանեայց գնէ բղխեալ զերկոսին գետս զԵփրատ և զՏիգրիս.

Այլ բաց յականէ կամ յաղբերէ աստի որ 'ի չորրորդ Հայս՝ միւս ևս ակն է Տիգրիսի՝ բղխեալ 'ի լերինս Կորդուաց: Այս ակն յիշատակի 'ի ստորագրութեան չորից գետոց տպագրեալ զկնի աշխարհագրութեան Խորենացւոյն ասելով. « Տիգրիս 'ի Կորդուաց լերանց ելանէ »: Զնոյն յիշատակէ և ստորագրութիւն ամենայն գետոց տպագրեալ զկնի առաջնոյն. բայց քանզի Կորդուաց լերանն է գօտևոր, թէ յորում մասին Կորդուաց ելանէ՝ յաշխարհագրութէ Վարդանայ կարեմք որոշել, թէ ելանէ 'ի Ջերմաձոր գաւառէն Մոկաց. զի վասն սորա գրէ՝ թէ Ջերմաձոր Շատախ է: Արդ թէպէտ Շատախ անուն ոչ յիշատակի առ Նախնիս, բայց դոյ մինչև ցայժմ վիճակ և քաղաք համանուն կոչեցեալ Շատախ. ուր բղխէ Տիգրիս 'ի վերոյ քան զքաղաքն, և ընթանայ առ քաղաքաւն Շատախի. վասն որոյ և յօրինակի միում Վարդանայ աշխարհագրի գրեալ կայ. « Աղձնիս,

1 Ի տպագրեալն գրի Էլէկօսինէ. առ Սոլինոսի գրի՝ « Ի բարձր վայրի որ Էլէկօս անուանի »: Այս անուանս թուին լինել աղաւաղութիւն Ոլորայ անուանն՝ զոր եդ Վարդան:

Հիզան և Շատախ, առ Տիգրիս գետովն կայ »: Զորմէ տես և 'ի Նոր Հայաստան 'ի Թղթ. 163. 164. յորոյ այժմեան ընթացիցն կարեմք իմաստասիրել և դժնին. որում 'ի դէպ երևի և ամենայն ստորագրութիւն Նախնեաց. քանզի Կորդուաց լեառն անցանէ նաև ընդ Նահանգն Մոկաց՝ ուր է Ջերմաձոր և Շատախ. վասն որոյ ոմն կարէր դնել բղխեալ 'ի լերանց Կորդուաց, և այլ ոմն 'ի Ջերմաձոր գաւառէ Մոկաց. նա մանաւանդ Խորենացին 'ի պատմութեան պատկերի Աստուածամօրն՝ 'ի լերանց Կանդուարայ իջանել ասէ, որ էր յԱնձևացեաց գաւառ Վասպուրականի. « Եւ է տեղին այն... լեռնամէջ վիմաց 'ի վերայ գետոյն մեծի որ կոչի Տիգրիս, հուպ 'ի բերդն ամուր որ կոչի Կանգուար, և միւսոյն Ագռաւուց քար, ուստի ջուրք բազումք հոսին 'ի լերանց ամրոցին (Կանդուարայ) ըստ գարնանային մասանցն, զոր անցանեն ընդ հիմունս տաճարի Տիրուհւոյն, և խառնեալ օժանդակեն զգետն մեծ Տիգրիս »:

Գրէ նոյն Վարդան աշխարհագիր, թէ Զուլամերկ գաւառն՝ յոր անկանի Շատախ՝ է հին Ջրմաղն, զի ասէ. « Ջրմառ (յայլում օրինակի Ջղմառ) Զուլամերկ է »: Որ յայտնի է լինել Ջրմաղն, որ էր 'ի փոքր Աղբակ կոչեցեալ գաւառի 'ի Նահանգին Կորճէից. արդ՝ Կորդուաց լերինք նոյնպէս անցանէին ընդ Կորճէս, և առ Կորդուօք անցանէր Տիգրիս: Եւ այսպէս ըստ մերոց մատենագրաց մի ակն Տիգրիսի էր 'ի Հաշտեան գաւառի չորրորդ Հայոց. իսկ միւս ակն 'ի լերինս Կորդուաց որ 'ի Նահանգին Մոկաց և Կորճէից, ուր է Շատախն. բայց այս երկրորդ ակն և վտակն Տիգրիսի՝ չերևի առ մեզ երևելի, որչափ եղև երկրորդ վտակն Եփրատայ եկեալ 'ի Ծաղկոտանէ:

Համաձայն բանից մերոց մատենագրաց մերձ 'ի Կորդիս դնէ և Պտղոմէոս Ե. 13. յասելն. « Իսկ յարևելից ականց Տիգրիս գետոյն՝ է Վակրավատինի (Բագրևանդ). և ընդ նովաւ Կորփինի »: Որպէս և Քսենոփոն 'ի Դ. գիրս արշաւանաց Կիւրոսի, 'ի Քարդուքս դնէ զաղբիւրս Տիգրիսի, յասելն վասն զօրաց Յունաց. « Եթէ ընդ Քարդուքեան լերինս Ճանապարհորդէին, 'ի կամելն՝ անցանէին ընդ աղբիւրս Տիգրիս գետոյն 'ի հայաստան »: Արդ Քարդուք և Կորդուք են նոյն անուն, որպէս գրեցաք 'ի ստորագրութեան լերանց Կորդուաց: Նոյնպէս համաձայն ելանեն և բանք այլոց մատենագրաց Յունաց և Հռոմայեցւոց, որք բաց 'ի բնիկ աղբերէն Տիգրիսի՝ դնեն և զայլ

աղբիւր, առնլին միայն տարածայնեալ, զի նոքա զայն համա-
րին երկրորդ անգամ 'ի վեր բղխումն մի և նոյն Տիգրիսի յետ ընկղմելոյ յերկիր։ Մի՞ զի Ստրաբոն, որ զակն Տիգրիսի եդ 'ի վերայ 'ի նմին լերին ուստի բղխէ Եփրատ, որ էր Աբոս լեառն, սուղ ինչ զկնի դնէ 'ի լեառն Նպատ. զի 'ի ստորագրելն զՏորոս՝ գրէ 'ի Թղթ. 522. "Ապա ևս քան զևս վերամբարձեալ՝ Նպատ կոչի, ուր են աղբիւրք Տիգրիսի 'ի հարաւային կողմն լերին"։

Երկրորդ՝ Ստրաբոն անդէն 'ի Թղթ. 521. ասէ, թէ "Աղբիւրք Տիգրիսի և Եփրատայ տարակայեն 'ի միմեանց իբր երկու հազար հինգ հարիւր ասպարիզօք"։ Զնոյն գրէ և Դիոդորոս սիկիլիացի հատոր ա. Թղթ. 125. գիրք ե. "Յետ Նեղոսի և Գանգէսի՝ գետք ականաւորք ընդ ամենայն Ասիա՝ են Եփրատ և Տիգրիս. որոց աղբիւրք են 'ի լերինս Հայաստանեաց, տարակայեալ 'ի միմեանց հազար հինգ հարիւր ասպարիզօք. և ընդ Մարս և ընդ Բարեդաւալնի ընթացեալ մտանեն 'ի Միջագետս"։ Արդ 2500 ասպարէզք առնեն 293 մղոն. այսչափ հեռաւորութիւ աղբերաց ընդդէմ ելանէ բանիցն՝ զոր ասաց Ստրաբոն վասն երկուց գետոց Եփրատայ և Տիգրիսի բղխել 'ի մի և 'ի նոյն լեռնէ. ապա յայտ է թէ Ստրաբոն խօսի աստ զհեռաւորութէ երկրորդ ականն կամ աղբեր, և ոչ զհեռաւորութէ առաջին ականն՝ որ 'ի միում լերին էր ընդ Եփրատայ. նա՝ ըստ ասելոյ Սալուստիոսի նաև 'ի միում աղբեր. զի՞ գրէ Սենեկա, թէ Սալուստիոս պատմագիր ստուգաբան հաստատէ, թէ Տիգրիս և Եփրատ 'ի միոջէ աղբերէ հոսին 'ի Հայաստան. նոյնպէս և Լուկանոս և Բոյետիոս մի դնեն զաղբիւրն Եփրատայ և Տիգրիսի։ Զայս քաջայայտ ևս ունիս տեսանել ասորև։

## Գ. Ընթացք Տիգրիսի։

Պլինիոս Զ. 27. յետ դնելոյ զակն Տիգրիսի, ասէ վս ընթացից նորա. "Հոսի 'ի լիճն Արեթուսա... և անցեալ (ընդ այն լիճ) սակս ընդ առաջ ելանելոյ Տորոս լերին՝ ընկղմի 'ի քարայր ինչ. ուր ընդ երկրաւ ընթացեալ՝ 'ի միւս կողմանէ նորին 'ի վեր ելանէ, տեղին կոչի Զորոանդա[1]. նոյն լինելն (գետոյն) յայտնի է, զի զընկղմեալսն

[1] Որ է Զարդուանդ հին գաւառ 'ի ... է մեր 'ի մեծ Հայս 'ի Թղթահանդարն նահանգին Պարսկահայոց, որ գրեալ 154։ Զայս ասելով Պլինիոս՝ մերձենայ

՚ի վեր բերէ. սակայն ընդ այլ լիճ անցանէ որ Թոսբիտէս կոչի, և դարձեալ յերկիր սուզի. և յետ քսան և հինգ հազար քայլի (25 մղոնաց) ՚ի Նիմփէոս ելանէ,,: Այլ Ստրաբոն ժա. 529. միայն զմի լիճն յիշէ, զորոյ զանուն կոչէ Արսենի, որ և Թոնիտիս. "Ընդ այս (լիճ, ասէ), Տիգրիս բերի ՚ի Նպատ լեռնէ հոսեալ, և ոչ խառնի ՚ի լիճն սակս արագութեան, յորմէ առուաւ նմա անուն. զի զնետն Մարք Տիգրիս կոչեն: Տիգրիս բազում աղբերս ձկանց ունի, այլ լճին մի միայն է տեսակ. ՚ի ներքին խորշ լճին Տիգրիս ՚ի յորձանուտն ընկղմեալ և ընդ երկայն տապարէզ ընդ երկրաւ հոսեալ, առ ընթեր Խաղօնիտեայ ՚ի վեր յառնէ[1]. անդուստ առ Օպեաւ և առ պարսպաւ Շամիրամայ ընթանայ, զԿորդիս յաջմէ թողեալ,,[2]:

Այս բանք Պլինիոսի և Ստրաբոնի յայտ առնեն, թէ զոր մերքն իբրև երկրորդ ակն Տիգրիսի յիշեն, սոքա համարին ՚ի վեր յառնել մի և նոյն գետոյ, որպէս ասացաք ՚ի վերոյ. զի զոր ինչ տեղի յիշեն սոքա՝ անկանին մօտ յայն կողմանն՝ զորս մերքն յիշեն: Զօրօանտա Պլինիոսի է Զարուանդ գաւառն Պարսկահայոց: Խաղօնիտիս Ստրաբոնի է Այլի գաւառն Պարսկահայոց, Աղօնք կոչեցեալ ՚ի Պլինիոսէ: Օպեայ տեղին է Ցրմբեա, ընդ այլ տեղիս Պարսկահայոց յիշատակեալ ՚ի Թոմայէ արծրունւոյ, զոր նա Ցրմբեա ծովակ կոչէ: Հաւակ յետոյ Ստրաբոն յիշէ և զԿորդիս, ուր մերքն եդին զայս ակն. որպէս և համառօտութի նորին Ստրաբոնի ժզ. 1305. առաւել որոշելով ասէ, թէ յետ սուզանելոյ յերկիր, "առընթեր Կորդուաց ՚ի վեր յառնէ,,: Արդ յայտ է թէ ոչ միայն յայսմ՝ այլ նաև ՚ի ստորագրութիս այլ ամենայն տեղեաց չիք գտանել բստ ամենայնի համաձայնութի, այլ զընդհանուրն և եթ բաւական պարտ է համարել: Ուր ստոյգ խնձ երևի, թէ ընդ ընթացից այսմ երկրորդ ականն Տիգրիսի շփո-

առ տեղին հին Ջրմող գաւառին Կորճէից, ուր է Ղոփող՝ տեղի երկրորդ աղբերին կամ ականն Տիգրիսի. զի Պարսկահայքս սահմանակից է Կորճէից:

1 Զընկղմիլն Տիգրիսի և անդրէն ՚ի ՚ի վեր յառնելն յիշէ նաև Սենեկա ՚ի Զ. գիրս Բն. գլ. 8:

2 Զայն առաւել պարզ բանիւք կրկնէ Ստրաբոն ժզ. 746. ասելով. "Տիգրիս հոսի ընդ լիճն որ Թոնիտիս ասի ընդ մէջ լայնութ նորա. իսկ ՚ի հատանելն անդ ՚ի միւս եզրն՝ սաստիկ խոխոջմամբ և կարկաջմամբ ընդ երկիր սուզանի. և այսպէս ընդ երկար ընթացեալ մինչև անմարթ լինել ՚ի տեսանել, դարձեալ ՚ի վեր յառնէ ոչ հեռի ՚ի Կորդուաց. և եթէ հաւատասցուք Երատոսթենեայ, այնչափ սրընթաց ընդ լիճն անցանէ, մինչև թէպէտ լիճն աղի է և զուրկ ՚ի ձկանց՝ բայց յայնմ վայրի քաղցրանայ, և ձկանցք առատանայ,,:

Թեալ խառնեն Սորաբոռն և այլք նաև զընթացս այլոց ինչ վտակաց Տիգրիսի՝ որք գան ՚ի հարաւային կողմանց աշխարհիս Հայոց, և խառնին ՚ի Տիգրիս [1]։ Ցուցանեն, Թէպէտ դնէ զսուղն Տիգրիսի համաձայն Սորաբոռնի և Պլինիոսի, բայց յանուանս տեղեաց ոչ համաձայնի. զի գիրք խդ. գլ. 3. ՚ի յիշելն զՀայաստան, ասէ. «Ցորոյ լերանցն բղխէ Տիգրիս գետ. զատուցինն նաւապաշտուք, ապա յետ քանի մի սապարիզաց յերկիր սուզեալ, յետ հազար քայլից մեծ ինչ գետ լեալ ՚ի գաւառն Սօփենէ (ծոփք) ՚ի վեր յառնէ, և այնպէս ՚ի լիճս Եփրատայ անկանի»։

Դ. Առատութիւն և նաւարկութիւն Տիգրիսի ։

Այս գետ ոչ այնչափ առատանայ՝ որչափ Եփրատ ըստ Սորաբոռնի, որ և զպատճառն նշանակէ ասելով. ժզ. 742. «Տիգրիս ՚ի հարաւային կողմանց հայաստանեաց՝ որք մերձ են ՚ի Բաբիլոն՝ ընդունելով զջուրս ձեան, այլ ոչ յորդութե, սակս հեռելոյն ՚ի հարաւային կողմանց, արդարև սակաւ առատանայ»։ Անդ ՚ի թղթ. 739. գրէ, թէ մարթ է նաւարկել ՚ի ծովէ ՚ի վեր, մինչև ցՕբին, որ էր Շահաստան քաղաք ասորեստանեաց, և մինչև ցայն տեղի՝ ուր զկնի շինեցաւ Սելևկիա. այլ Պարսիկք առ ահի արշաւանաց թշնամեաց որպէս յԵփրատ՝ նոյնպէս և ՚ի Տիգրիս՝ սահմանս կամ քարավարս գործեցին ՚ի խափանել զմուտս թշնամեաց. զոր Հուլեանոս համարի գործեալ ՚ի Նիտակրիս թագուհւոյն ասորեստանեաց, որ ըստ պատմելոյ Երոդոտոսի գիրք ա. գլ. 185. ճարտարամիտ էր յոյժ ։ Մեծն Աղեքսանդր քակեաց զայն սահմանս, այլ Պարթևք անդրէն գործեցին զանգիտեալ ՚ի թշնամեացն յեկեղոց ՚ի ծովէ. նմին իրի կային այն սահմանք և յաւուրս Յուլիանոսի կայսեր, ըստ յիշէ Ամիանոս գիրք իդ. գլ. 1. այլ զկնի բարձման առհասարակ, քանզի պատմին նաւակաց համարձակ անցանել ընդ Տիգրիս և ընդ Եփրատ, բերելով զվաճառս Միջագետաց, Պարսից և Հնդկաց ։

Յաղագս կամրջին Տիգրիսի այսչափ ինչ յիշատակեմ զատանի առ Դիոնի, թէ Տրայիանոս հրամայեաց բերել ՚ի Մծբնայ որ ինչ պէտք էին ՚ի կառուցանել կամուրջս, առ ՚ի անցանել յԱտիավէնի, մերձ ՚ի լեառն Քարտինոն. ուր կամի գրել Քարտու, որ է լեառն Կորդուաց ։

1 Տես ՚ի մեծ Հայս, ՚ի Թղթահամարն 152 ։

## ԾՈՐՈԽ կամ ՃՈՐՈԽ որ և ՓԱՍԻՍ

Այժմ կոչի տաճկերէն Չօրուխ կամ Ճօրուխ [1]. զորմէ գրէ Լաստիվերտցի գլ. ԺԶ. "Իսկ որ 'ի Տայոց մեծին, առեալ զերկիրն, և հասեալք մինչև 'ի գետն մեծ որ կոչի Ծորոխ. և զհետ գետոյն դարձեալ իջին յաշխարհն Խաղտեաց": Այս բան ցուցանէ զընթացս գետոյս լինել առ սահմանօք Տայոց, և աշխարհին Խաղտեաց. յորմէ մարթ է իմաստասիրել և զակն նորա լինել 'ի կողմանս Տայոց, զորմէ չիք ինչ յիշատակութիւն. զի որ առնի 'ի գետագրութեան տպագրեալ զկնի աշխարհագրութեան Խորենացւոյն՝ 'ի Սենեաց նշանել [2], մեզ անյայտ է: Այս Ճորոխ գետ յիշատակի և 'ի գիրս Յովհաննու Մամիկոնենի յայն գլուխն՝ որոյ վերնագիրն է. "Վասն մահուան Տիրանայ՝ որդւոյ Վահանայ, և պատերազմին՝ որ յեղեւ առ ի ծովուն": Ուրանօք ասէ վասն Վաչէի Վրաց արքայի. "Առեալ զՊարսիկս էանց ընդ գետն Ճորոխ, և գնաց 'ի քաղաքն Համամայ՝ որ կոչի Տամբուր. եհար սրով և հրով:

Այս անուն Ծորոխ գետոյն ոչ գտանի 'ի սուրբ գիրս, թէպէտ և գետն յիշատակի այլով անուամբ Ծնն. Բ. 11. որ է Փիսոն՝ մի 'ի չորից գետոց դրախտին. զի հայկականն անուանս եղեալ յանուանցս ծոր, ողխ, յայտ առնէ զուղղորդէն ծորել սորա սաստկութ., և զյաճախութ. աճելոյ և զեղանելոյ, որում յարմարել կամելով Մովսէս՝ եդ զանուանս Փիսոն, որ ըստ եբրայեցւոց նշանակէ աճել, զեղուլ, զորմէ տես 'ի գլ. Բնակչաց: Նոյնպէս անլուր է այս անուն ամենևին 'ի գիրս օտարազգի մատենագրաց Յունաց և Հռոմայեցւոց, բայց գետն հռչակեալ յոյժ, այլով անուամբ կոչելով. զի Ֆասիս կոչեցեալ գետն առ նոսա՝ ըստ մեզ Փասիս, յայտնի տեսանի լինել նոյն ինքն Ծորոխ գետ. զորոյ զպատճառն մի ըստ միոջէ յառաջ բերցուք:

Նախ՝ որպէս զԾորոխն գիտեմք եղանել 'ի Հայաստանեաց, նոյնպէս և զՓասիսն զնեն նախնիք եղանել 'ի Հայաստանեաց: Ստրաբոն ԺԱ. 529. 'ի գետս Հայաստանի աշ-

1 Տես 'ի նոր Հայաստան 'ի Թղթահամարն 29.

2 Գուցէ կամի ասել 'ի Սանեաց, որ է 'ի Ճանեաց. բայց Ճանիւ ըստ աշխարհագրութ. Խորենացւոյն է Խաղտիք, որ է մի 'ի գաւառացն Կողբիոյ. այլ զՓասիս որ է Ծորոխ՝ բղխեալ զնեն նախնիք ոչ 'ի Կողխիս, այլ 'ի Հայս:

խարհիս՝ 'ի կարգս առաւել ծանուցեալ գետոց որք 'ի Պոնտոս ծով իջանեն՝ դնէ զՓասիս և զԼիկոս՝ որ է Գայլ գետ փոքուն Հայոց ։ Եւ 'ի ժա̃. 498. գրէ. "Կողքիս ըստ մեծի մասին իւրոյ առ եզերի կայ ծովու. ընդ այն ընթանայ Փասիս գետ մեծ բղխեալ 'ի հայաստանեաց. յինքն ընդունելով զՂլաւքոս և զԻպպոս, որք հոսին 'ի մերձակայ լերանց"։ Դիոնեսիոս 'ի գրելն զՓասիս գետոյ 'ի տողն 694. "Սկզբնաւորեալ, ասէ, զառաջինն յԱրմենիոս լեռնէ"։ Մեկնիչն Ապողոնեայ առ ժա̃. գիրս, տող 401. "Ի լեռանն հայաստանեաց" դնէ։ Եւ թէպէտ առ Ապողոնեայ գրի՝ յԱմարանդեան լերանց հոսեալ, որպէս և առ Պլինիոսի՝ 'ի Մոսքեան լերանց, այլ որպէս ծանուցանէ Քազաւպոն 'ի մեկնութեան Ստրաբոնի 'ի թղթ. 498. "Երկաքանչիւր եւս լերինք են 'ի հայաստան"։ Զբանս Պլինիոսի յառաջ բերցուք, որ Զ. 4. զառաւել տեղիս յիշելով ծանօթացուցանէ. զի յետ յիշելոյ զԴրաբեզուս (Տրապիզոն), ասէ. "Յայնկոյս քան զայն՝ ազգն Արմենոքալիպք (որք են Խաղտիք) երեսուն հազար քայլիւ (30. մղոնիւք) տարակայեալ 'ի Հայոց մեծաց . . . իսկ 'ի յեզերս (են) Հենիոխք, Ամբրէվդք, Լազք[1]։ Գետք (են) Ագամպսիս . . . և առաւել ականաւոր գետ Պոնտոսի (է) Փասիս, ծագի 'ի Մոսքեանց"։ Ուր գրէ Հարտուէն մեկնիչ, 'ի բանից Ստրաբոնի լուսաւորեալ, թէ Փասիս "ունի զիւր ակն յայնմ կողմանէ Մոսքիքան սահմանին զոր Հայք ունին. զի Մոսքիքա է եռամասն. մասն ինչ անկանի Կողքիսաց, մասն ինչ Վրաց և մասն ինչ Հայոց . . . . զի յերկրի սոցա (Հայոց) ուր դառնայ յարեւմուտս, 'ի լերանց՝ զորս Պտղոմէոս Կովկասեանս կոչէ՝ բղխէ Փասիս, ոչինչ հեռի 'ի նոյն իսկ ականց Եփրատայ"։ Այս լերինք են զոր Ստրաբոն ժա̃. 500. սահմանակիցս դնէ Կողքիսոյ, յասելն՝ թէ Փասիս ծագի 'ի վերոյ կացեալ լերանց. այսինքն 'ի լերանց որ 'ի վերոյ կան Կողքիսոյ. զորոյ ընթանս տեսցես առօրեւ։ Համաձայն նախնեացս այսոցիկ և Պրոկոպիոս ասէ վասն Փասիս գետոյ ելանել 'ի Հայոց, և խաղալ յաշխարհն Եգերացւոց կամ Կողքիսացւոց։

Երկրորդ՝ զոր ինչ գրեն նախնիք վասն ընթացից Փասիս գետոյ՝ ըստ ամենայնի համաձայնի ընթացից Ճորոխայ կամ Ճորոխայ՝ զոր զայժմուս տեսանեմք. զի գրեն վասն

[1] Նաև առ Պտղոմեայ Ե. 10. 'ի ծո- Լազք, որ 'ի բաղադրեանն օրինակի մեծերեկոյ ժողովուրդս Կողքիսոյ դնին վերպանօք գրեալ կայ Ջանք ։

Փասիսի ընթանալ առ Կողքիսիւ [1] մերձ 'ի Տրապիզոն և 'ի Լազս. ըստ այսմ և ս Ճորոխ անցանէ առ սահմանօք փաշայութեն Տրապիզոնի, որ 'ի հնումն կոչէր Կողքիս, իսկ այժմ Լազիստան կամ Լազք, յանուն միոյ 'ի հին գաւառաց Կողքիսոյ՝ կոչեցեալ Լազիա, զոր յիշէ Խորենացին 'ի ձեռագիր աշխարհագրութեն իւրում։ Զայս յայտնի կացուցանէ Քսենոփոն 'ի Դ. գիրս արշաւանաց Կիւրոսի. ուր պատմէ՝ թէ յորժամ զօրքն հասին 'ի Փասիս գետ՝ ուր իբր հարիւրոտնեան ունէր լայնութի, որ է առել 'ի սկիզբն գետոյն, և 'ի գնալն յառաջ տասն փարսախաչափ, անցխալիւք (որ է Խաղտիք), և Դաօզք (որ է Տայք), և Փասեանք ընդ առաջ ելին նոցա։ Որով կամի ասել թէ 'ի մերձակայս Փասիս գետոյ էին սահմանք Խաղտեաց և Տայոց, որպէս է և Ճորոխոյ։ Յայտնի ցուցանէ և Սարաքան յասելն ժա. 500. "Զորեքկին են մուտք 'ի Վիրս. մին ընդ Սարաքանա բերդ կողքիսեանց, և ընդ անձուկս որք 'ի Թիկունս նորա են, ընդ որս Փասիս հարիւր քան կամրջօք կցեալ առ խոտորմանն [2] սաստիկ և որընթաց հոսի 'ի Կողքիս, հեղեղօք անձրևաց 'ի բազում ծործորս պատառեալ զտեղիսն, և 'ի ձորավայրս դարձուցեալ"։ Զինչ առաւել յայտնի քան զայս սակս ընթացից Փասիս գետոյ ընդ Կողքիս, և յարմար այժմեան որընթաց ուղխից յորձանաց Ճորոխ գետոյ [3]։ Իսկ 'ի թղթ. 498. ինքն Սարաբոն զՓասիս քաղաք կառուցեալ առ Փասիս գետով կոչէ Կողքիսացւոց քաղաք՝ ասելով. "Առ եզրի Փասիսի կայ համանունն քաղաք Վաճառաստան Կողքիսացւոց. զորով 'ի միոյ կողմանէ պատէ գետ, 'ի միւս կողմանէ լճակ, իսկ յերրորդ կողմանէ ծով։ Սոյնպէս և Պլինիոս յայտնի ցուցանէ իէ. 13. ուր 'ի յիշելն զԱզրոն կամ զԱգօրոն՝ ասէ, թէ լուացոյնն լինի "Ի կողքիս առ Փասիս գետով"։

Երրորդ պատճառ զՓասիսն համարելոյ նոյն ընդ Ճորոխոյ՝ այն է, զի որպէս նախնիք առ Փասիս գետով, կամ 'ի կողմանս Փասիս գետոյ դնեն լինել ոսկի, զոր յանուն

1 Որպէս ունիմք գրել 'ի Խաղտիս, Կողքիս կոչի և Էգեր, որ է մի և նոյն աշխարհ, և 'ի գիրս մեր յաճախակի անուանեալ, որոյ մի 'ի գաւառացն է Խաղտիք, և է այժմ 'ի սահմանսն Տրապիզոնի։

2 Յորդութեն ջուրց որք գան 'ի սահմանացն Խոտորջրոյ, և թափին 'ի Փասիս կամ 'ի Ճորոխ գետ, երևին լինել պատճառ այսր մեծի խոտորմանն Փասիս գետոյ՝ զոր յիշէ աստանօր Սարաբոն, զի և բազմութի ծործորոց և ձորոց յիշատակեալ առ 'ի նմանէ. թուին լինել ստորագրութի երկրին Խոտորջրոյ, զորմէ տես 'ի Նոր Հայաստան 133.

3 Զայսմանէ տես 'ի Նոր Հայաստան 'ի Թղթահամարն 95։

Կողքիսայ կոչեն, նոյնպէս և առ մերս ծորոխ կամ ճորոխ գետով զտանի հանք ոսկւոյ, զորմէ առեացես 'ի գլուխն Բերոց և Վաճառուց:

Չորրորդ պատճառն է, զի թէ ոչ դիցուք զճորոխ լինել Փասիս գետ նախնեաց՝ զարմանք մեծ են, թէ նախնիքն որ զառաւել մասունս 'ի գետոց զգլխաւորն 'ի հայաստանեայց յիշեցին, զիա՞րդ զանց արարին և լռեցին յիշել զայս գետ մեծ, զոր օրինակ է ճորոխ, որ և ընթանայ պատելով առ հասարակ զհամօրէն Կողքիսիւ, որ էր աշխարհ քաջածանօթ նոցա՝ գոլով ծովեզերեայ: Այս և եթ պատճառ բաւական է յայտնի կացուցանել, թէ նոքա յիշեցին արդարև զծորոխն, բայց այլով անուամբ յիշեցին, այնինքն է Փասիս:

Այս ամենայն պատճառք որպէս դէմ յանդիման ցուցանեն թէ ծորոխ կամ ճորոխ է նոյն ինքն գետն Փասիս անուանեալ առ նախնիս օտար ազգաց, նոյնպէս և յայտ առնեն՝ թէ Փասիսն ոչ է այժմեան Ֆաշ գետն, որպէս կարծեցին ոմանք պատրեալք 'ի մերձաւորութենէ անուանց: Նախ՝ զի այժմեան Ֆաշն՝ որ և կոչի Ռիոն, ոչ ելանէ 'ի հայաստանեայց, որպէս գրեցին նախնիքն վասն Փասիս գետոյ, այլ 'ի կովկասեան լերանց որ կան 'ի հիւսիսոյ վրաստանի, հեռի յոյժ յաշխարհէս Հայոց. վասն որոյ եթէ զայժմեան Ֆաշն համարեսցուք լինել Փասիս նախնեաց, զամենայն մատենագրաց բանս՝ որք առ հասարակ դնեն 'ի Հայս բղխեալ, պարտ է ստել: Երկրորդ՝ այժմեան Ֆաշ գետ ոչ ընթանայ առ Կողքիսիւ, այլ 'ի հիւսիսոյ արևելից յարևմուտս եկեալ յԻմերեթէ, որ է Աչուխ պաշ, մտանէ 'ի Պոնտոս կամ 'ի սեաւ ծով, յաջմէ կամ 'ի հիւսիսոյ ունելով զՄնկրէլ, իսկ յահեկէ կամ 'ի հարաւոյ՝ զԳուրիէլ, որք հեռի են յոյժ 'ի Տրապիզոնէ և 'ի Լազից՝ զորս յիշեաց 'ի վերոյ Պլինիոս, որպէս յիշեն և այլ նախնիքն. որք և 'ի հնումն անկանեն 'ի Կողքիս [1]: Վասն որոյ

1 Թէպէտ 'ի գլխէն զխոստովանեաց սոնինքն խօսել վասն Կողքիսոյ, բայց առքաջ անգիտութեն վասն Փասիս գետոյ՝ հարկ է ստուգիւ ծանուցանել զատոյգ անդի այսր աշխարհին: Այդ պարտ է գիտել թէ մերազանց ինչ ընդհանուր ասելով կոյ 'ի գիրս և յաշխարհագրոյս եւրոպացւոց առ հասարակ վասն անդւոյ այսր աշխարհի. զի զանուանս Կողքիս, բառ նոցա Վրացիոյ, որ առ մերս կոչի և Եգեր, համարելով նոյն անուն՝ որ այժմ կոչի Չերքէզ, կամ լառ նոցա Չերքէզստան, յայտնեմանէ իսկ հարկադրեալ զնեն զԿողքիս անդ՝ ուր է այժմ ազգն Չերքէզ, այսինքն է 'ի հիւսիսակողմն Պոնտոս ծովու: Բայց բանք նախնեաց յայտնի ցուցանեն՝ թէ Կողքիս էր 'ի հարաւակողմն Պոնտոս ծովու: Մի՛ զի գնեն անդ՝ ուր են Լազք, կամ

Ֆարղ լինել Փասիս գետ Նախնեաց, ոչ յարմարին ոչ Ճանապարհորդութեան յունական զօրաց պատմեալ 'ի Քսենոփոնեայ, ոչ Ճանապարհորդութիւն Արգոնաւորդաց, և ոչ իսկ ստորագրութիւն զոր տան նմա նախնիք։ Բայց ընդդէմ այսմ՝ 'ի դնելն զծորոխ գետ Հայաստանեաց լինել Փասիս, այս ամենայն յարմարի անվրէպ ըստ ամենայնի։

Իսկ թէ ընդէր արտաքինք Փասիս կոչեցին զծորոխ, մարթ է լինել այսմ 'ի զանազան պատճառաց, որպէս և յայլ գետս և 'ի քաղաքս ինչ է տեսանել զայս՝ կրկին անուամբ տալ մի և նոյն տեղւոյ. զոր օրինակ զԵփրատ կոչել Արածանի, զՏիգրիս կոչել Շատ, սոյնպէս և զծորոխ կոչեցին Փասիս յանուն միոյ 'ի վտակաց ինչ իւրոց՝ որոց անուանք ոչ յիշատակին 'ի գիրս մեր։ Բայց հայելով 'ի նախագրեալ բանս Քսենոփոնեայ՝ թուի Փասիս կոչեցեալ յանուն Բասենոյ. ուստի կամ վտակ ինչ համանուն Բասենոյ հոսէր 'ի ծորոխ, և կամ յուէտ՝ որպէս ինձ թուի, ժողովուրդ ինչ Բասենոյ 'ի ժամանակին սփռեալ կայր մինչև 'ի մերձակայս ծորոխայ կամ Փասիս գետոյ. զի զայն ցուցանէ նախայիշատակեալ բանս Քսենոփոնեայ յասելն՝ թէ յորժամ զօրք Յունաց հասին 'ի մերձակայս ականց Փասիս գետոյն, անդ որպէս ժողովուրդ ինչ Խաղտեաց և Տայոց՝ նոյնպէս և Բասեանց ընդ առաջ ելին նոցա։ Մարթ էր կոչել այսպէս և յանուն Արսեոյ կամ Արսեյ. որ է Արսեոյ Փոր գաւառ Տայոց, ուր բղխէր թերևս և վտակ ինչ ծորոխայ, զորոյ զվերջին վանկն 'ի բաց թողեալ, զանունն Արսեյ այլայլեալ փոխեցին 'ի Արսես, ապա 'ի Փասիս։ Որով և վայրապար կարծէ Պօչար [1] զանունն Փասիս ածանցեալ յԱսորւոց լեզուէն։

Հայելով 'ի բանս Պրոկոպիոսի, այլ ևս պատճառ կարեմք նշանակել վասն անուանակոչութեան Փասիս. զի գոյ գետ ինչ Ակամփսիս կոչեցեալ մերձ 'ի Ճորոխ որ և Փասիս. վասն այսր գրէ Պրոկոպիոս թէ կոչեցաւ այսպէս, զի յետ միանալոյ 'ի ծով ոչ խառնի. քանզի յունական անուամբ Ակամփսիս՝ նշանակէ անխառնոր։ Եւ քանզի Պրոկոպիոս այլուր զԱկամփսիս գետն նախ Վոաս յորջորջեալ, խառնեալ շփոթէ ընդ Փասիս գետոյ [2], նմին իրի յարմարագոյն երևի զայս անխառնոր ընթանալն 'ի ծով

1 Պօչար 'ի տպագրեալ աշխարհագրութե գիրք Է. գլ. 32, թղթ. 289։

2 Բանք Պրոկոպիոսի վասն այսր են շփոթեալ. ուրեք այսպէս և ուրեք այնպէս խօսելով, որպէս ունիս տեսանել 'ի ստորագրութեան Ակամփսի գետոյն։

առնուլ վասն Փասիս գետոյ. յորմէ զհետ գայ ասել, թէ ուրեմն Փասիս կամ Ճորոխ նախ քան զմտանելն 'ի ծով բազում խառնուրդս ունի յընթացս իւր, որպէս և տե-սանեմք արդարև նաև այժմ. և որպէս հաստատէ նաև ընդիկ անուն տեղւոյն մինչև ցայժմ մնացեալ, զի գայ ան-դի որ կոչի Խոփորջուր, որ յայտ է թէ սակս խառնուրդին գետոյս զայս անուն ընկալաւ: Այսպէս իմաստասիրեմք թէ նախնիք Յունաց 'ի մեր հայկական Խոփորջուր անուանէ առեալ՝ զգետն Ճորոխ կոչեցին նախ Խոփորոսն կամ Թե-փուսն, ըստ նոցա Գամփսոս. այս անուն ապա աղաւաղանօք փոխեցաւ 'ի Փասիս. իսկ ուրանօր 'ի ծով մտանէր՝ սակս ուղիղ ընթացիցն կոչեցին Ակամպոր, ըստ նոցա Ակամփսիս, որ ապա եղև անփոփոխ անուն մերձակայ գետոյն:

Ոնաւարիոնէ և Ջինամուրջեան Փասիս գետոյն յիշեն նախ-նիք. զի Ստրաբոն ԺԱ. 500. գրէ. «Փասիս ծագի 'ի լե-րանց 'ի վերոյ կացելոց 'ի բազմաց ականց բղխելով. իսկ 'ի դաշտավայրս այլ ևս վտակս ընդունի, յորոց են Գլաւ-քոս և Իպպոս. և այնպէս լցեալ և նաւարկելի գործեալ վերջու 'ի Պոնտոս. առ որով է և քաղաք համանուն, և լիճ 'ի մօտակայս»: Իսկ Պլինիոս. Զ. 4. գրէ. «Մարթ է նաւարկել (ընդ Փասիս) առաւել մեծամեծ նաւուք ընդ երեսուն և ութ հազար քայլ (38. մղոն). իսկ անտի ('ի վեր) փոքունք ընդ հարուստ ասպարէզս, ունելով 'ի վե-րայ կամուրջս հարիւր և քսան»: Որչափ թուով եդ և Ստրաբոն 'ի յառաջագրեալ բանս:

## ՅՕԴՈՒԱԾ Բ

Գետք մանաւանդ, որք կամ բղխեն և կամ ընթանան 'ի Հայս:

ԱՅՍ ամենայն գետք ըստ մեծի մասին են վտակք նա-խագրեալ գետոց՝ յորս խառնին, յաւէտ յԵփրատ և յԵրասխ. սակաւք ոմանք են միայն որք ուղղակի թափին 'ի ծովս: Յորոց զյիշատակեալսն 'ի գիրս մեր և օտար ազ-գաց՝ կարգեսցուք աստէն ըստ կարգի այբուբենից:

### ԱԶԱՏ

Խորենացին 'ի Գ. 8. գրէ վասն փոքուն Խոսրովայ. «Ան-տառ մի առ Ազատ գետովն տնկէ, որ յանուն նորա կոչի մինչև

ցայսօր ժամանակի»։ Եւ քանզի Բուզանդ Դ. 8. զանուանս յայանի դնէ յԱյրարատեան գաւառին, 'ի Գառնայ մինչ 'ի Դուին ձգեալ, յայտ է թէ Ազատ գետ բղխէ և անցանէ յայսմ արարատեան նահանգի. վասն որոյ և Վարդան աշխարհագիր գրէ. «Ազատ գետ Գառնու ջուրն է». և երևի լինել վտակ Երասխայ։ Բայց քանզի յորժամ յերկուս բաժանեցաւ կաթողիկոսութիւն Հայոց 'ի սկզբան անդ 'ի բաժինս Յունաց և Պարսից, յայնժամ Յոհաննէս կաթողիկոս զայս գետ դնէ բաժանիչ երկոցուն ասելով. «Վասն զի գետն Ազատ զսահմանն բաժանիցն երկոցունց ընդ մէջ հատանէր»։ Վասն որոյ թուի թէ ընթացք նորա անցանէր ընդ վերջին արևմտեան սահմանն Այրարատ նահանգին. զի սահմանն կաթողիկոսին որ 'ի բաժնին Յունաց՝ ոչ երևի յայնժամ հասանել մտանել նաև 'ի միջին սահմանն անդ այրարատեան նահանգին։ Կամ թէ այլ իմն Ազատ գետ պարտ է դնել զնշանագրեալն Յոհաննու կաթողիկոսի. զի և բանք Խորենացւոյն Գ. 9. կարծիս տան նաև ընդ աշխարհն Ծոփաց անցանել Ազատ գետոյն, կամ որ նոյն է ընդ նահանգն չորրորդ Հայոց. զի ասէ անդ՝ թէ հարաւային գունդն ոչ կարաց ժամանել 'ի գործ պատերազմին, ըստ որում «առ արքային խաղալոյ էին յաշխարհին Ծոփաց»։ Եւ քանզի սուղ ինչ յառաջ գրեաց՝ թէ խաղալ զհետ էր անկեալ անտառ առ Ազատ գետով, ապա երևի թէ Ազատ գետ անցանէր նաև ընդ աշխարհն Ծոփաց, և անտառն ևս գուցէ ձգէր մինչև ցանդ։

## ԱԽՈՒՐԵԱՆ

Նա սովին գետով կառուցաւ 'ի Ե. Երուանդայ քաղաքն Բագարան «'ի վերայ գետոյն Ախուրենոյ». որպէս գրէ Խորենացին Բ. 40. իսկ յաւուրս Բագրատունեաց՝ Անի քաղաք. որ գոլով յարշարունիս, և 'ի Շիրակ գաւառ Այրարատ նահանգի, յայտ է թէ և այս գետ էր յԱյրարատ նահանգ։ Էր սա վտակ Երասխայ, զոր յայտ առնէ այս բան Խորենացւոյն Բ. 39. «Զորով պատ առեալ Երասխայ՝ ընդդէմ Ախուրեանն հոսի գետ»։ Սոյնպէս յիշատակի 'ի պատմութիւն Անի քաղաքին, որ առ Մաթէոսի ուռհայեցւոյ 'ի թիւն ՆԳ. գրի. Ախուրեան, յառեալն վասն միաբանին, թէ Պետրոս կաթողիկոս «պահեաց 'ի յԱխուրեան գետն երկաթի ամանօք իբրև լիտր չորս հարիւր. վասըն զի մի գուցէ անկանիցի 'ի ձեռս Հոռոմոց. (որ) կայ

պահեալ մինչև ցայսօր ժամանակի. 'ի գիշերի արարեալ զայս մերձ 'ի դուռն քաղաքին Անոյ»: Վասն գետոյս այսչափ ինչ միայն յիշէ Վարդան աշխարհագիր. «Ախուրեան գետ Անու ջուրն է»: Այժմ կոչի Արփայ չայ:

## ԱԿԱՄՍԻՍ

Օ այամանէ Ասողիկ Բ. Կ. «Եւ ինքեանք անցեալ ընդ գետն Ակամսիս, որ 'ի Տայոց բղխեալ երթայ զհիւսիսով արևմտից անցանելով, ընդ որ մտանէ 'ի Պոնտոս»: Պլինիոս Զ. Կ. 'ի յիշելն զԼազս, և զազգս կողքիացւոց, յիշէ և զայս գետ, առ որում գրի Ակամփսիս, որպէս և առ Արրիանոսի 'ի Նաւարկութեան: Զայս գետ յիշէ Նաև Պրոկոպիոս [1], յետ յիշելոյ զԼազիկիա և զՏրապիզոն. գնելով զայլևայլ տեղեկութիւս. «Ցաջմէ (Տրապիզոնի, ասէ) ամբարձեալ կան ամենայն լերինք Ճանիկեանք, որոց սահմանակից է Հայաստան (բաժինն Հայաստանեաց) որ ընդ տէրութեամբ հռոմայեցւոց: Ի Ճանիկեան լերանց առատ հոսի գետն Վոաս (ըստ հնչման լտ. Պոաս), որ ընդ անտառախիտ և ընդ լեռնախիտ երկիր շրջեալ՝ առաս 'ի Լազիկիա բերի, և 'ի Պոնտոս ծով մտանէ: Ուրանօր մերձենայ 'ի ծով զանունս Վոաս թողեալ՝ այլ ինն անուն ընդունի 'ի յետագայ դիպուածոյս. զի բնակիչքն յետ այնորիկ կոչեն զնա Ակամփսիս, այսինքն Անխառն. ըստ որում 'ի մտանելն 'ի ծով՝ ոչ դիւրէ խառնելի. զի այնպէս ուղղօրէն ինն վազս առեալ սրընթաց թափի 'ի ծով կոհակս ալեաց յուզելով, մինչև ընդ հարուստ ասպարէզս չուել անցս 'ի ծովու»: Այլ յայտ է թէ Պրոկոպիոս աստանօր զՃանիկեան լերինս խառնէ ընդ լերինս Տայոց, ուր եղ մերս Ասողիկ զակն Ակամսիս գետոյս, որպէս և այլուր [2] զանունս Վոաս (զոր աստ միացոյց ընդ Ակամսիս գետոյ), չփոթէ ընդ Փասիսի յասելն. «Ի Հայս բնակիչս Ֆարանկիոյ, մերձ 'ի սահմանս Ճանիկոյ բղխէ գետն Վոաս... ուր յաջմէ են սահմանք Վոաց, և 'ի հանդիպոյ վերջինն Կովկաս... անդ յառաջ խաղացեալ այս գետ՝ ուրանօր և Կովկաս և Վիրք աւարտին, ուղխիւք ջուրցն վտակաց մեծապէս առատանայ. և փոխեալ զանունս Վոաս ընդ անուան Փասիսի՝ յառաջ ընթանայ, ընդունակ լեալ նաւուց մինչև ցծովն Պոն-

1 Պատերազմ Գոթաց գիրք Դ. գլուխ 2:

2 Պատերազմ Պարսից գիրք Բ. գլ. 29:

տոս, ուր Թափի. անդ յերկուց կողմանց ևս գետոյն՝ է Լազիկիա»: Որ 'ի Հնումն էր Կողքիս:

## ԱՂՍՏԵՒՈՅ ԳԵՏ

Զորմէ Կիրակոս. «Բնակեցաւ նա (Մխիթար գօշ) 'ի վանքն որ կոչի Գետիկ 'ի գաւառին Կայենոյ, որ 'ի վերայ գետոյն մեծագնի, զոր անուանեն Աղստևոյ գետ»: Կայան, որ պարտ է լինել Կայեն՝ էր բերդ 'ի Ձորոփոր գաւառին Գուգարաց, և զվանսն կարծեմ յանուն այսր գետոյ անուանեալ՝ Գետիկ:

## ԱՅԾՄԱՆԱՅ ՁՈՐ

Զենոբ 'ի պատմելն զկործանելոյ կռոց Դեմետրեայ և Գիսանեայ, ասէ յերես 35. «Երթեալ իշխանն Սիւնեաց յաւանն Կուառս, հաւանեցոյց զզօրս գեղջն գալ 'ի մկրտութ. որք յանձն առին և եկին ընդ նմա. և առեալ սրբոյն Գրիգորի իջուցանէ զնոսա 'ի ձորն Այծեմնոյ, և մկրտեաց զնոսա»[1]: Զենոբ որովհետև 'ի պատմութեան կործանմանն կռոց Դեմետրեայ և Գիսանեայ գրէ զայս անդանօր, յայտ է թէ էր 'ի Տարօն. և քանզի զմկրտելոյ խօսի, ջուր առնլով աստ՝ իմանայ գետակ փոքրիկ: Գուցէ նոյն է ընդ սմա և Այծեմնոյ ձորն յիշատակեալ 'ի Թովմայէ Արծրունւոյ, զորմէ տես 'ի Մեծ Հայս 505. այլ 'ի լինելն նոյն՝ պարտ է ասել թէ այս գետակ անցանէր և ընդ Վասպուրական: Տես և 'ի Ծովակս:

## ԱՊՍԱՐ

Գետակ բղխեալ 'ի Բարխար կամ 'ի Պարխար լերանց բաժանիչ փոքուն և մեծին Հայոց 'ի հիւսիսոյ արևմտից; զորմէ ասէ Պլինիոս Զ. 9. Մեծ Հայք ձգէ «զերկայնութիւն իւր մինչև ցփոքր Հայս, զատուցեալ 'ի նմանէ Ապսար գետակաւ որ հոսի 'ի Պոնտոս, և Բարխարիս լերամբք որք բղխեն զԱպսար»: Որ և 'ի Զ. 10. զՄաքրոն ազգն բնակեալ դնէ առ Ապսարաւ:

1 Յերկուս օրինակս փոխանակ Այծեմնոյ եդեալ կայ Եմնոս. իսկ 'ի տպագրին Պօլսոյ ասիականին և այլ բանք յաւելուած գրեալ այսր ձորոյ:

## ԱՌԵՍՏ

Յիշատակեալ առ Թովմայի Արծրունեաց. «Թողլ զաւղքառս որ 'ի վերայ գետոյն Առեստոյ և Մարմէտու կային»։ Եւ քանզի Մարմէտ գետ մինչև ցայժմ կայ, որ թափի 'ի ծովն Վասպուրականի, և այս գետ 'ի նոյն ծովն զեղու երևի[1]։ Տես և 'ի մեծ Հայս 196։

## ԱՐԱԾԱՆԻ կամ ԱՐԾՆԻ

Թէպէտ բազում են ջուրք և վտակք որք խառնին յԵփրատ, այլ 'ի մէջ վտակաց նորա անուանի է կոչեցեալն Արածանի. յոր անուն զերկուս ջուրս պարտ է որոշել. մի՝ զմին զԵփրատ գետ, զայն որ գայ յարևելից յարևմուտս բղխեալ 'ի լեառն Ծաղկէ և կոչեցեալ Արածանի, զորմէ գրեցաք 'ի վերայ 'ի ստորագրութեան Եփրատայ. իսկ միւս ջուրն Արածանի՝ է վտակ որ խառնի յայս Թև Եփրատայ. և զիւր անունն տայ նաև նմին Եփրատայ, զոր ստորագրեսցուք աստանօր։ Այդ այս վտակ թուի կոչեցեալ յանուանն գետղջն զոր յիշէ Լաստիվերցի 'ի գլ. ԺԷ. զկողմամբ Հարքայ. «Եկեալ 'ի քաղաքագիւղն Հարքայ որ կոչի Մանկանոցամ... սուր 'ի վերայ եդեալ կոտորեցին... և առեալ զգերի և զաւար չոգան 'ի գետոյն Արածանի, քանզի ընդ այն իսկ անցանէին»։ Եւ սոյն այս վտակ երևի որ առ Յոհաննու Մամիկոնենի ուրեք ուրեք կոչի Արծնի. զոր օրինակ. «Յեզր Արծնոյ[2] ... բանակեցան. իսկ Պարսիկքն յարուցեալ զհետ մնին նոցա, և առեալ գետոյն՝ նեղէին զնոսա»։

Նաև առ Պլինիոսի Ե. 24. զերկուս գտանեմք յիշատակեալ յայս անուն առանց խնչ տարբերութե. զի յետ ասելոյ թէ Եփրատ (եկեալն 'ի Կարնոյ) ընդունի գետս զԼիգուս որ է Գայլ գետ եկեալ 'ի փոքուն Հայոց, և զԱրսանիա որ է Արածանի, եկեալ 'ի Հայոց մեծաց. ապա իսկ և իսկ յիշէ զԱրսանիաս իբր այլ յԱրսանիայէ, յորմէ 'ի դէպ գայ համարել զսա ուրոյն վտակ, զայն որ սեփական անուամբ Արածանի կամ Արծնի կոչի 'ի մերոց, որոյ խառնելոյն 'ի մեծագոյն վտակ՝ ետ

1 Ի միում օրինակի Արծրունեացն փոխանակ գետոյն գնի գետոցն, բայց ոճ շարադրութեան ցուցանէ լինել վրիպակ, զի յայնժամ պարտ էր գրել՝ Թողլ զաւղքառս որ 'ի վերայ գետոցն անկեալ կային յԱռեստ և 'ի Մարմէտ ասեն։

2 Այսպէս է ըստ միոյ 'ի ձեռագրաց։

զանուն իւր և նմա, որ նոյնպէս կոչի 'ի մերոց՝ Արածանի. բայց յունականն կոչի Եփրատ: Այս Արծնի անուն է որ առ Պրոկոպիոսի գրի Արսինի, զոր և Հռամարի մի 'ի վտակաց եկեալ 'ի բաժնէն աշխարհին Հայոց՝ որ էր ընդ տէրութ Պարսից. զորոյ զլաման ասէ 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 13:

Նոյժամ քննեսցուք զբան Պլինիոսի. որ Զ. 27. յետ գրելոյ թէ Տիգրիս գետ ընդ երկուս լիճս անցեալ առ Նիմփիոս ուղղեալ 'ի վեր յառնէ՝ ասէ. "Ախոչափ մօտ Արտանեայ (գետոյն) հոսի սա (Տիգրիս) 'ի գաւառին Արրհենէ, ուր մկայէ Կղոդիոս Կեսար, մինչև յառատանալն ընթացակցին (երկոքին՝ Արածանիա և Տիգրիս), բայց ոչ խառնին. Արածնիա թեթևագոյն ունի զընթացս գրեթէ Է մղոն չորս, ապա անջատեալ ընկղմի յԵփրատ": Զայս առացուած Կղոդիոսի պարտ է իմանալ վասն այնր կողման ընթացից Տիգրիսի՝ որ մօտ էր յակունս իւր. զի որովհետև Տիգրիս բղխէր 'ի Հաշտեանս, և Արածանի անցանէր ընդ մէջ Տարօնոյ և Հաշտեանից ըստ Յոհաննու Մամիկոնենի, զորմէ ասէ 'ի մեծ Հայս 60, անդանօր հարկ էր լինել այնր ընթացակցութե: Յիշէ Տակիտոս ԺԵ. 15. զկամուրջ արկանելն 'ի վերայ Արածնիա գետոյ, այս նոյն է Արածանի, զոր մերքս կոչեն Եփրատ. բայց ըստ նախադրելոցս գտանեմք առ ամենայն մատենագիրս և զնոյն գետն Եփրատ՝ կոչեցեալ Արածանի. "Ընդ սորա մէջն անցանէ գետն Կիդնոս, որպէս Արածանի ընդ մէջն Բաբելոնին": Ասողիկ Գ. 42:

## ԲԺՈՒՆԵԱՑ ԳԵՏ

Յիշատակեալ 'ի Խորենացւոյն 'ի Ճանապարհորդութե Հռիփսիմեանց, որ թուի լինել 'ի Վասպուրականն նահանգի, և թերևս պարտ է լինել Բզնունեաց գետ:

## ԳԱՅԼ ԳԵՏ

Զորմէ Ագաթանգեղոս յերես. ժԴ. "Եկին հասին յԵկեղեաց գաւառ 'ի գեօղն Երիզա ... իջին բանակեցան առ ափն գետոյն՝ որ Գայլն կոչեն": Դարձեալ 'ի Թղթ. յծԷ. յիշէ զանցանել սորա առ Երէզ աւանաւ Դարանաղեաց գաւառի: Այս է Լիքոս գետ անուանեալն յայլոց ազգաց. (զի լիքօս յունարէն՝ է գայլ, յորմէ և լատինն լուբուս.) զորմէ ունիս ասել 'ի փոքր Հայս. այլ քանզի Եկեղեաց և Երէզ են 'ի մեծ Հայս, յայտ է թէ այս գետ

## ՀՐԱԶԴԱՆ կամ ՀՈՒՐԱՍՏԱՆ

Գետ Այրարատու. զի Խորենացին Բ. 11. գրէ վասն Վարժ անուն պատանւոյն, թէ Բ. Արտաշէս «չինս պարգեւէ նմա առ եզերբ գետոյն՝ որ անուանեալ կոչի Հրազդան»: Եւ յայնմհետէ տեղին այն կամ գաւառն կոչեցաւ Վարաժնունիք: Եւ Յոհան կաթողիկոս գրէ վասն Սեւադայի և միաբանելոցն ընդ նմա ընդդէմ Հօլ ոստիկանին. «Եւ բանակ նոցա նստէր առ եզերբ Հուրաստան գետոյ, հանդէպ դաստակերտին Կաւակերտի»: Եւ քանզի Վարաժնունիք և Կաւակերտն են յԱյրարատ նահանգի, և այս գետակ յայտ է թէ ընդ այն անցանէր: Վարդան աշխարհագիր նաև զգաւառն որոշէ ասելով. «Հուրաստան գետ Բջնոյ ջուրն է»: Արդ Բջնի էր 'ի Նիգ գաւառի Այրարատ նահանգին:

ՂՈՐՂՈՍ. Տես ՁԻՐԳԻՍ:

## ՄԱՄՈՒՇԵՂ

Զայսմանէ Բուզանդ Ե. 27. «Բնակեցաւ նա (սուրբն Եպիփան Զգնաւոր աշակերտ Դանիէլի) 'ի մեծ ծործս յանապատին, որ կոչի անուն տեղւոյն Մամրէ, 'ի վերայ գետոյն, որ անուանեալ կոչի Մամուշեղ... Եւ էր մօտ 'ի գետն Մամուշեղ աղբիւր մի, և ձուկն բազում ելանէր ընդ ակն աղբերն. և բազում մարդիկ համեալ զձուկն օգտէին 'ի նմանէ»:

## ՄԱՆԱՆԱՂԻ

Վտակ Եփրատայ, զորմէ Լաստիվերտցի 'ի գլուխ ԻԳ. «Երթեալ ժողովոյն բազմութեն մինչև յեզր գետոյն Եփրատայ, ուր Մանանաղի 'ի նմա խառնի»: Թերեւս այս է զոր Խորենացին Գ. 45. ողջու անուամբ յիշէ 'ի ստորագրելն զայրն Մանանաղւոյ գաւառին. «Որ ինչ զերծանի, յանհնարին ողջոյ սաստկութե անկանի»:

## ՄԱՐՄԷՏ

Յիշատակեալ առ Թովմայի Մեծոփեցւոյ. «Թող զագքաս որ 'ի վերայ գետոյն Արեստու և Մարմէտու կային»:

Այս գետ սովին անուամբ կայ մինչեւ ցայժմ, որ զեղու 'ի ծոցն Աղթամարայ, որ է Բզնունեաց ծով, զորմէ տես 'ի Նոր Հայաստանն 135 և 136: Տես 'ի վերոյ և զգետն Արեստ:

## ՄԵԾԱՄՕՐ

Զորմէ Խորենացին Բ. 49. « Երթեալ Արտաշէսի 'ի տեղւոջն, ուր խառնին Երասխ և Մեծամօր »: Ցայս բան Խորենացւոյն հայելով 'ի կարգս վտակաց երկրս աստ. բայց հաւանեալ եմք թէ Մեծամօր էր ծովակ կամ լիճ. ուստի ելեալ ջուրն վտակ կազմեալ, և առ Արտաշատաւ անցեալ, գնայր խառնէր յԵրասխ: Զկամուրջ Մեծամօրի յիշէ Ագաթանգեղոս Թղթ. Ը: Տես աստ և 'ի կարգս Լճաց, և 'ի մեծ Հայս 437:

## ՄԵՂՏԱՅ ԳԵՏ

Սուրբք ուրեք յիշատակի 'ի գիրս Զենոբայ. որպէս և Սանասարի ծմակ, և Մօրի. ուր քառասուն այր ասէ մօրահեղձ արարին: Այս ամենայն են 'ի Տարօն:

## ՄՈՒՐՑ

Վտակ Երասխայ զորմէ Խորենացին Բ. 65. 'ի գիրսն վասն Վաղարշայ թագաւորին. « Ծնաւ 'ի վերայ Ճանապարհին, 'ի գաւառին Բասենոյ, 'ի տեղւոջ ուր խառնին Մուրց և Երասխ »: Այս է որ առ Պլինիոսի Զ. 9. գրի Մոռոս. « Երասխ ... անձեցեալ վտակաւն Մոռոսի »: Այժմ կոչի Հասանղալայու ջուր:

## ՆԻՉԻՖՈՐԻՈՍ

Վտակ Տիգրիսի առ Տիգրանակերտիւ ըստ Տակիտոսի. զորոյ զբանս տես 'ի մեծ Հայս յերես 76:

## ՌԱՀ

Միայն ուրեք առ Կորիւն պատմագրի գտանեմք զյիշատակութիւն. որ գրէ, թէ յորժամ Մեսրոպ դառնայր 'ի Միջագետաց հանդերձ նշանագրօք, և եկեալ յԱյրարատեան գաւառ մերձ լինէր 'ի Թագաւորականն քաղաքն որ

էր Վաղարշապատ, յորժամ Թագաւորն և ամենայն ազատազգունդն ելեալ 'ի քաղաքէն՝ « Պատահեցին երանելւոյն (Մեսրոպայ) զառափամբ Ռահ գետոյն »: Յորմէ այսչափ ինչ իմանամք, թէ այս գետ անցանէր մօտ 'ի Վաղարշապատ. զոր չէ պարտ շփոթել ընդ միւս մեծի Ռահ գետոյն, որ է 'ի Սկիւթիա, կամ յասիական Սարմատիա, և թափի 'ի ծովն Կասպից:

## ՏԱՐՕՆԱՑ ԳԵՏ

Թովմա Արծրունի յետ յիշելոյ զանցս Հաղամանկերտ, Ջարեհաւանն, Աւենոյ, ասէ. « Գիշերապահնոյ հանեալ մինչ 'ի Տարօնոյ կոչեցեալ գետ. և 'ի միւսում առաւօտին հասին 'ի վերայ բանակին »: Այս յիշատակեալ բանակ էր 'ի կողմանս Ջարեհաւանի կամ Պարսկահայոց, որպէս երևի 'ի գրեալսն:

## ՏՂՄՈՒՏ ԳԵՏ

Զորմէ Եղիշէ 'ի Թղթ. 205. « Կարգեաց և կազմեաց զճակատն ... առ ափն Տղմուտ գետոյն », անցանէր ընդ Արտազ գաւառ. զորմէ տես 'ի մեծ Հայս 205: Անուանքս Տղմուտ և Մեծամօր՝ ըստ նշանակութեան երևին նոյնանալ:

## ՔԱՍԱՂ

Յիշատակեալ 'ի Խորենացւոյն Բ. երկիցս անգամ 'ի գլուխն 65. եղեալ զխնթայս նորա առ աւանաւն Վաղարշապատ. այսինքն է՝ առ Վաղարշապատաւ. բայց այլ ինչ տեղեկութիւն չունիմք զանմանէ: Միայն Վարդանն աշխարհագիր այսչափ ինչ գրէ. « Քասախ գետ Կարբայ Ջուրն է »:

## ՅՕԴՈՒԱԾ Գ

Ծովակք, Լիճք, Մօրք, և Ջերմուկք:

Ոչ է զանազանելն 'ի Հայաստան աշխարհի նաև լիճք, վկայէ 'ի Նախնեաց Սարգսեան ժամ. 529. գրեալ. « Են և Լիճք մեծամեծք 'ի Հայաստանն »: Լիճ անուամբ սովոր է իմանալ՝ զայն մեծագոյն կոչեն ծովակս. զի անդէն յիշէ զԳեղա-

պատառն որ էր ծովակ ։ Խորենացին յաշխարհագրութեան նաեւ զԹիւ նոցա նշանակէ դնելով երկու ծովակս ՚ի մեծ Հայս . զորս պարտ է իմանալ վասն մեծագունիցն . քանզի առաւել քան զերկուս թուով գտանեմք յիշատակեալ առ մատենագիրս . վասն որոյ և բառ հին օրինակի աշխարհագրութեան վեց դնէին ծովակս , որ առաւել ՚ի դէպ իսկ է . զորոց մի ըստ միոջէ գրեսցուք յառաջիկայդ ։

## ԾՈՎ ԲԶՆՈՒՆԵԱՑ

Կոչեցաւ այսպէս յանուն Բազ նահապետին , զորմէ գրէ Խորենացին Ա . 12 . "Իսկ որդի նորա Բազ յարեւմտից հիւսիսոյ զեզր ծովուն աղւոյ (ժառանգէ) . և զգաւառն և զծովն անուանէ իւրով անուամբն ": Այլուր ՚ի Ա . 16 . միայն ծով աղի կոչէ , յասելն վասն Շամիրամայ . "Գայ հասանէ ... յեզր ծովակին աղւոյ ": Զարմանալի այսպէս կոչեցեալն ընդ Մարիբաս առ Խորենացւոյն Ա . 11 . ՚ի գրելն վասն Հայկայ . " Հասանէ յեզր ծովակի միոյ՝ ուր աղի են ջուրքն , մանունս ունելով ձկունս յինքեանս ": Թէ այս է ծովն Բզնունեաց՝ յայտնագոյն քանզի յայտնեն . մի՝ զի մերձ յայս ծով եղև Հայկայ ճակատիլն ընդ Բելայ , որ յետ սպանանելոյ զԲէլ , զտեղի ճակատուն շինէ , ասէ Մարիբաս , և կոչէ Հայք . որոյ գաւառն անուանեցաւ Հայոց ձոր . արդ զծովն Բզնունեաց մատենագիրք դնեն զկողմամբք Հայոց ձոր գաւառին ։ Երկրորդ նշանն ընդ Մարիբասու ձկունս մանունս ունել . արդ և ծովն Բզնունեաց , որ այժմ ասի ծով Վանայ կամ Աղթամարայ , միայն մանր ձուկն բերէ Տառեխ անուանեալ ։ Տես վասն այսր ՚ի Նոր՝ Հայաստան ՚ի Թղթ . 135 ։

Կոչի սա նաեւ ծով Ռշտունեաց առ Բուզանդայ ՚ի Գ . 10 . " Այնպէս և առ ափն Ընձաքիսարս լերինն ՚ի ծովեզրն Ռշտունեաց ծովուն ": Կոչեցաւ այսպէս յանուն Ռշտունեաց գաւառին , որ էր յայլ կողմն նորին ծովուն ։ Առ յետագայ պատմագիրս յաւէտ ծով Վասպուրականի գտանեմք յորջորջեալ յանուն նահանգին՝ ուր էին Բզնունիք և Ռշտունիք գաւառքն Վասպուրականի . զոր օրինակ առ Վարդանայ , որ գրէ ՚ի Թուականին շծԹ (1110) . "Ի նոյն ամի ՚ի ժամանակս ձմերայնի ՚ի մէջ գիշերի անկաւ հուր ՚ի բարձանց ՚ի ծովն Վասպուրականի , և գոչեալ ծովուն անկաւ ցցամաքաւն , և դարձաւ ծովն ՚ի գոյն արեան . և մեռան ձկունքն . և ՚ի լուսանալ առաւօտուն կուտեալ կային առ

վանս այս 'ի միոյ կողմանէ անկեալ 'ի Կորճայք նահանգ մեծին Հայոց, 'ի միւս կողմանէ 'ի Պարսկահայս, կամ որ նոյն է 'ի Հեր և 'ի Զարևանդ. իսկ յայլմէ կողմանէ յԱտրպատականն։ Զառաջինն յայտ առնէ Մանդակունք անուամբ՝ զոր տայ նմա Ստրաբոն, որ ըստ մեզ է Մողողանք գաւառ 'ի Կորճէս նահանգի. յայտ առնեն և գիրք Սաղամասաքաղաքի Կորճէից, որ կայ մինչև ցայժմ, և է յարևմտեան կողմն Ուրմեայ ծովակին, որ 'ի հնումն կոչէր Կապուտան։ Զերկրորդն ցուցանէ բան Մաղաքիայ 'ի պատմութեան Թաթարաց. զի 'ի կրկին անդր 'ի նմին Զարևանդ գաւառի յիշատակէ ծով մի. զոր ես համարիմ նոյն ընդ սմա. «Կային, ասէ, և եղին 'ի բանակի 'ի մէջ Աղի ծովուն, որ կայ 'ի Հեր և 'ի Զարևանդ գաւառի,,։ Իսկ զերրորդն՝ նախագրեալ բան Ստրաբոնի յայտ առնէ յԱտրպատականն յանձնեալ ասելով. զոր և Խորենացին հաստատէ՝ 'ի Մարս դնելով զայս Կապուտան ծովակ յաշխարհագրութեան իւրում, մի՝ վասն յանդգնելոյ յԱտրպատականն, որ էր նահանգ Մարաց. և երկրորդ՝ վասն Մարաց տիրելոյ յայնժամ. զի յաւուրս նորա, որպէս ինքն գրէ, զգագուամ տեղիս առեալ էին 'ի Հայոց Ատրպատականք, որք են Մարք։ Զայս այսպէս եղեալ՝ աւելորդ է այնուհետև նոյնացուցանել զայս Կապուտան կամ Մանդականս ծովակ նաև ընդ Սպաւտա ծովակին, որպէս առնէ Սէն Մարտէն 'ի յիշատակարանի իւրում. զոր նա ինքն Ստրաբոն դնէ յԱտրպատականն և ոչ 'ի Հայս, և ուրոյն աստորագրէ ժա̃. 523. զատուցանելով 'ի Կապուտանէն։ Տես և 'ի Նոր Հայաստան 249 զծովակն Իւրմիոյ։

## ԾՈՎ ԳԵՂԱՄԱՑ

Յայսմանէ Խորենացին ա̃. 12. «Իսկ Գեղամ... գնայ զմիւս լերամբքն արևելեան հիւսիսոյ, յեզր ծովակի միոյ. շինէ զեզր ծովակին, և թողու անդ բնակիչս. և յիւր անուն և սա զլեառնն անուանէ՝ Գեղ, և զշէնսն՝ Գեղաքունի, որով կոչի և ծովն,,։ Ցայս անուն կոչի ուրեք առ Թոմայի Արծրունւոյ Գ. 8. «Կացեալ յաթոռ սրբոյն Գրիգորի երանելին Մաշտոց եղեալ 'ի կղզւոյն Գեղարքունի ծովին,,։ Բայց այլուր Գեղարքունի կոչել զծովն՝ չէ մեր գտեալ, այլ յանուն Գեղամայ. որպէս առ նորին Խորենացւոյն Բ. 46. «Սմբատ հանդերձ մանկամբն Արտաշիսի եկեալ առ ափն ծովուն Գեղամայ, զԹիկամբք Արագածն կոչեցեալ

ւերին»։ Եւ 'ի Է. 46. «Գնաց և խառնեալ 'ի բանակէն իւրմէ առ ծովուն Գեղամայ, զոր Մարան կոչեն, ընդ առաջ Արշակայ»։ Եւ այսպէս այս ծովակ անկանի 'ի Գեղաքունի գաւառին Սիւնեաց, զորով բնակէր Հայկազուն ցեղ և իշխանութիւն Սիւնեաց, ուրոյն 'ի գահաւորելուն իշխանէն Սիւնեաց։ Տես և 'ի մեծ Հայս 264։ Մեծութիւն և խորութիւն այսր ծովակի երևի 'ի ծովամարտիկ պատերազմէ, որ պատմի 'ի գիրս։ Կղզի սորա, որ էր մի միայն, յիշատակի նոյնպէս 'ի գիրս. որպէս յայս բան Յովհաննու կաթողիկոսի. «Իսկ Սևան կղզի որ 'ի ծովակին Գեղամայ»։ Զոր և ընդ ժամանակս ժամանակս առին Հագարացիք, որպէս առին նաև 'ի թուին ՃԾԱ (702). ըստ գրելոյ Սամուէլի. «Մահմէտ զծովն Գեղամայ արձակեաց, և առ զՍևան»։

## ԾՈՎ ԳԱՅԼՈՏՈՅ կամ ԳԱՅԼԱՏՈՅ և ԳԱՅԼԱՏՈՒԱՑ

Օ այս յիշէ Խորենացին յաշխարհագրութեան իւրում, և զնէ յԱյրարատ նահանգի. յիշէ և 'ի պատմութեան իւրում Բ. 62. «Խնամացեալ էր ընդ նախարարս Վասպուրականի, որում տուեալ էր զաւանն Տատեօնս հանդերձ ագարակօքն, և զայգին մեծ՝ յոր մտանէր առուն՝ զետ հանեալ 'ի ծովէն Գայլատուայ»։

## ԾՈՎԱԿ ՊԱԼԱԿԱՑԻՍ

Ի Տայս ցուցանէ լինել այս բան Լաստիվերտցւոյն գլ. Ժ. ուր նախ պատմեալ թէ Գէորգի Վրաց իշխեցոյն եհաս 'ի վերայ քաղաքին Ողթեաց, որ է 'ի Տայս, և եա աւերել զպատուակերտս նորա՝ յաւելու զինի. «Իբրև լուաւ զայս թագաւորն (Հոռոմոց), եւս քան զեւս 'ի բարկութիւն բորբոքեալ դառնայ 'ի վերայ նորա. և պատահեալ զօրքն միմեանց մերձ 'ի ծովակն որ կոչի Պալակացիս, հարազատն զբրկանս զմիմեանս հարկանէին»։

## ԾՈՎ ԿԱՐՆՈՅ

Օ այսմանէ Ղազար 259. «Եւ զօրավարն Հայոց Վահան մամիկոնեան երթայր ընդ կողմն արևելից ծովուն Կարնոյ . . . ընդ կողմանն հիւսիսոյ ծովուն վրիպեալք . . . մերձեալք 'ի գիւղ մի Կարնոյ, որում անուն էր Արծաթի»։ Այս այն է՝ ուրանօր Խորենացին Գ. 59. զնէ զանկանս

Եփրատայ. այս ակունք Ջուրց ասէ, « Համադարտ գնացիւք յառաջացեալ ծովանան Մօրաճօր երևութիւք . . . և զեզերրք Մօրէն շամբք և բազմութիւն եղեգանց »: Զօր Խորենացին զեզերրք Մօրին դնէ, Պրոկոպիոս 'ի պատերազմ Պարսից ա. 17. 'ի Մօրն անդ դնէ՝ այսպէս ստորագրելով. « Եւփրատ ընդ անձուկս ինչ սկիզբն առնէ իւրոց ընթացից. ուստի ընդ բղխելն աներևոյթ լինի աչաց, ոչ յընդերկրեայս սուզելով, այլ հրաշալի իմն գործելով. քանզի տիղմ թանձր կուտէ 'ի վերայ ջրոց. իսկ ինքն այնպէս հոսի՝ մինչև ծաւալիլ տասպարէզս յիսուն ընդ երկայնութիւն, և քան ընդ լայնութիւն. և այս տիղմ եղեգնաւէտ այնչափ յորդ է և կարծրանիւթ, մինչև ցամաք թուել որոց մատչին, և տալ անցս անքոյթս հեծելոց և հետևակաց. նա զի և բազմութիւն սայլից ընդ այն ճանապարհորդեն հանապազօր. այլ ոչ երբէք պատահէ գլորել. և չէ մարթ 'ի մէտ առնուլ թէ զինչ ինչ կայցէ 'ի ներքոյ: Այլ քանզի ամի ամի սովորութի է հուրք կիզուլ զշամբսն առ 'ի չխափանել եղեգանց զճանապարհսն, դէպ լինի երբեմն առ սաստիկ յուզելոյ հողմոյն՝ ճարակել հրոյն, և մինչև ցխորսն արմատոյն հասանել, յայնժամ մարթ է տեսանել զջուրն ընդ ծերպ ինչ անձուկ. այլ դարձեալ կուտեալ տղմոյն՝ զկնի սուղ ինչ ժամանակի տեղւոյն դառնայ յառաջին իւր տեսիլ: Յետ այնորիկ Եւփրատ ընթանայ յԱկիլիսենի », որ է Եկեղեաց գաւառ: Այս ծով է զոր Համառօտն ստորագրէ և Մելա, որպէս եդաք 'ի ստորագրութեան ականց Եփրատայ: Յայս ծովակ Խորենացին դնէ անբաւութիւն ձկանց և զանազան հաւուց:

## ԾՈՎԱԿ ՀԻՒՍԻՍՈՅ

Յիշատակի առ Խորենացւոյն Բ. 6. յասելն վասն Ա. Վաղարշակայ. « Իսկ 'ի ցրտանալ հիւսիսոյ 'ի դառնահամ փչելոյ՝ խաղայ իջանէ 'ի դաշտն մեծ. և անդ զափամբ Մօրին մեծի բանակի 'ի տեղւոջ՝ ուր գետն մեծ 'ի ծովակէն հիւսիսոյ սկիզբն առեալ իջանէ և խառնի 'ի Մօրն մեծ »: Անեղծն գետոյն ծեծ՝ թուի ինձ լինել Կուր գետ. զի այս գետ էր որ առ մատենագիրս մեր սովոր կոչէր Գետ մեծ, որպէս ասացաք 'ի ստորագրութեան նորա. մանաւանդ զի դնէ 'ի մեծի դաշտի, ուր և դնէ Սորաբոն զակն Կուր գետոյ: Տես անդ զբանս նորա: Այս ծովակ թուի լինել այժմեան Փառաւան կոչեցեալն, զորմէ տես 'ի Նոր Հայաստան 27. 127:

### ԾՈՎԱԿ

Որ 'ի Սիւնիս գիտողմամբք Հաղատայ յիշատակի առ Ստե-փաննոսի օրպելեանն գլ. ժա. յասելն. "Եւ դարձեալ Թաղք մի Հաղատայ 'ի լերինն ծովակն յերգը ծովակի միոջ"։

### ԾՈՎԱԿ

Որ գիտողմամբք Գանձակայ։ Տես զԼեառն Ալհարակ։

### ԾՈՎԱԿ ԱՐՍԻՆԻ կամ ԹՈՆԻԴԻՍ

Երկրորդ ծովակ Հայաստանեայց. զսա յիշէ Ստրաբոն ժա. 529. ասելով. "Արսինի որ և Թոնիտիս [1] է ծովակ բորակաւոր, մինչև զաղտեղութիւն հանդերձից 'ի բաց քերել, և զգործ թափչի լինել 'ի մաքրել զնոսա. որով և ջուր նորա ոչ լինի ըմպելի. ընդ այս (ծովակ) Տիգրիս բերի"։ Անուանս Արսինի գուցէ ածանցեալ է յանուանէս Արծանոս, զոր մերքն Զոր կոչեն, որ էր փոքրիկ գետ կամ ջուր 'ի կողմանս Տարօնոյ. այլ գուցէ նայն ջուր 'ի տեղւոջ ինչ ունէր ծովակ կամ լիճ. և է այն զորմէ գրէ Ստրաբոն։

## ԼԻՃՔ

---

### ԼԻՃ ԱՐԵԹՈՒՍԱՅ

Յիշատակի առ Պլինիոսի Զ. 27. ուր գրէ վասն Տիգրիս գետոյ, թէ "Հոսի 'ի լիճն Արեթուսայ, որ զամենայն ծանուանս արկեալս 'ի նմա՝ 'ի վեր ունի. և բորակ ծխախառն 'ի վեր շնչէ. մի միայն ազգ ձկան է նորա. և այն ոչ խառնի 'ի ձորոգեանն (Տիգրիսի) որ ընդ մէջ անց-

1 Անուանս Թոնիտիս այլազգ էր գրեալ նորա, այսպէս եգ ուղղագոյն համա-
'ի ձեռագրի Ստրաբոնի, այլ Քաւրլան- րելով. որպէս գրէ նա ինքն 'ի վերլու-
ածեր Թարգմանիչք նորա Թոնիտիս գրել ծուէ Ստրաբոնի։ Զայս անուն կրկնէ
առ Դիոնիսիոսի Բերիեգիսեան, և առ Ստրաբոն և 'ի գլուխ ԺԶ. 'ի Թղթա-
Եւստաթէոսի, որ արար զմեկնութիւն համարն 746։

*մէ վասն Անատոլեայ, թէ 'ի շինեալն զԹէոդուպօլիս քա-
ղաք, "Եւ 'ի վերայ Ջերմ բաղնեաց աղբերացն (որք մնան
եւս 'ի քաղաքն) յարկս փիմասաշ քարանց շինեաց":
Այս այն աղբիւր է, զոր բազմօք յառաջ յիշէ Քսենոփոն,
'ի Դ. գիրս արշաւանաց Կիւրոսի, որ առ ջերմուկն եւ այլ,
ասէ, գոլորշիս հանելով, եւ լուծանէր զձիւնս որ 'ի շրջա-
կայս. զի զձմեռնապարհորդութին նորա ցուցանէ լինել մերձ
յակունս Եփրատայ. որպէս է եւ այս յիշատակեալն Խա-
ռենացւոյն: Այս Ջերմուկ կայ մնայ մինչեւ ցայժմ, զորմէ
տես 'ի Նոր Հայաստանն 'ի Թղթահամարն 76. ուր գրեալ
կայ զխլինձայէ:*



# ԳԼՈՒԽ ԵՕԹՆԵՐՈՐԴ

## ԲԵՐԴՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

ՄԱՍՆ բարեբերութեան համօրէն աշխարհիս մերոյ ոչ գտանեմք բան ինչ գովեստից առ մերս, այլ միայն առանձին գաւառաց ինչ, զոր օրինակ Խորենացին Բ. 8. զԿող գաւառ Տայոց կոչէ Արգաւանդ և Հացաւէտ: Ի Գ. 44. զՎանանդ գաւառ Այրարատու կոչէ Խոտաւէտ, Արգաւանդ և Հացաւէտ, որ է առել ցորենաբեր. իսկ Ա. 12. զՇիրակայ դաշտն կոչէ Արգաւանդ[1]: Ի պատմագրաց մերոց Ղազար փարպեցի ևեթ ուրոյն գովեստ կարգեալ 'ի Թղթ. 20. 'ի վերայ ողջոյն այրարատեան նահանգին առհասարակ մի ըստ միոջէ զգեղս դաշտավայրաց նորա, և զլանջակողմանս լերանց նորա ներբողելով յայս կերպ զբանս իւր 'ի Թղթահամար 22. “Զայսպիսի զգեղձակերտ գաւառ, զչնաշխարհիկ և զամենալի ըստ առաւելութեան ամենախնամ արարչին աստուծոյ զայրարատեան գաւառ, որ է գլուխ աշխարհիս Հայոց, զգաւառն համբաւաւորն, ըզգաւառն ամենալի, որ ունի յինքեան զօրինակ լրութեն ըստ բանի գրոյն զերկրին եգիպտացւոց և զդրախտին աստուծոյ„: Զայս վերջին գովեստ՝ Ռշտունեաց երկրին ընծայէ հեղինակն հին վարուց սրբոյն Յակոբայ Մծբնայ, ասելով 'ի ճառընտրին. “Ասաց ոմն 'ի պատմագրաց, եթէ նախ քան զանէծսն սրբոյն Յակոբայ՝ նման էր երկիրն Ռշտունեաց դրախտին աստուծոյ„: Եւ առհասարակ ընթեռնլով զգիրս նախնեաց մերոց, իմանամք զաշխարհս Հայոց ամենայն բերովք բարգաւաճեալ, և առ ամենայն

[1] Յորոյ արգաւանդութեան վկայութիւն ունկան գարեհան պարենի վասն իւր և ընտրէ զայն՝ զի Արամայիս նահապետ վասն բազմակեր որդւոյ իւրոյ: Եւ ամ- մեր պատմիչ զորդին իւր զտղոտլածին առ յայնժամեան զարդ համբաւեալ 'ի և զդաստակերտս յայս դաշտ Շիրակայ մէջ առակաց. Թէ դու Շարայի որկոր ես՝ առակելոց առ 'ի գտանել անդ բա- մեք Շիրակայ ամբարս չունիմք:

լինչ քաղջաղէպ՝ 'ի մէջ այգեստանեաց խաղողոյ, 'ի մէջ պարտիզաց բանջարոյ և պտղոյ, և 'ի մէջ անդաստանաց ցորենոյ, յորժամ գուցէ մշակութիւն երկրի. որպէս ահա այս բան Յովհաննու կաթողիկոսի յայտ առնէ զերեսին և տեսակս գետնոյ մշակեալ առ Սիմ լերամբ. "Աղբիւր մի բազմաբուխ առ ստորոտով Սիմն կոչեցեալ լերին ցամաքեցաւ, յորմէ բազում Այգեստանք և Բուրաստանք ոռոկոց (որք են այգիք և պարտէզք), և Արտավարք (որք են անդաստանք ցորենոյ) ոռոգանեալ բուծանէին":

Իսկ հին աշխարհագիրք օտար ազգաց առաւել խօսին զաշխարհէն Մարաց և Պարսից, քան թէ զմերմէս. և 'ի յիշատակէն զընդմիջաւոր գաւառս Մարաց և կամ Պարսից, նոցին նմանեցուցանեն և զընդմիջաւորութիւն կողմանց ինչ Հայաստանեայց: Եւ այս ոչ եթէ 'ի պատճառս նուաստութեան ինչ կամ անարգասաւորութեան երկրին մերոյ, այլ սակս մեծութեան տէրութեան Մարաց և Պարսից, որոց քանզի տէրութիւն ընդարձակ էր և հզօր, անոր աղագաւ նախադասեցին զնոցուն աշխարհէ ձայնել քան զմերոյն. զի մերն մեծաւ մասամբ ընդ այլով տէրութեամբ էր անկեալ: Նմին իրի առ նախնիս Յունաց և Հռոմայեցւոց բազում մէրս կարծեմ անուանեալ յանուն Մարաց, Պարսից և Պարթևաց, որք էին մերք հայաստանեայց, ըստ որում մասունք ինչ մերոյ աշխարհիս կամ ընդ տէրութեամբ նոցա էին, և կամ յանուն նոցա կոչէին, զորմէ խօսեցաք 'ի գլուխն Անուան աշխարհիս: Օրինակի աղագաւ ածեմ 'ի մէջ և զոր դէպ եղև տեսանել մեզ և առ Պրոկոպիոսի, որ ոչ 'ի կարգէ նախնի դարուց պատմագրաց ոք է: Սա 'ի ա̄. 15. պատերազմին Պարսից նախ զաշխարհ մեր ոչ Հայաստան (Արմէնիա), այլ Պարսկահայք (Բէրսարմէնիա) կոչէ սակս գոլոյ ընդ մեծի տէրութեամբ Պարսից. երկրորդ՝ զհանքս ոսկւոյ, որ էր 'ի Հայաստան յԱրզնի, ոչ կոչէ յանուն Հայոց՝ այլ Պարսից, ասելով. "Ուր են հանք ոսկւոյ թագաւորին Պարսից": Զայս եթէ 'ի նախնի դարուց պատմագրաց ոք ասացեալ էր, զնոյն հանք ոսկւոյ որ 'ի Հայաստան էր, յաշխարհին Պարսից պարտ էր մեզ համարել՝ անծանօթ գոլով պատմութեան այնր ժամանակին: Սոյնպէս և բազում մէրս կարծեմ յիշատակեալ առ նախնի մատենագիրս յանուն Ասորւոց, և յանուն Կապադովկիոյ, որք էին մերք փոքուն Հայոց, զորս թողցուք հետաքննին խուզարկուաց. զոր օրինակ զառիկն՝ որ ելանէ 'ի Կորճէք նահանգ Հայոց մեծաց, կոչեցին նաև յանուն Ասորւոց:

Յարտաքնոց Ստրաբոն առաւել քան զայլս զոմն զբարեբերութիւն աշխարհիս Հայոց, կոչելով 'ի ժա. 511. 512. « Ամենաբարի երկիր հայաստանեաց »: Եւ 'ի պատմելն զառատութիւն բերոց Վրկան աշխարհին Պարսից, զնոյն է անսանել, ասէ, և 'ի Շակաշէն և յԵրասխաձոր գաւառս հայաստանեայց. բայց առաւել զհովիտս աշխարհիս զոմն ասելով ժա. 528. Թէ 'ի հայաստան բազում են հովիտք կարի իմն բարեբերք: Եւ արդարև անուանք բազմաց գաւառաց աշխարհիս յայս առնեն, թէ 'ի հայաստան բազում էին հովիտք, վասն որոյ և բազում անդիք բարեբերք. զոր օրինակ 'ի չորրորդ Հայս՝ է գաւառն Բալահովիտ, 'ի Տուրուբերան՝ Աղիովիտ, 'ի Մոկս՝ Արդաստովիտ, 'ի Վասպուրական՝ Արձիշակովիտ, Աղովիտ, Կուղանովիտ, միւս Բալախովիտ. յԱյրարատ՝ Կոգովիտ: Թող և զայս Ձոր և Փոր անուանեալ գաւառս, որք են բազումք. զոր օրինակ Սալնոյ ձոր, Ջերմաձոր և այլն. յորս առատութիւն է բերոց:

Նոյն ասա անկ է դասել և զդաշտավայրս, զորոց զբեանդէն նա յիւրն Ստրաբոն. « Ի սոցա սակի են երասխեան դաշտք, ընդ որս ընթացեալ Երասխայ յեզերս Աղուանից թափի 'ի ծովն Կասպից »: Ընդ անուամբ երասխեան դաշտի՝ մարթ է իմանալ զդաշտն Շիրակայ, և զդաշտն Շարուր առ Երասխ գետով, որոյ բեղմնաւորութիւնն մինչև ցայժմ համբաւեալ է առ հմուտ ականատեսս՝ որք երբեմն անուին զնա քաջ մշակեալ յամենայնի. երկայնութիւն նորա անէ 'ի Դրունայ մինչև յԷջմիածին, 'ի հնումն Վաղարշապատ անուանեալ: Նաև զայն դաշտ առ ստորոտով արարատեան լերին՝ այժմ դաշտ Պայէզիտոյ կոչեցեալ, զոր Մարկոս Պօղոս 'ի Ճանապարհորդութեան իւրում յերկոտասաներորդ դարուն տեսեալ, զոմն զբեղմնաւորութիւն նորա և զճարակիլ բազմութ անասնոց 'ի նմա: Սոյնպէս և զդաշտն Մուշոյ անուանեալ. որ եղև միշտ դաշտաւոր բանակի Մուղալ Թաթարաց, ուր միշտ հանգչէին սակս կարի իմն արգաւանդութեանն. իսկ զանգղին կարծեմ լինել 'ի Փայտակարան նահանգի մերձ առ Երասխ, գէթ ըստ մասին, ձգեալ մինչև 'ի ծովն Կասպից:

Զայսչափ բեղմնաւորութիւն երկրի նաև զպատուականութիւն օդոյ հայաստանեայց աշխարհիս պատճառ գտանեմք, յայր սակս ստարադգի թագաւորք՝ բազմաց աշխարհաց տիրօղք, թողեալ զայլ աշխարհս իւրեանց, 'ի հայաստան աշխարհի կամեցան շինել զիւրեանց ամարանոց և զբօ-

սմնոյ տեղի . Շամիրամ 'ի Վան , Վաղարշակ 'ի Հայս 'ի ստորոտս Պարխար լերին , Հուլաւուն խանն Թաթարաց 'ի Ծաղկոց լերանց , ուր և յառաջագոյն կայր ամառանոց նախնի Թագաւորաց մերոց , ասէ Մաղաքիա 'ի պատմութեան Թաթարաց : Այլ յայսմ վայրի մի ըստ միոջէ կարգեսցուք զոր ինչ բերս գտանեմք յիշատակեալ 'ի գիրս նախնեաց մերոց և արտաքնոց :

## ՅՕԴՈՒԱԾ Ա

Պտուղք , Բանջարք , և այլ Բոյսք :

ՊԱՋԱՐ 'ի Թղթահամարն 19 . գովելով զմեծատարած դաշտս այրարատեան նահանգին և զգեղեցկանիստ լերինս նորա , ապա ասէ . Սոքա մատակարարեն " զանուշահոտ զմեղրահամ քաղցրութի բանջարոցն , և զզանազանութիւն իւղաբուղխ սերմանցն . իսկ 'ի լանջակողմանսն կամ 'ի տարահարթ տեղիս՝ յոր դիպեցուցեալ զհայեցած նորոգատեսիլ մարդոյ՝ հանդերձս ինչ և ոչ ծաղկաբոյս գոյնս կարծեցուցանէին սփռեալքս պարարտաբոյսք , և պարարտաբոյսք , պարարտահամք , որոց թանձրախիտ աճմունք խոտոցն . . . սոսափաբուրութիւն անուշահոտ ծաղկանցն՝ որ զարանցն քաղցր որսասէր նետողացն , և զհօտարած բացօթեայցն ընձեռելով առողջութի , զօրացուցանեն զզգայութի խելացն և նորոգեն " : Խորենացին Գ . 59 . զերկիրն Կարնոյ գովելով այսչափ ինչ ասէ . " Դաշտքն ունին զթանձրութի խոտոց և զքաղցրութի սերմանաւոր պտղոց " : Բայց յաշխարհագրութե իւրում 'ի յիշելն զծն . նահանգս Մեծին Հայոց՝ յիշէ սակաւուք նաև զպտուղս և զբերս իւրաքանչիւրոց . զորոյ զկարգացն և մեք զհետ երթեալ ստոտանօր յիշեսցուք զնոսա . ապա յառաջ բերցուք և զյիշատակեալսն յօտարազգի մատենագրաց :

Պղլեոր : Խորենացին դնէ յԱղձնեաց նահանգի :

Մշկամիրգ : Դնէ 'ի Տուրուբերան նահանգի :

Պիստակ : Դնէ 'ի Տուրուբերան . բայց զարմանալ արժան է , զպտուղ ջերմ աշխարհի գտանել 'ի ցուրտ երկրի , զոր օրինակ էր նահանգն Տուրուբերան . թէպէտ և 'ի տպագրեալն և 'ի ձեռագրի միում փոխանակ պիստակի՝ գրեալ կայ . " Եւ ողխոյն նուռն " :

Պանրշան : Դնէ 'ի Մոկս ասելով . " Ունի 'ի մրգաց Պա-

հրշակ „ ։ Ուր 'ի տպագրեալն դնի Հրշակ, և ապա փախագծիւ դնի Գոհրպաշակ ։

Մանրագոր ։ Դնէ 'ի Մոկս, որ առ Ագաթանգեղոսի 'ի կարգս ծաղկանց յիշատակի ։ Առ եւրոպացի բնապատումս գտանեմք Մանրագոր կոչեցեալ զայն արմատ մարդաձև, զոր մերքն այժմ 'ի Հայաստան կոչեն Լոշտակ, որպէս ասնիս տեսանել առաջև ․ բայց յիշատակեալն խորենացւոյն ոչ թուի լինել նոյն ։

Շողփանոյ ։ Դնէ 'ի Կորճէս, որ այսպէս գրի յերկուս ձեռագիրս ․ իսկ 'ի միւսն Շահնոցայ ․ 'ի տպագրեալն Շողփանոյ ։

Պղպեղ ։ Քանզի 'ի Գողթան գաւառ Վասպուրականի առատութիւն էր խաղողոյ և գինւոյ, խորենացին զայս ցուցանել կամելով, կոչեաց զայս գաւառ յաշխարհագրութեան իւրում Գողթն գինեւէտ ։ Իսկ Ղազար 19 ․ զայրարատեան գինին յիշէ ասելով ․ “Մատակարարէ . . . զանսպառ առատութիւն հացի և գինւոյ „ ։ Ի գիրս օտարազգի նախնի մատենագրաց առ Ստրաբոնի գտանեմք յիշատակեալ զգինին Հայաստանեայց ․ որ 'ի ԺԱ ․ գիրս ․ Թղթ ․ 73 ․ գովելով զառատութիւն գինւոյ, թզոյ, ցորենոյ, և մեղու Վրկան աշխարհին, Զնոյն է տեսանել, ասէ, “նաև 'ի Սակասինա և յերասխեան (գաւառս) Հայաստանեայց „ ։ Զնոյն կրկնէ և 'ի ժա ․ 509 ։ Այրդ Սակասինա է Շակաշէն գաւառ Ուտի նահանգին ․ իսկ երասխեան անուամբ կամ իմանայ առ հասարակ զգետեզերս Երասխ գետոյն, և կամ զանիկ գաւառն Երասխաձոր ։ Զառատութիւն գինւոյն մարթ է իմաստասիրել նաև 'ի բանից անտի Երոդոտոսի՝ ուր պատմէ զվաճառականութիւն գինւոյն 'ի Հայաստան աշխարհէս ընդ հեռաւոր աշխարհս տարեալ և 'ի Բաբելոն[1], որպէս ասնիս տեսանել 'ի գլուխն Վաճառականութեան ։ Վասն որոյ և զբանս Պլինիոսի, որ 'ի խօսելն զգինւոյ 'ի ԺԴ ․ գիրս իւր, խօսի և յիշէ զՊարթևացն, և զՀայոցն լեալ, համարիմ յանուն Պարթևաց իմանալ նորա անդէն և զՀայոց աշխարհիս միանգամայն, որպէս և յայլ բազում տեղիս է տեսանել այսպէս ընդ անուամբ Պարթևաց բովանդակել և զմեր աշխարհ ։ Զառատութիւն գինւոյն

1 Դուցէ վասն այսր ասէին գինւոյն Հայաստանեայց զոր 'ի Բաբելոն կրէին վաճառականք մեր, պարտ է իմանալ զայն Աթենէոսի որ ասէ ․ Բաբելոնեան գինին է զոր կոչեն Նէֆար ․ այսինքն է գինի գերազանից՝ գէց արժանաւոր ։ Զի բազում բերք և վաճառք կոչին ոչ յանուն տեղւոյն ուստի ելանեն, այլ յանուն տեղւոյն ուր ժողովին և վաճառին ։

| | | |
|---|---|---|
| Թօռող. | ) | Զայս անուանս 'ի Տայս դնելով, ցու- |
| Լոռան. | | ցանէ զքաջաբերութիւն այնր նահանգին. |
| Լշտոր. | } | Որպէս և այժմ երևի 'ի Բերդագրակ, |
| Սերէնէլ. | | որ թուի լինել մասն նոյն Տայոց. տես 'ի Նոր |
| Պտղոխոնէ. | | Հայաստան 'ի թղթ. 132. տես և 'ի 123. |
| Լոող. | ) | առ Հասարակ ընդ Ախալցխա նահանգին։ |

Կենաձոր կամ Ամոմոմ[1]։ Զայսմանէ գրէ Վարդան 'ի մեկնութեան Ելից Լ. 23. «Կենաձոր... արմատ է բանջարոյ՝ որ լինի 'ի Տմորիս Հայոց»։ Որում մեկնիչն Երեմիայ տայ և անուշահոտութիւն 'ի կարգս խնկոց դասելով. «Մի 'ի խառնուածոցն խնկոց Կենաձորն է, պտուղ բանջարոյ, որ և գտանի 'ի Տմորիս Հայոց, և յայլ աշխարհ»։ Տմորիս է նոյն իսկ Կորդիք, նմին իրի ստորագրի մատենագիրք 'ի Կորդիս դնեն զայս բոյս, զոր նոքա Ամոմոմ կոչեն. տե՛ս Մարաբան ԺԷ. 747. յասելս[2]. «Քանզի յուռթի է այս աշխարհ յարօտս և 'ի բոյսս, մինչև բերել նաև բոյսս մշտադալարս, և 'ի խնկոց զԱմոմոմ»։ Նոյն դնէ և Յովսեպոս. բայց փոխանակ գրելոյ Կորդուք կամ Քարտու, վրիպակաւ գրեալ է Գերոն, ըստ նշանագրէ Պօշար. «Եւս զաշխարհն Գերոն ասացեալ, (իմա զԿորդուք) երկիր՝ որ առատ բերէ զԱմոմոմ»։ Ի Կորդիս դնէ և Փիլարգերիոս հին մեկնիչ Վիրգիլիոսի։ Իսկ Պլինիոս ԺԲ. 13. դնէ յՈւտի նահանգ ասելով. «Խաղողն Ամոմոյ 'ի գործածութիւն է... բուսանի նաև յայն կողմն Հայաստանեաց, որ կոչի Օդենէ»։ Յայս անուան կոչէ զՈւտի։ Պտուղ Ամոմոյ գոլով նման խաղողոյ՝ Պլինիոս կոչէ խաղող, զոր և 'ի գործ ածէին 'ի բաղադրութիւն Թիւրակեսի, որպէս և ցուցանէ Քարասիոս։ Յիշեն զայս և Դիոսկորիս և Աւիկեննա, կոչելով Բոյս հայաստանեայ. այլ Վիրգիլիոս, Մարտիալիս և Միզալդոս յանուն ասորեստանեաց կոչեն. զի Կորդիք գոլով սահմանակից ասորեստանեաց՝ բազումք շփոթէին ընդ երկրի նոցա։

Գուաղղէ։ Խորենացին դնէ 'ի Տուրուբերան, որ առ Ջեռնոցայ տիրապէս որոշելով ընդ Տարօնոյ գաւառի նորին յիշատակի 'ի թղթ. 49. «Երկիրս խոտաբեր և մեղրաբուխ.

1 Որպէս գրեալ է մեր 'ի մեծ Հայս 147. Չինամոմոմ կոչեն լատին մատենագիրք զայն՝ զոր եւրոպեացիք այժմ կոչեն Քաննելլա. բայց այդ այլ բոյս է սեփական Հնդկաց աւելեալ Սէյլան կղզւոյ, զոր չէ պարտ շփոթել ընդ այսմ բուսոյ 'ի մերոց կոչեցեալ Կենաձոր։

2 Որպէս և առնէ Պօշար 'ի սրբազան աշխարհագրութեան գիրք ա. գլ. 3. թղթ. 19, թէպէտ և Մարաբան խառնէ ամփեն և զՄիջագետս։

և որպէս մանանայն իջանէր յերկնից անդ առ Հրէայսն , նոյնպէս և աստ 'ի մերում երկրիս 'ի վերայ անտառացս իջանէ քաղցր առաւել քան զմեղր՝ որ կոչի Գազպէն ,, : Զայս և այժմ ես է տեսանել 'ի Մուշ , որ է Տարօն , զորմէ գրեալ եմք 'ի Նոր Հայաստան 'ի Թղթ . 56 . նաև 'ի Պա-խարա լինել պատմեցին մեզ նորոգ ազգայինն Ճանապարհորդք [1] :

Մեղր : Խորենացին դնէ 'ի Տուրուբերան . յոյր սակս և զՏարօն գաւառ Տուրուբերանայ կոչեաց Զենոբ Ձեռնագործ. Իսկ Ստրաբոն ճ. 73. և ժա. 509. 'ի խօսելն զնաւատութենէ մեղու Վրկան աշխարհի , ասէ . « Ի ծառս (Վրկանին) են քծիծք , և մեղր 'ի տերևոց հոսէ . զնոյն է տեսանել 'ի Մատիանա Մարաց (գաւառի) , և 'ի Սագաստինա և յԱրաքսեան Հայաստանեայց ,, գաւառի , որք են Շանկաշէն գաւառ Ռստի նահանգին , և Երասխաձոր գաւառ Այրարատու : Զայս և Պլինիոս ժբ. 8 . յիշելով յաւելու ասել , թէ Օնէսիկրիտոս աւանդէ զի 'ի Վրկան աշխարհին Պարսից , որ սահմանակից է Հայոց , գտանին ծառք՝ յորոց մեղր կաթէ ընդ առաւօտն ժամն երկուս :

Լոշտակ : Յիշատակի 'ի հին բժշկարանս մեր , որ է արմատ բուսոյ ամենևին նման մարդոյ . և այժմ գտանի 'ի Հայաստան , յաւէտ յԵրզնկաւ և յԷջմիածին . տաճկերէն կոչի Եաբրուհուսսանէմ . նաև Հիւմնէքիւրիւմ քէօքիւ : Զայս և մեզ դէպ եղև տեսանել 'ի Բիւզանդիա յամին 1814 . առաքեալ յԵրզնկայ . որոյ գլուխն էր 'ի չափ վեցամեայ կամ եօթնամեայ մանկան : և ամենայն ինչ անթերի ձևացեալ 'ի նմա , աչք , ունչք , բերան և շրթունք . և որ զարմանալին էր , շրթունքն էին յերկուս հերձեալք , և կակուղ քան զայլոց տեղեաց որպէս բնական մարդոյ . միայն գոյն դիմացն 'ի գոյն մեռելոյ : Ի գլուխ նորա լի էին ծերպք , և 'ի ծերպսն անդ լի աղուամաղք : Ականատեսք ասացին մեզ թէ գտանի 'ի կողմանս Էջմիածնի առաւել մեծ 'ի չափ բնական մարդոյ ամենայն ձևով լցեալ . գտանին և 'ի կողմանս Մշոյ և Բաղիշոյ , այլ մանունք և անձևք : Ի կիր առնուն զայս 'ի դեղորայս , զորոյ զջուր և մեզ դէպ եղև ըմպել , որ լեղի էր և դառն որպէս զխաշխաշեղէն : Սմա ունել ասեն զայն ամենայն

[1] Զտեղեկութենէ նախնեաց վասն Գաղղէի՝ կարես ընթեռնուլ զոր ինչ գրէ Սալմասիոս (Սօմէս) վասն մանայի սկսեալ 'ի Թղթահամարոյ 719 . 'ի Պլինեան ընդդիմագրութիւնս :

զօրութիւն, զոր ինչ ժէնժէն բոյսն առ Չինս [1]: Տես 'ի վերոյ և զՄանդրագոր:

Մարդաձաղիկ: Ցիշատակի նոյնպէս 'ի բժշկարանս, որ և գտանի այժմ 'ի Հայաստան, զոր և ոմանք այլ 'ի նա-խագրեալ Լոքմանէն համարին:

Յետ ընթերցոյ զպտուղս և զբոյսս յիշատակելոյս 'ի մե-րոց, արդ կարգեսցուք և զորս յիշատակեն օտարազգի մատենագիրք:

Պռունոս կամ Մալոս Արմենիակոս: Այն է ծիրան. իտա-լերէն Մէլիակո. իսկ գաղղիարէն Աբրիկօ: Ցիշէ զայս Պլինիոս ժԵ. 13. ուր թուելով զօրս զանազան տեսակս, է ասէ և տեսակն Արմենիակոս, այս ինքն Հայկական; յա-տաքին ազգէ եկեալ, անուշահոտութեա՞ երևելի: Այս-պէս յանուն Հայաստանեաց անուանեալ ասեն. զի 'ի սկզբան անդ համայնեցին յաշխարհէս Հայոց բերին 'ի Հռոմ, և անտի ծաւալեցաւ յայլ կողմանս Եւրոպիոյ:

Լասերպիցիոն. յունարէն Սիլֆիոն. լատիներէն Լէզէրբի-ցիում կամ Լէզերպիցիում. գաղղիարէն Լէզէր: Ցիշէ զայս Պլի-նիոս ժԹ. 3. ասէ, թէ գտաւ 'ի կիւրենական գաւառի, բայց ընդ ամս բազումս պակասեալ անդէն, այժմ ոչ այլ ուս-տեք գայ առ մեզ, ասէ, “բայց որ 'ի Պարսս, 'ի Մարս և 'ի Հայս ելանէ առատ”: Այլ ըստ պատմելոյ Արրիանո-սի գիրք Դ. ելանէ և 'ի Կովկաս, որ մերձ է առ Հայս. որպէս պատմեցին ընկերք մեծին Աղէքսանդրի յորժամ եկին 'ի Կովկաս: Հիւթ նորա, որ Լասէր կոչի, ասէ Պլի-նիոս, բազմօք 'ի գործ ածի 'ի բժշկականս, մինչև 'ի կշի-ռ արծաթի գրամոյ վաճառել. զորմէ ճոխագոյն ճառէ ան-դէն: Ցիշէ զայս և Դիոսկորիս գիրք Գ. գլ. 94:

Լոտոս: Պլինիոս ժԳ. 18. յետ ստորագրելոյ զայս բոյս կամ զեգիպտական ծաղիկն, այն ինքն է Նոնուֆար ա-րաբացւոց, նաև յԵփրատ գտանի ասէ, յերեկոյէ մինչև ցկէս գիշեր 'ի ջուր ընկղմեալ. իսկ 'ի ծագել արևու անդրէն յերեսս ջրոյ երևեալ ինքն և ծաղիկ իւր. յորոյ արմատոյն և 'ի սերմանէն ազգ ինչ հացի գործէին եգիպ-տացիք:

Նարդոս: Ի գրեն զայսմանէ Պլինիոս ժԲ. 12. Ասորւոց Նարդոսն է, ասէ, գովեալ յերկրի մերում. և զի զգա-զուամ ինչ զմեր որ 'ի փոքր Հայս է, և որ 'ի Հարաւակողմն

1 Զորմէ կարես տեսանել յաշխարհ. Թղթահամարն 193: հաղորդութեան 'ի Գ. հատոր Ամսոյ, 'ի

նիստ զանեղին՝ ուր ելանէր ձիւթ. զի և Ամմիանոս[1] ասէ թէ մերձ 'ի լիճն Սօսինձիդէն (Տոսպ) ելանէ կուպր. և ուր Տիգրիս յընդերկրեայ անցից 'ի վեր յառնէ, անդ ելանէ նաւթ, որ է ազգ ինչ ձիւթոյ նման կպրոյ:

Երկաթ: Զայս հանք ևս խոստանացին գտնել յԱղձնիս և 'ի Տաւրուբերան. տեղին Աղձնեաց ուր ելանէր երկաթ՝ կոչէր յանուն երկաթոյ, որպէս է տեսանել 'ի Ճառընտիրի 'ի հին վարս Մծբնայ հայրապետի՝ թարգմանեալ յԱսորւոց. «Հասեալ 'ի գաւառն Աղձնեաց 'ի բլուրն Երկաթահանս»: Որպէս և ձորն կոչի անդէն Ձոր Երկաթահանաց: Այս երկաթահանք Աղձնեաց էր սահմանակից Ըռշտունեաց գաւառին Վասպուրականի, որպէս յայտ առնէ Բուզանդ Դ. 10. յասելն վասն սրբոյն Յակոբայ Մծբնայ. «Գայր հասանէր 'ի լեառն Երկաթահանացն և Կապուտականացն, և որ ընդ նմանս էին, 'Է Ըռշտունիս. և բաժանէր լեառն բարձր, ուստի երևէին գաւառքն (Ըռշտունեաց) բովանդակ, որում անուն Ընձաքիսարս կոչէին»: Իսկ Ղազար 'ի թղթ. 20. յԱյրարատ նահանգ. յիշէ ելանել երկաթ: Պլինիոս ԼԴ. 14. 'ի խօսելն զերկաթոյ՝ երկրորդ տեսակ պատուական երկաթոյ դնէ զերկաթն Պարթևական. ուր առեալ վասն սահմանաց պարթևական տէրութեան և զՀայս բովանդակէ 'ի նմա, որպէս և այլուր է տեսանել: Մանաւանդ զի ակնատեսք կարի իմն առատութիւն պատմեն մեզ և այժմ զհանքաց երկաթոյ 'ի Հայաստան, որք անգործ կան աստ և անդ: Առատութիւն էր երկաթոյ և 'ի Խաղտիս, զոր իբր մասն հայաստանեաց պարտ է համարել: Պոնտոսի Քաղտիք կամ Քաղիւք, որ է Խաղտիք, ասէ Ֆօրմալէոն հատ. Է. պատմ. Սեաւ ծովու. թղթ. 145. բնակէին յաշխարհի ինչ ընդհասեալ 'ի դօտւոյ լերանց, յորս էին բազում երակք զանազան հանքաց, մանաւանդ արծաթոյ և երկաթոյ պատուականի, վասն այնորիկ և հռոմայեցիք այսմ իրազեկ լեալ՝ զերկաթն կոչեցին Քաղիւբ յանուն աշխարհին: Եւ 'ի թղթ. 155 դրէ, Քաղիւք Պոնտոսի (Խաղտիք) 'ի ժամանակս պատերազմին Տրովայ էին հռչակաւորք սակս հանքաց իւրեանց, յաւէտ երկաթոյ և պողպատի: Զայսմանէ Պօշար զկարծիս այլևայլ մատենագրաց 'ի մի վայր ածեալ, յաւելու ասա. «Որ զինչ և իցէ, այլ ընդ այս չիք երկբայել, զի Քաղիւբն այս նիւթն պողպատ՝ 'ի Քաղիւբս ազգէն այս նիւթն 'ի Խաղտեաց

1 Ամմիանոս գիրք ԻԳ. թղթ. 400. ըստ տպագրութեան Կաւճոնեան:

զանուանն կալաւ. զի չիք այլ ուրեք պողպատ ազնուագոյն քան 'ի Խաղտիս,, . 183 ։ Որպէս և զպողպատն ելեալ 'ի կողմանց Դամասկոսի՝ յանուն տեղւոյն կոչեն այլազգիք Տըմըշքի։

Սլաղար ։ Բուզանդ ած զտեղին ուստի հանէին երկաթ՝ յիշէ՝ կոչելով լեառն Երկաթահանաց, նոյնպէս զնոյն լեառն կոչէ անդէն և Աստան Կապարահանաց, որով յայտնի ցուցանէ լինել անդանօր և հանք կապարի ։

Պղինձ ։ Ղազար 'ի Թղթ. 20. յիշէ պղնձի ելանել յԱսրարատ նահանգի ։ Առ Կիրակոսի յիշատակի Պղնձահանք, իբր անուն վանաց, յասելն. " Վախճանեցաւ և Իւանէ եղբայր Զաքարեայ, և թաղեցաւ 'ի Պղնձահանս 'ի դուռն եկեղեցւոյն (Գետկայ) զոր շինեաց ինքն, առեալ 'ի Հայոց Վրաց 'ի վանս հաստատեաց ,, ։ Զնոյն կրկնէ և Վարդան ։ Եւ քանզի Գետիկ վանք անկանի 'ի Ձորոփոր գաւառին Գուգարաց, և այս հանք պղնձոյ՝ զոր անունն յայտ առնէ՝ անկանի անդ ։

Օսպէլ ։ Խորենացին դնէ 'ի Կորճայս, որ է տաճկերէն Ջըրնըխ. իտալերէն Օրբիմէնթօ, կամ Օրբէլնօ մինէրօ. որ և կոչի Դեղին առսէնիքօ. այսինքն Դեղին մկնդեղ ։ Վասն այսր կարևոր է 'ի միտ առնուլ զոր գրէ Սալմասիոս Թղթ. 813. ընտրինի մատենագրաց. " Զարմանք են զոր ասէ (Աէտիոս) թէ Արմէնիաքա պօլուսն 'ի Հայոց և յԱսորւոց կոչի Զառնագա կամ Զառնէնագա. զի նովին անուամբ արաբացիք զմկնդեղն կոչեն Զառնիգ. որ և քաջայայտ է լինել նոյն անուն ։ Ապա կամ Աէտիոս սխալի որ զայն անուն Ասորւոց կամ Հայոց՝ որով կոչէր զմկնդեղն, նոյնացուցանէ ընդ Հայկեան Պօլուսի (կաւոյ), և կամ արաբացիք ։ Բայց այս ինչ հաւաստի է՝ թէ կարմիր մկնդեղն նաև 'ի Հայաստան ելանէր. և այս է զոր բնակիչքն տիրապէս կոչէին Զառնագա. ընդ որում նոյն թուի լինել Արմէնիոն կոչեցեալն Սարապիոնի, յորմէ ապա շփոթեցին զայս Արմէնիոնն ընդ Հայկեան Պօլուսի ,, ։

Կաւ հայկեան ։ Յիշատակի առ մեզ 'ի բժշկարանս ինչ, որ առ Գաղենոսի կոչի Հող հայկեան. առ բնաբանս կոչի Կաւ, կամ Հող, և Պօլոս արմէնեան, որ նոյն է ասել հայկեան. կոչեն և Հող ճոխեալ հայկեան, հաշակաւոր՝ առաւել մտանելոյ 'ի բաղադրութիւն թիւրակէսի, որ է կարմիր աղօտագոյն, և է նոյն որ տաճկերէն ևս յանուն Հայաստանեաց կոչի Քիլ Էրմէնի. զորմէ գրէ Սալմասիոս 'ի Թըղթահամարն 812. " Հայկեան հողն Գաղենոսի՝ որ է ոսկեգոյն՝ զանազանի 'ի Հայկեան սանտիքէ Սարապիոնի, և 'ի Հայ-

չեան կապուտագոյն քարէ Դիոսկորեայ. իսկ յաղագս գունոյ մարթ է վճռել՝ թէ Հայկեան հողն Գաղենոսի՝ նոյն է ընդ Հայկեան սանտիքոյ Սարաբիոնի. թէպէտ և սա կարմրագոյն է, իսկ նա ոսկեգոյն „: Այլա գրէ յերկար թէ որպէս մատենագիրք շփոթեն զերկոսին գոյնս սակս մերձաւորութեն, զմինն առեալ փոխանակ միւսոյն. „ Արդարև, ասէ թղթ. 813. Արմենիակա (Հայկեան) հողն Գաղենոսի՝ զոր Ոքրան գրէ լինել, այս ինքն է՝ ոսկեգոյն, այլ ինչ է ամենևին յԱրմենիոնէն Պլինիոսի որ է կապուտագոյն, և յԱրմենիոնէն Դիոսկորեայ, որ նոյն է ընդ Արմենիոնէն Պլինիոսի, և ոչ իսկ կարէ նոյն լինել ընդ Արմենիոս ներկոյն Սարաբիոնի. որ է Սանտիքս կամ Սանտարաքա Հանքային. զի այն է կարմիր, իսկ Արմենիակա հողն Գաղենոսի է ոսկեգոյն: Բայց բազումք յետ Գաղենոսի զՀողն Արմենիակա նոյնացուցին կամ ընդ Արմենիոնն Դիոսկորեայ, և կամ ընդ Արմենիոս ներկոյն Սարաբիոնի „: Դարձեալ գրէ անդէն. „Արմենիակոն կոչեցեալն 'ի Պօղոսէ Եգինեցւոյ, և յՕրիբասիոսէ՝ որ զմաղս արտևանանց աճեցուցանէ, նոյն է ընդ կապուտագոյն Արմենիոնն Դիոսկորեայ „ զոր յիշեցաք 'ի վերոյ: Ասէ դարձեալ. „Աքտուարիոս ('ի գրեն) զմիզոյ գլ. թ. զԱրմենեան Պօլոսն կարմրագոյն լինել աւանդէ, զոր Յոյնք կոչեն Խէրէթբոնոն. և նոյնագոյն ցուցանէ լինել ընդ կնքեալ հողոյն Լեմնոսի ... 'ի նոյն կարծիս են և արաբացիք. ուստի չեն ինչ զարմանք զի փոխանակ Արմենեան պօլոսի այժմ 'ի կիր առնուն զկարմիրն Լեմնոսի, որովհետև նոյն են գունով. և վասն այնորիկ ոչ 'ի զուր մարթ է հաստատել, թէ որ ինչ երևի զարդիս Արմենեան պօլոսն՝ նոյն էր որ յաւուրս Աքտուարիոսի. բայց թէ արդեօք նոյն է ընդ Արմենեան հողոյն Գաղենոսի, (երկուանամք). զի նա Ոքրան լինել ասէ զայնմ, այս ինքն ոսկեգոյն. իսկ Արմենեան Աքտուարիոսի՝ կարմրագոյն դնեղին: Ի սոցունց ստորի զանազանի Հանքային Սանտիքան Սարաբիոնի. թէպէտ և զայն Արմենեան գոյն կոչէ „: Կիրակոս 'ի ժամանակս Մխիթարայ գօշի յիշէ „ Բոլ մի յԱքասամձար „ 'ի սահմանս Բջնոյ, որ էր 'ի Նիգ գաւառ Այրարատու. այլ թէ որձ հանքի էր բովլ, ոչինչ յիշատակէ: Աստ յիշեսցուք և զՀանքս, որք 'ի գիրս օտարազգի մատենագրաց գտանին, կամ որք խառն 'ի մերոյն և յօտարին:

Պողպատ: Պլինիոս լը. 15. ըսէ ելանել 'ի Հայս:

Խրիւսոքոլլա: Պլին. լը. 'ի վերջին ե. գլխոյն զայս յիշելով ասէ լինել հիւթ հոսեալ յերակս ոսկւոյ, նաև 'ի բովս

արծաթոյ. զորոյ և զապարարեալն յիշելով՝ ասէ, թէ պատուականագոյնն եղանէ 'ի Հայաստան, և զգործածութիւն նորին 'ի ներկս և 'ի դեղորայս պատմէ, զի խառնելով ընդ հիւթս խառոյ իրիք՝ ներկէր զկտաւս 'ի գոյն գեղեցիկ և կենդանի կանաչ։ Տես և զԱրծնիուսն 'ի կարգս քարանց։

Ո՛ենիում առմենիում։ Որ է ասել Հանք հայաստանեաց. զայս յիշէ Պլինիոս լէ. 6. 'ի խօսելն զներկոց։

Ոսկի։ Մի 'ի բերոց աշխարհիս Հայոց բազմօք յիշատակելոց առ նախնիս։ Նախ առաջին Խորենացի ա. 23. ըղհանք ոսկւոյ ծանուցանել կամի ընդ մեզ, ուրանօր ներբողելով գրէ վասն մեծին Տիգրանայ. " Մթերս Ոսկւոյ և արծաթոյ . . . բազմացոյց "։ Այսինքն՝ յառաջնմէ եղեալ կամ գտեալ մթերս (որով անուանի 'ի դէպ է իմանալ զհանքս) բազմացոյց մեծն Տիգրան, յորմէ արդարև արժանի լինէր ներբողելոյ։ Այլ քանզի ոչ 'ի միում ևեթ վայրի հայաստանեաց գտանեմք յիշատակեալ առ նախնիս լինել հանք ոսկւոյ, այլ 'ի զանազան տեղիս, նորին աղագաւ ուրոյն ուրոյն գրեսցուք զնոցունց։

Ոսկի Այրարատոյ։ Ղազար 'ի յիշելն 'ի թղթ. 20. զլինելն զանազան հանքաց 'ի նոյն իսկ 'ի թագաւորանիստ նահանգն Այրարատ, նախ առաջին զոսկին յիշէ ասելով. " Իսկ դաշտացն ամենայնութիւն զկամն աշխատաւորացն կորզելով . . . զառընդերկրեայ ծածկեալ օգուտս ուսուցանեն, զանձել անձանց զշահս, և զմայելս այսր աշխարհիս 'ի մեծութիւն թագաւորաց, և 'ի հաստատութիւն հարկահանաց զՈսկի ". և այլն։ Իսկ 'ի 203. յիշէ և զՈսկեհատ. որ է հանք ոսկւոյ, ուստի լինի հատանել զոսկի. զի ասէ. Այլ ին Վրիւ " երթեալ լինէր ամբաստան զՎահանայ առաջի թագաւորին Պերոզի ասելով, թէ խնձ 'ի գործ Ոսկեհատին չետ ինձ մօտ երթալ "։ Ուր գործ Ոսկեհատին ասելով ծանուցանէ զգործ հատանելոյ զոսկին 'ի հանքաց։ Սոյնպէս և 'ի յիշելն սորին զառաւելութիւն ոսկւոյն, իմանամ զբոոսկւոյն զոր հատանէին 'ի հանքաց. զի ասէ վասն Վահանայ. " Ժողովեալ զամենայն ոսկի աշխարհիս Հայոց . . . տարեալ փութանակի զբազմութիւն ոսկւոյն և հասանէր 'ի դուռն . . . և լուեալ զՎահանայ զքանիօնութիւն բազմութեն ոսկւոյն զոր բերեալ էր, և ուրախանայր յոյժ . . . զայդչափ ոսկի զի՞ բերէի, որ մինչև ցմահ իմ՝ թէև կարի շատ կէի, իմում անձինս՝ այլև տասանց ևս ընդ իս թոշակ շատ էր և բաւական "։ Այս ամենայն բանք ցուցանեն 'ի հանքաց

ժողովեալ զոսկին և ոչ 'ի հարկաց. այլ հանք Այրարա-տու ամենեւին անծանօթ է առ մատենագիրս օտար ազ-գաց։

Ոսկէ Սպերայ կամ Կողքեայ։ Ստրաբոն 'ի խօսելն ժա. 529. զաշխարհէս Հայոց, յԻսպիրատիդիս անդուռջ դնէ ոս-կի, ասելով. Ի Հայաստան «են և հանք Ոսկւոյ յԻսպի-րատիդիս առ Գաբալլայիւ. ուր մեծն Աղեքսանդր զՄենոն առաքեաց զօրօք», առ 'ի բերել 'ի հարկէ զոսկին։ Այս անուն է որ 'ի Թղթ. 503. գրի առ Նոմա Սիսպիրի-տիդոս. և 'ի Թղթ. 530. Սիսպիրիտիդոս. որք են այլայլու-թիւք անուանս Սպեր, որ էր գաւառ 'ի նահանգին բարձր Հայոց[1]։ Այլ զարմանք մի մեծ այս են թէ զիարդ այս-պիսի հանք ոսկւոյ, առ որ մեծն Աղեքսանդր զօրս առա-քեաց 'ի բերել, անյիշատակ մնացեալ կայցէ 'ի գիրս այ-լոց նախնեաց։ Իսկ թէ որչափ անուանի էր հանքն այն ոսկւոյ, ցուցցուք և 'ի սուրբ գրոց 'ի յաջորդ գլուխն Վա-ճառականութեան, թէ ոսկին Սոփերայ այնչափ հռչակեալն յաստուածաշունչ գիրս՝ էր նոյն իսկ ոսկին Սպերայ։ Հռչակեալ էր նոյնպէս և 'ի հնագրութիւս հեթանոսաց, բայց ոչ յանուն Սպերայ կամ Սիսպիրիտայ, որպէս կոչէ Ստրաբոն[2], այլ յանուն սահմանակից ազգին որք են Կող-քիսացիք. Թէպէտ և առ նոսա գտեալ ոսկին՝ էին քե-րածոյքն 'ի ջուրց գետոց. զի ըստ մեծի մասին զայս յիշեն նախնիք. Եւստաթիոս 'ի մեկնութեան Դիոնեսեայ գիրք լէ. գլ. 3. գրէ. «Ոսկի առ նոսա ուղխք բերեն»։ Նոյնպէս և Ապպիանոս 'ի Միհրդատեան գիրս. զորոյ ըզ-բանս տեսցես ստորև։ Զնոյն ասէ և Ստրաբոն ժա։ Պլի-նիոս ևեթ պատմէ երկուց թագաւորաց Կողքիսոյ նոր ե-կիր գտեալ, և անտի հանեալ բազում արծաթ և ոսկի, որպէս ունիս տեսանել ստորև։ Այսու նոր երկրաւ իմա-նամք զերկիրն Սպերայ նշանակեալ 'ի Ստրաբոնէ. որում իրագէկ լեալ նոյն թագաւորք կողքիսացւոց՝ թէ ոսկին զոր ջուրքն բերէին՝ էին քերածոյք բնիկ հանքացն՝ որ 'ի լերինս Սպերայ, եսուն բրել զերկիրն և անտի հանել

1 Քաղաքն համանուն կառուցեալ կայ առ գետովն Ճորոխ կամ Փասիս կոչեցեալ, որպէս և այժմեան գիրք նորա յայտ առնեն, որ կոչի Իսփիր. սահմանակից է Տայոց, և Խաղտեաց, որ թէպէտ էր գաւառ Կողքիսոյ, բայց լի բնակութեամբ Հայոց, յորմէ և կո-չեցաւ Ամմենօսալինէ։

2 Ստրաբոն մօտաւոր բնակիչ գո-լով այսոցիկ կողմանց՝ տեղեկագոյնս քան զայլսն գրեաց վասն այսր. յա-նուանէ ցուցանելով թէ բնիկ անդի հանքացն էր Սպեր։

գաւառն։ Վասն որոյ որչափ ինչ յիշատակի առ Նախնիս Ցունաց և Հռոմայեցւոց Ռոկի Կողքիսոյ աշխարհին, առատուԹի և սկիզբն նորին է հանքս այս Սպերայ. և Թէ ուստի այս յայտ լիցի, միտ դիր։

Առաջին պատճառն է գետն Փասիս, առ որով կառուցեալ է Սպեր. զի գետս այս Փասիս, որ առ մեզ Ճորոխ կոչի՝ որ ցուցաք 'ի գլուխն Գետոց, որովհետև ըստ մեծի մասին առ աշխարհաւն Կողքիսոյ քերէ, և 'ի նմին աշխարհի Թափի 'ի ծովն Պոնտոս, զամենայն տեղիս և գիւղաքս որք առ Փասիս գետով են, և որք առ Փասիս վերաբերին, կողքիսացւոց համարէին, և յանուն Կողքիսոյ կոչէին. նա զի՝ Կողքիս ասելով չփոխԹէին, կարծեմ, և զայն գաւառ Տայոց՝ որ Կող կոչէր։

Երկրորդ՝ զի զհանեալ ոսկին 'ի լերանց Սպերայ՝ վաճառականք առեալ կամ ընդ գետն Փասիս որ է Ճորոխ՝ և կամ ընդ ցամաք իջուցանէին 'ի Նաւահանգիստս Կողքիսոյ, և անդուստ ընդ ծով տանէին յայլ և այլ աշխարհս։ Զի հարկ է ասել՝ Թէ վաճառականք զվաճառս Հնդկաց և այլոց արևելեան աշխարհաց բերէին ը ցամաք մինչև 'ի Հայաստան. քանզի 'ի վաղեմի ժամանակին յայնոսիկ ցամաքային վաճառականուԹիւն էր ծաղկեալ. յետ այնորիկ ապա և ծովային։ Եւ 'ի Հայաստանէ սփռէր 'ի ծովեզերս միջերկրականի և սևու ծովու, և ովկիանոսի ևս ընդ Տիգրիս և ընդ Եփրատ։ Զայս և յայժմեան անցից մարԹ է իմաստասիրել. քանզի նախ քան զգտանել ճանապարհին ընդ հրուանդանն Բարեյուսոյ, նաւք արաբացւոց 'ի մերձակայ տեղեաց հնդկայնոց զվաճառս Հնդկաց առեալ բերէին 'ի Մաշկաթ, անտի 'ի պարսկային ծոց, անտի 'ի Սուվէյիշ ընդ կարմիր ծով, և 'ի Սուվէյիշէ անցուցանէին ընդ ցամաք յԱղէքսանդրիա. և անտի նաւք վենետիկեցւոց բարձեալ սփռէին յայլ և այլ Նաւահանգիստս Եւրոպիոյ։ Արդ սովորուԹիւն է, որ պէս և այժմ ևս, զվաճառս կոչել ոչ յանուն տեղւոյն ուստի ելանեն, այլ նաւահանգստին մանաւանդ՝ ուստի բառնան վաճառականք. որպէս և ապակի անօԹք որք 'ի Պոյեմիա գործին՝ յարևելս կոչին այժմ ոչ յանուն Պոյեմիոյ, այլ յանուն Թրիեստու, ուստի բառնան 'ի նաւս [1]։

1 Որպէս և առ Նախնիս յանուն զորս Սալմանասար առ Սօլինոս. Թղթ.
Կապադովկիոյ անուանեցան ինչ ինչ՝ 812. կասկածի լինել բնաւ աշխարհին

լով) մինչև ցՊոնտոս (են) բազմազան ազգք հենիոքեանց»։ Եւ 'ի լզ. 3. գրէ նոյն ինքն Պլինիոս, թէ յառաջ ժամանակաւ «Թագաւորեցին 'ի Կողքիս Սալաւկեանք և Եզուպտեանք, որոց գտեալ երկիր անդարման, բազում արծաթ և ոսկի պատմին հանեալ նոցա յազգին Սուանաց և 'ի թագաւորութեան, որ և ոսկի գեղմամբքն է հռչակեալ. նաև ոսկի կամարք պատմին նորա լեալ և արծաթի գերանք և սիւնք և նեցուկք»։

Զորորդ՝ զի ոչ միայն յընդերկրեայ հանքաց հանէին՝ որպէս ասացաւ 'ի վերոյ, այլև զոր Ջուրք գետոց առատ և անդ տանէին զմանր հատիկս աւազոյ ոսկւոյն, կողքիացիք Ճարտարք՝ կամ փորեալ անօթովք և կամ գեղմամբք խաշանց ժողովէին, 'ի Ջուր արկանելով զգեղմունս. որպէս յայտնի գրէ Ստրաբոն ժա. 499. վասն Սոանաց ժողովրդոց Կողքիսոյ. «Նաև առ սոսա (առ Սոանս) ասեն բերիլ ոսկւոյ յուղխից[1]. զոր և ժողովեն բարբարոսք ծակոտկէն անօթովք, և ասրախիտ գեղմամբք, յորմէ և եղ առասպելն Ոսկի գեղմոյն»։ Սոյնպէս գրէ և Ապպիանոս 'ի պատերազմին միհրդատեան. «Յայնմ լերին (Կովկասու) բազում աղբիւրք են՝ որք բարձեալ բերեն մանրագոյն աւազս ոսկւոյ որք նուազ տեսանին. իսկ բնակիչքն գեղմունս թաւամազս 'ի գետս ընկղմեալ, այնպէս ժողովեն ոսկի աւազս կուտեալս 'ի նոսին[2]. և զուցէ այսպիսի եղև այն ականաւոր ոսկի մորթն Այետայ»։

1 Այսպիսի ինչ նաև վասն Հընդկաց աշխարհին գրէ Ստրաբոն ժէ. 711. 'ի Մեգաստենեայ բերելով. «Գետոց հոսս աւազոյ բերել յորոց եղանէ հարկ արքայի. զնոյն է տեսանել և 'ի Վիրս»։ Զնոյն երկրորդէ նոյն ինքն Ստրաբոն և 'ի Թզթահամարն 718։

2 Զայս օրինակ ժողովելոյ զոսկին գրէ և 'ի նորս Գամպէ՝ 'ի շրջանկայս Լուսիզ բերդին. որով զգեղմն զայն կամ զմորթն ոսկեփայլ երևեալ, մարթ է կոչել Ոսկի Գեղմն. որպէս համբաւեցին բանաստեղծք և այլ նախնիք, ոչ 'ի վեր հանելով զճշմարիտ պատմութեան։ Կեղծեցին նաև առա պահապան լինել Ոսկի գեղմանն երկուցուլս և մի վիշապ. որք լուռ իմն են երկկարգեան լերինք՝ յորս էր հանք ոսկւոյն, և Ջուրքն՝ յորս գտանէին ոսկեհատ աւազք. զի զայն լերինս Ցոյլք համարեցան մնացուածս լերինն Տօրոսի, յորժ ընդդարձակ տարեալ լեզուի Տօրոսի, որպէս յայտ առնէ նաև ստուգաբանութիւնն Ստրաբոնի զՏօրոսէ. և զի անունս Տօրոս կամ լեառն նոցա Դաւրոս՝ նշանակէ առ նոսա Ցուլ, առնին և նոցա կեղծել զկենդանի ցուլս երկուս, և տալ թէ ոչ թողուն մտանել, և են պահապանք. այս է պատճառն յորոյ ասէ զզուելի եղեն պահապանն, և ոչ զառեալ լոկ ստուգութեանն։ Իսկ Վիշապ կոչեցին զՋուրն, մի՛ զի իբրև վիշապ ինչ կլեալ պահեալ ունէր զոսկին, որպէս և ասվայր էին կեղծել, յորոց 'ի բերանոյն գեղմամբքն իբր թէ բռնութեամբ և հնարիւք հանէին զոսկին. որպէս և այժմ առեալ ինչ հնարի 'ի Կիւմիշխանայէ ընդ Ջրով տեսանեն զհանքս ոսկւոյ. այլ իբր 'ի բերան վիշապի կլեալ մնալով ոչ կարեն

վերայ 'ի խօսելն զօակւոյ։ Այլուր վասն Ալիբա՝ կոչէ Համերոս Ալիզօնս։ Ըստ սմին օրինակի և 'ի գիրսն Պլինիոսի լՑ.

12. Թէ Պոմպէոս զՓառնակայ զարծաթի արձանն՝ նոյնպէս և զՄիհրդատայ Եւպատորեայ, և զկառս ոսկիս և զարծաթիս յաղթանական եմոյծ 'ի Հռոմ, յայտնի առ մեզ իմաստասիրել, թէ Միհրդատ և Փառնակէս (որ էր հաւ Միհրդատայ, և զառաջինն թագաւորեաց 'ի Պոնտոս), 'ի հանքաց՝ որ էր մերձակայ Պոնտոսի, առեալ և եռոսն բերել զոսկին և զարծաթն, որ էր հանքն Սպերայ յիշատակեալն 'ի վերայ։ Որպէս և առ հասարակ պոնտացիք որք դրակից էին փոքուն և մեծին Հայոց, յայտ է թէ միշտ 'ի հանքաց Սպերայ բերէին զարծաթ և զոսկի 'ի պէտս իւրեանց, և ոչ թէ 'ի հեռաւորան աշխարհէ։ Ֆօսմալեան 'ի նախայիշատակեալ վայրի զանգիս ապահեւլով 'ի միմեանց՝ դնէ թէ 'ի Կողքիս հանէին ոսկի, իսկ 'ի Խաղտիս արծաթ։ Երեմիա գլ. Ժ. 'ի կրկին տեղիս 4. և 9. յիշատակէ « Արծաթ ընտիր եկեալ 'ի Թարշշայ »։ Այդ քանզի Թարշիշ ըստ մեզ է Տարսոն Կիլիկիոյ, որպէս ունիս տեսանել 'ի գլուխն Վաճառականութեան, յայտ է թէ վաճառականք որպէս զոսկին նոյնպէս և զարծաթն 'ի Սպերայ առեալ բերէին 'ի Թարշիշ, և վասն այնորիկ յանուն Թարշշայ կոչէին յանուամ։

Ալեմ կամ Մարմարինոս։ Վասն հանքաց կճոյ 'ի վերայ Մասիս լերին՝ տես 'ի ստորագրութեան նորին լերին։ Իսկ Դիոդորոս սիկիլիացի [1] զեւս հրաշալին պատմէ ասելով. « Շամիրամ նաև վէմ եհատ 'ի լերանց հայաստանեայց հարիւր երեսուն ոտնաչափ երկայն. քսան և հինգ լայն և թանձր. զայս բազում լծօք ջորեաց և եզանց 'ի գետ անուր Եփրատ բերեալ, 'ի վերայ սալի ետ դնել, և ըստ ընթացից գետոյն 'ի Բաբելոն ածեալ, կանգնեաց յարքունի ճանապարհին 'ի հրաշալի տեսիլ անցաւորաց, կոթող կոչեալ 'ի ձևոյն, և ընդ եօթն հռչակաւոր հրաշակերտս աշխարհի դասեալ »։

1 Դիոդորոս սիկիլիացի հատոր Ա. սէլինեայ։ Թղթ. 125. ըստ տպագրութեան Վէս-

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

### Ակուանք, կամ Քարինք պատուանդանք ։

Ի ՆԱՀԱՆԳԻՆ Այրարատայ գտանէին ակուանք, զորմէ վկայէ Ղազար 'ի Թղթահամարին 20. 'ի Ներբողեան Նորին Նահանգին՝ ասելով. "Իսկ դաշտացն ամենայնութեան զկամս աշխատասիրացն կորզելով... ուսուցանեն գանձել անձանց պաշար... և պտղատուական փորձիւ, զոր ընկալեալ արուեստով ձեռաց զարդարեն զթագաւորս մեծատեսիլ զարդեօքն, յօրինուածովքն զոր 'ի խոյրսն և 'ի թագսն և 'ի հանդերձսն ոսկեհուռս պաճուճեալս ընդելուզանեն" ։ Այս բան Խորենացւոյն զոր 'ի վերոյ բերաք, թէ մեծն Տիգրան զմթերս փորձնոց պատուականաց բազմացոյց, ցուցանէ թէ կամ ինքն եգիտ զհանքս, և կամ յաւելու զգտեալ հանքս քարանց պատուականաց 'ի վաղուց՝ ինքն Տիգրան բազմացոյց յաշխարհիս Հայոց ։ Եւ ընդ այս չէ պարտ զարմանալ, թէ հայաստան գոլով երկիր ցրտային, զիարդ մարթ էր գտանել անդ հանքաց պատուական քարանց, զոր սեպհական կարծեմք լինել ջերմային գաւառաց. զի Պլինիոս 'ի սկիզբն լէ. գրոց, որպէս և Իսիդորոս և Մարպոտէոս զսկիզբն ականց դնեն 'ի Կովկաս, որ է ցրտագոյն; 'ի Նախնի առասպելեաց Յունաց բերելով ։ Նոյն ինքն Պլինիոս անդէն 'ի գլ. 1. յիշէ զպատուական ակն Միհրդատայ արքայի, զոր Պոմպէոսի առեալ առաքեալ էր 'ի Հռոմ. զոր մարթ է կարծել 'ի մերձակայ հանքաց աշխարհիս Հայոց ստացեալ Միհրդատայ ։ Այլ աստանօր յիշեսցուք զքարինս զորս յանուանէ յիշեն նախնիք ։

Բիւրեղ ։ Ելանէ 'ի չորրորդ Հայս, որպէս դնէ Խորենացին յաշխարհագրութեան ։ Սոլինոս ԺԵ. 'ի Կապադովկիա ասէ ծնանել. իսկ մասն ինչ Կապադովկիոյ էր նոյն իսկ փոքր Հայք ։ Պլինիոս լէ. 2. յԱրեւելից գայ, ասէ, և գտանի յայն տեղիս Ասիոյ՝ ուր սաստիկ է յորդութիւն ձեան, զոր օրինակ է 'ի հայաստան. զի սառոյց է ասէ լինել սառն. յոյր սակս և Յոյնք կոչեցին Քրիստալլոս, ըստ հայումն՝ սառնատեսակ, զորոց և զմեծութիւն ստորև արձանագրէ ։ Այսպէս դնեն և Իսիդորոս, Սոլինոս և Սենեկա, թէ ձիւնն սառուցեալ երկարուք ժամանակի դառնայ 'ի բիւրեղ ։ Իսկ թուի թէ բիւրեղ կոչիցի նաև այն՝ որ իտալե-

րէն կոչի Գուխլը կամ Ախմատուֆինա, որ է կապոյտ կանաչագոյն, կամ կանաչ ծովագոյն, անուանեալ Չէլարմնէ։

Սարդոնիքսոս կամ Սարդիոն։ Իտալերէն Սառտոնիքօ. տաճկերէն Հաքիք։ Պլինիոս լէ. 6. 'ի ճառելն զՍարդոնիքս քարէ, յիշէ և զՀայաստանեայցն. որոյ քանզի կրկին են տեսակք անուանեալք Արաբիկոն և Արմենիկոն, այն որ ելանէ 'ի Հայաստան՝ է արևելեանն, որպէս գրեն և այժմեան բնաղատութք, որ է պատուականագոյնն, ուստի 'ի կիր առնուն և 'ի յօրինել անօթս և մատանիս՝ կոչեցեալ Քամէօ։ Զայս Սարդիոն, որպէս և զՔաղկեդոնիոս քարն, նոյն համարին նախնիք ընդ քարի՝ որ կոչի Օնիքս, այս ինքն Եղունգն և Եղնգնաքար, ուր և վկայէ Պօէչ Պօօտեան[1]։

Սմենիտոս։ Տաճկերէն կոչի Ճէղէրլօքամ։ Պլինիոս լէ. 9. գրելով վասն այսր քարի թէ ելանէ 'ի Հնդիկս, յապառաժն Արաբիա, յԵգիպտոս և 'ի Գաղատիա, ապա ասէ ելանել նաև "'ի փոքր Հայս"։ Գոյնն է մանուշակագոյն կարմիր։

Նաքսոս։ Այսպէս անուանի տեսակ ինչ քարի նման Բօմպոյի, այլ ազնիւ. զոր համայեցին 'ի կիր առնուլն 'ի հարթել և 'ի սրբատաշել զկճեայ արձանս, նաև 'ի փայլեցուցանել զակունս։ Զորմէ ճառելով Պլինիոս լզ. 7. ասէ թէ 'ի հայաստանեաց եկեալքն գերագանց գտանի քան զեկեալսն 'ի Կիպրոսէ, զորս յառաջագոյն 'ի կիր առնուլին։ Յիշէ զայս և Թէոփրաստէս 'ի խօսելն զքարանց, և Ստեփանոս բիւզանդացի, որ ասէ 'ի բառն Արմէնիա. "Հայք... առաքեն զքարն, որով զակունս քանդակեն և ծակեն"։ Կամի ասել, թէ որք կամէին ընդ թելս անցուցանելով կախել 'ի պարանոցէ զակունս, նոքա ծակէին սովին հայկեան քարամբ։ Սալմասիոս 'ի Թղթահամարն 813. յառաջ բերէ զվկայակս Գաղենոսի, որ զայս Արմենիական քարն զոր 'ի կիր առնուլին 'ի հարթել զակունս՝ չփոթէ ընդ Արմենոսի Դիոսկորեայ, որ էր ներկ կապուտագոյն. զի այս քար պնդականգամ, որ էր ազգ ինչ Քօղէս անուանեալ քա-

1 Այս Պօէչ Պօօտեան 'ի գիրսն ականց գրէ, թէ "Ապագիանոս վկայէ Միհրդատայ Թագաւորին Պոնտոսի ունել 'ի գանձարանի իւրում բաժակս յՕնիքս (քարէ) երկու երկուս հազարս, բայց հաւանօրէն է ոչ միայն 'ի յՕնիքսեայ, այլ նաև 'ի Սարտոնիքեայ և 'ի Քաղկեդոնիոյ էին յօրինեալ. զի Սարտոնիքս և Քաղկեդոնիոս առ նախնիս փոխանակ Օնիքսի առնուլ լինէին"։ Առ որոշումն սոցա ծանիր. զի լուսեներէն Սառտոնիքս՝ որպէս տեսցուք, կոչի տաճկերէն Հաքիք. և Քաղկեդոնիոսն կոչի Աք Հաքիք։ Իսկ Օնիքս կամ Օնիքինոս՝ է ազգ ինչ այնր քարի՝ որ յերկրագոյնց ստորագոյն կոչի Աքատ, տաճկերէն Սիւլէյմանի, ուստ Աքատ Օնիքէ, տաճկերէն կոչի Քօնէլ սիւլէյմանի։

քանից, որոյ ընկել ներփակեալ անուամն կոչէր Զմրխտ, որպէս կոչեն Խալքիոս և Խալդորոս, այլ է ամենևին յԱրմէնիոս ներկոյ՝ որ էր փշրելի, զոր նկարիչք 'ի գործ ածէին 'ի գոյնս կապուտակ ։

Զմիլամփիս կամ Զմիլանթիս ։ Պլինիոս լէ. 10. յԵփրատա ասէ ելանել այսմ քարի ։

Շափիւղայ. գաղղիարէն Սաֆիր. տաճկերէն Կէօք եագութ ։ Պլինիոս լէ. 9. դնէ ելանել 'ի Մարս. որպէս և Մարբոդէոս 'ի գիրս քարանց, գլուխ 53. և քանզի ոչ գրեալ եմք այլուր 'ի գլուխն Ասուան, օտարազգի մատենագիրք բազում ուրեք զսահմանս Հայոց ընդ սահմանս Մարաց մի համարեալ շփոթեն ընդ միմեանս, վասն որոյ եդաք աստէն ։ Կալմէտ 'ի մեկն. Ծննդոց Բ. 11. կարծէ վասն այսր Սաֆիր քարի՝ գուցէ յանուանէ ժողովրդեան 'ի մերձակայս բնակելոյ առեալ զիւր անուն. և առ 'ի գտանել ժողովուրդ ինչ նմանանուն յայն կողմանս, այսինքն է 'ի կողմանս Փասիս գետոյ՝ զանազան անուանս յառաջ բերէ. բայց անգիտանայ զանունս Սպեր, որ է 'ի նոյն կողմանս զոր ինքն խնդրէ. և հնչմամբ առաւել քան զայլս մերձենայ առ անունս Սաֆիր. ո՞ւր թողցուք զի օտարազգի մատենագիրք բազմօք փոփոխեալ զանուն Սպերայ, այլ և այլ անուամբ կոչեցին, որպէս ունիս տեսանել 'ի յառաջորդ գլուխն Վաճառականութե ։

Զմրուխտ. լատիներէն Զմարակտոս ։ Պլինիոս լէ. 5. զերկոտասան տեսակս դնէ սորա, այլ 'ի մէջ նոցա Սկիւթականն ասէ լինել ազնուագոյն, « որք կոչին յանուն այնր ազգի՝ առ որս և գտանին » ։ Եւ քանզի մասն ինչ Սկիւթիոյ ձգէր մինչև ցգետն Փասիս, որ է Ռիոնիս, մարթ է կարծել թէ գուցէ 'ի կողմանս Տայոց կամ Գուգարաց ելանէր այս ակն. այլ օտարազգիք յանուն Սկիւթիոյ կոչեցին ։ Նա զի սկիւթացիք 'ի սկզբան անդ քանզի առ Երասխաւ բնակէին, որպէս ունիս տեսանել 'ի գլուխն Բնակչաց, մարթ էր թէ յանուն նոցա կոչեցին զայն ակն որ ներփակեալ էր կողմանց Երասխայ, որովհետև Ղազար 'ի նահանգին Այրարատու որ առ Երասխաւ ձգէր՝ դնէ ականս պատուականս ։

Գագատէս. լատիներէն Գագատէս ։ Ստրաբոն ժԶ. 747. 'ի յիշելն զՄիջագետս և զԿորդիս, բերէ ասէ « զնաւթ, և զքարն Գագատէս, որ զօձս փախուցանէ » ։ Ըստ այսմ գրէ և Պլինիոս լԶ. 19 ։ Եւ զի անդէն զԿորդիս ընդ Միջագետս խառնել երևի Ստրաբոն, զի դնէ բերել և զԱմոմուն, զոր

ջեալ քարէն. տաճկերէն Լամէլէքրտ. բայց տարբերի 'ի նմանէ, զորմէ բազմօք խօսին բնաբանք. և Սալմասիոս գրէ անուղէն, թէ Ասբեստոն չէ քար՝ որպէս կարծէ Պլինիոս, այլ հող[1]: Յիշեն զայս Ասբեստոն նաև Դիոսկորիս[2] և Վիտրուվիոս. այս է յիշեալն նաև Ստրաբոնի ժա. 529. ասելով. Գտանի 'ի Հայաստանի և "Օքսեօդէոս որ կոչի Ասբեստոս, զանձով խալքիս", այս խնքն է ծիրանի: Ուր Սալմասիոս զՕքսանտիքոսն ուղղելով, փոխանակ այնր դնէ Սանտրեքս կամ Սանդրեքս. որ նշանակէ, ասէ, զամենայն տեսակ կարմրոյ. և զայս Սանտիքս նոյն համարի ընդ Սանտարաքայի, որ է հանք 'ի գոյն կինաբարիսի:

## ՅՕԴՈՒԱԾ Դ

### Կենդանիք:

ՍՈՐԵՆԱՑԻՆ յաշխարհագրութեան իւրում վասն բարձր Հայոց գրէ ունել Երէս եղջերու. ընդ այն գրէ և վասն չորրորդ Հայոց. իսկ վասն Այրարատու գրէ ունել Երէս և Հաւս, և զամենայն պարարտոյն: Բայց Ղազար 19. առաւել որոշակի գրէ ունել Այրարատ նահանգին "զդաշտս մեծատարածս և Որսոյնս. զլեռինս շուրջանակի գեղեցկանիստս և պարարտարօտս, զհոծեալս Երէոմբ կճղակաբաժանիւք, և որոճայնովքն, և այլովք ևս բազմօք ընդ նոսին": Այլ 'ի պատմելն զորութեան իշխանացն 'ի Թղթ. 21. ասէ. "Եւ տեսանել է յամենեցուն ընթերիս որպէս և շրջակայս ինչ 'ի վերայ մնմեանց, զերեսի բազմութիւն, և զնոցուն զլխոց կարգմանց զառաջադրութիւն. յորոց ուրախացեալ ընկերին ձկնակերացն և մսակերացն անձինք առաւել քան զխորտիկաց անուշութիւն": Նման սմին գրէ Խորենացին և վասն ընտանցն Կարնոյ 'ի պատմութեան իւրում Գ. 59. "Լերինքն, ասէ, լի են Երէովք կճղակաբաշխիւք և որոճայնովք. նաև զանտառսն պաճարս բազմացուցանելն, մեծահասակս, քաջամարմինս, և յոյլս ցուցանեն համակեալս 'ի գիրութեան": Իսկ Ստեփաննոս օրպելեան 'ի գլ. ժա. յիշէ "զլեռինս Որսոտան և բազմաջրալիր վայ-

1 Զայսմանէ բարբառ ինչ կարեւ յաւելուն 1689: զատանել անձէն առ նորին Սալմասիոսի 'ի Պլինեան ընդդիմաստղութեան 'ի Թղթ. 810—814. 'ի տպ. Ուլտրեկեայ.

2 Դիոս. գիրք Է. գլ. 105: Վիտրուվ. գիրք Է. գլ. 5:

բաց Սիւնեաց»։ Եւ Թովմա Արծրունի Գ. 11. 'ի յիշելն զԳետս աւանն 'ի Ճուաշոյ գաւառ Վասպուրականի, ասէ. «Ի խաղս գետոյն Երասխայ, ուր հոյլքն Եղջերուաց խայտան. և վայրենեացն Խոզից, և Այծեմանցն մորիքն, և երամակք Ցռոց պատրաստականք. առ որոյն հրճուանք առ ձեռն պատրաստ հոլովին, ընդդէմ նայելով լերանց այրարատեան ազգաց Մասեաց»։ Որչափ ինչ յիշատակին 'ի գիրս 'ի կենդանեաց աստի՝ կարգեսցուք յառաջիկայդ։

Այծեամն։ Խորենացին յաշխարհագրութեան իւրում դնէ զսա 'ի Պարսկահայս։ Յիշատակին նաև 'ի Ճանապարհորդութեան Հոփփոխնեանց Այծեմունք մշկապորտք. «Եղանեն 'ի հայաստան գաւառ 'ի խորին խորշ լերինն մշկունեաց. 'ի սմա սար Այծեմանց մշկապորտք լինել»։

Ցիռ։ Խորենացին դնէ 'ի Պարսկահայս։ Իսկ Ղազար 21. 'ի ներբողեանն զԱյրարատ նահանգ՝ յիշէ զկենդանիս նորա զՑիռ և զԱյծեամն։

Եղջերու. Եղն. Վարազ. — Նոյնպէս անդանօր յիշէ զայսուիկ Ղազար. զորս զբանս կարես տեսանել՝ ուր ունիմք խօսել զորսորդութէ։

Ձի, կամ Երիվար. — Ստրաբոն ժա. 529. 'ի խօսելն զաշխարհէս Հայոց՝ ասէ, թէ «Այնչափ բարգաւաճ Ձիոց բերէ այս աշխարհ, ոչինչ ընդհատ 'ի Մարաց յայսմ մասին»։ Այլա 'ի Թղթ. 530. պատմէ թէ Արտաւազդ թագաւոր «բաց յայլոց հեծելազօրաց եցոյց Անտոնիոսի նաև զունդ ինչ վեց հազար հեծելոց համակ սպառազինելոց և կրթելոց, յորժամ միանգամայն ընդ նմա խաղայր 'ի վերայ Մարաց»։ Զբազմութիւն Ձիոց հայաստանեաց յայտ առնեն և սուրբ գիրք 'ի պատմելն յԵզեկ. իէ. 14. զվաճառականութիւն զոր առնէին ընդ Տիւրոսի. զորմէ տես 'ի յետագայ գլուխն։ Ստրաբոն 'ի Թղթ. 525. որոշէ նաև զտեղին. զի յետ գրելոյ թէ երկիրն Մարաց է լեռնային, միայն առ դրամբ Կասբից դիւր է և հովիտ բարեբեր, ապա ասէ. «Այս աշխարհ, որպէս և հայաստան, զերազանցէ 'ի դարմանս Ձիոց, և այնորիկ աղագաւ Ձիարօտ կոչի դաշտավայրն [1], ընդ որ անցանեն որք 'ի Պարսից և 'ի Բա-

[1] Այս այն դաշտավայրն է անուանեալ, որ առ յետոյն պատմագրաց մեր կոչի Մուղան, ուր և ազատներ բանակ բազմութեան հեծելազօր Մուղալ Թաթարաց։ Ուրեք 'ի յետնոց կոչի և Դուռըան, բայց վրիպակ գրչաց երեւի ինձ այդ, փոխանակ գրելոյ Դուրան. յորմէ անուն կոչեն 'ի հայաստան զամենայն դիւր և տափարակ տեղիս։ Մերձաւոր անուանս Մուղան՝ զասենեմք առ նախնիս զանուանս Գուղան, որ է գաւառ Վասպուրականի։

բերանն է գետն 'ի Կասբս, յանմէ վայրի յիսուն հազար մատակ ձիոց ճարակիլ աւանն 'ի Պարսից, և լինել այնմ արօտ արքունական»: Զայս թէպէտ 'ի Մարս դնէ Ստրաբոն, բայց քանզի առ Կասբիւք դնէ, պարտ է դնել առ Փայտակարանիւ որ էր 'ի սահմանի Կասբից, որպէս ցուցեալ է մեր 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 319. և որպէս երևի ինձ նաև 'ի նմին իսկ Փայտակարանի. իսկ 'ի 528. յիշէ Ստրաբոն զաւառս ինչ Հայոց մեզ անծանօթս, որք են Փանենի, Գանխոնի և Օրխիստէնի, զորս կոչէ բերօղս բազմութեան ձիոց և հեծելազօրաց: Բայց Քսենոփոն զայլ տեղիս Ձիարօտս յիշէ 'ի Հայաստան մերձ յակունս Եփրատայ, զոր պարտ է իմանալ վասն վտակին եկելոյ 'ի Կարնոյ. զի պատմէ 'ի Դ. գիրս արշաւանաց Կիւրոսի, թէ յետ անցանելոյ ընդ ակունս Եփրատայ՝ յորժամ հասին 'ի գիւղ ինչ հայաստանեայց մերձ 'ի Խալիւնահանգ, տեսին ձիս արքունականս, և հարցեալ ծանեան զի էին ձիք կարգեալք առ 'ի տալ հարկ արքային. և էին փոքրիկ քան զձիս Պարսից, բայց առաւել աշխոյժք և ոգելիցք. որք զուցէ էին 'ի Նըցուեց՝ որք այժմ կոչին յանուն Խնուսի[1]: Որով բանիւ յայտ առնէ, թէ Հայք յայնժամ ձի տային 'ի հարկ Կիւրոսի Պարսից արքայի. այլ քանզի 'ի գիրս այլ և այլ ցեղք նոցա յիշատակին, տես զոր ինչ ունիմք գրել ստորև: Պլինիոս Գ. 8. պատմէ զխաղալոյ ձիոց Սիպարիդեանց ասելով. «Աշխարհի է ընտելութիւն (ձիոց), զի հեծելազօրք Սիպարիդեանց առհասարակ ընդ լեռն զերդ նուագաց, խաղալով իմն ասեն են շարժիլ»: Եւ զի Սիպարիդք ըստ մեզ են Սպերացիք, որպէս ունիս տեսանել 'ի յետադայ գլուխն, վասն որոյ զայս բանն Պլինիոսի պարտ է իմանալ վասն ձիոց Սպերացւոց:

Նիսէոս. որ է մօտ 'ի մերս Նժոյգ. պարսկերէն Նէժմէ. տաճկերէն Եէտէկ աթ: Որպէս ազգ ինչ ձիոյ նշանաւոր առ արտաքին մատենագիրս. քանզի Հերոդոտոս գիրք Է. գլ. 40. պատմելով զհանդէս զօրաց Քսերքսեսի Պարսից արքայի ասէ. «Յետ սորա (անցանէին) ձիք սրբազանք գեղեցիկ զարդարեալք, Նիսէոս կոչեցեալք, սակս զի գոյ 'ի Մարաց աշխարհին դաշտավայր[2] լայնածաւալ Նիսէոս յորջորջեալ, որ բերէ ձիս մեծամեծս»: Սոյնպէս և համառօտութիւն Ստրաբոնի դնէ. «Առ դրամբք Կասբից որք մերձ են

1 Տես 'ի Նոր Հայաստան 'ի Թղթահամարն 43 և 81:

2 Այս է նոյն դաշտավայրն նախայիշատակեալ 'ի Ստրաբոնէ:

նախնի մատենագրաց յայտ առնեն թէ այս տեղի էր 'ի Մարս, բայց յայնմ սահմանի Մարաց՝ որ էր սահմանակից Հայոց աշխարհիս. զի Ստրաբոն ժա̃. 509. գրէ, թէ " Մամն Վրկանայ է նաև Նիսէա. բայց այլք անջատեն զայն անտի„: Այն զի՝ դնելով այլոց առ Կասպիւք և առդրամբ Կասպից՝ յայտ առնեն դնել 'ի Փայտակարան, որպէս առացաք 'ի վերոյ, որ 'ի բազմաց հետէ համարէր ընդ աշխարհս Մարաց, և կոչէր նաև Կասպք: Այլ 'ի բաց թողեալ զքննութ տեղւոյն՝ պարտ է քննել թէ արդեօք և հայաստան աշխարհ բերէր զնոյն տեսակ ձիոյ Նժոյգ կամ Նիսէոս յորջորջեալ: Ստրաբոն ժա̃. 525. 'ի Ճառելն զՄարաց՝ յերկուանոջ խօսի. "ԶՆիսէոս ձիս, զորս վարեն թագաւորք, զընտիրս և զմեծամեծս, ոմանք ասեն (յաշխարհէն Մարաց) անեն առնուլ, այլք 'ի հայաստանեաց„: Բայց 'ի թղթ. 529. և 530. 'ի Ճառելն զհայաստանեաց հաստատելով գրէ. " Այնչափ բազմութիւն ձիոյ բերէ այս աշխարհ (հայաստան), ոչինչ ընդհատ 'ի Մարաց յայսմ մասին, մինչև նաև աստ ծնանին Նիսէոս ձիք, զորս սովոր էին վարել թագաւորք Պարսից. և Սատրապն հայաստանեաց ամի ամի քսան հազար մտրուկս առաքէր„: Ոչ միայն թագաւորք Պարսից՝ այլ և մերքն 'ի կիր առնուին ըզՆիսէոս կամ զՆժոյգ ձի, որպէս յայտ առնէ Բուզանդ Դ. 12. ուր առէ վասն երկրորդի Արշակայ թագաւորի, թէ ետ Խադայ եպիսկոպոսի " Բազում Նժոյգս զարքունական ձիոյ՝ արքունի օճառովք, ոսկիճարմանդ ապրշումովք„:

Վասն կերպարանաց Նժոյգ ձիոցս գրէ Ստրաբոն ժա̃. 525. ունել " տեղի իին սեփական. որպէս և որք Պարթևականն կոչին այժմ, տարբեր (են) 'ի յունականաց, որպէս և 'ի մերոց„: Նախագրեալ բանք յունաց մատենագրաց ասեն լինել մեծամեծ և ընտիր, իսկ մերքն կոչեն սրավար, սրաթռիչ, օդապարիկ, որք ցուցանեն զերագութիւն ընթացից այս ազգ ձիոյ, որով և յայտ առնեն մի և նոյն տեսակ ձիոյ լինել զոր այժմ կոչեն Քէհէյլան [1]: Գրիգոր մագիստրոս 'ի թուղթն որ առ Գրիգոր Մոկաց եպիսկոպոս, յիշէ այսպիսի ինչ վասն բնութեան Նժուգի յասելն. " Եւ

1 Տես վասն այսր 'ի Նոր Հայաստան 'ի թղթահամարին կ2: Բայց 'ի նմանութէ բնութեան զոր ասեն երկոցունց ազգաց Նժոյգի և Քէհէյլանի, նաև ծնունդ և սնունդ նոցին համանմանիք. զի որպէս զՆիսէոս կամ զՆժոյգս՝ Մարք և Հայք էին որք պահէին, և միայն յաշխարհի նոցա ծնանէր, ասէ Ստրաբոն, այնպէս են այժմ և Քէհէյլան ձիք: Տես անդ 'ի Նոր Հայաստան:

մահաշաւնչ հաւ քաղուն քարգմանական Նժոյգին նախ բուրէ քան զկատւն ,, ։

Պարթևական Նժոյգ ։ Պլինիոս Ը. 25 . յիշէ զայս ձի ասելով . " Պարթենեան Նիսէա ազնիւ ,, ։ Նիսէա կոչելով յայս աւանէ թէ էր նոյն իսկ տեսակ ձիոյ՝ զորմէ խօսեցաք 'ի վերոյ . և քանզի Նիսէա կամ Նժոյգ միայն 'ի Մարս և 'ի Հայս ծնանէր ըստ գրեցին մատենագիրք նախայիշեալք , յայտ է թէ առ Պարթևս[1] կոչէ զայն որ սեփական էր Մարաց և մանաւանդ Հայոց աշխարհին . ընդ որ չէ պարտ զարմանալ , զի որպէս գրէ անդէն Պլինիոս . " Թագաւորութիւնք Պարթևաց առ հասարակ են ութուտասանք , զի այսպէս բաժանեն զգաւառս . . յորոց մետասանքն որք վերին անուանին , սկսանին 'ի սահմանակցութենէ հայաստանեաց ,, ։ Արդ քանի՛ դիւրին լինէր մատենագրաց շփոթել , և զմերձակայ տեղիս հայաստանեաց՝ զոր օրինակ էր Փայտակարան նահանգ մեր տեղի Նիսէա ձիոյ , յանուն Պարթևաց կոչել ուրեք ուրեք , մանաւանդ յետ տիրելոյ պարթևազեան առ հիմն 'ի վերայ մեր ։ Զնոյն իմա ասել և վասն բանին Ստրաբոնի ԺԱ . 163 . ուր զձիս սպանիացւոց նմանեցուցանելով ձիոց Պարթևաց , այսինքն է հայաստանեաց որ ընդ տէրութեամբ Պարթևաց , ասէ . " Արագութեամբ և յաջողութեամբ ընթացից գերազանց են քան զայլս ,, ։

Տաճիկ Նժոյգ , այսինքն արագընթաց երիվար . մանաւանդ յԱրաբիա , զի Արաբ՝ է երագ ։ Անուն Տաճկաստան բառ խառնեալցուոյն է մի 'ի գաւառացն Արաբիոյ . վասն որոյ և ասելն Տաճիկ ձի՝ է ասել Զի արաբացի . որպէս ասի և Գայլ արաբացի , այս ինքն սրընթաց ։ Ուրեք ուրեք մարթ է կարծել այսպէս կոչեցեալ և զայլ տեսակ ձիոց յԱրաբիա՝ որք ունին զնմանութիւն նմանն տաճիկ ձիոյ ։ Վասն որոյ և այսպիսի մակդիր անուամբ՝ ոչ զայլ տեսակ ձիոյ կոչեցեալ համարիմ զՆժոյգն առ Ստեփաննոսի օրպելեան , որ գրէ վասն Անդոկայ իշխանին Սիւնեաց՝ որ զնոյց յաւարի առնուլ զՏիզրն " արամբք ընտրելովք , ձիր և քաջ Տաճիկ Նժոյգօ ,, ։ Զի ոչ որք 'ի նախնի մատենագրաց դնէ յԱրաբիա ծնանիլ Նժոյգս , կամ որ նոյն է Նիսէասս ։

Ոսկեզօծ Նժոյգ ։ Այս է տարբեր իմն անուն յիշատակեալ 'ի թուղթն դաշանց . ուր 'ի թուելն զպէնս և զզարդս զոր ետ մերոց զօրաց մեծն Կոստանդիանոս , նախ յիշատակին

[1] Զի զԲաւրդէնի Պտղոմէոս դնէ լինել տեղի 'ի Պարթևս ։

ծովայինք օդաքանչիւ երիվարք. այսպէս Երևելի երիվարք, Նժոյգ ծո-
վայինք: Ցայս սակս թուի այսպէս կոչեցեալ, ըստ որում
ընդ ծով տայր բերել կայսրն զերիվարսն զայնոսիկ յաշ-
խարհաց անտի յորս ծնանէին. որք են Մարք և Հայք:

Չէ՞ հրաշալի: Ի գիրս մեր յիշատակին ուրեք ուրեք և
ձիք գերազանցս քան զայլ ընտիր ձիս, զորս յիշեսցուք առ-
տամնոր առ 'ի ցուցանել զազնուութիւն ձիոց աշխարհիս Հայ-
ոց. քանզի թուին լինել ձիք սեփականք աշխարհին՝ և
ոչ օտարք. այսպիսի էին երկու ձիք ա̄ռ. Տիրանայ Թագա-
ւորին, զորոց գրէ Խորենացին Բ̄. 62. Սորա “ձիոց եր-
կուց լեալ թեթև առաւել քան զՊեգասոս երագութ̄ք
անքաւ, զորս ոչ երկրակոխս, այլ օդագնացս համարէին.
յոր խնդրեալ հեծանել Դատաքէի ուրումն իշխանի Բզ-
նունեաց, պարծէր ընչեղագոյն գոլ քան զարքայ„: Բու-
զանդ Գ̄. 20. վ̄ն ձիոյն ա̄. Տիրանայ արքայի պատմէ. “Չի մի
էր երիվար արքային Տիրանայ, զորմէ կարի զարմանային.
և էր ձին գունով Ճարտուկ Ճանճկէն, սա լի էր քաջութ̄ք,
անուանի և հոյակապ, մեծ և բարձր երկայն քան զամե-
նայն ձիս, և տեսանելով քան զայլս գեղեցիկ, զանազան՝ որ
համեմատ նմա այլ ոչ գտանէր. զորմէ յերթալն իւրոյ դես-
պանութեանն՝ սենեկապետն արքային Փիսակ մատնեաց զձին
Վարազայ„: Այլ Տիրան ոչ կամելով ատէ զնոյն տալ Վա-
րազայ, զայլ ձի ետ փոխանակ այնր. “Ի խնդիր անկանէր,
ասէ, զնոյն գոյն ձի, զնոյն նշան, զնոյն պատկեր, բայց 'ի
մեծութիւնէն՝ զի այնչափ ուրեք ոչ գտանէր, զնոյն նման
զնոյն կերպարանս Ճարտուկ Ճանճկէն գտեալ„: Իսկ 'ի
Ե. 2. յիշէ զայլ իմն ձի զարմանալի. “Եւ էր 'ի ժամա-
նակին յայնմիկ երիվարն Մուշեղի (զօրավարին Պապայ
արքայի) Ճերմակ ձի մի. իսկ թագաւորն Պարսից Շապուհ
յորժամ առնոյր գինի 'ի մատուռնան ըմպել . . . ասէր.
Ճերմակաձին գինի արբցէ. և ետ նկարել զտաշտ 'ի պատ-
կեր զՄուշեղ Ճերմակաւն. և 'ի ժամ ուրախութ̄ն իւրոյ
դնէր զտաշտն առաջի իւր, և յիշէր հանապազ զնոյն բանս
ասելով թէ Ճերմակաձին գինի արբցէ„:

Նոյն: Ղազար 'ի թղթ. 19. զայրաբատեան իշանց գրէ
ասելով. “Թանձրախիտ աճմունք խոտոցն զանթիւ արօ-
տականս ընտանի Իշխոյ, և զանհամբոյր բոյս վայրենի
էրէոցն յագեցուցեալ, թանձրաթաղանթս, առոգագա-
ւակս, սմբացեալս գիրութ̄ք զենաւ մարմինն ցուցանեն„:
Անուանք երից գաւառաց Մոկաց նահանգին՝ յանուն
այնր կենդանւոյ յորջորջեալք, որք են Իշոց գաւառ,

Իշլոյր, Մխոս Իշլոյր, ցուցանեն զկապղմութիւն ընտիր ընտիր էշոց յայնմ Մակաց նահանգի, նաև զտուրևառութիւն նոցա յայն տեղիս :

Որդն, յորմէ Որդան կարմիր : Խորենացին յաշխարհագրութեան վասն Այրարատոյ ասէ. "Ունի Այրարատ ... և Որդն յարմատոյ սիզոյ, 'ի զարդ կարմրութեան գունոյ". Եւ 'ի պատմագրութեան գրի. "Որդն սիզաբերեալ յարմատոյ առ 'ի զարդ", և այլն : Յիշէ զայս և Ղազար 'ի Թղթ. 20. ասելով. "Նաև զարմատս եղեգնաստեր բուսոցն ոչ ընդունայն մնացանել յինքեան ամենաբարդձ դաշտն Այրարատոյ, այլ և 'ի նմանէ ծնեալ Որդունս 'ի զարդ կարմրատեսիլ գունոյ ընծայել օգտատուրացն շահս և շքեղութիւս" : Որդան կարմիրն հաշակեալ 'ի գիրս մեր՝ գոյն կարմիր գեղեցիկ, յորդամ տառի լինի. և կոչի լատիներէն Քօքքինէլլա դինքդօրիա. գաղղիարէն կոչի Քօշնիյլ : Այս որդն է 'ի կարգի այնց միջատաց՝ զորս բնաբանք կոչեն Բռօխօլլ Միջատք. կամ Կոլէ Միջատք. որոյ չորացեալն զայս այժմ յեւրոպիա 'ի Մեքսիկանէ որ յԱմերիկա. որ քանզի անձև իմն էր՝ ընդ բազում ժամանակս ոչ ծանեան եւրոպացիք թէ իցէ որդն, այլ յապա ժամանակս թանալով 'ի ջուր կամ 'ի գինի՝ 'ի յայտ եղ ձև որդանն : Իսկ առ օսմանեանս զայս յարեւելից, և է նուլթ շահաւոր 'ի վաճառականութեան, առ որս կոչի Զինէ այսինքն ծաղիկ, որ 'ի սկզբան անդ թուի ոչ որդն, այլ ծաղիկ ինչ կարծեցեալ առ նոսա և անտի ընկալեալ զայս անուն : Գըրմըզ գոյնն՝ որ նոյնպէս է որդն, ըստ ընտապատմից այլ է յառաջնոյն :

## ՅՕԴՈՒԱԾ Ե

Գազանք :

ԱՌԻՒԾ : Խորենացին յաշխարհագրութեան վասն չորրորդ Հայոց գրէ ունել 'ի գաւառին զԱռեւծ. որում և համաձայնի այժմեան վիճակ. զի յորժամ չեւ էր շինեալ Արզնի քաղաք, լի էին անդ անտառք, և յանտառսն լի առիւծք, և այլ գազանք, որպէս գրեալ է մեր 'ի Նոր Հայաստան 241 : Իսկ Բուզանդ 'ի Կորդուաց գաւառին յիշէ զառիւծ, յասելն Ե. 26. վասն Շաղիտայի. "Զոզաւ 'ի գաւառն Կորդուաց ... և բնակէր 'ի մէջ Առեւծուց. առեալքան զքանն Առեւծ հանապազ շրջէին ընդ նմա" : Որում համաձայ-

նի և Ստրաբոն ժզ. 747. որ 'ի Միջագետս դնէ զԱրուած. զի Ստրաբոն անդէն և զԿորդիս խառնէ ընդ Միջագետս, որպէս և զԱնծօնուամ բոյոն դնէ 'ի Միջագետս, զոր այլք առաւել Կորդուաց ընծայեն։ Համաձայնի և Խորենացւոյն, զի որպէս գրեալ է մեր 'ի մեծ Հայս 39. 40. Նաև չորրորդ Հայք կոչի Միջագետք. ըստ որում անկանի ըստ մասին 'ի մէջ Եփրատայ և Տիգրիսի, թէպէտև 'ի սկըզբնաւորութեան անդ գետոցս։ Թոմա Արծրունի գ. 11. Նաև 'ի Ճուաշռոտ գաւառ Վասպուրականի՝ 'ի խառն գետոյն Երասխայ յիշէ զԱռուածոյն մօրս. զորոյ զբանս եդաք 'ի վեր անդր։

Խոնչ կամ Խնձ։ Զայս Խորենացին դնէ 'ի Մոկս ասելով. Ունի " 'ի գաւառաց զԽնձ զեղեցկախաղացուց ": Զոր Բուզանդ 'ի մեծ ծովս դնէ յասեղն Ե. 27. վասն որոյն Եպիփանու աշակերտին Դանիելի. " ժողովէին առ նա արջք և Խնձք ":

Նափր. լառնեներէն Դիկրես։ Զայս գաւառ Ովկիդիոս լատին բանաստեղծ դնէ 'ի Հայաստան. զի 'ի պարսաւելն զկամաւոր վիժմունս, ասէ. "Զայս և ոչ Վափրք գործեն 'ի քարանձաւս Հայաստանեաց ":

Նշուռուն։ Տես վասն այսր զոր ինչ գրեալ ունիմք 'ի գաւառ Բուլոց 'ի Նահանգին Դուգարաց։

## ՑՕԴՈՒԱԾ Զ

Թուլանք։

ՂԱԶԱՐ 'ի Թղթահամարին 20. 'ի յիշելն զսերս Այրարատու՝ յետ և զբազմութիւն Թռչնոց նորա ասելով. "Մնուցանէ յինքեան երկիրն Ջրովք արուեստիւք զառաւելութիւն Հաւուցն յուրախութի և 'ի օթափումն որսատենչ ազատացն . . . Եւ կամ այլ բազում և անհամար ցամաքայնոցն և Ջրայնոցն Ջոկք Թռչնոցն ": Ապա 'ի պատմելն զբարորդութիւն մանկանց Իշխանացն, գրէ. " Բազմազան վայրենի Հաւուց ձագս և ձուս 'ի կղզեաց գետոյն բերեալ մատուցանեն ընծայս Իշխանացն ": Իսկ Խորենացին յաշխարհագրութեան իւրում վասն բարձր Հայոց գրէ ունել Հաւս [illegible]։ Զնոյն գրէ և վասն չորրորդ Հայոց, և մեծ Այրարատու, ըստ ձեռագրաց։ Այլ 'ի պատմութեան իւրում գ. 59. 'ի յիշելն զծովացեալ մօրն զոր գործեն

աղբիւրք Եփրատայ որ 'ի Կարին գաւառ բարձր Հայոց, դնէ 'ի նմա զբազմութիւն ջրային թռչնոց ասելով. "Ցո-րում (են) անբաւութիւնք . . . զանազան հաւուց ճարա-կաւորաց, յորոց 'ի ձուոց միայն կերակրեալ լինէին բնա-կիչքն,,: Այլ յայսչափ թռչնոց առատ յանուանէ յիշատա-կեալքն 'ի գիրս մեր՝ են սոքա:

Դեղձուկ: Խորենացին յաշխարհագրութեան մէջ Աղձնեաց նահանգին գրէ ունել հաւ Դեղձուկ. որ յայլ եւայլ օրի-նակս գրի և Դեղուկ, և Գոհոն, և Գեհոն:

Կաքաւ. } Խորենացին վասն Մոկաց նահանգին գրէ
Սալամբ. } ունել ի հաւուց զկաքաւ: Իսկ Ղազար 20. յԱյրարատ նահանգին յիշէ զերկոսին եւս ասելով. "Մնուցանէ յինքեան երկիրն . . . զկրկջաձայն քաղցրաձայն առապարաւէր, վիմամայր, սորամուտ երամս կաքաւուցն և Սալամբեացն,,:

Կռունկ: ՅՈւտի նահանգին դնէ Խորենացին լինել ի հաւուց՝ կռունկ:

Աքար: Յիշատակի առ Ղազարայ 20. յասելն մէջ Այ-րարատ նահանգին. "Մնուցանէ . . . զեղեգնաբնակ թփա-մուտ մացառաղօղ պարարտամարմին զանուշահամ ազգ Աքարացն վայրենեաց,,: Որ գուցէ էր կոչեցեալն տաճկերէն Եաբան խօրօզի. իսկ իտալերէն Ֆաղանէ:

Փոր: Ի նահանգին Այրարատայ դնէ Ղազար 21. ասե-լով. "Մնուցանէ . . . զջրասուզակ մամռախնդիր խաղա-կեր մեծաձայնս և յաղթամարմինք հաւուցն Փոցն, և Թանչցն, և Սագն,,:

Աստանօր յիշատակեսցուք և զթռչունն անուանեալ 'ի Դուռնըրֆօռ Ճանապարհորդէն Թագաւոր Աքաղաղաց զոր Սօնինի 'ի վերջին ճանապարհում բառարանս կոչէ Թռչուն Հայաստանեայ. Թէպէտ և 'ի ներքոյ պատկերի նորա՝ որ գտանի 'ի հանդիսարանի գրատան Փարիզու՝ գրեալ կայ Թռչուն Պարսկական: Այս թռչունն չեւ է ծանուցեալ. և հայելով 'ի գեղեցկութիւն նորա զոր ցուցանէ պատկերն՝ անկ էր կարգել 'ի դասս սիրամարգաց, քան թէ աքաղա-ղաց՝ յորս եդ Դուռնըրֆօռ:

## ՅՕԴՈՒԱԾ Է

### Ձկունք.

ՂԱԶԱՐ 'ի Թղթահամարն 20. 'ի գովելն զԱյրարատ նահանգ յիշէ և զձկունս նորա ասելով. «Գետոցն գնացք բազմակերպ ձկամբք մեծամեծօք և փոքունքք՝ զանազանեալ համովք, և այլևայլ տեսովք ուրախացեալ լցուցանէ զշնորհս ընչից, և յագուրդ որովայնից ժրացելոցն, և անվեհեր ջանացողացն»։ Այլ 'ի Թղթ. 21. 'ի պատմելն զձկնորսութենէ, ասէ. «Որոց դէտակն կալեալ ըստ համապատզօրեայ ջրայոյզ ջրածուփ Ձկնորսացն մանկունք՝ ընթացեալք 'ի յառաջնախարարագունդ որերոյն՝ Ձկանս 'ի յորսոյ.. բերեալ մատուցանեն ընծայս իշխանացն... յորոց ուրախացեալ բերկրին ձկնակերացն և մսակերացն անձինք»։ Խորենացին յաշխարհագրութեան վասն չորրորդ Հայոց գրէ ունել Ձկանս. յայտ է թէ 'ի ծովակին՝ որ 'ի յետագայ ժամանակս ծովք կոչէր, զորմէ գրեցաք 'ի գլուխն Գետոց։ Եւ 'ի Գ. 59. 'ի յիշելն զՄօրն գործեալ յաղբերացն Եփրատայ որ 'ի սահմանսն Կարնոյ՝ դնէ լինել 'ի նմա անբաւ Ձկանց։ Իսկ Բուզանդ Գ. 8. յիշէ զՁկնաւանսն արքունի առ գետակաւ յԱւետեան աւանի[1], որ էր յԱռաքերանի գաւառ Վասպուրականի առ ծովուն Բզնունեաց։ Զնոյն յիշէ և Գ. 22. որոց անունն իսկ յայտ առնէ, թէ էր անդ ձկնարան արքունական 'ի տեսութիւն կամ 'ի զբօսանս արքայի 'ի վերայ գետակին՝ որ գուցէ էր այժմեան Մարմէտ կոչեցեալն; ուր արդարև մինչև ցայժմ է տեսանել զորադրդուն անբաւ բազմութիւն Տառեխ ձկան[2]։ Ասողիկ Գ. 4. յիշէ տեղի ինչ Ձկնաղանդու 'ի Նիգ գաւառին Այրարատու։ Եւ Կիրակոս յիշէ Ջծողակս և գլխոս ձկնորսաց, յորոց տուրս առնուին Թաթարք։

Իսկ տեսակ ինչ ձկան յանուանէ յիշատակեալ միայն 'ի Թուղթն Մագիստրոսի առ իշխանսն Մամիկոնէից գաւառնենք, որոց սահմանն էր Տարօն. «Խոստացար երբեմն մեզ նպաստ առաքել Ղոււղակս (Ձկունս), և այն յատուկ Կոր–

1 Տես զբան Բուզանդայ 'ի մեծ Հայս 'ի Թղթահամարն 196։

2 Տես 'ի Նոր Հայաստան 'ի Թղթահամարն 135։

մրմռայթ [1], արտաքսեալ զնա կարթիւք 'ի կարկաչահոս և 'ի կոհակաւէտ ականակիտ ականց„:

Պլինիոս լա. 2. յիշատակէ զհրաշալի ձկանց աւելով. « Կտեսիաս գրէ լինել 'ի Հայաստան աղբիւր ինչ, ուստի ելեալ Ձկունքն սևագոյնք առժամայն մահ բերեն 'ի կերակուրս„: Զնոյն պատմէ և Անտիգոնոս:

1 Տես կարգաւորեալս 'ի Նոր Հայաստան 'ի Թղթահաւաքն կկ. և այլ ուրեք



# ԳԻՐՔ ՈՒԹԵՐՈՐԴ

## ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆ

### ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

*ԱՌԱՋԻՆ արուեստ մարդոյ պարտ է ասել զերկրագործութիւն, և երկրորդ զվաճառականութիւն. զի որպէս առ 'ի դարման կենաց հարկ էր գործել զերկիր, հարկաւ ապա և զյաւելեալսն 'ի բերոց տանել այլուր 'ի վաճառ, առ 'ի զփոխարէնն առնուլ անտի որ պակասէր յերկրի իւրում, և որում կարօտէր։ Զայս եղեալ, պարտ է ասել թէ որպէս երկրագործութիւն նախ առաջին 'ի Հայաստան սկիզբն էառ, որպէս ունիմք գրել 'ի գլուխն Դպրութեան Արուեստից, նոյնպէս և վաճառականութիւն*[1]*. որպէս և յայտ է 'ի սեփական յօժարութենէ ազգիս 'ի վաճառականութիւն, մանաւանդ 'ի բնութենէ հակամէտ գոլով յայն արուեստ։ Զորն ակնարկէ և բան Խորենացւոյն յաշխարհագրութեան, ուրանօր ասէ. "Քանզի զյունականաւն և զկապադովկականաւն և մերոց իսկ արանց պատահեաց շուրջ անցանել,,։ Արդ ոչ եթէ առ 'ի զբօսանս ինչ կամ առ ընդվայրայած հետաքննութեան ասէ զմերոցն շուրջ անցանել զծովեզերբք երկոցունց ծովուցն՝ զմիջերկրականն, զոր յունական ծով կոչէ, և առաւել զկասպիականն, որ դժուարին էր յոյժ սակս խուժադուժ ազգացն բնակելոց յարևելեան և 'ի հիւսի-*

1 Զայս ընդունի և Հուետիոս. որ 'ի գիրս Վաճառականութեան և Նաւարկութեան նախնեաց տպագրեալ 'ի Լիոն 1763. գլ. Գ. Թղթահամար 15. գրէ. "Գետեզերք Եփրատայ որպէս խանձարուրք եղեն (այսինքն սկզբնաւորութիւն) մարդկային ազգի, նոյնպէս և վաճառականութեան,,: Արդ եզերք Եփրատայ որք եղեն անդի սկզբնաւորութեան մարդոյ՝ էին 'ի Հայաստան. ապա և սկզբնաւորութիւն վաճառականութեան եղև յաշխարհին Հայոց։

սայլին ծովեզերս նորա, այլ առ 'ի շահ վաճառականութեան։ Զայս հաստատէ և Ստրաբոն ժա. 506. յասելն վասն Աօրսք կոչեցեալ ազգին որք բնակէին յառաւել հիւսիսակողմն Կասպից ծովուն, և 'ի կողմն Տանայիս գետոյ. "Եւ այսպէս (Աօրսք) նաև տուրևառութեան առնէին, ուղտուք զհնդկային և զբաբիլոնեան վաճառս առեալ 'ի Մարաց և 'ի Հայոց, նաև զոսկի կրէին առ փարթամութեանն„։ Ապա Մարք և Հայք էին որք զայն վաճառս բերէին։

Իսկ յառաջ քան զգրելն վասն վաճառականութեան մերոց՝ արժան է սակաւուք յուշ առնել, թէ վաճառականութիւն ընդ ցամաք առաւել նախկին է ժամանակաւ քան զծովայինն. և այն 'ի դիւրնոց սկսեալ նախ՝ յետ այնորիկ ապա և 'ի դժուարինսն ժամանէր։ Քանզի հարկ էր նախ իւրաքանչիւրոց զիւր վաճառսն տանել յիւր սահմանակից աշխարհ. և բնակչաց այնր աշխարհին՝ տանել յայլ դրակից աշխարհ. և այնպէս յաշխարհէ յաշխարհ փոխադրեալ լինէին վաճառք[1]։ Այլ իբրև բազմացաւ տուր և առութիւն՝ յաճախեցին և վաճառականք, որով և պէտք եղեն սահմանելոյ նորոյ արուեստի. և յայնժամ սկսան ընկել արուեստաւորքն կարաւան կազմել, ուղտուք և գրաստուք տանելով զվաճառսն 'ի հեռաւոր աշխարհս. զոր օրինակ է տեսանել առ Իսմայելացիս և Մադիանացիս, զորոց գրեն սուրբ գիրք ծննդոց լէ. 25. 28. որք յաւուրս Յակոբայ նահապետի զվաճառս Արաբիոյ տանէին յԵգիպտոս։ Այս արուեստաւորք յորժամ հասուցանէին 'ի ծովեզերեայ աշխարհս, նաւք բարձեալ անտի տանէին

1 Զի յորժամ 'ի սկզբան անդ ընդ ցամաքս լինէր վաճառականութիւն՝ փոխադրութիւն վաճառաց ոչ ուղղակի 'ի հեռաւոր աշխարհս, այլ 'ի մօտաւորս լինէր. զի և անդ եղեալ վաճառականք մերձաւորայն զինչ առեալ բաւական շահել տային ընկերացն. ապա և հետզհետէ տանէին յիւրեանց մերձաւոր աշխարհս մինչև 'ի գալ վաճառաց կամ 'ի ծովեզերեայ տեղիս, և կամ յայն վաճառատեղիս ցամաքի ուր առևտուր լինէր ժողովել զվաճառս։ Անդ հաւաքէին և վաճառականքն նաւուք եկեալք սակաւօրեայ ճանապարհ սպառեալ ընդ ցամաք. և անտի գնեալ իբրու գանձեին զվաճառեալ վաճառսն 'ի ծովեզերս՝ առ 'ի տանել նաւուք այր և կանայք։ Այս կարգ պահէր մինչև ցայժմ յայն երկիրս՝ յորս ընդ ցամաքս առնեն վաճառականութիւն որպէս զբարս Հնդկաց՝ պարսիկ վաճառականք զարդիք Հնդկաց առնուն, որպէս զի վաճառեսցեն իւրեանց դրացի վաճառականաց որք են յասմանեան աշխարհս, և նոքա բերեալ վաճառեն վաճառականաց մերձակայից։ Այսպէս մերձաւոր մերձաւորի վաճառելով ոչ պարապաւորն յերկարութէ ճանապարհին, և ոչ թողուն առանց շահու զգործ իւրեանց զայն չափ երկար ժամանակս, որպէս թողուն նոքա որք զերկար ճանապարհ հատանեն առ 'ի գնալ 'ի հեռաւոր աշխարհս։

յայլ ծովեզերեայ աշխարհս։ Եւ այնպէս ծովագնաց վաճառականութեան յետոյ ուրեմն սկիզբն լինէր քան զցամաքայնոյն, որպէս և Հուետիոս իսկ ասէ [1] թէ մատենագիրք որք Ոսկի դարուն կացին ստորագրողք, զվաճառականութիւն ցամաքային նմին սեփականեն, և Երկաթի դարուն՝ զծովայինն, զոր հնարեաց, ասեն, ագահութիւն։

Նաև ոչ 'ի պատճառս ծաղկելոյ վաճառականութեան ծովայնոյն, դադարէր ինչ կամ խափանէր ցամաքայինն. քանզի արաբացիք ոչ միայն ընդ ծով, ասէ Հուետիոս 'ի գլ. ժզ., "այլ և ընդ ցամաք առնէին վաճառականութիւն ընդ փիւնիկեցիս, ընդ Ասորիս, ընդ Միջագետս և ընդ համօրէն մնացեալ ազգս Ասիոյ մինչև 'ի ծովեզերս Պոնտոսի"։ Զորոց և զվաճառականութիւն ընդ ցամաք յիշէ Դիոդորոս սիկիլիացի, 'ի մէջ բերելով զճանապարհ Եամպուղայ՝ որով յայտնի լինի հնութիւն տուրեւառութեան արաբացւոց ընդ ցամաք, որպէս ասէ նոյն ինքն Հուետիոս 'ի թղթ. 331. որ և 'ի թղթ. 342. յիշէ զվաճառականութիւն փիւնիկեցւոց՝ որք առնէին ճանապարհաւ ցամաքի յԱսորիս, 'ի Միջագետս և յասորեստան մինչև 'ի սահմանակից տեղիս Հնդկաց, ուստի բարձեալ բերէին վաճառականք նաև զկապիկս, զսիրամարգս, ըղժանիս փղաց, որք յիշատակին 'ի սուրբ գիրս։ Եւ քանզի 'ի յաճախելոյ վաճառականաց 'ի քաղաքս ինչ՝ 'ի նոսին առաւել ծաղկէր արուեստս այս, նմին իրի քաղաքքն այնոքիկ կարգեցան վաճառատեղիք, զոր մերքն կոչեն Շա- [illegible]. ուրանօր յամենայն սահմանաց գումէին վաճառականք, բերելով և գնելով զվաճառս։ Զայսոսիկ կարեւոր է 'ի միտ առնուլ, զի դիւրիմաց լիցին զոր ասելոց եմք զկնի [2]։

Յաղագս վաճառականութեան ազգիս՝ յանուանէ յիշատակի նախ 'ի սուրբ գիրս. առ Եզեկիէլի՝ յասեն իէ. 14. "Եւ 'ի տանէ Թորգոմայ ձիովք և հեծելովք և ջորւովք լցին զվաճառս քո"։ Թորգոմ անուամբ պարտ է իմանալ զՀայս. որպէս պատմութիւնք մեր յայտնի ազգաբանութ ցուցանեն զայս, և որպէս համարեցան նաև Եւսեբիոս,

1 Ի գիրս վաճառականութեան և նաւարկութե նախնեաց գլ. Գ. Թըղթահամար 15։

2 Ի գաղղութե մասին պատկանի առեւրոպացւոց գիրք պատմութե վասն ցամաքային վաճառականութե նախնեաց. զի գրեալքն Հուետիոսի ճառին առաւել զծովային վաճառականութէ. ուր զհամառօտակել նաւարկութե ընդ ամենայն ծով՝ կարի իմն 'ի վաղեմի ժամանակս առաջել համէ քան զոր գնեն այլք։

տայ և Մարաշոյ մերձենայ յոյժ 'ի միջերկրականին ծով. անդ ընթերակից իւր ունի զայլ գետս որք իջանեն յԱնարզաբայ և 'ի Տարսոն[1]. 'ի ձեռն սոցա հաղորդի նաև ընդ միջերկրականն ծովու, սուղ ինչ ճանապարհ առնելով միայն ընդ ցամաք.

Այսպիսի ունելով դիրս հայաստան աշխարհ՝ դիւրացուցանէ յոյժ զվաճառականութիւն ընդ ամենայն աշխարհ. և յայս առնէ թէ 'ի հնումն բացեալ էր ընդ ամենայն կողմն աշխարհի ճանապարհ վաճառականութե առաջի մեծոց վաճառականաց. զի յամենայն կողմանց բերէին զվաճառս 'ի նախադրեալ շրջակայ ծովուց. և 'ի ծովուց անտի կէս մի ը̄ գետս՝ և կէս մի ընդ ցամաք գային հասուին 'ի հայաստան: Այսպէս և ընդ նոյն ճանապարհս վաճառք հայաստանեաց գնային սփռէին յայլևայլ աշխարհ. զորոյ և զյիշատակութիւն ինչ գտանեմք նաև 'ի գիրս Յունաց և հռոմայեցւոց, որով իմքն հայաստան լինէր միջոց այս ամենայն ճանապարհաց, և միջոց վաճառականութե արևելից և արևմտից[2].

Ա. Առաջին ուղի ընդ Կասպից ծով:

Մասն այսր ուղւոյ գտանեմք յիշատակութի յերկուս երևելի մատենագիրս. զի Ստրաբոն ժա. 509. յետ գրելոյ՝ թէ Վրկան աշխարհ բաժանի Օքոս և Օքսոս գետովք մինչև 'ի բերանս նոցա՝ որովք 'ի ծով մտանեն, "Ի սոցունց, ասէ, Օքոսն ընթանայ ընդ Նիսէա. ոմանք զՕքոսն հոսիլ ասեն 'ի յՕքսոս. Արիստոբուղոս դրէ՝ եթէ 'ի գետս զոր տեսեալ է ինքն յԱսիա, մեծագոյն է Օքսոսն՝ բաց 'ի հնդկայնոց. ասէ եթէ և դիւրանաւարկելի է...

Յուամայեան 'ի պատմութեան վաճառականութե սեաւ ծովու, հատոր Ա. թղթ. 162. փարթամացուցիչք սոցա էին մերձակայ երկիրքն մշակեալք և բազմամարդք, որք էին Կոմագենէ, Պոնտոս, և "Հայաստան, զոր Եփրատ իբր թէ միացուցեր ընդ պարսկային ծոցոյ" որ յՈվկիանոս:

1 Սոքա են Պիւռամոս գետս և Սարոս, այժմ կոչեցեալ Ջհան և Զաւղըն, զորոց կարես տեսանել 'ի Նոր Հայաստան 371. 'ի ձեռն սոցա կարէ հաղորդիլ նաև ընդ միջերկրական ծովու:

2 Այսմ ոչ մնացեր լռել Հուէտիոս 'ի գիրս վաճառականութեան նախնեաց գլ. ժա. թղթ. 46. Պարսից երկիրն ընծայէ զայն զոմեսս, որ ամէն էր հայաստանեայց. զՊոնտոս ծով ասէ Պարսից՝ յորմէ հեռի էր յոյժ. նոյնպէս և զԵփրատ և զՏիգրիս ասէ Պարսից, որոց վերջին ծայրք միայն ընթանային ընդ Պարսս: Բայց անխորշելի թերութիւն է այդ բազմաց 'ի մատենագրաց ոչ 'ի սեփականութե երկրին հայել զորմէ խօսին, այլ 'ի մեծութե տէրութե. եթէ ընթերակից իւր ունի այն երկիր զմեծ ինչ տէրութի, նմա ընծայեն զամենայն:

և բազում վաճառք Հնդկաց ընդ այն (գետ ասէ) բերին 'ի ծովն Վրկանու (որ է Կասպից), և անդուստ յԱլբա-նիա (յԱղուանս) փոխադրէին ընդ Կիւրոս (ընդ Կուր գետ), և ընդ տեղիս որք զհետ գան՝ ածեալ լինէին 'ի Պոնտոս ,,: Նոյնպէս և Պլինիոս Զ. 17. 'ի Վարրոնէ բերելով ասէ. "Նա ինքն (Վարրոն) յաւելու, առաջնորդութեամբ Պոմպէի տեղեկացեալ զաւուրս եօթն 'ի Հնդկաց 'ի Բակտրիա հասանել առ գետն Իքարոս որ 'ի յՕքսոս զեղու. և անտի ընդ Կասպից ծով 'ի Ձիրուս (Կուր գետ) բարձեալ, հնգօրեայ և ոչ աւելի՝ ցամաքային ճանապարհաւ մարթ է բերել զհնդկային վաճառս ընդ Փասիս 'ի Պոնտոս ,,: Նա ինքն Պլինիոս Զ. 15. այլ իմն ճանապարհ յիշատակէ գնալոյ 'ի Հնդիկս, որ էր կարգ ճանապարհորդութեան մե-ծին Աղեքսանդրի. ասելով թէ Քարտուբեանց, կամ որ նոյն է Կորդուաց, առ երի կամ Բրադիք. զոր ես հա-մարիմ Թրաւփի գաւառ Պարսկահայոց, որոց էին դրունք Կասպից. ընդ ելանելն ասէ արտաքս քան զդրունսն՝ էին Կասպք ժողովուրդ ծովեզերեայ, որք էին սահմանակիցք Հայոց, կամ թէ ըստ մասին 'ի նոյն իսկ 'ի Փայտակարան նահանգ Հայոց: Ի յաղգէն Կասպից մինչև ցԿուր գետ՝ են, ասէ 125 հազար քայլ. այսինքն 125 մղոն. իսկ 'ի նոյն գետոյ մինչև 'ի դրունս Կասպից նաւարկելով 700 հազար քայլ. այսինքն 700 մղոն. "Զի զայս կարգ կալան ասէ, ճանապարհորդութիք մեծին Աղեքսանդրի 'ի դրանց աստի մինչև ցսկիզբն Հնդկաց ,,: Ի բանից աստի երկոցունց 'ի յայտ գայ՝ թէ յայնմ ժամանակի հնդկային վաճառք ճանապարհաւ ցամաքի գային 'ի Պոնտոս այսպէս. նախ՝ եօթնօրեայ ճանապարհաւ բերէին ընդ ցամաք յԻքարոս գետ, յԻքարոս գետոյ յՕքսոս գետ. անտի 'ի ծովն Կասպից, անտի 'ի Կուր գետ[1]. անտի ընդ ցամաք հնգօրեայ ճա-նապարհաւ 'ի Փասիս կամ 'ի Ճորոխ գետ՝ որ իջանէ 'ի ծովն

1 Զբերան Երասխայ բազում աշ-խարհագիրք յանուն Կուր գետոյ կո-չեն. որովհետև զԵրասխ գնեն վտակ Կուր գետոյ, այսինքն որ խառնի 'ի Կուր գետ, և ոչ թէ Կուր յԵրասխ. նորին առաջագոյն զնշանակեալն Կուր՝ արդար է բազում ուրեք առնուլ փո-խանակ Երասխայ. և վասն նորին իսկ բերել Կուր գետոյ արդար է զխնդել, զի յընթացանն իւր ընդ աջմէ ունի զՀայ-աստան, և 'ի ձախմէ զՎիրս և զԱ-ղուանս. զի Կուր գետ է որ բաժանէ զՀայս 'ի Վրաց և յԱղուանից: Տես-զոր ինչ գրեցաք 'ի աշխարհագրութեան եր-կոցունց գետոցս: Բայց արդար է և աս-ել՝ թէ այս ճանապարհորդութիւն վաճառականաց կատարէր առաւել ընդ բերել Կուր գետ. զի առաւել քաղաքա-ւոր զառանելոյ յԵրասխ գետ՝ նաւարկութիւն ընդ այն կարէր լինել 'ի Կաս-պից ծովէ մինչև 'ի Արտաշատ. ուր-նոր էր քաղաքամայրն Երասխայ. անտի 'ի վեր հարկ էր զվաճառսն փոխա-դրել յայլ նաւս:

Պոնտոս. և անդուստ ծաւալէր 'ի յունաստան և ընդ ամենայն Եւրոպա: Եւ այսպէս այս կարաւան վաճառականաց և այս ճանապարհորդութիւն, որ եկեալ 'ի Հնդկաց անցանէր ընդ Հայաստան կամ առ Հայաստանեաւք, դիւրաւ տայ ամենեցուն իմաստասիրել՝ թէ նաև Հայք գնային և գային ընդ այն ճանապարհ. իսկ որք ոչն երթային՝ դիւրաւ առնէին տուրևառութիւն ընդ վաճառականս նոյն կարաւանին, որ առաջի նոցա և ընդ երկիր նոցա անցանէր. զվաճառս Հնդկաց առնլով 'ի նոցանէ, և զիւրեանց վաճառս տալով նոցա: Յիշէ զայս և Հաւետախոս գլ. ժդ. ասելով. "Ծովն Կասպից և Պոնտոսի մատակարարէին Հայոց զվաճառս՝ զորս վաճառէին Պարսից և վրկանեանց 'ի կարևոր պէտս նոցա. ընդ այս ճանապարհ լինէր ոչ միայն տուրևառութիւն հիւսիսայնոց 'ի Պարսս, այլ նաև Հնդկաց և Չինաց՝ որոց վաճառք իջանէին 'ի ծովն Կասպից ընդ գետն Օքսոս. և 'ի ծովէ անտի ելեալ ընդ գետն Կուր՝ մերձենային 'ի ծովն Պոնտոս, ուստի սփռէր ընդ ամենայն Եւրոպա":

Բ. Երկրորդ ուղին ընդ Պոնտոս:

Որպէս գրեցաք 'ի վերոյ, զտուրևառութիւն արևելեան վաճառացն՝ մանաւանդ Հնդկաց, մերթն առնէին ընդ կարաւանին՝ որ գայր 'ի կողմանէ Կասպից ծովուն. իսկ զտուրևառութիւն արևմտեան վաճառացն առնէին ընդ ճանապարհ Պոնտոս ծովուն: Զայսր ճանապարհի զհանգամանսն ստորագրէ Ստրաբոն ժա. 498. "Մարթ է, ասէ, նաւարկել 'ի վեր ընդ Փասիս մինչև 'ի Սարապանա (թուի աղաւաղեալն անուանս Սպերայ), որ է բերդ, յորում և քաղաք մարթ է կանգնել, և անտի կառօք ճանապարհ հատանել ընդ ցամաք մինչև ցԿիւրոս", այսինքն ցԿուր գետ: Ահաւասիկ միաւորութիւն երկուց ճանապարհաց 'ի Կասպից ծովէ մինչև ցԿուր, զոր 'ի վերոյ ստորագրեցաք. և 'ի Պոնտոս ծովէ մինչև ցնոյն Կուր գետ, զոր ասա եդ Ստրաբոն: Արդ յայտ է թէ վաճառականք աշխարհին մերոյ այսպիսի ունելով ճանապարհ դիւրութեամբ առնուին վաճառս արևմտեան աշխարհաց 'ի Պոնտոս ծովէ, և դիւրաւ առաքէին զվաճառս իւրեանց 'ի Պոնտոս՝ իջուցանելով 'ի Կողքիս ընդ Փասիս գետ. զի Կողքիս գոլով աշխարհ սահմանակից և ծովեզերեայ՝ առաւել յաջողէր անդէն վաճառումն իւրեանց. ուր ոչ պակասէր գալուստ նաւուց 'ի զանազան աշխարհաց նաև 'ի հին ժամանակին անդ:

Այս ճանապարհորդութիւնք, 'ի բաց թողեալ զոր ինչ կերծեցին առասպելաբանութիւնք քերթողաց, էին վասն վաճառականութեան, որպէս և յայս առնենն անուանք վաճառացն՝ զոր նոքա և ճանապարհորդք հետևօղք նոցա խնդրէին և 'ի Կողքիսայ առեալ տանէին 'ի յունաստան և յայլ աշխարհս արևմտեայս։ Առեալ վաճառքն՝ որպէս ընդունելի և հռետորաց՝ էին ոսկի, ցորեան, աղ, վուշ, մեղր և մոմ, մորթ ոչխարի և այծեաց, բայց բժշկականք՝ մանաւանդ խաշխաղեղ։ Արդ այս վաճառք յայսմ առնենն՝ թէ ըստ մեծի մասին գային ժողովէին 'ի Կողքիս 'ի սահմանակից աշխարհաց մանաւանդ 'ի հայաստանեաց. զի բազումք 'ի սոցանէ ոչ գտանէին 'ի Կողքիս։ Սեփականն վաճառք հայաստանեաց առեալք լինէին ոսկի, ցորեան, աղ, մորթ ոչխարի և այծեաց, առաւել յաճախ զուլոյ յաշխարհին հայոց. և խաշխաղեղ, զոր մինչև ցայժմ առաքէ յայլ աշխարհս։ Զայս և զայլ բազում վաճառս առաքէր հայաստան 'ի սահմանակից իւր աշխարհ 'ի Կողքիս ասկս զուլոյ ծովեզերեայ. ուստի նաւք Յունաց բարձեալ տանէին 'ի զանազան աշխարհս արևմտեայս։

Այլ առ կատարեալ տեղեկութիւն վասն ժամանակի վաճառականութեան ընդ Պոնտոս ծով, թէ երբ սկիզբն էառ, պարտ է գիտել. զի նաւարկութիւնն ընդ Պոնտոս ծով անտեղեան ուրեմն սկսաւ քան զնաւարկութիւն միջերկրականն ծովուն։ Զառաջինն բնակիչք փոքուն Ասիոյ և փոքուն Հայոց՝ ընդ ճանապարհ ցամաքի և ընդ ճանապարհ գետոց իջուցանէին զվաճառս իւրեանց յեզերս միջերկրականն ծովուն 'ի Յոնիա, 'ի Կիլիկիա և յԱսորիս, յորս ծաղկեալ էր վաճառականութիւն. իսկ 'ի Պոնտոս՝ նախ քան զայլսն եգիպտացիք առին նաւարկել մինչև 'ի ծայր նորին. յորս Ոսիրիս արքայ, ասեն, առաջին արշաւանս եգիպտացւոց 'ի Պոնտոս։ Վասն Յունաց ևս կարի հին հնագոյն ճանապարհորդութիւնք յիշատակին 'ի գիրս մինչև 'ի ծայրն Պոնտոսի, մանաւանդ 'ի Կողքիս. զոր օրինակ ճանապարհորդութիւն Փռիքսոսի։ Այլ այս նաւարկութիւնք են պատմութիւն առասպելեալ ժամանակաց. Ճշմարիտ քան զայդոսիկ հաւաստեալ է նաւարկութիւն Արգոնաւորդաց՝ առաջնորդ ունելով իւրեանց զՅասոն ամս 1205 ամօք նախ քան զՔրիստոս[1]. բայց և սոցայս ոչ կալաւ անընդհատ յաջորդութիւն

1 Ֆօռմալէօն 'ի պատմ. վաճառ. ա. Թղթահամար 27. գրէ թէ նախ ռակոնութեան սեաւ ծովուն, հա. քան զՅասոն միայն սակաւք նաւէին

նաւարկելոյ, այլ բազմօք զկնի. զի և Փիւնիկեցիք որք իբր առաջինքն էին 'ի նաւարկութեան՝ չէին ելեալ նախ քան զՍողոմոնեան ժամանակ արտաքս քան զմիջերկրականն ծով. մանաւանդ զի զոր ինչ խնդրէին՝ զայն ամենայն վաճառս գտանէին 'ի ծովեզերեայ վաճառատեղիս միջերկրականին, յորս բերէին թափէին վաճառականք ցամաքի 'ի զանազան աշխարհաց։ Եւսեբիոս յիշատակէ զմի միայն ճանապարհորդութի Փիւնիկեցւոց 'ի Բրիտանիա, բայց չիք գտանել նոյնպէս զյաջորդութիւն նորա. զի որպէս գրէ Ստրաբոն, նախնիք երկնչէին անցանել ընդ նեղուցն Գադիտոսի [1]։ Նա ինքն Ստրաբոն գիրք Գ. պատմէ թէ յաւուրս Հոմերոսի, որ էր առ ժամանակօք Սողոմոնի, նախ առաջին տուրևառութի սահմանեալ եղև ընդ Հիւսիսային կիմմերեանս 'ի տաւրիկեան Քերսոնի. զի թէպէտ նաւարկութի Արգոնաւորդաց սուղ ինչ յառաջ քան զպատերազմն Տրոյայ էր լեալ, որք և զկիմմերացիս գնացեալ տեսին, բայց չեղև ինչ զկնի այնր տևել նաւարկութեան այնորիկ առ դժուարին և երկարատև գոլոյ ճանապարհին, և առ չգտանելոյ անդէն տուրևառութի շահաւոր. զի սկիւթացւոց աւելի էր փարթամութի։ Առաջին որ ետ ծանօթութի այնց սահմանաց՝ եղև Միհրդատ Եւպատոր, որ տիրէր 'ի ծովէն Կիլիկիոյ մինչև ցծովն Յմնիոյ և 'ի Պոնտոս [2]. իսկ առ Տրայանոսիւ յերկբայս էին արդեօք Մէոտիս ծովակն իցէ կցեալ ընդ Ովկիանոս ըստ գրելոյ Պլինիոսի Է. 62. զԿողքիս և զԵրասխ Կովկասու 'ի ծագս աշխարհի կարծէին կառուցեալ. և յաւուրս Կիկերոնի տեսանելն զերեան Գադիտոս ծովու մեծ ինչ էր համարեալ։ Այժմ ամենայնի ծանօթ լինել կարևոր է առ 'ի վերայ հատանել զոր ինչ ունիմք գրել աստուն։

Արդ թողեալ զնախնի ժամանակաց նաւարկութիւն, այն ինչ յաւուրս Յունաց կայսերաց համարձակեալ էր նաւարկութիւն ընդ Պոնտոս, յայնժամ նաւք Յունաց 'ի Կողքիսոյ բարձեալ տանէին զվաճառս Ասիոյ, ընդ որս և

ծովեզերեայ բնակիչք Մադիանըսա ծովուն. առաջին գտիչք Արգոնաւորդք եղեն սոք, 'ի Զէնիփոնէ բերելով. գիրք Է. գլ. 5. 6։ Վասն որոյ 'ի Թղթ. Կ. Յասոն եղև սոց առաջին որ եհեղ նաւուց 'ի Գադիտոս, որ և գլուխ էր Արգոնաւորդաց։

1 Նոյնպէս երկնչէին անցանել մտանել յՈվկիանոս ըստ գրելոյ նորին Ստրաբոնի գիրք Ա. այլ յետ տրովադական պատերազմին եղև Փիւնիկեցւոց նախ առաջին անցանել ընդ Հերակլեան արձանս, որ է ասել՝ մտանել յՈվկիանոս։

2 Նոյնպէս և զօրավարք նորա եղեն որք նախ առաջին սկսան առնել ծանօթութի այնց սահմանաց մինչև 'ի Մէոտիս ծովակ ըստ նորին Ստրաբոնի։

զմերոցն հայաստանեաց 'ի զանազան աշխարհս արեւմտեայս եւ առաւել 'ի Նիկոմիդիա, որ յաւուրս Անաստասիոսի յերկրորդ դարուն էր մթերանոց հռչակաւոր: Զայս հաստատէ եւ ստորագրութիւն անուանի վաճառատեղւոյն կողքիսոյ կոչեցեալ Տիոսկորիաս. զորմէ ունիմք խօսել 'ի վաճառատեղիս որ արտաքոյ աշխարհին Հայոց: Տես անդ:

Յետ ժամանակաց յորժամ վաճառականութիւն Աղեքսանդրիոյ ծաղկէր սկսաւ, դադարեցաւ յայնժամ այս ճանապարհորդութիւն Պոնտոսի. այլ յետ եօթներորդ դարուն 'ի տիրել անդ Սարակինոսաց 'ի վերայ Եգիպտոսի, Աղեքսանդրիայն նուաղեալ՝ վերստին բացաւ նախնի ճանապարհորդութիւն Պոնտոսի: Անդուստ առնուին վաճառականք զհնդկային վաճառս, ուր բերէին ընդ ճանապարհ Կասպից ծովու եւ Կուր գետոյ, որպէս գրեցաք 'ի վերոյ, մինչեւ նոյն իսկ վենետիկեցիք որք յառաջ յերեքտասաներորդ դարուն ընդ ճանապարհ Եգիպտոսի առնուին զվաճառս Հնդկաց, աստ սկսան ընդ ճանապարհ Պոնտոս ծովու բերել. բայց նեղեալ յոյժ 'ի ծովապատառաց որք յաճախեալ էին, անդրէն դարձան ընդ ճանապարհ Եգիպտոսի բերել. եւ այնպէս յամին 1388 խափանեցաւ վաճառականութիւն Պոնտոս ծովուն:

Գ. Երրորդ ուղի ընդ Եփրատ:

Վաճառականութիւն հայաստանեայց ընդ Ովկիանոս ծով՝ էր ընդ երկուս գետս՝ որք իջանեն 'ի պարսկային ծոցն Ովկիանոսի. մանաւանդ ընդ Եփրատ, առ որով բազում քաղաքք վաճառատեղիք կային 'ի հնումն 'ի ժամանակաց անտի Շամիրամայ կառուցեալք, յայն քաղաքս իջուցանէին զվաճառս իւրեանց, յորս երեւելի էր քան զամենեսին Բաբիլոն: Յիշէ զայս Դիոդորոս սիկիլիացի Ա. 125. ասելով. "Բայց Շամիրամ նաեւ զայլ քաղաքս կառոյց առ Եփրատաւ եւ Տիգրիսիւ, ուր վաճառատեղիս հաստանեաց 'ի նոսա. որք զվաճառս 'ի Մարաց եւ 'ի Բաբեդագինոյ եւ յամենայն մերձակայից բերեն... Եւ զի են գետք մեծամեծք, եւ ընդ աշխարհս բազում ընթանան, բազմօք դիւրացուցանեն զճանապարհ վաճառականաց, որով մերձակայ տեղիք գետոցս բազում եւ բազմահարուստ վաճառատեղեօք ճոխացեալ կան՝ մեծապէս առաւելեալ զփարթամութիւն Բաբիլոնի": Յայս բան անուանէ Մարաց իմա նաեւ զՀայս, որպէս բազում ուրեք իմանան հին մա-

տեղագիրք սակս ընդարձակեալ տէրութեան Մարաց նաև 'ի վերայ կողմանց մինչ աշխարհին Հայոց. զի Եփրատ ոչ գոլով սահմանակից Մարաց՝ Հայք էին առաւել որք երթևեկս առնէին ընդ այս գետ որ ընթանայր ընդ հայաստանն ։

Օ այս յայտ առնէ և բանք Երոդոտոսի[1], ուր պատմէ զնաւարկութիւն Եփրատայ զոր առնէին Հայք սակս տանելոյ վաճառս 'ի հայաստանեաց 'ի Բաբելոն, և թէ զիարդ շինէին հայկազունք զնաւս իւրեանց բոլորակաձև և մորթապատեալ առ 'ի նաւարկել 'ի Բաբելոն ըստ տանելոյ ընթացից գետոյն Եփրատայ. "Ի հայաստան, ասէ, որ կայ 'ի վերայ ասորեստանեաց՝ յատոց ուռենեաց զկողմն (նաւուն) գործեն. մորթ ածեալ 'ի վերայ արտաքուստ պատեն զայն ըստ օրինակի յատակի. ոչ զխելս նաւուն և ոչ զառաջին սրածայրեալ ունելով, այլ վահանաձև բոլորակեալ"։ Զայսպիսի նաւ բեռնաւորեալ լի վաճառօք՝ մանաւանդ գինւով թողուն, ասէ, վարել 'ի գետ անդր, երկուց ամանց միայն ղեկավարելով թիակ 'ի ձեռին. ապա գրէ. "Մեծամեծք նաև մանունք գտանին 'ի նաւուց աստի. յորոց մեծամեծքն տանին նաև կշիռս հինգ հազար տաղանդոյ. այլ իւրաքանչիւրքն կրեն 'ի կենդանեաց էշս. մեծամեծքն առաւել բազմաթիւս։ Նաւարկօղք իբրև հասանեն 'ի Բաբելոն և զբեռն դատարկեն, զկողս նաւուն և զամենայն վաճառեն, այլ զմորթսն յէշս բարձեալ վարեն 'ի հայաստան. զի ընդդէմ գետոյն նաւարկել բնաւ չէ հնար սակս սրընթաց լինելոյ. և վասն այնորիկ ոչ 'ի փայտէ՝ այլ 'ի մորթոյ գործեն զնաւսն ։ Յորժամ այսպէս վարեալ իշոց դառնան 'ի հայաստան՝ զայլ նաւս կազմեն նովին օրինակաւ "։ Զինչ վկայութիւն առաւել քաջայայտ քան զայս վասն վաճառականութեան մերոց ընդ այս ուղի Եփրատայ 'ի վաղեմի ժամանակն յայնոսիկ ։

Իսկ վասն ընթացից գետոցս Եփրատայ և Տիգրիսի՝ գրէ Ստրաբոն ԺԶ. թէ յառաջագոյն մարթ էր նաւարկել 'ի վեր ընդդէմ ընթացից գետոցս. 'ի Տիգրիս մինչև ցտեղին ուր ապա շինեցաւ Սելևկիա քաղաք. իսկ յԵփրատ՝ մինչև 'ի Բաբելոն, որպէս գրէ նա ինքն Ստրաբոն ԺԵ. 729. այլ Պարսիկք առ 'ի չտալ անցս թշնամեաց՝ քարավազս կամ սահմանս գործելով խափանեցին. վասն որոյ և վաճառա-

1 Գիրք Ա. գլ. 194. Թղթահամար յԱմստերդամ, յամին 1763 ։
Յ². ըստ տպագրութեան Վենետիկոյ

կանք յայն տեղիս ընդ ցամաք ճանապարհորդելով գնային 'ի վաճառատեղիս, որպէս ծանուցանէ անդէն ։ Բայց մեծին Աղէքսանդրի բարձեալ զայն ամենայն արգելումն՝ ազատ եթող զնաւարկութիւն . 'ի բերան Եփրատայ կառոյց նաւահանգիստ մեծ՝ որ տանէր նաւս հազար. ուր նաւատորմիղ իւր, որում նաւապետ էին Նէսիկրիտէս և Նէարք, 'ի բերանոյ Խնդոս գետոյ եկն եհաս անդ 'ի բերան Եփրատայ ։ Պարսիկք ձեռն արկին անդրէն արկանել զնոյն արգելումն . զի Ամմիանոս ԻԴ . 1 . վկայէ մնացեալ նաև յաւուրս Յուլիանոսի, այլ վերստին բարձան այն արգելք, ազատ թողեալ զճանապարհ ընթացից Տիգրիսի և Եփրատայ . յայն սակս և բազմութիւն վաճառականաց 'ի Միջագետաց և 'ի շրջակայ սահմանաց, որպէս և 'ի Հնդկաց, գային ժողովէին 'ի կղզիս որ 'ի բերանս գետոցս կային . և 'ի նաւահանգիստն զոր Պարսիկք պատրաստեալ ունէին 'ի բերան Եփրատ գետոյն, առ 'ի յընդունել զվաճառս եկեալս յատարաց՝ մանաւանդ յարաբացւոց՝ զոր յիշէ Ստրաբոն ։

## ՅՕԴՈՒԱԾ Բ

Վաճառատեղիք կամ Շահաստան քաղաքք, որ 'ի Հայս ։

ՅԱՅՍ դիտցուք աստէն զայն քաղաքս 'ի մէջ հայաստան աշխարհիս, որոց վաճառականութիւք յիշատակեալ են 'ի գիրս մեր, և որք Շահաստան [1] անուամբ կոչին ։ Ապա յիշեսցուք և զայն վաճառատեղիս՝ որք արտաքոյ են աշխարհիս մերոյ, բայց կամ 'ի մերձակայս, և կամ յայնպիսի տեղիս՝ յորս յայտնի երևի երթևեկել և մերոց վաճառականաց ։

### ԴՈՒԻՆ

Ի վեցերորդ դարուն էր վաճառատեղի հռչակաւոր ծաղկեալ յոյժ տուրևառուք . յորում բերէին ժողովէին զամ վաճառս յամենայն կողմանց, 'ի Վրաց, 'ի Պարսից, 'ի Հռոմայեցւոց, նա և 'ի Հնդկաց, և գրեթէ յամենայն

1 Շահաստան անուանս ածանցեալ է 'ի մեզ ոչ 'ի Շահ բառէն Պարսից, որպէս ոմանց էր կարծեալ, այլ 'ի հայկական բառէս Շահիլ և Շահ . նմին իրի Շահաստան կոչէին մերքն զայն քաղաքս՝ ուր լինէր շահիլ, ուր էր առատութի վաճառաց, և երթևեկումն վաճառականաց, որ յունականն ձայնիւ կոչի Էմբորիոն, որ է վաճառատեղի ։

ազգաց . տես վասն այսր գրանս Պրոկոպիոսի 'ի մեծ Հայս 463 ։ Որոյ տուրեւառութիւն սիրեաց նաև ցիններորդ դար . զի և Թովմա արծրունի 'ի յիշեալ անդ 'ի Գ . Կ . « Յորում Շահաստանին Դուին՝ մարդախիտ՝ պարսպաւոր պատնէշօք պատուարեալ, և տուրեւառիկ վաճառականութեան » ։

## ԱՐԾՆ կամ ԱՐԾԻՆ

Օ այսմանէ Լաստիվերտցի գլ . Ժ . « Հրամայեալ է քեզ Թագաւորն (կայսրն Կոստանդ Մոնոմախ) տեղի ընակութեան 'ի Կարին գաւառին յԱրծին աւանի . և եղեալ հայրապետին (Պետրոսի գետադարձին) գայ 'ի մեծանիստ և 'ի Շահաստան քաղաքս մեր » ։ Եւ գովելով զվաճառականութիւն սորա ասէ 'ի գլուխն ԺԲ . « Ծով և ցամաք երկնէր և առատանայր կրել 'ի սմա զզօրութիւն իւր » ։ Գովելով և զվաճառականսն սորա ասէ . « Վաճառականք սորա փառաւորք . . . և իբրև ակն պատուական լուսազեղ պայծառութիւն փայլէր քաղաքս » ։ Եւ թէ « Վաճառականք՝ եկեղեցւոյ շինօղք և զարդարիչք, կրօնաւորաց օթեւանք և հանգուցիչք, և առ աղքատս ողորմածք և դարմանիչք . ոչ գոյր խաբէութիւն 'ի վաճառսն և ոչ նենգութիւն 'ի տուրեւառիկ փոփոխմունսն . ընդ բամբասանօք էր վաշխից և տոկոսացն շահքն, և խոտեալ անարգեալ էր 'ի նուէրս ընծայից պատարագ նոցա » . այսինքն որոց 'ի վաշխիցն շահէին ։

## ԲԱՂԷՇ

Օ սմանէ այսչափ ինչ ասէ Թովմա արծրունի Է . 6 . « Եւ կէսքն հասանէին մինչ 'ի Շահաստանն Բաղէշ » ։

## ԿԱՐՍ

Ի մետասաներորդ դարու ընակիչք Կարուց էին քաջ վաճառականք, զորս Լաստիվերտցին կոչէ « Մեծահարկի և պատուական վաճառականք » ։ Եւ զքաղաքացիսն կոչէ, « Հարստացեալ բազում ընչեղութեամբ, 'ի ծովէ և 'ի ցամաքէ ամբարեալ ։

## ՇԱՀԱՍՏԱՆ ԲՌՆԱՎԻԺԻ

Նոյն անուամբ եւթ յիշատակի առ Ղազարու 'ի Թղթահամարն 210 ։

## ՄԵԼՏԵՆԻ

Քաղաք 'ի փոքր Հայս, զորմէ Լաստիվերտացի 'ի խորագրի իւր. գլխոյն. «Կործանումն Մելտենոյ Շահաստան քաղաքի»: Իսկ 'ի բնագրին յիշէ զվաճառականս նորա, որոց փարթամութե ճոխացեալ էր քաղաքս այս, որպէս յայտ առնեն և այլ պատմագիրք:

## ԿՈՄԱՆԱ

Քաղաք փոքուն Հայոց. զորմէ Ստրաբոն ժբ. 559. «Մարդաշատ է Կոմանա, և վաճառատեղի ականաւոր եկելոցն 'ի Հայաստանեայց»: Ուրանօր և պատմէ զխուռն բազմութիւնս ժողովելոյ անդ յամենայն կողմանց 'ի պատճառս տօնին:

## ՍՈՓԵՐ կամ ՍՊԵՐ

Զայս ևս դնեմք 'ի կարգս վաճառատեղեաց հայաստանեայց աշխարհիս. զի որպէս ունիմք ցուցանել, Սոփեր կամ Սոփփեր անուանեալ տեղին 'ի սուրբ գրոց՝ նոյն գոլով ընդ Սպեր տեղւոյն՝ որ յաշխարհիս Հայոց, 'ի հնումն էր երևելի վաճառատեղի հայաստանեայց վասն ոսկւոյն իւրոյ, ուստի առնոյր Սողոմոն և մեծն Աղէքսանդր. նաև ճանապարհորդութիւնք 'ի Կողքիս և 'ի Փասիս գետ, յիշատակեալք 'ի նախնի մատենագրաց՝ մանաւանդ Արգոնաւորդացն, էին յաւէտ վասն գնոց առնլոյ զոսկին Սոփերայ կամ Սպերայ, և որ 'ի շրջակայս նորա:

Արդ 'ի ցուցանել զայս՝ հարկ է 'ի հիմանց սկսանել 'ի վեր բերել զամենայն, որ կարևոր է յոյժ ոչ միայն 'ի տեղեկութիւն աշխարհիս մերոյ, այլ նաև 'ի կատարեալ բացատրութիւն սուրբ գրոց և նախնի մատենագրաց Յունաց և Հռոմայեցւոց, առ որս մինչև ցայժմ շփոթ և մթին մնացեալ կայ խնդիրս այս առ անտեղեակ գոլոյ նոցա պատմութեան և աշխարհագրութեան ազգիս: Առ 'ի քաջ բացայայտութիւն բանիցս յերիս բաժանեմ խնդիրս, խօսելով նախ զպէսպէս անուանց և զտեղւոյն Սպերայ, որք յաղաւաղեալ եղեն առ զանազան մատենագիրս: Երկրորդ՝ զյարմարութե ճանապարհին Սողոմոնի առ մերս Սոփեր կամ Սպեր: Երրորդ՝ զանյարմարութեան ճանապարհին առ այլ Սոփեր

կարծեցեալ տեղիս՝ զորս հնարեցին այլեւայլ մատենագիրք :

Որք սկսեալ յառաջնոյն, անուանս Սոֆեր 'ի թարգմանութեան եօթանասնից գրի. իսկ յայլ թարգմանութիւնս աստուածաշունչ գրոց՝ փոխանակ այնր գրի Օֆեր, որ 'ի մեղդատնայ Ոֆեր կամ Ոփֆեր, որպէս և գրի 'ի Է. Թագաւորութեանս ԻԲ. 49 : Բանք ծննդոց Ժ. 29. յայտ առնեն՝ թէ անուանս այս եղեալ իցէ յանուանէ նահապետին Ոփիրայ, որ էր որդի Յեկտանայ, որդւոյ Եբերայ, որդւոյ Սաղայի, որդւոյ Արփաքսադայ, որդւոյ Սեմայ : Սուրբ գիրք յետ թուելոյ անդէն զերեքտասան որդիս Յեկտանայ՝ յորս է և Ոփիր կամ Ուփիր, որոշէ ապա թէ յորում վայրի եղև բնակութիւն ամենեցուն նոցա, ասելով Ժ. 30. « Ամենեքին սոքա որդիք Յեկտանայ. և եղև բնակութիւն նց 'ի Մասեայ՝ մինչև 'ի գալ 'ի Սովփերա (Օֆիրա) լեառնն արևելեայց » : Ամենեքին որք տեղեակ են պատմութեան սուրբ գրոց, և պատմութեան և աշխարհագրութեան ազգիս, յայտնի իմանան զիմաստ բանիցս սուրբ գրոց՝ թէ որովհետև բնակութիւն Նոյի և աճումն և բազմանալ սերնդոց նորա սկսաւ առ ստորոտով լերին Մասեաց, յառաջել բազմանալն նոցա հետզհետէ՝ որդիք Յեկտանայ սփռեալ ծաւալեցան 'ի լեռնէն Մասեաց մինչև 'ի լեառն Սովփեր կամ Օֆիր. և զի նոյն է անուանս այս ընդ անուան միոյ յորդւոցն Յեկտանայ, յայտ է թէ և այն լեառն էառ զիւր անուն յանուանէ նորին : Զի որպէս սովորութիւն էր նախնի նահապետաց՝ յանուանէ որդւոց իւրեանց կոչել և զանուն տեղւոյն ուր ծնաւ, կամ ուր զառաջին կալաւ բնակութիւն, որպէս և 'ի պատմութեան ազգիս է տեսանել :

Օ այս եղեալ՝ դիւրաւ մարթ է իմաստասիրել, թէ Սովեր տեղին և լեառն որ յիշատակի 'ի պատմութիւնս մեր, և որ կայ մինչև ցայժմ, է նոյն իսկ Սովֆեր կամ Ոֆեր և Օֆեր տեղին սուրբ գրոց, որովհետև նմանութիւն անուանն զնոյն ցուցանէ. զի զոր մեք Սոփեր հնչեմք, նախնիք դուցէ Սրփեր կամ Սոփեր հնչէին : Զնոյն ցուցանէ և յարմարութիւն տեղւոյն. զի գոլով չափաւոր հեռաւորութեամբ տարածայեալ 'ի լեռնէն Մասեաց, այնչափ միջոց երկրի բաւական տեղի լինէր 'ի բնակութիւն սերնդոց երեքտասան որդւոցն Յեկտանայ : Տես և զոր գրեցաքն 'ի գլուխն Աերանց վասն անուան Մասեաց լերին :

Պօշար ա. 15. բազմօք նկրտի վկայութեամբ երկուց արաբացի մատենագրաց հաստատել, թէ Յեկտան և որդիք

նորա յԱրաբիա կալան բնակութիւն․ բայց Կալմէտ Ծննդ․ Ժ․ 25․ 'ի դէպ իսկ ցուցանէ՝ թէ այն ոչ էր Յեկտան որդի Եբերայ, զոր յիշատակէ աստէն Մովսէս 'ի գլուխ Ժ․ այլ միւս Յեկտան որդի Աբրահամու և Քետուրայ՝ զոր յիշէ 'ի Ծննդ․ ԻԵ․ 2․ և զորմէ խօսի, ասէ, առաջին մատենագիրն արաբացի․ իսկ միւս մատենագիրն վրիպանօք կարծէ լինել որդի Եբերայ։ Արդ որդիք սորին Յեկտանայ որդւոյ Աբրահամու էին որք բնակեցան ընդ արևելս երկրին քանանացւոց և Բերսաբեայ՝ ուր բնակէր Աբրահամ, զոր ակնարկէ Մովսէս ԻԵ․ 6։ Եւ արդարև նոյն իսկ պատմութիւն Մովսէսի յայտ առնէ, թէ որովհետև սկիզբն մարդկային ազգի առ Մասիս լերամբ սկզբնաւորեալ եղև, բազմութիւն նոցա մինչև 'ի ժամանակս Եբերայ և Յեկտանայ չէր այնչափ՝ մինչև հարկ լինել առ անձկութեան թողուլ զմօտակայ սահմանս, և առ գտանելոյ տեղի բնակութեան հատանել ճանապարհ բազմօրեայ, մինչև գալ հասանել յայնկոյս հեռաւոր աշխարհ, զոր օրինակ էր Արաբիա։ Արդ այս յարմարութիւն Սոփեր անուան և տեղւոյն՝ յայտնի ցուցանէ՝ թէ նաև այլուր Սոփեր անուանեալքն որք յիշատակին 'ի սուրբ գիրս՝ են մի և նոյն ընդ այսմ տեղւոյ․ բայց նախ քան զցուցանելն զայս՝ յառաջ բերցուք զայլևայլ աղճատեալ անուանս, որովք կոչէին նախնի մատենագիրք զայս տեղի։

Սոփիրիտիս։ Վասն այսր և վասն այլ մերձաւոր անուանց յիշելոց 'ի Ստրաբոնէ, 'ի Կիկերոնէ և 'ի Պերփեռաւժէնեայ, որք առ հասարակ են այլայլեալ, տես 'ի Մեծ Հայս 'ի Թղթ․ 25։ Յիշէ զայս և Կալմէտ 'ի Ճառն իւր որ վասն տեղւոյն Սոփերայ, եղեալ յառաջ քան զմեկնութիւն Ծննդոց․ հաւանեալ նոյն տեղի լինել որ 'ի սուրբ գիրս կոչի Սոփեր։

Սոփար․ կամ ըստ յունական հնչման Սոփիր։ Դիոդորոս սիկիլիացի գիրք Գ․ կոչէ զայս՝ Արտամնիփ կոլփոսոյ․ այլ յայտ է թէ այս է աղաւաղեալ անուն Սոփերայ․ որ գուցէ 'ի նախնի ժամանակս յայնմ եղև երբեմն ընդ իշխանութեամբ կողքիսացւոց, և արքունիք թագաւորաց նոցա․ կամ որ առաւել հաւանական է՝ քանզի անդ եղեալ հայկազուն իշխանքն մեր՝ խառնեալ էին յայժ ընդ կողքիսացիս, մինչև Արփնոսաւնիս կոչիլ գաւառի նոցա, թերևս վասն այդորիկ զպալատն հայկազուն իշխանին Սափերայ կոչեաց Դիոդորոս յանուն կողքիսացւոց։ Եթէ Պօշար անէր զծանօթութիւն ինչ մերոյն Սափերայ, ոչ ձգնէր 'ի Թղթ․

289 . վայրապար բանադատութք ածանցեալ դնել յանձանօթ անուանցս Յունաց Սէ և Պօրէ, կամ Վորէ [1]. ըստ որում ուրեք ուրեք 'ի գիրս Եզրասայ, Դանիէլի և Եսթերայ փոխանակ արքունեաց դնի, ուր 'ի բնագրին եբրայեցւոց դնի Պիրա:

Սոբիր: Անուն աղաւաղեալ հակառակ նախագրելոյն՝ փոխադրութք վանկից. այսպէս գրի առ Երոդոտոսի [2], ուր բաց յանուանէն՝ նաև գիրք նորա յայտ առնեն լինել Սպեր. զի դնէ առ Կողքիսիւ, որպէս էր և Սպեր. Թէպէտ և յայլմէ կողմանէ շփոթ գրէ, որպէս և յայլ տեղիս ևս:

Սասբիր կամ Սասբիրքս: Յայս անուն կոչէ Երոդոտոս [3] զազգ ինչ ասելով. "Ի Մէոտիս ծովակէ մինչև 'ի Փասիս և 'ի Կողքիս երեսուն աւուրց ճանապարհ են քաջագօտի առն. բայց 'ի Կողքիսայ առ 'ի հասանել 'ի Մարս՝ ոչ այնպէս երկար ընթացից պէտք են ճանապարհի, այլ մի միայն ազգ անջրպետ մնեալ կայ ընդ մէջ Սասբիրքս (անուանեալ), զորով անցեալ՝ իսկ և իսկ պատահէ աշխարհ Մարաց": Արդ ընդ մէջ Կողքիսայ և Մարաց ուրոյն ազգ, որպէս կոչէ Երոդոտոս, մի միայն Հայք են. իսկ 'ի Հայս սահմանակից Կողքիսայ, որպէս դնէ Երոդոտոս, է Սպեր. զի որպէս ունիս տեսանել 'ի մեծ Հայս՝ զՍպեր դնեն սահմանակից Խաղտեաց, իսկ Խաղտիք է մի 'ի գաւառացն Կողքիսայ:

Յայսմանէ յայտ է թէ աղաւաղութք գրեալ կայ յայս բան անուանս Սասբիր, փոխանակ գրելոյ Սպեր. յայտ է և՛ թէ յոյժ ընդարձակ էր 'ի հնումն անուն (գուցէ և սահմանն) Սպերայ. զի գիտեմք 'ի պատմութէ ազգիս՝ թէ այն տեղիք, որք էին նահանգ Հայոց աշխարհին՝ ընդ ժամանակս ժամանակս զօրացեալ ընդարձակեալ անուանի եղեն. և զանուն իւրեանց նաև 'ի վերայ այլոց գաւառաց և նահանգաց ձգեալ իբր ուրոյն աշխարհ և ուրոյն ազգ կացուցին. յորոց սակի են և Կորդուք կամ Քարտուք, նաև Աղձնիք, որք իբր օտար աշխարհ և օտար ազգ յիշատակին 'ի մատենագրաց. որպէս և Պարսկահայք նահանգ

1 Պօշար Թէպէտ հմտութբ յոյժ առաւելեալ քան զբազում հնագէտս՝ բայց յայսմ պակասի, զի փոխանակ հայելոյ նախ 'ի կարգ պատմութեն, 'ի գաւառութն գրեց տեղեացն, ապա 'ի մերձաւորութն անուանց նոյն տեղեաց, ինքն ընդհակառակն զմերձաւորութն անուանց մեզ նախադասեալ քան զկարգ պատմութեն, ուստի որ գտանէ տեղի ինչ մերձաւոր անուամբ՝ թէ և հեռաւոր ինչ նմանութբ, նոյն համարի զերկոսին:

2 Երոդոտոս. գիրք Է. գլ. 40:

3 Գիրք Ա. գլ. 104:

մեր՝ յանուն երկուց գաւառաց իւրոց Հեր և Զարեւանդ կոչի 'ի գիրս ։ Մի յայսպիսեաց առաւել պարտ է դնել նաև զՍպեր․ զոր Թէպէտ Խորենացին միայն 'ի կարգս գաւառաց բարձր Հայոց դասէ, բայց յառաւել հին ժամանակս յայտնի երևի անուանի լեալ, և իբր մեծ աշխարհ ինչ յիշատակեալ 'ի նախնի մատենագրաց, մինչև առ հասարակ 'ի նորին անուն կոչել զբնակիչս այնր կողմանն որպէս ուրոյն ազգ ինչ, այլ էին նոքին իսկ Հայք ։

Նոյն իսկ Երոդոտոս 'ի գիրս Գ․ յիշէ զքանն նահանգս տէրութեան Դարեհի Պարսից արքայի, զՍպեր, զոր նա գրէ Սասբիր, ստար կացուցանէ 'ի Հայոց, ուրոյն յիշելով զՀայս յերեքտասաներորդ նահանգի․ որպէս և Գ․ 94․ յութեւտասաներորդ նահանգի իբր ուրոյն նահանգ ինչ միակցեալ յիշէ զայնպիսի տեղիս՝ որք էին գաւառք և անուանք աշխարհին Հայոց, այլ աղճատեալ անուամբք․ որքս են Մատիէնս, Սասբիր և Ալարոդ․ յորոց Ալարոդն է Աղանդրոտ գաւառ Վասպուրականի․ Սասբիրն է Սպեր գաւառ բարձր Հայոց, որպէս ասացաք․ յորմէ յայտ է թէ այս գաւառք յայնժամ էին ընդարձակեալ և իբր զատուցեալ 'ի մէնջ, որպէս զԿորդուք, և որպէս զՓայտակարան, և այլն ։ Թէ Սասբիրն յիշատակեալ յԵրոդոտոսէ՝ է Սպերն, ցուցանէ և այն՝ զի 'ի յիշելն է․ 79․ զզանազան զունդս Քսերքսի 'ի զանազան ազգաց և 'ի ժողովրդոց, զՍասբիրս ուրոյն յիշելով մերձ ցուցանէ առ Կողքիսացիս, որպէս էր Սպեր ։ Կալմէտ 'ի մեկնութեան ծննդ․ Ժ․ 11․ կամելով զտանել զտեղի Սեփարայ լերին՝ որ 'ի մեզ է Սոփեր լեառն, նախ յերկբայս լինի թէ իցէ Սարաքենա տեղին յիշատակեալ 'ի Ստրաբոնէ ԺԱ․ 500․ այլ ապա հաւանի առաւել ընդ Սաբիր տեղին յիշատակեալ յԵրոդոտոսէ 'ի նախագրեալ բանսն․ "Զորս կացուցանէ (ասէ Երոդոտոս) մի միայն ժողովուրդ՝ որք զԿողքիս 'ի Մարաց բաժանեն „։ Եւ 'ի Ճառին իւրում որ յաղագս Սոփերայ՝ զանուանս Սաբիր և Սասբիր նոյն ցուցանէ լինել ընդ Սոփեր տեղւոյն սուրբ գրոց, որպէս նաև 'ի բառարանի իւրում 'ի բառն Օփիր ։

Սեփարուեմ ։ Անուանս այս յիշատակի 'ի սուրբ գիրս 'ի Բ․ Մնացորդ․ Գ․ 6․ ուր ասի․ "Եւ զարդարեաց զտունն ականօք պատուականօք 'ի փառս, և ոսկւով սրբով 'ի Սեփարուեմայ „։ Մեկնիչք զոսկին Սեփարուիմայ նոյն համարին ընդ ոսկւոյն Սոփերայ․ և զի Կալմէտ զՍոփեր դնէ 'ի Հայս, նոյնպէս և զՍեփարուիմ դնէ 'ի Հայս, նոյն համարելով 'ի Ճառին իւրում ընդ նախագրեալ անուանս զորս մատե-

նադիրք յիշէին զկողմամբք Կողքիսոյ և Փասիս գետոյ։ Եւթէ ծանօթ լինէր նմա անունն և տեղին Սպերայ, քանզի առաւել յարմարութիւն ընտրէր նոյնացուցանել զանունս Սեփարուեմ ընդ Սպերային անուան։

Ցետ խօսելոյ զզանազան անուանց Սոփերայ կամ Սպերայ՝ խօսեցուք վնոյնութենէ տեղւոյն որ 'ի զանազան տեղիս սուրբ գրոց յիշատակի, սկսեալ յաւուրց անտի Սողոմոնի։ Զայս յայտ առնէ բաց 'ի մերձաւորութենէ անուանց՝ զորոց գրեցաք մինչև ցայժմ՝ նաև բերքն Սոփերայ. զի որպէս 'ի Սոփեր ելանէր ոսկի՝ յոյր սակս գային նաւք Քիրամայ արքային Տիւրոսի և Սողոմոնի առ 'ի բառնալ և բերել, նոյնպէս և 'ի Սպեր ելանէր ոսկի, որպէս վկայէ Ստրաբոն. զորմէ ասս 'ի գլուխն Բերոց։ Եւ որպէս ոսկին Սովփերայ էր ազնիւ և առատ, զի այսպէսկ կրկին առաւելութիւնք են զոր ընծայեն նմա սուրբ գիրք ուրեք յիշատակելով, նոյնպէս և ոսկին մերոյն Սպերայ էր ազնիւ և առատ։ Վասն ազնուութեան վկայեն սուրբ գիրք յասելն Ծննդոց Բ. 11. "Ոսկի ուր ոսկին է. և ոսկի երկրին այնորիկ ազնիւ"։ Սովին բանիւ կամի առնել Մովսէս, թէ 'ի քանի տեղիս սուրբ գրոց յիշատակին ազնիւ ոսկիք, այն ամենայն են ոսկիք այսր տեղւոյ։ Եւ զի որպէս գրեցաքն, ոսկին տեղւոյս էր ոսկին Սոփերայ, որ է Սպեր, յայտ է թէ այն ամենայն ազնիւ ոսկիք յիշատակեալք 'ի սուրբ գիրս՝ էին ոսկիք Սպերայ. զորս առեալ վաճառականաց տանէին 'ի զանազան տեղիս՝ մանաւանդ փոքուն Ասիոյ։ Իսկ կամելով առնել Մովսէսի առ Հրեայս, թէ այն ամենայն ազնիւ ոսկիք՝ զորս տեսանէք բերեալ 'ի վաճառականաց աստ և անդ՝ բերեալ են 'ի Սպերայ, որ 'ի սուրբ գիրս կոչի Սովփեր։ Այս երկիր էր շրջակայ սահմանս աղբերն Փիսոն գետոյն, առ որով անցանէր նոյն գետ. այնգունակ և մերս Սպեր բերող ազնիւ ոսկւոյ՝ մինչև ցայժմ կայ կառուցեալ 'ի շըրջակայ սահմանս աղբերն Ճորոխ գետոյն. զոր որպէս ցուցաք 'ի գլուխն Գետոց, և աստ ունիմք ցուցանել 'ի գլուխն Բնակչաց, է նոյն իսկ Փիսոն գետ, որ յօտար ազգաց կոչեցաւ Փասիս։

Իսկ վասն առատութեան ոսկւոյն Սպերայ վկայեն արտաքին պատմութիւնք 'ի գրելն զՃանապարհորդաց՝ որք աստի և անտի նաև 'ի հեռաւոր աշխարհաց ընդ Պոնտոս նաւարկելով գային 'ի Կողքիս և 'ի Փասիս գետ առնուլ զոսկին. բայց առ նոսա ոսկին կոչի յանուն Կողքիսոյ, զորոյ զպատճառն եդաք 'ի գլուխն Բերոց 'ի խօսելն զոսկւոյ.

տես անդ ։ Նա զի՝ Կալմէտ 'ի Ճառին իւրում զբան Յոբայ ինն . ուր Յոբ զազնիւ ոսկին նմանեցուցանել կամելով իմաստութեան , յիշէ տեղի ինչ ասելով 'ի 6 . «Տեղի շափիղայի քարինք նորա , և հող նորա ոսկի » , իմանայ զայն վասն տեղւոյ և հողոյ և ոսկւոյ Սոփերայ , որ է ասել Սպերայ . զի ինքն Յոբ 'ի 16 համարն մեկնելով յայտնի յիշէ զայս յանուանէ . « Եւ ոչ բարձցի ընդ ոսկւոյն Սովփերայ , ընդ եղնգանն պատուականի , և ընդ շափիղայի » ։ Այս է արդարև նոյն իսկ երկիրն Սոփեր կամ Սպեր , ուր ելանէ ոսկի ազնիւ , և յորոյ սահմանակից երկիրս գտանին եղենգնաքարն պատուական և շափիղայ , զորոց գրեցաք 'ի գլուխն Բերրոց ։ Սոյնպէս և այլով անուամբք յիշատակեալքն 'ի զանազան տեղիս սուրբ գրոց , որպէս Ոսկի կեֆազեայ Երգոց Ե . 11 . Ոսկի ոփազայ Դանիէլի Ժ . 5 . և Ոսկի ոսկֆազեայ Երեմ . Ժ . 9 . զայս ամենայն համարի Կալմէտ 'ի մեկնութեան Ծննդոց Բ . 11 . լինել մի և նոյն ոսկին Սոփերայ , այսպէս անուանեալ պէսպէս այլայլութեամբ յանուանէ Փասիս գետոյն , առ որով էր Սոփերն կամ Սպերն ։

Արդ զՍոփեր տեղին զառաստացեալն այսպէս ազնիւ ոսկւով թէպէտ յարտաքնոց ոչ ոք ծանեաւ՝ թէ իցէ Սպեր տեղին 'ի Հայս , ըստ որում չէր ինչ ծանօթ նոցա . բայց եղեն ոմանք առ նոսա՝ որք ծանեան զՍոփերն լինել 'ի Հայս . 'ի նախնեաց եղև Եւստաթէոս Անտիոքացին , որ 'ի գիրս վեցօրէից զՕփիրն կամ զՍոփերն եդ լինել 'ի Հայաստան . իսկ յարդեաց Կալմէտ . որոյ առանձին ճառ կարգեալ վասն այսր 'ի սկիզբն մեկնութեան Ծննդոց՝ պէսպէս պատճառօք հաստատէ . որպէս և յիւրում բառարանի Ս. գրոց 'ի բառն Օֆիր , ասելով թէ այս տեղի է 'ի Հայաստան 'ի կողմանս ականց Տիգրիսի և Եփրատայ , ուրանօր սփռեցան որդիք Յեկտանայ , յորոց և մին կոչէր նովին անուամբ Օֆիր , ըստ մեզ Ուփիր . և յուզելով գտանել 'ի Հայաստան տեղի ինչ նմանաձայն անուանս Օֆիր կամ Սոֆիր , գտանէ զՍօֆարս , յոր անուն կոչեաց Յուստինիանոս կայսր զչորրորդ մասն բաժնին Հայոց , որ ընդ տէրութեամբ իւրով ։ Այլ թէ Կալմէտ ծանօթ լինէր պատմութեան և աշխարհագրութեան ազգիս՝ յայտնի իմանայր լինել զՍպերն , յոր անուն կոչի մինչև ցայժմ . զի Սօֆարսն է այլայլեալն Ծոփաց անուան ։

Այս կարծիք առաւել ևս քաջայայտ հաստատեսցի 'ի բացատրելն թէ նաւք Քիրամայ և Սողոմոնի զիարդ գնային 'ի Սպեր , զոր օրինակ պատմեն սուրբ գիրք գնալ 'ի

Սովփեր։ Չէ անկ ասել 'ի Փիւնիկիոյ 'ի Պոնտոս ծով նաւարկեալ նոցա, և անտի ընդ Փասիս ելեալ 'ի Սպեր. զի փիւնիկեցւոց նաւարկութիւն 'ի հեռաւոր սահմանս և 'ի Պոնտոս՝ ոչ գոյր յառաջ քան զժամանակ Սողոմոնի։ Վասն որոյ զնաւարկութիւն սողոմոնեան նաւուց 'ի Սպեր՝ այսպէս պարտ է գնել ըստ Կալմէտի։ Նաւք Սողոմոնի ելեալ 'ի Գասիոնգաբերայ, որ է 'ի կարմիր ծովու, և անցեալ ընդ նեղուցն Պապիլմանտէլ՝ նաւարկէին 'ի պարսկային ծոցն. անդուստ մտանէին 'ի Տիգրիս և յԵփրատ մինչև ցայն վայր՝ ուրանօր մարթ էր նաւարկել յայն վաճառատեղիս՝ զորս ունիմք յիշել ստորև. և անտի կամ արք նորա ճանապարհ արարեալ ընդ ցամաք գնային մինչև 'ի Սպեր առնուլ զոսկի, և կամ վաճառականք կողմանց Սպերայ բերէին մինչև 'ի նոյն վաճառատեղիս 'ի վաճառել։ Այս արք Սողոմոնի և Քիրամայ յայն վաճառատեղիս Տիգրիսի և Եփրատայ ժողովեալ գտանէին և զայլ զանազան վաճառս բերեալ 'ի զանազան աշխարհաց, որպէս և 'ի Հնդկաց, զորս յիշէ սուրբ գիրն առնուլ և բերել նաւուց Սողոմոնի. որք են կապիկ, սիրամարգ, ժանիք փղաց և այլն։ Կամ թէ 'ի դարձին մտանէին նաւք Սողոմոնի և յայլ նաւահանգիստս Արաբիոյ և Եթովպիոյ՝ ուր գտանէին զնոյն վաճառս. զի կապիկ բազում է յԵթովպիա, զորս կարէին առնուլ նաւք Սողոմոնի յարևմտեայ ծովեզերաց կարմիր ծովու։ Սիրամարգք 'ի հնումն կոչէին Հաւք Մարաց, սակս բազմութեան նոցա 'ի Մարս [1], ուստի կարէին բերել 'ի վաճառատեղիսն Եփրատայ և Տիգրիսի, յորս գնային նաւք և արք Սողոմոնի. որպէս և ըստ գրելոյ Դիոդորոսի սիկիլիացւոյ [2] 'ի Բաբիլոն գտանէին բազմութիւն սիրամարգաց զանազան գունովք։ Իսկ զանտաշ փայտս ամուրս և զականս պատուականս, զորս յիշէն սուրբ գիրք [3], մարթ էր բերել նոցա 'ի նոյն իսկ 'ի կողմանց Սպերայ. քանզի մօտ են անդ մինչև ցայժմ ծառախիտ անտառք Համշէնոյ, գըտանին նաև ականք ինչ մերձ յայն կողմանս հայաստանեայց, զորս յիշեցաք 'ի գլուխն Բերոց։

Այսպիսի նաւարկութիք 'ի զանազան նաւահանգիստս մտանելով, և ընդ զանազան վաճառատեղիս շրջելով ընդ ցամաք, առ 'ի տալ զվաճառս իւրեանց և առ 'ի առնուլ

1 Ընդ Մարս խառն ասել և զՀայս, որպէս բազում ուրեք աւանդեալ է մեր։

2 Դիոդորոս սիկիլիացի գիրք Բ. Հատոր Ա. Թղթահամար 165։

3 Զ. Բաղդատութեանց. գլուխ Ֆ. 11. 12։

զվաճառս այլոց աշխարհաց, հարկաւորապէս պէտս ունէ-ին երկարուէ ժամանակի, զէթ երեսուն ամաց. այս է՝ զոր սուրբ գիրք երեամ ժամանակ տան այնմ նաւարկուէ երթալոյ և գալոյ. Թէպէտ և բենեդիկտեանն Փէյեօ այլազգ իմանայ զկանոն սուրբ գրոց. որպէս թէ յերիս ամս միանգամ գնայր նաւուց ընդ այն ճանապարհ, և ոչ թէ զերիս ամս ծախէր 'ի ճանապարհորդութեն. Այսպիսի նաւարկուէ 'ի սակս վաճառականուէ ոչ օտար ինչ է, զի և վասն այլոց ազգաց ընթեռնումք այսպէս նաւարկեալ 'ի հնումն վաճառականուէ աղագաւ. զոր օրինակ է այն զոր պատմէ Ստրաբոն ժԷ. յԱրիստոբուղեայ բերելով, թէ բնակիչք Ճեռրայի, որ էր քաղաք առ ծովով Արաբիոյ, զվաճառս իւրեանց բերէին նաւուք մինչև 'ի Բաբիլոն. իսկ անտի 'ի վեր ելեալ ընդ Եփրատ մինչև ց Թափսակ՝ զնոյ-նս ընդ ցամաք մինչև 'ի Միջագետս, 'ի Հայաստան և յասո-րեստան: Սոյնպէս և զոր ինչ պատմէ Պլինիոս Զ. 23. վասն ճանապարհաց արեւելեան վաճառականաց՝ նման են այսմ նաւարկուէ արանցն Սողոմոնի.

Ոչ ինչ օտար և սակս՝ նաւուց Սողոմոնի նաւարկեալ 'ի Սոփեր կամ 'ի Սպեր, որոց ոչ լինէր դէպ ուղիղ նաւարկել 'ի Սոփեր. զի որպէս բերէ Կալմէտ 'ի ճառն իւր օրինակի աղագաւ, 'ի Հոլանդիա գնայ նաւս զնմանէ՝ որ 'ի վերջին ծայր նորա գնայ յառնուլ զվաճառս Հոլանդայի 'ի վա-ճառականաց հոլանդացւոց անդ գտելոց: Ի Բերիա գնա-ցեալ նաւսն նաւուց վաճառականաց, որք գնան յՍնտի-ոք նաւահանգիստ Բերիոյ, թէպէտ եւօրեայ հեռի 'ի նմանէ, բայց առ 'ի բառնալ զվաճառս Բերիոյ. սոյնպէս վասն սողոմոնեանն նաւուց 'ի Սոփեր առի նաւարկել. զի նաւարկուէ նոցա էր վասն վաճառականաց և վաճառացն Սոփերայ կամ Սպերայ:

Ս այս ճանապարհ նաւարկուէ Սողոմոնի 'ի Գասսիտա-դաբերայ կամ 'ի կարմիր ծովէ 'ի պարսկային ծոց, անտի 'ի վեր յԵփրատ, ճոխագոյն բանիւ ստորագրեալ 'ի Կալ-մետայ 'ի նախայիշեալ ճառին իւրում, 'ի քննելն մեր ու-շիմ մտօք՝ գտանեմք յարմարագոյն պատմուէ սուրբ գրոց և այլոց նախնեաց քան զայլ ամենայն կարծիս, զորս մեկ-նիչք և հնագիրք մինչև ցայժմ հնարեցին առ 'ի չգոյէ տեղեկութեան աշխարհին մերոյ, զոր և այսպէս առաջի դնեմք: Նախ առաջին զայն պարտ է յուշ ածել՝ զոր 'ի վե-րոյ 'ի գլուխն Բերոց եդաք, թէ այժմեան հանք ոսկւոյ և արծաթոյ, որ 'ի Կիւմիշխանէ, է նոյն հանք ոսկւոյն որ 'ի

Հնումն կոչէր յանուն Սպերայ կամ Սոփերայ։ Պարտ է ասել եւս՝ թէ հանքն Արղնոյ եւ Կապանոյ միով անուամբ կոչէր յայնժամ 'ի հեռաւոր տեղիս յանուն Սպերայ կամ Սոփերայ, սակս անուանի գոլոյ յայնժամ Սպերայ, որպէս գրեցաք 'ի վերոյ։

Օ այս իմացեալ, յայտ է աստ թէ այս երբեմն հանք առատաբերք, հանք Սոփերայ անուանեալք, կարի մերձակայ էին տիւրացւոց եւ սիդոնացւոց, եւս եւ Հրէից, քան զայն հանքս Սպանիոյ եւ Սօփալայն Ափրիկոյ՝ զոր ոմանք Սոփեր կարծեցին լինել։ Տիւրացիք 'ի հարկէ լսէին եւ իմանային՝ թէ առ Տիգրիսիւ մերձ յակունս իւր յԱրղնի՝ էր առատաբեր հանք ոսկւոյ. իսկ առ Եփրատաւ 'ի Կապան տեղւոջ էր այլ հանք առատաբեր արծաթոյ. նոյնպէս եւ 'ի վերին կողմանս Եփրատայ ոչ այնչափ ինչ հեռի՝ էր այլ հանք որ այժմ Կիւմիշխանէ անուանի, իսկ յայնժամ կոչէր յանուն Սպերայ կամ Սոփերայ, որ էր առ Փասիս կամ Ճորոխ գետով։ Արդ զայսոսիկ զերեսին եւս հանքս յանյիշատակ ժամանակաց բացեալս 'ի շրջակայ սահմանս Եփրատայ վերուստ 'ի վայր իբր 'ի մի կարգ դասաւորեալս լսելով 'ի վաճառականաց եւ 'ի ճանապարհորդաց եկելոց, եւ տեսանելով իսկ արդեամբք զերթեւեկս վաճառականաց ամենայն շրջակայ ազգաց, զինչ որդ 'ի բաց թողուին տիւրացիք, առ որս մօտ էր ճանապարհ եւ դիւրին, եւ երթային 'ի խնդիր երկայնելին այն հեռաւոր հանքացն Ափրիկոյ եւ Սպանիոյ՝ զորս տարապարտ հնարեցին ոմանք. եւ զինչ յանձն առնուին զանհնարին վիշտս եւ դժնդակ վտանգս. մի զոր ինչ խնդրելին տիւրացիք եւ նաւք Սողոմոնի՝ եւ յորոց սակս երթային, ամենայնին գտանէր 'ի մօտակայս [1], որպէս ասացաք։

Արդարեւ որ անաչառ մտօք խորհեսցի զայս, ինքնին հաւանի այսմ կարծեաց, եւ մերժէ զմիւսն, որ եւ 'ի բազումս

1 Ի տաղդանդեան ժամանակս գնել կարգաւորելով նաւարկութիւն 'ի Հընդիկս՝ ընդդիմանալ նախնի պատմութեանց. շատ է ընթեռնուլ զնաւարկութիւն Նէարքոսի, զորմէ գրէ Արրիանոս։ Որ Նէարքոս, զոր մեծին Աղեքսանդրի դրօշից եւ զօրավար էր կացուցեալ նաւատորմիղին իւրոյ զգօրսն եւ զնաւսն տանել 'ի Հնդկաց 'ի պարսկային ծոցն, այնպէս խօսի՝ իբր թէ յառաջ քան զինքն անծանօթ էր հանապարհն այն նաւարկութեան, ոչ գիտելով թէ յինչ ծով կամ յինչ ցամաք ունէին պատահել։ Որ արդարեւ ոչ նախնի օրինակաւ խօսէր, եթէ տիւրացիք կամ սողոմոնեանք ունէին երթեւեկեալ յառաջ քան զնոյն ծովս Հնդկաց, որ եւ յայտ է թէ հանապարհորդեալ լինէր մինչեւ յաւուրս մեծին Աղեքսանդրի։ Տես 'ի Ռ. Հասար փոքր աշխարհագրութեան տպեալ 'ի հասարակապետին Օլանտիոյ 'ի Լոնդոն զոր ինչ գրէ Արրիանոս 'ի սկիզբն վասն Նէարքոսի։

է բազմօրինակ. որպէս 'ի նախնեաց Յովսեպոս 'ի Հնդիկս դնելով գտանել զՕֆիր կամ զՍոփեր, գրէ[1]. Թէ Սողոմոն հրամայեաց իւրոց նաւուց գնալ և նաւարկել "յաշխարհն Հնդկաց՝ 'ի հնումն Սոփիրա կոչեցեալ, իսկ այժմ Ոսկի Երկիր, առ 'ի բերել ոսկի": Ուստի առեալ, ասէ, իբր քառասուն տաղանդ ոսկւոյ՝ դարձան առ Սողոմոն: Բայց ոչ ոք եգիտ մինչև ցայժմ զանուանս Սոփիր 'ի Հնդիկս. Դուկաս Հօլստէյն զամենայն Հնդիկս այսպէս անուանեալ կարծէ, բայց է հնարեալ ըստ կամի. կամ Սուփար խոչ տեղի համարի, որ 'ի կղզին կեյլոնեանց: Այլք եդին զՍոփերն 'ի Մալապար, 'ի Սէյլան, 'ի Տապրոպանիա. ըստ որում ամենայն վաճառք, որոց 'ի խնդիր էին նաւք Սողոմոնի, գտանին առեն 'ի նմա: Այլք Սոփեր կամ Օֆիր կարծեցին լինել զՀիւրմիւզ տեղին՝ որ 'ի բերան պարսկային ծոցոյն, ընդդէմ ամենայն պատմութեան զոր սուրբ գիրք արձանագրեն: Ոմանք 'ի Բէկու եդին, որոյ բնակիչք, ասեն, սերունդ են Հրէից անդր տարագրելոց 'ի Սողոմոնէ 'ի հանել զհանքս: Եւ այլք 'ի Սումադրա, 'ի Պէնկալա, և այլն:

Յայտ է գլխաւոր վրիպակ սոցա, զի զամենայն վաճառս յիշատակեալս 'ի սուրբ գրոց՝ համարեցան լինել բերս մի և նոյն երկրի. ոչ զմտաւ ածին թէ նաւք Սողոմոնի գնային 'ի վաճառատեղիս՝ ուր ազգի ազգի վաճառս 'ի զանազան աշխարհաց հաւաքեալ, կարէին գտանել 'ի նոսա զորս կամէին: Քոլոմպոս գտիչ Ամերիկոյ՝ եդ զՍոփեր յԱմերիկա, ըստ որում ետես անդէն բազում այլս ընդերկրեայս հարուստ տարածութիւն ձգեալս, զորս կարծեաց լինել գործ գործավարացն Սողոմոնի 'ի հանել զոսկի: Այլք եդին 'ի Բերու ոսկեբեր աշխարհին Ամերիկոյ[2], նկարեալ նաև զճանապարհորդութիւն նաւուց Սո-

1 Յովսեպոս 'ի հնախօսութեան Հրէից գիրք Է. գլ. 6:

2 Գիտեմք արդարև 'ի հին աշխարհագրութենէ՝ թէ Ամերիկա ծանօթ էր նախնեաց, բայց ըստ ասելոյ Պերիսոնիոսի 'ի վերլուծութեան Եղիանոսի՝ էր ծանօթութիւն յայտ նաւաց. ուր նաւք ոմանք կամ յալեկոծութենէ անկեալ էին և կամ ըստ պատահման խիճ անդ գնացեալ և անդի եկեալ. այլ համարձակ երթևեկ նաւուց վաճառականաց, որպէս ցուցանէ պատմութիւն որ վասն Քիրամայ և Սողոմոնի նաւուց, միայն 'ի միջերկրական ծովու էր, և 'ի մերձակայս կարմիր ծովու: Վասն որոյ ասել թէ նաւք Քիրամայ գնային և գային 'ի Բերու Ամերիկոյ, այս է ըստ կամի հնարեալ, զի ոչ գոյր 'ի նախնումն նաւարկութիւն անդր քան զհերակլեան արձանս, որպէս ցուցանէ 'ի բանից նախնեաց և Պելլարիոս յաւուրս իւրում աշխարհագրութեան: Այսպէս ըստ պատահման էր և նաւարկութիւն շուրջ զԱփրիկէիւ հազիւ երրեք լեալ, այլ ոչ նաւարկութիւնք համարձակք, որպէս նաւարկէին՝ երթային և գային նաւք Սողոմոնի և Քիրամայ:

ղոմոնի ընդ որս երթեւեկէին ։ Ոմանք եդին յԱփրիկէ․ յորս երեւելի գտաւ Հուետիոս, որ 'ի գիրս Նաւարկութեան Սողոմոնի, և 'ի գիրս Նաւարկութեան Նախնեաց գլ․ Է․ Թղթ․ 32․ ասէ՝ թէ Օփիրն կամ Սոփիրն էր ընդհանուր անուն ամենայն արեւելեան ծովեզերեայց Ափրիկոյ, և ուր բապէս աշխարհին Սոֆալայի՝ ուր առատութիւն է ոսկւոյ․ յոյր սակս քանի՛ աշխատութիւն կրէ 'ի մեկնել 'ի Թղթ․ 63․ որպէս և Թարշիշն էր, ասէ, ընդհանուր անուն համօրէն արեւմտեան ծովեզերեայց Ափրիկոյ և Սպանիոյ՝ ուր առատութիւն է արծաթոյ ։ Բայց ըստ կամի յորջորջումն է այդ ։ Համարի ևս՝ թէ միջերկրական ծով կցեալ էր Ջրանցիւք ընդ կարմիր ծովու․ այլ վասն այսր բացման Ջրանցիցս չէ մարթ գիտել, որդեօք կային 'ի ժամանակս Սողոմոնի[1] ։

Նա յայսչափ այլ և այլութիւն կարծեաց ոչ գտանէ ընթերցօղն յարմարագոյն քան զմեր առաջարկեալն 'ի վերոյ, յորում ամենայն խնդրեալքն նաւուց Սողոմոնի միանան ։ Առատութիւն ոսկւոյ և արծաթոյ իբր ընական իմն երկրին Եփրատայ և մօտակայ սահմանաց նորա ։ Նոյնութիւն անուան տեղւոյ Սոփեր կամ Սոպեր անուանելոյ ։ Համառօտութիւն և դիւրութիւն ճանապարհի, նաև գիւտ այլ ամենայն վաճառաց զորս գտանէին աստ և անդ 'ի ճանապարհի, և կամ 'ի վաճառատեղիսն յորս գնային ։ Ցաւել 'ի վերայ և զյարմարութիւն բանից Նախնեաց ընդ տեղւոյն, և ընդ անուանն ։

## ՅՕԴՈՒԱԾ Գ

Վաճառատեղիք կամ Շահաստանք, արտաքոյ Հայաստանեայց ։

ՅԱՅՆ ևս վաճառատեղիս՝ որք թէպէտ էին արտաքոյ աշխարհիս Հայոց, այլ կամ 'ի մերձակայս էին, և կամ առ երրեակ ճանապարհօք վաճառականութեան զորս 'ի վերոյ յիշեցաք, յայտնի է թէ յաճախէին և մեր վաճառականք՝ գնալով և կամ առաքելով վաճառս․ վասն որոյ յիշեսցուք սակաւոք զանուանս նոցա, նախ՝ զորս են առ Եփրատաւ և Տիգրիսիւ, և ապա զայլսն ։

1 Սար․ ԺԷ․ 804․ վասն Սեսոստրի Թագաւորին Եգիպտոսի դրէ յորս ձեռնարկեալ, այլ ըստ Արիստոտելի և ըստ Պղինիոսի Է․ 29․ առ երկիւղի ողողելոյ ջուրց կարմիր ծովուն՝ որ մնան է Ոմփիտանու՝ գաղարեալ․ իսկ Եղոդոտոս, և Դիոդորոս ասեն զՆեկաւոսայ արքային գրեն բուռն հարեալ 'ի բանալ, և 'ի վշտաստանութեան Դարեհէ աւարտեալ ըստ Եղոդոտոսի։

## ԲԱԲԻԼՈՆ

Յայս շահաստան մեծանուն քաղաք ընդ այլ վաճառս տանէին հայաստանեայք նաև գինի, որպէս յայտնի յիշէ Հերոդոտոս. զորոյ զգանս կարես տեսանել 'ի վերոյ 'ի առաջադրեալ երկրորդ ուղւոյն վաճառականութեան:

## ԹԱՓՍԱՔ

Նաւազուամ ուրեք յիշատակեալ 'ի նախնի աշխարհագրաց, որ կառուցեալ կայր առ Եփրատաւ յԱսորիս. զսա նոյն համարին որ 'ի Գ. Թագաւորութեան Դ. 24. գրի առ մեզ Թափսա: Մինչև ցասա կարէին գալ նաւք Սողոմոնի. առնի տանել զվաճառս իւրեանց ոսկի և անագ, և փոխանակ այնր բառնալ զանկին Սափերայ կամ Սափերայ եկեալ 'ի հայաստանեայց. յորմէ կարես իմանալ և զերթևեկութիւն մերոց վաճառականաց:

## ՊԱՂՄԻՐԱ

Հռչակաւոր քաղաք 'ի Փիւնիկիա որ առ Լիբանանաւ, մերձեալ հեռի յԵփրատայ, զորոյ զշինուած Սողոմոնի ընծայէ Յովսեպոս, Թեդմոր կոչեցեալ 'ի Բ. Մնացորդաց Ը. 4. ըստ այլ թարգմանութեան Թադմոր, որ թարգմանի արմաւենի: Երևելի եղև՝ յորժամ Ոդենաթոս պաղմիրացի իշխէր անդ ընդարձակեալ զտէրութիւն. յետ որոյ քանզի դշխոյն Զենոբիա կին նորա առաւել ընդարձակէր մինչև ցԿապադովկիա՝ 'ի վերայ յարձակեցաւ Աւրելիանոս կայսրն, զառամբ ածեալ զՊաղմիրա, և զԶենոբիա գերեալ: Ի ժամանակին յայնմիկ քաղաքս այս ժողովարան էր վաճառաց եկելոց յամենայն կողմանց Ասիոյ, և անտի անցանէր յարևմուտս. յորմէ կարես իմանալ զվաճառութիւն նաև մերոց վաճառականաց, մանաւանդ բնակելոցն 'ի Կապադովկիա, որ ըստ մասին էր 'ի փոքր Հայս:

## ՈՊԻՍ

Կառուցեալ առ Տիգրիսիւ. որ ըստ Ստրաբոնի Թղթ. 739. էր ժողովարան վաճառաց շրջակայ սահմանաց. ուրանօր Պարսիկք արկին արգելս առ 'ի չթողուլ նաւարկել թշնամեաց:

## ԲԱԴՆԱ

«Բաղայք Միջագետաց, յորում առ ժամանակօք Կոստանդեայ կայսեր լի էին վանականօք, որպէս գրէ Ամմիանոս ԺԴ. 3. ուր 'ի սկիզբն սեպտեմբերի ամի ամի լինէր տօնավաճառ մեծ, յորում ժողովէին անհուն բազմութիւնք առ 'ի գնել զվաճառս Հնդկաց և զաշխարհին Սերեսաց և զայլոց աշխարհաց. զի անդ բերէին յամենայն կողմանց ընդ ծով և ընդ ցամաք: Նոքա որք ընդ ցամաք բերէին՝ անցանէին ընդ Պարսիկս անցանէին կարաւանօք, ասէ Հիերոնիմոս Թղթ. 359. և 360. իսկ որք ընդ ծովն Պարսից գային, ընդ Եփրատ 'ի վեր ելանէին մինչև առաջի Բադնէի, որ չէր ինչ հեռի յԵփրատայ.

Սոքա են վանատեղիք առ եզերօք գետոցն Եփրատայ և Տիգրիսի. իսկ արտաքոյ սահմանաց երկուց գետոց յիշատակին և այլ երևելի վանատեղիք 'ի մասին Ասիոյ, յորս գնալ և մերոց Հայկազանց վանականի կամ ուխտաւորութեան աղագաւ ընդ վանականս նոցա՝ ոչինչ իւիք երկբայիմք, զորս յառաջիկայդ յիշեսցուք սկսեալ 'ի Հնդաստանէն:

## ԴԻՈՍԿՈՒՐԻԱՍ

Հռչակաւոր վաճառատեղի մերձ առ Պոնտոս ծով, նուաճեալ յԵւպատորն Միհրդատայ, զորմէ գրէ Ստրաբոն ԺԱ. 498. «Դիոսկուրիաս սկիզբն է պարանոցին (կամ ցամաքին) որ ընդ մէջ Պոնտոսի և Կասպից ծովու, հասարակաց վաճառատեղի ազգացն 'ի վերոյ և 'ի մերձակայս բնակելոց. քանզի աստ են եօթանասուն և ըստ ոմանց նաև երից հարիւր ազգաց 'ի նմա ժողովիլ»: Սոյնպէս և Պլինիոս Զ. 5. «Քորաքսեանք (ասեն) 'ի Կողքիս քաղաք Դիոսկուրիաս, առ գետոյն Անթեմունթա, որ այժմ է անապատ. այլ երբեմն այնչափ էր ծաղկեալ՝ մինչև երից հարիւր ազգաց այլալեզուաց 'ի նմա հաւաքիլ աւանդէ Տիմոսթենէս. և ապա մերոց (հռովմայեցւոց) հարիւր և երեսուն թարգմանօք առնել անդէն վաճառականութի»:

Արդ զիարդ մարթ էր չառնել երթևեկութ̃ վաճառականուց̃ և մերոց Հայկազանցս յայսպիսի վաճառատեղի, յորում էր խուռն բազմութի այնքանեաց այլալեզու ազգաց և ազանց, և որ մերձակայ դրիւքն կարի նպաստամատոյց նոցա, առ 'ի առնել անդ զվաճառս իւրեանց, և զերկեալսն

'ի Պոնտոսէ ածել յաշխարհն իւրեանց. Նա զի Պլինիոս Քերասունեանց քաղաք կոչելով ցուցանէ լինել 'ի սահմանակցութե քօրապքեանց կառուցեալ, որ ըստ մասին էր 'ի Հայս։ Յայտ է եւ թէ քանի մերձաւորութի էր մերոց ընդ եգերացիս՝ որք են կողքիսացիք. քանի խառն բնակութի Հայոց ընդ Խաղտիս, որ է մի 'ի գաւառացն Կողքիսոյ, մինչեւ յատարազգի մատենագրաց կոչիլ զնս այնորիկ Առմենօքալիւք։ Յայտ է եւ անտի՝ զի Ստրաբոն գրելով ժա. 506. թէ բարձրագոյն մասունք Կովկասու այնոքիկ են՝ որք 'ի հարաւակողմն ձգին, եւ բնակեալ կան 'ի զանազան ժողովրդոց, որքս ասէ ժողովին 'ի Դիոսկորիաս շահաստան քաղաք Կողքիսոյ 'ի պատճառս գնելոյ զաղ։ Արդ այն գոլով առատագոյն բերք հայաստանեաց սահմանակցաց Դիոսկորիասայ, յայտնի է թէ վաճառականք մեր էին որք տանէին 'ի Դիոսկորիաս 'ի վաճառել։ Որպէս կովկասայնոյն ազինքս այսոքիկ՝ նոյնպէս եւ հիւսիսակողմանք Պոնտոս ծովու 'ի Դաւրիայ եւ 'ի Մէոտիս ծովակէ եւ 'ի շրջակայ սահմանաց գային 'ի հարկէ 'ի Դիոսկորիաս առնուլ զվաճառս առխացւոց, փոխանակելով ընդ վաճառաց իւրեանց։

## ԹԱՐՇԻՇ կամ ԹԱՐՍՈՍ

Հռչակաւոր վաճառատեղի՝ բազում ուրեք յիշատակեալ 'ի սուրբ գիրս. զորոյ զտեղւոյն քանզի բազում վէճ է առ մատենագիրս՝ հարկ է մեզ խօսել ճոխագոյն ըստ կարգի։

Պատմութիւնք նախնի ժամանակաց ուսուցանեն մեզ, թէ առ 'ի գտանել զտեղի քաղաքի իրիք նախնի ժամանակաց, զայս կանոն պարտ է ունել անվրէպ. իբր զի 'ի գտանելն զոմն յառաջին նահապետաց համանուն նոյն քաղաքի, զորմէ է խնդիրն, 'ի նմանէ անկ է համարել հիմնեալ եւ անուանեալ զայն քաղաք. նոյնպէս եւ զտեղի նորին քաղաքի անդ անկ է յուզել, ուրանօր էր բնակութիւն նոյն նահապետին։

Յայս եղեալ հիմն եւ կանոն բանիցս, քանզի 'ի ծննդաբանութեն Մովսեսի Ժ. 4. գտանեմք որդի Յաբեթայ լինել Յաւան, եւ որդի Յաւանայ Թարսիս, կամ որ նոյն է Թարշիշ, նմին իրի զտեղի Թարշիշ քաղաքին՝ որ է համանուն նահապետին, պարտ է յուզել կամ 'ի Հայաստան՝ ուրանօր եղեւ առաջին աճումն եւ բազմանալ մարդկան, կամ 'ի շրջակայս Հայաստանեաց՝ յորս նախ առաջին սփռե-

ցան մարդիկ։ Արդ քանզի 'ի Կիլիկիա 'ի սահմանակից աշխարհն Հայաստանեայց գտանեմք քաղաք հին յոյժ Թարսոս անուանեալ յօտար ազգաց, իսկ 'ի մեզ Տարսոն յորջորջեալ, կայ մինչև ցայժմ և կոչի Թէրսուս կամ Թէրշիշ, զայս քաղաք պարտ է ասել համարել նոյն՝ զոր սուրբ գիրք բազում ուրեք յիշատակեն Թարսիս անուամբ, և ցուցանեն լինել ծովեզերեայ քաղաք վաճառատեղի անուանի, յոյր սակս յաճախէին նաւք փիւնիկեցւոց, ապա և նաւք Սողոմոնի 'ի սակս զանազան վաճառաց։

Իսկ եթէ չասիցեմք զայս Թարսիս կամ Տարսոն թէ նոյն երևելի վաճառատեղի իցէ յիշատակեալ 'ի սուրբ գրոց, զիա՞րդ մարթ է հաւատալ՝ եթէ փոքրն Ասիա ծաղկեալն 'ի ժամանակին բազմութ՟ ժողովրդոց և վաճառաց, յերից կողմանց ևս պատեալ ծովովք, 'ի միոյ կողմանէ և եթ 'ի Պոնտոս ծովէ ունիցի զծովեզերեայ իւր վաճառատեղի հռչակաւոր, իսկ 'ի միւս յերկոսին կողմանս պատեալ հարաւստ տարածութ՟ միջերկրական ծովու՝ չունիցի բնաւ։ Զի արդարև այլ ինչ վաճառատեղի երևելի ծովեզերեայ ոչ յիշատակի 'ի գիրս, բայց միայն 'ի Կողքիս՝ որ է իբր 'ի ծայր Պոնտոս ծովու։ Ապա պարտ է ասել թէ նաև այս Տարսոն կամ Թարսիս էր մեծ վաճառատեղի փոքուն Ասիոյ 'ի միջերկրական ծովու, որպէս և Կողքիս 'ի Պոնտոս ծովու։ Զայս մեր կարծիս հաստատեն 'ի նախնեաց Յովսեպոս, Քաղդէական մեկնութիւնն և արաբացիք։

Նոյն 'ի խնդիր ելանել յաւելել 'ի հեռաւոր աշխարհս առ 'ի գտանել զԹարսիս, որպէս ոմանք 'ի Սպանիա, ընդդէմ ելանէ կարգի պատմութ՟. քանզի 'ի վաղեմի ժամանական անդ գնալն յաշխարհ հեռի՝ էր սակս գտանելոյ զտեղի բնակութ՟. Թարսիս գոլով թոռն Յաբեթայ՝ բազմամարդութիւն չէր այնչափ առաւելեալ 'ի ժամանակին 'ի հայաստան՝ մինչև չգտանել տեղի բնակութ՟ ոչ անդ և ոչ 'ի շրջակայս նորա, որպէս էր Կիլիկիա և Թարսիս քաղաք նորա, և ստիպել հատանել զանդունդս ծովուն առ 'ի գնալ 'ի Սպանիա։ Եւ ևս 'ի դնելն զԹարսիս 'ի Սպանիա, պարտ էր ասել թէ այնպիսի հեռաւոր աշխարհ յայնմ ժամանակի այնչափ ճոխացեալ լինէր վաճառականութ՟, ունելով զայնպիսի հռչակաւոր վաճառատեղի. իսկ համօրէն փոքրն Ասիա, յորում հաւաքէին ամենայն արևելեան վաճառք և որ յերից կողմանց ևս պատեալ էր երևե-

գտանել 'ի Սպանիա, ուր գտեալ ոմանք զԹարսիս[1]. զի յայն-մինի հեռաւոր աշխարհ, զոր օրինակ էր Սպանիա, նաև այժմ հազիւ երրէք գէպ լինի գտանել նաւ պատրաստական. Թող և զայն զի 'ի ժամանակին յայնմիկ չէր այսպէս յաջողեալ նաւարկութի: Սաղմոսերգութն Հա. 10. կամելով յայտնել՝ թէ Թագաւորք արևմտից և արևելից առհասարակ ունէին ճանաչել զքրիստոնէութի, և պաշտել զՔրիստոս, յարևելեան կողմանէ յիշէ զԹագաւորս Արաբայ և Սաբայ. իսկ յարևմտեան կողմանէ՝ զԹագաւորս Թարշշի և կղզեաց: Ցայս բանս ևս անունս Թարշիշ 'ի դէպ գայ Տարսոնի. զի կղզիք կոչին ըստ սուրբ գրոց՝ ոչ միայն կղզիք միջերկրականն ծովուն, այլ նաև ամ ծովեզերեայ ազգք և եզերք նորին ծովուն: Սոյնպէս պարտ է իմանալ և 'ի բանս Եսայեայ, յորս միանգամայն ընդ կղզիս յիշատակի և Թարսիս, այն է Տարսոնն Կիլիկիոյ. որ երբեմն գոլով զօրաւոր յոյժ, 'ի կարգս այլոց Թագաւորութեանց յիշատակի:

Իսկ զոր սուրբ գիրք ուրեք ասեն 'ի Գասիոնգաբերայ նաւարկել նաւուց առ 'ի գնալ 'ի Թարշիշ, որ էր 'ի կարմիր ծովուն, ընդդէմ երևնէ ամենայն կարծեաց, այլ նոցա մանաւանդ՝ որք 'ի Սպանիա գտեալ զԹարշիշ. զի յայնժամ պարտ է ասել՝ թէ 'ի Գասիոնգաբերայ ընդ կարմիր ծով նաւարկեալ, ընդ Բարեյուսոյ հրուանդան Ափրիկոյ անցեալ, այլև զհամօրէն Ափրիկէիւ շուրջ եկեալ, այնպէս գնային 'ի Սպանիա. յորում ժամանակի ընծայել նաւավարաց այսչափ ծանօթութի ծովուց, և այսչափ համարձակութիւն, չէ ընդունելի: Եւ այսպէս իմանամ զբանս սուրբ գրոց. այն նաւք ելեալք 'ի Գասիոնգաբերայ՝ 'ի կարմիր ծովէ գնային 'ի պարսկային ծոցն, և մտեալ 'ի վեր ելանէին յԵփրատ. շրջէին 'ի զանազան վաճառանեղիս որ առ Եփրատաւ, և որ 'ի շրջակայ սահմանս Եփրատայ և Տիգրիսի առ 'ի առնուլ զանազան վաճառս, զորս մին ունէր և միւսն չունէր: Արդ որպէս շրջէին 'ի սոսա՝ նոյնպէս և 'ի նմին ճանապարհորդութեան շրջէին նաև 'ի Թարսիս կամ 'ի Տարսոն, և 'ի մօտակայ տեղիս Տար-

1 Չի արդարև եթէ Թարսիսն լինէր յԱփրիկէ կամ 'ի Սպանիա՝ որպէս գտեալ ոմանք, առ 'ի նաւարկել յայնմինի հեռաւոր տեղի յայնմիկ ժամանակի՝ հազիւ երրէք գտանէին նաւք ելանելոյ 'ի ճանապարհ, որպ՝ Յովնան որ կամէր փութով փախչել, զիա՞րդ 'ի Յոպպէ խնդրէր առ 'ի փութով գտանել անդ նաւ պատրաստական գնալոյ 'ի Թարսիս: Բայց եդեալ զՏարսոն, հանապազօրեայ կարէր գտանել նաւ:

ածնի՝ յորս բերեալ ունէին վաճառականք [1] . 'ի նմին ճանապարհորդուէ եղանէին նաև 'ի Սոփեր, կամ անձամբ գնալով անդր՝ և կամ յուղեալ 'ի ձեռն վաճառականաց բերեալ ունելով յայն վաճառատեղիս զոսկին Սոփերայ : Վասն որոյ Թէպէտ զանազան տեղիք էին Սոփեր և Թարսիս, բայց եթէ մի և նոյն ճանապարհորդուէ յիշատակի 'ի սուրբ գիրս . օրինակ իմն 'ի Գ . Թագաւորութեան Թ . 26 . 28 . կոչի՝ նաւարկուէ 'ի Գասիոնգաբերայ 'ի Սովփերս . ապա ստորև Ժ . 12 . նաւարկուէ 'ի Թարսիս : Զի որպէս գնալով ընդ միջերկրեայական ծով դէպուղիղ 'ի Թարսիս՝ անդուստ առնուին բերէին զվաճառս զանազանս աշխարհաց, և զոսկին Սոփերայ կամ Սպերայ, զորս վաճառականք բերեալ ունէին անդր . նոյնպէս և 'ի Գասիոնգաբերայ գնալով ընդ կարմիր ծով 'ի վաճառատեղիս Եփրատայ առ 'ի բերել զոսկին Սոփերայ՝ առնուին բերէին միանգամայն 'ի նմին ճանապարհորդուէ նաև զվաճառս Թարսսի [2] :

Եւ այսպէս ըստ մեզ մի և նոյն Թարսիս է յիշատակեալն 'ի սուրբ գիրս, այլ ճանապարհորդութիւն կրկին . մի ընդ միջերկրեայական ծով, ընդ որ կամէր գնալ և Յովնան 'ի Յոպպէ մտանելով 'ի նաւ . իսկ միւս ճանապարհ էր ընդ կարմիր ծով 'ի Գասիոնգաբեր մտանելով 'ի նաւ : Այս ճանապարհորդուէ է՝ որ ուրեք 'ի սուրբ գիրս կոչի յանուն Սոփերայ, սակս անուանի գոլոյ առատութե և առատուէ ոսկւոյն Սոփերայ . այնր աղագաւ փոյթ մեծ էր վաճառականացն անդր գնալոյ . կոչի և յանուն Թարսսի, քանզի անուանի էր և առաւել վաճառքն նորա քան զայլ ամենայն վաճառատեղեաց . նմին իրի և ուղևորացն ցանկալի ճանապարհք նորա : Յաւելլ և զայս, զի Կիլիկիա գոլով երբեմն յոյժ զօրաւոր և երևելի՝ նմին իրի և Թարսիս կամ Տարսոն իւր մայրաքաղաք անուանի էր յայնժամ :

Այլ Կալմէտ՝ որ նոյնպէս զԹարսիս համարի լինել Տարսոն Կիլիկիոյ, 'ի մեկնուէ ծննդոց Ժ . 4 . կրկին նշանա-

1 Զի Տարսոն գոլով առ միջերկրեական ծովուն՝ 'ի նմա գտանէին զվաճառս արևելեան աշխարհաց Ասիոյ բերեալ ընդ ցամաք . նաև զվաճառս արևմտեան աշխարհաց Եւրոպիոյ և Ափրիկոյ բերեալ ընդ ծով, վասն այնորիկ և երկար ժամանակի պէտս ունէր այս ճանապարհորդուէ ըստ սուրբ գրոց :

2 Քանզի յայսմ ճանապարհորդութեան գտանէին զայլ և այլ վաճառս՝ զոր ոչ գտանէին դէպուղիղ գնալով 'ի Թարսիս կամ 'ի Տարսոն ընդ միջերկրեական ծով . որպէս և դէպուղիղ գնալովն անդ՝ գտանէին կամ գներոցն առնուին զայնպիսի վաճառս՝ զոր ոչ կարէին առնուլ 'ի միւս ճանապարհորդութե գնալով ընդ Եփրատ . վասն որոյ և փոփոխակի ընդ երկուս ճանապարհս գնային 'ի զանազան տեղիս :

կուչք ասէ մարթ է առնուլ զԹարսիս սուրբ գրոց. մի՝ փո-
խանակ քաղաքին Տարսոնի. և երկրորդ՝ փոխանակ մեծ
և երկայնանաւուց՝ զորս 'ի կիր առնուին 'ի գնալն ընդ
Թարսիս, որպէս և ամբարկեն, ասէ, սուրբ գիրք յայս
բան Է. Թագաւորութեանց Գ. 22. "Նաւ Թարսոսայ էր Սո-
ղոմոնի արքայի 'ի ծովու ընդ նաւս Քիրամայ,,: Եւ որ-
պէս ցուցանեն բանք Սաղմոսի խէ. 8. աստուածային մե-
ծի զօրուն գործ զրեն խորտակել զնաւս Թարսոնայ: Եւ
յեսայեայ Կ. 9. իբր մեծ ինչ համարին նաւք Թարսոնայ:

Իսկ այսպէս աւելորդ լինի մեկնութիւն այլոց. զի են՝ որք
ասեն եթէ Թարսիս անուամբ իմանայ սուրբ գիրն զՀա-
մօրէն Ովկիանոս, այլք զծով Հասարակ, ոմանք երկուս
Թարսիսս դնեն. զմին 'ի ծովն միջերկրական, և զմիւսն 'ի
Հնդկաս: Կղերիկոս զԹասոս կղզին դնէ՝ 'ի մերձաւորութէ
անուանց յայս կարծիս բերեալ: Զայլ կարծիս և զհեր-
քումն նոցա իբրև մեզ աւելորդս 'ի բաց թողում. նոյն-
պէս և զկարծիս Պօշարայ և Հուետիոսի՝ որք զԹարսիս
դնեն 'ի Սպանիա[1]. զորոց կարեւ տեսանել 'ի մեկնութեան
Կալմէտի՝ ծննդոց Ժ. 4. նաև յիւրում բառարանի, զորս
հերքէ. և հաստատէ զՏարսոնն Կիլիկիոյ լինել Թարսիս
սուրբ գրոց: Զի արդարև այսմ կարծեաց համաձայնին
ամենայն բանք սուրբ գրոց՝ ուր ուրեք խօսին վաճառակա-
նութենէ Թարսոսի, որպէս փոքր 'ի շատէ ծանուցաք: Վասն
որոյ վայրապար Նիքօլայլին 'ի ծէ. Ճառ. սուրբ գրոց. հա-
տոր Ե. յետ ընդունելոյ զկարծիս Կալմէտի՝ յաւելու զկնի
ընդունել և զկարծիս Մաղլինեայ, դնելով զերկուս Տար-
սոնս կամ Թարսիսս, զմին 'ի Կիլիկիա, և զմիւսն 'ի Սպա-
նիա, որ է ինքնաստեղծ գիւտ. Թող և զնաւարկութե փիւ-
նիկեանց ըստ կամս ստորագրեալ համաձայն Մաղլինեայ:

Արդ այս Թարսիս կամ Տարսոն Կիլիկիոյ՝ այսպէս հրա-
չակաւոր վաճառատեղի, և այսպէս մօտաւոր առ Հայս
և առ Եփրատ, ինքնին յայտ առնէ թէ յաճախէին անդ
'ի ժամանակին և Հայկազունս վաճառականք մեր տուրևա-
ռութե աղագաւ, և վասն վաճառացն ոսկւոյ՝ յոյր սակս
գային առնուլ նաւք Քիրամայ և Սողոմոնի. և ոսկին այն
էր ոսկին Սոփերայ կամ Սոպերայ, որպէս ասացաք, վա-

1 Գտանի անդ ասելի՝ որ փոքր մի նմանաձայնութիւն ունի Թարսիս անուանս. ուր քանզի ոչ գտանին վաճառք Հնդկաց, ուր են ժանիք փղաց, սիրամարգք և կապիկք, զորս բերէին նաւք Սողոմոնի, աւելի թէ այն նաւք 'ի Ճանապարհի մնացեալ 'ի զանազան նաւահանգիստս Ափրիկոյ, և անգուստ բարձեալ բերէին:

ճառ աշխարհին Հայոց ընթանալ մնայր ընդ Եփրատ եւ ընդ ցամաք 'ի մերոց վաճառականացն եւ կամ յայլոց : Այսպէս կրկին վաճառատեղիք զորոց գրեցաքն, Դիոսկուրիաս առ Պոնտոս ծովու ; եւ Թարսոս կամ Տարսոն առ միջերկրական ծովու, երկոքին եւս սահմանակիցք հայաստանեայց՝ թէ քանի դիւրացուցանէին զվաճառականութիւն աշխարհիս Հայոց, յայտ է ամենեցուն :

## ԱՆՏԻՈՔ

Ի մէջ անդ մետասաներորդ դարու պատմի առ Մատթէոսի իբր եօթանասուն արանց 'ի մերոց հայկազանց ընթանալ յայս երեւելի քաղաք վաճառի աղագաւ ընդ մորթոյ ձուկն աղի ապխտեալ, որ թուի լինել Տառեխ ձուկն ծովուն Բզնունեաց, որոյ առաւել բազմութիւն ապխտելոյ այժմ եւս է նիւթ վաճառոյ 'ի շրջակայ երկիրս :

Նոյն քաղաքի առ Յոյնս անուանեալ ձուկն Տառեխին կոչի, նմին իրի համարիմ 'ի նախնի դարուց սկզբնաւորեալ զվաճառականութիւն այսր ձկան 'ի մերոցս՝ եւ յայնմանէ զանուանս աղի ձուկն 'ի նորին անուն Տառեխին յորջորջեալ 'ի Յունաց. մինչեւ Աթենադորայ, որ ժամանակակից էր Ոսկեբերանի, նաեւ զաղի միան կոչել Տառեխին : Ի վաճառաց աստի աղի ձկան՝ զոր 'ի հեռաստանէ բերէին մերքն, իմանամք թէ եւս առաւել 'ի մօտակայ սահմանաց աշխարհիս Հայոց բերէին եւ զայլ վաճառս յԱնտիոք քաղաք բազմամարդ :

## ՏՐԱՊԻԶՈՆ

Յետ դադարելոյ կայսրութեան Յունաց 'ի Բիւզանդիոն՝ սա եղեւ վաճառատեղի անուանի քրիստոնէից բնակելոց 'ի Պոնտոս, 'ի Կապադովկիա, 'ի հայաստան, եւ 'ի Վիրս : Աստ փոխադրէին վաճառականք զանուանի վաճառս Հնդկաց՝ որք գային 'ի հայաստան 'ի հարաւոյ ընդ ծոցն պարսկական եւ ընդ Եփրատ. իսկ յարեւելից՝ ընդ ծովն Կասպից եւ ընդ Փասիս գետ. եւ 'ի Տրապիզոն առեալ փոխանակէին ընդ վաճառս արեւմտեայց, զորս նաւք վենետիկեցւոց բերէին անդր :

## ՊՈՒԽԱՐԱ

Ի յետագայ ժամանակս աստ լինէր վաճառատեղի արեւելեայց, որ է քաղաք 'ի հիւսիսակողմն Օքսոս գետոյ,

սակաւ ինչ հեռի 'ի Սըմըրղանդայ, 'ի ձեռս Եօզպէք Թաթարաց, յոր անուն կոչի այն ընդարձակ աշխարհ՝ որ զՄոսկովս բաժանէ 'ի Չինաց։ Ուր նաև յաւուրս մեր տեսաք զերկուս 'ի մերոց հայկազանց, յաշխարհէն Պարսից աստ 'ի Գուխարա անցեալ, և անտի 'ի Բիւզանդիա եկեալ ընդ ցամաք։

## ՍԸՄԸՐՂԱՆԴ

Մայրաքաղաք Դրանսօքսանիոյ յախեկոյս Օքսոս գետոյ, որ էր Մարաքանտա Նախնեաց, և եղև արքայանիստ Լէնկ Թէմուրայ. յետ Գուխարայի սա եղև վաճառատեղի մեծ, ուրանօր բազմութիւնք գտանէին Պարսից, Թաթարաց, Հընդկաց, նաև Չինաց, 'ի վաճառել զպատուական վաճառս. ընդ որս և մերոց հայկազունս վաճառականաց երթևեկել անդր՝ չիք ինչ տարակոյս։

## ՅՕԴՈՒԱԾ Դ

### Դրամք։

ՕԴՐԱՄՈՑ առաջին Թագաւորութեանց Արշակունեաց և Բագրատունեաց չունիմք ինչ տեղեկութիւն. զի որչափ ինչ դրամք գտանէին այժմ 'ի հանդիսարանս հնութեանց՝ դրոշմեալս յանուն Թագաւորացն արշակունեաց Տիգրանայ, Աբգարու, Արտաշիսի, Արտաւազդայ և այլն, ոչ այնչափ 'ի դէպ գան ընդ Թագաւորաց մերոց. քանզի այն Թագաւորք հայաստանեայց անհնարին անծանօթ են 'ի գիրս մերոց պատմագրաց, և միայն ծանօթք 'ի գիրս հռոմայեցւոց. յորմէ յայտ է թէ հռոմայեցիք յորժամ ընդ տէրութեամբ իւրեանց գրաւէին զկողմանս ինչ հայաստանեայց՝ կացուցանէին զոմն գլխաւոր 'ի վերայ երկրին՝ որ զանձն իւր կոչէր Թագաւոր Հայոց, և յանուն իւր դրամ հատանէր։ Այլ հռոմայեցիք եւեթ ճանաչէին զնա Թագաւոր Հայոց, բայց ազգն ոչ ճանաչէր. ոյր վասն և ոչ 'ի կարգս իւրոց Թագաւորաց անցուցանէր[1]։

1 Որ կամի տեղեկութիւն առնուլ զդրոշմանէ՝ կարէ գտանել առ դրամագիրս՝ որք են՝ Ֆուէյեկը, Վայյան, Բէլըրէն, Էքէլ և Բոսշ, որոց մատեանս գոլով բաւական դրամոց, գիտութեան կարէ ընթերցողն զնոյն միոյ զանձուկան և դիւրաւ գտանել։

Որ ինչ առ մեզ գտանի ցարդ, են առհասարակ դրամք ռուբինեանց. զորոց ընդարձակ տեղեկութիւն հանդերձ բազմաթիւ պատկերօք դրամոց գտցեն խնդրողք 'ի Նամակին Սեստինեայ հռչակաւոր դրամագրի, որ մեռաւ 'ի 1832. 'ի Փլորենտիա քաղաքի.[1] Իսկ զդրամն յորոյ 'ի մի կողմն է պատկեր Լեւոնի Թագաւորին մերոյ, և 'ի միւս կողմն գիր արաբացւոց յանուն սուլտանին Իկոնիոյ Քէյքապատ Քէյխուսրէվ կոչեցելոյ՝ գտցեն առ Լա Քռոզի 'ի պատմութեան քրիստոնէութեան Եթովպացւոց և Հայոց։ Ցանկալի էր տեսանել զդրամն որք գտանին այժմ, որպէս լսեմք, յաւերակս առ ստորոտով Մասեաց լերին. զի այն, որպէս թուի, գոլով աւերակ Արշակաւանին, 'ի նմա գտեալքն պարտին լինել դրամք Արշակունեաց. զորոց որպէս և զԲագրատունեացն զդրամն ոչ գտին մինչև ցայժմ. կարծէ Սեստինի ոչ դրոշմեալ նոցա դրամ յանուն իւրեանց, այլ զդրամն Յունաց 'ի կիր արկեալ[2]։ Քանզի և Խորենացին Բ. 11. վասն Ա. Արտաշէսի իբր նոր իմն գրէ. «Դրամ առանձին զիւր պատկերին հարկանէր»։ Այլ Արշակունիք քան զինքն յառաջեալք Ա. Վաղարշակ, և Ա. Արշակ կամ ոչ հարին դրամս ըստ նորա, և կամ ոչ իւրեանց պատկերօք[3]։

Այլ վասն ժամանակի Բագրատունեաց ախորժելի իմն գտանեմք օրէնս 'ի դատաստանագիրս Մխիթարայ Գօշի, որ ցուցանէ թէ յաւուրս Բագրատունեաց հատանէին դրամ։ Թագաւոր, ասէ, «եթէ դահեկան և դրամ հատանիցէ, իշխանութիւն կայցի ըստ իրաւանց դատաստանին, այլ իշխանաց ոչ է իրաւացի հատանել դահեկան և դրամ. և եթէ հատանիցէ՝ հրամանաւ լիցի Թագաւորին»։ Թէպէտ և մինչև ցայժմ ոչ տեսաք ուրեք դրամս Բագրատունեաց։

Ի պատմութիւս երեքտասաներորդ դարու ուրեք ուրեք 'ի մերոց յիշատակի Սոփայ անուն դրամ, յորմէ՝ և կամ 'ի ձայնէս Ցոփայ՝ ածանցեալ է Լոփայ անունս յաշխարհիկ բարբառ մեր. և այլ դրամ Կարմիր անուն առ Վարդանայ։ Այլ յայտ է թէ Սպիտակն էր դրամ արծաթի. իսկ Կարմիրն դրամ ոսկի։ Յիշատակի և դրամն կոչեցեալ

1 Տես վասն այսր և 'ի վերջին հատոր Դարապատմութեան. մասն առաջին. Թղթ. 239։

2 Որպէս և վասն Գագկայ ասկաւ ոսկի դրամս հատանել վկայէ Սարաբան ԺԷ. 735։

3 Վասն անծանօթ դրամոց Գուրբնադէտ անուանելոց՝ յորս տեսանին բաղաձայն տառք Հայոց, տեսցես 'ի գրուածն Դուլորիէ։ Տես և 'ի նախընթացեալ հատոր Դարապատմութեան Թղթ. 240։

Դանկ ( որ է տէնգ , տէնկ ) նաև 'ի գիրս Նախնեաց , բայց առ Թովմայի Մեծոփեցւոյ գրեալն թանկոյ՝ թուի ունել զառաւելագոյն արժէս . զի գրէ . " Եւ զկանայս հաւատացելոցն որ էին մնացեալք 'ի կղզին Լիմն կոչեցեալ , աւելի քան զերկու և զերեք հարիւր թանկոյ վաճառեաց ,, ։ Եւ ստորև գրէ . " Ամենայն մարդագլուխ քառասուն թանկոյ առնուն , թող զբարայ և զՁարեք ,, ։ Այլ իմն դրամ յիշատակի առ նորին Թովմայի Մեծոփեցւոյ ֆօլ անուն յասեն . " Ի միոյ եպիսկոպոսէ հազար և ութ ֆօլ առին ,, ։ Որոյ անուն որպէս յայտ է՝ նոյնանայ ընդ անուանս ֆօլ , որ և փող (ագլէ) ։ Ի գիրս վաճառականութեան կիլիկեցւոց ընդ իտալացիս՝ յիշատակի և այլ անուն դրամոյ թագօլին ձայնեալ . գուցէ ածանցեալ յանուանէս թագաւորէն կամ թագաւորէն . զորմէ կարես տեսանել 'ի Կիլիկիա .



## ԳԻՐՔ ԻՆՆԵՐՈՐԴ

### ԲՆԱԿԻՉՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

ՀԱՅԱՍՏԱՆ աշխարհ երիս մեծամեծ փոփոխութիւնս կրեաց 'ի կողմանէ բնակչաց իւրոց 'ի պատճառս երրեակ համաշխարհական փոփոխութեանց որք եղեն 'ի վերայ աշխարհիս։ Առաջնոյն պատճառ՝ եղև առաջին լինելութիւն մարդոյ յոչնչէ 'ի դրախտին որ 'ի Հայս։ Երկրորդին պատճառ՝ եղև երկրորդ անգամ բնականալն մարդոյ 'ի լերինս այսր աշխարհի, իբր մազապուր զերծեալ անդրէն յոչնչանալոյ 'ի համաշխարհական ջուրցն հեղեղէ Նոյեան տապանաւն։ Իսկ երրորդին պատճառ՝ եղև համաշխարհական ցրումն 'ի հայաստանեայց 'ի Սենաար, և 'ի Սենաարայ 'ի Հայաստան, 'ի պատճառս աշտարակին։ Զորոց մի ըստ միոջէ խօսեսցուք յերիս յօդուածս բաժանելով։

### ՅՕԴՈՒԱԾ Ա

Առաջին ոչընչաարութեան բնակութեան մարդկութեան յաշխարհին Հայոց։

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ առաջին բնակութեան հայաստանեայց սկսանի յառաջին բնակութենէ համօրէն մարդկային ազգի. զի Աստուած կամելով ընտրել բնակարան քաջադէպ առաջին մարդոյն Ադամայ զոր ստեղծ, զՀայաստան ընտրեաց։ Եւ կամելով յօրինել պարտէզ խնչ յաշխարհի՝ զի իցէ բնակարան նախաստեղծ մարդոյն՝ 'ի Հայաստան յօրինեաց, այսինքն է զդրախտն, որ եղև առաջին պարտէզ աշխարհի։ Այս ամենայն քաջայայտ ցուցանի նախ 'ի նորին իսկ պատմութենէ և 'ի ստորագրութենէ սուրբ գրոց։ Երկրորդ՝ 'ի յարմարութենէ դրից հայաստան աշխարհիս։

### Ա. Ստորագրութիւն սուրբ գրոց զտեղւոյ դրախտին:

Բանք սուրբ գրոց այնչափ յայտնի են՝ զի չէ մարթ յերկբայս լինել զմանէ. բայց առ 'ի չգոյէ ուրուք մինչեւ ցայժմ 'ի մերոց Հայաստանեայց, որ մատենագրէր յաղագս նորաց այսոցիկ, ուրաքանչիւր ազգ գրեաց զոր ինչ և կամեցաւ, եդ զդրախտն ուր և կամեցաւ, ոչինչ հայելով 'ի յարմարութիւն հարազատ պատմութեան սուրբ գրոց, որում խելամուտ լինել չէր ինչ դժուարին: Այնչափ բազմացան տարաձայնութիւնք կարծեաց յաղագս այսորիկ, մինչեւ 'ի սուրբ գիրս համօրէն չիք գտանել երբէք ուրեք այլ խնդիր ինչ բազմադիմի նման սմին:

Այսչափ բազմութիւն կարծեաց առաւելապէս յերկուց պատճառաց աստի ծագեցաւ: Մի՝ զի չկացին անյողդողդ 'ի գլխաւոր նշանսն զոր տայ Մովսէս վասն տեղւոյ դրախտին: Եւ երկրորդ՝ զի անծանօթ մնացին ամենայն կողմանց Հայաստանեայց: Յառաջին պատճառէ զհետ եկին այն կարծիք, որ միայն 'ի մեծութիւն գետոց հայելով ծուր և գտին գետս մեծամեծս, մինչեւ ցայն վայրս տարածեցին զսահմանս դրախտին. որպէս Յովսեպոս, Եպիփան, Եգիպտացի քուրմն ոք առ Լուկիանոսի, և Յանսենիոս, սկսեալ 'ի Տիգրիսէ և յԵփրատայ մինչեւ 'ի Գանգէս Հնդկաց և մինչեւ 'ի Նեղոս գետ Ափրիկոյ տարածեցին զտեղի դրախտին, զՓիսոն կարծեցեալ Գանգէս գետ, և զԳեհոն՝ Նեղոս: Ոմանք ոչ 'ի գետս՝ այլ յանուանս տեղեաց հայելով զորս յիշէ անդէն Մովսէս, ծուր և գտին մերձաւորութիւն ինչ անուանն 'ի միում կամ յերկուս վանկս, և մինչեւ ցքանի մի տառս, բաւական համարեցան անդ դնել զդրախտն. Նորին աղագաւ գտան ոմանք որք եդին յԱտանա 'ի կողմանս Կիլիկիոյ. ըստ որում ունէր մերձաւորութիւն ընդ Ադէն կամ Եդեմ անուան. և այլք ոմանք 'ի Մէտինէ Արաբիոյ:

Այնպէս արարին և վասն Եւիլատ անուան. զի ուր և գտին 'ի սուրբ գիրս յիշատակեալ զայս անուն՝ անդ եդին զդրախտն, որպէս թէ 'ի սուրբ գիրս գտանէր նաև աշխարհագրութիւն համօրէն աշխարհի: Իսկ այլք ոմանք 'ի բերսն միայն հայելով զորս անդէն յիշէ Մովսէս, ծուր և գտին զայն բերս, այսինքն զոսկի և զականս, անդ եդին՝ առանց հայելոյ 'ի գլխաւոր նշանսն տեղւոյ դրախտին, և

ոչ յընդդիմութիւնս որ այլուստ ելանէին [1]: Եղեն ոմանք և յարդեաց՝ որք 'ի պատիւ Պաղեստինոյ հայելով անդ ստացին լինել զդրախտն. յայս տարադէպ կարծիս կայ Հարտուին այլն բազմահմուտ. և զայն մերժեն անգղիացի հեղինակք ընդհանուր պատմութեան իբրև առաւել անտեղի քան զմիւս կարծիս, յորում ոչինչ գտանի 'ի նշանացն զոր տայ Մովսէս. մի՝ զի Մովսէս յայտնի ցուցանէ լինել 'ի հեռաստան աշխարհ ըստ դիրից հրէաստանի կամ անապատին Արաբիոյ. և երկրորդ՝ յայս կարծիս անլուծանելի կնճիռք ընդ առաջ ելանեն 'ի մեկնել զբանս սուրբ գրոց, մինչև նոր Միջագետս կեղծել փոխանակ Միջագետաց որ ընդ Տիգրիս և ընդ Եփրատ. Թող և զայլ անյարմարութիւնս ըստ ջուրց առատութեան, ըստ բերոց, նաև ըստ օդոյ, զոր և Կալմէտ մերժէ [2]: Այլք եդին յԱրաբիա զկողմամբք Սիբամնանու կամ Դամասկոսի յակունս Յորդանանու գետոյ. զգետն Խրիսորրօա համարելով լինել Փիսոն գետն Մովսէսի, իսկ զգետն Որոնդիս՝ Գեհոն. աստ դնէ Յոհաննէս Կղերիկոս կամ Քլէռք:

Արդ թէպէտ այսքան բազմացան կարծիք առ մատենագիրս, բայց առհասարակ ստիպեալ 'ի յայտնի բանից սուրբ գրոց, ոչ մեկնեցան յերկուց գետոցն Տիգրիսի և Եփրատայ, որոց անուանք մնացեալ կան մինչև ցայժմ. այլ թէ յորում կողման այսոցիկ գետոց եղև դրախտն, տարաձայնին 'ի միմեանց: Ի սոցանէ ոմանք եդին 'ի Միջագետս, Կրոտիոս եդ 'ի Բաբիլոն. Կելլարիոս յաշխարհին քաղդէացւոց, յԵփրատայ և 'ի Տիգրիսէ ձգեալ մինչև ցՀընդիկս՝ զգետն Փիսոն կարծելով լինել Ինդոս գետ Հընդկաց. իսկ զԳեհոն՝ Գանգէս գետ. այսպէս մինչև ցՀնդիկս ձգելով զտեղի դրախտին՝ գտանէ յարմարելով զամենայն բերսն և զսահմանսն զոր յիշեն սուրբ գիրք: Վասն այսր կարծեցեալ դիւրութեան յայս կարծիս բերի այլն

1 Չէ արժանի յիշատակելոյ և զամենայն զանհեթեթ կարծիս 'ի նախնեացն, որոց թողեալ անձնէին զնկարագրական զիմաստ սուրբ գրոց, իբր առաւել մեծապատիւ առնելով զտեղին Եդեմայ, եդին արտաքոյ հողագնդոյս, կամ յօդս 'ի մէջ ամպոց, զոր օրինակ առաքել Հրէից. կամ 'ի լուսնի, և կամ յայլ ինչ անգի երկնային, զորոց զըրավոսութիւն կարծեաց կարեմ անսանել առ Կալմէտի, առ Կոռգի և առ Պէտրի աստուածաբանս: Սուրբ 'ի գերև հանել կամէին զդրախտն Մովսէսի, որոյ յայսմ հողագնդի գնելով զդրախտն՝ ճգնին յառաջ բերել պէսպէս նշանս առ 'ի ծանօթ կացուցանել առաջի հրէից. զերկուց հեռաւոր գետոյ զսահմանս երկրին յիշելով զարդ ընթացիցն, և զերևելի բերս՝ որք են ոսկի և ակունք:

2 Ի մեկնութիւն Ծննդոց Բ. 14:

բազմահմուտ յամենայն հնութիս՝ բայց 'ի հնութեանց մերոյ ազգ.ին՝ որում անծանօթ էր բնաւին. իսկ վասն ընդդիմութեան որ ելանէ յայնչափ ընդարձակ տարածութենէ դրախտին՝ դիմէ յամենակարողութիւն Աստուծոյ: Այլ ամենակարօղն Աստուած կարող էր զհամօրէն աշխարհ յօրինել իբրև զդրախտ մի. այլ ընդէ՞ր առնիցէ զայդ. զի նա զդրախտն իբրև պարտէզ առանձին յօրինեաց վասն մարդոյն և եդ զնա անդ. և թէ առ ի՞նչ՝ ասէ գիր. "Գործել զնա և պահել". Ծննդ. Բ. 15. որով յայտնի ցուցանէ լինել 'ի չափաւորեալ ինչ սահմանի, որպէս վայել է պարտիզի:

Այլ քան զկարծիս ամենեցուն՝ առաւել հռչակեցաւ նոցայն, որք զդրախտն յայնմ վայրի լինել ասացին՝ ուր Տիգրիս և Եփրատ յաշխարհին քաղդէացւոց միանան երկօրեայ ճանապարհաւ 'ի վեր քան զԲասրա, ուրանօր է քաղաքն Խուռնա. և յետ ընթանալոյ իբր փարսախս 5, որ կոչի այժմ Շատ էլ արապ, դարձեալ անջատեալ յերկուս առաջս՝ գնան անկանին 'ի ծոցն պարսկային. միացեալ տեղին Եդեմն է ասեն. երկու առաջին գետք են Տիգրիս և Եփրատ. իսկ երկու վերջինք՝ Փիսոն և Գեհոն: Նախկին յիշատակող կարծեացս է Կալվին, որում զհետ եղև Սկալիգեր, որ հիացմամբ գոչէ. Ոչինչ քաջայայտ քան զայս բացատրութի, ոչինչ ճշմարտագոյն, և ոչինչ հմտագոյն: Ցայս կարծիս են Պետաւիոս, Պօշար և Մոռինոս, յորս ինչ միայն տարաձայնք յիրերաց: Իսկ յետ պաշտպանելոյ բազմահմուտն Հուետիոսի ճարտարմտութ իւրով առաւել քան զամենայն կարծիս տարածեցաւ. որպէս և վկայէ Կելլարիոս 'ի խօսելն զԵթովպիոյ Թղթ. 952. "Դրախտն ըստ կարծեաց բազմաց 'ի ժամանակի մերում" եղև 'ի շրջակայ սահմանս, ուրանօր Եփրատ և Տիգրիս զուգընթանան. ըստ որում այն գետ զերկիրն Քուշ (զԵթովպիա) պատել, գէթ ոռոգել ասի յերկրորդ գլուխ Ծննդոց": Այլ թէ քանի ընդդիմանայ սորագրութե սուրբ գրոց, մի առ մի յիշատակեսցուք:

Նախ՝ սուրբ գիրք ասեն. "Եւ գետ ելանէր յԵդեմայ ոռոգանել զդրախտն": յԵդեմայ կամ 'ի կարծեցեալ դրախտէն Հուետիոսի ոչ ելանէ գետ, այլ մտանէ, ոչ մի՝ այլ կրկին գետք, որք են Տիգրիս և Եփրատ. և գետն Շատ էլ արապ կոչեցեալ յիւրում Եդեմ կարծեցեալ տեղւոջ՝ չէ կազմեալ 'ի ջուրց անդամոր բղխելոց, որպէս պարտ էր լինել ըստ գրելոյն Մովսէսի, այլ 'ի ջուրց 'ի

հեռաստանէ եկելոց. այսինքն է 'ի ջուրց Տիգրիսի և Եփ-
րատայ, որով իւր կարծեցեալ Եդեմն ոչ է ջուր բղխող, այլ ընդունօղ : Երկրորդ՝ ասէ սուրբ գիրն. "Եւ անտի բաժանի 'ի չորս առաջս,, : Ի Խուռնա՝ ուր ասէ լինել զդրախտն Հուետիոս, ոչ բաժանի 'ի չորս առաջս, այլ յետ միանալոյ յերկուս միայն բաժանի. իսկ 'ի միացեալ յերկուս առաջս արդէն իսկ բաժանեալ էր բազմօք յառաջ քան զմտանելն 'ի դրախտն. որով ըստ այսմ երկու գետք մտանեն 'ի ներքս 'ի կարծեցեալ դրախտն Հուետիոսի, և երկու գետք միայն ելանեն 'ի դրախտէն արտաքս : Երկու առաջինք որք են Տիգրիս և Եփրատ՝ են տիրապէս գետք բղխեալք յականց. իսկ միւս երկուք Փիսոն և Գեհոն՝ ըստ այսմ կարծեաց ոչ են տիրապէս գետք բղխեալք յականց, որպէս ասեն սուրբ գիրք, այլ ձևացեալք 'ի ջուրց երկուց առաջնոց Տիգրիսի և Եփրատայ : Այս օրինակ մեկնութիւն թէ քանի՛ օտարացուցանէ զհարազատութիւն բանից սուրբ գրոց, որ միօրինակ խօսի զբղխելոյ չորեցունց գետոց 'ի տեղւոջ դրախտին՝ յայտնի է ամենեցուն : Վասն որոյ թէպէտ զառաջինն 'ի ճարտարելոյ Հուետիոսի բազումք ընկալան զայս կարծիս, բայց որ զկնի կացին քաջ քննիչք բանից սուրբ գրոց, մերժեցին. զի մտացածին գիւտ է և անհարազատ մեկնութիւն բանից սուրբ գրոց՝ նմ̃ և դրից տեղւոյն :

Երրորդ՝ վասն Տիգրիսի ասէ սուրբ գիրն. "Նա է որ երթայ յանդիման ասորեստանի,,. այսինքն յետ ելանելոյ 'ի դրախտէն՝ խաղայ 'ի կողմն ասորեստանեայց : Եթէ դրախտն լինէր 'ի Խուռնա ըստ ասելոյ Հուետիոսի՝ ոչ կարէր այսպէս գրել վասն Տիգրիսի, այլ պարտ էր ասել. Նա է որ գայ յերկրէն ասորեստանեայց :

Չորրորդ՝ յառաջ Տիգրիս և Եփրատ չէին միացեալ, այլ ընդ զանազան ձորափորս 25 կամ ըստ այլոց 7 մղոնիւք 'ի միմեանց տարակայեալ գնային զեղուլին 'ի ծոցն պարսկական, որպէս գրէ Պլինիոս Զ. 27. և որպէս ակնարկէ Ստրաբոն ԺԶ. 729 : Ապա բոլորովին չքանայ այս կարծիքս. զի հիմն նորա որ է լիճն, ուր չորեքկին առաջք ջուրց տեսանին այժմ, է նոր ձևացեալ, որ ոչ գտանէր առ ժամանակօք Մովսէսի :

Հինգերորդ՝ զերկու առաջսն զայնոսիկ Փիսոն և Գեհոն կարծեցեալս 'ի Հուետիոսէ՝ չէ մարթ դասել 'ի կարգս գետոց, որպէս և վկայեն նաև անգղիացի մատենագիրք ընդհանուր պատմութեան. զի այս առաջք 18 փարսախաչափ միայն ընթացեալք զեղուն 'ի ծոցն պարսկական, ու-

տի չունելին ոչ զայն երկայնութիւն, և ոչ զայն շրջապատոյն ընթացս պատերաց զընդարձակ սահմանաւ երկրի, զոր օրինակ ստորագրեն սուրբ գիրք։

Յետ ցրելոյ զայս հաշակերալ կարծիս սոցա, զոր և այլովք փաստիւք մերժեն Պետաւի աստուածաբան և Կալմէտ 'ի մեկնութեան Ծննդոց Բ. 14. և այլք[1], զանց առնեմք զայլովքն։

Բայց են որ 'ի մի եւեթ համագամանս օդոյ հայեցեալ չյիշեալ ընաւ և զայլ կարևորսն, 'ի Հնդիկս ասացին լինել զդրախտն, այսու եւեթ՝ զի ոչ լինի, ասեն, անդ ձմեռն և ցուրտ դժնդակ. և զի մշտադալար է երկիր նոցա, և զանազանութիւն պտղոց բազում, ամէն դիւրապատրաստ 'ի սնունդ մարդոյ, զոր չիք, ասեն այլուր տեսանել։ Բայց սոքա ոչ յիշեցին զներհակսն ընդդիմութիւնս, որք նոյնպէս ընդդէմ ելանեն նոցա. զջերմութիւնն Հնդկաց տարապայման առնջիչ և լքուցիչ մարդոյ յամենայն զօրութէ իւրմէ, որ և բերէ պէսպէս ցաւս. զախտաւոր փոքրիկ կենդանիս պատճառեալս 'ի ջերմութէ, անհնարինն...

1 Կեղլարիոս հատոր Ա. գիրք Գ. գլ. 16. 'ի գլ. քաղդէացւոց աշխարհին՝ խօսելով զդրախտէն, բազում փաստիւք մերժէ զայս կարծիս Հուետիոսի. զի Մովսէսի ստորագրութի՝ ասէ, մանաւանդ զերկուց գետոցն Փիսոնի և Գեհոնի՝ յայտնի ցուցանէ լինել գետս հեռաւոր ինչ աշխարհի. վասն որոյ և զընթացսն նոցա ստորագրէ Մովսէս. և զզանազան բերս աշխարհին՝ ընդ որ անցանէին յիշէ, առ 'ի ծանօթ կացուցանել Հրէից. իսկ եթէ 'ի խուժանս լինէր դրախտն՝ չէր հարկ այնչափ նշանակել առ՝ որովհետև մերձ էր անապատին Արաբիոյ՝ ուր էին յայնժամ Հրէայքն. որպէս ոչինչ նշանակէ վասն Եփրատայ ասելս մերձ և ծանօթ գոլոյ Հրէից։

Նա և, որպէս զՏիգրիս և զԵփրատ կոչէ գետս՝ նոյնպէս և զՓիսոն և զԳեհոն, յայտ առնելով թէ և սոքա էին ուրոյն գետք նման նոցա. այլ թէ բառ դրից Հուետիոսի լինէր դրախտն՝ զիարդ կարէր Մովսէս զանուն ինչ նոյն գետոցն Տիգրիսի և Եփրատայ՝ եւր այլ գետս անուանել. և զիարդ ստորագրել լինէր զվերջին ծայր գետոցն միջագետաւայրէ ստորագրել, որպէս են Փիսոն և Գեհոն, իսկ զմիւսն գետսն որք են Տիգրիս և Եփրատ՝ ամենևին ոչ ստորագրել, այլ միայն յանուանէ յիշել։ Զիարդ անգէտ էր իմաստնոյն Մովսէսի, նախ զառաջինն մասն գետոյն յիշել, ապա առ այլ գետս անցանել, զինի անդրէն դառնալ յառաջինն գետն։

Զարմանալի և զայլ ընդդիմութիւնս բերելով Կեղլարիոս 'ի թղթ. 647. բառ առ. Լիպսիոյ 1773. ասէ. "Յայտնի է և յայլոց դժուարութեանց ալեկոծեալ կոյ կարծիքս Հուետիոսեան. ասոր են սոքա և ինքնահաւանեցան՝ որ ինչ առն անդէն զձորագաւառն Եփրատայ"։ Գեղեցիկ յաւելու անդէն 'ի թղթ. 645. և Ռէլանդ մեկնիչ Կեղլարիոսի. "Մովսէս ասէ թէ ամենայն չորս որ հոսին 'ի չորս գետս հատանին. ոչ ասէ թէ 'ի չորս վտակաց մի գետ լինի, կամ թէ չորեքին վտակք միանան 'ի մի գետ", որպէս հարկ էր առնել բառ կարծեաց Հուետիոսի։ Այլք ևս այսպիսի ընդդիմութիւնս հանեն առնելով, թէ բառ դրից դրախտին Հուետիոսի պարտ էր գրել Մովսէսի, ոչ թէ գետ ելանէր 'ի դրախտէն՝ այլ թէ գետ մտանէր և կեալ 'ի յայժ հեռաւոր սահմանաց. ոչ թէ յետ ոռոգելոյ զդրախտն, այլ նախ քան զոռոգելն բաժանէր, ոչ 'ի չորս առաջս՝ այլ յերկուս միայն։

ղացուցիչս և փառաւորս 'ի նոյն իսկ 'ի բնակութիւնս և 'ի հանդերձս նոցա, որոց սակս միշտ բողոք լսեմք 'ի նոյն իսկ 'ի բնակչաց Հնդկաց. զպակասութիւն կարևոր և օգտաւորական պտղոց ինչ մանաւանդ տանձի և խնձորոյ՝ այնչափ սեփական դրախտին համարեալ 'ի նախնեաց, մինչև զարգելեալ պտուղն նոյն համարել նոցա։ Արդ. քանզի և այս ամենայն նախօրինակ անյարմար կացուցանեն զՀնդկաստան վասն դրախտին, ապա պարտ է կալ մնալ յայն բանի՝ թէ յորում և բաժնի լինէր դրախտն՝ առանձին խնամովք Աստուծոյ միշտ միօրինակ մարթ էր պահել մշտադալար և մշտապտուղ, եթէ մնային նախահարքն յանմեղութեան իւրեանց, որպէս ասեն ամենեքին, որով վայրապար լինի այնուհետև և խօսել իսկ յաղագս այսոցիկ։

Իսկ այսպէս 'ի բաց թողեալ զամենայն, աներկեայ հաստատեմք յայն կարծիս զոր բանք սուրբ գրոց ցուցանեն։ Արդ բանք սուրբ գրոց իբր յայտնի ցուցանեն զդրախտն լինել յայնմ վայրի՝ յորում բղխեն չորեքկին գետք. և զի 'ի չորեսին անդ՝ անուանք երկուց գետոց նոյն մնացեալ կան մինչև ցայժմ՝ յոր անուն կոչէ և Մովսէս, այսինքն է Եփրատ և Տիգրիս, ապա պարտ է դնել զդրախտն յակունս անդ Եփրատայ և Տիգրիսի. ուստի և զակունս մնացեալ երկուց գետոց Փիսոնի և Գեհոնի, որոց անուանք ոչ ուրեք գտանին այժմ, մնայ յուզել 'ի մերձակայս նոցա, և ոչ 'ի հեռաւոր աշխարհս. ապա թէ ոչ՝ պարտ էր զմի ծայրն դրախտին ձգել մինչև 'ի Հնդիկս կամ 'ի Գանգէս գետ. և զի՞նչ հարկ այնուհետև Դրախտ կամ Պարտէզ կոչել զայդչափ աշխարհածաւալ սահմանս երկրի և յանձնել Ադամայ միայնոյ գործել զհող նորա իբրև զիւր պարտէզ, որպէս ասեն գիրք, զի և ոչ իսկ բազմութեան թոռանց նորա բաւէին գործել։ Արդ քանզի ակունք Եփրատայ և Տիգրիսի վկայեալ է յամենայն նախնեաց լինել 'ի Հայաստան, եթէ գտցուք 'ի մօտակայս ականց սոցա և այլ ակունս երկուց համանման մեծամեծ գետոց՝ յայտնի ցուցանի լինել նոյն՝ որ ինչ Փիսոն և Գեհոն, թէ և անուանք նոցա այժմ այլայլեալ իցեն, յորմէ և յայտնի ցուցանի դրախտին լինել 'ի Հայաստան։ Ահա զայս ամենայն լրացեալ տեսանելով 'ի Հայաստան աշխարհի և երևելի մատենագրաց ոմանց յեւրոպացւոց, 'ի Հայաստան եդին զդրախտն, թէպէտ և յիրս ինչ տարաձայնք. որք են Սանսոն, Ռէլանտ, Կալմէտ, Բասինի՝ ուսուցիչ եբրայական լեզուի և սուրբ գրոց 'ի համալսարանին Դուրինոյ, Մա-

կալօգոզի կոմս, Ղուկաս, Աւգիլինի, և Լուսինն աշխարհագիր Թագաւորին Գաղղիոյ, որում զհետ երթայ և Պետաւի և Նիքօլայի մեկնիչ։ Այս և մեք յայսմ վայրի յառաջ բերեալ մի առ մի զնշանսն զարձանագրեալս 'ի սուրբ գրոց, ցուցցուք զյարմարութիւն վասն աշխարհիս Հայաստանեայց։

Առաջին նշան տեղւոյ դրախտին նշանագրեալ 'ի սուրբ գրոց՝ է Զուարճալի Շատաջուր տեղի։ Երկրորդ՝ լինել ընդ Արևելս։ Երրորդ՝ լինել 'ի տեղւոջ հեռի յԱրաբիոյ կամ 'ի Հրէաստանէ՝ ուր էին Հրեայք։ Չորրորդ՝ լինել 'ի չափաւորեալ ինչ սահմանի։ Հինգերորդ՝ ի չափաւորեալ ինչ տեղւոջ գտանել զակունս չորից մեծամեծ գետոց։ Ցայս հինգերորդ նշան հայէին այն ոմն բերք և անուանք սահմանաց զորս յիշէին սուրբ գիրք զկնի 'ի ծանօթացուցանել ըզգետս։ Մեք նախ ձևացուցանք աստանօր զԵդեմ և զԱրևելք տեղւոյ բանիւք սուրբ գրոց։ Երկրորդ՝ զչորեցունց գետոց։ Իսկ զՋրարբի զառատութէ Ջուրց տեղւոյն զկնի 'ի դրից Հայաստանեայց ցուցցուք։

" Եւ տնկեաց Աստուած զԴրախտն յԵդեմ ընդ Արևելս,,. Ծնն. բ. 8։

Զանուանս Եդեմ կամ Ադէն փոխանակ յատուկ անուան տեղւոյ առնուն սուրբ գիրք եբրայեցւոց, նաև Թարգմանութիւն եօթանասնից՝ ուստի է և մերս, և արաբացւոց և Ասորւոց։ Իսկ բացատրութիւն քաղդէական Ոնկեղոս անուանեալ, և Վուլկատայն լատինացւոց առնու փոխանակ նշանական անուան՝ որ է փափկութի. նոյն իսկ Թարգմանութիւն եօթանասնից որ առս փոխանակ յատուկ անուան տեղւոյ առնու, 'ի 15. փոխանակ փափկութ առնու. բայց և հարք Յունաց բազում ուրեք փոխանակ անուան տեղւոյ առին։ Արդ եթէ այսպէս փոխանակ անուան տեղւոյ առցուք, չէ պարտ ձգնել առ 'ի նոյնացուցանել ընդ այլ տեղիս՝ որք 'ի զանազան տեղիս սուրբ գրոց Եդեմ կոչին՝ յաւէտ ըստ այլ թարգմանութեանց, և ոչ տարադէպ բռնադատութ զայս և զայն տեղի Եդեմ կոչեցեալ 'ի սուրբ գիրս՝ համարել տեղի դրախտին, լոկ սակս մերձաւորութ անուանց, ոչ հայելով 'ի յարմարութի տեղւոյն. և զդրախտըն յականց Տիգրիսի և Եփրատայ հեռագոյնս ձգել, որպէս ոմանք առնեն 'ի զանազան տեղիս մոլորեալ։ Այլ նախ հայել 'ի գտանել զակունս չորից գետոց, և ուրանօր ըղխեն՝ անդ և 'ի շրջակայս նորա յուզել զտեղին Եդեմ.

յայնժամ թէ և գոյցի այլայլումն ինչ տառից՝ ոչ կորուսանէ զիւր հաւանականութիւն ։

Ոմք յեւրոպացւոց աշխարհագրաց 'ի Հայաստան դնեն, զԱտրպատենէ սահմանն Ասորեստանեաց գաւառներն մերձաւոր անուանս Եդեմ կամ Ադէն. բայց այս հեռի է թէ ստուգիւ և թէ անուամբ։ Գտանեմ և զայլ անուն Մոկէնս, զոր Սեքստոս Ռուփոս յարշաւանսն Ղուկուղղոսի գլ. 15. կոչէ "Մոկէնս սահմանակից գաւառ Հայոց"։ Առ Երոդոտոսի ևս գտանեմք ուրեք ուրեք յիշատակեալ երկիր ինչ մերձաւոր անուանս. որպէս գիրք Է. գլ. 49. յասելն. "Կիլիկեցւոցս սահմանակից են նոյն Հայք, ոյքս են բազմախաշինք. Հայոց (սահմանակից են) Մատիենք"։ Եւ գիրք Ա. գլ. 189. Կիւրոս, ասէ, յորժամ "եկն առ գետն Գինդէս, որ 'ի Մատիենեան[1] լերինս բղխեալ, ընդ Տարդանեայս[2] ընթացեալ՝ 'ի միւս գետն Տիգրիս թափի"։ Եւ գիրք Ե. գլ. 52. յետ յիշելոյ զգետն Եփրատ և զՏիգրիս՝ ասէ. Ի սոցանէ "առաջինն (Եփրատ) 'ի Հայաստանեայց հոսի. իսկ միւսն 'ի Մատիենաց"[3]։

Սահմանս սորա անստոյգ անորոշ թողացեալ կայ առ աշխարհագիրս. զի և նա ինքն Երոդոտոս սոսկ իբրև այլ երկիր համարելով ասէ. "Ի Հայաստանեայց սարի յերկիրն Մատիենն գնալով"։ Իսկ Ստրաբոն ԺԱ. Մատիանս Մարաց կոչէ. այլուր 'ի գրեան զԱտրպատականէ, անկանի ասէ "յարևելս Հայաստանեայց և Մատիանայի, և յարևմուտս մեծին Մարաց"։ Վասն որոյ և Կելլարիոս գիրք Գ. գլ. 18. դնէ զՄատիանս "'ի մէջ Հայաստանեայց և Մարաց, բայց այնպէս զի առաւել Մարաց քան Հայաստանեայց սեփական լինել"։ Եթէ զՄոկէնս Ռուփոսի նոյն համարեսցուք ընդ Մատիենի երկրին զոր ասէ Երոդոտոս, անշուշտ գաւառ է Հայոց. իսկ եթէ այլ համարեսցուք, այնժամ է յերկբայս լինել արդեօք նոյն պարտ է համարել ընդ Մատիանայն Ստրաբոնի, թէ այլ 'ի նմանէ։ Ես այսպէս համարիմ թէ այլ գաւառ իցէ, զի զՄատիենս Երոդոտոս դնէ սահմանակից ազնց Հայոց՝ որք սահմանակից էին Կիլիկեցւոց. և 'ի Է. 72. զՄատիենս ցուցանէ լինել սահ-

1 Յայլ օրինակս գրի Մատիենեան ։

2 Ոմանք ուղղեն 'ի Տուրէնս, որ է Տարօն ։

3 Քանզի գիտեմք զի ոչ միայն Եփրատ այլ նաև Տիգրիս գետ ելանէ յաշխարհէս Հայոց, պարտ է ասել թէ Մատիենք կոչեցեալն Երոդոտոսի էր գաւառ ինչ Հայոց, բայց ընդ ժամանակս ինչ ընդարձակեալ, և զօրաւոր և ինքնակալ գտեալ, և վասն այնորիկ իբրև ուրոյն երկիր յիշատակի յԵրոդոտոսէ, որպէս տեսանեմք լեալ և յայլ գաւառս մեր, զոր օրինակ են Կորդուք, Հեր և Զարեւանդ և այլն ։

մանակիցս Պափղագոնիոյ, Լիկիոյ և Կապադովկիոյ. տես ահաքանի հեռանայ 'ի Մատիանայէ Ստրաբոնի, զոր սահմանակից կացուցանէ Ատրպատականի ։ Իսկ վասն Տիգրիս գետոյ քանզի ասէ Երոդոտոս բղխել 'ի Մատիենաց՝ սովին յայտնի ցուցանէ 'ի Հայաստան լինել զՄատիենս. զի ամենեքին զակն Տիգրիսի գիտեն 'ի Հայս. որով և առաւել յայտնի լինի այլ 'ի Մատիանայէ Ստրաբոնի լինել ։ Ո՞ւր թողցուք զի Երոդոտոս նաև զԵրասխ գետ 'ի Մատիենաց բղխեալ ասէ, որպէս ունիս տեսանել 'ի ստորագրութեան Երասխ գետոյ. արդ զՏիգրիս և զԵրասխ որպէս և զԵփրատ 'ի Հայաստան 'ի միջէ լեռնէ բղխեալ գիտեն նախնիքն։

Ա՛յսպէս ապա այլ իմն տեղի համարեալ զՄատիենս Երոդոտոսի 'ի Մատիանայէ Ստրաբոնի, համարիմ զՄատիենին նոյն լինել ընդ մերում Հաշտենից գաւառին Ծոփաց կամ չորրորդ Հայոց. զի Տիգրիս գետ բղխէ 'ի Հաշտենս, որպէս եդ Երոդոտոս 'ի Մատիենս. և Հաշտեանք սահմանակից է փոքուն Հայոց, և փոքր Հայք սահմանակից է կիլիկեցւոց որպէս և եդ Երոդոտոս. և չէ ինչ թէ քանի մի տառք այլանման հնչիցեն 'ի նոսա, զի զայդ և յայլ անուանս է տեսանել, փոխանակ հ տառին՝ եդեալ մ, և զտառս ղ 'ի բաց թողեալ. վասն որոյ և յառաջին բանն Երոդոտոսի, զոր բերաք 'ի վերոյ, յօրինակս ինչ գրի Մատիենեան։ Մարթ է յարմարել Հաշտենից և այն՝ զոր դնէ Երոդոտոս, թէ արահետ ճանապարհն որ տանէր 'ի Հայաստանեաց 'ի Սուս՝ անցանէր ընդ Մատիենս, զի կարէր նոյն ճանապարհ անցանել նաև ընդ Հաշտենս։

Իսկ Մատիանա զոր ասէ Ստրաբոն, է Մոտողանք գաւառ Կորճէից. մի՝ զի մերձաւորութիւն անուան յայտ առնէ, ո տառին փոխեալ 'ի ա։ Երկրորդ՝ յարմարութիւն տեղւոյն. զի սա, ասէ Կեղլարիոս, ոչ էր Մարք, այլ 'ի մէջ Մարաց և Հայոց. որպէս էր Կորճայք նահանգ, և նորին գաւառն Մոտողանք. ուր և Պարսկահայք նահանգ՝ կոչեցաւ Հեր և Զարեւանդ. և զի Մոտողանք օտարացեալ էր 'ի Հայոց՝ կարծեցին լինել այլ իմն օտար աշխարհ, վասն որոյ և եդին արտաքոյ Հայաստանեաց։ Զնոյն յարմարութիւն տեղւոյ ցուցանէ և բան Ստրաբոնի, զի զԿապուտան ծովակն դնէ առ Մատիանաւ. իսկ այս ծովակ էր 'ի մէջ Պարսկահայոց, Կորճէից և Ատրպատականի, յորս զԿորճէս յիշեաց Ստրաբոն յանուն իւրոյ գաւառին Մոտողանք, ըստ իւր Մատիանա։ Եւ երրորդ՝ եթէ ոչ դիցուք 'ի Հայաստան՝ ոչ ոք կարէ գիտել թէ ուր պարտ է դնել զՄատիանա Ստրաբոնի ։

Յետ նախացուցանելոյ զՄովսէսի տեղին Երոդոտոսի ընդ տեղւոյն Հայկեանց՝ ասեմ թէ Եդեմ տեղին ևս ընդ իրին է նոյն. ընդ Հաշտեանք կամ Հաշտենք, իբր Հեշտինք կամ Հեշտեայք, եբր. փափկութ։ Այլ թողեալ զքննութիւն նմանութե ա-նուանն՝ որոյ այլայլութիւն յաճախեալ է յոյժ նաև յայլ ազգ անուանս, դիւրք տեղւոյն առաւելապէս յարմարին ասեմ. ու-րովհետև Տիգրիս գետ Եդեմայ, որ ապա ցուցաք, բղխէ 'ի Հաշ-տենից. և զի չէին հեռի անտի և ակունք միւս գետոց. և զի նման Եդեմայ է տեղի շատաջուր. վասն որոյ և Գիհոն գետ Հաշտենից՝ կոչի 'ի գիրս Ջրատար ձոր, նման Եդե-մայ։ Նմին իրի իբրև յուռթի և ջրարբի և զուարճալի տեղի ասահմանեցաւ լինել բնակարան արքայորդւոց. և որ-պէս ինձ թուի, 'ի Հաշտեանք գաւառին անկանի գէթ ըստ մասին և այժմեան Պինկէօլ լճակն, ուր ասեն գը-տանել զդրախտն. որպէս տեսցի ստորև։

Մինչև ցայս վայր ցուցեալ ըստ բաւականին, թէ Ե-դեմ՝ առեալ նաև իբր յատուկ անուն տեղւոյ՝ անկանէր 'ի Հայաստան, զոր և հաստատեն ակունք չորից գետոց որք 'ի Հայաստան 'ի նոյն կողմանս բղխեն, այժմ խօսե-ցուք զյարմարութէ Արևելք անուան։ Եբրայական բառս Միխէդդէմ զոր դնէ Մովսէս, կրկին բերէ նշանակութ, մի՝ Արևելք, և երկրորդ՝ Իսկզբանէ։ Թարգմանութիւն եօթա-նասնից՝ ուստի է մերն՝ և արաբացւոցն՝ դնեն ընդ Արևելս. այլ բացատրութիւն քաղդէականն, և Վուլկաթայի լատի-նացւոց դնեն Իսկզբանէ։ Բայց 'ի դէպ ևս է Արևելք իմա-նալ, ըստ որում բազումք 'ի նախնեաց՝ որպէս Յովսեպոս և հարք Յունաց և լատինացւոց ըստ մեծի մասին այն-պէս իմացան, մինչև սովորութ կալաւ առ քրիստոնեայս ընդ արևելս աղօթելոյ՝ սակս յարևելեան կողմն լինելոյ դրախտին, որպէս վկայեն Կիւրեղ Երուսաղեմացի, Բարսեղ, Գրիգոր Նիւսացի, Աթանաս և Յոհան դամասկացի։

Արդ Մովսէս զդրախտն եդ ընդ Արևելս կամ ընդ դըրից ա-նապատին Արաբիոյ ուր գրէր, կամ ըստ դըրից հրէաստա-նի ուր Հրեայք ունէին բնակել. իսկ աշխարհս Հայաստա-նեաց ըստ երկոցունց ևս անկանի ընդ Արևելս. զի այն-պէս պարտ է աստէն իմանալ զբառս Արևելք, որպէս ի-մանայ Մովսէս 'ի նոյն գիրս Ծննդ. ԺԱ. 2. յասելն. "Եւ 'ի խաղալն նոցա յԱրևելից": Արդ յայս բան ամենեքին վկայեն զարարատեան լերինս իմանալ Մովսէսի Արևելք անուամբ. որ է առել Հայաստան։ Եւ Պօշար իմաստութ քննեալ զբան գրոյն գիրք Ա. գլ. 7. ասէ՝ թէ Մովսէս

յայս բան զՀետ երթայ սովորութ ասորեստանեայց, որք զեզր Արևելից և Արևմտից առնուին յերկուց եզերաց Տիգրիս գետոյ. զսահման տէրութ իւրեանց որ անկանէր յայնկոյս Տիգրիսի, կոչէին Արևելք. որպէս և զսահմանն որ յայսկոյս Տիգրիսի, կոչէին Արևմուտք. ըստ այսմ բաժանման ասէ արարատեան լերինք կամ Հայաստան, ուստի խաղացին մարդիկ յայնժամ առ 'ի ցրուիլ, ուղիղ կոչին Արևելք, և մարդիկ արդեամբք ասին նախ զառաջինն յԱրևելից խաղացեալ։ Ահա սովաւ յայտնի երևի անհաւաստութիւն կարծեաց նոցա որք զդրախտն եդին 'ի կողմանս Գաղեստինոյ, կամ Ասորւոց և կամ Բաբիլոնի, յոր կողմն անկանի և դրախտն զոր Հուետիոս ասէր. զի զայն կողմանս ոչ երբէք Արևելք կոչէ Մովսէս։

Արդ եթէ 'ի Հայաստան իցէ դրախտն, որպէս ցուցաք, ոչ ապաքէն անբաւ հեռաւորութ 'ի բացեալ է 'ի կողմանց անապատին Արաբիոյ կամ Հրէաստանի, որ է երրորդ նըշան դրախտին։ Իսկ վասն չորրորդ նշանին՝ տեսցես ստորև 'ի ստորագրել մեր զԵդեմ տեղին թէ քանի չափաւորեալ սահման է, յարմար 'ի լինել պարտէզ Ադամայ 'ի գործել և 'ի պահել։ Այլ նախ քննեսցուք զգետս։

“ Եւ գետ ելանէր յԵդեմայ ոռոգանել զդրախտն, և անտի բաժանի 'ի չորս առաջս. անուն միումն Փիսոն. նա է որ պատէ զամենայն երկիրն Եւիլատայ. անդ ուր ոսկին է. և ոսկի երկրին այնորիկ ազնիւ, և անդ է սուտակն, և ակն զահանակ։ Ծննդ. Բ. 10-12։

Կալմէտ, և ամենեքին որ 'ի Հայաստան ասացին լինել զդրախտն, զայս գետ Փիսոն կոչեցեալ 'ի սուրբ գրոց՝ իմանան լինել այն զոր նախնի արտաքին մատենագիրք Յունաց և Հռոմայեցւոց կոչեն Փասիս, ըստ մեզ Փասիս գետ։ Զայս ուղիղ խորհեցան. այլ զի ասեն՝ թէ Փասիսն նախնեաց է այժմեան Ֆարշ անուանեալ գետն, որ և կոչի Րիօն՝ մոլորին յոյժ. և յայս մոլորութ կան առհասարակ այժմեան եւրոպացի մատենագիրք [1]։ Բայց պարտ է ասել,

1 Զայսմանէ ըստ բաւականին գրեցաք 'ի գլուխն Գետոց, 'ի ստորագրութեն Փասիսի. տես անդ։ Այս վրիպակ արգեաց զայժմեան Ֆարշ գետն կարծելոյ լինել հին գետն Փասիս՝ յետս կասեցոյց զանդգիտացի հետևնակս ընդհանուր պատմութ յընթացնելոյ զմեր կարծիս, և 'ի Հայաստան դնելոյ զդրախտն, որք և վկայապար ստորագրութեանն քննախնդիր ասելով 'ի Հատորն Ա. գլ. Ա. յօդ. 1. “ Յայտնի է թէ Ֆարշն ոչ բղխէ 'ի լերանց Հայոց մերձ յաղբիւրս և յակունս Եփրատայ. Եփրատայ և Տիգրիսի, որպէս Ստրաբոն, Պտղոմէոս, Դիոնեսիոս և այլ ամենայնի աշխարհագրութ ստուգ գրե-

թէ Փիսոն գետս սուրբ գրոց՝ որ յարտաքնոց կոչի Փասիս, է Ծորոխ կամ Ճորոխ գետն Հայաստանեաց, որոյ ածան-ցեալ յանուանցս ծոր, ողխ, կամ ջուր ոսխ, յայտնէ զսուղ-խօրէն ծորիլ և զհոսիլ սորա. կամ զյաճախութիւն ուղխից ջրոց ՚ի նմա ծորելոց, որք պատճառեն տեղւոյ տեղւոյ աճել և զեղուլ. աստի ահա առեալ է եբրայականն անուանս Փի-սոն, որ նշանակէ աճել, զեղուլ[1]։ Այս գետս է սաստիկ սրըն-թաց. նմին իրի և յայժմեան ռամկական զբոյցն առ ՚ի մենջ յիշատակեալ ՚ի Նոր Հայաստան ՚ի ստորագրութե Բաբերդոյ՝ չմոռ կամ յանդուգն կոչի գետս այս, վասն իւրոյ յորդութեան։ Բղխէ ՚ի լերանց՝ որ մօտ է յակունս Սարջամ գետակին, որ և այն է մի յականց Եփրատայ։ Տես ահա այսպիսի մեծամեծ գետոց այսչափ մերձաւո-րութի քանի յարմար կացուցանէ զՀայաստան ստորագրու-թեան դրախտին՝ զոր Մովսէս նկարագրէ։

Քննեսցուք այժմ զերկիրն Եւիլաթ, զորով պատէր Փի-սոնն։ Անուանս Եւիլա է մի յերեքտասան որդւոցն Յեկ-տանայ, զորոց զբնակութիւն սուրբ գիրք ծննդոց Ժ. 30. ցուցանեն լինել ՚ի լեռնէն Մասեաց մինչև ՚ի Սափեր. և զի սոքա որպէս օրէն էր բազմաց նախնի նահապետաց՝ յա-նուն իւրեանց կոչէին զտեղին բնակութեան, յայսմ միջա-ցի պարտ է յուզել զտեղին Եւիլա։ Արդ որպէս Ուփիր որդի Յեկտանայ բնակեցաւ ՚ի Սափեր, և յանուն իւր կո-չեաց զտեղին, որպէս գրեցաք ՚ի գլուխն Վաճառականու-թեան, հաւանական երևի յոյժ՝ թէ նաև եղբայր նորա Եւիլա՝ անմիջապէս զկնի Ուփիրայ յիշատակեալ ՚ի սուրբ գրոց. Ժ. 29. բնակեցաւ առընթեր նորա. վասն որոյ ՚ի մերձակայս Սափերայ պարտ է խնդրել զտեղին Եւիլաթ, և ոչ այլուր. և ահա զմին ՚ի հին գաւառացն Կողքիսոյ որ և մօտ է ՚ի Սափեր՝ յաշխարհագրութեան Խորենա-ցւոյն ըստ երկուց ձեռագրաց կոչեցեալ գտանեմք Եռուէւե-կա. զայս անուան համարիմք զյիշատակեալն ՚ի Մովսիսէ

ցին, յորմէ և նախայիշատակեալ մեր հեղինակք (որք են Կալմէտ, և այլք որք ՚ի Հայաստան եդին զդրախտն,) պատրեալ գտան,,։ Այլ բղխէ սոսն Ջարշն ՚ի լեռնէն Կովկասու, և ոչ ընթանայ ՚ի Հայաստան ՚ի հիւսիսս որպէս նոքա կարծեցին, այլ ընդ հակառակն ՚ի հիւսիսոյ ՚ի հարաւ։ Առ որս պարտ է ասել, նախնիքն ոչ սուտութբ այլ ճըշ-մարտութբ գրեցին, զի Փասիս կոչէին ոչ զայժմեան Ջարշն, այլ զՃորոխն կամ զՃորոխն. բայց արդիք սխալե-ցան որք զայժմեան Ջարշն կարծեցին լինել Փասիսն նախնեաց։

[1] Գտանին և այժմ ՚ի գիւղօրէս Համշենոյ անուանք ինչ տեղեաց՝ որք ունին մերձաւորութիւն ինչ Փիսոն ա-նուան. զոր օրինակ են Վիժօ գիւղ, և Պեժանկէտ վտակ Ճորոխոյ. զորոց կարես տեսանել ՚ի Նոր Հայաստան ՚ի Թղթահամարն 397։

ցանէ Փասիս կամ Ճորոխ գետ, ազնիւ էր և անուանի՝ ՚ի սուրբ գիրս յանուն Սոփերայ կամ Սուփերայ կոչեցեալ, որ էր քաղաք կառուցեալ առ Ճորոխ կամ Փիսոն գետով, իսկ առ արտաքինս յանուն Կողքիսայ յորջորջեալ. որպէս նաև մինչև ցայժմ ՚ի յարգի է, և կոչի յանուն Կիւմիշխանէի. որոյ բովք կամ աարքեր են յառաջնոցն՝ բայց նոյն հանք է որ ձգի աստ և անդ ՚ի լերինս նոյն կողմանց, և կամ նոյն բովք են՝ բայց ՚ի նախնումն կոչէր յանուն Սուփերայ: Զի և յայլ բազում տեղիս տեսանեմք, զմի և զնոյն բերս և զվաճառս երբեմն յայս անուն անուանեալ, և երբեմն յայն, որպէս և այլուր ասացաք:

“Եւ անդ է սուտակն, և ակն գոհանակ„:

Աւելորդ համարիմ աստէն ՚ի քննին մտանել յորոշումն ականցս. զի զեբրայականն անուանսն ոմանք այս ինչ նշանակութիւն առնուն, և ոմանք այլ. նոյն իսկ և եօթանասնից թարգմանութիւն ուրեք այսպէս և ուրեք այնպէս առնու. բանասէրք կարեն վասն այսր հայել ՚ի մեկնիչս: Բաւ է մեզ ծանուցանել ընթերցողին, թէ ՚ի նոյն կողմանս մինչև ցայժմ ելանեն այսպիսի քարինք. զոր օրինակ ՚ի ծովեզերեայ քաղաքն Կիրեսուն ելանէ այժմ քար Աքիք, կամ Հաքիք, որ լատիներէն կոչի Սարտոնիքս, նաև Օնիքս. անդ ելանէ նաև Ախիհուր: Արդ որպէս ասաց որ ՚ի հնումն էր ՚ի սահմանին Կողքիսայ՝ նոյնպէս և ՚ի շրջակայ երկիրս Փասիս կամ Փիսոն գետոյն մարթ էր ելանել այսոցիկ քարանց, ուր գուցէ այժմ ոչ ելանէ կամ առ անփոյթ լինելոյ բնակչաց ՚ի հանել, և կամ առ յաճախս հանելոյ սպառեալ գոգցես զամենայն. զի և ՚ի հանքս անդ անդամանդաց որ ՚ի Հնդիկս՝ թողուն զոմանս առ ՚ի պտղաբերել զայլս, ապա թէ ոչ ՚ի հանելն զամենայն, հանքն չքանայ և ոչ բերէ ինչ: Զայս այլափոխութիւն երբեմն ելանելոյ բերոց ինչ և երբեմն ոչ՝ նաև յայլ տեղիս է տեսանել. որպէս ՚ի Կիպրոս ՚ի հնումն պէսպէս ակունք ելանէին, այլ այժմ ոչ գտանին բնաւ: Զզանազան ակունս որք ելանէին ՚ի հնումն յաշխարհիս Հայաստանեայց՝ յիշատակեալ է մեր ՚ի գլուխն Բերոց. յորոց ոմանք գուցէ գտանէին և յայն կողմանս՝ որք էին ՚ի շրջակայս Փասիս կամ Փիսոն գետոյ: Եւ ՚ի Նոր Հայաստանս. յերես 105. գրեալ է մեր՝ թէ առ Գուրիշայ գետով ելանէ Նէճէֆ

քար լուսանցոյց Թափանցիկ, զոր փոխանակ ապակւոյ 'ի կիր առնուն 'ի պատուհանս ։

" Եւ անուն գետոյն երկրորդի Գեհոն. նա պատէ զամենայն երկիրն եթովպացւոց ,, . Ծննդոց Բ. 13։

Գեհոն անուամբ գետ չիք ուրեք գտանել յարտաքին գիրս, այլ Օքսոս գետ յիշատակի 'ի գիրս նախնեաց, զոր արաբացիք քանզի Ջահուն կամ Ջէյհուն կոչեն, յայս մերձաւորութիւն անուանց հայեցեալ ոմանց՝ զՋահունն կարծեցին լինել Գեհոն սուրբ գրոց. բայց քանի ընդդիմանայ այնչափ հեռաւորութեան սահմանաց, մինչ զի առ հաւանել յԵփրատայ մինչև 'ի Ջահուն՝ պարտ է անցանել յայնկոյս քան զԿասպից ծով, զի յարևելեան կողմն նորա մտանէ 'ի նոյն ծով. և առ 'ի հաւանել յակունս ուստի բղխէ Ջահուն գետ՝ պարտ է գնալ գրեթէ 'ի Հնդիկս ։ Զայսչափ ընդդիմութիւնս յանձն առնուլ ոչ արժանի դատեցան քաջ հնագէտք՝ միայն զմերձաւորութեան ինչ անուան գտանելոյ աղագաւ. և այն ոչ 'ի վաղուց անտի եկեալ, այլ 'ի յետագայ արաբացւոց. զի 'ի նախնեաց միայն Օքսոս անուն նորա է մեզ յայտնի ։ Եւ քանզի 'ի հաստատուն բանից սուրբ գրոց գիտեմք 'ի միում չափաւորեալ վայրի բղխել չորից ականց գետոց՝ հարկ է առ 'ի գտանել զդրախտն ոչ այնչափ հեռանալ յականց Տիգրիսի և Եփրատայ, զորս յայտնի նշանագրեն սուրբ գիրք յանուանէ ։ Վասն որոյ ամենեքին որք զդրախտն դնեն 'ի Հայաստան, զԵրասխ գետն կոչեցեալ համարին Գեհոն 'ի սուրբ գրոց. մի՝ զի բղխէ 'ի նոյն լերանց՝ ուստի բղխեն Տիգրիս և Եփրատ համաձայն ստորագրութեան Մովսիսի. երկրորդ՝ զի և անունս Գեհոն՝ յարմարի ընթացից Երասխայ. վասն երկուցս այսոցիկ ճոխագոյն գրեալ է մեր 'ի ստորագրութեան Երասխայ 'ի գլուխն Գետոց, տես անդ զամենայն. իսկ աստ մնայ այժմ քննել վասն յարմարութեան եթովպացւոց երկրին, զորով պատել ասի Գեհոնն ։

Յաղագս այսր անուան գիտել պարտ է նախ՝ զի որչափ ինչ վայրք յեօթանասնից Թարգմանութեան Եթովպիա անուանեն՝ այն տեղիք յեբրայականին իբր 'ի բազում կոչին Քուշ [1]. զոր և կրկին պարտ է որոշել յԱփրիկէ և յԱսիա ։

[1] Զայս հաստատէ Յովսեպոս 'ի Հնախօսութեան գիրք Ա. գլ. Գ. յաւելու. "Եթովպացիք որոց գլուխ եղև (Քուշ որդի Քամայ), նաև այժմ 'ի մէջ իւ-

Ցափրիկէ Քուռ կամ Եփոնկոս կոչեցեալ համարին զայժմեան Հապեշու. իսկ յԱսիա՝ զԱրաբիա[1]։ Գիտել պարտ է երկրորդ, զի որ ըստ եբրայեցւոց Քուս կամ Քուշ անուանի՝ ըստ քաղդէացւոց հնչման Քութ կոչի։ Արդ Կալմէտ մերձաւոր այսր անուան գտանէ զԳութս կամ զՍկիւթացիս, որք ըստ նախնեաց 'ի սկզբան անդ առ Երասխաւ բնակէին, որ է աւել 'ի Հայաստան. վասն որոյ ասէ՝ Մովսէս զայնր ժամանակի բնակչաց խօսելով գրեաց, թէ Երասխ կամ որ նոյն է Գեհոն՝ պատէ զամենայն երկիրն Քուշ, կամ ըստ եօթանասնից զերկիրն Եթովպացւոց. յորոյ հաստատութեան Նիքօլային՝ որ ընդ Կալմետի 'ի Հայաստան լինել ասէ զդրախտն, յառաջ բերէ զբանս Մակալօդդեայ, որ գրէ վասն եթովպացւոց՝ թէ համարին զինքեանս իջեալս 'ի Հայաստանեայց։

Այսչափ ինչ գրեմ աստ որք անծանօթ էին բնաւ աշխարհագրութեան Հայաստանեայց. բայց մեք որպէս ծանօթք զանուանեմք զնոյն անուանն զոր Մովսէս անուանեաց՝ 'ի Հայաստան աշխարհիս. այն է՝ Քուառի գաւառ յԱրցախ նահանգի, որ և էր առ Երասխաւ։ Վասն որոյ յայս բան Մովսէսի 'ի բաց պարտ է առնուլ զայն աշխարհս Եթովպիոյ Քուռ կոչեցեալ 'ի Հրէից. զի միտք Մովսէսի ոչ էր զԵթովպիա ծանուցանել, այլ զի 'ի Հայաստան՝ առ որով անցանէր Երասխ, զտեալ տեղի նախնի անուամբ յորջորջեալ Քուռ, որ այն ինքն է Քուառի, զայն կամեցաւ ծանուցանել. յորմէ իմաստասիրեմք թէ 'ի նախնի ժամանակս անդ Մովսէսի՝ այս Քուառի գաւառ Արցախայ ընդարձակ ձգէր, յորոյ անուն կոչէր և համօրէն նահանգն Արցախ՝ գուցէ և շրջակայ սահմանք նորա, որպէս և յայլ գաւառս ինչ տեսանեմք այսպէս լեալ։

Այլ եթէ պնդեսցեն ոմանք թէ Մովսէս յայսմ վայրի Քուռ անուամբ զԵթովպիա կամեցաւ նշանակել, զայն սահման ընդ որ անցանէր Երասխ, ըստ նոյն կարծեաց ես 'ի դէպ իսկ վասն հայաստան աշխարհիս յարմարի բան Մովսէսի։ Այլ առ 'ի հաւաստի լինել այսմ պատճառի՝ պարտ է նախ գիտել զառաւելն անուանս Քուռ կամ Եփոնկոս, թէ

բնակից որպէս և յամենեցունց յԱսիա Քուշայք կոչին,,։ Եւ Հերոնիմոս 'ի ծննդ. Ժ. գրէ. «Քուռ կոչի մինչև ցայսօր յեբրայեցւոց Եթովպիայն,,։

1 Հայրապետին զանազանած Արաբիա համարի. իսկ Պօշար Քուռ կոչեցեալ համարի զերկաթիկն և զապատաւորն Արաբիա ըստ մասին. վասն որոյ Կելլարիոս 'ի խօսելն զԵթովպիոյ Թղթ. 955. ընտրացայն համարի խմանալ ընդ անուապաս և ընդ ապատաւորն Արաբիոյ միանգամայն։

սացիւք 'ի վերոյ բանիւ Մառղինեայ, և որպէս վկայէ այնմ նաև Կեղլարիոս՝ ասելով, թէ զՀնդկաստան սակս սևադէմ գոլոյ բնակչաց կոչեցին նախնիք Քուշ կամ Եթիովպիա. քանզի Կեղլարիոս 'ի Ճառն դրախտին յետ ասելոյ 'ի թղթ. 650. թէ "Եթովպիա գրեթէ վերջին ծայր է մեծին Ասիոյ, ուստի սփռեցան եթովպացիք նաև յԱփրիկէ, զի այսպէս վկայեն բազում նախնի մատենագիրք", զկնի 'ի թղթ. 651. այսպէս գրէ. "Այս քանզի Սեւս, այսինքն եթովպացի էին ժողովուրդք Հնդկաստանի և մերձակայից՝ անդուշտ մարթ էր արդեամբք Եթովպիա կոչել, և կոչեցեալ իսկ է, որպէս մինչև ցարդ ըստ բաւականին ցուցաք, և այժմ նաև 'ի սրբազան մատենագրաց ցուցցուք. զի յԵրեմ. ժգ. 23. Եթովպացի լինել ասի՝ որ է թխամորթ. միթէ փոխեսցէ՞ ասէ Եթովպացին զմորթ իւր": Ուր 'ի մեզ դնի Հնդիկ. մի համարեալ Հնդիկ ասել կամ եթովպացի: Արդ եթէ Հնդկաստան վասն թխամորթ գունոյն բնակչաց Եթովպիա կոչեցաւ, ապա ևս առաւել անկ էր Մովսէսի Եթովպիա կոչել զայն սահմանս Երասխայ կամ Գեհոնի, որոյ բնակիչք զինչ և իցէ պատճառաւ արդէն իսկ կոչէին Սեաւք կամ Սևորդիք: Զայս սովորութիւն նաև յայսմ և 'ի մերում ժամանակի է տեսանել, ուր արաբացի կամ Արաբ կոչեմք նաև զայն ազգ և զայն այր՝ որ նըմանի գունոյ նոցա:

Այսչափ բանք և նշանք առաւել քան զբաւականն թուին ինձ ցուցանել զյարմարութիւն Երասխ գետոյն ընդ Գեհոնի, որով և ծանիցես զընդունայն խորհրդածութիւն անգղիացի հեղինակաց ընդհանուր պատմութեան, որք 'ի հատ. ա. գլ. ա. յօդ. 1. գրեն, թէ ստորագրութիւն Մովսէսի զԵդեմայ է անկատար. ըստ որում չէ մարթ ասեն իւիք իրօք ըմբռնել՝ ողջոյն ինչ աշխարհի պատեալ լինել 'ի գետոյ, որպէս ասի անդ վասն Եւիլատայ պատեալ 'ի Փիսոնէ, և վասն Քուշայ կամ Եթովպիոյ պատեալ 'ի Գեհոնայ, առանց լինելոյ այնր աշխարհի կղզի ինչ: Այլ որք տեղեակք աշխարհագրութեան հայաստանեաց ունին ասել թէ արդարև՝ Կողքիս որ է Եւիլատ, այնպէս պատի 'ի Փիսոնէ կամ 'ի Ճորոխայ՝ որ իբր ցամաք կղզի է ձևացեալ, սոյնպէս Արցախ և Ուտի նահանգք միանգամայն առեալք որ է Քուս կամ Եթովպիա ստուգ գրոց, այնպէս իմն պատի յԵրասխայ և 'ի Կուր գետոյ՝ որ նոյնպէս իբր ցամաք կղզի երևի ձևացեալ. բայց ինքեանք չեն ամենևին ծանօթ: Եւ քանզի նաև վասն ցամաք կղզւոյն 'ի դէպ իսկ

բազում պատմագիրք պատեալ ասեն 'ի Ջուրց, նորին աղագաւ և Մովսէս Ճշմարտութեամբ ասաց պարզեալ։

Յաղագս ստորագրութեան մնացեալ երկուց գետոց Տիգրիսի և Եփրատայ ոչինչ յիշատակեացուք առաւանօր, քանզի 'ի գլուխն Գետոց ունիս ընդարձակ գտանել զնոցանց, թէ զիարդ երկոքեին եւս բղխեն 'ի Հայաստան ոչ այնչափ հեռի 'ի միմեանց, յարմար ամենեւին անդուոյ դրախտին։ Զայս ինչ միայն յուշ արասցուք, զի և Մովսէս զերկուս զառաջին գետան առաւել քանիւք ստորագրեաց, յայտ է թէ սակս առաւել հեռի և անծանօթ գոլոյ Հրէից, որպէս էր Հայաստան. իսկ զՏիգրիսէ՝ սակաւ. այլ զԵփրատայ ոչինչ յիշեաց բնաւ բայց յանուանէ. յայտ է թէ վասն զի այս կրկին գետք՝ և առաւել Եփրատ, քաջածանօթ էր Հրէից, զի անցանէր մօտ 'ի Հրէաստան և ընդ Ասորիս։ Մովսէս ահա դարձեալ 'ի դերեւ ելանեն կարծիք Հուետիոսի և Հարտուինի։

## Բ. Յարմարումն դրից հայաստանեան աշխարհիս։

Արդ մատիցուք առ երկրորդ ցուցումն դրախտին՝ որ 'ի յարմարութենէ դրից հայաստանեաց առեալ։ Նախ՝ եթէ ոք 'ի ցամաք վերին կիսագնտոյս զննելով հայեսցի առ հասարակ, զՀայաստան գտցէ դրեթէ 'ի կեդրոնի՝ կամ մերձ 'ի կեդրոն աշխարհի, նոյնաչափ դրեթէ տարածեալ 'ի մեծ ծովէն Ովկիանու 'ի չորեցունց եւս կողմանց։ Արդ քանի՜ յարմար էր մտաց Արարչապետին՝ որ զմարդն անէր և իշխան կամէր կացուցանել 'ի վերայ համօրէն երկրի, բնակեցուցանել 'ի կեդրոնի ցամաքին, որ է ասել 'ի միջին վայրի աշխարհիս՝ ուրանօր է հայաստան, ուստի մարթ էր նաև դիւրաւ սփռել յետագայ ծնընդոց մարդոյ ընդ չորս կողմանս աշխարհի[1]։ Յիշատակէ զայս և Կալմէտ 'ի մեկնութեան Ծննդոց Բ. 14. ասելով. " Բազումք 'ի Նախ

[1] Որք յետուստացուոց մատադիր եղեն այսմ, նոքին եւս գտին զայս յարմարութի. յորս երեւելի աշխարհագիրն Մալթ Պրուն 'ի սկիզբն Ը. գրոց, որ է պատմութիւն աշխարհագրութեան, յետ դրելոյ թէ Մովսէս զերկրորդ սկզբնաւորութի մարդկային ազգի դնէ 'ի Հայաստան՝ այլով իմն օրինակաւ գտանէ զայս յարմարութի ասելով. " Նշանաւոր իմն է արդարև՝ տեսանել զնահմանն (Հայաստան) ուստի Մովսէս իջուցանէ զցրուումն ժողովրդոց, լինել դրեթէ առաւել միջնավայր քան զայլ ամենայն սահմանս բնակելոյ 'ի նախնումն. քանզի հնդկիկք յարեւելից՝ զքանանեանցիք կամ Գալլթք 'ի հիւսիսոյ՝ սեւուք կամ եթովպացիք արեմտեայք, տեղեա երկրին եւս ժողովուրդք

նուէն զերկինս Հայաստանեայց՝ առ որովք զնեմք զերկրաւոր դրախտն, միջին տեղի համարեցան մերում ցամաքի ,,։

Երկրորդ՝ դիրք Հայաստանեայց անկանի 'ի մէջ երեւելի ծովուց համօրէն աշխարհիս, 'ի միոյ կողմանէ Պոնտոս ծովու, 'ի միւս կողմանէ Կասպից ծովու, որ յառաջ ժամանակաւ հաղորդէր ասեն ընդ հիւսիսային Ովկիանու. յայլմէ կողմանէ ընդ միջերկրական ծովու, և յայլմէ՝ ընդ հարաւային Ովկիանոս ծովու։ Ի վերայ այսորիկ յաւել և զգետս Հայաստանեայց, որ 'ի նոյն ծովս արձակելով գետս մեծամեծս՝ հաղորդի ընդ նոսա. միանգամայն ցուցանէ և զբարձրութիւն դրից իւրոց, որպէս և վայել էր տեղւոյ դրախտին. յոյր սակս տեղին ուր մեք զդրախտն ասեմք լինել՝ կոչեցաւ 'ի նախնի բնակչաց իւրոց Բարձր Հայք, որ "Ըստ անուանն (ասէ Խորենացին) բարձր է քան զամենայն երկիր. քանզի ընդ չորս կողմանս արձակէ գետս ,,։

Երրորդ՝ եթէ աշխարհագիր ոք զննելով կամիցի գտանել ուրեք նշանս ինչ կամ նմանութիւն ուրուական՝ իբր մնացորդս ինչ աւերակաց դրախտին, գտցէ արդարև ինչ ինչ 'ի լերինս նահանգին Բարձր Հայոց և նորին շրջակայ սահմանացն, զոր յայսմ վայրի մի ըստ միոջէ յառաջ բերցուք ստորագրելով, և զայժմեան դիրս համեմատելով ընդ դրիցն Եդեմայ ստորագրելոյ 'ի Մովսիսէ։

Եդեմ տեղին յայժմեան դրից իւրոց ստորագրեալ։

Ի դէպ իսկ դրեն անգղիացի մատենագիրք յընդհանուր պատմութեան. հտ. ա. գլ. ա. յօդ. 1. թէ որոյ կամք են ըստ օրինի 'ի վերայ հաստատել տեղւոյ դրախտին, հարկ է ճանաչել զտեղեկութիւն նոր և ճշգրիտ աշխարհագրաց և ճանապարհորդաց[1]։ Եւ քանզի ոչ ոք յեւրոպացի ճանապարհորդաց շրջեցաւ 'ի Հայաստան զննելոյ մտօք զտեղի

առ հասարակ 'ի հնումն բնակեալք 'ի սահմանս՝ ուր կային զանուանս նոցա, դրեթէ հաւաստապէս ստորակայեալ գտանելին 'ի Հայաստանեայց և 'ի Միջագետաց ,,։

1 Զայն բան այնպէս ցուցանեն նոյն հեղինակք, իբր թէ նախնիք սխալ կամ շփոթ ստորագրեն զգետս։ Բայց մեք 'ի գլուխն Գետոց ցուցաք վասն չորեցունց գետոցս, թէ նախնիք ոչ սխալեցան զանուն Փասիս գետոյ դնելով 'ի Հայս, զի նոքա Փասիս ասելով զՃորոխ իմանային. այլ արդիքն սխալեցան, որք զՓասիսն կարծեցին լինել այժմեան Ֆաշ գետն և ոչ Ճորոխ. ցուցաք նոյնպէս վասն ընթացից Եփրատայ, թէ զոր Սաղմասիոս սխալ համարի գրելոյն 'ի Ստրաբոնէ, ոչ է սխալ, այլ է ստորագրութիւն միւս վտակի նորա՝ զոր այլք ոչ յիշեն։

դրախտին, և ոչ իսկ զայնու կողմամբք աշխարհիս Հայոց շրջեցան ուր են ակունք չորեցունց գետոցս, յայն սակս անծանօթ մնաց առ նոսա տեղի դրախտին, և մնայ մեզ լուսաբանել զնոյն աստէն աշխարհագրական տեղեկութեամբք:

Նշանք մնացորդաց Եդեմայ կամ տեղւոյ դրախտին են այսոքիկ. Նախ՝ յուռթի և ջրարբի տեղի, ըստ առատութեամբ ջուրց: Երկրորդ՝ առաւել բեղմնաւորութիւն բերոց: Երրորդ՝ քաջալաւութիւն օդոյ: Զերիսին զայսոսիկ ոչ ուրեք գտցէ ոք յաշխարհի այնպէս միանգամայն ՚ի միում վայրի հաւաքեալ, որպէս ՚ի լերինս որ ՚ի բարձր Հայս և ՚ի չորրորդ Հայս ձգին. և այժմ կոչին Պինկէօլ լերինք, իբր բիւր լճակ, և կամ բիւրակն: Այս լեառն է գօտեւոր, որ սկսեալ ՚ի կողմանց Տարօնոյ, այս է ՚ի Դէքմանոյ՝ ձգի ՚ի կողմն Էրզրումայ ընդարձակ տարածութեամբ: Ի լերանց աստի և ՚ի սորունէ նոցա աստ և անդ բղխեն աղբիւրք յորդախաղացք բազմաթիւք յոյժ, որք գործեն նաև լճակս և գետակս յարմար բանիցն ասացելոց ՚ի Մովսէսէ՝ Ծննդոց. Բ. 6. «Աղբիւր ելանէր յերկրէ, և ոռոգանէր զամենայն երեսս երկրի»: Ի Պինկէօլ բազմութիւնք են աղբերաց, բայց քանզի ամենեքին են ՚ի միում վայրի, նմին իրի իբրև զմի աղբիւր համարեալ խօսիմք զնմանէ առ տեղեաւս ըստ բանի Գրոյն, թէ «Գետ ելանէր յԵդեմայ ոռոգանել զդրախտն». 10: Ի Հաշտեանք տեղին որ ըստ մեզ է Եդեմ, և այժմ սահմանն է նոյն գօտեւոր Պինկէօլ լերին, զանազան ջուրք կան ՚ի զանազան տեղիս բղխեալ, բայց կարի մօտ առ միմեանս հաւաքեալ՝ գետակս կազմեն, որք աստ և անդ ընթանալով ոռոգեն զսահմանն ինչ լայնածաւալ, կամ զայն տեղին՝ ուր էր երբեմն դրախտն. այս է զոր ասէ՝ «և գետ ելանէր». զի իբրև մի գետ համարի: Նոյն գետակք են որոց ոմանք ՚ի մի կողմն ընթացեալ և ոմանք ՚ի միւս՝ ապա սկզբնաւորեն զգետսն զորս յիշեաց Մովսէս:

Ո՞ր ինչ քան զայս առաւել յարմարագոյն նշան. յարմար նաև նախայիշեալ բանին, ուր ասաց՝ թէ «ոռոգանէր զամենայն երեսս երկրի». զի արդարև աստի ՚ի սահմանացն Պինկէօլի ելանէ ջուր՝ զոր աղբիւր կոչէ Մովսէս, բայց ջուր բազմաբաշխ, որ առ յորդութեան իւրոյ աստ և անդ ՚ի վեր բղխէ. և յետ ոռոգանելոյ զդրախտն՝ ելանէ նաև արտաքոյ դրախտին ՚ի չորս առաջս բաժանելով, որովք ոռոգանէ և զամենայն երեսս երկրի, որպէս ասաց Մովսէս ՚ի նախագրեալ բանին Բ. 6. այսինքն է զայն ամենայն երեսս երկրի՝ որչափ ինչ առաւել ծանօթ էր յայն-

ժամ առ Հիւսիս․ զի Եփրատ և Տիգրիս ոռոգանեն ըզ-լայնածաւալ երկիրն՝ որ ձգի մինչև 'ի ծոցն Պարսից․ Երասխ կամ Գեհոն մինչև 'ի ծովն Կասպից․ Ճորոխ կամ Փիսոն մինչև 'ի Պոնտոս․ և մեր այսպիսի յարմարութի 'ի դրուէ Հուետիոսի։ Միայն յընթեռնուլ ուրուք զստորագրութի Խորենացւոյն վասն աղբերն Եփրատայ Գ․ 59․ թուի զտանել անհնարին զնոյն ստորագրութե զոր առնէ Մովսէս վասն աղբերն Եդեմայ։

Ամենայն 'ի տեղւոջ դրախտին յուղեն զտանել լճակս․ և ահա յայսմ վայրի են ոչ մի՝ այլ զանազան լճակք․ 'ի չորրորդ Հայս՝ է լճակն անոյշ ջուրց՝ անուանեալ Ծովք, այժմ փոխեալ 'ի լճակ, յորոյ մերձակայս բղխէ Տիգրիս։ Ծովակն Կարնոյ, ուստի բղխէ Եփրատ․ Ծովակն Հիւսիսոյ, ուստի բղխէ Կուր գետ։ Ի սմին միջոցի են և տեղիք շատաջուրք՝ յիշատակեալք 'ի գիրս, զի 'ի չորրորդ Հայս են տեղիքն կոչեցեալք Բաղնաղբիւր, Ճապաղջուր․ 'ի բարձր Հայս է գաւառն Կարին, զոր Խորենացին Գ․ 59․ կոչէ Շատաջուր․ մերձ են յայն՝ աղբիւրք ականց Եփրատայ, որք և ծովանան՝ որպէս ասէ․ Նոյն իսկ տեղի Կարնոյ քաղաքին էր առ ստորոտով այնպիսի լերին՝ ուր եղիս ասէ "բազում աղբիւրս ականակիտս և մանունս բղխեալ,,։ Սուղ ինչ հեռի 'ի քաղաքէն Կարնոյ 'ի Բասեն՝ է տեղին Արծաթաղբիւր․ որպէս և այժմ 'ի Խոսրովերան տեղին լի աղբերբք, զորմէ կարես տեսանել 'ի Նոր Հայաստան։

Այս ամենայն ծովակք, աղբիւրք և ջուրք են 'ի միում չափաւոր կոպարուորեալ վայրի․ այս սահման այժմ ըստ մասին կոչի Պինկեօլ[1], և ըստ մասին ձգի նաև արտաքոյ սահմանին Պինկեօլի, բայց է անընդհատ յարակցեալ տեղի՝ որ բովանդակէ և զակունս չորից նախադրեալ գետոց[2], յորս թէ և իրական այլայլութի ինչ համարեսցուք լեալ 'ի ժամանակաց անտի Մովսէսի մինչև ցայժմ, այլ

1 Գտանի և առ Կաղձեանն յիշատակութիւն Պինկեօլ լերին 'ի մեկնութե Ծննդոց Ա․ 10․ ընթեռնուլ 'ի պատմութե քարոզչաց քրիստոնէութեան յամին 1681․ ուր յետ ստորագրելոյ նման մերում՝ բերէ զաւանդութի ժողովրդեան անձամբ լինելոյ դրախտին։

2 Այս ապա էր յաւելուլ և 'ի Նախնեաց դպրան Երզրումոյ, եթէ յայտնի վ՟ն ականց Երասխայ գրեալ էր նոցա 'ի 40 ականց բղխել, որպէս Խենեայ և Կաղձեա․ այլ քանզի թերան անուանէ, եւ համարիմ վրիպանօք չփոխեալ նոցա․ զի այսպէս բազում բերանօք մտանել 'ի ծովն Կասպից՝ միայն վասն Վոլկայ կամ Եթիլ գետոյն զրեն այլք․ իսկ զԵրասխ 'ի բազում աղբերաց սկզբնաւորել՝ նաև այժմեան գիրք Պինկեօլ լերինն ցուցանէ․ ուրանօր զուգէ տասնեկ քան զդաւասն աղբերս բղխեն և սկզբնաւորեն զգետս․ մանաւանդ զի 'ի Մագիենեան տեղւոջ գնէ․ որ ըստ մեզ է այլայլութէ հոսանանք անուան, ուր ան-

այս ամենայն մասանց համաձայնութիւն մինչև ցայժմ մնա-
ցեալ յայտ առնեն՝ թէ չէ լեալ այլայլութիւն ինչ երևելի,
այլ փոքր. զոր օրինակ եղև 'ի շինութիւն Կարնոյ քաղաքին,
յորում ժամանակի անհետ եղեն այն աղբիւրք անկեալք
ընդ շինուածովք տանց ։

Վասն երկրորդ նշանին՝ որ է բեղմնաւորութիւն երկրին,
չէ հարկ ընդ երկար դեգերիլ, քանզի այլուր նշանա-
գրեալ է մեր զվկայութիւն նախնեաց վասն բեղմնաւորութեան
հնոյ ժամանակին. որպէս և վասն այժմեան ժամանակի
'ի Նոր Հայաստան ։ Մի միայն առատութիւն բերոց որ 'ի Պին-
կէօլ զարմանալի է. ամենազան ծաղկունք նորա խնկա-
բոյրք իբրև ուրոյն հրամանաւ գոգցես առատ. և մնան 'ի
չորից կողմանց աշխարհիս բերեալք և տնկեալք, առ 'ի
գործել անդ դրախտ կամ բուրաստան արքայավայել ։
Այնպէս բազմութիւն զանազան բանջարոց և խոտոց նորա առ-
նեն զանեղին իբր դեղարան ամենայն ցաւոց, եւ և ցաւոց
աչաց 'ի քննութիւն բժշկաց և բուսաբանից. ընդ որս հիացան
երկուք ոմանք Ճանապարհորդք եւրոպեանք՝ որք քանի մի
ամիսք յառաջ անցին ընդ այն ։ Առ ոտս լերին Խամլըերդոյ
որ մի է 'ի լերանց Պինկէօլի՝ ունին ուրոյն իմն զօրութիւն 'ի
վեր քան զսովորական կարգ բնութեան պարարտացուցանելոյ
զխաշինս, նաև ոսկեզօծելոյ զատամունս նոցա [1] ։ Այսմ
պարարտացուցիչ զօրութեան նաև 'ի նախնեաց վկայէ Գորդիոս
պատմագիր, որ 'ի սկիզբն Է. գրոցն զբեղմնաւորութեան ջուրց
Տիգրիսի և Եփրատայ խօսելով ասէ. «Որ 'ի մէջ Տիգրիսի
և Եփրատայ է երկիր՝ այնչափ յուռթի է և պարարտ-
արօտ, մինչև հեռացուցանել անեն զխաշինս 'ի ճարակելոյ,
զի մի պայթեսցին 'ի յղփանալոյ. իսկ պատճառ բեղմնա-
ւորութեան են ջուրք յերկոցունց գետոցս հոսեալք, գրեթէ
ընդ համօրէն երկիրն ընդ այն մղեալք ընդ երակս ջուրց»։

Այս ամենատեսակ բազմութիւն բուսոց Պինկէօլ լերին
ո՞չ ապաքէն հաստատէ զասացեալն Մովսէսի Ը. 9. որ ըղ-
ծառոց միայն յիշէ՝ յասելն, «Եւ բուսոյց եւս տէր Աս-
տուած յերկրէ զամենայն ծառ գեղեցիկ 'ի տեսանել, և
քաղցր 'ի կերակուր, և զծառն կենաց 'ի մէջ դրախտին»։

կանի մասն ինչ Պինկէօլի ։ Այլ սոս և զոր գրեցաք 'ի տպագրութեան Ե-րասխ գետոյ ։

1 Զորմէ կարես տեսանել 'ի Նոր Հայաստան 'ի թղթահանգարին 80։ Նոյն զօրութիւն ունի և երկիր այնր կողման Տարօնոյ որ սահմանակից է Պինկէօլի. զոր օրինակ է երկիր սուրբ Սահակայ գեղջ, ուր 'ի հնումն էր Աշտիշատ Տարօնոյ, յոր վայր ձգեալ պարտ է դնել զսահմանն Եդեմայ, որ և էր սահմանն կցեալ ընդ Հաշտենից գաւառին ։

Զի կրկնելն աստանօր սուրբ գրոց սակս բուսուցանելոյ զամենայն ծառս, վասն դրախտին է ասացեալ, որպէս և վկայեն մեկնիչք. քանզի վասն ամենայն աշխարհի արդէն իսկ յառաջագոյն գրեալ էր ա. 11. 12: Որպէս Ջուրք Տիգրիսի և Եփրատայ, նոյնպէս և Ջուրն Երասխայ կամ Գեհոնի ունի զնոյն զօրութիւն բեղմնաւորելոյ, զի ընդ որ և անցանէ՝ պարարտացուցանէ զերկիրն՝ մանաւանդ զԱյրարատ նահանգն, զորմէ գրեալ եմք 'ի զանազան տեղիս՝ թէ զիարդ գովեալ են առ նախնիս ոչ միայն Այրարատ, այլ և երասխեան դաշտք. յաւելլ և զայս բան Մեսրոպայ, որ 'ի Թիւն ԺԵ. ասէ. "Իսկ Հայր մարդպետն հանդիպեցաւ երթալ յարարատեան գաւառն և յամենայնից աշխարհն, որ նման է դրախտին այ. ամենայնից ամենայն պտղովք և ցանկալի ամենայն մարդկան„:

Իսկ վասն երրորդ նշանին՝ որ է քաղջալաւութիւն օդոյ, ամենայն Ճանապարհորդք վկայեն մեծաւ գովութբ, առ որս եւ ինքն հարցանէի բազում անգամ: և այժմ Քիւրտք խաշնադարմանք վայելեն, սփռեալք առհասարակ յայն գօտի լերինն Պինկէօլի, որք և վարեն կեանս քաղջառողջս, ոչինչ կրելով 'ի սովորական ախտից յաճախելոց յայլ տեղիս. երկարակեացք են առաւել քան զսովորականն, շնչելով զօդ քաղցրաշունչ և քաղցրահոտ, և յստակ ամենեւին յապականապործ գոլորշեաց:

Արդ զի՞նչ առաւել քան զայսոսիկ լիցի տեսանել նշանս յարմարս իբր յաւերակաց անտի դրախտին մնացեալս: Արդարև այս կրկին փաստք, որ է բնական պատուականութիւն տեղւոյ մինչև ցայժմ մնացեալ, և քաղջադէպ յարմարութիւն ստորագրութե բանից Մովսէսի, յամ երկուանաց արտաքոյ կացուցանեն. և իբրու վճռաւ որոշեալ զմէջն, որ վասն տեղւոյ դրախտին, բուռն առնեն ամ անաչառ քննողաց, մն հայաստան աշխարհիս տալ զիւրեանց հաւանութիւն: Եւ զի համառօտ ասացից, որովհետև գլխաւոր նշանք Մովսէսի՝ են բղխումն չորից գետոց յարևելեան սահմանի, միշտ ընտրելի է այն կարծիք՝ որ ցուցանէ այժմ ընդ արևելս և ոչ ընդ հարաւ, տեղի ինչ չափաւոր՝ սկզբնաւորող չորից գետոց. վասն զի բղխումն և ընթացք գետոց չեն այնչափ ինչ ընդ փոփոխութեամբ անկեալ, մանաւանդ չորեցունց միանգամայն: Իսկ յետադասել պարտ է զայն կարծիս՝ որք զերկուս գետս յայս ինչ տեղի՝ և զերկուս գետս յայլ ինչ տեղի՝ բազում տարակայութեամբ հեռացեալս՝ սահմանեն առ ձինեն դրախտի. Նոյնպէս

յետադասել անկ է և զայն կարծիս՝ որոյ երկու գետքն և ոչ իսկ արժանի են տիրապէս գետս անուանելոյ, որպէս բերէ հաւանեանն կարծիք։ Իսկ քան զամենայն առաւել անընդունելի կարծիք նոցա, որք ոչ այնչափ 'ի գետս Հայկին, քան որչափ գտանել զանուանս տեղեաց յիշատակելոց. վասն զի անուանք տեղեաց միշտ ընդ փոփոխութեամբ են անկեալ։

Յայն սակս այսքան անհեթեթ կարծիք 'ի վեր երևեցան, զի որք յայսմ պարապեցան՝ փոյթ կալան առաւել զանուանս տեղեաց գտանել, որք են Եդեմ, Եւիլատ, Եթովպիա, քան թէ զգետսն. և որ առաւելն է՝ յայն անուանսն միայն կարծեցին գտանել՝ որ 'ի սուրբ գիրս եւեթ յիշատակին առ և անդ, որպէս թէ զամենայն տեղիս աշխարհի յիշեալ են սուրբ գիրք. անայլայլելի համարեցան զանուանս տեղեաց որք դիւրաւ այլայլին. և այլայլելի համարեցան զըղխմունս և զընթացս գետոց՝ որոց դժուարին է այլայլիլ քան զանուանս տեղեաց. այսպէս կարծէ Քլերք՝ յԱստրիս զնեղլով զդրախտն։ Բայց որ զտեղին գտանել խնդրեսցէ ուր ըղխմունք չորից գետոցն գտանին, անփոյթ արարեալ զանուանց տեղեացն Ճշգրտելոյ՝ յորժամ չիցեն նորին բացայայտք, այլ հաւաստեաւ դիւրափոփոխք իցեն, նա 'ի բազմադիմի վրիպանաց զերծ կայ։ Ցայս հայեցեալ և մեր, 'ի հաստատուն ստացաք լինել ըղդրախտն.

Իւ ընթերցողացն ինքնին տեսեալ թէ քանի համաձայնութեան է մերս կարծեաց ընդ սուրբ գրոց բառ տեղեաց և բառ գետոց, կամակար հաւանեսցի ասացելոցս՝ 'ի բաց թողեալ զոմանց նորոյն և զվայրաքննին Ճշդութիւն, որք զբանն Մովսէսի Ճշդիւ կալեալ՝ յուզեն գտանել մի միայն աղբիւր յԵդեմ տեղւոջ, որոյ ջուր յետ ոռոգելոյ զդրախտըն՝ 'ի չորս առաջս բաժանեսցի. այսպէս սակն անգիտացի մատենագիրք ընդհանուր պատմութեան՝ թէ չիք այն գետ որ ոռոգանէր զդրախտն. և յորմէ ելանէին այլ գետք քառեակք[1]։ Սոյնպէս և Պետաժիէ 'ի բանս Բոսսուէին՝ գրէ.

[1] Այլ ինքեանք՝ նոյնպէս գրեթէ և Պետաժիէ՝ որք յայս բան Մովսէսի այսչափ Ճշգրութի հետազօտեն, առա զայրանի բանս Մովսէսի շարաշար մեկնութեան ընդունելով զկարծիս Հուետիոսի, սուղ ինչ տարբերութ. զի 'ի գրուն Հուետիոսի ոչ ելանեն չորք գետք, այլ երկուք միանան և երկուք ելանեն, յորոց երկուքն ոչ պատեն զաշխարհս ինչ, որպէս գրէ Մովսէս. չունին զընթացս նոյն գետոց, որպէս գրէ. այլ սուղ ինչ ծանօթութեան առարկեալ անկանին 'ի ծով. և յայլ այսպիսի անմեկնելի անկանին, զորս յիշեցաք 'ի վերոյ։

«Մովսէս ոչ ասէ ինչ, թէ դրախտն էր յակունս անդ չորից գետոց. այլ ասէ՝ թէ գետ ինչ ելանէր 'ի տեղւոջն անուանեալ Եդեմ, առ 'ի ոռոգել զդրախտն, որ ապա բաժանէր 'ի չորս գլուխս կամ 'ի չորս առաջս»: Ուր եթէ այսպէս իմանալ պարտ էր, ապա չէր անկ Մովսիսի գետս կոչել փիսոն, գեհոն երկրորդ, երրորդ, և գետն չորրորդ ասելով, այլ դնել յեբրայականն և յայլ ամենայն թարգմանութիւնս. այլ պարտ էր փոխն բառ առաջինս կամ գլուխս կոչել. զի չորք գետք նոքա են, որք քառեակ զանազան ակունս ունին: Այսպէս իմաստք բանից Մովսէսի է. Ջուր ելանէր յԵդեմայ՝ զոր կոչէ աղբիւր. այս Ջուր թէ և 'ի զանազան տեղիս Եդեմայ ելանէր, տակաւին մարթ էր ասել Ջուր կամ աղբիւր ելանէր յԵդեմայ, և ոչ թէ արտաքոյ Եդեմայ. ապա անտի՝ այսինքն 'ի տեղւոջէն Եդեմայ՝ նոյն Ջուրք որք 'ի զանազան տեղիս նորին Եդեմայ բղխէին, չորս գետս կազմեալ՝ ընդ չորս կողմունս ընթանային: Վասն որոյ զմակբայս անտի՝ պարտ է իմանալ ոչ վասն աղբերն՝ որպէս իմանայ Պէռժիէ, իբր ասել յաղբերէ անտի, այլ վասն տեղւոյն՝ այն է վասն Եդեմայ: Եթէ այսպէս առնասցուք, ապա և բանն Մովսէսի համաձայնի ընդ բանից արտաքին մատենագրաց նախնեաց, որք զակունս երից գետոց և՛ Եփրատայ, Տիգրիսի և Երասխայ, 'ի մի և 'ի նոյն լեառն առասցին լինել. վասն զի էր լեառն գօտեւոր, որ մի համարի: Նոյնպէս դարձեալ համաձայնի և այժմեան դրից, զի Պինկէօլ՝ ուստի բղխեն այս գետք, է նոյնպէս լեառն գօտեւոր, որ յիւրմէ բղխէ զՋուրս առաջինս նոյն վայրաց, և սկզբնաւորօղս նոյն գետոց:

# ՅՕԴՈՒԱԾ Բ

Երկրորդ բնակութիւն հայաստանեայց յաւուրս Նոյի:

ՅԵՏ ընդաջինջ լինելոյ մարդկային ազգի 'ի համաշխարհական ջրհեղեղին, քանզի բնակութիւն Նոյի և որդւոց նորա եղև 'ի Հայաստան, վասն որոյ և երկրորդ բնականալ մարդոյ 'ի վերայ երկրի՝ երկրորդ բնակութիւն է աշխարհիս Հայոց. քանզի տապանն, յորում պատսպարեալ էր Նոյ նահապետ, հանգեաւ 'ի Հայս. անդ եւ ինքն և որդիք իւր: Յայտնի է այս. բայց քանզի զտեղին, ուր եւ Նոյ, զանազան մատենագիրք և զանազան թարգմանութիւնք

ոճաշունչ գրոց այլեայլ անուանք կոչեն, նմին իրի այլեայլ կարծիք 'ի վէր ելին. և զի բնակիչք աշխարհիս Հայոց՝ որք տեղեակ էին աշխարհին իւրեանց, ամենեքին լռեալ կացին ոչինչ մատենագրեալ յաղագս այսորիկ, նմին իրի օտարազգիք անծանօթք՝ այնչափ այլեայլութիւն անուանց հնարեցին, մինչև շփոթել զլսողսն և զյայտնիչսն: Վասն որոյ աշխատութիւն յանձն առեալ ջանամք զվճիռսն նոցա ուղղել, և զայլեայլ մատենագրաց բանսն լուսաբանել առ տեղեաւս:

Արդ զեկանելն Նոյի 'ի Հայս՝ յայտ առնէ նախ սուրբ գիրք ծննդոց Ը. 4. գրելով զի տապանին ըստ եօթանասանից, որ է մերն. "Եւ նստաւ տապանն յեօթներորդում ամսեան 'ի 27 ամսոյն 'ի վերայ լերանց Արարատայ": Այսպէս դնի և յեբրայականն և 'ի սամարացին. ուր Արարատ առեալ սուրբ գիրք, իմանան զՀայաստան. մինչև 'ի Թարգմանութեան լատինացւոց որ կոչի Վուլկատա, և 'ի Թարգմանութեան Ասորւոց փոխանակ Արարատայ՝ դնի Արմէնիա, որ է Հայաստան, նոյն համարելով զԱրարատ և զԱրմէնիա, որպէս և է իսկ հաւաստեաւ [1]: Ոչ արտաքոյ Հայաստանեաց դնեն և Թարգմանութիւնն արաբացւոց, և բացատրութիւնն քաղդէականն՝ անուանեալ Թարգում Ոնքելոս, յորժամ ըզտապանն Նոյի իջեալ ասէ 'ի վերայ լերանց Կարդու կամ Կարդուայ. որովհետև և այս լերինք Կարդուայ որ է Կորդուք՝ էին 'ի Հայաստան [2]:

Երկրորդ յայտ առնեն համաձայնութիւնք նաև արտաքին երևելի պատմագրաց նախնի հեթանոսութեան ժամանակի ըստ սուրբ գրոց յայս բան. որք թէ և այլ և այլ անուամբ կոչեցին զլեառն ուր էջ տապանն Նոյի՝ զորս յիշեցաք 'ի գրելն զՄասեաց, բայց զաշխարհն ուր էր լեառն այն՝ միշտ կոչեցին Հայաստան, կամ որ նոյն է Արմէնիա: Ըստ այսմ ահա Աղեքսանդր բազմավէպ 'ի Քրոնիկոնին Եւսեբեայ, հատոր Ա. Թղթ. 34. պատմելով զնաւաշինութին Քսիսութրայ որ է Նոյ, և զջրհեղեղն, յետ դադարելոյ, ասէ, ջրհեղեղին 'ի քակելն զձեղունս նաւին՝ դէպ եղև նմա "տեսանել երթեալ յեցեալ զնաւն 'ի լեառն ինչ": Ապա 'ի 36 գրէ. "Եւ եթէ տեղին յորում վայրի ելեալ կային (մարդիկ 'ի նաւէ), Հայոց աշխարհն է": Սոյնպէս գրէ և 'ի 36. 37. նոյն Բազմավէպն. "Եւ

1 Որպէս և ցուցաք 'ի գլ. ա. 'ի խօսելն զԱնուանէ Հայաստանեայց: Տես և 'ի գլուխն Լերանց զՄասիս:

2 Վասն այսորիկ տես 'ի գլուխն Լերանց զՄասիս, և զԿորդուաց լերինս:

'ի նաւէն ուր չոգաւ դադարեաց 'ի Հայս, և ցայժմ տակաւ կինչ մասն 'ի կործուածոց լերինն 'ի Հայոց աշխարհին մնալ նշխար ասեն „: Ուր նախ զնաւն 'ի հայաստան դադարեալ ասէ. այս նաև զլեառն Կորդուաց՝ ուր զմնացորդս կինչ տապանին ցուցանէին՝ 'ի Հայս դնէ: Աբիւդենոս 'ի նոյն Քրոնիկոնին Եւսեբեայ Թղթ. 50. գրէ վասն նաւուն Նոյի. "Եւ նաւն երթեալ յաշխարհն Հայոց դադարէր. և 'ի փայտիցն զեղ օգնականութեան բնակչաց աշխարհին պարգևէր „: Սոյնպէս և Բերոս քաղդէացի ըստ վկայելոյ Յովսեպոսի 'ի նմին Քրոնիկոնին Եւսեբեայ Թղթ. 63. " Վիպագրեաց և վասն արկղակերպ տապանին՝ որով Նովքոս (Նոյ) նախնին մերոյ ազգիս ապրեցաւ, և երթեալ դադարէ 'ի գլուխ լերանց Հայաստան աշխարհին „[1]: Ի հայաստան դնէ և Մեղոն 'ի Թ. գիրս նախապատրաստութեան Եւսեբեայ:

Այսոցիկ նախնի հեթանոս մատենագրաց համաձայնին նաև քրիստոնեայ մատենագիրք, յորս Եւստաթէոս անտիոքացի 'ի չորրորդ դարուն գրէ. " Տապանն (Նոյի) ամբարձեալ 'ի ջուրց եկաց 'ի գագաթն լերին կինչ որ է 'ի Հայաստան: Եւ Ոսկեբերան ա. Թեսաղ. ճառ ը. Թղթ. 389. " Հաւատայցէք արդեօք եթէ եղև ջրհեղեղ, եթէ առանցելոց կինչ բանք թուիցին ձեզ. ուր և լերինքն յորս տապանն դադարեաց՝ վկայեն, ՚ի Հայոց լերանցն ասեմ „: Եւ 'ի ճառն սիրոյ. " Ապաքէն և զարդիս լերինք Հայաստանեայց (վասն Ջրհեղեղին) վկայեն, ուր եկաց տապանն (Նոյի). ոչ ապաքէն և այժմ անդանօր պահեալ կան նշխարք նորուն 'ի մեր խրատ „: Աղատոս 'ի Դ. գիրս գրէ. "Տապանն (Նոյի) հանգուցեալ կայր 'ի բարձրաբերձ լերինս Հայաստանեայց „: Եւ Իսիդորոս սիվիլիացին յեօթներորդ դարուն 'ի ԺԴ. գիրս Ստուգաբանութեանց. գլ. 8. " Արարատ (է) լեառն Հայաստանեայց, յորում պատմութիւնք վկայեն նստեալ տապանին յետ Ջրհեղեղին „: Ըստ այսմ գրեն և այլք բազումք:

Երրորդ՝ ընդ այսչափ մատենագիրս քրիստոնէից և հեթանոսաց՝ յաւել և զհամաձայնութիւն պատմութեան և աւանդութեան և յիշատակարանաց ազգային անդանօր բնակելոց 'ի սկզբանէ հետէ, որ առ ողջամիտ քննաբանս

1 Զորոյ զբանս յիշէ և մերս Խորենացի Ա. 6. գրելով. Բիւրոսոս, որ է Բերոս, " Յառաջ քան զբուրգն աւե և զբազմաժողովութեան լինելոյ ձայնի ազգի մարդկան, և զկնի նաւարկութեան Քսիսութրեայ (Նոյի) 'ի Հայս „:

է ապացոյց զօրաւոր։ Զի մինչև ցայժմ ցուցանեն զլեառն Մասիս՝ ուր նստաւ տապանն Նոյի. ցուցանեն զտեղին և զկողմն երևելոյ գիւղոյ լերանց Երևան կոչեցեալ, զորմէ գրի Ծննդոց Ը. 5. Արդ լերինքս այսոքիկ են յաշխարհիս Հայոց, զորս Ոսկեբերան կոչեաց 'ի մերոյ 'ի վկայութեն ջրհեղեղին. ապա ընդունեմք նա ինքն զայս աւանդութիւն ազգային։ Ցուցանեն դարձեալ և զտեղին՝ ուր ել Նոյ 'ի տապանէն, և նախ առաջին իջևանս կալաւ, անուամբն վկայեալ Նախիջևան քաղաք կոչելով, զորմէ ոչ միայն ազգն՝ այլ և Յովսեպոս վկայէ. որպէս կարես տեսանել 'ի մեծ Հայս 220. յաւել և զվկայութիւն Եւսեբիոսի 'ի գիրս տեղեաց, որ ասէ ըստ Թարգմանութե Հերոնիմոսի. "Այժմ զտեղին Հայք կոչեն Եղ". որով բանիւ զնոյն զտեղին Նախիջևան կամի նշանագրել։ Սոյնպէս 'ի սկզբանէ անտի յայտնի ցուցանեն զտեղին այգւոյն զոր տնկեաց Նոյ նահապետ ՟Ը պատմելոյ Մովսէսի, որ է Ակոռի[1]։ Դարձեալ զտեղի Թաղմանն Նոյի, Ամոյրան կոչելով։ Զտեղի Թաղմանն կնոջ Նորա Նոյեմզարայ ցուցանեն՝ Մարանդ կոչելով[2]։ Այս անուանս յիշատակարանք են՝ յոյր ասկս նահապետաց

1 Անդրգիտական պատմութիւն ընդհանուր հա. ա. գլ. Ը. յօդ. 2. յայլոյն վերագրեալ աւանդ յԵրևան գնէ զանկելն այգւոյ. և զՆախիջևան քաղաք կառուցեալ 'ի Նոյէ՝ երկրպագական համարի. որովհետև առաջ գիրք, ասէ, զՆոյ 'ի վերայ ցուցանեն բնակեալ յարգելեալ խաւարում։ Որպէս թէ Հայք ասիցեն ասել՝ թէ Նոյ նահապետ յառաջ քան զարգելեալն իւր շինեաց զքաղաքն Նախիջևան. և որպէս թէ շինեաց քաղաք՝ որպէս շինեն այժմ։ Այլ աւանդութիւն այդպէս է, թէ նախկին բնակութիւն Նոյի եղև 'ի Նախիջևան, յայլ ասկս և կոչեցաւ այսպէս, ոչինչ ասելով արդեօք ընդ յարկաւ արուեստակերտ տան՝ թէ ընդ վրանաւ. և ոչ թէ նոր սկսաւ շինութիւն առնել 'ի Նախիջևան, այլ աւանդեն կամ քաղաքակերտ։ Բայց 'ի Նախիջևան զկնի շինեցաւ քաղաք։

2 Համաձայնութիւն այսպիսի անուանց տեղեաց ընդ պատմութեան սուրբ գրոց չեն ինքնաստեղծք, որ հնար է 'ի բնութենէ ազգիս. չեն 'ի յետոյ դայից այսպէս կոչեցեալ, կամ 'ի Հրէից ուսեալ, որպէս ոմանք գրեցին, որ է մտացածին. եթէ առանցելոյ ինչ բանիք էին՝ ոչ ընդունէր Ոսկեբերան և ոչ բերէր 'ի վկայութիւն 'ի վերոյգրեալ բանս իւր։ Այլ արդարև զարմանալիս 'ի վերայ ամանց արդի եւրոպեանց, որք յորժամ 'ի գիրս կամ 'ի բերանս աշխարհացուցող բնակչաց գաւառին ինչ առաջեալ լսեն հին անուանց քաղաքաց խաւարեանց. որպէս մասն ընդունէին իբրև ամենևին Չշմարիտ, և այնպէս 'ի համոզել զայլս. իսկ յորժամ 'ի գիրս կամ 'ի բերանս մերոց հայկազանց լսեն ինչ, որք և հինն ունէին 'ի սուրբ գիրս, իբրև 'ի առասպելական ինչ կարծեաց և իբրև 'ի ծիծաղական ինչ պատուցայ խորշին և մերժին։ Զայս ոչ ըստ աղջախոհ քննարանից ինչ խորհեալ տեսանեմ, այլ 'ի կանխակալոյ դատմանէ յառաջ եկեալ, և յանծանօթ լեզուի բնաւորութեան արևելեան ազգաց. զի առ հայկազունս հնար է ամենևին զայսպիսիս կեղծել զբոլոր ինքնաստեղծս՝ մանաւանդ վասն հնութեց. որոց և ոչինչ փոյթ է ամենևին. այլ զի բնիկ տեղիք նոյն գիտութեանց են որք վկայեն։ Իսկ զայս կասկած կեղծելոյ՝ յաւէտ վասն այլոց ազգաց պարտ էր ունել։

կուս մասունս բաժանէր գրեթէ հաւասարս. յորմէ և նա-քաս զմասն՝ որ յարևելս Տիգրիսի, կոչէին Ասորեստան. իսկ զմիւսն՝ որ յարևմուտս Տիգրիսի, կոչէին Արամեան, որպէս և յիշեցաք 'ի վերոյ. արդ արարատեան լերինք ուստի յայն-ժամանելին 'ի Ճանապարհ՝ քանզի յարևելս Տիգրիսի անկա-նէին, վասն որոյ և ուղիղ գրի վասն մարդկանն՝ յԱրևելից[1] խաղացեալ: Այլ թէ զիարդ անցին յայնժամ ժողովուրդք ընդ գետն Տիգրիս, չէ պարտ տարակուսիլ, զի ծանօթ էին յայնժամ շինուածք նաւակաց. թող զայն՝ զի մարթ էր նոցա անցանել նաև առանց ինչ նաւակաց մերձ յա-կունս Տիգրիսի, կամ ընդ հունս նորա, որպէս անցին ա-մենայն զօրք մեծին Աղեքսանդրի մերձ 'ի Նինուէ և յԱր-բեղա, ուր լայնացեալ է գետն Տիգրիս. որպէս պատմեն Դիոդորոս սիկիլիացի, Կուրտիոս և Արրիանոս:

Ընդդիմութիւնքս այսոքիկ չեն բաւական տկարացու-ցանել զզօրութիւն միաբան վկայութեանն սուրբ և արտաքին գրոց զորս յիշեցաք. բայց գտաւ առ Եւրոպացւոց ոմն՝ որ արտաքոյ ամենայն կարծեաց զարարատեան լեառն դնէ 'ի գաւառ ինչ լերանց մերձ 'ի Չին, և անդ ասէ Նոյի որդիս ծնեալ և բազմացեալ և զթագաւորութիւն Չինաց հիմնեալ, և անտի սփռեալ յայլևայլ աշխարհս: Ցայս կարծիս կայ Շուքֆըրտ մատենագիր. զոր թէպէտ և լռելով բանիւ մարթ էր մերժել, բայց անգղիացի հեղինակք ընդհանուր պատմութեան հատ. Ի. գլուխ 16. 'ի խօսելն զհնութենէ Չի-նաց, բազում աշխատասիրօք եօթնևտասան պատճառս 'ի մէջ բերեալ, մերժեն 'ի հիմանց զայս օտարախորթ կարծիս: Գտաւ և ոմն Կորոպիոս Պեքանոս, որ զԲրաբանդիոս լեառն, որ ըստ նախնեաց գաւառ է Տօրոսի և ոչ Կովկա-սայ՝ որպէս նայն կարծէ, համարի լինել լեառն Արարատ. և առաջին աշխարհ յետ ջրհեղեղին բնակաւորեալ՝ զՄար-կիանոս գաւառ Պարսից դնէ. ուստի ելին ասէ զաղթա-կանք ընդ Նեբրովթայ 'ի շինութիւն աշտարակին, որ անկանի յարևելս Սենաարայ, և ոչ 'ի հայաստանեայց եկին՝ որ անկանի 'ի հիւսիսոյ Սենաարայ: Այլ ամենայն գործք սորա լի են այսպիսի մտացածին դրութեամբք:

Այլ ոմն Վալդէոս Ռոպէյկ անուանեալ՝ զԱրարատ ոչ դնէ 'ի Հայաստան, այլ 'ի լերինս ինչ որք անկանին 'ի մէջ

1 Այսպէս Արևելեան կոչելոյ սուրբ գրոյ և զայլ սակաւս՝ որ ըստ դրեց հաստուածնեայց են անկեալ, զանազան վկայութիւն բերէ Կաղդէա 'ի ա. հատոր մեկնութեան, 'ի Ճառն որ վասն չէ-նութեան աշխարհակի:

Պարսից, Թաթարաց և Հնդկաց. և առ 'ի զայս հաստատել՝ յանձնէ հնարէ, թէ Կովկաս լեառն որ է 'ի կողմն բակտրիացւոց և սկիւթացւոց՝ մասն էր զօտւոյ Տօրոս լերին՝ որ յընթանալն իւրում անցանէ ասէ ընդ Հայաստան: Բայց և սա 'ի վերոյգրեալ Կորոբիոսէ առնու զոր գրէ. վասն այսորիկ անգղիացի հեղինակք ընդհանուր պատմութեան գլուխ ա. յօդ. 8. նոյնպէս մերժեն և զայդ:

### Ա. Հատորք ինչ տապանին Նոյի ցուցեալ 'ի Հայաստան:

Սամանէ վասն երկուց պատճառաց ստիպիմք գրել՝ բերելով զվկայութիւնս նախնեաց: Մի՝ առ ստուգութիւն իջման տապանին Նոյի 'ի Հայս, զորմէ ճառեցաք մինչև ցայժմ: Երկրորդ՝ 'ի լուսաբանել զանծանօթ մթութիւն բանից վասն տեղւոյ լերին 'ի պատճառս հաստատոց տապանին:

Արդ Բերոս քուրմ Բելայ՝ որ էր յաւուրս մեծին Աղեքսանդրի, գրելով զՋրհեղեղէ առ Յովսեպոսի դիրք ա. Հնախօսութ. գլ. 4. ասէ այսպ. "Պատմի նաև մասն ինչ նաւուն մնացեալ 'ի Հայաստան 'ի լերինն կորդուացւոց. և ոմանց բառնալ անդուստ զնաւթ քերածոյ, զոր կրեալ 'ի վերայ 'ի կիր առնուն մարդիկ փոխանակ քժժանաց": Նման սմին և Աղեքսանդր բազմավէպ, որ 85 ամօք յառաջ էր քան զՔրիստոս, գրէ 'ի Քրոնիկոնին Եւսեբեայ, որպէս ըստ մասին բերաք 'ի վերոյ. "Եւ ցայժմ սակաւ ինչ մասն 'ի կորդուացւոց լերինն 'ի Հայոց աշխարհին մնալ նշխարս ասեն. և ոմանց քերել բերել 'ի ծեփածոյ նաւուն նաւթոյ 'ի բժշկութիւն և 'ի չնչոց ցաւոց ինչ քժժանաց": Համանման սոցա և բանն նորին Յովսեպոսի յասելն. "Երկիր է [1] առաւել բերող ամոմայց (կինամոմաց). անդ են և նշխարք այնր տապանին՝ որով Նոյ զերծեալ պատմի 'ի Ջրհեղեղէ. և ցայսօր են ցուցանելի որոց կամիցին տեսանել":

Յետ լսելոյ զբանս այսոցիկ հին պատմագրաց՝ երկու ինչ պարտ է նկատել. մի՝ զի բազմօք յառաջ քան զՄըծբնայ Հայրապետն երեւելի մնացուածք ինչ տապանին գտանէին պահեալ 'ի լերինս Կորդուաց՝ կամ կարծեօք, և կամ հաւաստեաւ. զի մարթ էր և նոյն իսկ որդւոց Նոյի բառ-

1 Առ Յովսեպոսի այս երկիր գրեալ կայ Գեէբծ. այլ Պօշար ըստ արժանւոյն ուղղէ զայս յանուանս Կորդուաց. ցուցանելով նաև յառատութէ ամոմայց կամ կինամոմաց, զոր այլք 'ի Կորդուս դնեն և 'ի Հայաստան:

նէին, այլ վասն մնացեալ մասանց տապանին զորս անդ պահեալ ունէին։

### Բ. Գիտելիք ինչ վասն անուան և բնակութեան Նոյի 'ի կատարութեան ջրհեղեղոյն։

Որպէս զյիշատակութիւն Ջրհեղեղի՝ նոյնպէս և զյիշատակութիւն Նոյի գտանեմք 'ի գիրս հեթանոսաց, բայց այլ և այլ անուամբ և դիպուածովք խառնեալ, յորս սակս ճառագրելով Խորենացին Ա. 6. ասէ զնոցանէ. « Այսաքինքն 'ի վիպագրացն յաղագս այսորիկ հաճեցան շարագրել... բայց ախորժելոյ որպէս կամեցան իւրաքանչիւրքն փոփոխել զանուանսն և զգործս և զժամանակս ... երբեմն 'ի ճշմարտէն, և երբեմն 'ի սուտէն ... ճշմարտէն. իսկ անուանցն փոփոխմամբ և բազմօք այլովք սուտն »։ Եւ քանզի տեղեկութիւն անուանց ինչ փոփոխութեանց հարկաւոր է առ իմանալ զգիրս, յայսմ վայրի յառաջ բերցուք։

Պօշար 'ի գիրսն Փաղեկ անուանեալ. Ա. 1. հաստատէ թէ հեթանոսք 'ի գիրս իւրեանց Սատուրնոս անուամբ, որ և Կռոնոս ըստ յունին, իմանան զՆոյ, զայսորիկ նշանս բերելով 'ի նախնի մատենագրաց հեթանոսաց։

Ա. Նոյ յետ Ջրհեղեղի էր հայր հասարակաց ամենայն մարդկան, նոյնպէս և Սատուրնոս յերգսն Որփէոսի՝ Հայր կոչի ամենեցուն. իսկ կին նորա Ռէա անուն՝ Մայր ամենեցուն։

Բ. Նոյ 'ի սուրբ գիրս կոչի այր արդար. նոյնպէս կոչեն և ստորագրեն զՍատուրնոս՝ Դիոդորոս սիկիլիացի, Աւրելիոս Վիկտոր, Յուստինոս, և այլք։

Գ. Նոյ էր այր հողագործ. բանաստեղծք ևս զարուեստ երկրագործութեան տան Սատուրնոսի, առ որս մի ինչ է համարեալ ասել Երկիր, և ասել Ռէա, որ ըստ նոցա էր կին Սատուրնոսի կամ Նոյի։

Դ. Նոյ արբեալ մնաց 'ի գինւոյ. նոյնպէս զՍատուրնոս արբեցութեան պաշտպան համարին հեթանոսք, այլ վասն արբեցութեան աւուրք Սատուրնեանք կոչեցան առ նոսա 'ի նորին անուն։

Ե. Նոյ անէծ զորդի իւր զՔամ սակս տեսանելոյ զմերկութիւն հօրն. Սատուրնոս ասեն 'ի պատճառս համանմանն իրիք դիպուածոյ զօրէնս սահմանեաց պատժել զորս հայէին 'ի մերկ քանդակս աստուածոց։

Զ. Նոյ և տուն իւր զերծան 'ի Ջրհեղեղէ. որպէս և բանաստեղծք զՍատուրնոս և զՌեա կին նորա կոչեն որդիս Ծովու. զՍատուրնոս կոչեն Ովկիանոս, և զՌեա Դեդիւ. իսկ Նախնի հռոմայեցիք 'ի նշան Սատուրնոսի եդին զքանդակ նաւու: Ասորեստանեայք ըստ բազմավէպն Աղեքսանդրի ասէին վասն Սատուրնոսի կամ Կռոնոսի զդուշակեալ զհեղեղ Ջուրց, և պատուիրեալ շինել զտապան առ 'ի պահել զմարդիկ և զկենդանիս:

Է. Նոյ գուշակեաց զկորուստ ազգի մարդկան 'ի Ջրոցն հեղեղաց. և ոչ ոք ապրեցաւ բաց 'ի նմանէ և 'ի տանէ իւրմէ: Սատուրնոս ևս, ասեն հեթանոսք, կորոյս զամենայն որդիս իւր բաց յերեցունց՝ անուանելոց Դիոս, Պոսիդոն, Պղուտոն. որք են Սեմ, Քամ և Յաբեթ: Իսկ ասորեստանեայք զփառս Սատուրնոսի կամելով տալ իւրեանց թագաւորի, Քսիսութրեայ եւոսն, որ էր թագաւոր նոցա. և Քսիսութրոս կոչեցին զՆոյ[1]. գուցէ, ասէ Պօշար, յաւուրս Քսիսութրեայ թագաւորի նոցա Տիգրիս և Եփրատ արտաքս քան զչափն զեղլով 'ի Բաբիլոն, և զերկիր նոցա ողողելով, առիթ ետ նոյնացուցանել:

Որպէս 'ի վերայ հասեալ զանազանութեան անուանցն Նոյի, նոյնպէս 'ի վերայ հաստատել բնակութեան տեղւոյ նորա և ժամանակի: Արդ 'ի սկզբնաւորութէ ելանելոյ Նոյի 'ի Հայս, մինչև 'ի ցրուել մարդկան 'ի Սենաար՝ անցին ամք 100. յայսչափ ժամանակս համօրէն ազգ մարդկան բնակէին 'ի Հայաստան. և ըստ չափու բազմանալոյ իւրեանց հետզհետէ սփռեալ ծաւալէին, սկսեալ յայրարատեան կամ 'ի Մասեաց լեռնէ ուր էջ Նոյ տապանաւն՝ մինչև 'ի շրջակայ երկիրս աշխարհիս Հայոց: Յայսմ ամենեքին միաբանին, և ընդունին թէ Նոյ նահապետ էր յայնժամ առաջնորդ ամենեցուն իբրև հայր և գլուխ, կառավարութիւն՝ զոր պարտ է կոչել ընտանեկան և հայրական, վարելով կեանս յանդորրութեան և 'ի հանդարտեան իբրև որդիք ընդ հովանեաւ հօր: Յայսմ հայրիշխանական ժամանակի է Ոսկի դարն՝ այնչափ հռչակեալ և գովեալ առ Նախնի բանաստեղծս, որ և յաւուր միում նաև 'ի մերոց բանաստեղծից նկարագրեսցի երգովք իբրև զմի ինչ բնակչաց մերոյ

1 Որպէս և գնէ Եւսեբի 'ի Քրոնիկոնին ա. 30. "Քսիսութրոն նոյն է որ 'ի յեբրայեցւոց Նոյ կոչի": Յայս անուն կոչէ և Խորենացին ա. 4. 6. 'ի յիշելն զբանս հեթանոսաց: Որ ըստ նախնի մատենագրաց քաղդէացւոց յիշատակեալ 'ի Աբիւդենեայ՝ էր գլուխ կամ նահապետ տասներորդ ծննդոց մարդոյ:

աշխարհին ։ Բայց այս ցանկալի կեանք մարդկան կերպարանափոխ եղև յորժամ զառաջինն ցրուեցան նոքա խառնալ 'ի Սենաար, և ձեռն արկին 'ի գործ աշտարակաշինութեան, յորում ժամանակի սկսաւ միապետութի, և յաւէտ բռնաւորութիւն ։

Ի այս շինութի աշտարակին 150 կամ առաւել ճշգրիտ 144[1] ամօք զկնի ջրհեղեղին դնէ Կալմէտ Ծննդ. ժա. 4 ։ Նոյ եկեաց յետ ջրհեղեղին ամս 350. որպէս յայտնի դնի 'ի Թ. 28. իսկ յետ աշտարակին իբր 150 ամս կեցեալ ասէ Կալմէտ 'ի Ճառն, որ վասն լեզուաց ։ Զայսչափ ժամանակս 'ի հայաստան բնակեալ պարտ է ասել զՆոյ նահապետ մինչև ցմահ իւր, որպէս անհնարինէ բան ոչ դրոյ . զի յետ գրելոյ բնակեալ յայրարատեան լերինս Հայոց, զկնի այնորիկ ոչինչ յիշէ վասն գնալոյ նորա այլուր . զոր յիշէր առաջին, որպէս յայտնի յիշէ զգնալն այլոց, և զեկեալսն առ տեղս 'ի հայաստանեայց . վասն հաստատէ և ընդհանուր աւանդութի հայկազանց բնակչաց աշխարհին, որք և զտեղի թաղման նորա ցուցանեն ։ Բայց սուտ Բերոսեան յիտալիա անցեալ, և անդ մեռեալ ասէ զՆոյ . այլք ոմանք գնացեալ ասեն 'ի Չինս, զոր յիշեցաք 'ի վերոյ ։

Այսոքիկ չեն ընդունելի և ոչ միում ումեք . այլ ընդունելի կարծիք առ եւրոպեան մեկնիչս այն է՝ թէ 'ի ցրուիլ մարդկան ընդ զանազան կողմն աշխարհի՝ Նոյ, Սեմ և Արփաքսադ 'ի Միջագետս և յաշխարհին քաղդէացւոց բնակեցան . բայց և զայս ասեն նոքա կարծեօք միայն, առ 'ի յարմարել պատմուե Աբրահամու . իբր զի որովհետև Աբրահամ աստուածապաշտ էր, և 'ի Միջագետս և 'ի Քաղդէայս բնակէր, պատճառ աստուածպաշտութե նորա յարմար լինի դնել անդէն զբնակութիւնն Նոյի ։ Բայց քանզի առ նախնիս Աբրահամու մտեալ էր կռապաշտութի, որպէս ունիմք ցուցանել 'ի գլուխն Ակղուի, ապա առաւել յայտ է թէ չէր անդ Նոյ . և զի Հայկ նահապետ մեր ոչ ընկալաւ զկռապաշտութի, որպէս ունիմք տեսանել 'ի գլուխն Կրօնի, այս զներհակն հաստատէ . այսինքն թէ անդ 'ի հայաստան էր բնակեալ Նոյ, ուր էր և Հայկ, որ ոչ թողոյր նմա ընդունել զկռապաշտութի ։

Պօշար 'ի սրբազան աշխարհագրութե իւրում դիրք

[1] Աստուածաշունչ գիրք Սամարացւոց և եօթանասնիցն առաւել քան զ300. ամս անցեալ դնեն 'ի ջրհեղեղէն մինչև 'ի բաժանումն մարդկան և 'ի ցրուել 'ի Սենաար, իսկ եբրայեցւոցն դնէ անցեալ ամս իբր 100 ։

ա. գլ. 4. յայտ է և զայլ խնդիր վասն բնակութեան Նոյի յառաջ քան զՋրհեղեղն, թէ ուր արդեօք եղև բնակութիւն նորա, և ուր շինեաց զտապանն։ Ինքն ՚ի բանիցն Մովսէսի, որ գրէ վասն տապանին Նոյի նստել ՚ի լերանց Արարատեան, հաւանական կարծէ Նոյի բնակեալ և շինեալ զտապանն ՚ի շրջակայս սահմանս Արարատենեայց. քանզի Արարատեան լերանց ասէ էր ՚ի Կորդիս. իսկ Կորդիք էր մերձ յԱրարատեան։ Եւ զի տապանն անձև իմն գոլով քառակուսի՝ անյարմար էր այնմ հեռաւորնաց ճանապարհ առնել, որչափ ինչ ճանապարհ արարեալ դիցուք նորա, ՚ի դէպ է ասել ՚ի հիւսիսակողմն արարեալ. զի օվկիանոս՝ յորոյ պատառա-մանէ և յառատանալոյ Արարատեան և Կորդիք ընկղմեցան, ՚ի կողմանէ հարաւոյ առատացեալ յորդեալ ջրողեաց, նաև անձրևք երկնատեղացք ՚ի հարաւային հողմոց լինելն աւելորդաբար։ Վասն որոյ յոյժ հաւանական է, ասէ, թէ Նոյ շինեաց զայն տապան ՚ի տեղիս սահմանակիցս Կորդուաց, այսինքն յԱրարատեան, որ ՚ի հարաւոյ աերի կայ նորա. զի յայնժամ ՚ի դէպ գայ տապանին վարել յԱրարատ որ է ՚ի հիւսիս։

Այլ ՚ի դնել ես այսպէս՝ առաւել ուղիղ լինէր Գոշարայ ասել, թէ բնակութիւն Նոյի նաև յառաջ քան զՋրհեղեղն էր ՚ի Հայաստան. զի թէ և ՚ի սահմանս Կորդուաց դիցուք ըստ նորա զԱրարատեան լերանց՝ լինի ՚ի Հայաստան. որովհետև Կորդուաց սահմանն է ՚ի Հայաստան. այլ ինքն Գոշար առ անտեղեակ գոլոյ մերոյ աշխարհին՝ յայս գլուխ բանի յԱրարատեան դնէ զԱրարատեան լերանց. ըստ որում Կորդուք, ուր էր ասէ Արարատ, առ երի կայր Արարատենեայց։

Գ. Բնակութիւն Սեմայ որդւոյ Նոյի, և սերնդոց նորա ՚ի Հայս։

Յետ ցուցանելոյ զբնակութիւնն Նոյի ՚ի Հայս, յիշեսցուք համառօտիւ և զբնակութենէ որդւոց և սերնդոց նորա ՚ի Հայաստան, որչափ ինչ գտանեմք յիշատակեալ ՚ի սուրբ գիրս և յարտաքին նախնի մատենագիրս։

Զարմանալի է համաձայնութիւն արտաքին մատենագրաց նախնեաց ընդ պատմութեան սուրբ գրոց, որպէս ՚ի գլխաւոր բանս պատմութեան Ջրհեղեղի և Նոյի, նոյնպէս և երից որդւոց նորա, անուանցն ևեթ այլևայլութեամբ։ Յիշէ

զայս Խորենացին ա. Ե. որոյ բազում մատեանս նախնեաց ընթերցեալ էր, գրելով. «Առաջինքն 'ի վիպասանացն... յետ ջրհեղեղին երիս կարգելով արս անուանիս յառաջ քան զաշտարակաշինութիւն, զկնի նաւարկութեան Քսիսութռեայ (Նոյի) 'ի Հայս ճշմարտեն»։ Սոքա երեքեան արքն կոչէին առ արեւելեան հեթանոսս Զրուան, Տիտան և Յապետոսթէ[1]. որք են որդիքն Նոյի՝ Սեմ, Քամ, Յաբեթ. որպէս մեկնէ նա ինքն Խորենացին անդանօր։ Իսկ մեկնիչք դիցաբանութեանց այլազգ անուանեալ ասեն 'ի հեթանոսաց, զոր պարտ է իմանալ վասն հեթանոսաց այլոց կողմանց. Դէոս կամ Եօլիօ կամ Եաբէիդէօ կոչեցին զՔամ և պաշտեցին. մնոյն և Ափրիկեցիք պաշտեցին, բայց անուն տալով նմա Համմոն, որ առաւել մերձենայ 'ի սորայ անուանակոչութիւնն Քամ. մնոյն Եգիպտացիք մեղմ հնչմամբ կոչէին Ամմոն կամ Ամոն, որպէս գրէ Պօշար։ Նեպտունոս կամ Պոսիդոն՝ որ է աստուած ծովու՝ կոչեցին զՅաբեթ. իսկ զի բաժին երկրի նորա եղեն կղզիք և ցամաք կղզիք, որպէս մեկնէ նոյն ինքն Պօշար։ Եւ Պղուտոն՝ այսինքն մեծատուն կոչեցին զՍեմ։

Թէպէտ առ հեթանոսս պատմագիրս բազումք եղեն՝ որք ըստ չափու ծանօթութեան իւրեանց գրեցին զանցս վասն նոյեան ժամանակի, բայց 'ի մէջ ամենեցուն նոցա առաւել հաւաստի պարտ է համարել զայն հաստատուած պատմութիւն, զոր մեր Խորենացի ա. Ե. բերէ յերից աղբերաց առեալ. մի՝ 'ի Բերոսեանն Սիբիլլեայ զոր կոչէ արդարախօս. երկրորդ՝ 'ի պատմութենէ Ողոմպիոդորոս փիլիսոփայի. և երրորդ՝ յերգոց հին Արամազնեայց. զերեսին եւս գտեալ համաձայնս միմեանց։ Արդ՝ Բերոսեանն պատմէ թէ երեք որդիքն Նոյի, զոր կոչէ Քսիսութրոս, անուանէին Զրուան, Տիտան և Յապետոսթէ, լինէին իշխանք երկրի, որք և 'ի մէջ իւրեանց բաժանեցին զամենայն տիեզերս։ Յետ այսորիկ բերէ Խորենացին և զպատմեալն Ողոմպիոդորոս փիլիսոփայի յանգիր աւանդութենէ, բայց առեալ 'ի վաւերական ինչ մատենէ, որ կորուսեալ էր. «Մատեան լեալ, ասէ, նոյն Ողոմպիոդորոս' զՔսիսութրեայ, և զորդւոց նորա, որ այժմ ոչ ուրեք երեւի. յորում ասեն կարգ լեալ բանից այսպիսի»։ Ապա 'ի մէջ բերէ զպատմեալն նորա, որ է նաւուն Նոյի ելանել 'ի

[1] Յապետոսթէ ըստ ասման յոյն լեզուի է ասել, Յապետոս եւ. այսինքն և Յաբեթ։

Հայս, և որդւոց նորա բնակել և սփռիլ 'ի Հայս. առ որ յաւելու Խորենացին՝ թէ «Կողմանք արևելից Զրուան զՍեմ կոչեն. և Զարուանդ գաւառն անուանեալ անտի մինչև ցայժմ»։ Ի հաստատութիւն այսոցիկ յաւելու Խորենացին յառաջ բերելով և զերրորդ վկայութիւն, զոր նախնիք մեր 'ի պատմական երգսն որ զնախնեաց իւրեանց՝ պատմէին մինչև 'ի ժամանակս իւր. որ այն ինքն է՝ երգն զոր բնակիչք Գողթան երգէին բամբռամբք։

Մեծ յոյժ կողմն աշխարհիս Հայոց եղև բնակութիւն Սեմայ՝ Ոլոմպիոդորոս որոշէ առ Խորենացւոյն ա. 6. ասելով. «Գնայ մի յորդւոց նորա (Քսիսութրեայ, որ է Նոյ) կոչեցեալն Սիմ... և անուանէ յանուն իւր զլեառն Սիմ»։ Զնոյն երկրորդէ և Թովմա արծրունի. «Գան մնանեն 'ի լեառն Սիմ, որ յանուն հաւուն իւրոյ Սեմայ անուանեալ էր լեառնն»։ Վասն լերինս տես 'ի Մեծ Հայս 70։ Յետ բնակելոյ Սեմայ 'ի լեառն Սիմ, են և պատճառք ինչ և նշանք՝ որք ցուցանեն բնակեալ նորա և 'ի Զարևանդ գաւառի, որպէս տեսցի 'ի գրելոցս ստորև։

Արդ պարտ է հաստատուն ունել զասացեալն Խորենացւոյն, թէ զոր օտար ազգք Զրուան կոչեն՝ է այն զոր մերք գիրք Սեմ կոչեն. ապա զոր ինչ պատմեն առասպելք վասն նախկին Զրուանայ՝ պարտ է իմանալ վասն Սեմայ. և զի Սեմ բնակէր նախ 'ի Հայս, զոր ինչ պատմեն գործեալ կամ ասուցեալ Զրուանայ, պարտ է իմանալ գործեալ և ասուցեալ 'ի Հայս։ Առ 'ի հաստատել զայս ամենայն քննեսցուք այժմ զօտար ազգաց զբանս որ վասն Զրուանայ։

### ՍԵՄ որ է ԶՐՈՒԱՆ

Օանուանս Զրուան զանազան օրինակաւ այլայլեն. զի կոչեն Զրադաշտ, որպէս է տեսանել առ Եղիշէի. զնոյն անուն մատենագիրք Յունաց և Հռոմայեցւոց փոխեն 'ի Զօրօաստր. քանզի զոր ինչ վարդապետութիւն ուսուցեալ ասեն Պարսիկք առ Եղիշէի վասն Զրադաշտի կամ Զրուանայ, և լեալ պետ դենի մոգութեան, զնոյն ընծայեն և նոքա Զօրօաստրայ։ Թէ ո՛ ոք էր Զօրօաստրս այս՝ բազում տարաձայնութիւն կարծեաց գտանի 'ի նոսա. Արնոբիոս որ էր ուսուցիչ Լակտանտիոսի, և որոյ գրուածք զբանասիրութիւն հեթանոսաց 'ի յարգի են առաջի իմաստնոց, գրէ այսպէս. «Աղէ, եկեսցէ այժմ որ 'ի վերայ հրեղէն գօտւոյ Զօրօաստր մոգ 'ի խորին աշխարհէ, եթէ հաւա-

տասցուք Երմիպպեայ հեղինակի․ եկեսցէ և Բակտրիա-
ցին այն՝ զորոյ զգործոցն ճառէ Կտեսիաս յառաջին գիրս
պատմութեն․ (եկեսցէ) և Արմէնիոսն (Արամազնեանն)
Թոռն Ոստանայ․ և Պամփիւլացին ընտանին Կիւրոսի „։
Ցայս բան Արնոբիոսի՝ քառեակ զանազան Զրուանս կամ
Զօրօաստրս համարին նշանակեալ Պատրիկիոս, Գաբրիէլ
Նօտ կամ Նաւտէօս, և Քիրհէր․ այսինքն քաղդէացի,
բակտրիացի, արամազնեան և պամփիւլիացի։ Սուիդաս
հինգ Զօրօաստր դնէ։ Իսկ Սալմասիոս երիս կարծէ՝ այս-
պէս մեկնելով․ առաջին Զօրօաստր կամ Զրուանն է ե-
Թովպացի մերձ յայրեցեալ գօտի․ վասն որոյ Արնոբիոս
գրէ եկեալ 'ի խորին սահմանաց և 'ի հրեղէն գօտւոյ․
զայս եԹովպացի կամ լիւդացի Զրուանն, ասէ Սալմասիոս,
բակտրիացի լինել համարի Երմիպպոս․ երկրորդ Զրուանն
է արամազնեան Թոռն Ոստանայ՝ զորմէ պատմէ Կտեսիաս․
իսկ երրորդն է պամփիւլացի բարեկամ Կիւրոսի։ Այլ Ուր-
սինոս զերկուս միայն Զրուանս դնէ յիշատակեալ յայս
բան Արնոբիոսի, 'ի բաց հանեալ զբակտրիացին։

Յայսմ վայրի Թողեալ մեր զայլսն, միայն զառաջին
Զրուանայ մատիցուք 'ի քննել, որ հայի առ բան մեր։
Զսա կարի վաղեմի ասեն լեալ Արիստոտէլ և Երմիպպոս,
մինչև հինգ հազար ամօք յառաջ քան զպատերազմ Տրոյ-
այ․ այլք 'ի Նախնեաց քրիստոնէից, զորս յիշէ Փաբրի-
կիոս 'ի յունական մատենադարանին հատոր ա․ 'ի սուրբ
գիրս դիմեալ 'ի գտանել, Զօրօաստր կամ Զրուան կար-
ծեցին լինել զՆեբրովԹ, զՄեստրեմ, զԱսուր կամ զԱբ-
րահամ․ իսկ յարդեաց՝ Հուետիոս կարծէ լինել զՄով-
սէս․ Գանիէ համարի լինել զՄեստրեմ․ ոմանք կարծեն
զնա աշակերտ Եղիայի կամ Եղիսէի․ իսկ այլք ոմանք հա-
մարին լինել Քամ, որ առաւել մերձենայ 'ի ճշմարտու-
Թիւնն։ Առաջին յիշատակուԹի 'ի քրիստոնեայս Թէ Քամ՝
է Զօրօաստր մօգ՝ գտանի 'ի գիրս՝ ընծայեալ Կղեմայ․ որ
'ի Քամայ ասացի ասէ ուսաւ և որդի նորա Մեստրեմ նա-
հապետ եգիպտացւոց․ իսկ Քամ 'ի յետագայից կոչեցաւ
ասէ Զօրօաստր։ Հրեայք ևս Քամայ ընծայեն զարուեստ
մոգուԹեան։

Այսչափ այլևայլուԹի կարծեաց քաջայայտ ցուցանէ Թէ
չիք ինչ հաւաստեաւ գտանել վասն այսր 'ի գիրս օտարաց․
նորին աղագաւ համարձակիմ ասել Թէ բան մերոյ Խո-
րենացւոյն ա․ 6․ հանեալ 'ի ճշմարիտ աղբերաց, ունի
լուսաւորել զայս մԹուԹի պատմուԹե, և հաստատուն կա-

ցուցանել՝ թէ առաջին Ջրուանն կամ Ջօրօաստրն էր Սեմ որդի Նոյի․ յորմէ և իմ առուգիւ եդեալ 'ի մտի՝ թէ նախնիք զգործս և զժամանակս այլևայլ Ջրուանայ շփոթելով եառն երրեակն միում՝ և երրեակն միւսում, զզանազան բանս նախնեաց մեկնելով միում և եթ 'ի նոցանէ ընծայեմք՝ վասն երից պատճառաց ։

Առաջին պատճառ է նոյն ինքն եղանակ խօսից նորին Խորենացւոյ, որոյ երկիւղած գոլով յամենայնի, զերկբայականն տարակուսանօք դնելով, զկեղակարծմն տարատամ թողլով 'ի կամս ընթերցողին, որպէս և գիտեն հմուտք, յայսմ կարի իմն վստահութ̃ վճռաբար գրէ ասելով․ Աբեդեանք զՍեմ կոչեն Ջրուան․ զոր ոչ այսպէս ուղղակի գրէր արդեօք բաղդահամաւն այն տեղեակ ամենայն մատենագրաց Յունաց և Պարսից, եթէ գտանէր ինչ երկբայութիւն ։ Զայս բան Խորենացւոյն հաստատեն և կարծիք նոցա՝ որ զառաջին Ջրուանն տարեալ հանեն մինչև 'ի ժամանակս Նոյի․ յայսմ միայն տարաձայնեալ, զի փոխանակ դնելոյ զՍեմ, դնեն զՔամ զմիւս որդի Նոյի ։ Այլ առաւել հաստատէ Գրիգոր տաւրոնեցի՝ որ համաձայն Խորենացւոյն զՍեմ ասէ լինել Ջօրօաստր կամ Ջրուան ։

Երկրորդ պատճառ է անուն տեղւոյն․ զի որպէս յայլ տեղիս հայաստանեայց յանուանէ տեղեացն իմանամք նոյն լինել և զանուն նահապետին՝ որ անդ կալաւ զբնակութիւն, ուր ոչ կարէ մնանել վրիպակ, զի այս է սովորութիւն նախնեաց՝ յանուն առաջին բնակողին կոչել զտեղին, նոյնպէս և զանուն Ջրուանայ գտանեմք սեփականեալ նմին տեղւոյն, այն է անուն Ջարուանդ գաւառին 'ի նահանգին Պարսկահայոց, զորմէ հաւաստեաւ վկայէ Խորենացին, թէ որպէս առաջին անուամբն Սեմայ կոչեցաւ Սիմ լեառն, ուր եղև առաջին բնակութիւն նորա, նոյնպէս երկրորդ անուամբն Ջրուանայ կոչեցաւ Ջարուանդ գաւառն որ 'ի նահանգին Պարսկահայոց, ուր և եղև երկրորդ բնակութիւն նորա ։ Այսոքիկ անշինջ յիշատակք են որով Խորենացին զանուն տեղւոյն յայտ առնէ, իսկ անուն տեղւոյն զբանն Խորենացւոյն հաստատէ ։ Չմարթի ոչ ուրեք զայսպիսի ինչ տեղի յանուն Ջրուանայ ցուցանել․ և ոչ անթիւ նմանս հին և հաւատարիմ պատմագիր գտանել այսմ վկայ․ և ոչ իսկ զստուգաբանութիւն անուանն 'ի վեր հանել, թէպէտ և բազումք բազմօք աշխատեցան, զորս յիշէ Պրուքքէրոս․ այլ գտցեն հաւաստեաւ զստուգաբանութիւն նորին 'ի մերում լեզուի ։ Իսկ թէ ընդդէմ անուանն Սե-

մայ փոխեալ կոչեցաւ Զարուանդ, ուսուցեն ցանկացողք 'ի գլուխն Դպրութ̄ և Կրօնի: Այսմ համաձայն զայն գտանեմք առ Նախնիս օտար ազգաց, զի Պլինիոս 'ի յիշելն զայս տեղի Գ. 27. յանուն Զօրօաստրայ յիշէ, յայտ արարեալ թէ յանուանէ Զօրօաստրայ այսպէս էր յորջորջեալ. տես 'ի մեծ Հայս 154: Այլք զմին 'ի Զրուանայ ասեն լինել Պարսիկ. իսկ Կղեմէս աղէքսանդրացի 'ի Ե̄. գիրս Ցանձախապատուամ գործոյ իւրոյ՝ կոչէ Մար. յորմէ և արդիք կոչեն միանգամայն Պարսիկ և Մար: Աստի յայտ է թէ անունս այս ցուցանէ զԶրուանն լինել յայնկոյսի աշխարհէ՝ զոր մարթ էր կոչել և յանուն Պարսից և յանուն Մարաց. և ո՞ր այլ երկիր կարէր այսպէս երկոքումբք անուամբք կոչիլ, բայց եթէ այն մասն աշխարհիս Հայոց՝ որ անդստին 'ի վաղուց անուն կոչէր Պարսկահայք. ըստ որում ընդ բազում ժամանակս Պարսից հպատակէր. կոչէր և Մարք, զի որպէս ասացեալ է մեր և այլուր, հարաւային արևելեան նահանգք մեր իբր 'ի բազումս յաշխարհէն Մարաց համարէին՝ որպէս էր Պարսկահայք, սակս գոլոյ ընդ տէրութեամբ նոցա:

Երրորդ պատճառն է, զի թէ հաւանեսցուք եթէ Սեմ էր առաջին Զրուան կամ Զօրօաստր, զոր ինչ գրեն վասն Զրուանայ ասացեալ և վարդապետեալ, այն առաւելայն 'ի դէպ գայ Սեմայ, որք ասենս ուսանել 'ի գլուխն Դպրութ̄ և Կրօնի: Ի դէպ գայ և ասելն Արնոբիոսի վասն Զրուանայ լինել 'ի խորին սահմանոյ. վասն զի հայաստան՝ մանաւանդ կողմանք Պարսկահայոց, որ և կոչի Հեր և Զարևանդ գաւառ, ուր բնակեցաւ Սեմ կամ առաջին Զրուան՝ խորին սահմանք էին վասն Յունաց և հռոմայեցւոց, և սահմանն այդ հեռի և անծանօթ էր վասն նոցա: Իսկ զոր ասէ 'ի հրեղէն գօտւոյ իջեալ, ոչ սակս եթովպացի գոլոյ ասէ, որպէս մեկնէ Սալմասիոս, զի անհիմն է առ ժամանակօք Նոյի ծաղկեալ համարել մոգութեան կամ աստղաբաշխութ̄ յԵթովպիա, այլ զի իջանելն Նոյի և Սեմայ տապանաւ՝ եղև 'ի բարձր արարատեան լերանն յանծանօթ իմն սահմանէ; յայնմանէ կարէր համբաւհանել առ յետագայ սերունդս իբր յերկնից իջեալ. և զի բարձրագոյն մասն երկնից ըստ հին աստղաբաշխութ̄ կոչէր հրեղէն գօտի կամ կամար, ըստ այսմ առմանս Արնոբիոս գրէր 'ի հրեղէն գօտւոյ իջեալ փոխանակ ասելոյ յերկնից իջեալ:

Մինչև ցայս վայր ցուցեալ զնմանութիւն Սեմայ կամ ա-

րանօք երբայականին ըսէ՝ Հուռ և Հուլ և Գեղեր ։ Իսկ Յովսեպոս Հնախօս. ա. 6. ըստ ձեռագրաց զՀուլն անուանէ Ուղրոս, և զբնակութիւն նորա դնէ 'ի Հայաստան ։ Զայս Ուղրոս անուն Պօշար ի. 9. հաւանական կարծէ լինել Ողուռ, այսինքն Ողլնի, որ է Ուտի գաւառ աշխարհիս Հայոց. զորմէ ասէ 'ի մեծ Հայս. յորմէ յայտ է թէ տեղին անուանեցաւ Ողլնի կամ Ուտի՝ յանուն նահապետին որ էր թոռն Սեմայ, որ գուցէ այլով անուամբ կոչէր Հուլ, կամ Հուշ. զի և մի 'ի գաւառացն Ուտի նահանգին կոչէր Ուշանատակ ։

ԱՐՓԱՔՍԱԴ

Կալմէտ ծննդոց. Ժ. 25. 'ի խօսելն զՅեկտանայ՝ գրէ վասն Արփաքսադայ որ էր նախահաւ նորա՝ կամ յԱրա-բաստան և կամ 'ի Հայաստան բնակեալ ։

ՅԵԿՏԱՆ

Ըստ սուրբ գրոց ծննդ. Ժ. 25. սա էր որդի Եբերայ, որդւոյ Սաղայ, որդւոյ Արփաքսադայ, որդւոյ Սեմայ, ուր երեքտասան որդիս Յեկտանայ յիշէ յանուանէ. ապա զտեղի բնակութեան նոցա ցուցանելով ասէ 'ի 30. « Ամենե-քեան սոքա որդիք Յեկտանայ, և եղև բնակութիւն նոցա 'ի Մասեայց մինչև 'ի գալ 'ի Սովփերայ լեառնն արևելեայց » ։ Պօշար ըստ իւրում սովորութեան յԱրաբիա յուզէ գտանել զտեղի բնակութեան որդւոց Յեկտանայ, բայց Կալմէտ արժա-նապէս մերժեալ զայդ՝ ցուցանէ թէ չէ պարտ իմանալ զայն վասն այսր առաջնոյն Յեկտանայ, այլ վասն միւս Յեկ-տանայ, որ էր որդի Աբրահամու և Քետուրայ, զոր յիշա-տակեն սուրբ գիրք ծննդ. իե. 2 և 6. և ինքն Կալմէտ զառաջնոյն զայս Յեկտան զորդին Եբերայ և զսերունդս նո-րա բնակեալ և սփռեալ ասէ յարևելեան երկիրս 'ի Մա-սեայց մինչև 'ի լեառն Սեփար, ուր եղեալ կայ 'ի թարգ-մանութեան իւրեանց, զոր տառապի գտանել ։ Բայց 'ի ծննդ. ի. 11. յայտնապէս ևս խօսելով յայս կնքէ զբան իւր, թէ տեղի բնակութեան սերնդոցն առաջնոյն Յեկտանայ եղև Հայաստան և Միջագետք և սահմանակից երկիր ։ Իսկ 'ի մերում թարգմանութեան քանզի որոշապէս եղեալ կան անուանք տեղեաց, և զի են անուանք տեղեաց մե-րոյ աշխարհիս, ծանօթագոյն գոլով մերոց՝ գրեցաք 'ի ստորագրութեան Մասիս լերին, որպէս և 'ի գլուխն Վաձա-

ռակմնութեն, թէ սուրբ գիրք կամին յայտ առնել, թէ բնակութն սերնդոց առաջնոյն Յեկտանայ եղև յայն ամենայն սահմանս՝ որ սկսեալ 'ի Մասեայ լեռնէն հայաստանեայց ձգի մինչև 'ի Սափեր, որ 'ի սուրբ գիրս գրի Սովփեր :

ՈՒՓԻՐ

Էր մի յերեքտասան որդւոց նախադրելոցն Յեկտանայ, զորոց զբնակութին սուրբ գիրն որոշեաց 'ի Մասեա լեռնէ մինչև յարևելեան լեառն Սովփեր, որպէս տեսեր 'ի վերոյ : Եւ քանզի մինչև ցայժմ գտանեմք տեղի նովին անուամբ կոչեցեալ, այն է Սափեր, որ գուցէ կոչէր և Սոպեր կամ Սովփեր, նոյնպէս յարևելս՝ այն է 'ի հայաստան, զի ասա ևս Արևելք անուամբ պարտ է իմանալ զՀայս, նմին իրի յանուն այր նահապետի համարիմք յորջորջեալ : Այլ զի վասն այսր ըստ բաւականին ցուցեալ է մեր 'ի գլուխն Վաճառականութե, տես անդ, ուր և գտանես թէ որպէս Ուփիրն գրի և Սովփեր :

ԵՒԻԼԱ

Էր նոյնպէս մի յերեքտասան որդւոցն Յեկտանայ, զոր կից ընդ նախադրեալ նահապետին Ուփիրայ յիշատակեն սուրբ գիրք. Ծննդ. Ժ. 29 : Արդ որպէս տեղին Ուփիրայ եղև Սափեր, 'ի դէպ իսկ յարմարի և տեղի բնակութե սորին նահապետի լինել 'ի մերձակայս անդ. որպէս և արդարև իսկ գտանեմք անուն ինչ 'ի Կողքիս, մերձ յայժմ անուանս Եւիլա. զորմէ քանզի գրեալ եմք 'ի ստորագրութե դրախտին՝ տես անդ : Այլ աստ յաւելուլ և զայս, թէ որովհետև այս անուն յաստուածաշունչ գիրս հրէից գրի Խաւիլաթ, յոյժ հաւանական թուի՝ թէ Խաղտիք էր որ առ նոսա յայնժամ Խաւիլաթ կոչէր, և առ այլս առանց խ տառի Աւիլա կամ Եւիլա. մանաւանդ զի ունիմք վկայութե և յարտաքնոց՝ որք գրեն թէ Խաղտիք նախ կոչէին Խաւիլք. այն է Ստրաբոն, որ գիրք ԺԲ. գրէ. “ Որք այժմ Քաղդիք (Խաղտիք) կոչին՝ երբեմն Քալիւք կոչեցան ” : Ուր մարթ է լինել վրիպակ գրչութե. փոխանակ գրելոյ Քաւիլք կամ Խաւիլք՝ գրեալ Քալիւք : Եւ այսպէս չէ հարկ ձըգնիլ և անկանիլ 'ի բազմաբանութիւն առ 'ի նոյնացուցանել ընդ այլ Եւիլատ տեղիս յիշատակեալս 'ի սուրբ գիրս, ընդ որս չիք ինչ կապակցութի :

## ՌԵՆԱ

Ի դիցաբանութիւն օտար ազգաց Ռեհա է անուն կնոջ Սատուրնոսի, որ է Նոյ. բայց կամելով զդիցաբանութիւն նոցա 'ի ճշմարտութիւն ինչ կերպարան մուծանել, յանուանէ տեղեաց ուր բնակեցաւ Նոյ և կին և սերունդ նորա, անկ է իմաստասիրել, որոց բնակութիւն եղև Հայաստան: Արդ 'ի Պարսկահայք նահանգի Հայաստանեայց որպէս գտանեմք տեղի Զարուանդ և Զարեհաւան՝ նոյնպէս անդանօր գըտանեմք և Ռենա, յիշատակեալ առ Թովմայի արծրունւոյ յամեն Դ. 11. "Ելեալ 'ի Հադամակերտ քաղաքէ.. և անցեալ.. ընդ Վարագի Զարեհաւանի և .. յՌենայ և յԱմաց գեօղ": Յայսմանէ հաւանեալ եմք ասել, թէ որպէս Զարուանդ և Զարեհաւան էին տեղիք բնակութ Սեմայ՝ որ էր առաջին Զրուանն, նոյնպէս և Ռենա էր տեղի բնակութ կնոջ Սեմայ և ոչ Նոյի. զի զտեղի կնոջ Նոյի՝ մերքն որոց անկ էր յոյժ առաւել գիտել քան զօտար ազգս առասպելաբանս՝ այլուր ցուցանեն, որ է Մարանդ, և զանուն նորա կոչեն Նոյեմզար: Այս Ռենա տեղին է նոյն որ առ Խորենացւոյն գրի Ըռնա կամ Առնա: Առ հեթանոսս օտար ազգաց Ռեհա չ՛ծնուհին զանազան անուամբ կոչի, որ Օբ, և Կիւբելէ և այլն: Իսկ զոր Դիոդորոս դուստր արքային փռիւգացւոց կացուցանէ զՌեհա, յառասպելեաց սակի պարտ է գրել: Կոչեն զՌեհա նաև Մայր, որով 'ի դէպ է կոչել կամ զկին Նոյի, և կամ զմին 'ի դստերաց նորա՝ 'ի մայրական խնամոցն անուանեալ. այլ որ զարմանք է՝ նաև սոսկ Մա կոչեն զՌեհան. որ է աղճատեալն հայկական բառիս Մայր. Թէպէտ և նոքա այլուր տանին զպատմութիւն այլայլելով զամենայն. բայց հայկական բառն վկայէ և ցուցանէ զբնիկ տեղին և զանձն: Համարին զՌեհան պատճառ անձրևոյ, ջահս և լապտերս առ նմա եղեալ, զփայլակն կամելով նշանակել, որ է նշան անձրևոյ. այլ ճշմարտութիւն է ոչ սոսկ անձրև պատճառելոյ, այլ 'ի յիշատակ զերծանելոյ նորա յանձրևոյ ջրհեղեղին:

սոցա. այլ մերըն զՀեռ երթեալ Եւսեբեայ՝ զԿապադով-
կիա ասեն անդի բնակուն Գամիրայ, որպէս և Յովհաննէս
կաթողիկոս յայտ առնէ յասելն. «Ի նորուն անուն աշ-
խարհ կալուածոց նորա կոչեցաւ Գամիրք»: Իսկ Գամիրք
կոչեն մերըն ըստ Եւսեբեայ զԿապադովկիա. որով և լինի
բնակիչ փոքուն Հայոց. զի մինն Կապադովկեայ, ուր էր
Կեսարիա, էր սահման փոքուն Հայոց:

## ՄԱԳՈԳ

Երկրորդ որդի Յաբեթայ, զորոյ զանեղին Պօշար հա-
մարի լինել Կոկարինի գաւառ Հայոց յիշատակեալ 'ի
Ստրաբոնէ, 'ի Ստեփանոսէ և 'ի Պլինիոսէ. զի Գոգ է ա-
նէ նոյն իսկ Մագոգ: Այդ Կոկարինի, որ գրեալ էր մեր
այլուր, է նոյն իսկ Գուգարք գաւառ մեծին Հայոց, յա-
նուն նորա կոչեցեալ իբր Գոգ հարք. իբր ասելի, ուր բնա-
կեցան առաջին հարք Գոգայ և Մագոգայ. վասն որոյ
Պօշար վայրապար 'ի բարբառս Պարսից կամ արաբացւոց
խնդրէ զանուանել զատուգաբանութի սորին. միայն թէ զան-
րունդս սորա պարտ է ասել յետոյ սփռեալ 'ի լերինս Կով-
կասու, որում 'ի դէպ զան յարմարեալ և բանք արաբա-
ցւոց, որք զԳոգն և զՄագոգն (ըստ նց Եէճիւճ և Մէճ-
ճիւճ) դնեն 'ի լեռանն Քաֆ. յոր անուան կոչեն զԿովկաս,
որ և է կրճատութի անուանս Կաւկաս, և անտի փոխադրեալ
ապա 'ի վերջին եղերս Թաթարաց: Վասն որոյ զանուանեն
առ նոսա և անուանք զանազան ժողովրդոց մերձ յանուանս
Մագոգ. զոր օրինակ են Մանճուք, Մողոլ կամ Մողոլք:
Այն զի՝ ըստ Պօշարայ պարտ է համարել փոխադրեալ
նոցա նաև 'ի Ռուսս. զի բանն Եզեկիելի, ասէ, որ 'ի ԼԸ.
2. 3. զԳոգ և զՄագոգ կոչէ իշխան Ռոսմոսոքայ և
Թոմբելայ, ըստ այլ թարգմանութե Ռոսայ, Մեսոքայ և
Թուբալայ, ցուցանէ լինել իշխան Ռուսաց և Մոսկովաց
և Թուբալաց. նա զի Թոբէլ և Մոսոք՝ էին վեցերորդ և
եօթներորդ որդիք Յաբեթայ ըստ Ծննդոց Ժ. 2: Ոմանք
նաև զՎիրս 'ի Կոկարաց կամ 'ի Գուգարաց սերեալ համա-
րին հայելով յանուանս Ճիւրճիա, որով կոչեն 'ի նոցանէ
Վիրք. ածանցեալ դնելով զայս անուն 'ի Եէճիւճ անուա-
նէս որ է Գոգ և Գուգարք, այլ այս առեալ է 'ի սովորա-
կան անուանէ յոլովից յիշխանաց Վրաց՝ Գորգի կամ
Գէորգ կոչեցելոց:

## ՄՈՍՈՔ

Սա է եօթներորդ որդի Յաբեթայ ։ Ի զանազան կարծեաց այն է առաւել ընդունելի, որ զբնակութն առաջին նահապետաց ոչ հեռացուցանէ 'ի հայաստանեայց, ուրանօր բնակեալ կային որդիք Յաբեթայ 'ի ժամանակին. վասն որոյ ընտրելի է կարծիքն նոցա, որ զՄոսոք բնակեալ ասեն 'ի Մոսքիքեան լերինս ։ Այս լերինք զՎիրս բաժանեն 'ի հայաստանեայց, և զԿողքիս բաժանեն յերկոցունց. զորս և Պտղոմէոս և Ստրաբոն ձգեն 'ի ծագաց վրաստանի մինչև 'ի կողմն Պոնտոսի Կապադովկիոյ. իսկ Քսենոփոն, Դիոդորոս սիկիլիացի և Պլինիոս 'ի կողմն Պոնտոս ծովու ։ Ի սոսա Պլինիոս Զ. 4 և 10. առաւել ճշգրիտ որոշեալ զտեղին, դնէ զՄոսքս յանկն անդ Փասիս գետոյ և Իւկեր վտակին՝ որ զեղու 'ի Կուր ։ Այս ամենայն սահմանք զոր ստորագրեն սոքա՝ յարմար կացուցանեն զՄոսքիքեան լերինս լինել անդի բնակութեն Մոսքայ որդւոյն Յաբեթայ և որդւոց նորա. զոր և անունն հաստատէ, և դրից մերձաւորութիւն[1] ։ Ի լեռնականաց աստի Մոսքիքեանց պարտ է ասել թէ սերեալ և սփռեալ իցեն յետ ժամանակաց այլ ժողովուրդք՝ որք կրեն զանուն Մոսոք, կամ Մոսք, բնակեալք յօտար աշխարհս. նոյնպէս և յերկեցիք, զորս Մոսքայ տայ Յօհաննէս կաթողիկոս. “Եւ զՄոսոք որ պայազատէր զՎիւրիկիա ”. զհետ երթեալ յայսմ Եւսեբեայ ։ Նա զի անգղիացի հեղինակք ընդհանուր պատմութե հատոր ա. գլ. 2. յօդ. Զ. 'ի խօսելն ըզՄագոգայ՝ հաւանեալ են ասել, թէ 'ի սկզբան անդ առ Երասխ գետով էր ժողովուրդ ինչ Րոս անուն, 'ի գետոյն ընկալեալ զանունն. զի Յոյնք զԵրասխ կոչէին Արաս. կամ ադաւաղանօք Րաս և Րոս, որ է Րոշ, զոր յիշեցաք 'ի ստորագրութեն Երասխայ. և այլ ժողովուրդ ինչ Մոսքիք յորջորջեալք, բնակեալք 'ի վերայ Մոսքիքեան լերանց ։ Վասն սոցունց կարծեն հնագիրք, թէ յերկուց ժողովրդոց աստի՝ որք գաղթեալ անկան յայնկոյս Կովկասու, ունին զծագումն այժմեան Ռուսք և Մոսկովք, և վասն սոցա իմանան զիշխանն Ռոսմեսոքայ 'ի բանն Եզեկիելի ԼԸ. 2. ուր զերկուս ժողովուրդս Րոսս և Մեսոքս 'ի մի յօդէ ։

1 Որոյ և այլ նմին Մոսունիքեան անուանեալ՝ գովեալ է յԱրիստոտէլէ սակս պայծառափայլ գեղեցկութեն. որպէս և զասացեալն Եզեկիելի ԻԷ. 13. զարդն վաճառականութէ պղնձի անօթոցն իմանան մեկնիչք ։ Տես 'ի մեկնութեան Ակըզօլայեայ հատոր Է. Ճառ. 56 ։

## ԱՍՔԱՆԱԶ

Ըստ սուրբ գրոց է որդի Գամերայ. այլ Յոհաննէս կաթողիկոս ասէ զնա լինել որդի Թիրասայ, որ է եղբայր Գամերայ. «Իսկ որդիք Թիրասայ, ասէ, Ասքանազ, յորմէ[1] Սարմատք»: Բազումք տեսեալ թէ 'ի Բիւթանիա գաւառի լինի, գետ և ծով Ասքանեայ անուամբ, համարեցան տեղի բնակութեան Ասքանազայ լինել զԲիւթանիա. իսկ Պոշար զտեղի նորա 'ի փոքրն Փռիւգիա ասէ լինել. զի են անդէն քաղաքք և կղզիք Ասքանեա անուանեալք, յորմէ համարի Ասքանազայ գաղթականս ածեալ 'ի հարաւային կողմանս Պոնտոս ծովու, և սփռեալ մինչև ցնահանգն Պոնտոս. և յանուանէ ծովն Ասքենոզ յորջորջեալ, և ապա յԵւքսինոս փոխեալ, որպէս կոչեն նախնիքն զծովն Պոնտոս[2]: Ապողոդորոս և Ստրաբոն յիշատակեն զաւառ իմն լեալ Ասքանեա անուամբ բացակայ 'ի տեղւոջէ անտի փոքուն Ասիոյ ուր էր Տրովադա, ուստի իբր 'ի հեռաստան աշխարհէ Փորկոս և Ասքանիոս յօգնութիւն եկին տրովացւոց, որպէս պատմէ Հոմերոս յերկրորդ գիրս Եղիականին: Զայս յառաջ բերեալ Կալմէտի, և 'ի խնդիր ելեալ գտանել 'ի հեռակայս Տրովադայ զերկիր իմն Ասքանայ անուամբ, 'ի Սարմատիա գտանէ զԱզովն կամ զՕքսակոնն յարմար այսմ:

Այլ պատմութիւն ազգիս զատոյգն այսր ամենայնի 'ի լոյս հանէ, ուսուցանելով նախ՝ թէ Ասքանազն ոչ էր անուն տեղւոյ, այլ անուն հանօրէն մերոյ ազգիս. յոր անուն նախ առաջին կոչեցաւ Ասքանազեան[3]. զայս յայտնի ծանուցանէ Յոհաննէս կաթողիկոս յասելն. «Նախ Ասքանազ իսկ էր յիւր անուն սահմանեալ զմերազնեայսս ըստ երիցութեան ազգի»: Եւ 'ստորև զնոյն կրկնելով բացայայտէ. «Իսկ Թորգոմայ զմերազնեայսս սեպհականեալ, որում տիրեալ, զԱսքանազեանն նախ անուանեալ՝ յիւր անուն նուաճէր տուն Թորգոմայ. արդ այսպէս իմա Ասքանազեան զմեզ,

1 Յոհան. կաթ. յայս բան զՍարմատս տայ Ասքանազայ, իսկ Ռիփաթայ տայ զՍաւրոմատս, այլ Եւսեբիոս զՍարմատս տայ Ռիփաթայ, որ էր եղբայր Ասքանազայ:

2 Զոր և ընդունելին անգղիացի մատենագիրք ընդհանուր պատմութեան հատոր ա. գլ. ա. յօդ. 6. այլ անհիմն համարի զայս Կալմէտ ծննդ. Ժ. 3, որպէս և է իսկ հաւաստեաւ:

3 Այս է առաջին անուն մերոյ ազգիս յանուն Ասքանազայ, երկրորդն է Թորգոմեան յանուն Թորգոմայ, երրորդն է Հայկազեան յանուն Հայկայ, չորրորդն է Արամեան յանուն Արամայ:

և տուն Թորգոմայ. և այսպէս քեզ հաւատարմացուցին որ վասն նահապետութեան ազգիս մերոյ է բան»։

Երկրորդ՝ ուսուցանէ պատմութիւն ազգիս՝ թէ և մերս Ջարմայր եկն յօգնութիւն տրովադացւոց, որպէս գրէ Խորենացին Ա. 19 և 32. խրատու 'ի Հոմերոսէ բերելով։ Այսպէս ուրեմն յայտ է թէ հայաստան աշխարհ, ուստի եկեալ էր Ջարմայր, հեռի գոլով 'ի Տրովադայ, մարթ էր 'ի Հոմերոսէ 'ի հեռաստան աշխարհէ եկեալ դնել. և Աքեանայեան կոչել զայն չէր ինչ օտար, այլ մանաւանդ յարմար նախնի ժամանակացն Հոմերոսի։ Եւ այսպէս զմեր աշխարհ պարտ է իմանալ անդէն առ Հոմերոսի, թէ և այլուստ ինչ ինչ գտցին բանք մթինք. քանզի և առ այլս բազումս 'ի նախնեաց գտանեմք մթին իմն օրինակաւ պատմեալ՝ առ անծանօթ լինելոյ նոցա աշխարհիս մերոյ։ Ջատացեալն մեր հաստատէ և բան Երեմիայ մարգարէի՝ ուրանօր ծա. 27. ասէ. «Պատուէր տուք յինէն այրարատեան թագաւորութեան և Ասքանազեան գնդին»։ Ուր խօսի թագաւորութեան յիշատակին երկոքին, որպէս նաև առ մեր մատենագիրս է տեսանել ուրեք ուրեք։ Այս բան Երեմիայ բռնադատէ զԿալմէտ յարարատեան աշխարհի կամ 'ի հայաստան յուլել զԱսքանազն անուն, այլ անտեղեակ գոլով թէ անունս այս համօրէն ազգին է անփական, վայրապար ձգնի զՇակաշէն անուն մերձեցուցանել յանունս Ասքանազ։

Յաստացելոցս ցայս վայր զհետ գայ, թէ բնակութիւն Ասքանազայ եղև միշտ 'ի Հայս; յորմէ անուն նորա մնաց 'ի վերայ ազգիս և աշխարհիս. զի զայս ցուցանեն նախագրեալ բանք Յոհաննու կաթողիկոսի։ Իսկ եթէ նաև ըզսարմատացիս համարեսցուք սերեալս 'ի նմին Ասքանազէ ըստ նմին մատենագրի, պարտ է որդւոց կամ յաւէտ թոռանց նորա ընծայել զհատուածիլն 'ի հայաստանեայց, և ածել զաղթականս մինչև 'ի Սարմատիա։

## ԹՈՐԳՈՄ

Ի՝ Երրորդ որդի Գամիրայ, կոչեցեալ 'ի Յոհաննու կաթողիկոսէ Մեծն Թորգոմ, որոյ անունն առաւել 'ի գործ ածի 'ի վերայ ազգիս քան զԱսքանազն անուն. յարտաքնոց Եւսեբիոս, Թէոդորետոս, և սուրբն Իսիդորոս իսպալացի, զԹորգոմ ճանաչեն հայր հայաստանեայց. իսկ Յովսեպոս և Հերոնիմոս՝ հայր փռիւգացւոց. զոր Պօշար պաշտ-

պանէ։ Մեկնութիւն արաբացւոց դաշխարհն Թորգոմա-ցւոց իմանայ վասն մասին ինչ Վրաց. բազումք յարդեաց իմանան վասն Թուրքօմանաց որ 'ի Թաթարս և 'ի Սկիւ-թիա. և զբան Եզեկիելի ԻԷ. 14. իմանան վասն Նոցա. զոր և Գօշար մեկնելով զԹորգոմացիս յայն բան Եզեկիե-լի Համարի լինել կապադովկացիս, իբր զի ձիք և էշք նո-րա յիշատակեալք յԵզեկիելէ՝ էին բազումք։ Նոյն ինքն Գօշար երբեմն զԹորգոմ Համարի լեալ ժողովուրդս ինչ Գաղղիոյ, որք Թրագամ կոչէին աստ. և ըստ Ստրաբոնի ԺԲ. որքա զԹրոգմոս ունելով իւրեանց առաջնորդ՝ խա-ղացին եկին բնակել 'ի սահմանս Պոնտոսի և Կապադով-կիոյ. բայց այս է ասէ Կալմէտ ծն. Ժ. 3. "Հեռի յանուանէս Թոգորմ [1], Հեռի և 'ի ժամանակաց Մովսէսի. և չէ մարթ-ցուցանել ոչ միայն զողջոյն իսկ զազգ կապադովկացւոց՝ այլև ոչ զմասն ինչ նորա կոչեցեալ անուամբ իւիք՝ որ մեր-ձեսցի առ անուանս Թոգորմ,,։

Այս ամ՟ յառաջ գայ 'ի սակաւ ծանօթութէ պատմութե ազգիս մերոյ, որ յայտնի ծանուցանէ զԹորգոմ լինել Հայր մերոյն Հայկայ. և ըստ յանուն Հայկայ՝ նոյնպէս և յանուն Թորգոմայ սովորութե եղև կոչել ազգիս. վասն որոյ և այն բան Եզեկիելի նշանագրել կամի ոչ զկապադովկացիս՝ այլ զազգ մեր և զաշխարհ, որոյ երիվարք ազնիւ են և բա-զումք. զոր և արտաքին մատենագիրք յիշատակեն, որպէս յառաջ բերաք 'ի գլուխն Բերոց 'ի խօսելն զձիոց։ Բայց պարտ է ընդունել թէ նաև Թիւրքմէն կոչեցեալ ազգն, որք և այժմ գտանին 'ի Հայաստան՝ սերեալ են 'ի Թորգո-մայ [2]. զայս ցուցանէ և անունն, և ընդհանուր աւան-դութիւն որ կայ 'ի նոսա, լինել եղբօրորդիս ընդ Հայս 'ի նա-խահաւուց անտի սերեալ։ Եւ այսպէս պարտ է ասել թէ սերունդն Թորգոմայ է 'ի Հայաստան. որում և յարմարի նաև բան Եզեկիելի ԼԸ. 6. ուր "Զտունն Թորգոմայ 'ի ծագաց հիւսիսոյ,, ասէ գալ, յոր կողմն անկանի աշ-խարհս Հայաստան. և 'ի Հայաստանեայց անտի սերեալ և սփռեալ իցէ նաև 'ի Հեռաստանեայս, ուր է աշխարհն

1 Աստուածաշունչն լատինացւոց այսպէս գրի անունս Թոգորմ։

2 Կալմէտ ծննդ. Ժ. 3. այսպէս ինչ գրէ առ այս. Զթուրքօմանիս կամ զԹուրքստանն բազումք մեկնո-ղագիրք 'ի մեծ Թաթարս դնեն. "բայց անորոշ է. ասէ, զի ոմանք ասիցեն թէ Թուրքօմանիքն չէ անդ. այլ 'ի մեծ Հայս պարտ է խնդրել,,։ Անգղիացի մատենագիրք ընդհանուր պատմութե Հատոր Ա. գլ. 2. յօդ. 6. յետ բե-րելոյ զկարծիս պատմողաց եւրոպա-ցւոց, յառաջ բերեն և ընդունին զոր ինչ աւանդէ պատմութիւն ազգիս զՀայ-աստանեայս լինել ծնունդ և ազգ Թորգոմայ։

Թուրքումանաց և Թուրքաց. ուստի վերստին ելեալ ընդ-ժամանակս ժամանակս սփռեցան և եկին յայսոսիկ կողմանս Ասիոյ, զորս յիշեն պատմագիրք.

Մինչև ցաստ եդաք զբնակութի սերնդեան երկուց որդւոց Նոյի 'ի Հայաստան՝ որչափ ինչ 'ի գրոց ստուգել մարթացաք. այլ զոր գրեն մեկնիչք և հնագիրք վասն սերելոյ և սփռելոյ երից որդւոցն Նոյի՝ կարծեօք միայն գրեն, զի չունին ինչ յարտաքնոց պատմութիւն հաւաստի վասն այսր. իսկ կարծիք նոցա հիմնեալ է յաւէտ 'ի նմանաձայնութեն անուանց: Այսպիսի անուանք տեղեաց և գաւառաց, որ նմանաձայնութի ինչ ունին առ միմեանս՝ բաւական լինի նոցա առ 'ի համարձակ վճռել և որոշել՝ թէ այս որ յորդւոց և 'ի սերնդոց Նոյի յայս ինչ աշխարհ գնացեալ, և անդ բնակաւորեալ իցէ [1]: Այլ քանզի ըստ սուրբ գրոց 'ի մերում աշխարհի եղև բազմանալն այն և սփռիլ, և զի ունիմք դարձեալ զարտաքին պատմութիւն Մարիբասայ սկսեալ յորդւոց Նոյի համաձայն սուրբ գրոց, առաւել քան զնոցայն ընդունելի ընդէ՞ր չիցէ զոր մեք խօսիմք. զի և ամենք 'ի տեղեաց աշխարհիս մերոյ վկայեն. քանզի առաւել մերձաւորք են անուանց նշանակելոց 'ի սուրբ գիրս՝ քան զոր օտարք յուզեն յօտար աշխարհս: Մի 'ի պատճառացն յորմէ սխալեցան բազումք յեւրոպացւոց 'ի պատմութե ցրուելոյ ազգաց 'ի նախնի ժամանակս անդ՝ այն է, զի զորդիս երից որդւոց Նոյի իսկ և իսկ համարեցան սփռեալ արտաքոյ Հայաստանեայց, իբր անբնակ թողեալ զայն լայնածաւալ աշխարհ և զշրջակայ սահմանս: Այսմ 'ի վերայ հաստեալ և Կալմէտ, ասէ 'ի մեկնութե ծննդ. 'ի սկիզբն Ժ. գլխոյն. “Յայտ է թէ բազում որդիք Յաբեթի և Քամայ բնակեցան յԱսիա. և մարթ է լինել՝ զի նախնի ազգատոհմք Սեմայ, Քամայ և Յաբեթի, որք անդ կային զբնակութի իւրեանց նախ քան զշինութի աշտարակին, ոչ թողին զայս լայնածաւալ սահմանս. այլ յետ այնորիկ միայն 'ի զանազան գաղթականս բաժանեալ սփռեցան յԱփրիկէ և յԵւրոպա՝ ըստ բազմանալոյ ազգատոհմի իւրեանց: Մինչև սփռումն ազգաց որ

1 Յայս մարթ է գտանել և զգիրս Ռուսաստեք Օլշաւսքին՝ մակագրեալ Աստաղի կամ Մանհէյմ. Որ է սատ հաւաստի բնակութե և հայրենիք սերնդոցն Յաբեթի: Որոյ գործոյ ազգաս. Շլէզր, անդ 'ի Շլէզրս գնէ զբնակութիւն նոցա: Այս գիրք յօրինեալ է և շլէզաբերէն հանդերձ լատին թարգմանութեամբ, գովեալ յոյժ յանծանօթից միայն պատմութե մերոյ ազգիս. յորոց մին է և Վիլլէն 'ի բնագրաւորաւոր բառագրանն 'ի բառն Մոսք:

եղև զկնի խառնակութեան Բաբելոնի՝ առ սակաւ սակաւ եղև, և 'ի միջոցի հարուստ ժամանակաց »:

Իսկ վասն բնակութեան Քամայ միւս որդւոյ Նոյի՝ թէ յոր կողմն աշխարհիս Հայոց եղև նորին բնակութիւն յետ ելիցն 'ի տապանէն, չունիմ ասել. զի և չէք ինչ յիշատակութիւն 'ի գիրս, այլ որչափ ինչ ակնարկեն հնութիւնք ազգիս՝ յիշեցաք 'ի վերոյ 'ի խօսելն զդրախտէն:

Եւ այսպէս տեղի բնակութեան առաջին նահապետաց նոյեանն ժամանակին, որչափ ինչ իմանամք 'ի գրոց և յանուանէ տեղեաց, եղև այսպէս: Նոյ և կին իւր բնակեցան յԱյրարատ նահանգի 'ի միջնաշխարհի հայաստանեայց: Իսկ 'ի հարաւոյ արևելից բնակեցաւ Սեմ նախ 'ի Սիմ, ապա 'ի Ջարևանդ: Որսեր, որ ըստ աւանդութեան թուի լինել եղբայր Սեմայ, բնակեցաւ 'ի Պարսկահայս. որ և յանուն նահապետաց կոչեցաւ Հեր և Զարևանդ գաւառ: Ուէա 'ի Կորճայս: Աստղիկ քոյր Սեմայ և Որսերայ բնակեցաւ նախ 'ի Տարօն մերձ առ Սեմ եղբայր իւր, ուր է Աստղկաբերդ տեղին կոչեցեալ յանուն իւր. ապա 'ի փոքր Հայս յԱստղիկ լեառն, և 'ի կողմանս Խուիս գետոյ: Մագոգ բնակեցաւ 'ի հիւսիսակողմն 'ի Գուգարս: Քամ բնակեցաւ յՈւտի գաւառի, որոյ բնակիչք յանուն Քամայ Սևորդիք կոչեցան, որպէս գրեալ եմք: Իսկ 'ի փոքր Հայս՝ Գամեր և Աստղիկ: Ուփիր, որ և Ցուփիր, բնակեցաւ 'ի բարձր Հայս 'ի Սպեր: Թարշիշ 'ի Կիլիկիա: Եւ 'ի տեղեաց աստի սփռեցան առաջ ընդ զանազան աշխարհս: Զքուշն 'ի Քուստի ասեմք բնակեալ, զոր իւր անուամբ ցուցանէ. և աստի սփռեցան բնակիչք 'ի Սկիւթիա, 'ի Քուշանս, 'ի Գութս. զի այլուր ունիմք ցուցանել՝ թէ երբեակ անուանքս այսոքիկ նոյն են, և ելանեն 'ի Քուշ կամ 'ի Գոմերաւէս, յորմէ ելանէ և Մոսոխոս, որ է ըստ մեզ Մեծ Գոմբոս: Եւիլա բնակեցաւ 'ի Խաղտիս, որ նախ յիւր անուն կոչեցաւ զնա Խաւիլ կամ Աւիլ:

## ՑՕԴՈՒԱԾ Գ

Երրորդ բնակութիւն հայաստանեայց յաւուրս Հայկայ և որդւոց նորա ։

ՄԻՆՉԴԵՌ 'ի հայաստան յարարատեան սահմանի բընակեալ կային առհասարակ ամենայն մարդիկ 'ի Ջրհեղեղէն անտի ցայն վայր ընդ կառավարութե̄ Նոյի, յանկարծ ելեալ անտի միահամուռ բազմութե̄ ցրուեցան. յորմէ և զհետ եւս երրորդս այս համաշխարհական փոփոխութի̄ ։ Իսկ թէ առ ի՞նչ ցրուել նոցա, սուրբ գիրք ոչ նշանակեն որոշ ինչ. բայց արտաքոյ գտանեմք ինչ ինչ յիշատակութի̄. զի սուրբն Եպիփան գրէ [1], թէ Նոյ նահապետ նախ քան զցրուիլ նոցա, իբրև հայր և տէր բաժանեալ էր զերկիրն առ երիս որդիս իւր ։ Արդ զբանս Եպիփանու պարտ է իմանալ ոչ վասն համօրէն աշխարհի, որպէս թէ լարաբաժին արարեալ ճշգրտիւ չափ և սահման հաստատեալ իցէ նոցա ընդ ամենայն ծագս երկրի, որպէս իմանան ոմանք, նմին իրի և ընդդիմանան, այլ պարտ է իմանալ բաժանումն ընդհանուր, զերիս կողմանս աշխարհի ցուցանելով առ նոսա գնալ իւրաքանչիւր ընդ մի մի կողմն. և յայն կողմանս հաստատել զբնակութի̄, որպէս զի մի ծագեսցի կագ և կռիւ 'ի մէջ որդւոց նոցա 'ի բազմանալն ։ Այնչափ հաստատութե̄ ասէին ոմանք լինել զայսպիսի բաժանումն Նոյի, մինչև 'ի թիւս հերետիկոսաց դասել, ասէ Փիլաստրիոս, զնոսա՝ որք ոչ ընդունէին. բայց արդիք ուրանան զայս բաժանումն Նոյի՝ սակս ոչ գտանելոյ յայտնի 'ի սուրբ գիրս [2] ։ Տես վասն այսր զբանս Կեդրենոսի առ Կալմէտի. ա̄. 79. ե̄ ։ Եւ վասն Փիլաստրիոսի ասեն սովորեալ բազում ինչ 'ի կարգս հերեսիովլութե̄ դասել, որ ոչ է ։

Բայց զորս յիշատակութի̄ գոյ գտանել և առ նախնի հեթանոսս, որք ըստ իւրեանց մոլորութե̄ դիցաբանելով իմն առասպելեն, թէ երեք դիք եղբարք միմեանց՝ անուանեալք ըստ նոցա Եօվիս (Դիոս), Պղուտոն, և Նեպտունոս, որք

1 Յիշէ զայս և Խորենացին ա. 6։

2 Ի սուրբ գիրս այսչափ ինչ գտանեմք յիշատակեալ, զի Ծննդ. Ժ. 25. գրի. "Եւ Եբերայ ծնան երկու որդիք. անուն միոյն Փաղէկ (բաժանումն), զի յաւուրս նորա բաժանեցաւ երկիր,, ։ Զոր անկ է իմանալ վ̄ն բաժանմանն երկրի 'ի Նոյէ առաջեալ։

են երեք որդիքն Նոյի ըստ սուրբ գրոց, բաժանեցին 'ի մէջ իւրեանց զԹագաւորութիւն աշխարհի [1]: Այս է զոր յառաջ բերէ և Խորենացին ա. 6. 'ի բիւրոսեանն Սիբիլլեայ. « Յառաջ քան զաշտարակն . . . Զրուանն և Տիտանն և Յապետոսթէ լինէին իշխանք երկրի, որ ինձ թուին Սեմ, Քամ և Յաբեթ. և 'ի բաժանել սոցա ասէ զամենայն տիեզերս ընդ իւրեանց իշխանութեամբ »: Զամենայն տիեզերս ասելով իմա, որչափ ինչ ծանօթ էր նոցա:

Սուրբ գիրք այսչափ ինչ յայտ առնեն 'ի գիրս Ծննդոց. ժա. 2-4. թէ բազմութիւն մարդկան յարեւելից [2] ելեն խաղացին, եդեալ 'ի մտի սփռիլ 'ի վերայ երեսաց ամենայն երկրի: Որով ցուցանէ թէ բազմացեալ էին [3] 'ի Հայաստան աշխարհի, և թէ գայր արդէն հրաման ելանել սփռիլ աստ և անդ առ 'ի գտանել տեղի բնակութեան ոչ միայն առ 'ի շինել բնակարան 'ի պէտս անձանց իւրեանց՝ առ որ բաւէր յայնժամ մեծութիւն Հայաստանեայց, այլ նաև գտանել տեղի 'ի սերմանել և 'ի հնձել, բնակական առ 'ի պէտս պարենի իւրաքանչիւր տանց և խաշանց և անդէոց իւրեանց, առ որ հարկ էր արդարև առ մի մի իւրաքանչիւր տեղի լայնածաւալ յաւէտ 'ի բազմանալն իւրեանց. զի յայնժամ պարէնք իւրաքանչիւր մարդոյ և անասնոյ էին միայն յերկրագործութենէ իւրեանց. նմին իրի չէ ինչ անդէպ կարծել թէ քրթմնջիւն անկեալ իցէ 'ի նոսա զիրերաց վասն պարենի: Այսր աղագաւ նախատես լեալ նոցա ապագայ կարիք որ ունէր ծագիլ 'ի ժամանակս առաւել բազմանալոյ իւրեանց՝ յանձն առին բազմութիւն 'ի նոցանէ արտաքս ելանել 'ի բնակարանէ իւրեանց, և երթալ 'ի հեռաստան աշխարհս զի վայելեսցեն 'ի խաղաղութեան: Որպէս և զկնի ժամանակաց տեսանեմք դի-

[1] Որպէս յառաջ բերեն Վլասի 'ի գերահռչակապատմութեան, և Գիւծերին:

[2] Այս բազմութիւն մարդկան 'ի Հայաստանեայց ելին, որում թէ զնմանէ 'ի գետ գայ ասել յԱրեւելից, գրեցաք 'ի վերայ 'ի յօդ. ժ. տես անդ:

[3] Զթուոյ բազմութեան սոցա պէսպէս հաշուեսս կարգեն. Կալմէտ ծնն. ժա. 4. չորեքհարիւր հազար արանց մարթ էր ասել լինել, նոյնչափ և կանանց, 'ի միջոցս 144 ամաց, որ է միջոց ժամանակի ընդ մէջ ջրհեղեղի և աշտարակաշինութեան: Օրինակ բերեալ առ այս զբազմանալ իսրայելացւոց յԵգիպտոս, որք 70 անձինք մտին յԵգիպտոս, և 'ի միջոցս իբր 215 ամաց բազմացան թուով վեցհարիւր հազար արանց միայն զինուորելոց. որոց կենանք համառօտ էր քան զվերոյգրելոց. և պահել զնմանիս գժուարին. գոլով ընդ խստութեամբ գերութեան. յաւէլ 'ի վերայ և զհրամանն Փարաւոնի խափանիչ բազմանալոյ իւրեանց. իսկ 'ի ժամանակս վերոյգրելոց՝ կենանք առաւել երկար. զարմանն ընտանեաց դիւրին, և զերծ 'ի խափանչաց: Այլ ոմանք կարի իմն նուազելով զհաշիւն՝ հազիւ 30 հազար արանց գտնեն:

պետալ Աբրահամու և Ղովտայ, որք եւօրեայ ճանապար-
հաւ հեռացեալ բաժանեցան 'ի միմեանց միայն 'ի պատ-
ճառս բազմութեան անասնոց իւրեանց, և կռուոյ որ 'ի մէջ
հովուաց :

Սոքա 'ի հասանելն յերկիրն Սենաար՝ գտին անդ դաշտ մի՝ ուր խորհեցան կանգնել քաղաք և աշտարակ բարձր երկնաչափ, ասելով. "Արասցուք մեզ անուն յառաջ քան զսփռել 'ի վերայ երեսաց ամենայն երկրի,, : Այս վերջին բան յայտ առնէ զմիտս այսր բազմամբոխ և առաջին գաղթականին աշխարհիս՝ թէ էր սփռիլ ընդ ամենայն երեսս երկրի հեռահետէ 'ի բազմանալ և անդ՝ ուր եկին : Բայց 'ի բարկանալ տեառն Աստուծոյ 'ի վերայ ամբարտաւանութեան խորհրդոց և գործոց նոցա, զմի լեզու նոցա բաժանեալ 'ի բազումս, "Դադարեցին 'ի շինելոյ զքաղաքն և զաշտարակն,,, ասէ փնոցանէ Գիրն : Այնր աղագաւ չկարացեալ նոցա կալ միաբան 'ի միում վայրի՝ սկսան սփռռիլ ընդ ամենայն աշխարհ, զոր սուրբ գիրք Աստուծոյ ընծայեն ասելով. "Եւ սփռեաց զնոսա տէր Աստուած անտի ընդ երեսս ամենայն երկրի,, : Եւ դարձեալ. "Եւ անտի ցրուեաց զնոսա տէր Աստուած ընդ երեսս ամենայն երկրի,, : Յորմէ և իմաստասիրեմք թէ նաև յառաջ քան զշինութիւն աշտարակին՝ կամք էին Աստուծոյ սփռիլ նոցա, զոր 'ի ձեռն բաժանման նոյի ցուցեալ էր :

Նոյնպէս համաձայնին և արտաքնոցն բանք 'ի Պարսից և 'ի քաղդէացւոց մատենից բերեալ 'ի կատարած ա̃. գլոյ Խորենացւոյն՝ որ ասէ. "Քանզի 'ի բաժանել լեզուացն ընդ ամ̃ երկիր, ոչ խառն 'ի խուռն՝ և ոչ անառաջնորդ կամ անգլխաւոր այս լինէր, այլ աստուածային իմն ակնարկութ̃ գլխաւորք և ցեղապետք որոշեալք զիւրաքանչիւր սահմանս ժառանգեցին կարգաւ և զօրութ̃,, : Վկայէ այսմ և հեթանոս պատմագիրն Մարիբաս առ Խոր. ա̃. 10. Նախ զկռիւ աշտարակաշինացն յիշելով. "Անդ մոլեգնեալ այր իւրաքանչիւր, սուր 'ի կող ընկերի իւրոյ ձգելով, ջանային տիրել 'ի վերայ միմեանց,, : Ապա զցըրուումն. "Սա (Հայկ), ասէ, խրոխտացեալ ամբարձ զձեռն ընդդէմ բռնաւորութեան Բելայ, 'ի տարածանիլ ազգի մարդկան ընդ լայնութի̃ ամենայն երկրի, 'ի մէջ բազմակոյտ սկայիցն անհուն խոլաց և ուժաւորաց,, :

Յայնմ ժամանակի եղև և մերոյն Հայկայ որ ընդ նոսա էր, ելանել 'ի Սենաարայ : Բայց Հայկ ոչ կամեցաւ գնալ այլուր, որպէս գնացին այլք ամենեքին, այլ կամե-

ցաւ անդրէն դառնալ 'ի Հայաստան ուստի ելեալն էր, որոյ կրկին պատճառք եղեւին լինել:

Առաջին՝ տհաճութիւն և զեղջ ընդ արարմն՝ զոր միաբանութեամբ գործեցին զայն գործ ամբարշտութեան, յորմէ և ընդ պատուհասիւք անկեալ կրեցին պատիժ նորալուր յԱստուծոյ, պատիժ այնպիսի՝ զոր միշտ կրէր առ ետեղ յանձն իւր և 'ի լեզու իւր. Նորին աղագաւ դառնայր յառաջին տեղին ուր ոչ գոյր այն պատիժ. դառնայր իբր փափագելով իւրեանց տեղւոյ նախնի հարց իւրոց, ուր բնակէին և վայելէին 'ի ժամանակս ոսկի դարուն, կարօտեալ իւրեանց 'ի տեսանել զտեղի նախկին վիճակի անմեղութեան իւրեանց: Եւ այս անտի իսկ յայտ է, զի ընդ հասանելն 'ի Հայաստան՝ զառաջին բնակութեան իւրոյ զտեղին կոչեաց Հարք, զոր մեկնելով պատմագիրն Մարիբաս առ Խորենացւոյն Ա. 10. ասէ. «Այսինքն աստէն բնակեալք՝ ազգի տանն Թորգոմայ»: Սովաւ զանձուկ սրտին յայտ արար, որպէս թէ ասել կամելով, թէ մեք որք այնչափ բաղձայաք դառնալ բնակել 'ի տան հօր մերում Թորգոմայ, եհաս ժամ զի հաստեալ բնակեցաք, միացաք ընդ ազգի տանն Թորգոմայ. վասն որոյ և 'ի յիշատակ հարցն իմոց կոչեմ զայս տեղի Հարք: Դառնայր մանաւանդ նաև 'ի տեսանել զՆոյ նախահայր իւր, որ տակաւին կենդանի էր [1], և չէր գնացեալ ընդ Նոսա. զի թէ անդ լինէր՝ ոչ թողոյր նոցա գործել զայն գործ չարութեան ընդդէմ Աստուծոյ, և այնչափ զայրացուցանել զարարիչն [2]:

Երկրորդ պատճառն առաւել ծանր է. զի իբր ստոյգ իմն երևի՝ թէ 'ի գործ աշտարակաշինութեան խառնեալ գտաւ և գործ և խորհուրդ կռապաշտութեան [3], և յանիմանէ ընկալան զայն պատիժ բաժանման լեզուաց. որոյ աղագաւ

1 Թէ որչափ եկեաց Նոյ յետ շինութեան աշտարակին, գրեցաք 'ի վերոյ 'ի յօդ. Ա. տես անդ:

2 Մեծի չարութեան գործ համարին և եպերեն զայս շինութիւն աշտարակի Փիլոն, Ոսկեբերան և սուրբն Օգոստինոս:

3 Որպէս նաև բան Լուսաւորչին զայս հաստատէ, առ Ագաթանգեղոսի 'ի թղթ. մծբ. «Խորհուրդ առեալ 'ի պաշտօնս նորիմաց խորհրդոց՝ շինել 'ի պաշտօն մեհենից աշտարակ իւրեանց բարձր անհնարին կոթողեցին 'ի գաւառն Սենաար յերկրին արեւելեայց. առդ շինել շինէին 'ի պաշտօն զեց անձանց իւրեանց անուն մեհենաշէն կոչել զեւեաց առ իւրեանց որդիսն թողուլ»: Եւ ամենք որք զխորհուրդ կռապաշտութեան նոցա յուցանել կամին նաև բանիւն սուրբ գրոց ուր ասէ, Արասցուք մեզ անուն: Զի առ Հրեայս բառս անուն՝ առեալ լինի առեն փոխանակ անուան Աստուծոյ. իբր կամելով ասել. Արասցուք մեզ աստուածս, կամ դրօշեալս: Ս. Բոշար 'ի սրբազան աշխարհագրութեան գիրք Ա. գլ. 14. մերժէ զայս մեկնութիւն:

փախեաւ և մեռաւ Հայկ, ասէ Վարդան 'ի գովեստ Լուսաւորչին. Նա զի նոյն իսկ Բէլ կամ Նեբրովթ աստուածացուցանել կամեցաւ զինքն, ըստ որում գրէ և Վարդան 'ի պատմութեան. "Բայց Բէլ հպարտացեալ, ասէ ... հնազանդեցոյց զամենայն իշխանս որպէս աստուծոյ, և ապա արձանկեաց զնորա բաց 'ի Հայկայ ... որ ոչ պաշտեաց զնա աստուած, այլ և շուն զնա կոչեաց"[1]. և ոչ կամեցաւ մնալ ընդ բռնաւորութեամբ Նեբրովթայ։ Իսկ Նեբրովթ գլուխ չարութեան գործոյն և կռապաշտութեան պատճառ առաջէր առ Հայկ դառնալ անդրէն ուր էր ինքն, պատճառ բերեալ և զզբօսումն հայաստանեաց, որ արդարև կարի անյարմար էր խաշնարածական արանց՝ զոր օրինակ էին նախնի նահապետքն։ Բայց դարձեալ ոչինչ անսաց Հայկայ՝ և յանձն առնուլ զընդերկար ճանապարհորդութիւն և զզբօսութիւն երկրին՝ և մահուչափ պատերազմին ընդ Նեբրովթայ՝ ցուցանէ մեծ ինչ պատճառ. որ է, որպէս ասացաք, ոչ կամելն միաբան մնալ ընդ այնոսիկ՝ որոց գործելով զայն գործ ամբարշտութեան ամբարտաւանելին զայնպիսի պատիժ կրեցին, որ և յայտնի մնայր արտաքուստ 'ի լեզուս նոցա. յաւել և զչկամելն խառնիլ 'ի գործ կռապաշտութեան. զորմէ ասացեալ և 'ի գլուխն Կրօնի։

Ի պատմութենէ աստի զհետ գայ, թէ ոչ ամենեքին եկին յառաջին տեղւոջէն արարատեան սահմանաց, ամայի թողլով անդ զշինուածս և զտունս զորս ինքեանք շինեցին, և ուրանօր բնակեցան յետ ջրհեղեղին. այլ քանզի այս ցրուումն էր առ 'ի գտանել տեղի ընդարձակ, մնացին անդէն ոչ սակաւք, որոց վասն մնայր բաւական տեղի նոքեանց և որդւոց իւրեանց։ Այսմ վկայէ պատմութիւն ազգիս, որ 'ի ձեռն Մարիբասայ է ասացեալ առ Խորենացւոյն յասելն վասն Հայկայ Ա. 10. "Երթեալ բնակէ 'ի լեռնոտին միում 'ի դաշտավայրի, յորում սակաւք 'ի մարդկանէ յառաջագոյն ցրուելոցն դադարեալ բնակէին". այսինքն յառաջ քան զցրուեալսն։ Զայս բան Մարիբասայ հաստատէ ապա Խորենացին նաև բանիւ Գողթան երգոյն, որ էր անգիր պատմութիւն ազգիս. վասն որոյ

1 Զայս ցուցանեն և բանք բաղմաց մատենագրաց 'ի պատմելն՝ թէ մնացորդ աշտարակին 'ի Բաբելոն քաղաքի՝ եղև տաճար Բէլայ զոր պաշտէին. ուր հաւանական երևի ասել, թէ այս էր առաջին Բէլն՝ Նեբրովթ յորջորջեալ 'ի սուրբ գիրս. զկնի որոյ առեալ կռապաշտութիւն նաև 'ի յետագայս, և 'ի պաշտօն աստուածոյ նաև մեռեալ Բէլն, յայտնանէ հաւանութեան թէ այս երկրորդ Բէլ էր՝ որ նախ առաջին պաշտեալ սկսաւ։

գրէ. «Այս արդարացուցանէ զանգիր հին տասցեալ զրոյցս»։ Դարձեալ 'ի նոյն գլուխն ասէ. «Յիշի և աստանօր պատմութիւն (Մարիբասայ). հարաւոյ կողմանէ դաշտիս այսորիկ առ Երկայնանստիւ միով լերամբ բնակեալ յառաջագոյն արք սակաւք՝ խնքնակամ հնազանդել դիւցազինն։ Արդարացուցանէ և այս փաստացեալ զրոյցս անգիրս»։ Եւ 'ի գլ. ժդ. վասն Արմենակայ որդւոյն Հայկայ, որ խաղաց 'ի բնիկն Այրարատ՝ ասէ. «Բայց սքանչելի ինձ ասէ պատմագիրն (Մարիբաս), թէ 'ի յոլով տեղիս գտանի բնակեալ 'ի մարդկանէ յերկրիս մերում ցան և ցիր սակաւք յառաջ քան զգալուստ բնկին մերոյ նախնւոյն Հայկայ»։

Իսկ այսպէս եթէ 'ի տեղիս տեղիս յորս կոխեցին ոտք նախնի նահապետաց մերոց՝ գտանի բնակիչք անդր մնացեալք՝ որք չէին գնացեալ 'ի Սենաար, յայտ է թէ գտանէին նաև յայլ տեղիս՝ յորս ոչ գնացին և ոչ տեսին նահապետք մեր, վն որոյ և ոչ գրեցան 'ի պատմութեան Մարիբասայ։ Իւրաքանչիւր խումբքս այսոքիկ սակաւք էին, այլ քանզի 'ի բազում տեղիս գտանէին, զամենեսին միանգամայն առեալ՝ լինէին բազումք. մինչև սակս աղջոյն տոհմի նախարարութեան Սլկունեաց պատմէին նախնիք լինել 'ի նոցունց, այսինքն որք ոչ էին ցրուեալ և ոչ գնացեալ 'ի Սենաար. զայս յիշատակէ Խորենացին Ա. Ց. սակաւուք առնելով. «Այլ մնացեալք և զգաժնեայ Սլաքն անուանեալ այր, զոր ոչ կարեմ հաւաստեաւ ասել, 'ի Հայկա՞յ եթէ յառաջագունից քան զնա եղելոց յաշխարհին (Հայոց էր), զոր հին զրոյցքն պատմեն լինել»։ Հին զրոյցս կոչէ աստանօր, որպէս և այլուր, զերգսն Գողթան, ուստի բազում ինչ 'ի վկայութիւն առնէ։

Առաջին տեղի բնակութեան մերոյն Հայկայ եղև Հարք տեղին 'ի Տուրուբերան նահանգի[1]։ Արմենակ որդի նորա բնակեցաւ յԱյրարատ նահանգի 'ի դաշտի Արագած լերին. իսկ Արմայիս որդին Արմենակայ բնակեցաւ յԱրմաւիր։ Եւ այսպէս տեսանես 'ի սոսա սէր իմն բնակելոյ 'ի շրջակայ սահմանս լերինն Արարատեան՝ իբրև յառաջին բնակարան նախնւոյն իւրեանց Նոյի։

Օթիւ անձանց որովք Հայկ 'ի Սենաարայ եկն 'ի Հայաստան, Մարիբաս առ Խորենացւոյն Ա. 10. այսչափ ինչ

1 Տես վասն այսր 'ի գլուխն Ա. ուր յստակագոյն համօրէն աշխարհիս հայխօսեցաք յաղագս Արարատ կոչելոյ ստորանեայց։

*դնէ. Հայկ եկն, ասէ, “Համնդերձ որդւովք իւրովք և դըս-տերօք, և որդւոց որդւովք, արամբք զօրաւորօք, թուով իբրև երեքհարիւր, և այլովք ընդոծնօք, և եկօք յարե-ցելովք 'ի նա„: Իսկ որդիք Հայկայ և Արամենակայ թէ զիարդ և ուր սկսան ծաւալել 'ի Հայաստան, ունիմք ձա-ռել 'ի գլուխն Պատմութեան. տես անդ:*



որպէս յիշեցաք 'ի վերոյ, վաղվաղակի նուազեցաւ առաջնոյս այս բազմամարդութիւն հայաստանեայց։ Իսկ յետ դառնալոյ մերոյն Հայկայ անդրէն 'ի հայաստան, թէ երբ սկիզբն եառ բազմամարդութիւն աշխարհիս մերոյ, Խորենացին Ա. 12. զծննդաբանութիւն ազգիս հասուցեալ մինչև 'ի Հարմայ նահապետ մեր, յետ այնորիկ ասէ բազմանալ ազգիս, այսպէս գրելով. "Այս Հայկ որդի Թորգոմայ, որդւոյ Թիրասայ, որդւոյ Գամերայ, որդւոյ Յաբեթի, նախնի հայաստանեայց. և այս ազգք նորա, և ծնունդք, և աշխարհ բնակութեանն։ Եւ յայսմհետէ (այսինքն զկնի Հարմայ հօր Արամայ) սկսան ասէ (Մարիբաս) բազմանալ և լնուլ զերկիր" սերնդովք ամաց և ժողովրդոց իւրեանց։

Բայց որ նախ բազմամարդացոյց զաշխարհս մեր յայլուստ ածելով ժողովուրդս, եղև Արամ նահապետ որդի Հարմայ. զորմէ գրէ Խորենացին Ա. 14. Թէ յետ խաղալոյ յարեւմուտս և 'ի կողմն ինչ վանելոյ զՊայապիս Քաղեայ, որ բռնացեալ ունէր զմիջոց երկուց ծովուց, որ է ասել փոքր Ասիա, "Ի տեղեացն այնոցիկ, ասէ, մինչև ցբուն իւր սահմանն՝ զբազում անբնակ երկիր ելից բնակչօք, որք երկրորդ և երրորդ անուանեցան Հայք, այլ և չորրորդ"։ Սովաւ կամի նշանակել զփոքր Հայս, նաև զայլ ամենայն երկիրս զորս առեալ էր ընդ իւրև՝ հալածելով զՊայապիս։ Նաև զմեծէն Տիգրանայ պատմէ Ա. 30. բնակեցուցեալ զմարդիկ 'ի շրջակայս Մասիս լերին. բայց ոչ առ բազմամարդացուցանելոյ զհայաստան, զի զգերեացն անդէն բանքն՝ զորս կալաւ 'ի պատերազմին Աժդահակայ. որոյ նման եղև և յաւուրս Բ. Տիգրանայ, զորս առնիմք յիշատակել սորա։

Այլ այսպիսի փոյթ բազմամարդացուցանելոյ զաշխարհս մեր յաւուրս Արշակունեաց գտանեմք. յորս առաջին եղև Վաղարշակ, որ որպէս յամենայնի զշինութիւն և զբարեկարգութիւն աշխարհիս անօրինէր, նոյնպէս և յայսմ մասին ձեռներէց եղև. ըստ գրելոյ Խորենացւոյն Բ. 8. "Հրամանս տայ . . . և յայլ բազում տեղիս շինել քաղաքս բազմաբնակս, և շէնս գիւղօրս և մարդախիտս"։ Երկրորդն եղև Արտաշէս Ա. որ բազմօք գերեալոց գտաւ յայտնի. յորը սակս ուրոյն գլուխ կարգեալ Խորենացին Բ. 56. դնէ խորագիր. "Թէ որպէս բազմամարդացոյց Արտաշէս զաշխարհս"։ Այլա 'ի բնագրին ասէ. "Հրամայէ զսահմանս գիւղից և ագարակաց որոշել. քանզի բազմամարդացոյց զաշխարհս Հայոց՝ եկամուտ բազում ածելով յազգս

(մեր), և բնակեցուցանելով 'ի Լերինս և 'ի Հովիտս և 'ի դաշտս,,։ Ոչ ուրուք 'ի Թագաւորաց մերոց այսպիսի ինչ շինութիւն արարեալ երբէք ընթեռնումք ։

Յաւուրս Բագրատունեաց միայն վասն ժամանակի ա. Աշոտոյ և ա. Սմբատայ յաջորդի նորա այսչափ ինչ գտանեմք առ Ասողկայ Գ. 3. "Յաւուրս սորա (ա. Սմբատայ) և իշխանութեան հօր իւրոյ (ա. Աշոտոյ) էր շինութիւն և խաղաղութիւն աշխարհիս Հայոց, ըստ մարգարէութեանն հանգչիլ իւրաքանչիւր ուրուք ընդ որթով իւրով և ընդ թզենեաւ. և այսպէս ագարակաց աւանացեալ, և աւանաց քաղաքացեալ բազմամարդութեամբ և ընչեղութեամբ, մինչև հովուաց և անդէորդաց մետաքսեայս զգենուլ պատմուճան,,։ Այլ զայս պարտ է իմանալ վասն վերջին ամաց ա. Աշոտոյ, և առաջին ամաց ա. Սմբատայ. զի սկսեալ 'ի վերջին ամաց ա. Սմբատայ թէ զինչ աղէտք թշուառութեանց յաճախեցին 'ի Հայս, և քանի կոտորած մարդկան, հերոդհետէ ունիս տեսանել առօրև ։

Նաև 'ի յառաջ բերելոցս տեղի՝ այլ ինչ երևելի յիշատակութիւն ոչ գտանեմք 'ի գիրս վասն բազմամարդութեան աշխարհիս. այլ քանզի ընդ ժամանակս ժամանակս եկք օտարք տակաւք կամ բաղումք, գերեալք կամ ինքնակամք, 'ի հեռաւոր աշխարհաց և յայլոց ազգաց հաստատեալ եկին բնակեցան 'ի Հայաստան, որով և բազմամարդութեան աշխարհիս պատճառք եղեն, վասն որոյ յայս յօդուած մի ըստ միոջէ յիշատակեսցուք ըստ կարգի ժամանակագրութեան Գաղթականս կոչելով զգաղթեալս նոցին. մանաւանդ զի բազումք 'ի նոցունց եկելոց գաղթականաց ամբարձան 'ի գահ նախարարութեան, և սերընդեամբ բարգաւաճեալ բազմացեալ շքեղացուցին զաշխարհ մեր ։

Այլ նախ քան զսկիզբն արարեալ պատմել զնոցանէ՝ յառաջ բերցուք աստանօր զբանս երկուց յոյն պատմագրաց, որք յիշեն ինչ ինչ վասն գաղթականաց, բայց շփոթ և ըստ օրինակի առասպելեացն Յունաց. զի Հերոդոտոս գիրք Է. գլ. 73. գրէ՝ թէ 'ի զօրս Քսերքսեսի "Հայք ըստ օրինակի Փռիւգացւոց էին զինեալք, գոլով արդարև նոցին գաղթականք,,։ Այլ այդ ամենևին օտար է 'ի ճշմարտութենէ. զի ոչ եթէ Հայք էին գաղթականք Փռիւգացւոց, այլ ըստ սուրբ գրոց 'ի Հայաստանեայց գաղթեալ են ամենեքին. ուստի և Փռիւգացիք [1] ։ Սոփոկլէս 'ի կարգս յունական ա-

[1] Այսպիսի վկայութիւն և 'ի գիրս Սեբէոսեայց [illegible] ընտան, ուր

ռաքելեաց գրեացես և զոր ասէ Սոկրատէս ժա. 531. 'ի դիմաց այլոց բերելով. «Պատմէն զոմանս Թրակացիս մակ-անուանեալս Սարաբարա, որ է գլխատող, 'ի վերայ Հայ-աստանեայց բնակեալ, մերձ 'ի Կուրանիս և 'ի Մարս... Աստի յայտնանէ կարծեն զՀայս և զՄարս եւեթ իրօք ազ-գակցեալս Թեսաղացւոց՝ որ 'ի Ցասոնէ և 'ի Մեդեայ սերեալ»։ Սմին նման և այլուր ժէ. 750. յիշէ Սոկրատէս, աւանդեն ասելով արգիւացւոց ոմանց եկեալ զՏարսն շի-նել, այլոց առ Որոնդիս գետով բնակել, և այլոց ոմանց գաղթական գնալ 'ի Կորտիէս, որ է Կորդիք։

Ա. Գաղթականք օտարազգիք եկեալք 'ի Հայս։

## Ի ՔԱՆԱՆԱՑԻՈՑ

Յօտարազգի գաղթականաց եկելոց հնագոյն զատանեն եկեալքն 'ի քանանացւոց յաւուրս Յեսուայ. զոր Յոհաննէս կաթողիկոս դնէ յաւուրս Սուր անուն նահապետին մերոյ ասելով. «Սուր (նահապետ). առ սովաւ Յեսու ժառանգ-եցուցանէր Իսրայելի զերկիրն աւետեաց,»։ Զորս մարթ էր կոչել և Գաղթականս փիւնիկեցւոց. զի որպէս ցուցանէ Պօշար 'ի չորրորդ գիրս. գլ. 34. թղթ. 300. փիւնիկեցիք սե-րեալ են 'ի քանանացւոց. որոց անուանք խառն 'ի գործ ածին 'ի սուրբ գիրս։ Յորժամ Յեսու գրաւեաց զերկիրն քանանացւոց՝ փիւնիկեցիք մեկնեցան 'ի ծովակողմն, ուր արդէն կառուցեալ կայր Սիդոն քաղաք. իսկ ոմանք 'ի նոցանէ անցին յԱփրիկէ, որպէս հին արձանագրութիւնն որ 'ի Տանճէր, վկայէ, նախ առաջին բերեալ 'ի մերոյ Խորենացւոյն ա. 19. ապա 'ի Պրոկոպիոսէ 'ի բ. գիրս Վանդալաց։ Իսկ պատուականագոյնն 'ի նոսա Քանանիդաս անուն էանց 'ի մեր Հայաստան. ուր և սերեալ բազմա-ցաւ, մինչև ուրոյն ցեղ կացուցեալ ամբարձաւ ապա 'ի նախարարութի Գնթունիք անուանեալ, զորմէ ասացեալ 'ի գլուխն Կառավարութե, ուր խօսելոց եմք զնախարարու-թեանց։

Նաւու տապանն Նոյի, եդեալ կայ 'ի Փախուդիա, զորմէ գրեցաք 'ի ստորա-գրութեն Մասիս լերին։

## ՅԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՑ

Երկրորդ կարեմք դասել ըստ հնութեան զեկեալսն յԱսորեստանեայց, թէպէտ և սակաւք ոմանք՝ այլ ազգայ-ազունք հանդերձ արամբք իւրեանց Ադրամելէք և Սա-նասար, զորոց գրեն սուրբ գիրք [1]: Եւ Խորենացին Ա. 23. յիշատակելով ասէ. «Ութսուն ամօք աւելի կամ պա-կաս յառաջ քան զթագաւորութիւն Նաբուգոդոնոսորայ էր և Սենեքերիմ կացեալ ազգայ ասորեստանեաց, որ զԵ-րուսաղէմ պաշարեաց առ Եզեկիայիւ Հրէից առաջնոր-դաւ. զոր սպանեալ որդւոց նորա Ադրամելէայ և Սանասա-րայ՝ եկեալ փախստականք առ մեզ: Յորոց զմինն յարեւմտից հարաւոյ աշխարհիս մերոյ մերձ 'ի սահմանս նորին աս-րեստանի բնակեցուցանէ Սկայորդին [2] մեր քաջ նախնին՝ այսինքն զՍանասար. և 'ի սմանէ սերեալ լցին զՍիմն ա-սացեալ լեառն». որք կոչեցան Սասունք ժողովուրդ հզօր. զորոց ասէ 'ի մեծ Հայս 69. իսկ 'ի միւս որդւոյ սերեցան Արծրունիք և Գնունիք, զորոց ասացեալ 'ի նախարարութիւն նոցա 'ի գլուխն Կառավարութէ.

## Ի ՀՐԷԻՑ

Յետ ասորեստանեայց Շամբաթ անուն ոմն եկն գաղթա-կան 'ի Հրէից յաւուրս երկրորդ թագաւորին մերոյ որ կոչէր Հրաչեայ, որպէս գրէ Խորենացին Ա. 22. «Առ սովա-մանն կեցեալ զՆաբուգոդոնոսոր ազգայ բաբելացւոց որ գերեաց զՀրեայս. և սորա ասեն զմի 'ի գլխաւորաց Եբ-րայեցւոցն գերելոց խնդրեալ 'ի Նաբուգոդոնոսորայ Շամ-բաթ անուն՝ ածեալ բնակեցոյց մեծաւ պատուով. և 'ի սմանէ ասէ պատմագիրն (Մարիբաս) լինել զազգն Բագրա-տունի»: Թէ յինչ աստիճան պատուոյ ամբարձաւ սերունդ այսր գաղթականին Հրէից՝ ասէ 'ի նախարարութիւն Բագրա-տունեաց: Բայց հետզհետէ նաև այլ եկք 'ի Հրէից գե-րելոց յաւելեալ՝ բազմագոյն գտան Հրեայք քան զամե-նայն եկեալսն արտաքուստ 'ի Հայս: Զի նախ միջինն Տիգ-րանն, ասէ Խորենացին Բ. 14. 'ի դիմելն 'ի Պաղեստին, «ածեալ գերի բազում և 'ի Հրէիցն նաև շուրջ զՊտղոմայ-

1 Դ. Թագ. ԺԹ. 37: Եսայ. ԼԷ. 38: պետու մեր. զի յառաջորդ նորա Պարոյր՝
2 Սկայորդին եղև վերջինն 'ի նահա- եղև առաջին թագաւոր Հայոց:

իւր քաղաքաւ „ ։ Զայսոսիկ առեալ գերիսն բերեալ յԱյրարատ նահանգ բնակեցոյց, որպէս գրէ 'ի գլ. 16. “ Իսկ Թագաւորն Հայոց Տիգրան զգերութիւն Հրէիցն նըս-տուցեալ յԱրմաւիր, և 'ի յաւանին Վարդգեսի „. որ է Վաղարշապատ քաղաք յԱյրարատ, որպէս բացատրէ կրկնելով 'ի գլ. 65 ։ Բնակեալ գերիքն յԱրմաւիր՝ զկնի փոխադրեալ եղեն 'ի քաղաքն Երուանդայ, ապա յԱր-տաշատ, որպէս պատմէ նա ինքն Բ. 49. յաւելուն վասն Բ. Արտաշէսի. “ Ցարուցանէ 'ի քաղաքէն Երուանդայ զգե-րութիւն Հրէիցն՝ որ փոխեալ էին անդ յԱրմաւիրայ, և նստուցանէ զնոսա յԱրտաշատ „ ։ Յաւել ածել և զայլ գերիս Բարզափրան ռշտունի սպարապետ նորին Տիգրա-նայ 'ի մարիսացւոց քաղաքէն. “ Եւ Տիգրան, ասէ Խո-րենացին Բ. 19. հրամանաւ այս Բարզափրանայ նստուցանել զգերին Հրէից որ 'ի մարիսացւոց՝ 'ի քաղաքն Շամիրա-մայ „. այն է 'ի Վան քաղաք ։

Բնակեալ Հրեայքն 'ի Վան՝ մնացին յիւրեանց հրէութեան, բայց բնակեալքն 'ի Վաղարշապատ և յԱրտաշատ՝ միան-գամայն ընդ Հայս ընկալան զքրիստոնէութիւն, յորմէ ե-րևի խառնեալ նոցա ազգականութիւն ընդ Հայս. այլ և Շապուհ Պարսից արքայ յաւուրս Բ. Արշակայ մերոյ ար-քայի զՀրեայսն խաղացոյց յերկիրն Պարսից. “ Եհաս հրա-ման Շապհոյ, ասէ Խորենացին Գ. 35. զի ... զՀրեայսն խաղացուցին 'ի գերութիւն, և զայն Հրեայսն որ նոյն հրէ-ութեան օրինօքն կային 'ի Վանն Տոսպայ՝ զոր ածեալ էր Բարզափրանայ ռշտունւոյ յաւուրս Տիգրանայ, զորս բնա-կեցոյց Շապուհ յԱսպահան ։ Գերեցին և զայն Հրեայսն որք յԱրտաշատ և 'ի Վաղարշապատ, զորս ածեալ էր նոյն Տիգրանայ արքայի՝ որ յաւուրս սրբոյն Գրիգորի և Տրդ-տայ հաւատացեալ էին 'ի Քրիստոս „ ։ Զայս յիշելով նաև Բուզանդ Գ. 55. դնէ և զԹիւ գերելոցն յԱրտա-շատայ ասելով. “ Խաղացուցին 'ի յԱրտաշատ 'ի քաղաքէ ինն հազար տուն երդ Հրեայս, զոր ածեալն էր գերի Տիգ-րանայ արքայի արշակունւոյ յերկրէն պաղեստինացւոց „ ։ Ընդ նմին յիշէ և զայլ Հրեայս յայլևայլ քաղաքս բնա-կեալս զոր նոյն ինքն Տիգրան էր գերեալ. զորս ոչ յիշէ Խորենացին ։ Ցերուանդաշատայ տարան ասէ Պարսիկք երդս երեսուն հազար Հրեայ. 'ի Զարեհաւանայ՝ որ 'ի Բագրևանդ, ութ հազար երդ Հրեայ, 'ի Զարիշատայ՝ որ յԱղիոյհովտի, չորեքտասան հազար երդ Հրեայ. 'ի Վա-նայ տասն հազար երդ Հրեայ ։ Ընդ ամենայն 71 հազար

տուն Հրեայ ։ Բայց Թումա արծրունի զգերեալսն 'ի Վանայ յայնժամ հինգ հազար Հրեայ ասէ լինել ; և ութևտասն հազար քրիստոնեայ ։

Ընդ գաղթականս Հրէից պարտ է թուել և զտոհմն նախարարութե Ամատունեաց . զի թէպէտ սոքա 'ի կողմանց Արեաց աշխարհին եկին 'ի Հայս յաւուրս Բ. Արտաշէսի, սակայն 'ի Հրէից եկեալ էին անդր . զորմէ լուեալ կարես իմանալ ուրանօր ունիմք խօսել զնախարարութէ նոցա ։

## Ի ՄԱՐԱՑ

Գաւառս սոցա եղև յաւուրս մեծին Տիգրանայ, զորմէ գրէ Խորենացին ա. 30. "Իսկ զԱնոյշ զառաջին կինն Աժդահակայ, և զբազումս 'ի սերմանէ Աժդահակայ աղջկունս, հանդերձ պատանեկօք և այլ բազում գերեօք, որչափ թէ աւելի քան զբիւր մի, բնակեցուցանէ յարևելեայ ուստ մեծի լերինն (իմա զՄասիս լեառն), մինչև 'ի սահմանս Գողթանն, որ են Տամբատ, Ոսկիողայ, Դաժգոյնք, և որ այլք առ եզերբ գետոյն (Երասխայ) դաստակերտք, յորոց մինն է Վրանջունիք, մինչև հանդէպ ամրոցին Նախջաւանու . և զերիս աւանսն զԽրամ և զՋուղայ և զԽոշակունիս . իսկ 'ի միւս կողմանէ գետոյն զբոլոր դաշտն, որոյ գլուխն Աժդանական, մինչև ցնոյն ինքն ամուրն Նախճաւանու ։ Բայց զնախատացեալ կինն Անոյշ բնակեցուցանէ որդւովքն իւրովք յանդորրութե սպառուածի փլածի մեծի լերինն (Մասեաց) . . . իսկ պաշտօնեայս տայ Անուշայ 'ի նոյն Մարաց որ առ ստամբ լերինն բնակեցան "։ Այս ամենայն տեղիք յորս բնակեցանն՝ այնչափ սեփականեալ գտաւ սոցա՝ զի Ղևոնդ 'ի պատմելն 'ի գլ. Է. զառաջին արշաւանս արաբացւոց 'ի Հայս յայտնի աւանս յեօթներորդ դարուն, յանուն Մարաց կոչէ . "Մեծ մասն, ասէ, զօրուն (արաբացւոց) հասեալ ասպատակէին յաշխարհս Հայոց ընդ կողմն Պարսից . և առնուին 'ի գերութե զաւանս Մարաց, և զգաւառն Գողթան, և զդաստակերտս Նախջաւանու . . . անցուցանէին ընդ գետն Երասխ ընդ հունն Ջուղայու "։ Նոյնպէս և 'ի գլուխն Դ. "Գունդ մի ասպատակութ յորդւոցն Իսմայելի յարձակեալ 'ի վերայ աշխարհիս Հայոց, որք էին որդիք յանցանաց և զաւակք անօրէնութե, գործէին զանօրէնութիւն յաւանս Մարաց 'ի Խրամ, 'ի Ջուղայ և 'ի Խոշակունիս "։ Այս քանիք յայտ առնեն թէ նաև մինչև 'ի ժամանակս Ղևոն-

դայ յանուն Մարաց կոչէին, թէպէտ և ոչ գոյր անդ ազ 'ի Մարաց. զի որպէս ունիս տեսանել 'ի գլուխն Կառավարութե 'ի Նախարարութե Մուրացան, յաւուրս Ձ. Արտաշէսի կոտորեցաւ այս գաղթականն ։

Ի ՀՆԴԿԱՑ

Յաւուրս Ճ. Վաղարշակայ արքայի եղև գալուստ սոցա ըստ գրելոյ Զենոբայ Թղթ. 35. «Դեմետր և Գիսանէ իշխանք էին Հնդկաց և եղբարք ցեղովք. դաւ կին խորհեալ նոցա Դինասքեայ արքային իւրեանց, զոր իրազեկ եղեալ արքային՝ առաքէ զօր զհետ նոցա, կամ սպանանել կամ յերկրէն հալածական առնել. իսկ նոցա լեալ մազապուր՝ անկան առ Թագաւորն Վաղարշակ. և նա ետ նոցա զերկիրն Տարօնոյ իշխանութե. զոր ինքեանք շինեցին քաղաք, և կոչեցին Վիշապ»: Եւ յետ հնգետասան ամի սպանեալ առէ զնոսա Թագաւորին Վաղարշակայ, բայց զտեղիսն տուեալ որդւոց նոցա Կուառայ, Մեղտեայ և Հոռենայ. որոց երեցունց ևս համանուն աւանս ասէ շինեալ և բազմացեալ, մինչև կոչել Ազգ. որք և յաւուրս Լուսաւորչին բազմութ պատերազմ եդուն ընդ իշխանս Հայոց, ոչ կամելով զքանդումն մեհենից՝ զոր յանուն նախահարց իւրեանց Դեմետրեայ և Գիսանեայ կանգնեալ էին. և որ զարմանալին է՝ մինչև ցայժամ մնացեալ կայր 'ի նոսա սնոտութի Հնդկային. «Այլև յոյժ զարմանալի էր, ասէ անդէն նոյն մատենագիրն, տեսիլ նոցա. քանզի սևք էին և գիսաւորք և զազրատեսակք, զի ցեղով 'ի Հնդկաց էին»: Այնչափ բազմացեալ էին, զի յորժամ որք քրմաց ժողովեցան 'ի պատերազմել ընդ իշխանս Հայոց, միայն Թիւ ժողովեալ արանցս եղև 6946 ըստ Զենոբայ Թղթ 29: Նաև Պարսից ոմանց բնակեցեալ ցուցանէ անդէն այս բան Լուսաւորչին 'ի Ճ. Թուղթ իւր առ Ղեւոնդ 'ի գիրս Զենոբայ. «Զոր Խնամականսն կոչեն տեղւոյն Հնդիկք և Պարսիկք. յոր պանծային յոյժ բնակիչք երկրին»: Բայց յաղագս այսոր գաղթականի ոչ գտանեմք ինչ յիշատակութի ։

Ի ԲՈՒԼՂԱՐԱՑ ԱՍԻՈՑ

Սոքա եկին յաւուրս Ճ. Արշակայ Թագաւորի, որպէս գրէ Խորենացին Բ. 9. «Ի սորա աւուրս ազմուկ մեծ լեալ 'ի գօտիս մեծի լերինն Կաւկասու յաշխարհին Բուլղարայ.

և բազումք 'ի նոցանէ ¹ հաստատեալք եկին յաշխարհս մեր, և բնակեցան ներքոյ Կողայ՝ յարքունանդ և 'ի հացաւէտ տեղւոջ բազում ժամանակս „ ։ Այսելոջն "բազում ժամանակս „, տայ իմանալ թէ զկնի փոխադրեցան այլուր. և քանզի 'ի Է. 6. դրէ զԲուլղարաց 'ի Վանանդ բնակեալ, յայտ է թէ սոքա նախ ներքոյ Կողայ, ապա 'ի բնիկ Վանանդ փոխադրեալ բնակեցան. զի ասէ անդ, թէ այն տեղին՝ "զոր հինքն Անփայտ և վերին Բասեան կոչէին. իսկ յետոյ վասն հաստատելոյ Վղնդուր Բուլկարայ Վնդայ բնակելոյ 'ի տեղւոջ, յանուն նորա անուանեցաւ Վանանդ. և անուանք շինիցն յանուն եղբարց և զաւակաց նորա անուանեալ կոչին մինչև ցայժմ „ ։ Այս գաղթական էանց այսպ 'ի կարգս նախարարութեանց Վանանդացւոց անուանեալ, զորմէ տես անդ. բայց ոչ թողլին զնդարոյն զաւազակասէր բարս իւրեանց. տես 'ի մեծ Հայս 432 ։

## ՅԱԼԱՆԱՑ

Յորժամ յաշխարհին Ալանաց յարեաւ խռովութիւն 'ի բռնաւորէ ումեմնէ, յայնժամ Է. Արտաշէս արքայ առաքեաց անդր զՍմբատ քաջ սպարապետ իւր. որոյ վանեալ զբռնաւորն՝ ասէ Խորենացին Բ. 52. "զերկիր հակառակորդացն աւերէ. զամենայն միահամուռ ածէ գերի սաստիկ յԱրտաշատ, և հրամայեալ Արտաշիսի բնակեցուցանել զնոսա 'ի հարաւոյ յարևելից կուսէ Մասեաց, որ կոչէր Շաւարշական գաւառ, 'ի վերայ պահելով զանիկ անուանն Արտազ. քանզի և աշխարհն ուստի գերեցանն՝ Արտազ կոչի մինչև ցայսօր ժամանակի „ ։ Այսելոջն "գերի սաստիկ „, ծանուցանէ զբազմութիւն նոցա. և թէպէտ Արտազ անուն աշխարհի նոցա մնաց 'ի Հայս, այլ յիշատակութիւն իւրեանց ոչ մնաց բնաւ, ոչ 'ի նախարարս և ոչ 'ի հասարակ ժողովուրդս, զոր օրինակ մնաց միւս հատուածոյն Ալանաց. որք թէպէտ ոչ որպէս զսոսա բազմաթիւք, բայց գոլով մերձաւորք Սաթինկայ տիկնոջ Է. Ար-

¹ Այսպէս գրէ Խորենացին, և ստորև պատմէ զչարչարելն Հրէից որդւոց Բագարատայ սակս չպաշտելոյ զկուռս. բայց Յովհաննէս կաթողիկոս այլազգ գրէ. "Յաւուրս սորա, ասէ, հաստատեալ ոմանք 'ի Հրէից բնակելոց 'ի Բուլկարս որ 'ի ծործորս Կովկասու, եկեալ բնակէին առ 'ի ստորև Կողայ, և երկուք ոմանք 'ի նոցանէ չարչարեալք սակս ոչ պաշտելոյ զկուռս՝ սրով կատարեցան „ ։ Ուր յայտ է թէ զերկուս բանս Խորենացւոյն 'ի մի շփոթելով Հրէայս հաստատեալս ասաց լինել յաշխարհին Բուլկարաց ։

տաշիռի, « Կարգեցան, ասէ Խորենացին Բ. 58. յազգ և 'ի նախարարութիւն աշխարհիս Հայոց, որպէս հարազատք թագուհւոյն մեծի »: Զորոց տես 'ի գլուխն կառավարութեան ուր խօսելոց եմք զնախարարութեանց:

## Ի ԿԱՍԲԵԱՆՑ

Յաւուրս Բ. Արտաշիսի երկիրն Կասբից ապստամբեցաւ 'ի նմանէ. վասն որոյ Արտաշէս զՍմբատ զսպարապետ իւր ամենայն զօրօք առաքեաց 'ի վերայ նոցա. որոյ երթեալ, ասէ Խորենացին Բ. 53. « Զերկիրն Կասբից աւերեալ, առաւել քան զարտազեան գերելն ածէ 'ի Հայս, ընդ որս և զԶարդմանոս անուն թագաւոր նոցին »: Արտազեանն՝ նախայիշատակեալ գերիք Ալանաց են: Զայս ամենայն գերիս Կասբից բնակեցոյց Սմբատ 'ի բերդն Ալէկի որ 'ի Տմորիս կամ 'ի Կորդիք գաւառ Կորճէից. բայց վասն սերնդոց սոցա չիք ինչ ամենևին յիշատակութիւն:

## Ի ԲԱՍՂԱՑ

Զայս 'ի հարևանցի իմն յիշէ Խորենացին Բ. 58. յասելն վասն Առաւեղենից տոհմին. « Ի ժամանակս Խոսրովու հօրն Տրդատայ խնամացեալ ընդ ումեմն քաջի Բաղոյն եկեալ հատուածի ». այսինքն ընդ ումեմն քաջի՝ որ էր 'ի հատուածոյ կամ 'ի գաղթականէ եկելոյ 'ի Բաղաց: Այլ վասն այսր չունիմք այլ ինչ ծանօթութիւն: Մարթ է և վասն միոյ անձին եւեթ իմանալ ասացեալն զհատուածն:

## Ի ՃԵՆԱՑ

Յաւուրս Տրդատայ եկին 'ի Հայս Մամգունն իշխան յաշխարհէն Ճենաց, որոյ սերունդ եղև մի 'ի յերևելի նախարարութեանց հայաստանեայց՝ անուանեալ Մամիկոնեան. զորմէ ունիմք լիով ճառել 'ի գլուխն զնախարարութեանց. տես անդ: Եկին և այլ թագաւորազունք 'ի Ճենաց. սոքա թէպէտ 'ի սկզբան անդ 'ի Վիրս եկին, և կոչեցան Օրպէլեանք, բայց զկնի 'ի Հայս բազմացեալ՝ բնակեցան առաւել 'ի Սիւնիս. զորոց ճոխագոյն ունիս գտանել 'ի բանին որ զնախարարութեանց:

## Ի ՔՐԴԱՑ

Գրէ Վարդան. «Յաւուրս ժամանակաց այսոցիկ (այսինքն իբր 'ի ռլե. և ռխ. 1186 և 1191.) էին փառաւոր իշխանքն Զաքարէ և Իւանէ որդիք Սարգսի, որդւոյ Վահրամայ, որդւոյ Զաքարի, որդւոյ Սարգսի, 'ի Քուրդ ազգէ հատուած եղեալ առ Թագաւորօքն Ձորոգետոյ (Անւոյ) որ 'ի բագրատունեացն ազգէ, հաւատացին 'ի Քրիստոս և պատուեցան։ Եւ տուաւ նոցա տուն բնակութեան Խոշոռնի. և զի արիագոյնք էին՝ յառաջեցին օր ըստ օրէ 'ի բարձ և 'ի պատիւ. և յաւուրս Թամարին (Թագուհւոյն Վրաց) առաւել փառաւորեցան. և ետ նոցա զԼոռէ (որ էր 'ի Տաշիր գաւառն Գուգարաց). և նոքեանք քաջութեամբ իւրեանց թափեցին 'ի Թուրքաց յոլով բերդս և գաւառս»։ Իսկ Կիրակոս հաստատեալ ասէ զնոսա 'ի Բաբէրական խելքն, որպէս գրեալ կայ յօրինակին զոր ունիմք։ Բայց անուանք ազգաբանութեան հարց և հաւուց նոցա յայտ առնեն թէ էին ազգաւ հայկազունք բնակեալք 'ի մէջ Քրդաց։

### Բ. Օտար ժողովուրդք ինչ 'ի Հայաստան, երբ ուր յեղափոխեալք։

Գաղթականք են և ոչքա իբրև զառաջինսն. այլ զի բազմութեամբն զանազանին 'ի նոցունց, քանզի Ազգանուամբ յիշատակին 'ի գիրս, նմին իրի ուրոյն 'ի նոցանէ կարգեմք զնոսա։

## ԳԱԲԱՒՈՆԱՑԻՔ

Յիշէ զնոսա Յոհաննէս կաթողիկոս յաւուրս Տ. Սմբատայ արքայի, բնակեալս ասելով 'ի տեղւոջ ուրեք 'ի Հայաստան, յասելն վասն Աշոտոյ իշխանին Արծրունեաց. «Հասեալ 'ի ձորակ մի զոր Փորակ Նմքա անուանեն, երեկօթս անդ առնէին յագարակի միոջ յորում բնակէին Գաբաւոնացիք»։ Բայց այլուր նաև յԱտրպատական բնակեալ ասէ զնոսա. «Ըստ ապա հրամանն հասեալ առ նա 'ի Յուսփայ ոստիկանէն մեծէ չուել գնալ յԱտրպատական աշխարհ. և զպատրաստեալ Գաբաւոնացւոց կողմանցն այնոցիկ կամ 'ի հնազանդութիւն նոցա համոզել....»։

Յորոց բանից յայտնի է սոցա լինել 'ի Տաճկաց կամ յԱյլ-ազգեաց · և մարթ է սակս աւազակութե և ապստամբութե նոցա նմանութե կոչել զնոսա Գաբաւոնացիս ։ Իսկ այլ ուրեք ընդ զօրս Հայոց յիշէ · զի յորժամ Սմբատ իշխանն սի-սական եւ պատերազմաւ 'ի վերայ Գողթան բանակեալն աւ 'ի գրաւել 'ի ձեռաց նորա զԳողթն՝ " Անդ ապա, ասէ, զօր Գոճառանաց իշխանին Սմբատայ՝ որ 'ի Թիկանց կուսէ կայրին Վասակայ եղբօր նորին . . . 'ի վերայ յարուցեալք դիմաթաւալ զքաջն և զկորովին Վասակ արկանեն · և ինքեանք Թիկունս առ 'ի գնալ դարձուցեալ չուէին 'ի Նախճուան քաղաք ,,։

## ԿԱՅՍԻԿՔ

Նոյն անուամբ յիշատակէ զսոսա Թովմա արծրունի Է. 2. յերկրորդումն զպատմութեն. " Զայսու ժամանակաւ գայ հասանէ Սմբատ Թագաւորն Հայոց 'ի գաւառն Ապահունիս. հարկս պահանջել 'ի գլխոց Կայսիկն կոչեցեալ ազգէ ,,։ Սոքա բազում ուրեք յիշատակին 'ի գիրս նորա իբր այլ ժողովուրդ. որպէս 'ի Դ. 2. " Յայտ եղեալ հասարակեցաւ 'ի վերայ Կայսկին Ապլբարայ . . . և հեծելազօրուն զօրացն Կայսկին . . . զկնի այսորիկ յառաջ խաղացեալ Ահմատ, և որ ընդ նմա կայսկայքնեցն գունդք, երթեալ մտանեն 'ի քաղաքն Դուին ,,։ Զորոց 'ի Դ. 10. յայտնի ծանուցանէ լինել Տաճիկս, դնելով խորագիր գլխոյն. " Վասն ապստամբութե Տաճկացն որ Կայսիկքն կոչին ,,։ Այսպ սորին գրէ վասն ա̅. Սմբատայ Թագաւորին մերոյ յառաջ խաղացեալ " 'ի վերայ Ապահունեաց աշխարհին. զի որդիքն Աբդռահմանի որ Կայսիկքն անուանին՝ ապստամբեալ էին 'ի պետութէ Թագաւորին ,,։ Որք և Կայսիկ անուամբ միայն յիշէ ապա զսոսա. "Գրէ Կայսիկն առ Թագաւորն (ա̅. Սմբատ), խնդրէ զխաղաղութե . . . իսկ Կայսիկքն, և որք ընդ նոսա՝ և զօրքն Պարսից՝ զմարմին 'ի գաղտնիս գրգռէին ,,։ Եւ այսպէս Թէպէտ ազգ. անուամբ յիշեաց՝ այլ յայտ է լինել մականուն երեւելի ցեղի ինչ Տաճկաց, որպէս յայտ է և 'ի բանէ սորին Դ. 1. " Եւ Ապլբար-Կայսիկ Ապահունեաց բռնաւոր ,,։ Առաւել յայտնի կացուցանէ այս բանս Յովհաննու կաթողիկոսի. " Սեւադայ ումն անուն 'ի Կայսիկ տոհմէ՝ որ առեալ էր իւր կին զԱրուսեակ 'ի Բագրատունի տանէ, և 'ի ձեռն այնորիկ զմեծ-մասն երկրիս բռնակալեալ սեպհականաբար իւր տիրէր ,,։

Սեւադայս այս զորմէ խօսի Յովհաննէս կաթողիկոս, էր յաւուրս Հոլ ոստիկանին 'ի սկիզբն իններորդ դարուն ։

### ՈՒԹՄԱՆԻԿՔ

Ազգ. անուամբ յիշէ և զսոսա Թովմա արծրունի յաւելուն 'ի Ե. 3. «Մինչև առցեն զԱմիւկ, և խնդրեսցեն զքէն արեանն ազգին Ոսմանեանց»։ Զորոց զանակումն Գ. 12. դնէ 'ի Բերկրի. «Յայն ժամանակս գայ ոմն Բուտէլ անուն 'ի զօրացն արքունի հրամանաւ Բուհայի հասանել 'ի վերայ Գուրգենի, և ընդ նմա քաղաքացիքն Բերկրոյ որ Ոսմաննիկքն կոչին»։ Նաև յայլ ծովեզերեայս Բզնունեաց ծովուն բնակէին, յորս սակս Գ. 17. կոչէ զսոսա ծովեզրեցիս. և յայտնի նշանագրէ լինել Տաճիկս. «Բայց Աշոտ (արծրունի) գնացեալ տալ պատերազմ ընդ ծովեզրեցիսն որ Ոսմաննիկքն կոչին, որք ամրանային յԱմիւկ անկասկածելի քարանձաւին. վասն զի․․'ի Վասպուրական գաւառացն համար թուեալ է գաւառն այն. զի 100 ամօք յառաջ հանեալ էր բռնակալութեան Տաճկաց 'ի Վասպուրական պետութէ»։

### ՋՈՒՐԱՐԻԿ

Նոյնպէս Ազգ. անուամբ յիշէ զսոսա Թովմա արծրունի Ե. 8. ասելով. «Տեսեալ (Գագիկ արքայ արծրունի) մերձ 'ի դրունս տաճարատանի ամրոց մի յիշխանատանն Աղձնեաց 'ի գետոյն Կասոմ կոչեցեալ՝ լինելով անփականաբար Ջուրարիկն կոչեցեալ ազգին՝ ապաւաւորու . . . ջնջէ զազգն»։

### ՇԱՏԱՏԻԿՔ

Յիշատակեալ առ Վարդանայ ասելով. «Ի շլէ թուին (1088) Պուզան ամիրայն հրամանաւ Մելիքշահին առ զԳանձակ 'ի Փատլեանցն՝ որ Շատատիկքն կոչէին»։ Փատլուն էին ամիրայք որք նստէին 'ի Գանձակ, 'ի Դուին և յԱնի. իսկ Շատատիկ մարթ է լինել մականուն ցեղի նոցա, կամ միոյն 'ի նոցանէ ։

### ՀԱՄՏՈՒՆ

Յիշատակեալ առ Ասողկայ Գ. 16. ասելով թէ յաւուրս Ա. Սմբատայ արքայի՝ յամիրայէն Բաղտատայ որ

տեսանել զբազմամարդութիւն քաղաքացն այնոցիկ, զորս յառաջ բերցուք առ տեղեաւս մի առ մի ըստ տանց և ըստ անձանց։

### ՏՈՒՆՔ կամ ԵՐԴՔ

ԶԱՐԵՀԱՒԱՆ քաղաք Բագրեւանդայ. ուստի զօրք Պարսից յաւուրս Բ. Շապհոյ Պարսից արքայի և Բ. Արշակայ մերոյ արքայի «Խաղացուցանէին անտի հինգ հազար երդ Հայ, և ութ հազար երդ Հրեայ», ասէ Բուզանդ 'ի Դ. 55։

ԱՂԱՐՇԱՊԱՏ. «Խաղացուցանէին յայնմ եւս քաղաքէ իննեւտասն երդս հազար»։

ՎԱՆ. «Խաղացուցանէին անտի երդս հինգ հազար Հայ, և ութեւտասն հազար երդս Հրեայս»[1]։

ԶԱՐԻՇԱՏ. «Առնուին և զքաղաքն մեծ Զարիշատ՝ որ էր 'ի գաւառին Աղիովտի, չորեքտասան հազար երդ Հրեայ, և տասն հազար երդ Հայս»։

ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ. «Աւերեցին զմեծ քաղաքն Տիգրանակերտ... քառասուն հազար երդ.. 'ի գերութիւն խաղացուցին». Դ. 24։ Իսկ ընդարձակողն Սամուէլի ութսուն հազար ոգիս ասէ զթիւ սպանելոցն 'ի նմա յորժամ էառ զայն Կաւատ։

ԱՐՏԱՇԱՏ. Զօրք Շապհոյ «գերեցին զամենայն քաղաքն. և խաղացուցին... ինն հազար տուն երդ Հրեայս... և քառասուն երդ Հայ»[2]. Բուզանդ Դ. 55։

ԵՐՈՒԱՆԴԱՇԱՏ. «Առնուին և զմեծ քաղաքն զԵրուանդաշատ, և խաղացուցանէին անտի երդս քսան հազար Հայ, և երդս երեսուն հազար Հրեայ»։

### ՈԳԻՔ

ԴՈՒԻՆ. Յորժամ յաւուրս Աբուպէքրի յաջորդին Մահմէտի արշաւեցին 'ի նմա արաբացիք՝ թափուր գտին զԴուին յարանց պատերազմողաց, զի ելեալ էին ընդ հետ իշխանին Հայոց Թէոդորոսի Ռշտունւոյ. վասն որոյ անաշխատ առեալ զքաղաքն՝ կոտորեցին և գերեցին. յորս միայն թիւ գերելոցն կանանց և մանկանց եհաս՝ եղև 35 հազար. զայսմանէ յիշատակէ Ղևոնդ 'ի Բ. «Զգաստեալ

[1] Թովմա Արծրունի դնէ հինգ հազար Հրեայ, ութեւտասն հազար քրիստոնեայ։

[2] Այս քաղաք Արտաշատ և առ պատմագիրս հանդիպեցուցող յիշատակի էր քաղաք յոյժ բազմամարդ։

արմն 'ի նմա կոտորեցին, և զկանայս և զմանկտին վարեցին 'ի գերութիւն ոգիս երեսուն և հինգ հազար »[1]: Սամուէլ 'ի թուին ոխէ. այսպէս պատմէ զայս դիպուած. « Առ յաւուրս Կոստանդնի որդւոյ Հերակլեայ առաւ Դուին 'ի Տաճկաց ասէ պատմագիրն. և սպանին յաւուր Ցայտնու-թեանն 'ի սուրբ վկայարանի սրբոյն Սարգսի երկոտասան հազար. և արտաքոյ կոտորելոցն ծածկեցաւ սուրբ սեղանն և աւազանն. և զայլն գերեցին աւելի քան զերեսուն և հինգ հազար »: Ուր զթիւ կոտորելոցն պարտ է իմանալ միայն վասն նոցա որք էին յեկեղեցւոջ 'ի ներքս և արտա-քոյ 'ի գաւթին: Նոյնն 'ի թուին ոժա (1162) գրէ վասն Գորգեայ թագաւորին Վրաց. « Առ զԴուին քաղաք. և վաթսուն հազար գերեաց »: Ցերկրաշարժութեան անդ քա-ղաքիս եղելոյ յերրորդ ամի Ա. Սմբատայ արքայի, զԴուին կոչէին Տորդոնիոր, և զթիւ սպանելոցն միայն 'ի շարժմանէն՝ ասեն լինել առաւել քան զեօթանասուն հազարաց:

ԱԿՈՄԻ. Լաստիվերտցի 'ի գլ. ԺԶ. դնէ 'ի սմա ոգիս երեսուն հազար:

ԱՐԾՆ. Մատթէոս դնէ 'ի սմա երկոտասան բիւր, որ առնէ 120 հազար. Կեդրենոս դնէ 140 հազար. իսկ մի օրինակ Մատթէի 'ի թիւն ՃԾ, դնէ բիւրս հնգետասան, որ առնէ 150 հազար:

ԱՆԻ. Ցետ ընդարձակելոյ զայս քաղաք Բ. Սմբատայ արքայի մերձ յելս տասներորդ դարուն՝ յոյժ առաւելաւ բազմամարդութիւն սորա քան զամենայն քաղաքաց հայաս-տանեայց. զի յախմշեալ էր առ բազմանալոյ ասպատակա-ւոր թշնամեաց՝ ժողովուրդք յամենայն կողմանց գաւա-ռացն յԱնի դիմէին, և 'ի նմա հաւաքէին իբր յապա-հովագոյն քաղաք. զոր և յիշէ Լաստիվերտցի 'ի գլ. ԺԷ. ասելով. « Ցորոց հինէ մարդաբնակ տեղիքն փախուցեալ 'ի քաղաքն Անի ժողովեցան »: Մինչև ըստ ասելոյ Մատ-թէոսի, « Կարծեալ զօրացն բազմաց՝ եթէ մեծ մասն աշ-խարհիս Հայոց (անդ) իցէ »: Իսկ թուի զանցանել յայն-ժամ մարդաշատութիւն նորա քան զմի միլիոն, 'ի մեր ածեալ զբազմութիւն թուոյ եկեղեցեաց նորա, զմեծապարած ա-ւերակս նորա որ կայ մինչև ցայժմ, որպէս լսեմք յական-նատես Ճանապարհորդաց, և զբազմաթիւ բնակիչս նորա զցրուեալսն 'ի զանազան կողմանս զորս ստորև ունիմք յի-

1 Վարդան զթիւ գերելոցն դնէ 35 հազար. իսկ վասն սպանելոցն ոչ գոյր թիւ ասէ:

շատանկել ։ Զբազմամարդութիւն Անւոյ ցուցանէ և այն՝ զի Յոհաննէս Թագաւոր 'ի մետասաներորդ դարուն միայն 'ի քաղաքէն եհան յանկարծ 40 հազար հետեւակ, և 20 հազար հեծեալ ։

Նոյնպէս բազմամարդ քաղաքք էին և Գանձակ յԱրցախ նահանգի, Լոռի 'ի Տաշիր գաւառ Գուգարաց և Մանազկերտ 'ի Հարք գաւառի, զոր լի բազմութեամբ բնակչաց ասէ Լաստիվերտցի ։ Երիզա 'ի բարձր Հայս, ուր յետ մեռանելոյ 32 հազար անձանց յերկրաշարժութենէն յամին 1458 ։ զկնի 24 ամաց Թիւ մեռելոցն միայն՝ եղեն 30 հազար ոգիք ։ Բաղաց Թագաւորութեան էր իշխանութիւն նոյն փոքրիկ, տարածեալ միայն 'ի Սիւնիս և յԱրցախ ։ այլ ըստ գրելոյ Ստեփաննոսի Օրբելեանն կա, "Ունէր ընդ ձեռամբ բերդս քաղաքս և երիս ։ և անուանիքն 'ի նոցանէ երկոտասան, և վանորայս քսան և ութ և գեօղս հազար չորս հարիւր և մայրաքաղաք զկապանն „ ։ Սասուն էր գաւառ նոյն Աղձնեաց, այլ Թոռնիկ իշխան նորա 'ի տասներորդ դարուն եհան միայն 'ի Սասնոյ լեռանն հազար հետեւակ, և վեց հազար հեծեալ ընդ Մամթէոսի ։ Այսորիկ են յիշատակութիւնք առ 'ի նախնեաց մերոց աւանդեալք, որք ցուցանեն 'ի հարեւանցի զբազմամարդութիւն մեծին Հայոց ։ Իսկ 'ի փոքր Հայս յիշատակին Մելտենէ և Կոմանա իբր քաղաքք բազմամարդք ։

## ՅՕԴՈՒԱԾ Բ

Սակաւամարդանալ և նուազիլ բնակչաց աշխարհիս ։

---

### ԱՌԱՋԻՆ ՊԱՏՃԱՌ ՆՈՒԱԶՄԱՆ ԲՆԱԿՉԱՑ

Գաղթականք 'ի հայաստանեայց երկրէ արտաքս ։

ԲԱՆԶԻ առաջին պատճառ նուազելոյ բնակչաց է տարաշխարհիկ լինելն ժողովրդեան երկրին 'ի զանազան աշխարհս, վասն որոյ նախ գրեսցուք զգաղթականաց աշխարհիս, որոց զինչ և իցէ պատճառաւ թողեալ զհայաստան, և գաղթեալ յօտար աշխարհ, անդ կալան զբնա-

կութիւն իւրեանց, սակաւացուցեալ զբազմամարդութիւն Հայաստանեայց, և բազմացուցեալ զնուազուն օտար աշխարհաց։ Այլ այս քանզի ընդ ժամանակս ժամանակս եղև, առ որոշակի 'ի միտ առնուլ՝ բաժանեսցուք 'ի քառեակ յընդհանուր որոշմունս այսպէս։

Ա. Հին գաղթականք յաւուրս մերոց Նահապետաց։

Բ. Հին գաղթականք յաւուրս տէրութեան Արշակունեաց և Բագրատունեաց։

Գ. Նոր գաղթականք 'ի նուաղիլ և 'ի բառնիլ տէրութեան մերոյն 'ի Հայաստանեայց։

Դ. Նոր գաղթականք յետ վերջին առման Անւոյ քաղաքին 'ի Չարմաղանայ, և յետ բառնալոյ տէրուէ Ռուբինեանց 'ի Կիլիկիոյ։

## Ա. Հին գաղթականք յաւուրս մերոց Նահապետաց։

Ի գրելոցս 'ի գլուխն Բնակչաց՝ յայտնի եղև սկիզբն ամ̃ ազգաց լինել 'ի Հայաստան, անդ բազմանալ և անտի սփռռիլ ընդ ամ̃ կողմանս աշխարհի յաւուրս Փաղեկայ և յաւուրս աշտարակաշինութեան, զորս յիշեցաք յայն գլուխ։ Բայց ոչ վերջացաւ անդէն, այլ նաև յետ բնակելոյ և բազմանալոյ սերնդոցն Հայկայ 'ի Հայաստան, դարձեալ ելեալ 'ի Հայաստանեայց ընդ ժամանակս ժամանակս գնացին բնակել յօտար աշխարհ, յաւէտ ընդ հիւսիսակողմն 'ի մերձակայս. զորոց զյիշատակութիս մինչ գտանեմք ուրեք ուրեք 'ի գիրս նախնի մատենագրաց Յունաց և Հռոմայեցւոց թէպէտ և 'ի հարևանցի, զի ոչ էր բանն զաշխարհէ և զազգէ իւրեանց։ Արդ յիշատակեալս 'ի նոցանէ ուղղակի կամ անուղղակի, որպէս և յիշատակեալս 'ի մերոց, կամ եղև մեզ աստանօր յառաջ բերել, և յընդ աղօտ գրելոց նոցին՝ զիսկական ճշմարտութին 'ի վեր հանել որչափ մինչ հնար է 'ի հնագրութիս այնչափ վաղեմի ժամանակին. կարգեալ զնոսա 'ի թիւս գաղթականաց մերոյ աշխարհին, որոց անցեալ 'ի օտար աշխարհ յաւուրս մերոց Նահապետաց սակաւացուցին զմեր բազմամարդութիւն, և բազմացուցին զօտարին զսակաւութիւն։

## ԱՂՈՒԱՆՔ

Բնակիչք աշխարհին Աղուանից որ առ օտար ազգս Ալբանիա կոչի, էին յորդւոց Սիսակայ, որդւոյ Գեղա-

մայ նահապետին, յաւուրս Աբրահամու նահապետին եբրայեցւոց. զի Սիսակ ելեալ բնակեաց զաշխարհն. որ կոչեցաւ Սիւնիք, որպէս գրէ Խորենացին ա. 12. բայց գուն-դ ինչ 'ի սերնդոց Սիսակայ անցեալ յայնկոյս Կուր գետոյ՝ կալաւ զբնակութիւն 'ի մեծի դաշտի՝ որ զկնի յանուն նոցա կոչեցաւ Դաշտ Աղուանից. այս է զոր ասէ Խորենացին Բ. 8. "Գաւառ սիւսական որ ժառանգեաց զԴաշտն Աղուանից և զլեռնակողմն նորին": Զորոյ զաշխարհն ստորագրէ Խորենացին յաշխարհագրութեան՝ ձգեալ ընդ արևելս 'ի Կասպից ծովէ մինչև 'ի Կուր գետ, ուր լինի սահմանակից մեծին Հայոց. իսկ ընդ հիւսիսակողմն մինչև 'ի Սարմատիա առ Կովկասաւ. որով լինի այլ աշխարհ 'ի մերոյս. որպէս և մեք ունիմք ստորագրել այլուր: Եւ այսպէս գաղթական Աղուանից է հաւաստի համեալ 'ի գրոց մերոց, և է մի 'ի հին և 'ի մեծագոյն գաղթականաց աշխարհիս Հայոց, և յերևելի հայկազունս առհմէն՝ զոր օրինակ էր Սիսակ. ուր և բազմացեալ ուրոյն թագաւորութիւն կացուցին: Բայց զկնի նորա Աղուանք եկին անդրէն յաշխարհս մեր գրաւելով զնահանգս ինչ մեծին Հայոց որ յայնկոյս Կուր և Երասխ գետոց. որպէս ունիս տեսանել 'ի պատմութիւնս զոր հետզհետէ ունիմք յառաջ բերել: Յերևելի գաղթականէ աստի Աղուանից 'ի վերջին ժամանակս ել մեծ ևս գաղթական նոյնպէս. Աղուան յորջորջեալ. այս այն ժողովուրդ է՝ զոր Լենկթեմուրն տարեալ տարաւ. և բնակեցոյց 'ի սահմանին՝ որ 'ի մէջ Պարսից և Հնդկաց. որպէս և վկայեն պատմագիրք վարուց Լենկթեմուրայ, և պատմութիւն Աղուանից տպեալ տաճկերէն 'ի Կոստանդնուպօլիս. և կանգնեցին անդ նոր թագաւորութիւն ահեղ և հարուստ:

## ԽԱՂՏԻՔ կամ ԱՌՄԵՆՕՔԱԼԻՎՔ

Սահմանակցութիւն և բնութիւն մերոց ընդ Խաղտիս, որ է մի 'ի գաւառաց աշխարհին Եգերայ կամ Կողքիսոյ, ցուցանէ լինել անդէն գաղթական ինչ մերոց հայկազանց. զայս հաստատէ և Առմէնոքալիվք անուանն զոր տան նմա նախնի մատենագիրք օտար ազգաց. զոր օրինակ Քսենոփոն ծաղկեալն իբր 360 ամօք նախ քան զՔրիստոս՝ յաւուրս նահապետաց մերոց, և Պլինիոս ծաղկեալն յառաջին դարուն. զի թէ ոչ գտանէր անդ բազմութիւն յազգէս Հայոց՝ ոչ կոչէին յայս անուն, որ ծանուցանէ խառն բր-

նակութեան երկոցունց ։ Եւ զի այնպէս յիշեն՝ որպէս թէ 'ի վաղ ժամանակաց այսպէս էր անուանեալ ։ Նմին իրի թուի ինձ 'ի վաղեմի ժամանակաց անտի բնակեցեալ անդանօր այսր հատուածի Հայոց, այնր աղագաւ կարգեցաք յաւուրս նահապետաց մերոց ։

## ԱԼԱՆՔ

Յովսեփոս մեծն, որդի Կորիոնի գիրք Է. գլ. 96. գրէ. "Եւ 'ի ժողովրդենէ .. լերանց Արարատեայ մին եղև Ալանք անուանեալ"։ Որով բանիւ կամի ասել թէ Ալանք են եղեն կամ եկեն 'ի ժողովրդենէ՝ որ նախ բնակեալ կային յերկիրն Արարատայ. որ է ասել՝ եկեն յերկրէն Հայաստանեայց ։ Հետևեալ բանք նորա ցուցանեն զանեղին՝ ուր յետ եկանելոյ նոցա յԱրարատայ՝ եկեն և բնակեցան. "Սոքա, ասէ, յամենայն կողմանց փակեալ կային 'ի թիկանց լերանց. զի փակեալ էր զնոսա Աղէքսանդր Մակեդոնացի արքայն մեծ՝ երկաթի փականօք և ամրականադղեկաւ 'ի մուտս անդ լերանց՝ որք շուրջ պատեալ կան զսահմանօք նոցա"։ Գաղթեալ նոցա յԱյրարատայ յայտնի երևի լինել 'ի սկզբանն անդ. իսկ փակելն զնոսա դղեկաւ՝ որ է դղեակն Դարբանդայ, եղև զկնի 'ի մեծէն Աղէքսանդրէ ։ Բայց Գօշար[1] այլազգ իմանայ, ոչ թէ ասել. Արարատեան լերինք ձգին 'ի կովկասեան դրանց 'ի սահմանս Հայաստանեայց և Վրաց մինչև ցԱլանս, զորս Յովսեպոս բնիկ, ուստի առեալ են ասէ այս բանք, վկայէ լինել սկիւթացիս, բնակեալս առ Տանայիս գետով և Մէոտիս ծովակաւ ։ Սկիւթացիս անուանել զնոսա չէ ինչ. որովհետև զամենայն զհիւսիսակողմանս և զկովկասայինս կոչէին Սկիւթացիս. բայց և վասն նորա իսկ սկիւթացւոց զատանեալք առ նախնիս յիշատակութիւն թէ 'ի Հայաստանեայց եկին անդր, որպէս ունիս տեսանել առաջի ։

## ԳԱՂԹԱԿԱՆՔ ՅԱՓՐԻԿԷ

Կ. Սալուստիոս 'ի գիրս պատերազմին Յուգուրթայ գտանի այսպիսի ինչ յիշատակութիւն. զի 'ի խօսելն զՀերակլեայ, որ էր յաւուրս նահապետաց մերոց և զատաւորացն Իսրայէլի, ասէ. "Զօրք նորա (Հերակլեայ), ժա-

1 Ի գիրսն անուանեալ փաշէկ. գիրք ա. գլ. 3. Թղթահամար 16 ։

ղովեալք 'ի զանազան ազգաց, 'ի կործանել զօրավարին իւրեանց (Հերակլեայ), և 'ի խնդրել բազմաց 'ի նոցանէ զօրուամբ ածել զիշխանութի, 'ի սուղ ինչ ժամանակի ցրուեցան ։ Ի նոցանէ Մարք, Պարսիկք և Հայք, յԱփրիկէ ելեալ նաւուք գրաւեցին զայն տեղիս (Ափրիկոյ), որք մերձ են 'ի ծովն մեր „ ։ Յիշէ ապա ստորև թէ լիբեացիք յաւելան առ Մարս և առ Հայս, յաղթեալք 'ի հարկէ 'ի քաջութէ Մարաց և Հայոց ։ Յայսմ պատմութե հնոյ ժամանակին՝ որ առ Յոխս անուանի՝ պատմութի առասպելեալ ժամանակի, գտանեմ հետս ինչ ստոյգ պատմութե ․ այսինքն զգաղթիլ կամ զտարաշխարհիկ լինել 'ի կողմանս Ափրիկոյ հատուածոց ինչ ժողովրդեան Հայոց ․ նա զի յայտնի է և բնութե ազգին, յօժարեալ 'ի տարաշխարհիկն լինել բնակութե առ օտար ազգս ։

## ՍԿԻՒԹԱՑԻՔ

Դիոդորոս [1] 'ի խօսելն սորոյն զսկիւթացւոց՝ ասէ․ "Սաքա 'ի նախնումն զանձուկ ունէին զաշխարհ, այլ առ սակաւ սակաւ զօրութ և քաջութ զօրացեալք, զսահմանս իւրեանց հարուստ տարածութբ ընդարձակեալ, յառաւել ճոխութ իշխանութե և 'ի փառս ամբարձին զազգ իւրեանց։ Ի սկզբան անդ առ Երասխ գետով [2] բնակեալ կային յոյժ նուաղունք թուով և անարգք սակս անպայազատութեն ․ ապա մին 'ի նախնի թագաւորաց այր պատերազմական և քաջ յաղթայական իւր՝ զօրուամբ ածեալ զլեռնավայրսն որ առ Կովկասաւ, և զդաշտավայրսն որ առ Ովկիանոսիւ և որ առ Մէոտիս ծովակաւ, և զմնացեալսն մինչև ցՏանայիս գետ՝ յաւել յիւր աշխարհ „ ։ Եւ ապա պատմէ թէ այս ազգ աճեաց յոյժ, առ որս եղեն թագաւորք հռչակաւորք, յորոց ծագեցան Սակք, Մասքութք և Արիմասպք, և այլք բազումք այլևայլ անուամբք ։ Ի բանից աստի յայտ է թէ նախնիք սկիւթացւոց էին 'ի նոցանէ՝ որք բնակէին առ Երասխ գետով հայաստան աշխարհի ․ ապա գաղթեալ անտի 'ի լեռնավայրսն Կովկասու, և տիրապետեալ ընդարձակեցին զսահմանս իւրեանց ։

1 Դիոդորոս սիկիլիացի հատոր Բ․ Թղթահամար 155 ․ ըստ տպագրութե Վէսսէլինկայ ։

2 Զայս բան Դիոդորի վասն մերոյն Երասխայ իմանայ նաև Կալմետ 'ի մեկնութ Ծննդոց Բ․ 13 ։ Այլ վրիպակ է 'ի ցուցակի նորին Դիոդորի, ուր Երասխ կամ ըստ նոցա Արաքսիս՝ կոչի գետ սկիւթացւոց ․ զի 'ի Սկիւթիա չէր գետ Երասխ ձայնեալ ։ Եւ զայն խոկ Երասխ որ 'ի Մարգիանա գնի յամանց՝ հերքեալ գտանեն առ 'ի մէնջ 'ի ստորագրութե Երասխայ ։

Համաձայն Դիոդորի նաև Երոդոտոս ¹ վկայեն ընա-կութիւն սկիւթացւոց առ Երասխաւ ասէ լինել. որոց անց-եալ ասէ ընդ գետն Երասխ, 'ի Մասքթաց հալածեալ փախեան 'ի Կիմմերեան աշխարհ։ Ուր Կալմէտ ծնն. Ժ. 13. իմանայ փոխանակ մերոյն Երասխայ, և զզանազան ա-նուանս սկիւթացւոց գտանէ 'ի Հայաստան. յորոց մին է ասէ Քմիթք, 'ի Սոլաքանէ եղեալ առ ստորոտով լերանց Մարաց և Պարսից։ Զայս ասէ առ անծանօթ գոլոյ աշ-խարհագրութեան Հայաստանեայց. զի յԱրձախ նահանգի Հայաստանեայց գտանի ողջոյն գաւառ նովին անուամբ Քոտայք յորջորջեալ զոր ինքն խնդրէ, և առ Երասխ գե-տով ձգեալ. յորմէ յայտ է թէ 'ի նախնումն ստանօր նոցա անձեալ և բազմացեալ՝ զաղթականք աստ եկին և որք անցան յայն կողմանս՝ զորոց գրեն Դիոդորոս և Երոդո-տոս ²։ "Եւ մի ոք երկբայեսցի, ասէ Կալմէտ, թէ Քոտ կամ Քոտայք և Կոթ՝ նոյն անուանք են, ըստ այլևայլ գա-ւառականաց այլազգ հնչեցեալ. զի քաղդէացին զեբրայա-կանն շ՝ հնչէ թ։ Վերադոյն ցուցաք զի ազգն, զոր Սաղմա-նասար ած 'ի Սամարիա, էին յայնցանէ՝ զոր Թագղաթ-փաղասար կամ նոյն ինքն Սաղմանասար 'ի կասպիական ծով-եզերաց ած 'ի գերութեան յաղթեալ Մարաց պատերազմաւ։ Արդ 'ի ծովեզերս անդ ոչ ուրեք գտանեմք բնակեալ կոթս, բայց Սկիւթս միայն, որք ըստ վկայութեան վիպագրաց ան-ներցուն բնակէին 'ի սկզբանէ առ Երասխ գետով. արդ ուրեմն այսքան նմանաձայնութեան անուանցս քաղդայայ ա-նէ նոյնս վնասս գոլ"։ Ծնն. Ժ. 13։ Այլ պարտ է և զայս գիտել, զի նաև բնակեալ տեղին 'ի գաղթականացս աստի Սկիւթիա կոչեցեալ, 'ի միոյ կողմանէ սահմանակից էր Հայաստան աշխարհին. զի գրէ Յուստինոս գիրք Բ. "Սկիւ-թիա ընդ արևելս թեւակոխեալ՝ 'ի թիկանց սահմանի Ասիայի և Փասիս գետով"։ Արդ Փասիս գետ գոլով

1 Գիրք Ա. գլ. 201։ Եւ գիրք Դ. գլուխ 11։

2 Այսպէս առ Երասխաւ լինել նախնի բնակութեան սկիւթացւոց՝ յայտ-նի կացուցանէ լինել առցա հին գաղ-թական հայաստանեայց. այլ բայց յայտնանէ նաև 'ի հին անուանն սկիւ-թացւոց գտանեմք ընչան այսորիկ, զի Պլինիոս Զ. 17. գրէ. "Յայնկոյս են ժողովուրդ սկիւթացւոց՝ զոր Պար-սիկք ընդհանրապէս Սակս անուա-նեն 'ի մերձակայ ազգէն (առեալ-եալ) նախնիք (կոչէին) Արամէի"։ Այս Արամէի է անուն Արարատ, բայց ըստ սովոր գրոց կամ ըստ Հրէից. իսկ Յոյնք և հռոմայեցիք զԱսորիս կոչէին միշտ Սիրի. վասն որոյ թուի ինձ յայս բան Պլինեայ փոխանակ անուանս Արմենի աղաւաղեալ Արամէի. զի և վասն գաղթելոյ սկիւթացւոց յԱրմենիոյ կամ 'ի Հայոց՝ գոյ բաւա-կան նշան. իսկ վասն լինելոյ յԱրա-րատ՝ և ոչ մի։

Ճորոխ, որպէս ցուցաք յառաջ, անցանէր առ Տայոց նահանգաւ աշխարհիս Հայոց ։

## ՇԱԿՔ կամ ՍԱԿՔ

Քանզի բազում գաւառս աշխարհիս մերոյ գտանեմք առ մատենագիրս օտար ազգաց իբրև ուրոյն ազգ ինչ կոչեցեալ, որպէս գրեցաք 'ի խօսելն զանուանէ աշխարհիս, ըստ սմին օրինակի և 'ի գտանելն յօտար աշխարհս զազգ ինչ համանուն մերոց գաւառաց, յոյժ հաւանական համարիմք յաշխարհէն մերմէ հատուած գնացեալ նոցա անդր. մանաւանդ զի գիտեմք հաւաստեաւ յաւուրց անտի առաջնոց ցրուելոյ մարդկան 'ի ժամանակաց անտի Տորգոմայ և Փաղեկայ մինչև յապագայ ժամանակս՝ իբր սեփական իմն լեալ ազգի մերում հատուածս առաքել միշտ աստ և անդ, ոչ սակաւուց ոմանց, որպէս եղև Թիւ եկեղոցն 'ի մեր աշխարհ, այլ բազմութեան ժողովրդեան, և փոխակերպիլ յազգ յայլ՝ յօրոց միջի բընակին։ Զայս եղեալ յիշատակեսցուք յայսմ վայրի զոմանս 'ի նոյն ազգաց կոչեցելոց յանուն մերոց գաւառաց, սկըսեալ 'ի Շակք կամ Սակք ազգէն ։

Սրբողոսոս գիրք Է. գլ. 64. գրէ՝ թէ "Զամենայն սկիւթացիս Պարսիկք՝ Սակս անուանեն„ ։ Զնոյն վկայէ և Պլինիոս Զ. 17. 'ի նախագրեալ բանս իւր. բայց յաւելու ասել, թէ էին ուրոյն ժողովուրդ 'ի նոսա անուանի. "Ցայնկոյս են, ասէ, սկիւթացւոց ժողովուրդ . . . բազմուն ժողովրդեան անհամար . . . յորս հռչակաւորքն (են) Սակք, Մասսագետք (Մազքութք), Տահք„ ։ Վասն այսր Սակք ազգին գրէ Ստրաբոն ժա. 511. աստ և անդ արշաւեալ նաև յերկիրն Հայոց աշխարհին, և յանուն իւրեանց ըղտեղին անուանեալ Սակասին, որ ըստ մեզ է Շակաշէն ։ Հայելով 'ի կազմուն անուանն որ է հայկական՝ իմանամք ոչ յօտար ազգաց այսպէս յորջորջեալ, այլ 'ի բնիկ ազգէն. վասն որոյ և 'ի պատմութեան Ստրաբոնի հաւանականաբար իմաստասիրեմք, 'ի սկզբան անդ Շակք անուն ժողովուրդ հայկական բնակեալ անդ յՈւտի նահանգին մերում, որոց և գլխաւորի անուամբ կոչեցաւ գաւառն Շակաշէն, որ յայտ առնէ անունն. ապա անցմամբ ժամանակաց բազմութիւն 'ի սոցանէ հատուածեալ՝ գաղթական գնացեալ 'ի սահմանս Սկիւթիոյ, և յանուն իւրեանց կոչեցեալ նաև զայն երկիր ։ Այլ մարթ էր նոցա զկնի նաև անդուստ

արշաւել յերկիր մեր, որպէս ունիմք աւանդել զօրինակ սորին և 'ի վերայ Աղուանից, որոց նախ յաշխարհէս Հայոց հատուածեալ անցին 'ի սահմանակից երկիր յայնկոյս Կուր գետոյ. աստ անցմամբ ժամանակաց դարձեալ անցին յայսկոյս Կուր գետոյ, և գրաւեցին զզանազան նահանգս մեր։

ՏԱՀԿՔ կամ ՏԱՕՔ

Երևելի ժողովուրդ սկիւթացւոց, բայց 'ի բազում բաժանեալ, և 'ի բազմաց մատենագրաց յիշատակեալ, 'ի Ստրաբոնէ, 'ի Պլինիոսէ, 'ի Վիրգիլիոսէ, 'ի Կուրտիոսէ և 'ի Ստեփաննոսէ։ Զայս ժողովուրդ գաղթական կոչեմք հատուածեալ 'ի Տայոց. զորմէ տես 'ի Մեծ Հայս 368։

ՈՒՏԻՆՔ

Պլինիոս Զ. 12. դնէ զայս ազգ առ Կասպից ծովու՝ 'ի վերոյ քան զծովեզերս Աղուանից. իսկ 'ի վեր քան զՈւտինս՝ դնէ զՍարմատացիս և զՈւդիոսս։ Արդ մերձաւորութիւն անուանս Ուտինք՝ ցուցանէ լեալ գաղթական ինչ յՈւտի նահանգէ մերմէ անդր գաղթեալ։

ԳՈԳ և ՄԱԳՈԳ

Սոքա 'ի սկիւթացւոց ազգս համարին, որք յարաբացւոց կոչին Եէճիւճ և Մէճիւճ. այլ զելանելն սոցա 'ի հայաստանեայց՝ նոյն իսկ անուամբ յայտ առնէ. զի ըստ Պօշարայ Գօգ է նոյն որ 'ի Յոյն և 'ի հռոմայեցի մատենագրաց կոչեցաւ ասէ Կօկարէնէ գաւառ հայաստանեայց, այս է Գուգարք. յորը սակս տես զոր ինչ գրեցաք 'ի գլուխն բնակչաց վասն բնակութեան Յաբեթի և սերնդոց նորա։

ՍԱՒՐՕՄԱՏՔ

Պլինիոս Զ. 12. նոյն անուն համարի ընդ անուանս Սարմատաց, զոր "Այլք Սարմատաք (կոչեն ասէ) Յոյնք Սաւրօմատք"։ Գլխաւոր տեղի սոցա ասի լինել 'ի կողմանս Տանայիս գետոյ 'ի կողմն Պոնտոս ծովու, որպէս գրէ Սկիլաքս. "Յետ Տանայիս գետոյ սկսանի Ասիա, և առաջին ազգ նորա 'ի Պոնտոս՝ է ազգ Սաւրօմատաց"։ Բայց ընդդաձն սոցա յայլուստ յիշէ Երոդոտոս գիրք Դ. գլ. 110. և

յորս զկնի՝ ասելով, թէ Սաւրոմատք 'ի Սկիւթիա անցեալք ընդ Ամազոնս խառնեալ բազմանան. այլ Դիոդորոս [1] նաև զտեղին որոշէ. զի յետ գրելոյ զսկիւթացւոց, զոր 'ի վերոյ եդաք, ասէ՝ թէ թագաւորք սկիւթացւոց զանազան գաղթականս ածին յազգաց՝ զորս պատերազմաւ ըմբռնեալս ածին, բայց յաւէտ զերկուս, զմին յասորեստանեայց, "Իսկ զմիւսն 'ի Մարաց ածեալ բնակեցուցեալ առ Տանայիս գետով, որոյ ժողովուրդք Սաւրոմատք անուանին, որք յետ բազում ամաց բազմացեալ և զօրացեալ բարգաւաճեալ՝ զմեծ մասն Սկիւթիոյ ապականեցին, և որոց յաղթեցինն՝ զամենեսին զնոսա բնաջինջ արարեալ գրեթէ առ հասարակ անշէն ամայի թողին": Սոյնպէս 'ի Մարաց ածանցեալ դնէ և Սոլինոս [2] յասելն. "Ցանկայս քան զՍաւրոմատս որք Միհրդատայ ապաւէն եղեն, և որոց ծագումն 'ի Մարաց եղև":

Յառաջնումն իսկ ասացեալ է մեր՝ թէ Նախնիք բազում ուրեք Մարս կոչեն զկողմանս ինչ Հայաստանեայց. իսկ 'ի բանս յիշատակեալ վկայութեցս առաւել յայտնի երևի Մարք կոչել զՀայաստան, զի արդէն այլուստ գիտեմք բազմութիւն 'ի Հայաստանեայց երբեմն երբեմն անցեալ 'ի կողմանս Կովկասու 'ի Սկիւթիա. և զի զմերձաւոր անտանն այսր ժողովրդեան Սաւրոմատաց գտանեմք 'ի Հայաստան, որք են ժողովուրդք Սեաւորդաց, որք նշանակեալ է մեր 'ի մեծ Հայս 335. նաև յիններորդ գլուխն 'ի Ճառին որ վասն Դրախտի։ Նա զի և Պլինիոս Զ. 5. զտեղի սոցա ասէ լինել 'ի կողմանս Կովկասու. "Սարմատացւոց ժողովուրդք (են ասէ) 'ի գլուխս Կովկասու. յետ որոյ (են) Սաւրոմատք": Զորոց Հարտուինն 'ի վերլուծութ. գրէ ընդ հիւսիսային մասն Վրաց դրաւեալ, զորս և Ամմիանոս [3] ուղղութ. որոշէ, ասէ, "յայլոց Սաւրոմատաց՝ որք յանկայս քան զՏանայիս ձգին 'ի լայնութ.": [4] Ի մերոց Յոհաննէս կաթողիկոս զՍաւրամատս 'ի Րիփատայ սերեալ համարի ասելով. "Որդիք Թիրասայ՝ Ասքանազ յորմէ Սարմատք, և Րիփատ՝ յորմէ Սաւրամատք": Զի զՐիփատ համարի նա որդի Թիրասայ, որդւոյ Յաբեթի. թէպէտ և ըստ սուրբ գրոց Րիփատ էր որդի Գամերայ, որդւոյ Յաբեթի [5]։

1 Դիոդորոս սիկիլիացի գիրք Բ. հատուած ա. Թղթահամար 155. ըստ տպագրութեան Վեսսելինկայ։
2 Սոլինոս գլ. ԺԵ. Թղթ. 35։
3 Ամմիանոս գիրք ԻԲ. Թղթ. 215։
4 Գրէ ինչ ինչ զՍաւրոմատացն նաև Կալմէտ 'ի մեկնութ. Ծննդոց Ժ. 3։
5 ԶՍաւրոմատս Սարմատն է. 305. գտանէ 'ի կարգս այնց ազգաց՝ որք արշաւեցին 'ի սահմանս տկար ժողովրդոց. և այնպէս տեղւոջէ 'ի տեղի փոխեցին։

### Բ. Հին Գաղթականք յաւուրս տէրութեան Արշակունեաց և Բագրատունեաց:

Ի գաղթականս յայսոսիկ ունիմք յիշատակել ոչ միայն զնոսա՝ որք կամաւ իւրեանց յինչ և իցէ պատճառանէ շարժեալ, 'ի բաց մեկնեալ գնացին արտաքոյ հայաստանեայց, այլ նաև զորս թշնամիք 'ի գերութեան վարեալ տարան յաշխարհն իւրեանց, որոց թիւ յոյժ առաւելու քան զնոսին:

### Ի ՊԱՐՍՍ

Զսկզբնաւորութիւն այսորիկ դասանեմք լեալ յաւուրս Արտաշրի Պարսից արքայի. զորմէ գրէ Ագաթանգեղոս թղթ. Ժ. թէ յետ սպանանելոյ 'ի ձեռն Անակայ զմեծն Խոսրով թագաւոր մեր, արշաւեալ Արտաշրի 'ի Հայս "զայլ մարդիկ երկրին (Հայոց) խաղացոյց, և զաշխարհն յինքն գրաւեաց": Զորս յայտ է թէ 'ի պարսկաստան խաղացոյց: Բայց յաւուրս Բ. Շապհոյ Պարսից արքայի անհամար եղեն գերեալքն 'ի Պարսս, զորոց զյիշատակութիւն գտանեմք առ Բուզանդայ որ Դ. 24. գրէ վասն զօրաց Ներսէ. "Զառանց թուոյ զմատաղ մանկտւոյն զայն 'ի գերութեան վարէին": Եւ 'ի 55. "Ընդ ամենայն երկիր (Հայոց աշխարհիս) ասպատակ սփռեալ՝ զամենայն այր 'ի չափ հասեալ կոտորէին, զկանայս և զորդիս 'ի գերութիւն վարէին": Իսկ յորժամ և ինքն Շապուհ եկն, ասէ 'ի Դ. 58. յերկիրն Հայոց, և ամենայն զօրք իւր ընդ նմա, "Հասեալ ասպատակէին յերկիրն Հայոց, և առնուին զամենայն գերին 'ի մի վայր ժողովեցին. և (յայնմանէ) բազումք 'ի նախարարացն Հայոց թողին զկանայս իւրեանց և զորդիս և զընտանիս, և փախեան ընդ այս ընդ այն գնացին. իսկ զամենայն կանայս նախարարացն Հայոց, զոր թողին և փախեանն, ասպատակն ժողովէր. և ածին զնոսա առ Շապուհ արքայ Պարսից": Իսկ վասն Սիւնեաց՝ ընդ որս թշնամացեալ էր Շապուհ, ասէ. "Զամենայն մանր մանկտին ներքինիս հրամայէր առնել, և խաղացուցանել յերկիրն Պարսից":

Նաև յաւուրս Բ. Յազկերտի Պարսից արքայի, որ էր 'ի մէջին անդ հինգերորդ դարուն, բազմութիւն յոյժ 'ի Պարսս երևի մնացեալ յայնցանէ՝ որք տարագիր եղեն. որպէս նոյն իսկ Յազկերտ սպանանայր ըստ ասելոյ Եղիշէի

80. « Ոչ որում ցանկացեալք էք (մահուան), վաղվաղակի տամ զտանել ձեզ. այլ զամենեսեան զձեզ և որ 'ի գըն-դիս են՝ չարաչար կապանօք 'ի սագաստան տամ անցու-ցանել ընդ անձանապարհ տեղիս, որ և բազումք 'ի ձէնջ 'ի խորշակէ յերթալն սատակեսցին. և մնացեալքն անկցին 'ի բերդս ամուրս և 'ի բանտս անելս »:

Ի մնացելոց աստի էին անշուշտ այն գաղթականք կամ ժողովուրդք Հայոց՝ զորս յետ վեցերորդ դարուն եգիտ Սմբատ մարզպան բնակեալ 'ի Հեռաւոր աշխարհ 'ի սա-գաստան նահանգն Պարսից, զորմէ պատմէ Յոհաննէս կաթողիկոս ասելով. Խոսրով Պարսից արքայ սակս քաջա-գործութեան Սմբատայ պատուասիրեալ, « տայ նմա և ըզ-մարզպանութիւն Վրկանայ. իսկ Սմբատայ երթեալ հա-սեալ յաշխարհն յայն, գտանէ անդ ազգս գերեալս 'ի Հայաստանեայց, և բնակեցուցեալս 'ի Թուրքաստան կող-մանէ մեծի անապատին որ Սագաստան անուանի, և զլեզու իւրեանց մոռացեալ, և դպրութի նուազեալ յոյժ: Որոց և տեսեալ զՍմբատ՝ յաւէտ իմն խրախք լինէին. և 'ի հրա-մանէ նորին դարձեալ աշակերտեալ ընդ հայերէն հագա-գայց սիրողքայից՝ զլեզուն նորոգէին, և ուսեալ դպրութի հայերէն հաստատէին 'ի հաւատս. և ապա զերեց ոմն 'ի նոցունց իսկ Աբէլ անուն՝ եպիսկոպոս նոցա հրամայէ կա-ցուցանել մեծի հայրապետին մերոյ Մովսէսի (որ էր Բ. Մովսէս): Եւ այսպէս վիճակ մեծի աթոռոյն սրբոյն Գրի-գորի 'ի հեռաստան երկրի փոսսա կայմէ մինչև ցայսօր ժամանակի »: Յորմէ երևի՝ թէ մեծ բազմութի լեալ իցէ գաղթականս, մինչև հարկ լինել աթոռ եպիսկոպոսական անդանօր հաստատել. երևի դարձեալ եթէ տևեալ իցէ մինչև յաւուրս իւր, այսինքն մինչև 'ի սկիզբն տասներորդ դարուն, նաև մինչև ցեւս նոյն դարուն. քանզի Ասողիկ ևս 'ի Բ. 2. վկայէ մնացեալ և յաւուրս իւր: Բայց զկնի յայտ է թէ փոխեցան յազգ յայլ, մինչև ոչինչ յիշատա-կութիւն լինել այնուհետև զնոցանէ:

Իսկ յաւուրս Բ. Խոսրովայ Պարսից արքայի 'ի սկիզբն եօթներորդ դարուն գտանեմք ժողովուրդ բազմախումբ փոխադրեալ 'ի Պարսս, զորմէ Յոհաննէս կաթողիկոս. « Իսկ Աշոտ ոմն հրամանաւ Խոսրովու (Պարսից արքայի) հասեալ 'ի Հայս, և դիմեալ 'ի վերայ խորտակէր զզօրս Յունաց, զի ոչ լինէր թիւ սպանելոցն 'ի դաշտին. և ինքն կալեալ զզօրս պատերազմի ընդ Կարնոյ քաղաքի առնոյր զնա. և յետ երկեամ մի ամաց զբնակիչս քաղաքին յԱՀ-

մատան փոխէ,,: Կարնոյ քաղաք յայնժամ էր 'ի բաժնին Յունաց, ուր նստէր և այլ կաթողիկոս Յոհան անուն, զոր ընդ այլս գերի տարան, որպէս յիշէ Ասողիկ 'ի Գ. 3. "Առնու զքաղաքն Կարնոյ, և գերէ զկաթողիկոսն Յոհան ամենայն բնակչօք քաղաքին տանի 'ի յԱհմատան,,: Այս քաղաք Ահմատան երբեմն էր Մարաց, այլ ապա մնաց ընդ տէրութեամբ Պարսից:

## ՅԱՍՈՐԵՍՏԱՆ. Ի ԽՈՒԺԱՍՏԱՆ. Ի ԴԱՄԱՍԿՈՍ

Առ Եղիշէի գտանեմք զբազումս 'ի մերոց Հայոց տարագրեալ 'ի Ը. Յազկերտէ ոչ միայն 'ի Սագաստան, որպէս տեսաք 'ի վերոյ, այլ նաև յԱսորեստան և 'ի Խուժաստան, որպէս և նա ինքն սպառնայր նախարարաց մերոց ասելով 'ի 80. "Եւ 'ի ձեր աշխարհն առաքեցից զօրս անթիւս համօրէն փղօք, և զկին և զորդիս 'ի Խուժաստան տամ խաղացուցանել,,: Որոց անդէն մնացեալ իմանամք 'ի բանից աստի Թովմայի Արծրունւոյ Ը. 1. "Տէր Քրիստափոր Հայոց կաթողիկոս գրէ առ կողմանս Ասորեստանի, զգուշացուցանելով մի խառնիլ ընդ նեստորականս. զնոյն գրէ և առ որս 'ի Խուժաստանին էին ժողովուրդ ուղղափառացն,,: Քրիստափոր գոլով կաթողիկոս Հայոց, յայտ է թէ գրէր միայն առ հայկազունս, և ոչ առ օտար ազգի քրիստոնեայս, յորմէ յայտնի է թէ այս ժողովուրդ Խուժաստանի էին հայկազունք:

Յիշելի է տարագրութիւն ազգին մերոյ յաւէտ իշխանաւորաց մերոց յայրմանն անդ որ 'ի Նախճաւան քաղաքի յամին 709. ուր արաբացիք զմանս ինչ այրեցին, և զմնացեալսն խաղացուցին 'ի Դամասկոս: Յետ այնորիկ, ասէ Յոհաննէս կաթողիկոս, "Վրիժագործ այլազգին յապահովս կացեալ յերկիւղէ քաջացն զօրացն (զի այրեալ էին). և զմնացեալ ընտանիսն հրակիզելոցն գերի առեալ ածէին 'ի Դուին քաղաք, և անտի ուղարկեալ տանէին 'ի Դամասկոս. և այսպէս աշխարհս մեր ծովացաւ արտասուօք, և լցաւ բազում-ողբովք,,: Յետ այսր անցից նաև բազմաց իշխանաց մերոց ցիր և ցան սփռեալ աստ անդ՝ այնպէս եղև աշխարհս մեր՝ զի պակասեաց ասէ 'ի պատմութենէ զրոյցք և կարգ իշխանաց մերոց:

## Ի ՅՈՒՆԱՍՏԱՆ

Ի հինգերորդ դարու յաւուրս Գիւտայ կաթողիկոսի նախարարք ոմանք արշակունիք գնացին 'ի յունաստան՝ ընդ պատմելոյ Պերփեռաւժենի և Կեդրենոսի. զորս Լևոն կայսր բնակեցոյց 'ի Նիկիա քաղաք Մակեդոնիոյ. սոքա յաւուրս Հերակլեայ կայսեր փոխադրեցան յԱդրիանուպօլիս: Իսկ յութերորդ դարուն յաւուրս Եսայեայ կաթողիկոսի գրէ Ասողիկ բ. 4. թէ նեղեալ Հայոց 'ի ծանր հարկապահանջութենէ արաբացւոց, “Երկոտասան հազար մարդ տարադէմ գնացին յաշխարհն Յունաց, որոց առաջնորդէր Շապուհ 'ի տոհմէն Ամատունեաց, և Համամ որդի նորա. և թշնամեացն հետամուտ եղեալ հասանեն 'ի սահմանս Կողայ. և դարձեալ նոցին 'ի մարտ պատերազմի փախստական առնեն զՏաճիկս. և ինքեանք անցեալ ընդ գետն Ակամսիս որ 'ի Տայոց բղխեալ երթայ զհիւսիսոյ արևմտից անցանելով ընդ որ մտանէ 'ի Պոնտոս. և ազդ եղեալ կայսերն Կոստանդնի՝ բնակեցուցանէ զնոսա 'ի բարւոք և յարգաւանդ երկրի„:

Իսկ յելս տասներորդ դարուն Վասիլ կայսրն զբազմութի Հայոց տարեալ բնակեցոյց 'ի Մակեդոնիա. զորմէ նոյն ինքն Ասողիկ գրէ 'ի գ. 20. “Այլ յորժամ էր 'ի Բաղդատ թագաւորն Վարդ, և խաղաղանայր թագաւորութիւն Վասլին՝ կամեցաւ յազգէն Հայոց որ ընդ իւրով թագաւորութիւն, անցուցանել 'ի Մակեդոնիա ընդդէմ Բուլղարացն՝ զի շինեսցեն զերկիրն. որ և տարեալ բնակեցոյց գլոլովս յաշխարհն յայն„: Ուր տեսանեմք զնոսա բազմացեալ, և ոմանց ևս խառնեալ ընդ Բուլղարս և թագաւորեալ 'ի նոսա: Դարձեալ տարաւ Վասիլ զազատորդիսն Տայոց նահանգին. “Իսկ թագաւորն Վասիլ, ասէ նոյն մատենագիր 'ի գ. 43. չու արարեալ գնաց 'ի քաղաքն Ուխթեաց. և զամենայն բերդս և զամրոցս Տայոց նուաճեաց ընդ ձեռամբ իւրով. զհաւատարիմս 'ի նոսա և զմնացեալ ազատորդիսն Տայոց առեալ տարաւ ընդ ինքեան բնակեցուցանել յաշխարհն Յունաց„:

## Ի ԽԱՂՏԻՍ. ՑԵԳԵՐՍ

Որանցի Խաղտիք սահմանակից էր Տայոց, և 'ի վաղուց անտի բնակուճ կալեալ 'ի մերոց, որպէս գրեցաք 'ի վեր

անդր, նաև զկնի ոչ պակասէր անդ առաւել կամ նուազ բնակութիւն մերոցն, զի զայս թուի ակնարկել Թովմա Արծրունի 'ի Բ. 1. ուր ասէ թէ Քրիստափոր կաթողիկոս «Գրէ և 'ի կողմն Դերջանայ և Խաղտեաց-ձորոյ բնակչացն» զգուշանալ 'ի նեստորականաց[1]: Յայտնի իսկ տեսանեմք առ Ասողկայ 'ի Բ. 6. բնակեալ 'ի Խաղտիս յիններորդ դարուն բազմութիւն Հայոց. «Իսկ Թէոփիլոս (կայսրն, ասէ) գնաց 'ի Խաղտիս, և ել 'ի Ցամաք կամուրջ, և գերեաց զբազմութիւն 'ի Հայոց համօրէն ընտանեօք իւրեանց». զորս 'ի հարկէ տարաւ յաշխարհն Յունաց: Բայց ասելովն զբնակութիւն 'ի Հայոց՝ և ոչ զամենեսին, յայտ առնէ թէ նաև յայնժամ մնացին ոմանք անդէն:

Նոյնպէս 'ի Խաղտիս եղև բնակութիւն մերոցն՝ որ էր մի 'ի գաւառացն եգերացւոց, սոյնպէս և 'ի նոյն իսկ յեգերս զբնականալոյ մերոց գտանեմք զյիշատակութիւն ընդ ժամանակս ժամանակս. զի Ղևոնդ գլ. Թ. գրէ՝ թէ 'ի սկիզբն անդ ութերորդ դարու յետ այրելոյ իշխանացն յեկեղեցին Նախջաւանայ և Խրամայ 'ի ձեռն Կասմ Հագարացւոյն՝ «Սմպատ կուրապաղատ և նախարարքն որք ընդ նմա՝ գնացեալ մեկնեցան յաշխարհէս, և անցեալ խնդրեցին յարքայէն Յունաց քաղաք բնակութեան և դադարս խաշանց իւրոց. տայր նոցա զքաղաքն որ անուանեալ կոչի Փոյթ՝ 'ի կողմանս Եգեր աշխարհին. և բնակեցան 'ի նմա ամս վեց»: Զնոյն կրկնէ և Ասողիկ 'ի Բ. Դ. ուր թէպէտ ասէ թէ քանզի Յոյնք ոչ օգնեցին Հայոց 'ի դէպս ինչ՝ «յետոյ յաւարի առեալ զքաղաքն և սպառ եկեղեցւոյն՝ այսրէն դարձան», բայց ոչ ամենեքին. յայտ է այս անտի, զի զկնի յիշատակին յեգերս Հայք բնակեալք, նաև կրօնաւորք:

## Ի ԽԱԶԻՐՍ

Ի սկիզբն ութերորդ դարուն ընդ զօրս Խազրաց յիշատակին և զօրք Հայոց առ Ղևոնդայ գլ. Ժ. «Իսկ նորա (Խագանայ արքային Խազրաց) առեալ ընդ իւր զբազմութիւն զօրացն, և զամենայն յաղթանդամ հայազունսն իւր, որոց արիութիւն զօրութեանն հռչակեալ էր առ նոսա»: Այս զօրք՝ թէ համարեսցին ժողովեալ 'ի Հայոց բնակելոց 'ի Խազիրս, և

1 Որպէս ինձ թուի Խաղտեաց ձորն էր 'ի նոյն իսկ 'ի Խաղտիս, որպէս և անունն յայտ առնէ. իբր ասել կամելով Խաղտեաց ձոր: Արդ կաթողիկոսն ոչ գրէր անդ՝ բայց եթէ առ ժողովուրդս որ էին յաղէտ իւրեանց, և ոչ առ օտարս:

թէ 'ի հայաստանեայց, յայտ առնեն թէ գոյր յայնժամ երթեւեկ ինչ մերոց և բնակութիւն 'ի խաղիրս։

## Ի ՓՈՔՐ ԱՍԻԱ

Մաղլիկ 'ի Է. 31. գրէ. «Իսկ յաւուրս Խաչկայ Հայրապետի Հայոց սփռեալ տարածեցաւ ազգս Հայոց զկողմամբքն Արեւմտից, (որով իմանայ զամենայն փոքր Ասիա) մինչև ձեռնադրել նմա եպիսկոպոս յԱնտիոք Ասորոց, և 'ի Տարսոն Կիլիկեցւոց, և 'ի Սուլըմղայ, և յամենայն գաւառս յայնոսիկ»։

### Գ. Նոր Գաղթականք 'ի նուաղել և 'ի բառնել տէրութեան մերոյն 'ի հայաստանեայց։

Դարն մետասաներորդ, որ է ժամանակ 'ի վեր երևելոյ Պարսից Տուղրիլեանց՝ եղև արդարև դար կործանման տէրութե մերոյ, և ցիրուցան սփռելոյ ազգիս մերոյ. քանզի յայսմ դարու մերս Յոհաննէս Թագաւոր խոստացաւ տալ զԱնի քաղաք 'ի ձեռս Յունաց, յորմէ զհետ եկն Գագկայ յաջորդի նորա զրկել 'ի Թագաւորութէ, Յունաց տիրել Անւոյ, և համօրէն աշխարհիս աւերածել խռովութբ. և յայնմ աւերածութե ժամանակի յաւել և Ալփասլան յաջորդ Տուղրիլայ առնուլ զԱնի չարաչար հարուածով։ Ի պատճառս յաճախութե այսչափ աղէտից զհետ եկն և մերոյ աշխարհախումբ ժողովրդեան Հայոց յառաջ և զկնի փախչել և անցանել ընդ ժամանակս ժամանակս գունդս գունդ երևելի բազմութբ 'ի զանազան աշխարհս, զորս յիշեսցուք կարգաւ։

## Ի ՅՈՒՆԱՍՏԱՆ

Ըստ Լաստիվերտցւոյն այս հատուած գաղթականաց եղև 'ի բառնալ անդ Թագաւորութե Բագրատունեաց, մինչդեռ վերջին Գագիկ Թագաւոր կենդանի էր, այլ զրկեալ 'ի Թագաւորութէ. զի 'ի գլ. Ժ. յետ դնելոյ զԹուականն ՆՂ. (1041) ասէ. «Իսկ զկնի երից ամաց եհաս կատարած կենաց տանս Հայոց. քանզի 'ի միում ամի զրաւեալ յաստեացս բարձան 'ի կենաց երկու հարազատ եղբարքն Աշոտ և Յովհաննէս, որ ունէին զԹագաւորութի

մերոյ աշխարհիս, յորում շարժեցաւ աթոռ հաստատուն նոցա, և այլ ոչ եւս զկայունն։ Յորում եղեն իշխանքն 'ի հայրենի ժառանգութիւն իւրեանց, և եղեն պանդուխտ յօտար երկիր. յորում աւերեցան գաւառք, և գնացին յաւար տանն Յունաց. եղեն շինանիստ աւանք բնակութիւն գազանաց, և անդաստանք նոցա յարօտս էրէոց, տունք ցանկալիք բարձրաձեղունք և մեծամեծք եղեն բնակութիւնք համբարուաց և յուշկապարկաց,,[1]։

ՑԻՑԱԼԻՍ

Այսպէս և զսոսա 'ի ժամանակս անկման Անի քաղաքին և Թագաւորութեան Բագրատունեաց գաղթեալ համարիմք 'ի բանից աստի Շնորհալւոյն, որ գրէ 'ի վէպան վասն Գրիգորիս կաթողիկոսի, այն է՝ Վկայասէրն.

„Եւ 'ի սորոց գիրս հանեալ,
Յոր վայր նոցա նահատակեալ[2].
Յարեւմտականըս ժամանեալ,
Ուր ազգ Հայոց բազում իջեալ.
Անդ ըզնոսին լուսաւորեալ
Եւ 'ի հաւատս հաստատեալ.
Անդուստ 'ի ծովն մեծ անցեալ,
Յեգիպտականսն փոփոխեալ,,։

Գրիգոր Վկայասէր ըստ Մատթէոսի գնաց 'ի Հռոմ յամին 1074. և քանզի այս ժողովուրդ Հայոց յառաջ քան զինքն գնացեալ էին, ժամանակ գաղթելոյ սոցա երեւի լինել զկնի տիրելոյ Յունաց 'ի վերայ Անւոյ, որ եղև 'ի 1046։ Մարթ է լինել նաև զկնի առման Անւոյ յԱլփասլանայ, որ եղև 'ի 1064։ Եւ այսպէս այս ամենայն երեւի նոյն ընդ վերնոյն զորմէ գրեաց Լաստիվերտցի, այսինքն յետ տիրելոյ Յունաց 'ի վերայ Անի քաղաքին. որովհետև Թագաւորութիւնն բարձաւ, Հայաստան լցաւ խռովութեամբ՝ նաև յերկպառա-

1 Այս անապատանալ աւանաց և բնակարանաց նոցա յայտ առնէ, թէ բնակիչքն եղեն և գնացին պանդխտանալ յօտար երկիր, որպէս ինքն ասէ. և զի Յոյնք էին որ յայնժամ տիրէին, որպէս ժառանգութիւն և անդաստանք նոցա եղեն յաւար Յունաց, նոյնպէս և ինքեանք բնակիչքն անկան 'ի սահմանս իշխանութեան Յունաց. վասն որոյ այս համաշխարհական աւերումն յօտարութիւն և 'ի պանդխտութիւն զոր յիշէ, նախ առաջին 'ի հարկէ եղև 'ի մերձակայ սահմանակից աշխարհն Յունաց։

2 Այս է Հռոմ քաղաք, ուր նահատակեցան առաքեալն Պետրոս և Պօղոս։

կուէ նախարարաց մերոց, յայնժամ սկսան ցրուել ոմանք 'ի զանազան կողմանս յունաստանի, և ոմանք յեւրոպիա՝ մանաւանդ յիտալիա, կամ ուղղակի, և կամ յետ անցանելոյ 'ի յունաստան։ Սուրբ Գրիգոր վկայասէր յերթալն իւրում 'ի Հռոմ" 'ի հարկէ ունէր անցանել ընդ քաղաքս Իտալիոյ, ուստի և 'ի հարկէ եւս զայն բազմութիւն Հայոց զոր յիշէ Շնորհալին, յորմէ և մեք Արեւմուտք անուանեմք իմանամք զիտալիա. գուցէ և յետ երթալոյ 'ի Հռոմ" ինքնին շրջեցաւ 'ի զանազան կողմանս արեւմտեայց, զոր նոյնպէս ոչ կարծեմ լինել առանց Իտալիոյ։

Զայս հաստատուած ժողովրդեան յարեւմուտս՝ յիշէ և Վահրամ, բայց առանց որոշելոյ զժամանակն. միայն յետ յիշելոյ զաստուածային կրեալս 'ի Թուրքաց՝ ասէ.

« Որք 'ի չարեացըն ձանձրացեալ
Եւ նեղութեանցըն չհանդուրժեալ,
Ի յարեւմուտըս կայս դիմեալ
Եւ 'ի հիւսիս փախուստ առեալ,
Ըզհայրենիսն աշխարհ լքեալ,
Եւ 'ի յօտարս պանդխտացեալ »։

Համաձայնին բանից Շնորհալւոյն և յիշատակք ինչ զորս գտանեմք յիտալիա. քանզի պատմի գալուստ հատուածոց ինչ ժողովրդեան Հայոց գաղթեալ 'ի Վենետիկ յետ մետասաներորդ դարու, որպէս ունիս տեսանել ստորև. յորոց պարտ է լինել և երևելի տոհմ կոմսի ուրուք՝ որ մինչև ցայժմ գտանի յՈւտինէ քաղաքի. զորմէ ասեն 'ի մետասաներորդ դարուն եկեալ 'ի Հայաստանեայց, և անունն Երուանդ կոչեալ։ Ի սերնդոց այսր գաղթականի պարտ է լինել և այն յիշատակ մնացեալ 'ի 1286 ամաց հետէ 'ի Բիզա՝ Միրանդոլեայ ուրումն 'ի հայկազանց, որ եղև հայր հիմնադրի մենաստանին Կերթուսեանց[1]։ Նոյնպէս և յիշատակ Եոմինէ կոչեցեալ կրօնաւորաց Հայոց 'ի Փլորենտիա նախ քան զմետասաներորդ դարն[2]։ Որպէս և յիշատակ անուանս Աւոմինա, յոր անուն կոչի Թաղ ինչ Գլասսէի 'ի տասներորդ դարուն հետէ. և 'ի հրովարտակին Գոռռատոսի կայսեր գրեալ 'ի 1029. եկեղեցի նորա կոչի Սուրբ

1 Զոտմէ ասս յաշխարհագրութե. Գ. հատոր Եւրոպիոյ. Թղթահամար 35. 36։

2 Տես զասացեալն 'ի Գ. հատոր Եւրոպիոյ. Թղթ. 16. 17։ Եւ փոքր յիշատակութե Հայոց եկեղեց յԱնկոնա 'ի հնումն՝ ասս 'ի նոյն հատոր Թղթ. 108։

Յոհաննէս որ յԱռմէնիա։ Այս Կղասսէ տեղին հեռի է 'ի Ռաւեննա քաղաքէ 3 մղոնաւ։ Իսկ 'ի Ռիմինի տեսանի վէմ՝ գրեալ անուանելով 'ի վերայ. Ես Թոմա վարդապետս շէնեցի զտունս զայս չէն [1]։

Յեկեղեցին 'ի մետասան կամ յերկոտասաներորդ դարու պարտ է համարել և զհայս բնակեալս 'ի Փերուճիա քաղաք երկրին Հռոմայ, զորոյ զյիշատակն գտանեմք 'ի ձեռագիր Ճաշոցի որ կայ յեկեղեցւոջ սրբոյն Մարիամու Եգիպտացւոյն որ 'ի Հռոմ, գրեալ 'ի ՈՀԹ. (1230) 'ի լեառն սուրբ Լուսաւորչի, յանապատին որ կոչի Կապոսի, այլ պարգեւեալ 'ի Գ. Լեւոնէ արքայէն մերմէ եկեղեցւոյն Փերուճիայի, որպէս գրի 'ի յիշատակարանի նորին. "Լեւոն շնորհօքն Աստուծոյ և օգնականութեամբն նորին Թագաւոր ամենայն Հայոց, որդի հանգուցեալ արքային Հեթմոյ, վասն խնդրոյ Յոհաննիսի քահանայի պարգեւեցաք զժամագիրքս զայս (իմա ժամու գիրք, կամ Ճաշոց) իւր եկեղեցւոյն սուրբ Մատթէոսի աւետարանչի որ է 'ի Փերուժ քաղաք, 'ի յիշատակ մեր և նախնեացն մերոց, 'ի Թուականութեան Հայոց ԷՃԻԸ" (1279)։ Յիշատակին 'ի նմա և անուանք բարերարաց կամ 'ի շինութիւն նորին եկեղեցւոյն սրբոյն Մատթէոսի, և կամ 'ի պարգեւատուութիւն. որով յայտնի կացուցանէ թէ 'ի Փերուճիա քաղաքի էր ժողովուրդ Հայոց, բազում ամօք յառաջ 'ի հարկէ եկեալ քան զժամագրեալ ամին 1279. զի և իտալական անուանք նոցա յայտ առնեն, թէ էին որդիք կամ թոռունք եկելոցն 'ի հայաստանեայց, և վասն այնորիկ իտալացեալք։ Ուրեք յիշել աղաչէ և զքահանայքս "զՅակոբ ծերունին, և զԲասիլ զհոգեւոր որդին իւր՝ զՎերատեսուչք տանս Փերուժի և սպասաւորք սուրբ առաքելոյն և աւետարանչին Մատթէոսի"։

Իսկ թէ քան զմեզ յառաջ եկեալ հայկազունք 'ի խնդիր լինէին վասն այսր, կարծեմ բազում և այլ յիշատակս գտանէին աստ և անդ զեկեղեցւոյ գաղթականաց յիտալիա, որք ըստ սովորութեան ազգիս հետզհետէ փոխեցան յազգ իտալացւոց և անհետ եղեն։ Քանզի և վասն գեղջ ինչ 'ի սահմանս տէրութեան Վենետկոյ՝ պատմէին մեզ ծերունիք ոմանք, լինել անդէն 'ի հնումն ժողովրդեան Հայոց, որոց յիշատակ միայն զեկեղեցին ասէին մնացեալ, որ կոչի յանուն սրբոյն Գրիգորի։

1 Տես 'ի Գ. հատոր Եւրոպիոյ, 'ի թղթ. 129 և 133։

## ՅԵԳԻՊՏՈՍ

Զկնի գաղթականացն արեւմտեայց կամ իտալացւոց դնեմք զորս գաղթեալ եղեն յԵգիպտոս 'ի նմին մետասաներորդ դարու, զորոց գրէ Մատթէոս 'ի թուին ՇԻԳ. այսպէս. "Եւ էր թուականութեանս Հայոց շիգ (1074). և ապա զկնի այսորիկ գնաց Գրիգորիս կաթողիկոս 'ի Կոստանդնուպոլիս, և անդուստ 'ի Հռոմ. և եկեալ յԵգիպտոս, շրջեալ ընդ ամենայն անապատն առաջին սրբոց հարցն, և կատարեաց զամենայն փափագումն սրտին իւրոյ. և հաստատեաց անդէն զաթոռ իւր հայրապետութեան. և կանգնեալ նորոգեաց անդէն զամենայն կարգ ուղղ եկեղեցւոյ. և բազում փառք և մեծութիւն ընկալաւ տէր Գրիգորիս 'ի թագաւորէն եգիպտացւոց առաւել քան 'ի թագաւորէն Հոռոմոց. և բազումք ժողովեցան Հայոց յԵգիպտոս իբրև երեսուն հազարաց":

## Ի ԼԵՀԱՍՏԱՆ

Ի մէջ այսչափ գաղթականաց հաստուածելոց զորս յիշեցաք և զորս ունիմք յիշել՝ բազմաթիւ քան զամենեսին և երևելի գտանեմք զժողովուրդն գաղթեալ 'ի Լեհաստան: Հրովարտակ Թէոդորոսի դքսին կարմիր Ռուսիոյ[1], գրեալ առ Հայս 'ի 1062, յայտ առնէ թէ ընդ տիրելն Յունաց Անի քաղաքին, յորում ժամանակի գրեթէ անկաւ թագաւորութիւն Բագրատունեաց, սկսան Հայք սփռիլ նաև 'ի մերձակայս Լեհաստանի. քանզի այն հրովարտակ ցուցանէ թէ Հայք 'ի մերձակայս բնակեալք խնդրեալ են 'ի դքսէն կարմիր Ռուսիոյ գալ անդր. և նորա հրաման տուեալ գալ և օգնել նմա՝ որ յայնժամ էր 'ի պատերազմի: Բան հրովարտակին թարգմանեալ յայնմ ժամանակի 'ի Ռուսաց բարբառոյ 'ի հայ՝ է այս. "Ահա մեծի դքսի Թէոդորոսի որդւոյ Դեմետրեայ առ Նաչոխաչեան[2] Հայս որք աստ կամին գալ: Եկեսցեն յօգնութիւն իմ. և ես տաց ձեզ ազատութիւն ընդ ամս երիս: Եւ յորժամ լինիջիք առ իս, ուր և հանձնեցի ձեզ՝ երթիցէ ազատ-

1 Այժմ է մասն Լեհաստանի կոչեցեալ Գալիցիա:

2 Յանուանէ ասաի թուի եկեալ սոցա 'ի Նախջուանայ, և զառաջին բնակութեան տեղի 'ի նոյն անուն յորջորջեալ, որ աղճատմամբ կոչի առա- Նոր Նաչըխավան. փոխանակ կոչելոյ Նախջաւանեան.

օրէն ։ Յամին 1062 »։ Արդ քանզի տիրելն Յունաց 'ի վերայ Անւոյ եղև 'ի 1046 . իսկ առումն Անւոյ յԱլփասլանայ եղև 'ի 1064 . այս գաղթիլն Հայոց 'ի կողմանս Լեհաստանու՝ յայտ է թէ եղև զկնի տիրելոյ Յունաց 'ի վերայ Անւոյ , և յառաջ քան զառումն Ալփասլանայ ։ Ստեփաննոս վարդապետ Ռօշքա մականուանեալ՝ պատմէ զնոցանէ բնակեալ յախճամ 'ի Գրիմ, 'ի հաստատութեն այսմ բերեալ զքարաշէն զեկեղեցին Գրիմայ շինուցեալ 'ի Հայոց ամօք ։

Ծերունիք հայկազունք բնակեալք 'ի Լեհաստան՝ պատմէին միաբանագամ հաստատ լինել Հայոց առաւել բազմաթիւ հասեալ անդր 'ի Լեհաստան . որոց ապացոյց են եկեղեցիք լինել շինեալք 'ի նոցունց 'ի 1183 . յԼեւով, 'ի Կամենից , 'ի Լուցկա և 'ի Լիթվանիա ։ Գաղթումն սոցա թուի լինել զկնի 1161 ամի , յորժամ Ասլան Պարսից արքայ զամս չորս ասպատակաւ աւերէր զամենայն շրջակայ երկիրս Անւոյ[1] ։ Մեծն Գաղիմիր արքայն Լեհաց 'ի 1344 Հայոց բնակելոց 'ի Կամենից, իսկ 'ի 1356 Հայոց Լեւովեցւոց ետ զրով իշխանութեն առանձին դատաստանի վարելոյ . վասն այնորիկ և ոչքս հաստատեցին դատաւորս 12 . և զնմին զլուխ նոցա Վոյթ կոչելով ։

Այսմ ժամանակի եղեն և այն գաղթականք բազմաց հայկազանց 'ի Վէրս, ուր վաճառականութեամբ եղեն առաւել իշխանազունքն , մանաւանդ յազգէն Բագրատունեաց . որպէս և 'ի Մէլքօգնեսս, յեփրատոյ , և 'ի Կիլիկիա ։ Զորոց զպէշտպանութիւն որչափ լինէ գտանելն 'ի գիրս՝ տեսցես յայն տեղիս յորս ասողն բան լինի զնոցանէ ։

Դ . Նոր գաղթականք յետ վերջին առման Անի քաղաքին 'ի Չարմաղանայ , և յետ բառնալոյ թագաւորութեան Ռուբինեանց 'ի Կիլիկիոյ ։

## Ի ՂՐԻՄ . Ի ՔԷՖԷ

Առումն Անի քաղաքին 'ի Չարմաղանայ՝ որ եղև յամին 1239 . եհան վերջին կործանումն քաղաքին և վերջին վտարանդութիւն բնակչաց նորին , յորմէ գնեալ եկն բազ-

1 Զորմէ կարես տեսանել 'ի Մեծ Հայս 426 ։

բովքն Թափուր և դատարկ մնալ Անւոյ, և համաշխարհա-կան ցրումն ազգիս մերոյ արտաքոյ Հայաստանեայց, ոմանց յեզերս ծովուն Կասպից գաղթելով, ոմանց յԱժ-տերխան. այլ երևելի գաղթականաց եղև գնալ 'ի Ղրիմ և բնակիլ անդ՝ մանաւանդ 'ի Քէֆէ քաղաք նորին, որ կոչի Թէոդոսիա։ Ծանօթութիւն այսր ամենայնի առա-ւելապէս յայտնի եղև 'ի յիշատակարանի ինչ Յայսմա-ւուրաց գրեալ մագաղաթեայ 'ի Քէֆէ, ուստի համա-ռօտեալ յառաջ բերցուք.

* Մեք եմք (ասէ) սերունդք Պալհաւունեաց, 'ի մեծ թագաւորանիստ քաղաքէն յԱնւոյ ... բայց 'ի զանազան ոսկեզօծ պալատից իւրաքանչիւրոցս՝ ունէաք նաև 'ի նմին հազար և մէկ եկեղեցիս ... Յետ սակաւուց ժամանակաց Չարմաղան խանն Թաթարի առաքեալ դեսպանս 'ի քա-ղաքն յԱնի ... ամբոխ քաղաքին և ռամիկքն սպանին դեսպանսն։ Եւ զայն տեսեալ զօրքն այլազգեաց ... ան-թիւ զօրօք ասին, և սուր ածեալ առհասարակ անողոր-մաբար կոտորեցին. զտակաւ կանայս և զմանկունս Թո-ղեալ ... քանդեցին զքաղաքն՝ եղծին և ապականեցին ... ապա բազումք թողլով զոսկեզօծ պալատս, և զծաղկաւէտ դաշտս, զվանօրայս և զեկեղեցիս աւեր, չուեալ եկին որ-պէս փախստական 'ի յԱխտարայ, որ է 'ի մէջ Հաշտար-խանու և Ղազանու. ոմանք գնացին 'ի Ճուղայ, ոմանք 'ի Վան, և այլք 'ի Սիս։ Եւ որք յԱխտարայ եկին՝ հրաման առեալ 'ի Թաթար խանէն՝ բնակեցան անդ ոչ բազում ժամանակս, որ էր զայս չխը. Թուին (1299). վասն զի մինչ նեղեալ եղեն 'ի Թաթարացն՝ գնացին յերն 'ի Ղրիմ, առ իշխանն Ջենովիզեաց, որ բնակէր 'ի մէջ Փռէնկ Հիսարին Թէոդոսիու. ուխտ դնեն ընդ իշխանին Թէոդո-սիու։ Ելեալ 'ի յԱխտարայէ իշխանք և ազնիւք և հասա-րակ ժողովուրդք վառեալք զինու, պատերազմելով ընդ Թաթարացն ձեռքեալ գան 'ի Ղրիմ, և բնակին 'ի Թէո-դոսիա, 'ի Կաֆարաթ և 'ի Սուրխաթ և 'ի կողմանս սո-ցա։ Այս եղև չհթ. Թուին (1330). Յայնժամ զօրացաք ... և շինեցաք զգիւղս և զգաւառս. իշխանք և ազ-նուականք 'ի Ղարապազարէն սկսեալ մինչև 'ի Սուրխաթ և 'ի Թէոդոսիա. 'ի լերինս և 'ի դաշտս լի արարին վանօ-րէիւք և եկեղեցեօք մինչև 'ի Սուրխաթ։ Եւ շինեցաք տունք հարիւր հազար, և զեկեղեցիս հազար. և 'ի յահէ Հռոմականաց պարսպեցին 'ի քաղաքն Թէոդոսիա։ Իսկ այն Թուին (1391) գայ մեծ խանն Թաթարի, պատերազմեալ

հալածէ զՂըզչախ Պարսից, և տիրէ զբոլոր Ղրիմ 'ի ձեռաց նորա. բայց ոչ զօրելոյն առնուլ զՓէօդօսիա, ակամայ բարեկամացեալ զերթևեկութիւն առնէին ընդ իշխանին Ջինկիզեան, զի յոյժ սիրով էին ուխտիւք և պայմանօք մինչև ՋԺԷ. Թուին (1468). ապա խանն եառ զդաւառըն Ղիրին իշխանին 'ի կնութիւն որդւոյ իւրոյ ‖:

Օ կնի պատմէ թէ 'ի պատճառս քսութեան ոմանց Ղիրին իշխանին Ճինկիզ կալեալ զփեսայն իւր զորդի խանին եդ 'ի դիպահոջ, խանն զՍուլթանն օսմանեան կոչեաց յօգնութիւն, որ էր Ֆաթիհ սուլթան Մէհէմմէտ երկրորդ, որոյ խափուստան փաշայն Կէտիք Ահմէտ 300 նաւուք եկեալ պաշարեաց զԹէոդոսիա, խոստանալով հայկազանց տալ ազատութիւն եթէ հնազանդեսցին. իսկ իշխանքն Հայոց տեսեալ զթուլութիւն իշխանին և զփախուստ նորա, նենգեալ նաև 'ի սմէ, երդուեալ առեալ 'ի փաշայէն ետուն զքաղաքն 'ի ձեռս նորա 'ի ՋԻԴ. (1475): Այլ փաշայն ստելով ապա երդմանն՝ ստէպ բռնադատէր թողուլ զքրիստոնէութիւն. և առ 'ի չահել զսիրտ նոցա՝ սկսանէր կեղծաւորութեամբ ընտանութիւն ցուցանել յաճախ կոչելով 'ի սեղան իւր, մինչև առ կարի իմն ընտելութեան դիւրաւ կարաց հաճել զմիտս իշխանացն թողուլ զսուսերս իւրեանց և այնպէս գալ 'ի սեղան. իսկ իբրև պատրեալ նոցա 'ի բանս նորա առանց սրոյ եկին 'ի ճաշն, յետ ճաշելոյն՝ յիջանելն անդ ընդ սանդուխսն՝ հրամանաւ փաշային մի առ մի կոտորեցին զիշխանսն. «Այսպէս, ասէ, իշխանազունք մեր և ազնիւք կատարեցան 'ի Քրիստոս. ապա հրամայեաց Թուրքաց և Թաթարաց կոտորել զամենայն ազգս Հայոց, որք 'ի նմին աւուր բազմամարդ քաղաքն Ֆէոդօսիա սակաւաբնակ արարին. զի զծերս և զտղայս՝ զարս և զկանայս՝ սրոյ ճարակ ետուն. և զարիւնս նոցա յերկիր հեղեալ իբրև զվտակս գետոց ընթանայր 'ի փողոցսն. անթիւ աղջիկք և մանկունք և մատաղ տղայք գերեալ առաքեցին 'ի Պօլիս առ Սուլթանն. զոմանս արարին 'ի Կաղարաթ և 'ի Սուրխաթ»[1]:

1 Այս բան Յիշատակարանի բաց 'ի անդէկուէ զոր տայ վասն յետին ցրուելոյ ժողովրդեան հայաստանեայց՝ լուսաւորէ նաև զպատմութիւն Ղրիմու և Թէոդոսիայի որ է Քէֆէ, գրեալ յաշխարհագրութեան յերկրորդ հատոր Նորայից Թղթ. 318–328: Յայտ առնէ նաև զպատճառն այսպէս անմարդացեալ մնալոյ Անի քաղաքին, յորում միջնակի զատնի այժմ. պատճառս ցուցանելով ոչ զդեռնաշարժութիւն զոր ոմանք դնեն, և զոր յիշեալ է մեր 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 426. այլ զպարսկական կոտորած Չարմաղանին

Միւսանգամ այլ հատուած ժողովրդեան 'ի Ղրիմէ- կեալ գրէ այս յիշատակարան ասելով. «Ի ռծա. թուին (1602) 'ի յաւերելն Ջէլալին զերկիրն Պարսից, բազումք 'ի յազգէ մերմէ չուեալ անտի գան 'ի Ղրիմ, 'ի Թէոդո- սիա, 'ի Ղարապազար, 'ի Պաղջասարայ և 'ի Կէօզլով. և այլք գերի վարեցան»:

## Ի ԼԵՀԱՍՏԱՆ

Երրորդ անգամ այլ հատուած փախուցեալ եկին 'ի Լեհաստան. սոցա գալուստ եղև 'ի Ղրիմայ. որում վկայ- են զանազան գրուածք մինչև ցայժմ մնացեալք յԼվով, 'ի Կամենից եւն. գրեալք 'ի բարբառ Թաթարաց հայկա- կան տառիւք, որպէս խօսէին բնակեալքն 'ի Ղրիմ: Ժա- մանակ գալստեան սոցա յայտ է լինել յետ 1475 ամին, յորժամ Օսմանեանք առին զԿէֆէ, և սկսան նեղել զՀայս, զորմէ ստորև:

Մինչև ցաստ զերիս հատուածս ժողովրդեան յիշեցաք մեք գաղթեալս 'ի Լեհաստան, տեսանելով զյայտնի նը- շանս. այլ նաև յետ այնորիկ բազում անգամ բազում ժողովրդոց աստի և անտի 'ի հայաստանեայց հատուա- ծեալ գալ բնականալ երևի 'ի Լեհաստան սակս գտանե- լոյ անդ հանգիստ և ապահովութիւն որում կարօտ էին: Զբազմութե̃ եկելոցն ասեն լինել 40 հազար տուն. որ չէ ինչ մեծ. զի 'ի միոյ կողմանէ աւերումն և անմարդա- նալն հայաստան աշխարհի զոր գիտեմք 'ի պատմագրաց վասն այնր ժամանակի, և 'ի միւս կողմանէ բազմութիւն ժողովրդեան Հայոց բնակելոց յայնժամ 'ի զանազան քա- ղաքս և 'ի գիւղօրէս Լեհաստանու վկայեն այսմ. մինչև ընդարձակ դաշտավայրն Լեհաստանու՝ ուր զառաջինն բնակութի̃ կալան հատուածեալ Հայք՝ մինչև ցայժմ 'ի բարբառ Լեհաց Օռմեանսքի կոչի յանուն Հայոց: Երկարա- ձիգ փողոցն առ եկեղեցեաւն ուղղափառաց որ 'ի Պռօ- տի մինչև ցայժմ Փողոց Հայոց կոչի սակս բազմութեան Հայոց բնակելոց յայնժամ 'ի նոյն փողոցի, ուր այժմ և ոչ մի ոք գտանի. յորժամ 'ի 1820 դէպ լինէր մեզ անդ 'ի նմին փողոցի Պռօտի քաղաքին բնակել զամիսս ինչ, ոմն 'ի

'ի 1239. որ բաւական լինէր այսպէս ասպատակել, և կէս մի 'ի տարաշխար- Թափուր Թողուլ զնա 'ի բնակչաց. հեկ լինելոյ չըսուեալ:
կէս մի յայնմանէ ահագին կորուսեալ էին

Հայոց եցոյց ինձ զխորտակեալ հատոր տապանագրի, յորում երևէին որոշ հայկական երկաթագիրք գտեալք անդէն ընդ երկրաւ երկգրկաչափ խորութեան :

Վկայեն այսմ բազմութեան դարձեալ և կարգ դատաւորաց 'ի զանազան քաղաքս լեհաստանու որք կային յայնժամ, որպէս և կարգադրութիւն նոցա, և օրէնք նոցա : Սոյնպէս վկայեն և եպիսկոպոսարանն որ տևէ մինչև ցայժմ յԻլով քաղաքի, և մենաստանն Հայոց կուսանաց, և բազմութիւն Հայոց քահանայից աստ և անդ 'ի լեհաստան, յորոց լինէին երևելի քարոզիչք 'ի քաղաքս Լեհաց, մինչև գտան 'ի նոցանէ նաև մատենագիրք ոմանք և բանաստեղծք 'ի նոցին քաղաքս ծաղկեալք յաւուրս վերջին թագաւորի Լեհաց Բոնիադովսքի Ստանիսլաւոսի, որ ծաղկեցուցիչ էր բանասիրութեան բարբառոյ Լեհաց [1] :

## ՅՈՒԼԱՀ ՊՈՒՂՏԱՆ · Ի ԴՐԱՆՍԻԼՎԱՆԻԱ

Վասն սոցա նախ 'ի հայաստանեայց 'ի Ղրիմ, և 'ի Ղրիմայ անտի փոխադրեալ պատմի, այն է Ուլահ Պուղտան, որ կոչի նաև Վալաքիա և Մոլտավիա : Բազմութիւն էին զառաջինն անդ՝ մանաւանդ 'ի Պուղտան, յորոյ երևելի քաղաքս իւրաքանչիւր գաւառաց կիսով չափ Հայք էին բնակեալք, մինչև ոմանց 'ի նոցանէ հասանել նաև 'ի բարձ աւագութեան աշխարհին՝ Պէյ լինելով, զորոց պատմեն յիշատակարանք նոցա [2] : Այլ բազմութիւն 'ի սոցանէ հետզհետէ փոխադրեցան 'ի լեհաստան . և յեօթնևտասներորդ դարուն իբր տասն հազարք 'ի բնակելոցն յՈւլահ Պուղտան՝ անցին 'ի Դրանսիլվանիա . ուրանօր գնոյ առեալ երկիր՝ շինեցին զերկուս քաղաքս յորջորջեալ Կեռլէ և Պաշֆալով, յորս մինչև ցայժմ բնակեն և ինքեանք կառավարեն [3] : Իսկ զի ոչ բազմանան անդէն՝ այն է պատճառն, զի որք փարթամանան 'ի նոսա վաճառականութեամբ՝ ոչ մնան անդ, այլ կալուածս և գիւղօրէս գնոյ առեալ, գնան բնտանեօք բնակել անդ՝ ուր են կալուածք նոցա .

1 Վասն այսր աւանդութեան կարես գըտանել ինչ ինչ տեղեկութիւն յաշխարհագրութեան 'ի Է. հատոր Եւրոպիոյ՝ մանաւանդ 'ի թղթահամարն 94. տես և 'ի թղթ. 131–136. նաև 145. ուր և պատմի վասն հուշակաւոր պատկերի Տիրամօրն բերեալ յԱնի քաղաքէ, որ ունի գրուած հին անընթեռնլի : Տես և 'ի 148 :

2 Տես և յաշխարհագրութեան 'ի Է. հատոր Եւրոպիոյ. թղթ. 192 :

3 Տես յաշխարհագրութեան 'ի Է. հատոր Եւրոպիոյ. թղթ. 315. 326. 328. և 331 :

և անդ յետ սակաւուց փոխին բոլորովին յազգ օտար։ Այսպէս լինէր և բնակելոցն 'ի Լեհաստան. զոր օրինակ եղև և յաւուրս մեր և Ախըղօշքի անուն հայկազուն փարթամ վաճառականի, որոյ բնակութիւն իւր գոլով 'ի Պռօտի քաղաք Լեհաց՝ փոխադրեալ ընտանեօքն համօրէն 'ի Չեռնովցւոց՝ բնակեցաւ անդ, ուր չորս գիւղօրէս գնեալ էր առեալ։

Ըստ Առաքել պատմագրի յիշատակի և այլ հաստատուած ինչ ժողովրդեան գաղթեալ յայսմիկ կողմանս 'ի Քէֆէ, 'ի Պուղտան որ և Մոլտավիա, և 'ի Լեհ. որ թէպէտ չէ ինչ հին, այլ տեղեկութիւն այնր՝ հարկաւոր ընթերցողին։ Զի յորժամ, ասէ, յելս վեշտասաներորդ դարուն բազմացան աւազակք Ջալալիք անուանեալք յանուանէ Ջալալ կամ Ջլալ փաշային, և յորժամ Պարսիկք զնահանգս կողմանց ինչ Հայաստանեայց վարեցին 'ի Պարս, յայնմհետէ բազումք 'ի մնացելոց փախուցեալ թագեան 'ի լերինս և յայրս, և ոչ մնաց երկրագործ. եկն ապա և մարախ՝ որոյ ապականեալ զամենայն տերեւաց սով սաստիկ, „Յայսմ ժամանակի, ասէ Թղթ. 86. եղեն ցիրեցան ազգն Հայոց. և գնացին իւրաքանչիւրք համօրէն իւրոց երեսաց գտանել տեղի կելոյ ... ոմանք յՌուսումէլի, ոմանք 'ի Բուղդան, ոմանք 'ի Լեհ, ոմանք 'ի Կաֆայ, ոմանք 'ի ծովեզերան Պոնտոսի, ոմանք 'ի Թաւրէզ և յԱրտաւէլ և 'ի գաւառս սոցա. զի յազգէն Հայոց որքան զարհուրեալք կամ յաւացեալ գաւառս՝ յայս ժամանակիս և յայսմանէ պատճառէս են գնացեալք „[1]։ Այլուր 'ի Թղթ. 145. տայ և այլ տեղեկութիւն վասն այսր ասելով. „Ամենայն ազգն Հայոց ելեալք վտարանդիք եղեն յիւրաքանչիւրոց տեղեաց և հայրենեաց և բնակութեց և յաշխարհաց, և տարադէմ գնացեալ ընդդէմ երեսաց, ցիրեցան եղեալք սփռեցան ընդ ամենայն աշխարհ, 'ի Կիպրոս, 'ի Կոստանդնուպօլիս և 'ի քաղաքս որք շուրջ են զնովաւ, յՌուսումէլի, 'ի Բուղդան, յերկիրն Իլախաց (որ է Լեհ), 'ի կղզին Կաֆայու (որ է Ղրիմ), 'ի ծովեզերան Պոնտոսի „[2]։

1 Ժամանակն է խօսք 'ի ռծ. Թուականին, որ է ամ տեառն 1601։

2 Թիւ տանց մնացելոց Հայոց 'ի չորեքկողմս ասեն որք այժմ գտանին 'ի Ռուսումէլի, ըստ հաշուի ոմանց է այսպէս։ Ի սահմանս ամենեցուն՝ առեալ նաև զՊիւլրահ Պուղտան բաց 'ի Պոլսոյ, տունք 3060։ Ի սահմանս քրիստոնէից 'ի բաց առեալ զՂրիմ, տունք 1812։ Ի Ղրիմ տունք 360։ Յորժամ Ռուսք առին 'ի Ղրիմ, յառաջին բազմութենէ մնացեալ էին Հայք 3000 տունք, յորոց միայն 1200 տունք բնակէին 'ի Քէֆէ. զորս առ հասարակ վարեցին յերկիր իւրեանց։

ցեալ տեղեկացայ, նաև 'ի յիշատակարանաց գրոց զորս ըն-թերցայ, զի եօթն և ութ անգամ որոշ որոշ զնոսին մի-մեանց քշեալ և տարեալ է»:

Այս որ առաւել ողբալին է՝ յետ գաղթարելոյ 'ի Սպահան, դարձեալ բազմութիւն 'ի նոցանէ տարան 'ի Շիրազ. «Այլև յայսմ ժողովրդենէս, ասէ, զոր տարան 'ի Սպահան, հինգ հարիւր բաժանեցին և տարան յերկիրն Շիրազու և անդ բնակեցուցին: Քանզի Ալլահվէրտի խանն որ էր տէր Շիրազու՝ խնդրեաց 'ի Շահաբասէն շնորհել նմա մասն ինչ յազգէն Հայոց վասն բարեմութեան և հաւատարմութեան ազգին Հայոց, զի լիցին նմա 'ի ժողովուրդ. և թագաւորն շնորհեաց նմա զխնդիրսն, և նա տարեալ բնակեցոյց 'ի գաւառն Շիրազու». Թղթ. 45: Ի սոցանէ ոչ ոք գտանի այժմ 'ի Շիրազ. յայտ է թէ առհասարակ սպառեցան կամ մեռանելով, և կամ գուցէ ոմանց 'ի Հնդիկս գնալով:

Մինչև ցայժմ չերևի մեզ որոշել զտեղի բազմութեան զերեզմանացն Հայոց, որք գուցէ այսր գաղթականքն էին մնացորդք, և զորմէ պատմեաց մեզ ականատես ճանապարհորդ ոք, թէ 'ի գալ իւրում 'ի Պաղտատայ 'ի Տիարպէքիր, յետ քանի մի աւուրց ելանելոյ 'ի Ճանապարհ, թաթարն առաջնորդ նոցա խոտորեալ յարահետ ճանապարհէն՝ տարաւ եհան զնա 'ի բլուր մի մեծանիստ տափարակ, յանմայր և յանապատ տեղւոջ, ուր ետես բազմութիւն տապանաց առհասարակ հայկական գրովք, և 'ի նոսա տապան մի մեծադիր Յարութիւն եպիսկոպոսի, ուր ոմանք միայն 'ի տեղեկագունից գնան, ասէր, յուխտ:

Իսկ բազմութիւն նախայիշատակեալ վտարանդելոցն 'ի Պարսս, առ սակաւ սակաւ անցին գնացին 'ի զանազան տեղիս Հնդկաց, և առաւել 'ի Պանկալա, ուր թէ որպէս բազմացան, և զիարդ հաճոյ գտեալ Նապապի տեղւոյն յառաջացան 'ի մեծութիւն և յիշխանութիւն, և զիարդ առընդարոյս պակասութեց կորուսին զամենայն՝ անդրդուեցուցին տեղի տուեալ յառաջադէմ լինելոյ յամենայնի, տես յաշխարհագրութեան 'ի Հ. հաւոր Ալիշ 'ի Հնդիկս, 'ի Թղթ. 14. 65. և 'ի հետևեալն [1]:

[1] Գտանի և յիշատակութիւն ինչ 'ի չորեքտասաներորդ դարու անգ նաև 'ի Չին անցեալ գնացեալ ոմանց հայկազանց. զորմէ կարես տեսանել յաշխարհագրութեան 'ի Հ. հաւոր Ալիշ. 'ի Թղթահամարն 251:

## ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏՃԱՌ ՆՈՒԱԶՄԱՆ ԲՆԱԿՉԱՑ

### Աղէտք 'ի Բռնաւորաց և 'ի Բնութենէ.

Յետ ստորագրելոյ մեր թէ զիարդ պակասեցին բնակիչք աշխարհիս մերոյ զաղթականս գնալով նոցա յօտար երկիր, և թէ զինչ քաղաքքն այնոքիկ էին յորս մերքն պանդխտեցան, ժամ է արդ տեսանել դարձեալ զդատարկանալ աշխարհիս եթէ 'ի տարագիր լինելոյ մերոցն 'ի հայրենի աշխարհէն 'ի բռնաւորութէ բարբարոսաց, և եթէ կալով 'ի նմին' 'ի բնական հարուածոց. զայսոսիկ և որ ինչ այլ պատճառք կան զատ 'ի պատմագրաց մերոց յիշատակեալ՝ մի առ մի յառաջ բերցուք աստանօր:

### Ա. Բռնաւորութիւն և Գերութիւն:

### Ի ՊԱՐՍԻՑ

Յաւուրս Պարսից երրեակ ընդհանուր բռնաւորութիւնք և գերութիւնք եղեն պատճառք չարաչար վտարանդութեն և նուազման բնակչաց աշխարհիս. նախ՝ յաւուրս սասանեան Արտաշրի. երկրորդ՝ յաւուրս Բ. Շապհոյ արքայի. և երրորդ՝ յաւուրս Բ. Յազկերտի: Առաջնոյն պատճառ եղև մահ մերոյ մեծին Խոսրովայ սպանելոյ յԱնակայ. երկրորդին պատճառ երկու ուրացողք 'ի մերոց, Վահան՝ այլ առաւել գլխաւոր՝ չարն Մերուժան. երրորդին նոյնպէս երկու ուրացողք 'ի մերոց, Վարազվաղէն սիւնի, և Վասակ Սիւնեաց իշխան: Զյիշատակ այսոցիկ երից համաշխարհական բռնաւորութեց և նուազման ազգիս՝ ունիս աստ և անդ գտանել 'ի հնախօսութեն, մանաւանդ յերկուսին գլուխսն՝ Պատմութեան և Կրօնի:

Այս բռնաւորութիւն պատճառ եղև ամայանալոյ աշխարհիս նաև յաւուրս Ա. Յազկերտի, որ զՇապուհ զորդի իւր թագաւորեցոյց 'ի վերայ աշխարհիս Հայոց. իսկ իբրև մեկնեցաւ նա, աշխարհ մեր զամս երիս անտերունչ մնացեալ և 'ի խռովութե, բազմութե նախարարաց ցրուեցան ըստ պատմելոյ Խորենացւոյն Գ. 56. “Ժողովեալ նախարարացն Հայոց հանդերձ զօրօք իւրեանց՝ տան ընդ գնդին Պարսից պատերազմ, հարկանեն զզօրսն . . . և ինքեանք

## ՅԱՐԱԲԱՑԻՈՑ

Ի սկիզբն ութերորդ դարուն յորժամ յեկեղեցւոջ Նախճուանու այրեցին զընտիր զօրս Հայոց՝ թէ զիարդ գերի վարեցին զընտանիս նոցա՝ յիշեցաք 'ի վերոյ. որք թէ պէտ և յաւուրս Եօմէր. ամիրապետին պատմին արձակեալք յազատութին, այլ յայտ է թէ բազմաց լինէր անդ մնալ կամ անդ մեռանել: Իսկ 'ի մէջն անդ ութերորդ դարու յորժամ Ջափր ամիրապետ եգ 'ի մտի զամենայն Հայս յաւէտ զնախարարս դարձուցանել 'ի տաճկական կրօն, կամ բնաջինջ առնել կոտորմամբ և գերութբ, առաքեաց յայս գործ զԲուղա ոստիկան, որոյ զբազմութին գերի վարեալ վաճառեաց յօտար աշխարհս, որպէս յայտ առնէ այս բան Թովմայի արծրունւոյ Գ. Կ. որ քան զամենայն պատմագիրս մեր ճոխագոյն գրեաց զհարուածոցն Բուղայի. “Հրամանս ետ ախուհեաւ զի զբազմութին գերելոցն վաճառականութ արասցեն յազգս յազգս, ում և հաճոյ թուիցի»: Եւ 'ի Դ. գլուխ գումարեալ զնմանէ. “Եւ եղև 'ի մտանել նորա 'ի քաղաքն (Դուին), ունելով ընդ իւր կապեալս բազումս և գերեալս որոց ոչ գոյր թիւ, զորս վաճառականութ արարեալ յօտար ազգս վարել 'ի ծառայութին, զնալ հեռանալ մերժիլ 'ի տանց հայրենի ժառանգութենէ իւրեանց»:

Մեծապէս նուազեալ զատու աշխարհս և յիններորդ դարու յաւուրս Յուսփայ ոստիկանին 'ի զանազան պատճառաց, զորոց ճոխագոյն գրէ Յովհաննէս կաթողիկոս. նաև 'ի գերելոյ և 'ի ցրուելոյ յօտար ազգս. մինչև, ասէ, յորժամ եկն Աշոտ սպարապետն Հայոց՝ “Եգիտ զաշխարհս առհասարակ ապականեալ ստամբկմամբ, և զայլս վաճառականութ լեալ, և զմնացեալսն ցան և ցիր անկեալ և սփռեալ յօտար ազգս»:

## Ի ՎԵՐՋԻՆ ԹԱԹԱՐԱՑ

Թողեալ զգերութին և զկոտորածս որք պատմին յաւուրս Լէնկթէմուրայ; յետ նորա ասէ Թովմա Մեծոփեցի, “Այլին զՀամշուասէ. և խարբէզուր և երկիւղիւ հազար վաթսուն և չորս մարդոյ գլուխ 'ի դուռն քաղաքին մինարէ շինեցին, և

բայ տալ իւրաքանչիւրոց յաւուրն: յանցանել ժամանակաց ոչ մնաց այն Ի հաշուէ անդի 'ի յայս եկն այն թիւ բազմութ, իւրաքանչիւրոց սփռեալ բնակչաց Տաճկաց և Հայոց. բայց գողովատ և անդ.

լինն հազար և չորս հարիւր գերի առին. Թող զայն՝ որ՚ի յան-տառաց և ՚ի մացառաց յափշտակեցին... և ո՞վ կարէ պատ-մել զգոյթ տարակուսանաց և զկսկիծ մորմոքմանն տառա-պեալ հայկազեանն սեռին... լցաւ երկիր և աշխարհ ա-մենայն գերով և լալով, սգով և կոծով, մանաւանդ մե-ծամահման զաւառս մեր հայրենի. զի ամենեքին փա-խուցեալք էին, և մնոզ երթեալ այսպիսի փորձանաց և որոգայթից դիպեցան, այլ և ՚ի Մսըր և Խորասան, ՚ի Բաղտատ և ՚ի տաճկաստան, և յամենայն երկիր ցրուեալ ցնդեցան»: Եւ ՚ի ըկն. Թուին (1416) պատմէ. «Զամե-նայն աշխարհն գերի առեալ զկին և զաղայ, և զերուէ ելին զամենայն աշխարհն հայկազեան սեռի. և զամե-նայն քրիստոնեայքն աղքատ ողորմելի արարին. զի կարգա-ւորք և աշխարհականք դհոգւոյ և զմարմնոյ տառապեալս ՚ի գլխն գերոյն եառւն. և էր որ գերեալ՝ և էր որ փախու-ստեամբ ազատ ամէնէր զքրիստոնեայսն. և էր որ զաղա-նակուր լինէին... կանայք զարդարանս իւրեանց կողոպ-տէին, որք զանազանս, քահանայք և կրօնաւորք զաղքա-տանիս իւրեանց ցուցին. ում ոչխար և կամ տաւար կայ-ին՝ տային ՚ի գերիսն և գնէին: Եւ տեսեալ անօրինացն զյօժարութիւն նոցին՝ զամէն գերի հանէին ՚ի տանն հազար և ՚ի քսան հազար»: Իսկ վասն Աքանդար բռնաւորին Թա-թարաց գրէ զկնի այնր. Թուին (1425). «Բազում գե-րիս էառ, և խաղաց Ջնջերաց զազգս Հայոց ըստ տեսութե մեծին Ներսէսի, թէ Ջնջեցի ազգն Արամայ յազգէն նետողաց»: Եւ վասն այլոց բռնաւորաց ՚ի պէթ. Թուին (1430). «Անթիւ և անհամար կանայս, և զորդիս ամե-նայն հաւատացելոց առին տարան ՚ի Խորասան»:

Բ. Կորուստ ՚ի բռնաւորաց:

## Ի ՊԱՐՍԻՑ

Զպատճառս կոտորածոց որք եղեն յաշխարհի մե-րում՝ ունիս գտանել ՚ի գլուխն Պատմութեան յարշաւանս Թշնամեաց. այլ առաւելապէս կամիմք միայն զկոտորումն յի-շել ուրոյն, առ ամփոփ ունելոյ առաջի աչաց, որք նուազ-ման բնակչաց աշխարհիս եղեն պատճառք: Առաջին գերութիւն նոյնպէս և կոտորած սաստիկ կրեաց հայաստան ՚ի Պարսից. նախ՝ յաւուրս Արտաշրի. երկրորդ՝ յաւուրս Շապհոյ արքայի, զորմէ Ձոխագոյն պատմելով Բուզանդ

ասէ 'ի Դ. 24. "Զանթիւ մարդիկ արկանէին 'ի սուր սուսերի իւրեանց. զկանայս և զմանկտի հանէին ընդ ցից սայլից, զկէսս զոր 'ի ներքոյ կամացն (այսինքն կամնացն, կամնասայլից) արկեալ կասուէին. և զարանց բազմութիւն տայէին 'ի կոխումն փղաց". յորմէ զհետ գայր բազմաց վտարանդի լինել, որպէս գրէ սորին. "Բազում ժողովուրդք խլեալք յիւրաքանչիւր տեղեաց, փոփոխեցան յատարուն"։ Իսկ յորժամ ինքն Շապուհ եւ 'ի Հայս անենային զօրօք իւրովք առաջնորդ ունելով զերկոսին ուրացողսն, զօրս նորա, ասէ 'ի Դ. 58. ժողովէին "առաջի թագաւորին Պարսից զամենայն գերին մնացորդաց աշխարհին Հայոց. ապա հրամանն տայր թագաւորն Պարսից Շապուհ զամենայն այր 'ի չափ հասեալ կոխան արարեալ փղաց, և զամենայն կին և զմանուկ հանել ընդ ցից սայլից. հազարս հազարաց և բիւրս բիւրոց սպանին, զի ոչ գոյր թիւ կամ համար սպանելոցն"։ Եւ վասն Սիւնեաց գրէ. "Զազգն Սիւնեաց ոռհմին զամենայն այր 'ի չափ հասեալ կոտորեցին, և զկանայս սպանին"։

Երկրորդ՝ կրեաց հայաստան յաւուրս Բ. Յազկերտի 'ի ժամանակս Վարդանանց, զորմէ անս 'ի գլուխն Կրօնի։ Եւ երրորդ՝ յաւուրս Ա. Խոսրովայ որդւոյ Կաւատայ յեւվեցերորդ դարուն. յետ որոյ Բ. Վարդան Մամիկոնեան սպան զՍուրէն մարզպան պարսիկ, յորում ժամանակի նախարարք մեր օգնութ. Յունաց ընդդէմ ելին Պարսից. "Եւ այս են, ասէ Ասողիկ Բ. 2. ժամանակք մարտից երկպառակութ, անթիւ սպանմանց, գերութեանց, աւից, խռովից, կապանաց, նեղութեանց, պակասութեանց, խիստ սովու, որոյ և մարդամահու, աւերելոյ աւանից, հրդեհից շինուածոց և ամենայն վնասուց բազում աշխարհաց յերկուց կողմանց հասանէր"։ Զնոյն կրկնէ և Սամուէլ յամի տեառն 575։

## ՅԱՐԱԲԱՑՒՈՑ

Երկարապատում մատենից պէտք էին եթէ 'ի թիւ արկանել կամէաք զամենայն կոտորածս՝ զոր ստէպ ստէպ կրէր աշխարհս մեր յարաբացւոց, զորոց գլխաւորս լինչ կարեմ դնանել 'ի գլուխն Պատմութեան և Կրօնի. յորս երևելի կոտորած եղև 'ի սկիզբն ութերորդ դարուն, յորժամ Կաշմ հագարացին 'ի հրամայելոյ Մահմետի զօրավարին այրեաց զզօրս Հայոց յեկեղեցիս Նախջաւանու և Խրամու, ապա զնախարարս կոտորեաց. զորմէ Ղևոնդ 'ի

ւորս, Հրամայէ Խորխեն յիշխանին ըստ անձին փորել զերկիր, և զկապեալսն զենուլ ՚ի վերայ փորուածոյն մինչև լի իսկ լինել. և մինչ լուացաւ արեամբ սպանելոցն առ ՚ի հանգուցանել զայրոյթ սրտին „:

## Ի ՅՈՒՂՐԻԼԵԱՆՑ

Այսպէս յարձակմունք ՚ի մետասաներորդ դարուն յայժ անմարդի կացուցին զՀայաստան. զի զքաղաքսն որոց տէրէինն, ոչ միայն կողոպտէին, այլև կոտորէին զբնակիչսն. զոր օրինակ է տեսանել յայս բանս Լաստիվերտցւոյն մերոյ. „Իջեալ ՚ի գաւառն Մանանաղւոյ բաժանեցան յերկուս. մի բաժինն չոգաւ ՚ի յԵկեղեաց. և անկեալ գիշերայն ՚ի վերայ քաղաքին որ ՚ի նմա, և զոր ՚ի նմա գտին անպատրաստ ... զհրապարակս լի դիականամբք (էր) տեսանել, և զոտս և զընդարձակ սրահս և զնրբափողոցս և զցանկս այգեաց, և դրեթէ ամենայն սահմանք քաղաքին ներկեալ էր արեամբ կոտորելոցն ... զկիսոց փորոտիսն հեղեալ և զլեարդն հանեալ և ՚ի բերանն եդեալ. էր զի կենդանւոյն իսկ ուտել բռնադատէին ... այսպէս պաշարեալ զքաղաքն՝ և որ շուրջ զնովաւ գիւղք և ագարակք, մինչև չմնալ կենդանւոյ ուրուք ՚ի մարդկանէ, բայց թէ յամուրս ուրեք „:

Յետ այսորիկ կոտորեցին ոսքա զմեծ բազմութիւն և ՚ի Բլուրս գիւղ. „Եւ եկեալ, ասէ, անօրինացն հասեալք ՚ի գաւառն Կարնոյ մերձ ՚ի գիւղն որ կոչի Բլուրս ... և քանզի որ յայսկոյս Եփրատայ էին գեօղք և կրօնաստանք՝ ամենեքին անդ էին հաւաքեալք, այլև յԱրծնին աւանէ բազումք, յորոց վերայ հասեալ թշնամեացն առժամայն առաւեցին ... իսկ զթիւ համարոյ անկելոցն և գերեացն եօթն հազար ասացին, և կրօնաւորս վաթսուն „: Յետ գրելոյ զկոտորած Ոկոմի աւանին, ասէ. „Եւ այսպիսի ձեռնարկութիւն ամայացաւ ՚ի բնակչացն երկիրս ամենայն, ոչ մնալով կենդանի բայց եթէ յամրոց ուրեք „: Ընդ այս ամենայն ողբս ՚ի բերան առեալ գրէ. „Երկիր աւերակ թափուր ՚ի բնակչաց, քաղաքք կործանեալք և անդաստանք խոպանացեալք և փշաբերք, ահագին և զարհուրելի անցաւորացն ցուցանի: Նաև քաղցրաձայն հաւուց ծառքն որք մարդասէր բարոյիւք ընտանի գոլով մերայինս ազգին, որք քաղցրանուագ ձայնիւք զվայրսն հնչեցուցանեն, և յառաւօտինսն ձայնական երգովք և բարձ

րաձայն կարկաչիւք զերկրագործսն 'ի քնոյն զանգաղա-նաց իբրև խթանաւ զարթուցեալ իւրաքանչիւր առաւօ-տից պատրաստաբար յարդարելն. բայց այժմ չէնք աւե-րակք և ամայիք և անմարդիք, և նոցա ոչ գոյ տեղի բնա-կութեան »։

Այլ քան զամենայն զարհուրելի եղև կատարած ազ-գիս յԱլփասլանայ, մանաւանդ յառմանն առնս քաղաքին Անւոյ 'ի 1064. ուր յետ տիրելոյ Յունաց ամս քսան և մի, ապա, ասէ Կիրակոս, « Հուր հարաւային բորբոքեալ եկեր զգազանն մարդախանձ, որ հրդեհեալ ընաջինջ արար զազգ մեր, եւ առաւել զքաղաքն Անի, զի պաշարեաց զնա աւուրս քսան և հինգ. և ապա առեալ զքաղաքն կո-տորեաց զբնակիչս նորա, ոչ ումեք ողորմելով արեանար-բու գազանն որ Ալփասլան կոչէր »։

Գ. Կոտորած 'ի սովէ։

Քանզի ոչ նուազ եղեն և կոտորածք 'ի սովէ յաշխար-հիս Հայաստանեայց, մի ըստ միոջէ կարդեսցուք յառա-ջիկայս ըստ կարգի ժամանակագրութե որչափ ինչ գտաք յի-շատակեալ 'ի գիրս, բաժանելով զայն 'ի դարս։

ԴԱՐ Ը

Առաջինն առ Ասողկայ գտանեմք յիշատակեալ յութ-երորդ դարուն յամին 'ի Է. Կ. « Ի տեառնէ էր պա-տուհասն սաստկացեալ ըստ յանցանաց մերոց, որ և ըզ-կարկուտ և մարախ և զերաշտութիւն ածեալ պատուհաս պարտեաց մերոց »։

ԴԱՐ Թ

Ըստ Սամուէլի 'ի Թուին ՄԾԴ. 805. « Սովն ընդհա-նուր 'ի նմին քաղաքին Կարնոյ. գտան մեռեալք 'ի մին ա-ւուրն երեք հազար »։ Ար Թովմայի արծրունւոյ յաւուրս Ափշնի. « Ո՞վ ազգ, կամ ո՞ր աշխարհ, զոր ոչ կործանեաց Ափշին.. սպանմամբ սրոյ և սովոյ. քանզի այնչափ թանձ-րացաւ յաշխարհս սովն՝ որ ոչ միայն զանասունս կենդա-նիս ուտէին ըստ սրբութե կարգի, այլ և . . . զմարմինս մեռելոց առանց խղճելոյ ուտէին 'ի գերեզմանացն հա-նեալ զհետ միոյ և երկուց ամաց թաղելոյ »։

## ԴԱՐ Ժ

Աղէտալի եղեւ և սոսկ որ յաւուրս Յուսիկայ ոստիկա֊
նին, զոր Յովհաննէս կաթողիկոս բազմօք ստորագրէ. զի
յայնժամ բաց 'ի դառնաղէտ կոտորածէ, նաեւ օդ ապա֊
կանեցաւ. և այնպէս 'ի յափշտակուէ թշնամեաց և յան
արդիւն անպտղութեանց տիրեաց սով սաստիկ՝ մինչեւ ծիւրիլ
բնակչաց իբրեւ զղիակունս. փարթամք առ 'ի դատանել
զպարէն՝ զինչս իւրեանց ծախեալ 'ի վերջին տնանկութի
հասանէին. ոմանք 'ի հարկէ սովոյն բանջարս վնասակարս
կերեալ մեռանէին. ոմանք զսիրելի որդեակս իւրեանց 'ի
վաճառ արկանէին ընդ դոյզն ինչ կերակրոյ, և այլք զըն֊
կերակիցս իւրեանց: Կէսք 'ի փողոցս 'ի հրապարակս մու֊
րալով անկանէին մեռեալ: Եղեն և 'ի կանանց ոչ սակաւք
որ առ տագնապ քաղցոյն զմանկունս իւրեանց եփեալ
կերան. իսկ այլք զմեռեալ որդւոց իւրեանց զմարմինս:
Յայնմ ժամանակի և արաբացիք ազգի ազգի տանջանս
յաւելուին 'ի վերայ ժողովրդեան, զի թէ գտցի ուրեք
կերակուր՝ յայտնեսցեն: Եւ այնպէս բազմութի դիականց
մեռելոց 'ի տանջանաց և 'ի սովէ 'ի հրապարակս արկելոց՝
եղեն կերակուր գազանաց. և յայնմանէ սովորեալք աշ֊
խարհաւեր գայլոց բազմացան, մինչեւ փոխանակ դիականց
յարձակէին ուտել նաեւ զկենդանի մարդիկ: Այս ա֊
ղէտք եւեթ նոյն՝ զոր Թովմա արծրունի պատմեաց 'ի
վեր անդր վասն աւուրց Աֆշնի: Ընդարձակօղն Սամուէ֊
լի 'ի թուին նա. 952. գրէ լինել սով սաստիկ առանց
որոշելոյ զտեղին. և 'ի նդ. 954. մարախ բազում յոյժ:

## ԴԱՐ ԺԱ

Մատթէոս 'ի թիւն հբ. գրէ. "Ի փոխել թուականու֊
թեն Հայոց տումարի ամն նձա. (1032) եղեւ սով սաստիկ
ընդ ամենայն երկիր. և բազումք 'ի մարդկանէ մեռանէին
յերեսաց սովոյն, և բազումք վաճառէին զկանայս և զոր֊
դիս իւրեանց յաղագս կարօտութեանց հացի. 'ի բարկութէ
նեղութեանցս ընդ խօսելն ելանէր հոգին 'ի մարդկանէ. և
այսպիսի օրինակաւ մաշեցաւ երկիր 'ի սովոյն": Զայս
պատմէ 'ի խօսելն զանցիցն եղեսացւոց. բայց զսովոյն "ընդ
ամենայն երկիր" ասելով, իմանայ և զՀայս միանգա֊
մայն:

Նոյն ինքն Մատթէոս 'ի ՃԻ. գրէ. «Յայսմ ամի (ՆԻ ՇԺ.) եղև սով սաստիկ ընդ ամենայն երկիր, և բազումք մեռան չարաչար և դառն մահուամբ յերեսաց սովոյն. վասն զի 'ի սաստկութէ ձեռանն՝ անձրև ոչ եկն յերկիր, և վաստակ ոչ եղև. և բազում պտղաբերք չորացան. և եղև 'ի փոխել միւս այլ տարւոյն՝ եղև լիութիւն և առատութիւն ամենայն կերակրոց. վասն զի մէկ մոթն՝ հարիւր վաստակեաց»: Ասողիկն՝ ընդ ամենայն երկիր եղև սով խմանայ և զհայտառան: Զայս պատմէ և ընդարձակօրէն Սամուէլն 'ի նմին ամի ասելով. «Նասրդաղ ամիրայն Մուֆարղինայ՝ քառասուն մաթ ցորեան և քառասուն գարի և քառասուն կորեկ եառ ցանել 'ի դաշտին, և բազում խոտ և դարման. և շատք այնու ապրեցան»: Ի շին. 1076. ասէ. «Յայսմ ամի եղև ահագին սով ընդ ամենայն երկիր, և աւերեցաւ արեւելք»: Ի շկը. 1079. Մատթէոս 'ի Թիւն ՃԻԸ. գարհուրելի սով պատմէ յերեսաց ասպատակելոյ Թուրքաց:

Իսկ Վարդան գրէ. «Յայնմ ժամանակի (զկնի մահուան Մելիք շահի) եղև 'ի պատճառս մարախոյ և երաշտոյ սով սաստիկ. և 'ի յԱնի կարի խիստ նեղութիւն մեծ, ուստի զմեռեալսն թաղել ոչ կարէին 'ի սովոյն, և ոչ օրինաց հաղորդել, որ և այր մի ասեն քաջութեան ցուցեալ և սէր առ Աստուած, թաղեաց վեց հազար անձինս որում անուն էր Բէխ»:

ԴԱՐ ԺԲ

Ընդարձակօրէն Սամուէլն 'ի Թուին շկբ. 1113, գրէ. «Եկն և 'ի գարունն մարախ յոյժ և սաստիկ»: Որ լինի պատճառ սովու:

ԴԱՐ ԺԳ

Ի պատմութեան Օրպելեանին գլ. Ծ. 29. գրեալ կայ զկնի 1225 ամին, թէ յետ ասպականելոյ թշնամեաց զերկիրն, «Տիրեաց սով սաստիկ . . . եկն և օձ՝ որ եռայր յամենայն տեղիս և յանկողինս 'ի տուէ և 'ի գիշերի. եկեր և մարախն մեծ մինչ 'ի ծովն Ովկիանոս: և եհաս սով առհասարակ մարդոյ և անասնոյ. և ամենեքին առհասարակ տապաստ անկեալ լինէին լերանց դաշտաց և ձորոց, սակս որոյ և անկաւ գայլ մարդակեր. զմնացեալսն 'ի սրոյն, 'ի յօձէն, 'ի սովուն և 'ի մահուանէն, նոքա գիշատեալ սատակէին. և այս եղև երկու պատճառաւ. նախ՝ զի սով-

ըեալ էին յուտել զմեռեալսն, և ապա մարդիկ ողջոյն ներգևեալ և խեղդեալ էին 'ի սովու ։ Եւ ահա այս պատուհաս տիրեր աշխարհիս ամս եօթն ։

Կիրակոս ասէ. «Ի Չ և 'ի մի թուին Հայոց (1252) եկն մարախ սաստիկ այնքան՝ մինչև 'ի վերանալն սաւուեր զործեր և նսուազէր լոյս արեգականն, և եկեալ 'ի կողմանցն Պարսից եկեր զաշխարհս Հայոց, ոչ միայն զբոյսս դալարոյ, այլև զհող երկրի. զաղբս լափէր 'ի տունս . . . և զանհի հարա երկիր, և եղև սովու հացի. և հասեալ 'ի ձմեռանն եղանակ՝ արկին ձուս յերկիր և մեռան, և նեխեցաւ երկիր 'ի հոտոյն ։ Եւ 'ի գալ գարնանն 'ի ՉԲ. թուին բուսոյց զձագս մարախոյն յայժ թանձրութբ, մինչ զի ծածկեցան հող և քարինք երկրի, և 'ի ժամ երեկոյին կուտէին 'ի վերայ միմեանց բլրաձև, և սկսան ուտել զդալարի և զխոտ և զհող ։ Եւ խորհեցան մարդիկ թողուլ զբնակութիւնս իւրեանց և երթալ յօտարութիւն, ուր և գտանիցեն կերակուր. և զի յառաջագոյն կերեալ էր զշրջակայ գաւառսն՝ սկսեալ . . . 'ի Պարսից և 'ի Միջագետաց, վասն այնորիկ տարակուսեալք ոչ գիտէին զինչ գործեսցեն. Սակայն այնուհետև . . . եկին բազմութիւնք մանր հաւուց ոլորակաց, զոր վասն բազմութեանն տարմ անուանեն սովորաբար, և կարգ կալեալ ամեղաց առ հասարակ, ապաւեաց և եկեր զամենայն բազմութն մարախոյն՝ այնքան զի և մի ոչ երևէր . . . Բայց վասն հաւուցս զբոյց սքանչելի ասեն, թէ 'ի կողմանս Պարսից աշխարհին որ կոչի Քրման . . . զջուրն յերկիր ոչ դնեն, այլ կապեն 'ի ձողս և ցցեն. և անդ է զադար հաւուցն զհետ ջրոյն ուր տանին հաւք լոռ թուոյ խնդրողին, և այնպէս գան հաւքն և կոտորածեն զմարախս ։» Այս է յիշատակեալն 'ի Վարդանայ՝ թէ «Ի ՉԱ. մարախ եկն 'ի վերին աշխարհս Հայոց, և առար ճիճու յոլովից գաւառաց ։» Նաև 'ի պատմութեան Թոթարաց. «Եկն մարախ սաստիկ և եկեր զամենայն աշխարհն արևելից. մինչև առ հասարակ երկիրս ամենայն արևելք և արևմուտք 'ի յահէն զարհուրեալ յԱստուած ապաւինեցան . . և այս եղև 'ի թուականութե Հայոց Չ ։»

## ԴԱՐ ԺԴ

Զարհուրելի եղև և սովն որ յելս չորեքտասանեորորդ դարուն յաւուրս Լէնկթէմուրայ, զորմէ գրէ Թովմա Մեծոփեցի. «Յետ գնալոյ նորա 'ի յաշխարհէս մերմէ եկն

սով սաստիկ 'ի յաշխարհս մեր և տարածեցաւ յամենայն տեղիս, զի կերան զշունս և զկատու. խորովէին զուտերս և զգաստերս, այր զկին, կին զայր սպանանէին զմեռեալս և ուտէին և ոչ յագէին. և յետոյ ինքեանք մեռանէին։ Եւ ոչ կարեմք պատմել զդառնութիւնս մեր զոր անցաք աչօք և լուաք ականջօք, զի ընկճեցաւ մարդկութիւն՝ մանաւանդ հայկազեան զաւակք. և կատարեցաւ առ մեզ և հրամանն մեծին Ներսէսի որ ասէ, յազգէն նետողաց ջնջեսցի տունն Արամի»։

## ԴԱՐ ԺԵ

Պատմէ նախնին Թովմաս Մեծոփեցի զսովն մեծ և զժլմնդակն՝ որ յետ Լենկթեմուրայ, այսպէս. «Իսկ 'ի միւս դառն ամի յոր մտաք ՊՁ. Թուականիս (1431) սով սաստիկ եղև ընդ ամենայն աշխարհս մեր հաւատացելոց և անհաւատից. զի կերան զշուն, և զկատու, զմեռելոտի, զձի և զջորի, զէշ և զուղտ, և պարապեալ պակասեալ անասունքն դիմեցին 'ի յուտերս և 'ի դաշտս, մինչ զի 'ի Թավրէզ քաղաքն կերեալ էին հազար ոգի գաղտնի և յայտնի։ Եւ յաւերեալ վերին կողմանքն Թավրէզ քաղաքին Հեր և Զարաւանդ, Օշնի և Ցաղաւակ. և դիմեալ գային 'ի կողմանս Քաջբերունեաց. և բազումք որ անդ մնային՝ մեռանէին. և որք եկին յԱրեստ աւանն՝ և ձկամբք և բանջարովք շատանային։ Իսկ գաղթականքն որ ամփոփեալ էին 'ի յաւել զմեռելոտիսն, դիմեցին 'ի վերայ կենդանեացն որք յերկիրս մեր կային. մանաւանդ գային յԱրճէշ և յամենայն գաւառս մեր, զորդիս 'ի մօր գրկէն առեալ պատառէր և ուտէր, և 'ի դաշտի դիպեալ յառնէր 'ի վերայ և առժամայն պատառէր, և աւելի քան զհարիւր 'ի յԱրճէշ գաւառի գայլն եկեր. Թող զայլ քաղաքս որ 'ի վերայ գետոյն Արեստու և Մարմետու կային։ Եւ 'ի գաւառէն արարատեան 'ի ձմեռնային եղանակին ելեալ գնացին 'ի կողմն Վրաց. այնքան հաւատացեալք 'ի խստութենէ օդոյն մեռեալք եղեն, մինչ զի ոչ կարացին 'ի թիւ արկանել վասն բազմութեան, որպէս պատմեաց մեզ հոգևոր եղբայրն մեր Զաքարիա աբեղայն տեղերացի։ Եւ մոլթ ցորենոյն աւելի հանէր քան զվաթսուն դանկոյ 'ի քաղաքին Արճիշոյ. և մեռանէին ամենայն մարդիկ ընտանիք և օտարականք։ Եւ առեալ ոմանց զինչս իւրեանց դիմեալ գնացին 'ի հեռաւոր աշխարհս, 'ի յԵզնկան և 'ի Խարբերդ և 'ի

յԱմիդ, 'ի յԱրզնի, 'ի Զմշկածագ. և որք անտերունչք մնացին՝ մեռանէին 'ի սաստկութենէ սովոյն. և ոմանք գնացեալ խառնեցան 'ի Քուրդն Բաղիշոյ և Մշու, Սասնոյ՝ վասն աղքատութեան և սովոյն դառնութեան. և եղեալ 'ի հաւատոյ դարձան 'ի յանհաւատութիւն աւելի քան զՀինգ հարիւր ոգի . . . Եւ այս եօթն ամ է՝ որ 'ի ներքոյ դառն պատուհասի կամք. զի սուրն կոտորէ, սովն սպանէ, գերին պակասեաց, դառնանք կերան զվաստակս, գողք և մկունքն ապականեցին զանդաստանս »:

## ԵՐՐՈՐԴ ՊԱՏՃԱՌ ՆՈՒԱՃՄԱՆ

### Բռնութիւն փոխելոյ յայլ կրօն :

Յամենայնի անպաղդ գտաւ ազգս մեր՝ հարուած 'ի վերայ հարուածոյ տեղացեալ յամենայն ուստեք 'ի վերայ նորա. զի ոչ միայն որ 'ի տարերացն աղէտք և կոտորածք սպառնային անմարդի կացուցանել զաշխարհս մեր, այլ և որ շուրջ զնովաւ բնակեալ ազգք՝ դաշնակից եղեալ գոգցես ընդ միմեանս՝ գուն գործէին սպառասպուռ անհետ առնել յաշխարհէ և զանուն անգամ տարաժամեալ ազգիս. հեթանոսացն՝ 'ի մոլորապաշտ դեմս խուժանաց անհնարին կոտորածովք բռնադատեալ լինել, և քրիստոնէից՝ զոր և ամաչեմ յիշել, վասնեալ ոչ նախանձու աստուածպաշտութեան և ոչ հոգւովն Աստուծոյ շարժեալ, նախանձ գոգցես ընդ բարբարոսացն բերեալ՝ 'ի նոցին անկղզիտացան 'ի չարութիւն՝ զամենայն հայ քրիստոնեայ դարձուցանել 'ի խորհուրդս և 'ի կարծիս խուժանաց. ընդդէր. զի ջնջեսցի և բնաւ ամենեքին անյիշատակ կացցէ յաշխարհի՝ թէ իցէ տունն արքայեան ազգ հաւատացեալ ժողովուրդ Քրիստոսի: Լուր առց զերեւելեան յաղէտիցս:

## Ի ՊԱՐՍԻՑ

Ազգ մեր անհնարին բռնութիւն կրեաց 'ի Պարսից վասն արեւապաշտութեան. Նախ յաւուրս Բ. Շապհոյ 'ի ձեռն ուրացելոյն Մերուժանայ և Վահանայ, զորոց Խորենացին գրացես 'ի գլուխս կրօնի 'ի հալածմանն Պարսից. յայնմ ժամանակի՝ որպէս յայտ առնեն նաև մատենագիրք մեր, անթիւ եղեն նահատակեալքն ոչ միայն յայլոց ազգաց

քրիստոնէից , այլ նաև 'ի Հայոց , յորոց նուազունք 'ի գիր արձանացան ։ Եւ երկրորդ՝ յաւուրս Է . Յազկերտի որքայի որպէս ունիս տեսանել անդէն ։ Իսկ որ յաւուրս Շահապասայ եղև բռնութիւն առ 'ի դարձուցանել 'ի տաճկութիւն , տես յԱռաքել պատմագիր յերես 60. 61. 65. Թէ որդիք վտարանդեալ Ջուղայեցւոց 'ի Սպահան մնացեալք զիարդ դառնային յայլազգութիւն , և զիարդ բռնանային նոցա ուրացեալքն 'ի վերայ մնացելոց Հայոց 'ի ձեռն Պարսից առ 'ի դարձուցանել և զնոսա ։

## ՅԱՐԱԲԱՑԻՈՑ . Ի ԹԱԹԱՐԱՑ

Ի սկիզբն ութերորդ դարուն սաստիկ տառապեցաւ քրիստոնէութիւնն արաբացւոց զկնի այրելոյ նոցա զզօրավարս Հայոց 'ի Նախճաւան . զոր յետ պատմելոյ մատենագիրն 'ի վերս Վահանայ գողթնացւոյ , ասէ վասն մնացելոց Հայոց , թէ " Զփափկասունս և զհեշտասունս յարգելանս բանտից արկանէին 'ի ջերմ 'ի յամարան ժամանակս . և բազմաց լինէր վախճան 'ի ջերմութենէն . և զմնացեալսն վարէին 'ի գերութիւն յԱսորեստան յաշնանային ժամանակս . և հասեալք 'ի Դամասկոս՝ զորդիս նախարարացն և զընտանիս նոցա յարքունիս տանէին , և զմանկունս նոցա 'ի դպրոցս , և զայլս ըստ պատեհին տանէին " ։ Որ է ասել թէ զմանկունս նոցա 'ի դպրոցս տանելով ուսուցանէին զդենս իւրեանց , և զայլս թլփատէին ։

Իսկ յիններորդ դարուն յաւուրս Բուղայի բազմութիւնք դարձան 'ի Հայոց 'ի տաճկական կրօնս . զի թէպէտ զկնի դարձելոյ ասին յերկիր իւրեանց և անդրէն ընկալեալ զքրիստոնէութիւն , բայց և բազումք , մանաւանդ 'ի մանկ-կրտուոյն նոցա , յաւելան 'ի դենս և յազգս նոցա ։ Եւ այնպէս ընդ ժամանակս ժամանակս 'ի զանազան բռնաւորաց արաբացւոց բազմութիւն Հայոց բռնադատեալ դառնային 'ի կրօնս նոցա , և խառնելով 'ի նոսա բազմացուցանէր զազգ նոցա , և նուազեցուցանէր զազգ մեր ։ Այս որ 'ի դէպ է յառաջ բերել զոր ասէ Թովմա Մեծոփեցի . " Որդիքն եղիպտացւոց 'ի ծովն ընկղմեցան , իսկ որդիք Հայոց 'ի ծով անհաւատութեան . . . որդիքն մեր և եղբարք՝ որ անհաւատութեամբ մեռան և կորեան , աճեն որդիք նոցա անհաւատութեամբ և բռնուն զաշխարհս ամենայն . և մինչ 'ի վերջին յօր դատաստանին լինի թէ ազգս Հայոց յայնքան մարդիկ աճեն՝ որ այժմ կենդանի եօթանասուն ազգս

և անտի ժողովեաց առ Մատթէոս Ճլա ։ 'ի Թուին շի ։ 1071 ։ «զամենայն տունն Հայոց որք մնացեալ էին 'ի քաջ զօրականաց . . . և կացոյց զօրագլուխ զօրաց իւրոց զխատակ և զՎասիլակ իշխանք Հայեցիք, այր քաջք և պատերազմօղք»։

### ՅՕՍՄԱՆԵԱՆՑ

Որ ինչ փոփոխութիւնք եղեն նուաղելոյ ազգիս յաւուրս սոցա; քանի զամենայն երեւելին է սահմանել նոցա Տղայաժողով. զի զմի 'ի տասն մանկանց քրիստոնէից ընտրեալ 'ի զինուորութիւն իւրեանց գրէին, որով բոլորովին դարձեալ 'ի կրօնս նոցա, յազգ նոցա փոխէին. զորոց քանիցս գրեալ է մեր 'ի Ճառսն զօսմանեան աշխարհէ, առ յաշխարհագրութ. Հատոր Ե. Եւրոպիոյ. Թղթ. 63.

### ՉՈՐՐՈՐԴ ՊԱՏՃԱՌ ՆՈՒԱԶՄԱՆ

Ինքնակամ խառնուած յօտար ազգ ։

Չորրորդ պատճառ նուաղելոյ ազգիս է ինքնակամ յարիլ յազգ օտար, յոր և ընտելեալ իսկ է, մանաւանդ յորժամ զատանէ յարմարուն ինչ ընդ նմա՝ մինչև իսպառ թողուլ զիւր հայրենի սովորութն և զլեզու, և ընդ օտարին միանալ, կամ առ շահավաճառութն, կամ սակս առեւտր կենակցութն և սուղ ինչ դիւրութն՝ զոր և յայշ առնէ Հռոմհայքն 'ի վեպսն իւր. ուր յետ յիշելոյ զպատճառն զոր գործեցին արաբացիք և թուրք, որք են թաթարք, առէ վասն ազգին մերոյ.

«Ի յաշխարհէ ծննդեան ելեալ,
Ի հայրենեաց տարամերժեալ,
Ցերկիր օտար պանդխտացեալ,
Մինչ զի ըզմերըն մոռացեալ»։

Այսպիսի օտարութիւն եթէ գոյր կարեւոր զանազանութիւն ըստ հաւատոց, շատ է այն արգել լինելոյ չխառնիլ ընդ օտարս. այլ թէ ոչ, չէին պէտք երկար ժամանակաց, փոխել նոցա իսպառ յայն ազգ յորում բնակեալ են. զորոց զօրինակս յիշեցաք 'ի վերոյ վասն պանդխտելոցն

ընդ զանազան կողմանս Եւրոպիոյ՝ մանաւանդ յԻտալիա և 'ի Լեհաստան ։ Իսկ վասն սփռելոյն յԱսիա 'ի քրիստոնեայ աշխարհս՝ յաւէտ 'ի մէջ Վրաց գտցես 'ի վաղուց անդր ելեալ փախուցեալ բազմութիւն Հայոց, մանաւանդ 'ի ցեղէն Բագրատունեաց, զորոց զանեղեկութիւն որչափ ինչ գտանիցի, տեսցես 'ի գլուխն Պատմութեան ։ Այլ գաղթեալքն 'ի Վիրս պարտ է յերկուս որոշել. մի՝ զորս բոլորովին փոխեալ են այժմ յազգ Վրաց, մինչև անծանօթ մնալ Հայկազուն սերնդեանն. և երկրորդ՝ զորս թէպէտ փոխեալ են լեզուաւ և սովորութ̄, բայց ծանուցեալ է լինել նոցա հայազգի. յերկոցունց ևս բազմութիւն գտանին անդէն ։

Նոյնպէս խառնեալ գտան նաև ընդ Յոյնս. զի բաց 'ի հոռոմացելոցն բռնութ̄ զոր 'ի վերոյ յիշեցաք, և այլ բազմութիւն Հայոց՝ որք ընդ ժամանակս ժամանակս գնացին յաշխարհն Յունաց 'ի մասին Ասիոյ և Եւրոպիոյ, մնալով անդ խառնեցան յազգ նոցա, յորոց եղեն այնչափ իշխանք և զօրապետք հայկազունք 'ի մէջ Յունաց զորս յիշատակեն պատմագիրք. յորոց մին եղև և Թոռնիկ Տարօնեցին, և հոռոմացեալ Փիլարտոսն անուանի 'ի պատմութիւս մետասաներորդ դարուն, զոր և անարգելով յիշատակեն պատմագիրք մեր ։ Յորժամ 'ի շիե. թուին 1076, առէ Վարդան, Յոյնք սպանին "զՎասակ իշխանն եղբայր կաթողիկոսին Վահրամայ, որ էր տուկ Անտիոքու 'ի նմին քաղաքի՝ նենգութ̄, և զօրք նորա ամրացեալ 'ի կլայն ետուն զքաղաքն 'ի Փիլարտոսն, որ բռնացեալ յայնժամ 'ի վերայ բազում գաւառաց Հայ ազգաւ. որոյ առեալ զքաղաքն, խնդրեաց զվրէժ արեան նորա ,,: Ի հոռոմացելոց աստի եղեն և կայսերք՝ որոց յայտնի են յիշատակք հայկազուն լինելոյ ։

Բայց զարմանք մեծ են, զի զայսպիսի ինքնակամ խառնութիւն հայկազնեայց և ընդ այլադեն ազգի գտանեմք, այն է ընդ Քուրդ ազգի, որք են Մարք ։ Զսոսա տեսանեմք մեծաւ մասամբ 'ի մերում աշխարհի բնակեալ 'ի վաղուց անտի. զի սահման նահանգաց մեծին Հայոց կոչեցեալ Կորճէք կամ Կորդուք, Պարսկահայք կամ Հեր և Զարևանդ, Մոկք, Աղձնիք, նաև Տուրուբերան դէթ ըստ մասին և Վասպուրական, լցեալ կան առհասարակ 'ի բազմութէ քրդաց. իսկ զՀայս բնակիչս նոյն նահանգաց՝ գրեթէ ըստ ամենայնի փոխեալ յազգ նոցա ։ Եւ այս կրկին օրինակաւ. մի մասն հայկազանց պահելով ըզքրիստոնէութիւն ինչ ուրուական՝ այնպէս խառնեալ կան

փոքր, և թուով յոյժ ընդ փոքու սահմանեալ,,, զի՞նչ ունէր ասել վասն ազգահամարոյ մերում ժամանակի ։

## ՅՕԴՈՒԱԾ Գ

Փոխադրութիւն ազգին տեղւոջէ 'ի տեղի 'ի ձեռն հայաստան աշխարհի ։

Ի ՓՈԽԱԴՐՈՒԹԵՆԷ աստի ոչ եթէ յաւելուած կամ նուազութիւն լինէր ընդհանուր բազմամարդութեան աշխարհիս մերոյ՝ և նմին իրի հարկ համարեցաք դնել զսա 'ի կարգիս, քանզի 'ի նուազելոյ բնակչաց ուրեք՝ 'ի հարկէ բազմանան այլուր. այլ զի զգաղթականաց խօսեցաք, և զսա ընդ նոսա դասեմք առ տեղեաւս ։

Մեծ երևելի փոխադրութիւն եղև յետ անդ չորրորդ դարուն, յորժամ Գ. Արշակ թագաւոր մեր եհան 'ի կողմն բաժնին Յունաց, որ էր կողմն Կարնոյ և փոքուն Հայոց. զի յայնժամ, ասէ Խորենացին Գ. 42. "Գնացին զհետ նորա հանդերձ կանամբք և որդւովք և նախարարութիւնք՝ որ 'ի բաժնի Շապհոյ (Պարսից արքայի), թողլով զիւրաքանչիւր արարս և զգիւղս և զդաստակերտս" ։

Ի սկիզբն հինգերորդ դարուն յորժամ Շապուհ որդի Ա. Յազկերտի՝ որ թագաւորեալ էր 'ի վերայ Հայոց, գնաց 'ի Տիզբոն և անդ սպանաւ յիւրոցն, յայնժամ նախարարք Հայոց հարկանէին զզօրսն Պարսից, ասէ Խորենացին Գ. 56. "Եւ ինքեանք ցրուեալք տիրագլուխք անձնապահապետք՝ յամենայն լեռինս և յամուրս շրջէին . . . աշխարհս մեր յանիշխանութեան ամս երիս աւերեալ ամայանայր" ։ Թովմա արծրունի 57. յաւելու և զայլ գիտելիս. ասէ. "Քանզի վախճանեալ էր Համազասպ Մամիկոնեան, որ 'ի ժամանակին կալեալ էր զմարզպանութիւն Հայոց 'ի խնդրոյ սրբոյն Սահակայ յերկուց թագաւորացն Յունաց և Պարսից, ոչ ոք այնուհետև առաջնորդէր Հայոց աշխարհիս, այլ քայքայեալ ցրուեցան յոր կողմ և աճապարել ախորժեաց. քանզի հենք բազումք կալան զերկիրս" ։

Յութերորդ դարուն, յորժամ Վլիթ ամիրապետն լուաւ զաղաղակ հայաստանեայցս վասն Մահմէտ զօրապետին, յետոյ կոչեալ զնա՝ փոխանակ նորին առաքեաց զԱպտալահիդ ոստիկան 'ի 732, որ հաւանեցոյց զՀայս հա-

## ԳԻՐՔ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

### ԱՆՑՔ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

### ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅ

### ՅՕԴՈՒԱԾ Ա

*Սկզբնաւորութիւն տիրապետելոյ աշխարհիս 'ի ձեռն մերոց նահապետաց:*

ՅԵՏ *աշտարակաշինութեան առաջին տիրապետող մերոյ աշխարհիս եղեւ Հայկ որդւովք իւրովք եւ որդւովք եօթն դստերաց իւրոց, որպէս ցուցանէ արձանագրութիւն Ագաթանգեղոսի 'ի կձեայ սիւնն կանգնեալ յապարանս Մծբնի քաղաքի, զորմէ ասէ Վարդան. "Մեծն Արշակ ունէր չորս որդիս . . . զչորրորդն (Թագաւորեցոյց) Հայոց, տալով նմա զսահմանն՝ զոր Հայկն ստացաւ զաւակօքն իւրովք, եւ որդւովք եօթն դստերաց իւրոց ",: Իսկ թէ զիարդ ստացաւ, պատմութիւնն Օրբելեան յայտ առնէ ժառանգութք լինել, յասելն գլ. ա. "Ի սկզբան նահապետութե աշխարհիս Հայոց եւ Վրաց, 'ի ցեղապետութե մերայինս սեռի նախնոյն Թորգոմայ, էին նորա որդիք ութ ահաւորագոյնք եւ հսկայակերպք. որոց առաջինն եւ երիցագոյնն Հայկ, երկրորդն Քարթլաւս, երրորդն Բարդաւս, չորրորդն Մովկան, հինգերորդն Լեկան, վեցերորդն Հերաւս, եօթներորդն Կովկաս, ութերորդն Եգրէս: Այս բաժանեալ Թորգոմայ զժառանգութիւս որդւոց իւրոց, տայ զՀայաստան աշխարհն բոլոր սահմանօքն Հայկայ, եւ զծմակային աշխարհն Քարթլաւսայ եւ այլ եղբարցն ",:*

*Առաջին տեղի ուր տիրեաց Հայկ յետ դարձի իւրոյ 'ի Սենաարայ եւ արար շինութի, եղեւ Հարք գաւառ Տուրու-*

բերանոյ [1]։ Արմենակ որդի Հայկայ եղև առաջին որ եկն յԱյրարատ նահանգ, և տիրապետեալ կալաւ բնակութիւն 'ի դաշտին Արագած լերին. իսկ երկու եղբարք նորա Մանաւազ և Խոռ՝ 'ի Հարք և 'ի Խոռխոռունիս բնակեցան. և Բազ որդի Մանաւազայ 'ի Բզնունիս, որք առհասարակ են 'ի Տուրուբերան մինչև յեզր Աղի ծովուն՝ որ այժմ կաչի ծով Աղթամարայ։ Արմայիս որդի Արմենակայ կալաւ զբնակութիւն իւր յԱրմաւիր. իսկ Շարայ որդի նորա 'ի Շիրակ։ Սոքա առհասարակ բաց 'ի Մանաւազեանց զԱյրարատ նահանգ կալեալ ծաղկեցուցին բնակութեամբք։ Գեղամ թոռն Արմայիսայ եղև առաջին, որ ել արտաքս քան զԱյրարատ նահանգ, եկն 'ի ծովակն Գեղաքունի, ուր ծնեալ զՍիսակ՝ “Սահմանս հաստատեալ նմա (ասէ Խորենացին Ա. 12.) ժառանգութիւն 'ի ծովէն ընդ արևելս մինչև ցդաշտ մի՝ ընդ որ գետն Երասխ հատեալ զքարանձաւս լերանց անցանէ . . . աստ բնակեալ Սիսակ լնու շինութեամբ զսահմանս բնակութեան իւրոյ, և զաշխարհն կոչէ իւրով անուամբն Սիւնիք ,,։

Մինչև ցաստ միայն յիշելով Խորենացւոյն զտեղիս տիրապետելոյ մերոց նահապետաց, այնպէս երևի թէ միայն յերկիս նահանգս տիրապետեցին մերքն, 'ի Տուրուբերան, Այրարատ և 'ի Սիւնիս. բայց պատմութիւն Արամայ զոր յետ այսորիկ դնէ, յայտնի ցուցանէ թէ թոռունք նահապետացս նաև ընդ համօրէն մեծ Հայս ծաւալեալ տիրապետեալ ունէին. զի առհասարակ զմեծ Հայս կոչէ Բնիկ Երկր [illegible]. որ է ասել՝ բնիկ սահման Արամայ։ Որում քանզի որիկայք ոմանք 'ի շրջակայ ազգաց բռնացեալ էին յիւրում ժամանակի՝ որ էր յաւուրս Իսահակայ եբրայեցւոց նահապետի, Արամ զօրանաւորութեամբ նոցա վանեալ՝ զհայրենաժառանգ զերկիր իւր ազատեաց. նաև նոր երկիրս յաւելեալ 'ի վերայ առաջնոյ սահմանին զաշխարհ մեր ընդարձակեաց, զոր 'ի յետագայ յօդուածդ պատմեսցուք։

1 Իսկ թէ վասն էր Երկիր Արարատայ կոչէ Խորենացին, տես 'ի գլուխն [illegible] Հայաստանեայց։

# ՅՕԴՈՒԱԾ Բ

### Ընդարձակութեան աշխարհիս և փոքրութեան 'ի ժամս մերոց աշխարհակալաց։

### Ա. Ընդարձակողք և աշխարհակալք։

## ԱՐԱՄ

Սա եղև առաջին աշխարհակալ և ընդարձակող. զոր մէ Խորենացին գ. 12. "Արամայ բազում գործք քաջութ̃ պատմին մարտիւք նահատակութ̃, և ընդարձակեալ զսահմանս Հայոց յամենայն կողմանց„։ Զոր Յոհաննէս կաթողիկոս իւրև մեկնելով յայս ձև փոխադրէ. "Ընդարձակեալ առի հարստահարութ̃ զսահմանս Հայոց ընդ չորս ոլորտս երկրի„. որ է ասել ընդ չորս կողմանս աշխարհիս։ Իսկ թէ ո՞ր պատճառաւ եղև Արամայ այսպէս ընդարձակել, Խորենացին 'ի 13. գլ. յայտ առնէ ասելով. "Սա այր աշխատասէր և հայրենասէր եղեալ, որպէս ցուցանէ նոյն պատմագիր (Մարիբաս), լաւ համարէր զմեռանելն 'ի վերայ հայրենեացն՝ քան թէ տեսանել զորդիս օտարածնաց կոխելով զսահմանս հայրենիս, և հարազատից արեան նորա տիրել արանց օտարաց„. իմա, արանց օտարաց տիրել 'ի վերայ հարազատից արեան նորա։ Որով բանիւ յայտ առնէ թէ յայնժամ օտար բռնաւորք արշաւեալք 'ի ներքս յաշխարհս մեր, ըստ մասին ասպատակութ̃, և ըստ մասին բռնակալութ̃ դրաւեալ ունէին, յորոց ամենեցուն առ 'ի զերծուցանել Արամայ զաշխարհ մեր, հարկ կալաւ խաղալ 'ի վերայ նոցա. և նովին պատճառաւ յաւել առնուլ նաև նոր երկիր, և յաւելուլ յաշխարհ մեր։

Նախ՝ յարևելեան կողմանէ ազատեաց զսահման իւր վանելով զՄարս. զորս Խորենացին բանիւ Մարիբասայ Մեդացիս կոչէ, որոց առաջնորդ լեալ Նիւքար ոմն Մադէս կոչեցեալ, ասպատակութ̃ արշաւեալ զամս երկուս զսահմանս Հայոց ծառայեցուցանէր, և ոչ միայն յաշխարհէս Հայոց արտաքս եհան Արամ, այլ և զնոյն ինքն զՆիւքար

ապանեալ, «Զաշխարհն նորա մինչեւ ցԵրասխ անուանեալ Զարասպ՝ 'ի ծառայութե հարկի կալաւ մինչեւ ցԹագաւորութիւն Նինոսի 'ի վերայ ասորեստանի եւ Նինուէի »: Վասն Զարասպայ զայս ինչ պարտ է գիտել, զի Ստրաբոն եւ Պլինիոս յիշեն զԶարիասպ քաղաք, որ 'ի համանուն գետոյ ընկալաւ զանուն իւր, ասէ Պլինիոս Զ. 16. եւ ապա կոչեցաւ Պագդրուամ. իսկ Ստեփաննոս յիշէ զԶարիասպա: Եւ քանզի սոքա յաշխարհին բակտրիացւոց են, որ 'ի հարաւոյ պատեալ է Բարօբամիսիս լերամբք յորոց բղխէ Ինդոս գետ, յայտ է թէ եւ այս լեառն Զարիասպ էր յաշխարհին յայնմիկ: Այսչափ ահա ընդարձակեաց Արամ զտէրութիւն իւր յարեւելից կողմանէ:

Երկրորդ՝ 'ի հարաւոյ կողմանէ կրկին քաջութիւնս գործեաց. խաղաղացոյց զաշխարհ մեր, ընդարձակեալ զսահմանս եւ յայլոց աշխարհաց, որպէս ասէ Խորենացին. «Արամ յետ մեծարելոյ Ճակատուն՝ որ ընդ արեւելեայս, խաղայ նոյն զօրութեամբ զկողմամբք ասորեստանի. գտանէ եւ անդ զոմն ապականիչ երկրին իւրոյ ... Բարշամ անուն »: որոյ առաւելի հարկապահանջութեամբ նեղեալ զնահանգս, անապատ առնէր զամենայն շրջակայս: Ասելովն Խորենացւոյն զկողմանս ասորեստանի, եւ Նինուէ իսկ, իմանայ զայն երկիրս մեծին Հայոց՝ որք անուանեցան Կորճէք կամ Կորդուք, Մոկք եւ Պարսկահայք. զի եւ այլ ուրեք 'ի գիրս իւր Ասորեստանեայց կողմն կոչէ զսոսա: Զի նոյն գրէ. «Արամ հալածական ընդ մէջ Կորդուաց 'ի դաշտն ասորեստանի արկանէ, զբազումս 'ի նոցանէ սատակելով »: որպէս եւ զնոյն ինքն զԲարշամ: Այսպէս ծանուցանէ եւ զընդարձակելն նորա ասելով. « Իսկ զմեծ մասն դաշտացն ասորեստանի կալաւ 'ի ծառայութե հարկի Արամ բազում ժամանակս »: Դաշտ ասորեստանի ասելով իմանայ, որպէս կարծեմ, զՄիջագետս: Զայսոսիկ երկուս կողմանս զարեւելեանն եւ զհարաւայինն՝ յանձնեաց 'ի պահպանութե երկուց ցեղից, որպէս ասէ, «Միսակեանցն զԱրեւելս, եւ որք 'ի Կադմեայ տանէն՝ զԱսորեստանեայն »: որ է ասել զհարաւայինն: Այսուհետեւ անկասկած մնաց Արամ 'ի հրոսակաց երկուց կողմանցս այսոցիկ:

Երրորդ՝ քան զնախայիշեալ կողմանսդ երեւելի է ընդարձակել Արամայ յարեւմտից կողմանէ: Մի՝ զի որք անդն տիրապետէին, զօրաւորք էին, զորս Տիտանեանս կոչէ. «Այլ որ ինչ յարեւմուտս կոյս ընդ Տիտանեանցն է, սորա գործ քաջութե՝ ասել կայ մեզ առաջի »: Որք Տիտա-

նեան ամն Պայապիս Քաղեայ անուն բռնացեալ ունէր զմիջոց երկուց ծովուց՝ զՊոնտոսին և զՈվկիանոսուն, յոր անուն կոչէ զՄիջերկրական ծովն ։ Զպայապիս այնպէս հալածական արար Արամ, մինչև փախստական էարկ 'ի կղզի ինչ ասիական ծովուն, այսինքն է՝ 'ի կղզի ինչ արշիպեղագեան. որ է ասել, թէ 'ի բաց եհան զնա 'ի փոքր Ասիոյ. և ինքն Արամ եղև յայնժամ տէր համօրէն փոքուն Ասիոյ։

Երկրորդ՝ երևելի եղև ընդարձակութիւն այսր կողման՝ ըստ որում յինքն սեփականեցոյց և զմասն ինչ առեալ երկրին, և յաւել յիւր առաջին աշխարհն՝ երկու ինչ առնելով զոր չէր արարեալ 'ի միւս կողմանս ։ Մի՝ զի յետ դառնալոյ իւրոյ անտի՝ եթող անդ իբր իւր կողմնապահ "զամն Մշակ անուն յազգէ իւրմէ, և բիւր մի 'ի զօրաց իւրոց 'ի վերայ աշխարհին„. որոյ զօրանիստ տեղին եղև Մաժաք քաղաք, որ զկնի կոչեցաւ Կեսարիա ։ Երկրորդ՝ Արամ "ի տեղեացն այնոցիկ մինչև ցբուն իւր սահմանսն՝ զբազում անբնակ երկիր ելից բնակչօք„ ։ Եւ առ 'ի բովանդակ յինքն սեփականել՝ "հրամանս տայ բնակչաց աշխարհին՝ ուսանել զխօսս և զլեզուս հայկական„ ։ Վասն այսպիսի գործոց այնչափ անուանի եղև Արամ յայս կողմն, զի գաւառք երկրիս յանուն Արամայ սկսան կոչիլ. "Վասն որոյ մինչև ցայսօր ժամանակի, ասէ, անուանեն զկլիմայն զայն Պռոտին Արմենիան, որ թարգմանի առաջին Հայք„ ։

Ի կողմանէ հիւսիսոյ ոչինչ պատմէ Խորենացին ընդարձակեալ Արամայ, այլ առ 'ի Ճշգրտիւ հաստատարմանալ առաջին բանից իւրոց՝ ուր ասաց, ընդարձակեաց յամենայն կողմանս, և Ցոհաննու կաթողիկոսի ընդ նորա ոլորտս երկրի, հարկ է ասել՝ թէ Արամ էր որ կամ մինչ 'ի վերջին սահմանս 'ի Կուր գետ ընդարձակեաց զմեծ Հայս, և կամ ինքն եղև առաջին որ յանկոյս Կուր գետոյ անցեալ՝ զՎիրս և զԱղուանս հպատակ և հարկատու կացոյց իւրոյ տէրութեան ։

## ՄԵԾՆ ՏԻԳՐԱՆ

Երկրորդ ընդարձակող. զոր և յայն սակս Խորենացին Ա. 23. բանիւ Մարիբասայ կոչէ [illegible], [illegible], յաղթող ընդ այլ աշխարհակալս. զի 'ի մէջ հայկազունեաց ոչ ոք գտաւ հաւասար սմա, զորոյ թողեալ զբարուց կատարելութիւն, և զաշխարհաշէն բնութիւն, զորս այլուր ունիմք յիշատակել, գրեսցուք միայն զընդարձակութիւն աշխար-

հիս 'ի ձեռն նորա ։ Այս է զոր ասէ Խորենացին ա̃. 24. " Մամենեցունց թագաւորացն մերոց հարստագոյն և խոհեմագոյն. և արանցն այնոցիկ և ամենեցուն քաջ . . . զսահմանն մերոյ բնակութեան ընդարձակեալ, 'ի հինսն մեր հաստուցանէ յեզերս ծայրից բնակութեանց ,, ։ Որով բանիւ յայտ առնէ, թէ յառաջ քան զՏիգրան նուաճեալ էր սահմանս աշխարհիս մերոյ, զոր Տիգրան 'ի հին ծայրս հաստոյց, այսինքն է յայն ծայրս՝ որպէս էր 'ի հնումն աշխարհ մեր. զոր և քաջ բացատրէ ստորև յաւելուն. " Արութեն ցուցեալ՝ զազգս մեր բարձրացոյց, և զընդ լծով կացեալս լծողիս և հարկապահանջս կացոյց բազմաց ,, ։

Նախ քան զՏիգրան բազում սահմանք աշխարհիս ընդ լծով այլոց անկեալ էին ասէ, և հարկս տային. Տիգրան ձեռնթափ արարեալ 'ի նոցանէ զաշխարհ մեր՝ ազատեաց 'ի լծոյ և 'ի հարկաց. և ընդ հակառակն զայլս արար մեզ հարկատուս ։ Բայց ո՛յք էին որք հարկս տային մեզ՝ ոչ յիշէ. միայն 'ի գլ. 29. գրէ վասն սորին Տիգրանայ. " Եւ ժողովէ որքային Հայոց 'ի սահմանացն կապադովկացւոց, և արշաւէ ընտիրք Վրաց և Աղուանից աշխարհին, և զամենայն ընտիրս Հայոց մեծաց և փոքունց, և խաղայ ամենայն զօրութեամբ իւրով զկողմամբք Մեդացւոց ,, . այսինքն է Մարաց, 'ի վերայ Աժդահակայ ։ Այս բան յայտ առնէ թէ սորա ամենեքեին էին ընդ տէրութ̃ նորա. վասն որոյ հարկատուս կացուցեալ իմանամ ես յայնժամ Տիգրանայ ըզՎիրս և զԱղուանս, նաև զամենայն սահմանս Կապադովկիոյ ։

Բայց չիմանամ զոր ասէ 'ի գլ. 24. " ԶԾոփս ոչ առկաւ ժամանակս ընդ իւրև նուաճեալ հնազանդէր ,, , ասկս անորոշ թողլոյ թէ Ծոփք անուամբ զորս կամի նշանակել. ինձ թուի զբնակիչս փոքուն Ասիոյ կամի առնել, առ որ 'ի դէպ գայ զոր զկնի ասէ. " Զսահմանս մերոյ բընակութեան ընդարձակեալ՝ 'ի հինսն մեր հաստուցանէ յեզերս ծայրից բնակութեանց ,, ։ Այսու յայտ առնէ թէ այն Ծոփք սահմանակիցք էին մեծին Հայոց. զոր օրինակ է փոքրն Ասիա, և ուր 'ի հնումն հաստոյց մերն Արամ զեզերս ծայրից բնակութեանց, որպէս նշանակեցաք 'ի վերայ ։

Այլ յոյժ առաւել մեծութի և ընդարձակութի տայ Խորենացին Տիգրանայ, յորժամ դաշնակից և աջակից Կիւրոսի ասէ զնա լեալ. և նովաւ հանդերձ մեծապէս ընդարձակեալ զիւր տէրութի. նմին իրի ասէ 'ի գլ. 31. " Բազումս անուանեալ Տիգրան. (բայց) մի է և միայնակ 'ի

հայկազանցս (Տիգրան), որ զԱժդահակ սպան և զտուն նորա 'ի գերութիւն վարեաց և զԱնոյշ մայրն վիշապաց։ Օժանդակ կամօք և յօժարութեամբ զԿիւրոս ունելով զիշխանութիւնն Մարաց և Պարսից յինքն յափշտակեաց»[1]։

## ՎԱՂԱՐՇԱԿ Ա

Յորժամ մեծն Արշակ թագաւոր Պարսից և Պարթևաց հնազանդեցոյց ասէ Խորենացին ա. 8. «զամենայն տիեզերս ընդ իւրով ձեռամբ, սա թագաւորեցուցանէ զեղբայր իւր զՎաղարշակ 'ի վերայ աշխարհիս Հայոց, պատեհ իմն համարեալ այսպէս անշարժ իւրոյ թագաւորութեանն լինել»։ Կամի ասել՝ թէ գոլով այր ողջախորհուրդ, ծանեաւ թէ յոյժ դժուարին էր նմա զամենայն երկիրն զոր առեալն էր՝ պահել ընդ իւրով հնազանդութեամբ զերկար ժամանակս. վասն որոյ խորհեցաւ զՎաղարշակ զեղբայր իւր ուրոյն թագաւոր կացուցանել 'ի վերայ Հայոց, և նմին յանձնել զտէրութիւն կիսոյ աշխարհին իւրոյ. որպէս գրէ 'ի գլ. 9. յասելն վասն Արշակայ. «Ուրախացեալ այսպիսի միտս ունել եղբօր իւրոյ (Վաղարշակայ), որում զկէս թագաւորութեան իւրոյ հաւատացեալ էր»։

Իսկ այս կէս թագաւորութեան իւրոյ թէ որչափ ինչ սահման էր զոր ետ Վաղարշակայ՝ յիշէ 'ի գլ. 8. «Քաղաք թագաւորութեան տայ նմա զՄծբին, և սահմանս հատանէ նմա զմասն ինչ յարևմտեայ Ասորւոց և զՊաղեստին և զԱսիայ և զամենայն միջերկրեայս և զԹիտալիա, 'ի ծովէն Պոնտոսի մինչև 'ի տեղին՝ ուր Կովկաս յարևմտեանն յանգի ծով, և զԱտրպատական»։ Արևմտեան Ասորւոց մասն ասելով իմանայ զայն որ Կղեսուր կամ յունարէն Գոիլ-սիրիա կոչեցաւ. այսինքն Խորին Ասորիք[2]։ Միջերկրեայ ասելով իմանայ զամենայն փոքր Ասիա. այսինքն զայն ամենայն սահմանս որ անկանին 'ի մէջ Պոնտոս ծովու և միջերկրական ծովու, որպէս և այլուր ծանուցեալ է մեր։

1 Բայց մեզ անծանօթ մնայ բան Յոհաննու կաթողիկոսի. որ յետ գրելոյ թէ Տիգրան զԱժդահակ սպանեալ՝ զորդեսն նորա 'ի գերութիւն վարէր, ասէ. «Եւ օժանդակեալ եւ յԱնուշ մօրէն վիշապաց, և կալեալ զԿիւրոս, յինքն զիշխանութիւն Մարաց և Պարսից դարձուցանէր»։ Զի յայտ է թէ Տիգրան զԿիւրոս օժանդակ կալաւ, և ոչ 'ի կալանս. իսկ յԱնուշ մօրէն ոչինչ եղաւ օժանդակութիւն. վասն որոյ յայտնի երևի վրիպակ գրչաց սայթաքեալ յայս բան նորա, փոխանակ Աժդահակայ կամ Կրեսոսի՝ Կիւրոս գրեալ։

2 Զայսմանէ թէպէտ գրեալ է մեր 'ի մեծ Հայս, այլ աս 'ի հաստատութեան դարձեալ ունիմք խօսել։

Թիտալիա ասելով իմանայ զՍկիւթիա [1], որոյ մեկնութիւն է զոր յաւելու, 'ի Պոնտոս ծովէ մինչ յարեւմտեան ծով [2], այն է ծովն Կասպից։ Ցայս բան իմանայ զեգերացիս, զՎիրս, զԱղուանս և զայն ամենայն ազգ. կովկասային որք բնակեալ կան 'ի մէջ երկուց նախադրեալ ծովուց։

Օ իշխողութ Վաղարշակայ 'ի վերայ սահմանացս յայտնի յիշէ Խորենացին Բ. 6. յասելն զՎաղարշակայ՝ թէ յետ սատակելոյ զՄորփիւղիկէ, "Կարգէ զկողմանս Մաժաքայ և զպոնտացիս և զեգերացիս. դառնայ առ ստորոտովն Պարխարայ ընդ մէջ Տայոց ,,։ Եւ թէ. "Այս կոչեցեալ (Վաղարշակ) զվայրենի եկամուտ ազգն որ 'ի դաշտին Հիւսիսոյ և որ զստորոտով մեծի լերինն Կովկասու. և որ 'ի հովիտս կամ 'ի ձորս . . . պատուէր տալով. . հրամանաց և հարկաց արքունի հպատակ լինել ,,։

Բայց թուի թէ Վաղարշակ 'ի վերայ այսոցիկ սահմանաց յաւել զբաւելով և զայլ տեղիս. զի զայս ցուցանէ բանն Խորենացւոյն Բ. 3. յասելն վասն մեծին Արշակայ պարթեւի. "Թագաւորեցուցանէ զեղբայր իւր Վաղարշակ ('ի վերայ) մերոյ աշխարհիս [3], զՀիւսիսի և զարեմուտս տալով նմա սահմանս. ուր որպէս յառաջնումն մերում մատենին գրեցաք, այր քաջ և խոհեմ (գոլով) ընդարձակեաց 'ի վերայ սահմանաց իւրոց ,,։ Ցայս բանն Խորենացին Հիւսիսի և Արեւմտեան սահման կոչէ զնախայիշատակեալ սահմանս. զի մասն Ասորւոց, Պաղեստին և փոքրն Ասիա, առ հասարակ անկանէին ընդ արեւմուտս մեծին Արշակայ որ նստէր 'ի Բահլ քաղաքի. իսկ սահմանն որ 'ի ծովէն Պոնտոսի մինչև 'ի ծովն Կասպից՝ անկանէր 'ի հիւսիսոյ։ Արդ այսոքիկ հիւսիսի և արեւմտեան սահմանքն էին, զորս տուեալ էր Վաղարշակայ Արշակ եղբայր իւր, և զորս կոչէ նոր սահմանս. և քանզի ընդարձակեաց ասէ 'ի վերայ սահմանաց իւրոց, տայ իմանալ՝ թէ

1 Քանզի բառդ ուրեք առ պատմագիրս մեր գտանեմք 'ի կիր առեալ զԹիտալիայ անուն, որ ըստ Յունաց գրի Թետտալիա կամ Թեսսալիա. որպէս և առ Եղիշէի, ուր գրեալ կայ Իտալիա. կամ որպէս Ասալիա, Սոթաղա, և կամ որպէս Թեփալիա։

2 Զկասպից ծովն կոչէ աստ Արեւմտեան ծով, ոչ Խորենացին, այլ Արշակ, զի Արշակ էր որ եռ զայսոսիկ երկիրս Վաղարշակայ. և նա այսպէս անուանէր. քանզի ըստ երկրին Պարթեւաց ուր նստէր Արշակ, յարեւմուտս անկանէր ծովն Կասպից։

3 Մարաբան 'ի Թղթահաւաքումն 745. գրէ թէ Պարթեւք որք տիրեցին Մարաց և Բաբելոնացւոց՝ զՀայս ոչ երբեք զլխաւորը ածին։ Այս բան նորա ըստ այսմ ունի ստուգութիւն, զի Արշակ պարթեւ կացուցանելով զեղբայր իւր զՎաղարշակ թագաւոր 'ի վերայ Հայոց անկախ յիւրմէ, ուրեմն թագաւորութիւն կացոյց հայաստանեայց, որպէս և էր յառաջ։

Վաղարշակ ինչ ինչ եւս յաւել 'ի վերայ ։ Եւ չեն ինչ զարմանք . զի որպէս գրէ նա ինքն Խորենացին ա . 8 . Արշակ յետ տալոյ Վաղարշակայ զայն ամենայն սահմանս , ասաց նմա . "Եւ այլ որչափ միտք քո և քաջութիւն հասանեն . զի սահման քաջաց սուր՝ զէնն իւրեանց . որքան հատանէ՝ այնքան ունի ,, ։

Յետ իմանալոյ զայս ամենայն , պարտ է մտադիր լինել և 'ի բանս անդ՝ յորում Վաղարշակ ընդ սահմանաւ նահանգին Աղձնեաց դնէ ապա զԿղեսուրն , որ է հայկական անուն Գիլիսիրիայի ։ Բայց Սէն Մառդէն 'ի բանասիրական օրագրութեան Փարիզու 1828 . նոյեմբեր . ոչ ընդունի , զի միայն յայն բան Խորենացւոյն հայի , յորում զսահմանէ Աղձնեաց բդեշխին են բանք . վասն որոյ և զարմանայ , թէ զիա՞րդ մարթ էր բդեշխիս այս իշխել և սահմանին Աղձնեաց որ էր առ Տիգրիսիւ , և միանգամայն իշխել Գիլիսիրիայի որ էր առ Որոնդիս գետով կարի 'ի բացեայ յԱղձնեաց ։ Այլ պարտ էր նմա քաջ 'ի միտ առնուլ և զվերոյգրեալ բան Խորենացւոյն , ուր ասէ՝ թէ Վաղարշակ իշխէր նաև արևմտեայ մասին Ասորւոց և Պաղեստինոյ , և այլն , որ յոյժ հեռի են քան զԳիլիսիրիայն , յորոց վերայ հարկ էր նմա դնել իշխան և կառավար զոմն, զոր միւս բանիւն յայտ առնէ՝ թէ զբդեշխն Աղձնեաց կացուցեալ էր 'ի վերայ արևմտեայ մասին Ասորւոց , որ էր միանգամայն և զօրագլուխ հարաւային գնդին . իսկ իշխօղն այնչափ հեռաւոր տեղեաց հարկաւ պէտս ունէր բազմութեան զօրաց ։

Զանուանս Գեղխոսոր զառ 'ի Պրոկոպիոսէ յիշատակեալ ուրեք ուրեք զոր հաւաքեալ նշանագրեցաք 'ի մեծ Հայս , զի մի ընթերցողն ընդ Կղեսուրին շփոթեսցէ զոր յիշէ աստ Խորենացին , ինքն Սէն Մառդէն զէն 'ի ձեռն առնու ըղնոսին հերքել զբանս մեր . այլ թէ քանի վրիպակ գործէ՝ կորովամիտ ընթերցողն կարէ իմանալ ։ Նախ՝ զի Խորենացին զԱղձնիս յիշելով , ապա զԿղեսուրն ամենայն, յայտ առնէ թէ Կղեսուրն ոչ էր յԱղձնիս , այլ արտաքոյ նորա ։ Իսկ ասելն Սէն Մառդենի՝ թէ բդեշխին Աղձնեաց եւս իշխել ամենայն Գեղխոսրաց կամ կըձից որ էին արտաքոյ Աղձնեաց՝ այլ 'ի հայաստան , այս ամենևին ընդդէմ է կառավարութեան զոր ոչ դիտէ Սէն Մառդէն . զի զիա՞րդ հնար է իշխանի միում նահանգի իշխել 'ի սահմանս ինչ այլում իշխանի . այլ իշխանք իւրաքանչիւր նահանգաց իշխէին նաև Գեղխոսրաց կամ կըձից որք գտանէին յիւ-

րեանց Նահանգի ։ Երկրորդ՝ եթէ Վաղարշակ ամէն բանիւ իշխան էր կացուցեալ 'ի վերայ կրճից, Խորենացին ոչ 'ի գործ ածէր զյունականն անունս Կղիմատ, որ անլուր և անծանօթ է յամենայն գիրս մեր և յամենայն հայատառս. այլ 'ի գործ ածէր զսովորական անուանն յազգին մերում, որք կոչէին Դրունք. և ունէր գրել՝ թէ ետ նմա և զամենայն դրունս. և ոչ 'ի գործ ածէր 'ի միաւորականն իւրև անուն միոյ աշխարհի կամ նահանգի՝ առեալ զԿղիմատ անուանն ։ Ո՛ւր թողցուք, զի ոչ միայն Գիլլիոնի անուանն, այլ նաև այն դրունք կամ կիրճք անլուր են 'ի մեզ. եթէ զայն կամէր նշանակել Խորենացին, իւրք իրօք բացատրէր ։

## ԱՐՏԱՇԷՍ Ա

Սորա ընդարձակութիւն կամ գէթ յօժարութիւն ընդարձակելոյ զանցոյց զամենեքումբք որ յառաջ քան զինքն, և որ զկնի ։ Նախ՝ ընդ իւրև պահեալ ունէր զսահմանս թողեալս 'ի Վաղարշակայ որչափ ինչ կային նորա . զայս յայտ առնէ բանն Խորենացւոյն Բ. 11. յասելն վասն Միհրդատայ փեսայի Արտաշէսի, թէ Արտաշէս "հաւատայ սմա (Միհրդատայ) զկողմնակալութիւն հիւսիսային լերանցն և Պոնտոս ծովուն" ։ Յայտ արարեալ թէ ընդ իւրև էին ազգք բնակեալք 'ի հիւսիսային լերինս, յոր անուն կոչէ զԿովկասու լերինս . ընդ իւրև էին և ազգ ինչ զծովեզերբք Պոնտոսի բնակեալք՝ որպէս էին յաւուրս Վաղարշակայ՝ նաև յաւուրս Արշակայ հօր իւրոյ՝ որ "պատերազմելով ընդ պոնտացիս, ասէ Բ. 9. և նշանակ եթող յեզեր ծովուն մեծի զնիզակն իւր" ։ Միայն համօրէն փոքր Ասիա 'ի սկզբան անդ չէր նուաճեալ ընդ իւրև, որպէս էր յաւուրս Վաղարշակայ . զի 'ի Լիւդիա որ 'ի փոքուն Ասիա, նստէր յայնժամ ուրոյն թագաւոր Կրեսոս ըստ վկայութեանցն զոր բերէ և հաստատէ Խորենացին Բ. 13. այլ յետ բառնալոյ զԿրեսոս տիրեաց Արտաշէս, "նուաճեալ զցամաքս միջոցաց ծովուցն երկոցունց" . Բ. 12 ։ Եւ առաւել գրէ ստորև . "Արտաշիսի նուաճեալ զցամաքս միջոցաց ծովուցն երկոցունց, լնու զՈվկիանոս (զմիջերկրական ծով) բազմութեամբ նաւաց" ։

Յետ պահելոյ զայսոսիկ սահմանս ինքն Արտաշէս յոյժ առաւել քան զՎաղարշակ և քան զԱրշամ ձգեաց զիւր արշաւանս արտաքոյ իւրոց սահմանաց ։ Նախ՝ զԱրշական ընդ իւրով ձեռամբ կացոյց թագաւոր Պարսից, զնախա

դահուՃին յինքն առեալ, և զերկրորդական գահն նմա տուեալ, մինչ նաև զարքունիս իւր 'ի Պարսից աշխարհին շինեաց։ Այսա հրամանն տուեալ զօր յարուցանել յարևելից և 'ի հիւսիսոյ բազում յոյժ՝ խաղաց յարևմուտս. որով յայտ առնէ թէ այսոքիկ արևելեան և հիւսիսային ազգք էին ընդ իւրև. և բազմութե նաւուց ընդ Ելլեսպոնտոս 'ի Թրակիա անցեալ խաղաց 'ի վերայ յունաստանի ծառայեցուցանել կամելով զբոլոր արևմուտս։ Նոր էր արշաւանքս այս, զի ոչ ոք յառաջ քան զնա խաղացեալ էր 'ի կողմանս յայնոսիկ, վասն որոյ և Խորենացին Տիգրանակալ կոչէ զնա յասելն 'ի վերնագրի 13 գլխոյն. ի. "Վկայութիւք Տիգրանակալութեն Արտաշիսի"։ Զի առաջինս այս Արտաշէս համարի առ ընդարձակելոյ զտէրութի իւր ելեալ 'ի պատերազմ որպէս զՍեսոստր և զայլս յաշխարհակալաց. զի Արամ ել ոչ յընդարձակել, այլ առ 'ի զերծուցանել 'ի բռնաւորաց. Մեծն Տիգրան առ 'ի զերծանել 'ի դաւաճանութեց Աժդահակայ. Վաղարշակ առ 'ի կանգնել զնոր տէրութի, որով հարկ լինէր ջնջել զբռնաւորս որք տիրեալ էին առաջին սահմանացն Արամայ և Տիգրանայ։

Նոյր Արտաշիսի առեալ կամ 'ի հարկի կացուցեալ տեղիք ըստ չորից հին պատմագրաց, զորոց զանուն բերէ Խորենացին ի. 13. բաց 'ի յիշելոցս են Թեբէ, Բաբիլոն, փոկէացիք, լակեդեմոնացիք, զովկիացիք, բիւտացիք, Ելլադայ։ Այմենայն սահմանքս այսոքիկ լայնածաւալք են, և սահմանք ազգաց քաջաց հռչակաւորաց 'ի գիրս. բայց Արտաշէս Ն. ոչ զմին 'ի սոցանէ կարաց ընդ իւրև պահել, զի աղմուկ լեալ յիւրում բանակին, անդ խողխողի յիւրոց զօրաց։

## ՄԻՀՐԴԱՏ

Զսա ևս 'ի կարգս մերոց աշխարհակալաց դասեմք, զի յանուանէն թուի լինել ազգաւ հայկազուն։ Դարձեալ և ազգակցութ փեսայացեալ էր մերոյն Արտաշէսի, և քեռայր լեալ միջին Տիգրանայ Թագաւորի, նաև գործք նորա խառնեալ ընդ գործս մերոց Թագաւորաց. վասն որոյ և Յոհաննէս կաթողիկոս զսորա առեալ տեղիս ևս սեփական համարի Հայոց, յասելն վասն Ամասիոյ. "Այս Միհրդատ երթայ ունի ևս զԱմասիա ... և ընդարձակագոյնս զնա պարսպեալ, և գրաւելով զնա 'ի Հայս, տիեզերբասահման քաղաք զնա յարդարեալ կոչէ"։ Ինքն գոլով Թագաւոր Պոնտոսի՝ վեցերորդ Միհրդատ ձայնեալ 'ի

կարգս Թագաւորաց Պոնտոսի, Եւպատոր մականուանեալ կամ հօրանմայն կամ քաջահայր, գրաւեաց զզանազան աշխարհս փոքուն Ասիոյ՝ որք 'ի բաց ելեալ էին 'ի տէրութէ Հայոց, զԿապադովկիա, զՓռիւգիա, զՄիւսիա, զԿարիա, զԼիւկիա, զՊամփիւլիա, զՊափլագոնիա, զԿողքիս, և գրեթէ զամենայն աշխարհս փոքուն Ասիոյ, 'ի մտի եդեալ խաղալ մինչև 'ի Հռոմ. բայց 'ի խաղալ Սիղղայի հռոմայեցւոյ 'ի վերայ նորա, կորոյս զամենայն գրաւեալ աշխարհս, կացեալ միայն Թագաւոր Պոնտոսի։

Դարձեալ միացեալ ընդ Տիգրանայ մերում 140 հազար հետևակօք. 16 հազար հեծելազօրօք էառ զամենայն Բիւթանիա։ Իսկ 'ի պաշարելն զԿիւզիկոն, որ այժմ կոչի Երտէկ, վանեցաւ 'ի Ղուկուղղոսէ հռոմայեցւոյ. յորժամ փոխանակ Ղուկուղղոսի եկն Կլաբրիոն՝ Միհրդատ անդրէն գրաւեաց գրեթէ զամենայն, այլ դարձեալ յաղթեցաւ 'ի Պոմպէոսէ։ Ի գրաւեալ երկիրսն՝ տեղիք յորոց սակս կարեմք դասել զսա 'ի թիւս ընդարձակողաց՝ եղեն Թրակիա, Ցունաստան, Մակեդոնիա, երևելի քաղաքք բազումք, որպէս և Աթէնք 87 ամօք նախ քան զՔրիստոս. իսկ 'ի հիւսիսակողմն Պոնտոսի՝ Տաւրիա և Կիմմերիանք[1], կամ անձնատուր լեալք և կամ հարկատու։ Այսոքիկ են ընդարձակութիք աշխարհիս և տէրութե յիշատակեալք յաւէտ 'ի գիրս մեր և մեզ ծանօթք. այլ առ Ստրաբոնի ժա. 528. յիշատակի ընդարձակութիւն նոյն աշխարհիս ամենևին օտար. զոր և նմին իսկ իբր զրոյցս իմն յառաջ բերէ, և ոչ հաստատելով[2]։

1 Թէ զիարդ էառ Միհրդատ զՔերսոնեսոն պատմէ Ստրաբոն Է. 309։ Վասն առնլոյ նորա զԿողքիս, և գոլոյ ազգական Ստրաբոնի, պատմէ 'ի ժա. 499։ Վասն Պոնտոսի թագաւորութե նորա. ժբ. 540 և 541։ Սոյնև 'ի ստորագրելն զՊոնտոս՝ զայս ամենայն ծովեզերս ընդ իւրև գրաւեաց ասէ Միհրդատ 'ի 544 և 545. ուր և գրէ վասն Ամասիոյ։

2 « Աւանդի (ասէ) 'ի պատմութիւնս, թէ Հայաստան երբեմն գոլով փոքր, ընդարձակեալ եղև 'ի ձեռն Արտաքսիայ և Զարիադրայ. որք յառաջագոյն գոլով զօրավարք մեծին Անտիոքայ՝ 'ի պարտուելն նորա ինքեանք կալան թագաւորութի։ Մին 'ի Սոփենի (Ծոփք), յԱկիլիսինի (յԵկեղեաց), և յՕդոմանտիսի. Իսկ միւսն 'ի շուրջակայս Արտաքսատու։ Եւ զՀայաստան ընդարձակեցին զօրաւորք առնելով մասն ինչ 'ի շրջակայ տէրութեց. 'ի Մարաց առին զԿասպիանէ, զՓաւնիտիս և զՎասորոպեդա։ Ի Վրաց՝ զորս են առ Պարիադրեան լերամբ, և զԽորզենէ, և զԳոգարենէ, որ է յայնկոյս Կիւրոս (Կուր) գետոյ։ Ի Խաղիւբեանց և 'ի Մոսինիկեանց (առին) զԿարենիտիս, և զՔսերքսենէ, (զԿարին և զԴերջան), որք սահմանակիցք են փոքուն Հայոց, և մասունք նորա։ Ի Կատաոնեանց՝ զԱկիլիսենէ, և զորս են առ Անտիտաւրոս։ ՅԱսորւոց՝ զՏարոնիտիդ. այնպէս զի ամենեքին միոյն լեզուի 'ի կիր առնուն »։ Այս պատմութի ընդարձակութե՝ է արդարև զրոյց յունական ըստ կամի յերիւրեալ։

Յետ նախայիշատակելոցս ոչ ոք յարեաւ 'ի մերոց ընդարձակող աշխարհիս, այլ միայն պահպանող. յարեան արդարև Ռուբինեանք, որք նոր երկիր զձեռամբ ածին զԿիլիկիա և զԻսաւրիա. բայց կորստեամբ բնիկ աշխարհիս. զի զսահմանս հայաստանեայց թողեալ 'ի ձեռս զօրաւոր թշնամեաց արաբացւոց և սկիւթացւոց Թաթարաց, այնպէս գնացեալ առին զայն օտար երկիր. թող զի յայտնի երևի լեալ երբեմն 'ի ձեռս մերոց աշխարհակալաց՝ որք տիրեցին համօրէն փոքուն Ասիոյ. վասն որոյ զՌուբինեանց տէրութիւն և զաշխարհակալութիւն ոչ աստ՝ այլ ուրոյն 'ի Կիլիկիա ունիմք ստորագրել. աստ միայն զնոցանէ գրել՝ որք զհին առեալսն կարող եղեն կամ պահել, և կամ ընդ ձեռամբ արկանել:

Բ. Պահպանողք կամ մնորդքն զխնամ ածողք զնախնի ընդարձակեալ սահմանս:

ՄԻՋԻՆ ՏԻԳՐԱՆ

Սա հազիւ կարաց ընդդէմ երկուց թշնամեաց Յունաց և հռոմայեցւոց պաշտպանել զմասն ինչ սահմանացն՝ զորս աշխարհակալքն 'ի նախնեաց իւրոց գրաւեալ ունէին 'ի Հայս: Տիգրան, ասէ Խորենացին Բ. 14. “ Ժողովեալ զզօրս Հայոց ընդդէմ երթայ զօրացն Յունաց, որք յետ մահուանն Արտաշիսի հօրն իւրոյ և ցրուելոյ զօրացն՝ հետամուտ լեալ դիմեալ գային յաշխարհս մեր, որոյ ընդդէմ պատահեալ Տիգրանայ՝ արգելեալ 'ի վերջ նահանջէ, և 'ի քեռայր իւր Միհրդատ հաւատացեալ զՄաժաք, և զհոգս միջերկրայցն. և զօր բազում թողեալ նմա, դառնայ յաշխարհս մեր „ : Ի Յունաց ազատեաց յայնժամ զմիջերկրայս՝ որ է ասել փոքր Ասիա, բայց ոչ կարաց զերծուցանել 'ի հռոմայեցւոց, որք նախ 'ի ձեռն Պոմպէի առին զՄաժաք զգլխաւոր քաղաք միջերկրայց. և ապա յորժամ Միհրդատ ապստամբեալ էանց առ հռոմայեցիս, ընդ նմին և Մաժաք քաղաք որ է Կեսարիա՝ էանց և մնաց բոլորովին ընդ տէրութեամբ հռոմայեցւոց: Դիմեաց Տիգրան և յաշխարհն Պաղեստինոյ. պաշարեաց և զՊտղոմայիդ քաղաք Պաղեստինոյ, որ է Աքեա, բայց միայն զերի վարեալ զհրեայս դարձաւ անտի. որպէս և զկին 'ի ձեռն

Բարզափրանայ սպարապետին իւրոյ գործեալ բազմութն գերեաց կալաւ ածել 'ի Պաղեստինոյ, այլ ոչ ընդ ձեռամբ իւրով պահել որպէս զԱստուածաշունչ. Խաղաց և յՍասորիս առ 'ի վրէժս պահանջել 'ի Հռոմայեցւոց. և միայն զզօրս Կրասոսի Հռոմայեցւոյ կալաւ խորտակել առ Եփրատաւ, որ է նշանաւոր գործ Տիգրանայ առ միապետսն և քերթողս Հռոմայեցիս:

ԽՈՍՐՈՎ Ա

Յետ մահուն Տիգրանայ այն ամենայն սահմանք որք արտաքոյ էին աշխարհին Հայոց՝ հետզհետէ կամ առանձին կամ հարկաւոր եղեն այլոց. բայց մինչև ցմեծն Խոսրով, որ է առաջին, տակաւին մեծատարած էր իշխողութն թագաւորաց Հայոց 'ի վերայ շրջակայից, որպէս յայտ առնէ և այս բան Ագաթանգեղոսի Թղթ. Ա. յասելն վասն մեծին Խոսրովու. « Սկսանէր ... գումարել զզօրս Աղուանից և Վրաց, և բանալ զդրունս Ալանաց, և զճորայ պահակին. հանէր զզօրս Հոնաց »: Եւ սուղ մինչ զկնի գրէ. « Վաղվաղակի 'ի թիկունս հասանէին (Խոսրովու) Աղուանք, Լփնիք, Ճիղպք, Կասպք, և այլ եւս 'ի սմին կողմանց »: Ուր ցուցանէ հրամանատարութն կամ պարտաւորութն իմն ժողովելոյ սոցա առ Խոսրով, և ոչ վարձուք: Պատմի վասն սորա նաև խաղալ յերկիրն Պարսից, և մինչև ցՀնդիկս՝ հալածել զթագաւորն Պարսից, այլ այն էր միայն արշաւանք ըստ ասպատակաւորաց, և ոչ զերկիր գրաւել, զորմէ է բանս մեր:

ՏՐԴԱՏ

Վասն սահմանաց տիրապետութեն Տրդատայ գտանեմք ինչ ինչ յիշատակեալ առ Խորենացւոյն, որպէս յասելն Բ. 82: « Իսկ քաջին Տրդատայ երագապէս և բազում ճակատս տուեալ նախ 'ի Հայս, և ապա 'ի Պարսս, իւրով անձամբ առնէր զյաղթութիւն ... և այսպիսի նահատակութիք յամեալ 'ի Պարսս և յասորեստան, մինչև եւս քան զՏիգրան յարձակի »: Որք են միայն յիշատակութիք յարձակման արտաքոյ հայաստանեայց: Սոյնպէս և 'ի գլ. 85. յիշատակէ զխաղալ նորա 'ի վերայ հիւսիսականաց, որք են ազգք սարմատացւոց, զորոց զթագաւորն միջակուռ արարեալ, և « զորոց զհետ մտեալ (ասէ) Տրդատ վարէ մինչև յաշխարհն Հոնաց ... ըստ հայրութե (հայ-

րենի) օրհնաց պատանոյս աւետալ զաւանայ. որով պատճառաւ (ինքն Տրդատ) միաբանեալ զամենայն հիւսիսի, հանեալ զօր բազում, զուամարտակ արարեալ խաղայ յաշխարհն Պարսից, դիմեալ 'ի վերայ Շապհոյ որդւոյ Արտաշրի „: Բայց 'ի Ձ. 87. յիշատակէ ինչ և վասն յինքն սեփականելոյն ասելով. " Բայց Տրդատայ հաստատեալ իւր զեօթնպարսպեանն Եկբատան երկրորդ, և վերակացուս յինքենէ թողեալ՝ դառնայ 'ի Հայս „: Որով ցուցանէ թէ այս շինութիւն էր արտաքոյ աշխարհիս Հայոց, յորոյ յաւարտին վերակացուս յինքենէ եթող անդ, առ 'ի պահել ընդ իւրով տէրութեամբ. և յետ այնորիկ դարձաւ յաշխարհս Հայոց: Նաև առ Ագաթանգեղոսի գտանեմք այսպիսի ինչ յիշատակութիւն արշաւանաց. զոր օրինակ Թղթ. խծ. ուր ասէ. " Իսկ թագաւորն Տրդատ զամենայն ժամանակս իւրոյ թագաւորութեանն աւերէր քանդէր զերկիրն Պարսից թագաւորութեանն՝ զաշխարհն տորերատանի... վասն այսորիկ պատշաճեցան բանքս այս 'ի բանս կարգի առակաց, թէ իբրև զսեզն Տրդատ, որ սիգալովն աւերեաց զԹուրքս գետոց. և ցամաքեցոյց 'ի սիգալ իւրում զյորձանս ծովուց... որ զամենայն ժամանակս կենաց իւրոց պատերազմեալ առնէր մարտիցն յաղթութիւն... առնոյր աւար բազում 'ի կողմանցն ասորեստանեայց... հանէր զզօրս Հոնաց սաստիկ յոյժ, և գերէր զկողմանս Պարսից „: Եւ 'ի Թղթ. ձե. ինքն Տրդատ ասէ վասն իւր. "Քաջ զինուորս և զմեր Պարթևաց կողմանս, վասն զի ընտանութիւն իսկ է մեր, և զասորեստան և զտաճկաստան և զԱտրպատականս: Եւ զի՞ մի ըստ միոջէ թուեմ, զի բազում տեղիք այն են՝ որ իմ խաղաղութեամբ հաստեալ է, և բազումք այն են՝ որ մարտիւ և պատերազմաւ աւարի առապատակեալ „: Բայց որոշագոյն յիշատակութիւն սեփականեալ սահմանաց տէրութեանն Տրդատայ գտանեմք առ Ագաթանգեղոսի ճՃե. ուր կամելով յիշել թէ քրիստոնէական վարդապետութիւն սրբոյն Գրիգորի ցորչափ տեղիս ծաւալեալ եղև, յիշէ զամենայն սահմանս՝ որ էին սահմանք տէրութեան Տրդատայ. զի արդարև քարոզութիւն սրբոյն Գրիգորի՝ էր յայն ամենայն սահմանս՝ յորս իշխէր Տրդատ. " Եւ այսպէս, ասէ, ընդ ամենայն երկիրն Հայոց 'ի ծագաց մինչ 'ի ծագս ձգէր տարածանէր զմշակութիւն քարոզութեան աւետարանին 'ի Սաղաստացոց [1] քա-

1 Օրինակ մի գնէ՝ 'ի Սատաղացոց քաղաքէն: Ա.Ջ. օրինակ 'ի Մատա-

ղաքէն մինչև առ աշխարհաւն Խաղտեաց, մինչև առ կաղարջօք, մինչ 'ի Սառ[1] 'ի սահմանս Մաքթաց, մինչև 'ի դրունս Ալանաց, մինչև 'ի սահմանս Կասբից 'ի Փայտակարան քաղաք արքայութեան Հայոց. և յԱմդացւոց քաղաքէն մինչև առ Մծբին քաղաք քերէր առ սահմանօքն Ասորոց, առ Նոր Շիրական երկրաւն[2]. և առ Կորդուօք մինչև յամուր աշխարհն Մարաց. մինչև առ տամբն Մահքերտեան[3] իշխանին. մինչև յԱտրպատական ձկտէր զքաղաքութիւն իւր»: Ցայս բան՝ առեալ թէ «Ամենայն երկիր Հայոց 'ի ծագաց մինչ 'ի ծագս», կամի նշանադրել որչափ էին սահմանք էին յայնժամ տէրութեան Հայոց, այսինքն՝ տէրութեան Տրդատայ: Նման այլն բան էին յիշատակի և 'ի թուղթն դաշանց, ուր ասէ մեծն Կոստանդիանոս թղթ. նէ. «Եւ սեփական աշխարհ սահմանեցի նմա (Տրդատայ) զՊառտոն Արմենիական և զԿապադովկիա, զոր հանեալ էր 'ի Հայոց Պոմպէի կեսարի: Եւ այս է բաւն հայրենիքն Տրդատայ՝ Արճոյ[4] լեռնէն մինչև 'ի լեառն Արարատ. և 'ի Գայլ գետոյն եկեղեացւոց մինչև 'ի հզօր գետն մեծ Տիգրիս. իսկ 'ի կողմանց Քոհաստանեայ[5] որչափ բազուկ իւր բաւեսցէ, և թուրն թափեսցէ»:

## ՄՈՒՇԵՂ ԶՕՐԱՎԱՐ

Յաւուրս Պապայ արքայի յետ չորրորդ դարուն՝ յորժամ Շապուհ պարսից թագաւոր դադարեցաւ 'ի պատերազմելոյ ընդ Հայս, պատճառաւ մեծի պատերազմին զոր ունէր ընդ Քուշանս, «Ախոյեան (ասէ Բուզանդ Ե. 8.) սկսանէր պատերազմին Հայոց Մուշեղ հարկանէր զայնոսիկ՝ որք ապստամբ եղեն 'ի թագաւորութեէն Արշակունեաց»: Այսպ մի ըստ միոջէ թուելով զապստամբեալս 'ի բնիկ հայաստանեայց զօրս Մուշեղ նուաճեաց, եդ 'ի վերայ ասէ, հարկս, և էառ պատանդս 'ի նոցանէ. զայսոսիկ յիշէ 'ի 10. գլ. և 'ի հետևեալսն. զԿորդուս, զԿորդիս, և զՏմորիս, զԱրձախ, զԿասբս, որով իմանեայ և զՓայտա

զուցւոց քաղաքէն. ուղիղն Թուփ Սատաղացւոց. որ կամ է 'ի Խաղտիս, և կամ առ երի Կիլիկիոյ:

1 Օրինակ մի գնէ, Մինչ Խաղտա:

2 Օրինակ մի գնէ. Առ Նոյ Շիրական (որ է սխալ.) և Մահքրտան երկրաւն:

3 Ցպագիրն Պօլսոյ գնէ, Մաղքթեան իշխանին:

4 Արճիշա՝ ըստ մեզ Արդէտա՝ է լեառն Կեսարիոյ քաղաքին՝ որ մինչև ցայժմ կոչի տաճկերէն Էրճիէշ: Ի տպագիրն Պօլսոյ չիք այս անուն, այլ գնէ 'ի լեռնէն Արարադայ:

5 Ի միում օրինակի գրի Քոհստատանեայ:

կարան. զՈւտի նահանգ ըստ մեծի մասին՝ զոր առեալ էին Աղուանք. զորս և յանուանէ յիշելով ասէ. «Թափէր 'ի նոցանէ (յԱղուանից) բազում գաւառս զոր հատեալ էր նոցա 'ի նոցանէն. զՈւտի և զՇակաշէն և զձորն Գարդմանայ, զԿողթ և .. որ շուրջ էին զնովաւ սահմանք, գաւառք»: ԶԳուգարս՝ զորս ըստ մեծի մասին Վրաց էր առեալ, վասն որոյ յանուն Վրաց յիշէ. բայց 'ի Ե. 15. նշանակէ, թէ «Զբդեաշխն Գուգարաց որ յառաջին ծառայէր թագաւորին Հայոց և ապստամբեաց, կալեալ գլխատէր»: Յիշէ և զերկիրն Աղձնեաց, զՄեծ Ծոփս, զԱնգեղտուն, զԱնձիտ և զշրջակայս նորա: Իսկ յայս երկիրս՝ որք թէպէտ չէին 'ի Հայաստան, բայց յառաջագոյն էին ընդ տէրութեամբ Հայոց, և ապա ապստամբեալ, յիշէ 'ի Ե. 8. և 'ի հեռաւեալս, զԱտրպատական, զՆոշիրական, զկողմանս Մարաց. յորոց զապստամբսն կոտորեաց ասէ, զբազումս գերի տարաւ, և զմնացեալսն 'ի հարկի կացոյց պատանդ առեալ 'ի նոցանէ:

## ԱՇՈՑ Ա.

Այս որպէս նորագոյն գաւառ անկեալ թագաւորութեան, նոյնպէս գաւառ նորագոյն տէրապետութեան կորուսեալ սահմանաց աշխարհիս, որ մինչև 'ի կովկասայն ազգս ձգեաց զիւր տէրութիւն. «Յորում աւուրս (ասէ Վարդան, այսինքն յաւուրս Տ. Գէորգայ կաթողիկոսի) ընդարձակեալ մեծին Աշոտի 'ի Վիրս և յԱղուանս և զկովկասայինսն հնազանդեալ»: Զոր Վարդան նախ քան զթագաւորելն Աշոտոյ դնէ, Յոհաննէս կաթողիկոս յետ թագաւորելոյն պատմէ. և միայն զկովկասայինսն յիշէ ասելով. «Եւ ապա ձեռն զհիւսիսականն կողմամբն արկեալ 'ի ծործորս մեծի լերինն Կովկասու, որ 'ի հովիտս և 'ի ձորս երկայնագոգս բնակեալ էին ազգք, ընդ իւրեաւ հնազանդեցուցանէր»: Որ է այնպէս հնազանդեցուցանել, որպէս էին յաւուրս նախնի աշխարհակալաց մերոց, զորոց յիշեցաք 'ի վերոյ: Վարդան յաւելու՝ թէ «Աշոտ արքայ դնէ իշխան Վրաց զքեռորդի իւր, և ինքն կատարի 'ի Քրիստոս եօթանասուն և մի ամաց»: Իսկ Յոհաննէս կաթողիկոս յաւելու, թէ և ընդ թագաւորին Եգերացւոց այնպիսի սէր միաբանութեան կապէր, «մինչ զի անընդհատ յորդիութեան սակի գոլով, մտերմաբար պարտաւճար միշտ նմա 'ի ծառայութիւն բերէր»:

## ՍՄՊԱՏ Ա

Յաւուրս Բագրատունեաց ոչ ոք հաւասար գտաւ ա̃. Սմբատայ արքայի 'ի կողմանէ ընդարձակելոյ զտէրութիւն Հայոց, յոյր սակս բերցուք զնոյն իսկ բանս Յովհաննու կաթողիկոսի. «Եւ նորին (Սմբատայ, ասէ) ձեռնտութեամբ լեալ 'ի գիւտս աշխարհաց բազմաց, զամենեսեան յանձնանձէ. ածէ համագունդ ընդ իւրեաւ նուաճէ, զամենայն հեշտականաւն բանիւ և զամենայն արդեամբք յինքն յանգուցեալ. ըստ որում և մեծ կուրապաղատն Վրաց՝ և համախոհք իւր՝ գեղեցիկ կարգաց ուղղութեան հաւանեալք և հնազանդեալք լինէին. իսկ զամենայն ձեռներէց զօրուն հարըստահարեալ զընդվզեալսն և յառէն կացուցեալ: Եւ այսպէս ձգեալ անձեցուցանէր զշաւիղ տէրութեան իւրոյ, յարեմտից հիւսոյ՝ մինչև ցԿարնոյ քաղաք. և անդր ևս քան զԿղարջս քերեալ մինչև առ ափն ծովուն մեծի (որ է Պոնտոս ծով.) և մինչև ցսահմանս եգերացւոց, և մինչև ցստորոտ մեծի լերինն Կովկասու, զգուգարացիս, և զծանարս մինչև ցդուռն Ալանաց, առեալ ևս յինքն և զամրոց դրան պահակի նոցա: Եւ անտի 'ի հարաւակողմն կոյս՝ զԿուր գետով մինչև 'ի քաղաքն Տփխիս, և զՈւտի գաւառ մինչև 'ի քաղաքն Հունարակերտ, և մինչ 'ի Տուս և 'ի Շամքոր: Եւ այսպէս ընդարձակեալ զսահմանս տէրութեան իւրոյ, որք ընդ լծով արքունի սակից և բեկարաց և մաքսից կացուցեալ, զդէն քաջութեան մարտի իւրոյ նշան յաղթութեան կանգնէր »: Տէրութիւն ա̃. Սմբատայ 'ի վերայ կովկասայնոց՝ որք են սարմատացիք՝ յիշատակի և յայս դիպուած պատմեալ 'ի նոյն մատենագրէ. «Զայսու ժամանակաւ Թագաւորն եգերացւոց Կոստանդին յայլանդակ բարս դժնեայս դառնացեալ ... զնոյս զհիւսական կողմանքն որ 'ի ծործորս լերինն Կովկասու, միանգամայն իսկ և յաշխարհն գուգարացւոց և որ մերձ 'ի դրունս Ալանաց բնակեալ են, զի ընդ իւրով ձեռամբ զնոսա նուաճեսցէ: Եւ վասն զի ազգքն այնքիկ հաւանեալք և հնազանդեալք և նուաճեալք էին ընդ ձեռամբ արքային Սմբատայ, գրէ առա Թագաւորն Վրաց Ատըրներսեհ վաղընդվոյթ առ Թագաւորն եգերացւոց, վասն զի փեսայ նորա էր, ցրել ... զանտի խորհուրդն »: Իւր ցուցանէ զտէրութիւն իմն նորին Սմբատայ նաև 'ի վերայ նոյն Թագաւորին եգերացւոց, 'ի գրելն թէ յետ հնազանդ

դեղոյն նման եզերացուց Թագաւորին՝ ապա արքայն Սըմպատ «զգեստաւորէ զնա Թագաւորական զգեստու, և դնէ խոյր ոսկի ընդելուզեալ մարգարտով 'ի գլուխ նորա, և ականակուռ ոսկի կամար ածէ ընդ մէջ նորա, և այլ իմն վայելուչ կազմուածս ըստ ուղևորութեն պիտոյից նմա յարդարէր. և զօր 'ի ձեռս նորա գումարեալ առաքէ զնա յաշխարհ տէրութեն իւրոյ»: Իսկ Թագաւորն եզերացուց յետ այնորիկ՝ ասէ, «Ի բազում հնազանդութեն և մտերմական ծառայութեն համախոհութեամն· զինքն արքային Սմպատայ բերէր»:

Երդ այս ամենայն սահմանք են հիւսիսակողմանք, որք և էին ընդ տէրութ. մերոց նախնի աշխարհակալաց զորս յիշեցաք. իսկ զհարաւակողման աշխարհաց ոչինչ յիշէ, որք են Ատրպատական, Մարք, ասորեստան, և Միջագետք, զորոց յիշատակի 'ի պատմութիւս նախնի աշխարհակալաց մերոց իբր զհնազանդելոց նոցա: Այլ զխարդ և իցէ, 'ի Բագրատունիս զայս տ̄. Սմպատ մարթ էր կոչել ըստ իմիք Թագաւոր Տիեզերական, որպէս կոչէ Սամուէլ. բայց յետինք կարի իմն յանպէտս եդուն զայս անուն բ. Սմպատայ, որոյ տիեզերակալութիւն ոչ այլ ինչ էր, բայց եթէ ազատել նորա 'ի ձեռաց Թշնամեաց քանի մի տեղիս 'ի միջնաշխարհին, որպէս տեսցի 'ի յետագայ յօդուածդ. զոր օրինակ և տ̄. Գագիկ Շահնշահ ազատեաց զբազում տեղիս 'ի ձեռաց Թշնամեաց. «Ի սահմանացն Վայոյ ձորոյ (գրէ Ասողիկ գ. 30.) և Խաչենոյ, և Փառիսոսոյ, առաւել քան զեղբայր իւր (որ էր բ. Սմպատ), և ոչ ոք զարհուրեցուցանէր զհայաստանեայս մինչև ցօր գրելոյ իմոյ զբան յիշատակիս այսորիկ»:

## ՅՕԴՈՒԱԾ Գ

### Նուաղումն աշխարհիս Հայոց:

ԹՈՂԵԱԼ 'ի բաց որ ինչ վասն ժամանակին Հայկազունեաց, տեսանեմք 'ի ժամանակս Արշակունեաց երբեմն զայս և երբեմն զայն աշխարհ 'ի բաց հանեալ 'ի տէրութենէն Հայոց. զոր օրինակ յասելն Խորենացւոյն բ. 44. վասն բ. Երուանդայ, թէ կուտէր առ ինքն «զզօրս Հայոց և զՎրաց և զկողմանցն Կեսարու, այլ և զՄիջագետացն աղեր-

գորիս ... և լինելն երթայ առ Շապուհ արքայն Պարսից, և ընդունի զկէս Թագաւորութ՟, հաստատէ զաշխարհն Խոսրովայ, և Խոսրովու բաւական համարեալ զմնացեալ աշխարհն իւր ": Այլ պատմութ՟ Բակրոյ 'ի դերև ել. զի զկնի 'ի գալ Անտիոքայ յաշխարհս մեր առաքեալ 'ի Կոստանդեայ կայսերէ յօգնութ՟ մերոց, Մանաճիհր կարգեալ 'ի Նմանէ զօրապետ հարաւային զօրուն՝ ասէ Խորենացին Գ. 7. "Ճակատ տուեալ ընդ Բակուր բդեշխի սատակէ զնա և զզօրս նորա, և զՊարսիկս օգնականս նմա հալածական առնէ, և զորդին Բակրոյ զՀեշայ ձերբակալ արարեալ՝ հանդերձ երկաթի կապանօք առաքէ Խոսրովու, և զգաւառն իշխանութ՟ նորա արալ դատի յանձինս, ոչ միայն զՄարտիկս այլև զուամիկ չինականս ": Բայց թէ զինչ փոփոխումն եղեն յետ այնորիկ, տես 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 65. միայն յաւելցուք աստ 'ի Բուզանդայ Դ. 50. զպատճառն ապստամբելոյ 'ի մերոյս Ձ. Արշակայ արքայէն. "Զերեսուն և զչորս ամս՝ եսուն պատերազմ երկիրս Հայոց ընդ Թագաւորին Պարսից, և յետ այնորիկ ձանձրացան պատերազմն լքան ... երկոքին կողմանքն. և սկսան սորտորել զնալ 'ի բանակէն Հայոց Թագաւորին. Թողին զիւրեանց արքայն Արշակ. բայց նախ այսմ գնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին. նախ բդեշխն Աղձնեաց ":[1] Ահա զձանձրութիւն յերկարութեն պատերազմին պատճառ դնէ ապստամբութ՟, սոր և յիշէ զմնացեալ ապստամբողքն որք են Նոշիրականն բդեշխն, Մահկերտ տանն, Նիհորականն, Գուգարք, Ձորոց գաւառ, Կողբ, Գարդմանաձոր, Արցախ, Տմորիք, Կորդիք, աշխարհն Մարաց, (որ բստ մեզ է Փայտակարան) և աշխարհն Կաղբից: Իսկ տէրն Անձեւեաց, ասէ, (որ է Հանձիթ), և իշխանն մեծ Ծոփաց զնացին առ Թագաւորն Յունաց [2]:

## ԴԱՐ Ե

Աղձնիք յաւուրս Պապայ արքայի անդրէն 'ի Հայս դարձեալ ասէ Բուզանդ Ե. 16. 'ի ձեռն Մուշեղայ սպարապետին. բայց յայտ է թէ զկնի դարձեալ մնաց յիւրում ապստամբութեն ընդ պաշտպանութե լեալ Պարսից. զի

1 Նոյն ինքն Բուզանդ 'ի Դ. 51. դնէ զերեսուն ամ:

2 Ցայսմ չորրորդ դարու ընդ անրուք Յունաց էին փոքր Հայք, և մասն ինչ մեծին Հայոց. այլ վասն այսր [illegible]

րան Եղիշէի, որ էր յետ վերջանալոյ Թագաւորութեան Արշակունեաց, յայտնի դասէ ընդ այլ օտար և զատուցեալ աշխարհս. որպէս յասելն 'ի Թղթ. 86. «Զի առ հասարակ հրամանն առեալ էր յարքունուստ, որպէս աշխարհին Հայոց՝ նոյնպէս և Վրաց և Աղուանից և Լփնաց, Աղձնեաց և Կորդուաց և Ծօդէից և Դասեան և որ այլ ևս ուրեք ուրեք 'ի ծածուկ յիշխանութեան Պարսից ունէին զքրիստոնէութիւն»: Եւ 'ի Թղթ. 234. «Թուղթ մի 'ի Վրաց աշխարհէն, և Թուղթ մի յԱղուանից աշխարհէն. նոյնպէս և Թուղթ մի յԱղձնիս»:

Սորձէք ուր են Կորդիք՝ յաւուրս Խորենացւոյն Բ. 64. իբր զատուցեալ 'ի մէնջ համարի. որպէս և Եղիշէ 'ի Թղթ. 163. ընդ օտար աշխարհս Թուէ զՏմորիս, զԿորդիս և զԱրզանս. «Սոյնպէս առնէր և ընդ ամենայն կողմանս ամրականաց աշխարհին, 'ի Տմորիսն և 'ի Կորդիսն, յԱրզանս և յԱղուանսն, 'ի Վիրս և յաշխարհն Խաղտեաց. յղէր ընդդէր զի առանձնականութեան ոք արժանի մի համարեսցէ»:

Գարդմանն գաւառ Ուտի նահանգին, և Տաշիր գաւառ Գուգարաց, իբր արտաքոյ հայաստանեայց յիշատակին 'ի գիրս Կորեան. զի յետ պատմելոյ զգալուստ սրբոյն Մեսրոպայ յայսոսիկ յերկոսին տեղիս՝ ապա ասէ. «Ինքն դառնայր 'ի կողմանս Հայոց մեծաց»: Իբր թէ այն երկոքին գաւառք չէին համարեալ 'ի մեծ Հայս:

Գուգարք համօրէն 'ի բազմաց հետէ 'ի բաց ելեալ էր 'ի մերմէ տէրութենէ. որպէս գրէ և Խորենացին յաշխարհագրութեան իւրում, որ և միշտ մնաց այնպէս. զոր օրինակ ցուցանէ և այս բան Յոհաննու կաթողիկոսի. «Այս Մովսէս զԿիւրիոն սրբոյ կաթողիկէի վանաց երէց ձեռնադրէ յարքեպիսկոպոսութիւն Վրաց նահանգին և Գուգարաց և Եգերացւոց, ըստ.. կարգացն առաջնոց»: Ուր զԳուգարս դասէ ընդ օտար աշխարհս. զոր օրինակ էին Վիրք և Եգերք. միայն յաւուրս Բ. Աշոտոյ հնազանդեցան. զի յետ ասելոյ նորին Յոհաննու կաթողիկոսի՝ թէ էառ Աշոտ զՇամշուլդէ բերդ Գուգարաց զապստամբեալն, ասէ. «Եւ այնուհետև ապա հիւսիսականն ազգքն այնոքիկ ընդ ձեռամբ նորա նուաճեալ հնազանդեցին 'ի ծառայութիւն»: Յորմէ յայտ է թէ նուաճելն զնոսա Մուշեղայ՝ զոր 'ի վերոյ յիշեցաք, առ ժամանակ մի տևեաց. իսկ նուաճելն Աշոտոյ թէ ցորչափ տևեաց, տես ստորև:

## ԴԱՐ Թ

Յեւս այսր դարու Գողթն գաւառ Սիւնեաց անկեալ կայր 'ի ձեռս ուրումն ամիրայի․ այլ իշխանքն Սիսական տոհմին գժգմնեալ, ասէ Յոհաննէս կաթողիկոս, 'ի վերայ ամիրային, "որ յայնժամ զգաւառն Գողթան բռնակալեալ պայազատէր, խնդրէին առ 'ի նմանէն յինքեանս դարձուցանել զսեփական իւրեանց ամրոցն Երնջակ, և զառ սատարութեամբ նորա զգաւառն՝ զոր Յուսփայ ոստիկանին առեալ տուեալ էր 'ի ձեռս Գողթան բռնակալին․ այլ նա խորև յաղթութեան զայն նմա շնորհեալ համարէր, և ոչ առնոյր յանձն նմա տալ"։ Պատմէ ապա զմարտն երկաքանչիւրոց ընդ միմեանս․ այլ յորժամ զօրք արաբացւոց յետս կոյս դարձան, այն գունդ Սիսական տոհմին զոր դաքաւոնացի կոչէ, ապանէին զՎասակ զմի յիշխանաց նոյն տոհմին։ Նոյնպէս և Տարօն և Աղձնեաց նահանգ 'ի ձեռս այլազգեաց[1]։

## ԴԱՐ Ժ

Յայսմ դարու նահանգքն որ մնացեալ էին 'ի ձեռս Հայոց՝ էին այսոքիկ եւեթ, Այրարատ, Սիւնիք, Արցախ, Վասպուրական, Տուրուբերան ըստ մասին[2]։ Իսկ Գուգարք, Տայք՝ էին 'ի ձեռս Վրաց․ Ուտի և մասն ինչ Արցախոյ՝ 'ի ձեռս Աղուանից։ Փայտակարան, Կորճէք կամ Կորդուք և Պարսկահայք՝ որ կոչի Հեր և Զարաւանդ՝ 'ի ձեռս այլազգեաց․ Մոկք և Աղձնիք նոյնպէս ըստ մեծի մասին 'ի ձեռս այլազգեաց, իսկ ըստ փոքու մասին 'ի ձեռս Հայոց։ Բարձր Հայք և չորրորդ Հայք 'ի ձեռս Յունաց, նաև մասն ինչ Տուրուբերանոյ, զոր օրինակ են Տարօն և Հարք գաւառ, ուր էր Մանազկերտ քաղաք, էին 'ի ձեռս Յունաց․ զորոց զիշխանս նոքա դնէին երբեմն 'ի Յունաց և երբեմն 'ի Հայոց, զորոց կարեւս գտանել ինչ ինչ տեղեկութիւն յայսմ մատենիս, և 'ի մեծ Հայս 'ի տե-

1 "Յետ այսորիկ (ասէ Յով. կաթ.) արքայ Սմբատ... եդ 'ի միտս իւրում երթալ հասանել հաստատել նուաճել զաշխարհն եւս Տարօնոյ և զկողմանս նահանգին եւս Աղձնեաց, զի մի առ-րամերժիցի սեպհականութիւն ազգացն այնոցիկ 'ի բնիկ տէրութէն"։

2 Քանզի յԱյրարատ նահանգի՝ Դուինն գաւառ իւր սահմանօք 'ի բազմաց հետէ էր 'ի ձեռս ամիրայի արաբացւոց․ նոյնպէս և Գողթն գաւառ Սիւնեաց․ որոյ ամիրայն Ապուսաւէլի անուանեալ թէ զինչ պատերազմունս մղեաց ընդ ամիրային Դուինայ՝ պատմէ Ասողիկ 'ի Գ. 11։

ղիս խուրհանց. միայն վասն Տայոց արժան է սակաւուք ինչ անցանել բանիւք առ ունկնդրաւ։

Յորժամ Դաւիթ կիւրապաղատ տիրէր Տայոց, բոլորովին արտաքոյ եղեալ էր Տայք 'ի տէրութենէ թագաւորացն Հայոց Բագրատունեաց. և յորժամ մեռաւ յետ անդ տամներորդ դարուն՝ էանց 'ի ձեռս Յունաց, ըստ որում չունելով զորդի և ոչ զեղբայր՝ կտակաւ թողեալ էր զամենայն երկիր իւր կայսեր Վասլի երկրորդի. որոյ անձամբ եկեալ 'ի Տայս՝ ընդ ձեռամբ իւրով նուաճեաց «զամենայն բերդս և զամրոցս Տայոց»։ որպէս գրէ Ասողիկ Գ. 43։ Եւ քանզի 'ի բաժնէ այսր Դաւթի անիրաւաբար յափշտակեալ էր Գէորգէ թագաւորն Աբխազաց, որպէս ասէ Լաստիվերտցի գլ. Է. Վասիլ կայսրն պատգամ առաքեաց առ նա՝ թէ «Զոր քո ոչ է հայրենի ժառանգութիւն, թող և կաց խաղաղութեամբ 'ի քո բաժնիդ... սուր զիմ հայրենիքն զոր կիւրապաղատն ինձ տուեալ է»։ Որում իբրև հաւանեալ յանձն էառ Աբխազն, յայնժամ Վասիլ «իշխանս 'ի վերայ գաւառին կացուցեալ, բաժանեաց տուն առ տուն և գեօղ առ գեօղ և ագարակ առ ագարակ, որպէս յառաջինն լեալ էր»։

ԴԱՐ ԺԱ

Վասպուրական նահանգ, որ էր աթոռ թագաւորութեան Արծրունեաց՝ էանց 'ի ձեռս նորին Բ. Վասլի կայսեր, զոր եւս նմա կամօք իւրովք Սենեքերիմ թագաւոր Վասպուրականի, չհանդուրժեալ բազմութեան ասպատակաւոր թշնամեաց. և 'ի 1022 չուեաց բազմութեամբ 'ի Սեբաստիա, զոր փոխանակ այնր առեալ էր 'ի կայսերէն։

Նոյն քաղաք՝ աթոռ թագաւորութեան Բագրատունեաց հանդերձ շրջակայ գաւառօք իւրովք յանձնեալ եղև գրով 'ի ձեռս նորին կայսեր Վասլի երկրորդի 'ի Յովհաննէ թագաւորէն մերմէ, վասն որոյ 'ի մէջն անդ նոյն դարու Յոյնք տիրեցին Անւոյ յաւուրս Կոստանդին Մոնոմախ կայսեր, թողեալ պահապանս 'ի վերայ գրաւեալ տեղեացն, որպէս գրէ Լաստիվերտցի ԺԳ. «Հեծելազօրք հոռոմք ոչ սակաւք էին յարևելս պահապանք աշխարհին, որ մինչև ցվաթսուն հազար ասեն եթէ էր թիւ բանակին, որոց գլխաւորք էին Կամենաս՝ որ թարգմանի կրակ. որ ունէր զիշխանութիւն տանն Հայոց. և Ահարոն որդին Բուլ-

ղարէին՝ որ ունէր զկողմն Վասպուրականի. և Գրիգոր Հայոց իշխանին Հզօր՝ ունէր զպատիւ մաժիստրոսութեան„:

Արդ, աթոռ համանուն թագաւորութեանն նոյնպէս էանց 'ի ձեռս Յունաց 'ի նմին ժամանակի. զի Գագիկ թագաւորն Կարուց առ ահի թուրքաց ետ Յունաց հայրենիս իւր, այսինքն զԿարս հանդերձ Վանանդ գաւառաւն իւրով, փոխանակելով քանի մի տեղեաց փոքուն Հայոց: Գագիկ թագաւոր Վանանդայ և Կարուց, ասէ Կեդրենոս, "գնաց առ Յոյնս. սակայն գլխաւորն (թագաւորն Անւոյ) դադարեաց յաւուրս Գագկայ. և այլք անձնատուր եղեն ընդ ձեռամբ վիշապին (Ալփասլանայ). և կէսք փախստական գնացին առ կայսրն Յունաց. և նոքա տիրեցին աշխարհին ամենայն„:

Իշխի, Կայեան և Կայծան նոյնպէս 'ի մէջն անդ մետասանեերորդ դարուս անցին 'ի ձեռս Յունաց, որոց ետ Գրիգոր մագիստրոս. զի տեսեալ նորա զանկանիլն վերջին Գագկայ թագաւորի 'ի ձեռս Յունաց 'ի Կոստանդնուպօլիս, նախատես լեալ թշուառութեանցն որք գալոց էին, ինքն ևս զամենայն երկիր իւր ետ 'ի ձեռս Մոնոմախ կայսեր Կոստանդեայ. զորմէ այսպէս գրէ Լաստիվերտցի Ժ. "Եւ 'ի յերկարել խնդրոյս այսորիկ՝ Գրիգոր որդի քաջին Վասակայ, ելեալ և նա գնաց առաջի թագաւորին (կայսեր). քանզի այր իմաստուն էր... իբրև ետես եթէ ոչ են թողլոց զԳագիկ 'ի տեղի իւր (այսինքն առ 'ի դառնալ 'ի տեղի իւր յԱնի,) յառաջ կացեալ տայ զգաւառն Բջնոյ ցթագաւորն (Մոնոմախ կայսր), և զամենայն զիւր հայրենի ժառանգութիւն. և մեծարեալ 'ի նմանէ առնու զպատիւ մաժիստրոսութեան և զտեղիս բնակութեան 'ի սահմանս Միջագետաց գեօղս և քաղաքս գրով և ոսկի մատանեաւ յազգէ յազգ մինչև յաւիտեան„: Իսկ Վարդան գրէ. "Գրիգոր որդի քաջին Վասակայ տայ զԲջնի 'ի Մոնոմախն, և զԿայեան և զԿայծան զոր ընդ ձեռամբ իւր ունէր. և առնու զդքսութիւն Միջագետաց„: Բջնի էր 'ի Նիգ գաւառին Այրարատու, իսկ Կայեան և Կայծան 'ի Գուգարս. այլ 'ի հարկէ կամ ժառանգութեամբ և կամ այլով պատճառաւ էին ընդ տէրութեամբ Մագիստրոսին, զորս ետ Յունաց:

Նոյն այսպէս 'ի մետասանեերորդ դարուս այս ամենայն տեղիք, ընդ որս և Տարօն՝ զոր յանցեալ դարու յիշատակեցաք, էին 'ի ձեռս Յունաց, զոր 'ի հարևանցի իմն յիշելով Մատթէոս գրէ 'ի թիւն Ղ. "Յայսմ ամի (նՂ.

1041.) զօրաժողով արար Թագաւորն Հոռոմոց Միխայլն զամենայն աշխարհն Յունաց, և այլ 'ի Հայոց զօրացն՝ որք ընդ Հոռոմոց իշխանութեամբ էին, Սեբաստիա և Տարօն և ամենայն Վասպուրականն„ ։ Եւ 'ի սոցանց ասաի ժողովեալ զօրօք խաղաց 'ի վերայ Գթաց ։

Այսպէս և Արճէշ քաղաք Տուրուբերանոյ 'ի ՆՂԴ. 1045. էր 'ի ձեռս Յունաց, որպէս գրէ նա խնքն Մատթէոս զէ. "Եւ հասանէր մինչև ցԱրճէշ քաղաք Հայոց, և էր անդ զօրավար մի Հոռոմոց, որում անուն ասէին Սանեփան Կատապանն„ ։ Զի որպէս գրեալ է մեր 'ի մեծ Հայս յԱրճէշ քաղաք, յոյն տէրն Վասպուրականի առեալ էր և զսա ։ Ըստ այսմ և 'ի Մանծկերտ՝ զօրապետ քաղաքին ըստ նորին Մատթէոսի ՃԳ. էր իշխանն Հոռոմոց Ապուքապա անուն յորժամ եկն անդ Տուղրիլ. և յորժամ եկն Ալփասլան եղբայր Տուղրիլայ և եառ ըզՄանծկերտ, զօրք Յունաց էին 'ի նմա. "Փախեան, ասէ Մատթէոս ՃԻ. Հոռոմոց պահապանքն. և արար գքաղաքն կատարած վասն առաջին հայհոյութեան եղբօր նորա Տուղրիլ սուլտանին. վասն զի զայս անդարձ արարեալ էր նորա 'ի ժամ մահուանն„ ։

Խաչենք, Սևորդիք՝ որք են ուտէացիք, որպէս և Դըւին, կային 'ի ձեռս Փատլունի ամիրային յաւուրս վերջին Գագկայ Թագաւորին Բագրատունեաց, որպէս գրէ Վարդան ։ Բաղաց ամուրն և Կապան աւան նոյնպէս առան 'ի զօրաց Փատլնոյ 'ի ՇԽԳ. 1094. ըստ նորին Վարդանայ ։

Ի՛ր տեղեկութի՛ այսր դարու՝ Թէ քանի տեղիք աշխարհիս Հայոց անկեալ էին ընդ տէրութեամբ արաբացւոց, 'ի Թուոյ ամիրայից նոցին արաբացւոց կարես տեղեկանալ ։ Զի 'ի Դուին արդէն 'ի վաղուց անտի նստէր գլխաւոր նոցա կոչեցեալ Ոստիկան, ուր անչափ բազմացեալ էր Տաճկաց, մինչև հարկ լինել այլուր փոխադրել զկաթողիկոսարանն. իսկ յայլ քաղաքս տիրապետեալս 'ի նոցանէ՝ նստէին ամիրայք նոցա՝ անուանեալք օրինակ իմն, Բաա ամիրայ Ապահունեաց. ամիրայ Գողթան. ամիրայ Հերայ, Խլաթայ, Ամդայ, Նփրկերտոյ, Գանձակայ և այլն ։

ԴԱՐ ԺԲ

Ի սկիզբն այսր դարու հիւսիսային կողմանք մեծին Հայոց առհասարակ էին 'ի ձեռս Վրաց գրաւեալ 'ի ձեռաց Պարսից ։ Իբր 'ի ՇԿԷ. Թուին 1118. ասէ Վարդան. "Զօրա-

նայր Դաւիթ Թագաւորն Վրաց որդի Գէորգայ, որդւոյ Բագարատայ. և առ զՏփխիս 'ի Պարսից, և եհար զՄելիքն զսուլտանին Գանձակայ ... և ընդարձակեալ Դաւիթ զսահմանս Վրաց, առեալ զՈւխթիմն և զսահմանս իւր և զԳագ և զՏէրունականն և զՏայուշ և զԿայեան և զԿայծոն և զԼօռէ և զՏաշիր և զՄահկանաբերդ և զբոլոր իշխանութիւնն Հայոց, Կիւրիկէի և Աղւանայ»: Սոքա առ հասարակ են տեղիք մեծին Հայոց՝ սեփականք երից նահանգաց նորա, որք են Ուտի, Գուգարք և Արցախ, մինչև ասել Կիրակոսի թէ նաև «Հաղբատ 'ի Վրաց թագաւորին հաշուին էր յայնմ ժամանակի»: Այլ Արցախ յայսմ դարու ըստ մեծի մասին մնաց 'ի ձեռս Աղուանից, և նոքա տիրէին յայնմ ժամանակի:

Ի մէջն այսր դարու դժուար է ասել թէ համօրէն հայաստան էր 'ի ձեռս օտար տէրութեց: Անի մայրաքաղաք իբր 'ի վաճառ արկեալ 'ի ձեռս զանազանից յածէր. յետ բազում անգամ անցանելոյ 'ի ձեռս արաբացւոց կամ Պարսից, 'ի 1124 Դաւիթ արքայ Վրաց էառ 'ի նոցանէ. 'ի 1126 էառ Փատլուն որդի Աբլսուարայ. 'ի 1161 դարձեալ Գորգի արքայն Վրաց. 'ի 1163 ետ զնոյն Ասլանայ Պարսից արքայի. 'ի 1174 կրկին էառ Գորգի. այսպէս միշտ 'ի փոփոխութե էր մինչև ցյետին կործանումն իւր:

Իսկ հարաւային կողմանք մեծին Հայոց գրեթէ առհասարակ անկեալ էին 'ի ձեռս արաբացւոց կամ Պարսից. մի միայն այս բան Գրիգորի, որ շարունակօղն է Մատթէի, յայտնի ցուցանէ թէ իբր ժառանգութ իշխէին անդր այլազգիք. յասելն 'ի թուականին ոթ. 1160. «Ամիրայ ոմն անուն Ամիր Միրան, (որ է ասել իշխօղ զանազան միրանաց կամ ամիրայից), որդի Ամիր Աբրէհէմին, որդի Սուքմանին որ էր տէր բազմաց քաղաքաց և գաւառաց, Խլաթայ, Արճիշոյ, Մշոյ, Տղափատայ և Մանծկերտոյ»: Այսոքիկ են տեղիք առհասարակ մեծին Հայոց: Ի սմին դարու 'ի 1166 բարձաւ և մնացեալ փոքրիկ հայկական թագաւորութիւն Բաղաց կամ Կապանին [1]:

[1] Ցեղս երկոտասանեւորդ դարուն, յաւուրս Զաքարիայ սպասալարի և Իւանէի Աթաբէկի եղև փոփոխումն ինչ և նորոգումն հայաստանեայցս, զի բազում տեղիս առին 'ի ձեռաց Տաճկաց. «Եւ ընդարձակեցին, ասէ Կիրակոս, զսահմանս իւրեանց յամենայն կողմանց»: Բայց այս ընդարձակեալ տեղիք՝ էին բնիկ տեղիք մեծին Հայոց 'ի մէջնաշխարհին. վասն որոյ և ոչ 'ի կարգս ընդարձակութե եդաք, և ոչ իսկ առեալ ընդերկար, զի անկան 'ի ձեռս միւս թշնամեաց նոր երևելոց, որք էին Մուղալ Թաթարք. զորոց ունիմք գրել առաջի: Սոքա երկոքեան եղբարք Զաքարիա և Իւանէ էին 'ի

և զորդս Ջալալ իշխանին Խաչենոյ, զԽոյախան, զԴեղ, զԾիրանաքար և զայլս, զորոց ինչ ինչ յիշատակուն կարես տեսանել 'ի պատմութեան արշաւանաց նոցա ։

Իսկ արևմտեան մասն մեծին Հայոց և փոքր Հայք գրեթէ ամբողջ էին 'ի ձեռս սուլտանին Հոռոմոց, այն է սուլտանին Իկոնիոյ կամ Ղոնեայու [1] . բայց և այն ամենայն տեղիք սուլտանին անցին 'ի ձեռս նոցին Մուղալ Թաթարաց․ զի յորժամ սոքա արշաւեցին 'ի ժամանակս Հեթմոյ Թագաւորին՝ և 'ի զօրավարութեան եղբօր նորա Սմպատայ, և 'ի կաթողիկոսութեան Կոստանդնի, փոխանակ Ջարմաղանի զօրավարին Մուղալ Թաթարաց « Իբրև էառ զիշխանութիւն (Բաչու Ղուրջին, որպէս գրէ Կիրակոս), իսկոյն զօր գումարեաց յամենայն ազգաց որ ընդ ձեռամբ նորա, և գնաց յաշխարհն Հայոց՝ որ ընդ իշխանութեամբ սուլթանին Հոռոմոց, և հասեալ 'ի Կարին քաղաք պաշարեաց զնա որ այժմ կոչի Թէոդուպօլիս »․ որ էր պատուականագոյն մասն արևմտեան կողման մեծին Հայոց ։ Նոյն զօրք Բաջուին դարձեալ հարին աստ զզօրս սուլտանին Հոռոմոց կամ Իկոնիոյ, և առին 'ի ձեռաց նորա զԵզնկա քաղաք որ 'ի մեծ Հայս, և զԿեսարիա, զՍեբաստիա և զՏիւրիկէ 'ի փոքր Հայս․ և դարձան աւարաւ « 'ի կայս ձմերոց իւրոց որ 'ի Հայս և որ յԱղուանս »։

Նոյն յարձակումն է գուցէ՝ զորմէ պատմէ և Վարդան յասելն․ « Ի ՉԴ․ Թուին (1255) եկն Հուլաւուն եղբայր Մանկու ղանին անթիւ զօրօք և մեծապատ իշխանութ̃ 'ի վերայ Պարսից, տաճկաստանեայց, Հայոց, Վրաց և Աղուանից․ և հրաման ետ նախ եկեալ զօրուն ամենայն ախուռն իւրեանց գնալ յաշխարհն (սուլտանին) Հոռոմոց․ յորմէ առհէ Թողին զվերին աշխարհս, և գնացին 'ի հարկէ, և կալան զամենայն միջերկրեայս (որ է փոքրն Ասիա) մինչև 'ի ծով, տիրելով աշխարհացն որ ընդ իշխանութ̃ սուլտանացն Հոռոմոց կոչեցեալ »։

ղազէրայ՝ պարսիկ յիշատակին առեալ տեղիք Թաթարաց 'ի սկզբան անդ․ « Առին, ասէ, զառաջինն զՇամքօր, Հուսպար Գանձակ՝ որ յառաջ առեալ էին․ առին զՍուգամ, զՔարհերձ, զՏերեւն զմեծ զգեղն Թագաւորանիստ, զԳարդման, զԵրզեկավանքն, զՄածնաբերդ․ առին և զարծով զամուր զգեղն զՏաւուշ՝ որ էր աթոռ սուլտանի․ առին զՏերունականն և զԵնոր բերդն »։

1 Պատմութիւն առանձին այսոցիկ տեղեաց գտեն ինչ պատմել 'ի գիրս մերոց պատմագրաց, զի ոչ 'ի ձեռաց Հայոց այլ 'ի ձեռաց Հոռոմոց սուլտանին առին ։ Այս սուլտանք կոչէին Սելջուկեանք յերրորդ կարգէ․ որք յԻկոնիոն կամ 'ի Ղոնեա նոր աթոռ թագ կանգնեցին սկսեալ յամէ տն 1084․ 'ի հիճրէթի 477․ և տևեալ զամս 220 մինչև յամ տն 1300․ 'ի հիճրէթի 700․ ընդ 19 թագաւորօք ։

Յետ այսորիկ 'ի չորեքտասան և 'ի հնգետասաներորդ դարու գրեթէ ամենայն երևելի քաղաքք Նահանգաց Հայոց աշխարհիս անկան 'ի ձեռս միոյ միոյ 'ի բռնաւորաց կամ ամիրայից, յառաջ քան զերևիլ Լէնկթէմուրայ և յետ նորա, զորոց ևս ևս յիշատակութիւն կարես գտանել առ Թոմայի Մեծոփեցւոյ. այլ քանզի յայնժամ բարձեալ էր բնաւին 'ի հայաստանեայց թագաւորութիւն ազգիս, և իշխանքն մեր ըստ մեծի մասին ցիր աստ անդ ցրուեալ և վարատեալ արտաքոյ Մեծին Հայոց, չէ անկ մերում հնազրութեան 'ի նոսին դեգերել։ Այլ որչափ ևս յիշեցաք մինչև ցարդ 'ի համար ածելով զերկիրս բարձեալս և նուաղեալս, 'ի տէրութէ մերոց՝ այժմ անցցուք 'ի թուել և 'ի պատմել զպատճառս յորոց գտեալ եկն այս նուաղումն։

## ԱՌԱՋԻՆ ՊԱՏՃԱՌ ՆՈՒԱԶՄԱՆ ԱՇԽԱՐՀԻՍ

Բաժանումն հայաստանեայց յերկուս օտար թագաւորութիւնս ։

Յաւուրս Հայկազանց ոչ գտանեմք ևս յիշատակութիւն ուրեք բաժանման թագաւորութե, այլ միայն յաւուրս Արշակունեաց, զորմէ գրէ Խորենացին. Գ. 34. « Յետ մահուանն Աբգարու բաժանի թագաւորութիւնն Հայոց յերկուս. քանզի Անանուն որդի նորա կապեաց թագ թագաւորեալ յեդեսիայ, և քեռորդի նորա Սանատրուկ 'ի Հայս »։ Այս է ահա առաջին բաժանումն թագաւորութե Հայոց. բայց իրօք չեղև յառաջանալ սակս մահուան Անանունն որդւոյն Աբգարու, զորմէ պատմէ 'ի Գլ. 35 ։ Եւ այս բաժանումն է 'ի մէջ ազգիս մերոյ. այլ զկնի գտեալ եկն բաժանումն աշխարհիս Հայոց 'ի մէջ երկուց օտար թագաւորութեց. այն է՝ Յունաց և Պարսից. որոյ առաջին պատճառ եղև 'ի մէնջ. զի 'ի մեռանիլ Մեծին Տրդատայ՝ Սանատրուկ ոմն արշակունի խորհեցաւ 'ի Փայտակարան թագաւորել. զայն տեսեալ և Բակուր բդեշխն Աղձնեաց՝ կամեցաւ ինքնագլուխ լինել դիմելով յՈրմիզդ արքայ Պարսից. յորմէ հարկ եղև և մերոց դիմել առ կայսրն Յունաց առ 'ի թագաւորեցուցանել զխոսրով զորդին Տրդատայ զօրինաւոր պայազատ և գյաջորդ, և աստի սկիզբն կալաւ իշխել տալոյ Յունաց 'ի

վերայ մեր, զորմէ տես 'ի կարգս Թագաւորաց Արշակունեաց ։ Ցայսմ հետէ սովորութիւն եղեւ յամենայն նուագս թագաւոր կացուցանելոյ՝ դիմել յօգնութիւն կայսեր. յորմէ զրգռեալ Պարսից խնքեանք եւս ձեռնամուխ լինէին յայնպիսի գործառնութիւնս թագաւոր կացուցանելոյ Հայոց աշխարհիս. և այնպէս երբեմն մին ձեռներէց լինէր յիշխել և երբեմն միւսն ։

Նոյն քանզի թագաւորք մեր Է. Արշակ և Պապ, անհաւատարմութիւն ցուցին առ կայսրն՝ նշկահելով և անցանելով առ Պարսս, որոց վերջինն եղեւ Վարազդատ. վասն որոյ ասէ Խորենացին Գ. 41. "Փոխանակ Վարազդատայ թագաւորեցոյց Հայոց Թէոդոս մեծ զերկուս որդիսն Պապայ զԱրշակ և զՎաղարշակ[1]. այսպիսի ինչ խորհեցեալ, որպէս թէ ոչ միաբանեսցին երկոքին յապստամբութիւն . . . որք եկին կալան զաշխարհս, և տիրեցին սմա արիաբար մարտիւք ընդ Պարսս„։ Մինչդեռ յայսպիսի վիճակի կայր հայաստան, երկոքին թագաւորք՝ Է. Շապուհ Պարսից արքայ, և Արկադէոս կայսր որդի Թէոդոսի արարին հաշտութիւն ընդ միմեանս յետ չորրորդ դարուն. քանզի որպէս գրէ Խորենացին Գ. 42. զօրք Շապհոյ հարեալ էին պատերազմաւ 'ի զօրաց մեծին Թէոդոսի հօր Արկադեայ, իսկ զօրք և զօրագլուխք Արկադեայ վատթարեալ ձանձրացեալ էին յանընդհատ պատերազմելոյ ։ Այլ այս հաշտութիւն նոցա եղեւ յերկուս բաժանելով զհայաստան ։ "Վասն որոյ (ասէ, երկոքեան եւս) հաւանեալ կամաւ յանձն առին բաժանել զՄիջագետս, և զՀայոց աշխարհս կրկին սահմանադրութեամբ„. այսինքն 'ի կրկին սահմանս հատանելով ։ Թէ զինչ խորհելով այսպէս յերկուս բաժանեցին զաշխարհս մեր՝ ցուցանէ Բուզանդ Գ. 1. ասելով. "Այնուհետեւ առնէ խորհուրդ միաբանութեան հաւանութեն ընդ միմեանս թագաւորն Յունաց և թագաւորն Պարսից. և լաւ համարեցան զաշխարհն Հայոց նախ ընդ երկուս 'ի մէջ իւրեանց բաժանել. զի ասէին թէ 'ի միջի մերում

1 Պարտ է ուղղել զխեփալակ Ասողկայ, որ Է. 1. գրէ. "Իսկ զկնի Վարազդատայ թագաւորեցին որդիքն Պապայ՝ Արշակ և Վաղարշակ ամս հինգ, և 'ի վեցերորդ ամի սոցա բաժանեցաւ թագաւորութիւնս Հայոց. Արշակայ առեալ զկողմն Յունաց, իսկ Վաղարշակայ առեալ զկողմն Պարսից զարդարատեանն աշխարհին„։ Սոյնպէս սխալէ և Վարդան ։ Զի ըստ Խորենացւոյն Վաղարշակ եւս միաժամանայն թագաւորեաց 'ի բաժինսն Յունաց միայն, իսկ 'ի բաժինսն Պարսից՝ Արշակ էր որ թագաւորեաց. և Թոռունն նորա զայն բաժինն Պարսից, և անցանելն 'ի բաժինն Յունաց՝ զկնի եղեւ ։

ընակեալ է այս հզօր և հարուստ թագաւորութիւն, լաւ է զի այսու եղծանել և խանգարել կարասցուք զայս թագաւորութիւն. նախ ընդ երկու բաժանել երկու թագաւորօքն արշակունեօք՝ զորս կացուցցուք, ապա և ընդ նոսա կռծել ջանասցուք, աղքատացուցանել, 'ի մէջ արկանել 'ի ծառայութի, զի մի կարասցեն 'ի մէջ մեր ամբառնալ զգլուխ. և հաստատեցին զայս խորհուրդ. ընդ երկու զաշխարհն բաժանեցին,,: Այս եղև առհա տիրապետ յերկուս բաժանումն աշխարհիս և նուաղումն, որպէս և գրէ անդէն Բուզանդ. "Բաժին կողմանն Պարսից՝ էր թագաւորին Խոսրովու, և բաժին մասինն Յունաց՝ էր թագաւորին Արշակայ. բայց և 'ի նոցանէ բազում գաւառք կրծեալք հատեալք այսր անդր, և նուաց սակաւ մասն յաշխարհաց երկոցունց առ երկոսեան թագաւորսն . . . Եւ բազում գաւառք յերկոցունցն հատան. նուաղեաց բաժանեցաւ ցրուեցաւ թագաւորութիւն Հայոց. պակասեաց յիւրմէ մեծութենէն յայն ժամանակին և յապայ,,[1]:

Սահմանն կամ բաժինն Յունաց առ մատենագիրս մեր յաճախ կոչեցաւ Արեւմտեան, իսկ սահմանն կամ բաժինն Պարսից՝ կոչեցաւ Արեւելեան. "Թագաւորք Յունաց և Պարսից, ասէ Սամուէլ, զաշխարհս Հայոց յերկուս բաժանեցին յաւուրս Արշակայ, որ երթեալ ընակէր առ Յոյնս. Արշակ տիրէր Արեւմտային մասին, (բայց ընդ գլխաւոր տէրութ. Յունաց,) և Շապուհ Արեւելայնոյն՝ զԽոսրով թագաւորեցուցեալ,,: Եւ Ղազար 'ի թղթ. 17. "Ի բաժանեալն զթագաւորութի Արշակունեաց յերկուս՝ առ 'ի հնազանդեցուցանելն զկողմն Արեւմտից աշխարհիս Հայոց՝ թագաւորին Յունաց ... և զկողմն Արե-

1 Զայս ասէ առ թշուառութն աշխարհիս Հայոց անսակալ Փ. Արշակայ թագաւորի, 'ի խոր խոցեալ այսպէս ողբայ առ Ղազարայ թղթ. 18. "Մինչ և ցայժմ, ասէ, կամ հակառակութ կամ սիրով եղեալք մեր ընդ միմեանս, զգացուցեալ էր մեզ նոցա գործով պատերազմի, ոչ և պարտ էր ճանաչել առն զկորձ մեւսոյ եւ լուացանի քան զինքն: Եւ թէ խոնարհեալ գիտէաք 'ի սէր առ միմեանս, սակայն եղբայր լինէաք հաշուեալ նոցա, պատուով և գահակցութ ըստ կրտսերագոյն մասին, և ոչ բնաւ անկեալք 'ի բաժին, զանուն ծառայութն առացեալ կրէաք յանձին: Իսկ այժմ . . . մասնեալ անկաք 'ի ստրկութ, և խոնարհեալ յանարգութի, անզօրութեամբ զանեալք 'ի բաժանումն,,: Կամի ասել. թէ մինչև ցայժմ ընդ Յոյնս կամ ընդ Պարսս հակառակութեամբ գնայաք, սակայն 'ի յարգի էաք յաչս նոցա, ստանձնելով զքաջութն գործս մեր 'ի պատերազմի. և եթէ սիրով գնայաք ընդ միմեանս, այսինքն ընդ Յոյնս կամ ընդ Պարսս՝ խոնարհելով առ նոսա, սակայն երբեք կրտսեր եղբայր պատուեալ լինէաք 'ի նոցունց, իսկ այժմ այսպիսի բաժանմամբ աշխարհին մերոյ անարգեալ 'ի ստրկութիւն անկաք:

ելից խոնարհեցուցանելով… արքային Պարսից „ ։ Սոյնպէս և Ասողիկ յասեն Բ. 1. «Թագաւորէ մասինն Արևելից Խոսրով արշակունի „ ։ Որպէս և երբեմն զմին կոչէին կողմն կամ Բաժին Յունաց․ իսկ զմիւսն Աշխարհ Հայոց, ըստ որում ընդ մեծ Հայք և հին Թագաւորանիստ նահանգն Այրարատ՝ էր 'ի բաժնին Պարսից․ «Գագիկ արքայ Հայոց, գրէ Ասողիկ, ժողով եպիսկոպոսաց արարեալ՝ որ յաշխարհէս Հայոց, և որ Յունաց կողմանէն „ ։ Յայսմ բաժանմանս ժամանակի եւ և առ Յունաց մատենագիրս անուն Բէռսարմէնիա, որ է Պարսկահայք․ զի ըստ աւելոյ Յոհաննու կաթողիկոսի՝ արդարև «յերկուս ճեղքեալ բաժանեալ էր Հայք 'ի մէջ կայսեր և Պարսից „ ։ Վասն որոյ զբաժինն իւրեանց Յոյնք կոչեցին յայնժամ սոսկ Արմենիա, որ է Հայք․ իսկ զհամօրէն բաժինն Պարսից կոչեցին Պարսկահայս[1] ։

Ի սահմանին Յունաց էր փոքր Հայք ողջոյն, նաև այն նահանգ մեծին Հայոց՝ որ կոչէր Բարձր Հայք․ զի պատմագիրք մեր զԿարին նաև զԴերջան գաւառս բարձր Հայոց ցուցանեն լինել ընդ տէրութե Յունաց․ Ղազար զՇաղագոմ գաւառ բարձր Հայոց յայտնի դնէ 'ի Հոռոմ տան, որ է ասել 'ի սահմանին Յունաց․ իսկ զգիւղն Բասենոյ գաւառին Այրարատու՝ Դուռն կոչեցեալ՝ դնէ 'ի սահմանակցութե Յունաց և Պարսից․ նաև չորրորդ Հայք նահանգ մեծին Հայոց զկնի Գ. Արշակայ Թագաւորի 'ի յետագայ ժամանակս ընդ Յունօք էր անկեալ, որպէս ցուցանեն պատմագիրք ։ Այլ բաժինն Յունաց նուազ էր քան զբաժինն Պարսից․ «Լաւ համարեալ (ասէ Խորենացին Գ. 42. վասն Գ. Արշակայ Թագաւորի) նուազ կողմանն տիրել և ծառայել քրիստոնեայ Թագաւորաց, և ոչ յոլովից իշխել, և մնալ ընդ լծով հեթանոսաց „ ։ Սոյնպէս դնէ և Բուզանդ Դ. 1. «Երկոքեան Թագաւորքն արշակունիք 'ի մէջ երկու բաժնացն սահմանս արկեալ հաստատէին խաղաղութի․ և երկիրն Հայոց երկոքեան բաժինքն, երկուց Թագաւորացն հնազանդէին իւրաքանչիւր բաժնի իւրաքանչիւր Թագաւորի․ բայց սակայն մեծ էր Խոսրովու բաժինն նորա քան զԱրշակայ „ ։ Խոսրովուն էր

1 Զայս չէ պարտ շփոթել ընդ Պարսկահայս անուամբ յիշատակեալս 'ի Խորենացւոյն յաշխարհագրութեան․ զի Յունաց մատենագրաց կոչեցեալ Պարսկահայք՝ էր ողջոյն մեծ Հայք, որ չափ ինչ անկանէր ընդ տէրութե Պարսից․ իսկ ըստ Խորենացւոյն Պարսկահայք՝ էր մի միայն նահանգ մեծին Հայոց, որ և 'ի գիրս մեր կոչի Հեր և Զարևանդ գաւառ ։

բաժինն Պարսից որ մեծ էր. իսկ Արշակայն՝ բաժինն Յունաց որ նուազ էր։ Բայց այնչափ բազմութ̃ Հայոց կային և 'ի բաժնին Յունաց, մինչև Կորիւն Կէս աշխ̃ին կոչէ զնմակեալսն 'ի նմա. «Խորհուրդ առնէր այնուհետև (ասուրբն Մեսրոպ) վասն կէս ազգին Հայոց, որ էր ընդ իշխանութ̃ Թագաւորին Հոռոմոց ... վասն մանկտւոյն յաշակերտութիւն առ 'ի Կէս ազգին Հայոց ժողովելոյ .... և հրեշտակս արձակեալ այնուհետև 'ի գաւառս Կէս ազգին Հայոց յիշխանութ̃ն կայսեր»։ Եւ զայն սպարապետն 'ի կայսերէն կարգեալ 'ի վերայ հանօրէն բաժնին Յունաց՝ կոչէ Սպարապետ Հայոց։ Այլ ունէր անդ կայսրն Յունաց և ուրոյն զօրս 'ի Հայոց ժողովեալ. զորս զհեծելազունդն յիշէ Ասողիկ Գ. 14. «Եւ իբրև Թագաւորեաց Վասիլ 'ի նիէ. Թուականին (978) որպէս յառաջին ասացաք, Վարդ՝ որ ըստ աւելածայնութ̃ Սկլարոս կոչիւր, ապստամբեալ Թագաւորէ 'ի կողմանս Ջահանայ և Մելտինոյ ... և միաբանեալ ընդ ինքեան զհեծելազունդ զօրն Հայոց՝ որ ընդ Յունաց Թագաւորութ̃ն. և բաժանեալ զԹագաւորութ̃ին Յունաց հասանէ մինչև ցԲիւթանիա, Ճակատ տալով ընդ Թագաւորին Վասիլ զամս չորս ... յորում քաջապէս մարտուցեալ զօրն Հայոց, որպէս որդիք իշխանին Տարօնոյ Գրիգորի, և Բագարատ և Ջափրանիկ իշխան մոկացի, ահաբեկ արարեալ զզօրսն Յունաց՝ զօրէն փոթորկեալ մրրկի չփոթեն, գլորելս որոտագղորդ արարեալ և զբազումս ձերբակալս. ուր սպանեալ եղև ներքինին Պետատնոս գլուխ զօրուն»։

Այս բաժանութիւն աշխարհիս յերկուս՝ 'ի յունականն և 'ի պարսկականն՝ միշտ տևեաց նաև յաւուրս Բագրատունեաց. մասն պարսկական Թէպէտ ընդ զանազան փոփոխութ̃ անկաւ, այլ ըստ մեծի մասին ունէր կամ իշխան զօք հրամանատար հայկազուն, և կամ Թագաւոր հայկազուն հարկատու Պարսից. նա մանաւանդ Վռամշապուհ արքայն մեր երկուց բաժնից եւս եղև իշխող հարկատուութ̃. «Վռամշապուհ, ասէ Խորենացին Գ. 51. ունէր զաշխարհս մեր. և ծառայէր երկոցունց Թագաւորացն՝ տալով զհարկս. զմասինն Պարսից՝ Վռամայ (Թագաւորին Պարսից), և զմասինն Յունաց՝ Արկադեայ» կայսեր յունաց։ Այլ մասն յունական փութով ել 'ի տէրութ̃է Հայոց. զի յետ մեռանելոյ Գ̃. Արշակայ Թագաւորին մերոյ, «Այնուհետև, ասէ Խորենացին Գ. 46. ոչ եւս կացուցին Յոյնք 'ի բաժնի իւրեանց Թագաւոր, այլ ... աշխարհին

*իւրեանց մասինն կացուցին Յոյնք Կոմէսս իշխանս „: Իսկ Պարսիկքն յետ զբռնամբ ածելոյ զկէս հայաստանի 'ի դաշնադրութեան Արկադեայ և Շապհոյ՝ այնուհետև ջանահնար լինէին և զամենայն Հայս զբռնամբ ածել. զորմէ վկայէ Թովմա Արծրունի 55. 57. " Վռամ և Յազկերտ զկէս աշխարհիս (Հայոց) յինքեանս յանգուցեալ, զբոլոր ապա աշխարհիս զտիրելն յոխորտային „: Յորմէ զհետ գայր ստէպ կռիւ և մարտ 'ի մէջ. որով հայաստան լինէր իբր նախապարիսպ սահմանաց տէրութեան կայսերաց Յունաց յայնմ մարզէ. զի այն պատերազմ և աւերումն Պարսից և Յունաց՝ որ ունէր լինել 'ի բնիկ սահմանին Յունաց, լինէր 'ի սահմանին հայաստանեայց:*

## ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏՃԱՌ ՆՈՒԱԶՄԱՆ ԱՇԽԱՐՀԻՍ

Արշաւանք զանազան Բդեշխաց 'ի Հայաստան
ընդ զանազան ժամանակս:

*Աշխարհս Հայոց գրեթէ համապազորդեան իւր թշնամի ունէր զիւր դրացի տէրութիւնս հիւսիսականս, և մանաւանդ զպարսկականն՝ որոց արշաւանք 'ի Հայս գրեթէ անընդհատ էր. և անընդհատ ոտնակոխումն և աւերումն աշխարհիս, և յաճախանէ անընդհատ պատերազմ 'ի մէջ երկուց, մինչև բարձաւ և թագաւորութիւն մեր 'ի ցեղէն Արշակունեաց: Բայց նախ քան զասա եղև արշաւանք հզօր ազգին հոռմայեցւոց. որք թէպէտ հեռաւորք, բայց երկայնմտութեամբ և կենցաղագիտութեամբ իւրեանց հարկատու կացուցին զազգ մեր: Յետ Պարսից 'ի սկիզբն եօթներորդ դարուն յաջորդեաց արշաւանք արաբացւոց. որոց տիրեալ և 'ի վերայ Պարսից, միանգամայն ընդ նոսա արշաւէին 'ի Հայս առաւել բազմութեամբ: Յորում ժամանակի առաւելապէս աղարտեալ ապականեալ եղծաւ աշխարհս, և ոյժ և զօրութիւն նախարարաց տկարացաւ. Զի բաց 'ի հարստահարութեանց և յաւարառութեանց՝ զզօրաւորս և զկարօղս 'ի մանկական հասակի յիւրեանց կրօնս և յիւրեանց ազգս դարձուցանէին: Եւ այնպէս 'ի միոյ կողմանէ զաշխարհն աւերէին, և 'ի միւս կողմանէ զբնակիչսն նուազեցուցանէին՝ կոտորելով և դարձուցանելով.*

*Թագաւորութիւն որ 'ի ցեղէն Բագրատունեաց՝ որպէս յաւուրս արաբացւոց ել և սակաւ մի ժամանակ փայլեալ*

երևեցաւ, նոյնպէս և յաւուրս արաբացւոց յանդադար հարստահարութեանց նոցա և յարշաւանաց 'ի վերջին տկարութեան հասեալ՝ բոլորովին չիջաւ։ Ընդ թագաւորութեամբ և բազում իշխանք ոչ կարացեալ զդէմ ունել յաճախ արշաւանաց նոցա, թողեալ զերկիր իւրեանց որ 'ի մեծ Հայս՝ անցին 'ի սահմանս Յունաց։ Այսպէս եղեն իշխանն Վասպուրականի, իշխանն Կարուց կամ Վանանդայ, և այլն։ Սոցա արշաւանաց և ոչ Յոյնք, և ոչ եւրոպացւոց խաչակրաց բազմութիւնք կարացին ունել յընդդիմամարտութեան։

Առաւել զարհուրելի գտաւ արշաւանք սկիւթացւոց կամ Մողալ Թաթարաց 'ի սկիզբն երեքտասաներորդ դարուն. որոց և ոչ արաբացիք կարացին զդէմ ունել։ Մերթ յայնժամ առաւել տկարացեալ գոլով յարշաւանաց երկուց առաջնոցն, բոլորովին անկան ընդ սրով և ընդ լծով Թաթարաց. և հայաստան աշխարհ 'ի սպառ ապականեալ եղծաւ։ Միայն քաջութեան անհատից ումանց, և ամրութեան կողմանց ինչ հայաստանեայց զդէմ կալան առ ժամանակ մի. բայց և նոքա ապա կամ կոտորեցան, և կամ անկան ընդ տէրութեամբ Թաթարաց, որպէս և աշխարհն համօրէն։

Ահա արշաւանք երից այսոցիկ թշնամեաց հասուցին զաշխարհ հայաստանեայց յայս սահման թշուառութեան յորում գտանի այժմ։ Եղեն և արշաւանք Յունաց, բայց առ ժամանակեայ և սակաւ ինչ փոփոխակար։ Եղեն և արշաւանք հիւսիսական ազգաց սարմատացւոց, բայց հինաբար։ Զորոց զամենեցունց մի ըստ միոջէ պատմեսցուք համառօտիւ. ուրոյն ուրոյն նշանագրելով զարշաւօղ թշնամին և ուրոյն ուրոյն զժամանակն յորս արշաւեցին. որով ընթերցօղք մեր իբրև 'ի պատկերի տեսցեն զորս սփռեալ կան 'ի զանազան տեղիս պատմագրաց մերոց, ըստ այսմ կարգի եղեալ զամենայն.

Ա. Արշաւանք Հռոմայեցւոց։

Բ. Արշաւանք Հիւսիսայնոց։

Գ. Արշաւանք Պարսից։

Դ. Արշաւանք Արաբացւոց։

Ե. Արշաւանք Յունաց։

Զ. Արշաւանք Թուրքաց Տուղրիլեանց։

Է. Արշաւանք Սկիւթացւոց, կամ Մուղալ Թաթարաց։

Ա. Արշաւանք և հարկապահանջութիւնք Հռոմայեցւոց ։

Ի պատմութիւն մեր չիք ընթեռնուլ արշաւանս Հռոմայեցւոց 'ի բնիկ երկիր Հայոց մեծաց. այլ որ ինչ կարիք պատմին ընդ հռոմայեցիս յաւուրս միջին Տիգրանայ և Արտաւազդայ՝ են արտաքոյ աշխարհիս Հայոց, որք և արտաքոյ են մերում առաջարկութեան ։ Իսկ 'ի գիրս Հռոմայեցւոց և Յունաց գտանին պատմութիւնք ճոխաբանք վասն արշաւանաց հռոմայեցւոց 'ի բնիկ մայրաքաղաքս Հայոց մեծաց. զոր օրինակ էր Արտաշատ. նաև զրուցել տեղիս տեղիս ընդ իւրեանց տէրութե. մինչև նաև թագաւոր Հայոց կացուցանել, յորդւոց յորդի պայազատելով զկնի միմեանց, զորոց և զդրամս հատեալս գտանեմք բազում ուրեք 'ի հանգստարանս հնութեց, յանուն Արգաւրու, Տիգրանայ, Արտաւազդայ, և այլն, դրոշմեալ յանուանէն 'ի վերայ՝ Թագաւոր Հայոց[1] ։ Որպէս և Փրաատ արքայ Պարթևաց գտանի 'ի դրամս ինչ դրոշմեալ 'ի գուճս, յանձնելով Օգոստոսի զՀայաստան ։ Զորոց քննելի և ոչ զյիշատակս ինչ մարթ է գտանել 'ի պատմութեան Խորենացւոյն, եւ համարիմ վասն կողմանց ինչ հայաստանեայց իմանալ զամենայն. զոր օրինակ և 'ի պատմութիւն օտար ազգաց է տեսանել զնման նորին. որք թէպէտ 'ի փոքր ինչ կողմն աշխարհին տիրեն, բայց ամոր ազգաւ նաև համօրէն այնր աշխարհին թագաւոր զինքեանս անուանեն, իբրու ունիս իմն համարելով նաև պայազատից նոցա կրել զնոյն անուն ։ Զոր օրինակ և այժմ է տեսանել առ թագաւորս Սառտէնեայի, որք թագաւոր Կիպրոսի կոչեն զանձինս. և զի թագաւորն Կիպրոսի կրէր մականուն և Հայաստանեայց թագաւորի, այնուհետև ազգաւ և նա կոչէ զինքն մինչև ցայժմ Թագաւոր Հայաստանեայց, որոյ և ոչ իսկ տեսեալ է զՀայաստան կամ զԿիլիկիա, որ առ նոսա Հայ.

1 Ստրաբոն ժա. 531. զանցս Հայաստան աշխարհիս կամելով համառօտիւ պատմել, ասէ. « Գործիկք կալան զՀայաստան, աստ մակեդոնացիք յետ զրուելոյ զԱնտիոքոս և զՄարս, որոց վերջինն եղև Խոսրոյի, յետ մեծին Նախարարաց Գործիկ 'ի յետ-աստաղայից Օրոնդէսի. ապա 'ի զօրավարացն մեծին Անտիոքոսի՝ որ ընդ-գէմ հռոմայեցւոց պատերազմեցաւ՝ յերկուս մասունս բաժանեցաւ, որք էին Արտաշէս և Զարեհ ։ Սոքա հրամանաւ արքային (Անտիոքոսի) տէրեցին (աշխարհին Հայոց). իսկ 'ի յաղթելն նորա՝ անձնատուր եղեն հռոմայեցւոց, և 'ի նոցանէ թագաւորք անուանեցան »։

ծանր 'ի սահմանս Հայոց, զորս մաղթեալ Արտաշիսի և կրկին առեալ զհարկսն՝ հաշտեցուցանէ "։

Նոյն յորժամ յաւուրս Դոմետիանոսի կայսեր ազմուկ յուզէր յարեւմուտս, "Վստահացեալ, ասէ Խորենացին Բ. 54. Արտաշէս՝ նշկահեալ ընդդիմանալ հռովմայեցւոցն ոչ տալով հարկս "։ Յայնժամ Դոմետիանոս առաքեաց զօրս 'ի վերայ Արտաշէսի, և եղև մարտ սաստիկ 'ի կողմանս Կեսարիայ. այլ քանզի 'ի նմին ժամանակի մեռաւ Դոմետիանոս, նաև յաջորդ նորին Ներուաս, "Առաւել հպարտացեալ, ասէ, զօրացն Հայոց և Պարսից՝ ասպատակ եւս 'ի Յոնս արարին (որ էր սահման հռովմայեցւոց). ընդ սոսա հայելով եգիպտացւոց և կողմանցն պաղեստինացւոց՝ արգելուն և նոքա զհարկսն հռովմայեցւոց "։ Այլ Տրայիանոս կայսր խաղաց այսպ 'ի վերայ եգիպտացւոց և պաղեստինացւոց. յորմէ "ահաբեկեալ (ասէ Բ. 55.) Արտաշէս մեծամեծ ընծայիւք ելանէ ընդառաջ նորա, և թողութիւն 'ի նմանէ գտեալ զանցանս յաշխարհս Հայոց... յայնմ հետէ անսայթաք հարկեաց Տրայիանոսի, և յետ նորա Ադրիանոսի կայսեր զամենայն աւուրս իւր "։

Զկնի այնորիկ Ա. Տիրան թագաւոր մեր, որպէս գրէ Բ. 62. "Մտերմութեամբ ծառայեաց հռովմայեցւոց "։ Նոյնպէս և յաւուրս փոքուն Խոսրովու յիշատակի Գ. 6. գալ Անտիոքոսի ժողովել զհարկսն, և գնալ առ կայսրն։ Իսկ յաւուրս Բ. Արշակայ՝ Վաղենտիանոս կայսր 'ի Թղթին իւրում Գ. 19. հրամայելով գրէ առ նա. "Առաքեսցես զհարկս աշխարհիդ "։ Ի բանից աստի յայտ է, թէ սկսեալ յաւուրց անտի Աբգարու մինչև ցվախճանս տևեաց այս հարկատուութիւն առ հռովմայեցիս, նախ 'ի Հռոմ առաքելով, ապա 'ի Բիւզանդիոն՝ յետ անդրանոր փոխադրելոյն կայսերականն գահոյն. բայց հետզհետէ առաւելլու կամ նուազել ոչ լսեմք, որպէս ունիմք լսել առաւել 'ի հարկապահանջութեան Պարսից և արաբացւոց։

Բ. Արշաւանք սահմանակից ազգաց հիւսիսայնոց կամ Սարմատացւոց, մանաւանդ Խազրաց, նաև Վրաց։

Քանզի և սոցա արշաւանք 'ի վաղեմի ժամանակաց անտի սկսեալ պատմին, անկ համարեցաք զկնի հռովմայեցւոց դնել և զսոցայն. որք թէպէտ ազգք են փոքունք, այլ

շուրջ զմեօք, յորս առէպ եղեն արշաւանք Խազրաց, որք 'ի գիրս Տաճկաց գրին Հազարք, Խասարք: Երկերեք ար-շաւանք նոցա եղև յաւուրս մերոյ Վաղարշայ Թագաւո-րի. «'Ի սորա աւուրս, ասէ Խորենացին Բ. 65. միաբա-նեալ միաբանութիւն հիւսիսականացն՝¹ զԽազրաց ասեմ և զԲասլաց, արտաքս քան զդուռն Ճորայ ելանել. առաջ-նորդ և թագաւոր ունելով յինքեանց զՎնասեպ անուն Սուր-հապ, որք անցեալ վտակին այսր զԿուր գետով»: Վաղարշ փախոյց զասա անցեալ ընդ կապանն Ճորայ. բայց անդ միւսանգամ Ճակատ տուեալ նոցա, թէպէտ և անդէն փախստականս լինէին, բայց զՎաղարշ թագաւոր սպանին: Միայն մեծն Խոսրով որդի նորա վրէժս պահանջելով 'ի նոցանէ, անմիջապէս վանեալ, ասա առ յապահովութիւն «Մի 'ի հարիւրոց յամենեցունց պիտանեացն առնու պա-տանդս»:

Յաւուրս Տրդատայ թագաւորին որդւոյ մեծին Խոս-րովայ յանդգնեցան անդրէն արշաւել 'ի Հայս. զոր Խորե-նացին Բ. 85. յիշատակէ Հիւսիսականաց Ճակատ կոչելով. և զահագին քաջութիւն Տրդատայ ստորագրէ, զոր արար 'ի վերայ թագաւորին Բասլաց. բայց Զենոբ Թղթ. Ճէ. 'ի նմին պատմութեան կոչէ զնա թագաւոր հիւսիսոյ. և ա-նուն տայ նմա Գերդաւեհան. և այնպէս ցուցանէ թէ ա-նայր նա հարկս յաշխարհէս Հայոց. զի ասէ. «Առաքեաց թուղթս առ Տրդատ . . . զի կամ տացես զիշխանս իմ յիս, և զհարկս հնգետասան ամաց, ապա թէ ոչ քան-դեմ զերկիրդ քո սրով և գերութեամբ»: Զիարդ և իցէ, Տրդատ չարաչար խորտակեալ զնոսա 'ի բաց վարեաց մինչև յաշխարհն Հոնաց, ըստ գրելոյ նորին Խորենացւոյ:

Սոքա դարձեալ յաւուրս փոքուն Խոսրովու արշաւե-ցին 'ի միջոց աշխարհիս Հայոց, զորս Խորենացին Գ. 7. կոչէ «Բնակիչք հիւսիսոյ Կովկասու»: Իսկ Բուզանդ Գ. 7. զայն արշաւանս տայ արքային Մասքթաց Սանեսան անուն, որ ժողովեաց զամենայն զօրս Հոնաց, և ազգաց հիւսիսայնոց կամ կովկասայնոց, զորս յանուանէ յիշէ ան-դէն, որք և քանդէին և աւերէին զամենայն երկիրն Հայ-

¹ Զոր մատենագիրք օտար ազգաց Սարմատացիս և Սկիւթացիս կոչեն, մատենագիրք մեր առէպ կոչեն զնոսա Հիւսիսայինս և Կովկասայինս. իսկ առ Բուզանդայ թուի նաև Մազ-քութք կոչեցեալ. իբր յանուն միոյ յերևելի ազգացն որք էին Մազքութք՝ զամենայն Սկիւթիա կոչել, թող զի նաև անուն Գութք թուի համառօ-տութիւն Մազքութք և Սկիւթիա ա-նուանց:

ոց, ասէ։ Բայց և զսոսա քաջապէս վանեալ հալածեցին յայնժամ Հայք օգնեալ զթագաւորն նոցա։ Ունէին աւշաւել և յաւուրս Գ. Տիրանայ, որդւոյ փոքուն Խոսրովու, բայց Ղազար Փարպեցի ասէ՝ որ յայնժամ սէր մեծ ունէր ընդ Տիրանայ, «Զօրավիգ օգնականութ եղեալ, ասէ Խորենացին Գ. 12. Թափէ զնա յարձակմանէ հիւսիսականացն ազգաց, որ միաբանեալ եկին առաւել քան զկապանն Ճորայ, և բնակեցան 'ի սահմանս Աղուանից ամս չորս»։

Յորժամ յաւուրս Աստուածմէլիք ամիրապետին որդւոյ Մրուանայ անկաւ խռովութ յարաբացիս մինչև զմիմեանս կոտորել, յայնժամ Հայք՝ որպէս և Վիրք և Աղուանք, ասէ Ղևոնդ գլ. Գ. դադարեցան 'ի տալոյ նոցա հարկս, բայց յորժամ անցին ամք երեք, «Ի չորրորդում ամի, ասէ, տիրեցին 'ի վերայ աշխարհիս Հայոց հիւսիսային ազգն որ ասին Խազիրք, և սպանին 'ի պատերազմի զիշխանն Գրիգոր (Մամիկոնեան՝ որ էր հրամանատար) և զբազումս 'ի նախարարացն, և զիշխանն Վրաց և Աղուանից, և նոքեանք ասպատակեալ սփռեցան 'ի վերայ աշխարհիս Հայոց. առին զբազում գաւառս և զաւանս. և առեալ զաւար և զգերութիւն գնացին յաշխարհն իւրեանց»։ Այս արշաւանք Խազրաց է՝ զորմէ գրէ Ասողիկ Գ. 2. յաւուրս Աշոտոյ բագրատունւոյ որդւոյ Բիւրատայ՝ որ եղև հրամանատար Հայոց. «Յայսմ ժամանակի հալածումն և աւերումն սաստիկ եհաս աշխարհիս Հայոց. զի 'ի ՃԼԴ. թուին (685) տիրեցին հիւսիսային զօրքն, որք են Խազիրք, Հայոց, Վրաց և Աղուանից, և սպանին զիշխանն Հայոց և զՎրաց 'ի պատերազմին»[1]։

Ի մէջն անդ տասներորդ դարուն պատմի արշաւանք Բէր անուն Թագաւորին Ափխազաց յարձակեալ 'ի վերայ Աբասայ Թագաւորին, բայց և կոտորեալ 'ի նմանէ։ Երկոտասաներորդ դարուն ընդարձակօք Սամուէլն յիշէ զարշաւանս ուրուք եղուզակի, որ պարտի լինել 'ի դրակից ազգաց, գրելով 'ի ոճս. Թուին 1163. «Եկն եղուզակ Աթաբակն բազում զօրօք 'ի դաշտն Գագայ. և հուր արկեալ կամէր այրել զսուրբ խաչն զԳագայ սուրբ Սարգիսն»։

1 Յոհաննէս կաթողիկոս զայս- նունն իշխանին Հայոց Գրիգորի՝ դնէ յեօթներորդում ամի կաթողիկոսութ Գ. Սահակայ։ Եւ Սամուէլ դնէ 'ի թուին ՃԻԸ. որ է ամ տեառն 679։

կելոյ՝ ընդ ձեռամբք իւրեանց նուաճեալ ունէին զաշխարհ մեր և հարկս հանէին. անդ ունիս ուսանել ստորև։

### Գ. Արշակունիք Պարսից։

Յետ թագաւորելոյ Պարթևաց 'ի վերայ Պարսից՝ որպէս և 'ի վերայ Հայոց, ցեղ երկոցունց թագաւորաց նոյն գոլով խաղաղութիւն էր 'ի մէջ Հայոց և Պարսից. բայց խռովութիւն որ եղև 'ի Պարսս՝ սակս բառնալոյ զթագաւորութիւն 'ի ցեղէն Պարթևաց և դարձուցանելոյ 'ի ցեղն Սասանեան, խռովեաց նաև զաշխարհ մեր, եղև պատճառ ապստամբութեան մեծին Խոսրովայ արքային մերոյ, և յարձակելոյ Պարսից յաշխարհ մեր։ Յայնժամ նախարարք Հայոց զզօրս Յունաց ածին 'ի Փռիւգիոյ առ 'ի ընդդէմ կալ Պարսից. բայց կայսրն Վաղերիանոս զբաղեալ գոլով 'ի պատերազմունս իւր ոչ ժամանեաց գալ յօգնութիւն մերոցն. "Վասն որոյ համարձակաբար արշաւեալ 'ի մեզ Արտաշիր (Պարսից թագաւորի, ասէ Խորենացին Բ. 76.) և զզօրս Յունաց փախստական արարեալ, գերելով գչելով մասն աշխարհիս յաւեր դարձուցանէ"։ Ահաւասիկ առաջին արշաւանք Պարսից յետ թագաւորելոյ Արշակունեաց, այլ յոյժ վնասաբեր. յորում ժամանակի և նախարարք Հայոց փախստական եղեալ 'ի Յոյնս ապաւինէին, որպէս գրէ անդէն Խորենացին։ Բայց Արտաշիր ոչ կամեցեալ զաւերումն աշխարհին Հայոց, զի վնասէր շահուն իւրոյ, "Գեղեցկապէս յարդարեալ, ասէ Բ. 77. զաշխարհս Հայոց 'ի կարգ առաջին հաստատէր"։ Բայց առաջին ազատութիւն հայաստանեայց բարձաւ. զի Արտաշիր արքայ Պարսից "կալաւ զաշխարհս մեր որպէս զմի յաշխարհացն իւրոց հանդերձ պարսիկ գործակալօք ամս քսան և վեց. և յետ նորա որդի նորին որ անուանեցաւ Շապուհ, որ լոկ՝ արքայի անուն, ցթագաւորելն Տրդատայ, ամ մի"։ Յայնմ ժամանակի պարսիկ գործակալք իշխէին 'ի վերայ Հայոց աշխարհին. վասն որոյ յորժամ Մամգուն 'ի Ճենաց փախստական եկն առ Շապուհ, յայնժամ Շապուհ, որպէս ասէ Բ. 81. "առաքէ զնա իբրև վտարանդի առ գործակալս իւր որ 'ի Հայս"։

Մջատարարն յայտնապէս բանուէ Պարսից եղև Տրդատ, որ "Երագապէս և բազում ճակատս տուեալ նախ 'ի Հայս՝ և ապա 'ի Պարսս՝ իւրով անձամբն առնէր զյաղթութիւն...

և այսպիսի նահատակութք յածեալ 'ի Պարսս և յասորես-տան, մնայր ևս քան զՏիգրան յարձակի»: Խորենացին Բ. 82։ Բայց 'ի գնալն Տրդատայ 'ի Հռոմ պարապ գտեալ Շապուհ, գրգռէ զհիւսիսայինսն ամենայն յարձակել 'ի Հայս. ինքն ևս ժամ եղեալ 'ի միւս կողմանէ խաղայ պատե-րելկ զօրօք։ Տրդատ փութայ ևս ցրուեալ, և բազմութ զօ-րաց հռոմայեցւոց ընդ ատրպատան յարձակեալ, և ընդ հիւսիսայինս կողմանս իշխանութ Պարսից դիմեալ, փա-խստական արար զՇապուհ. որոյ նեղեալ յոյժ՝ զմեծն Կոս-տանդիանոս միջնորդ կալեալ արար հաշտութի և խաղա-ղութիւն մշտնջենաւոր ընդ Տրդատայ, բայց իբրք չեղև մշտնջենաւոր։

Օլ 'ի չորրորդ դարուն յաւուրս փոքուն Խոսրովու որդւոյն Տրդատայ դարձեալ արշաւեցին Պարսիկք 'ի Հայս. «Ոչ դադարէին, ասէ Բուզանդ Գ. 8. Պարսք 'ի տալ պատերազմ ընդ Խոսրովու արքային»։ Այլ Հայք 'ի ձեռն Վաչէի զօրավարին և Վահանայ ամատունւոյն միշտ ընդդէմ կային, և ոչ տային թոյլ անխափ արշաւել և աւերել զերկիր Հայոց, որով «Կայր արքայ 'ի հանդըս-տի, և աշխարհ 'ի շինութ և 'ի խաղաղութ զամենայն ա-ւուրս կենաց նորա»։ Բայց 'ի գլ. 11. միաբանդամ ար-շաւեալ ասէ Պարսից, «Կուտեցան առնուլ զաշխարհն Հայաստան երկրին»։ Եւ թէպէտ Հայք ընդդէմ ելին 'ի ձեռն Վաչէի ստորատեառն՝ այլ 'ի նոյն պատերազմի ան-կաւ Վաչէ, և եղև սուգ անհնարին ամենայն աշխարհին։ Յաւուրս Բ. Արշակայ արքային մերոյ խաղաղութ էր ընդ մեզ Բ. Շապուհ Պարսից արքայ. որում և վկայեն նախա-րարք Հայոց առ Եղիշէի 'ի Բ. յեղանակին, ասելով առ Բ. Յազկերտ արքայ Պարսից. «Յիշեցուցանեմք քեզ զժա-մանակն Շապհոյ արքայից արքայի, որ էր հայր հաւուն քո Յազկերտի. և ետ նմա Աստուած զերկիրս Հայոց 'ի ժառանգութիւն սոյն օրինօք, որով և մեք իսկ վարիմք այժմ. և հարքն մեր՝ և հաւքն հարցն մերոց կացին նմա 'ի ծառայութի վաստակս. և սիրով կատարէին զամե-նայն հրամանս բանի նորա. և բազում անգամ 'ի նմանէ մեծապարգևք լինէին»։ Այլ պատմութիւնն ցուցանէ անհաւատարմութի իմն լեալ 'ի կողմանէ Հայոց առ նա, և վասն այնորիկ սկսեալ նորա յարձակել յաշխարհ մեր, և հալածել զքրիստոնեայս. և 'ի ձեռն ուրացողաց չարա-չար աւերել զՀայաստան, զորմէ տես 'ի գլուխն կրօնի։

Իսկ յաւուրս Բ. Յազկերտի 'ի մէջ հինգերորդ դարուն՝

մարտիւ . իսկ Վարդանայ առեալ զընտիրս իւր և զայլ պայազատն փախստեայ անկանի յաշխարհն Յունաց 'ի Թագաւորեալ քաղաքն Կոստանդնուպօլիս ,, : Եւ յայնմանէ բազում աղէտք և հարուածք զհետ եկին :

Ընդ այնր ժամանակի՝ զոր ինչ յիշատակեն գիրք վասն մերոյ աշխարհին կրեալ 'ի Պարսից զարշաւանս և զաւերմունս՝ խառն են ընդ արշաւանս արաբացւոց . զի 'ի մեռանել Գ . Յազկերտի Պարսից արքայի՝ արաբացիք տիրեցին Պարսից 'ի սկիզբն եօթներորդ դարու . վասն որոյ զյիշատակութիւնս նոցա գտցես յարշաւանս արաբացւոց և մանաւանդ Տուղրիլեանց Պարսից .

Հարկապահանջութիւնք Պարսից :

Յաւուրս Կիւրոսի և Կամբիւսեայ , ասէ Երոդոտոս , չէր ինչ սահմանեալ առ Պարսս սակս հարկաց , այլ ընծայս մատուցանէին . իսկ սահմանօղ այսր կարգադրութե հարկաց և այլոց այսպիսեաց՝ զԴարեհ զորդին Վշտասպայ ասեն լինել Պարսիկք . զորմէ գրէ նոյն Երոդոտոս գիրք Գ . գլ . 89 . 'ի քսան նահանգս բաժանեալ զամենայն սահմանս իւր , զոր Պարսիկք Սատրապութիւնս կոչեն , ասէ , և 'ի վերայ իւրաքանչիւրոց տարեկան հարկս կարգեալ , զորս թուէ անդէն . ուր 'ի գլ . 93 . զերեքտասաներորդ նահանգն յիշատակեալ՝ ասէ . “ Ի Բակտիկեայց և 'ի Հայոց և 'ի նոցունց սահմանակցաց մինչև 'ի Պոնտոս ծով՝ քառասուն տաղանդս ,, սահմանեաց վճարել : Բայց այլ ինչ յիշատակութիւն չունիմք վասն այնր հնոյ ժամանակին Պարսից . իսկ 'ի ժամանակս յետագայ Պարսից՝ յաւուրց անտի լինելոյ մեր ընդ տէրութեամբ նոցա , գտանեմք զաշխարհս մեր միշտ հարկատու լեալ . զի Արտաշիր թագաւոր նոցա ընդ սպանանելն զԽոսրով թագաւոր մեր “ Զերկիրս գրով ընդ հարկաւ իւրով արկանէ , ասէ Խորենացին Բ . 77 . և անուանեաւք զիւր անունն հաստատէ ,, : Ուր ասելովն՝ գրով , տայ իմանալ՝ թէ առ 'ի հաստատուն կացուցանել զհարկատուութիւնս միշտ նաև յապագայ ժամանակս՝ 'ի գիր արձանագրեաց : Զնոյն հաստատէ և բանն Թովմայի Արծրունւոյ Գ . 15 . ուր ասէ վասն Արտաշրի վերջին թագաւորի Արշակունեաց . “ Ի թագաւորել Արտաշրի՝ խաղաղանայր երկիրս առ վայր մի 'ի շփոթմանց պարսկական գնդի . և հարկացն արքունի կանգնեցան դիւանք . զի այն հինգ ամ (էր) բեկեալ հարկք և

զօրք 'ի յաղթութենէ Պարսից ,,: Այս յառաջ քան զհինգ-ամս հանապազորդէին մերքն 'ի տալ հարկս Պարսից. զկնի անդրէն սահմանեցան դիւանք 'ի համար առնուլ արքա-նակրել զհարկս :

Յետ վերջանալոյ թագաւորութեան մերոյ Արշակու-նեաց՝ առաւել աճեաց հարկապահանջութիւն Պարսից, որպէս գրէ Թովմա արծրունի Գ. 1. « Յետ բառնալոյ թագաւորութեան Հայոց 'ի տանէն Արշակունեաց, ապա մարզպանք Պարսից կալեալ տիրէին աշխարհիս. և գըլ-խաւորք Հայոց մեծաց ամրանային 'ի քարանձաւս ամրա-շէն բերդից ըստ տեղւոյ տեղւոյ, և ըստ աշխարհս աշ-խարհս, և պատուականան բանութեան զօրացեալ աճէր. և հարկապահանջն դատողքն ելեալ առնէին սաստիկ խոշ-տանգանօք ,,:

Բայց Յազկերտ Բ. ընդ հալածանացն միանգամայն սաստկացոյց և զհարկապահանջութիւն առաւել յոյժ. սա վլին մնոք առաքեաց յաշխարհ մեր զամն Դենշապուհ, որ սկսաւ, ասէ Եղիշէ 'ի յեղանակին Բ. « խաղաղասէր կեղ-ծաւորութեամբ աշխարհագիր առնել ամենայն երկրին Հայոց 'ի թողութիւն հարկաց, և 'ի թեթևութիւն այրուձիոյ. թէպէտ 'ի վերին երեսս (այսպէս) կեղծաւորէր, այլ 'ի ներքոյ խորհուրդք չարագոյն ցուցանէին ,,: Զի բաց յայ-լոց չարեաց՝ նաև զմիայնակեացս որ բնակեալ էին 'ի վա-նորայս՝ ընդ նովին աշխարհագրաւ էարկ, և « զհարկ աշ-խարհին առաւել ծանրացոյց ,,: Եւ թէ զիարդ, սուղ ինչ զկնի նշանագրէ ասելով. « Քանզի ուստի արժանն էր առ-նուլ հարիւր դահեկանս, հատ՝ կրկին առնուին, նոյնպէս և եպիսկոպոսաց և երիցանց դնէին, ոչ միայն շինաց՝ այլ և աւերակաց, նա՝ ընաւ ով իսկ կարէ պատմել վասն ծան-րութեան մտից և սակից, բաժից և հասից, լերանց և դաշ-տաց և մայրեաց. (զոր) ոչ ըստ արքունի արժանաւորու-թեան առնուին, այլ հինաբար յափշտակելով. մինչև ին-քեանք իսկ մեծամեծս զարմանային, թէ ուստի այս ամե-նայն գանձ ելանէ, զիարդ չէին կայցէ աշխարհն ,,:

Օայամանէ դարձեալ բան առեալ զկնի, ասէ. « Իսկ զմտից և զսակից, և որ այլ ևս էին հարկ աշխարհին՝ բազ-մագոյն քան առ հարցն նոցա երթայր յարքունիս ,,: Զի բաց 'ի յառաւելլոյ զչափ հասարակ սակից և բաժնից, զոր 'ի վերոյ յիշեցաք, նաև յեկեղեցեաց սկսաւ առնուլ Յազկերտ. վասն այնորիկ նախարարք մեր բողոք բարձին առաջի նորա ասելով. « Նա և 'ի սուրբ եկեղեցւոյն, որ

Պիտակել արժան է և զայս վասն ժամանակի Պարսից, զի բաց 'ի դրամոց զոր տային 'ի հարկ' 'ի ժամանակս պատերազմի տային նաև զօրս. զի ընդ կոչելն Թագաւորին Պարսից 'ի պատերազմ, իւրաքանչիւր 'ի նախարարաց, որ ընդ տէրութեամբ նորա էին, իբրև պարտականք առեալ զայրուձին կամ զհեծելազօրս իւրեանց գնային յարքունիս պատերազմել ընդդէմ թշնամեաց նոցա, որպէս և բազում ուրեք գտանեմք յիշատակեալ 'ի գիրս մեր. այլ բաց յայսմանէ ամի ամի յարքունիս տալ այրուձի որոշեալ ինչ թուով, որպէս ակնարկել թուի բան Եղիշէի զոր բերաք 'ի վերոյ, ոչ յիշեմ ուրեք նշանագրեալ: Բայց յաւուրս արքայացուց ոչ գայր այս պարտականութիւն. զի ոչ գտանեմք յիշատակութիւն ինչ 'ի գիրս' ամիրայից արքայացուց կոչել զզօրս մերոց նախարարաց, և վարել 'ի պատերազմ ընդդէմ թշնամեաց իւրեանց:

Զհարկ աշխարհիս' մարզպանին էր գործ ժողովել և տանել յարքունիս. և զի նաև ուրացեալն Վասակ մարզպան էր կացեալ առ ժամանակ մի, վասն որոյ դիւրին եղև նմա գողանալ անտի. «Եւ 'ի վերայ այսր ամենայնի զնասու' (որպէս գրեալ է առ Եղիշէի յեղանակն Է.) և գող ևս գտանէր հարկի աշխարհին որ յարքունիսն երթայր»: Վասն այսր ամբաստան եղեն և մոգք և փշտիպանք առաջի Թագաւորին Պարսից ասելով. «Ամենայն անցք չարչարանաց որ անցին ընդ մեզ, և բազում հարուածք որ եղեն 'ի զօրքն արքունի, և աւեր և գերութիւն աշխարհին Հայոց, և կորուստ հարկացն արքունի, սկիզբն և առաջնորդ չարեաց' այրդ այդ եղև», այն է Վասակ:

Պատճառ այսչափ յաճախութեան և սաստկութեան արշաւանաց Պարսից, թողեալ զանմիաբանութիւն մերոցն' որ է ընդհանուր պատճառ ամենայն թշուառութեանց, էր նաև չունելն մերոց մշտատև միօրինակ կառավարութիւն ընդ այլ տէրութեամբ, կամ ընդդէմ արտաքին թշնամեաց: Եւ առաւել գլխաւոր պատճառ եղեն ուրացեալքն առ 'ի մէնջ. յաւուրս Շապհոյ Մերուժան, և յաւուրս Բ. Յազկերտի Վարազվաղեն և Վասակ. և զի Պարսիկք զուրացեալսն նաև 'ի վատ արանց յառաջադէմ առնէին, իսկ զերևելիս 'ի մերոց քաջ արանց կամ հալածէին և կամ սպանանէին միայն վասն քրիստոնէական կրօնից, նորին աղագաւ վատթարքն եղեն տէր և իշխան, իսկ ընտիրքն կամ փախեան և կամ 'ի մահ վարեցան:

Այս էր որ շարժեաց զսիրտ մեծի առն Վահանայ Մա

մինչեւ ի առաջարկել Պարսից, յորժամ նոքա սոէպ կոչէին զնա գալ 'ի հնազանդութիւն, զի կալցեն յիւրեանց ծառայութիւն զայնպիսի այր քաջ՝ որ իւրով անձամբ քաջագործութիւնս զարմացուցեալ էր զամենեսին։ Վահան յանձն էառ մտանել 'ի հնազանդութիւն նոցա՝ եթէ Վաղարշ թագաւոր Պարսից խոստասցի կատարել զերիս զայսոսիկ. առաջին՝ թողուլ ամենեցուն պաշտել համարձակ զքրիստոնէութիւն. երկրորդ՝ ճանաչել և ընտրութիւն առնել 'ի մէջ պիտանի և անպիտան արանց, առ լաւսն ունել զայր պատուական թէպէտ և քրիստոնեայ, և առ ոչինչ համարել զայր անպիտան թէպէտ և ուրացեալ. և երրորդ՝ զի թագաւորն լիցինին աչօք իւրովք և ականջօք իւրովք տեսցէ և լուիցէ, և ոչինչ գործեսցէ 'ի բերանոյ այլոց լսելով, որով յոլով առաւելութիւնք եղեն ճշմարտին ճանաչմանն, կառավարութիւն այլ ընդ այլոյ լինի, աշխարհ և բնակիչք նորա կորնչին։ Երեքին այսոքիկ կարևոր պարտք են թագաւորաց, և հիմունք ամենայն կառավարութեանց, որ ժամնիք յընթեռնուլ առ Ղազարայ 'ի թղթ. 281։

## Դ. Արշաւանք Արաբացւոց։

## ԴԱՐ Է

Արաբացիս մերքն սոէպ կոչեն Հագարացիք, Իսմայելացիք, Տաճիկք. ըստ որում մի 'ի գաւառացն Արաբիոյ ըստ աշխարհագրութե Խորենացւոյն կոչէր Տաճկաստան. այլ Սարակինոս[1] կոչել զարաբացիս՝ որ հասարակ է առ մատենագիրս Յունաց՝ չեղև սովորութի առ մերումս։ Առ յետագայ պատմագիրս սոէպ կոչին և Պարսիկք, որովհետև յետ Է. Յազկերտի բարձաւ թագաւորութի Պարսից 'ի տոհմէ Սասանեան. և արաբացիք տիրեցին 'ի վերայ Պարսից յամին 637. յորոց յարշաւանս լինէին պարսիկ զօրք, կամ մանաւանդ խառն, բայց տէրութիւն և հրամայօղն էր արաբացի. վասն որոյ 'ի պատ-

1 Անունս Սարակինոս է աղաւաղեալն արաբացւոց անուանն Շարգիան, որ նշանակէ Արևելեան. զի 'ի բաժանման իւրեանց գեներ՝ երկու անուանս կոչեցին գյաղթանակ ժողովուրդ իւրեանց. զբնակեալսն յԱֆրիկէ՝ կոչեցին Մաղրըբի, որ է Արևմտեան. իսկ զբնակեալսն յԱսիա՝ ուր և էր բնիկ ազգ արաբացւոց՝ կոչեցին Շարգիան, որ է Արևելեան։

մէջ անդ զաւուռն Բերկրի քաղաքին Լաստիվերտցին՝ Պարսիկ անուանէ. իսկ ընդարձակօրէն Սամուէլն՝ Տաճիկ։

Պատմագիրք մեր յիշատակեն զանազան արշաւանս արաբացւոց՝ որք դժնդակագոյն եղեն քան զամենայն թշնամեաց զարշաւանս, յորոց զգլխաւորսն յիշատակեսցուք աստանօր բանիւ նոցին իսկ զանազան պատմագրաց առաւել Ղեւոնդայ, որպէս զի մի շփոթեսցեն ընթերցօղք մեր 'ի գտանելն զմին այլ ազգ 'ի միւսոյն, այլ իբր բացատրութեամբ նոցին ընթերցցին։ Արդ Ղեւոնդ զառաջին [1] արշաւանս զայն ասէ, որ յաւուրս Աբուպէքրի յաջորդին Մահմէտի. զի յորժամ ասէ 'ի գլուխ Ը, հարին սպանին զթագաւորն Պարսից Գ. Յազկերտ, և յաւարի առեալ կործանեցին զթագաւորութիւն Պարսից, "Որոց եղև թիւ իշխանութեանն ամք չորս հարիւր ութսուն և մի ... (այնուհետև, ասէ,) մեծ մասն զօրուն հատեալ ասպատակէին յաշխարհն Հայոց ընդ կողմն Պարսից, և առնուին 'ի գերութիւն զաւանս Մարաց (իմա զՓայտակարան նահանգին), և զգաւառն Գողթան և զգաստակերտս Նախջաւանու. և զբազմամբ յարանց ընդ սուր անցուցանէին, և զայլս գերի վարեալ կանամբք և մանկտեաւ անցուցանէին ընդ գետն Երասխ ... և գունդ մի հատեալ ասպատակէին ընդ գաւառն Արտազ 'ի վերայ զօրավարին Յունաց՝ որում անուն էր Պռոկոպ, որ էր բանակեալ 'ի

1 Սամուէլ յամի տեառն 648 դնէ զառաջին յարձակումն արաբացւոց նախ քան զերևումն Մահմէտի, այսպէս պատմելով. "Աստանօր նախ գլուխ ազգին Իսմայէլի նախ Քալիֆաթ անուն, զոր և զիւրն ածայն պատմէ, թէ Քալիֆաթութեան ժողովուրդն յապէնցուցին զաւուրս իւրեանց յարինէ... Բայց հասեալ Քէլէրթ (Քաղարթ) 'ի Դամասկոս Միջագետաց, և մինչև 'ի քաղաքն Ամիթ, խանձեալ բազում աւարաւ, ապա երկս ստացեալ արձակեկեալ... 'ի Պարսից կողմն առնէկէ զԱթենան ամիրայ և զՄաւիէ զօրավարն. Նոքա հարին զՄիհրդատ քան հազարաւ, և զՄուշեղ ասպարապետն Հայոց իւրով ազգաւն, և ապա տիրեցին բոլոր աշխարհին Հայոց, Պարսից և Ասորոց, Եգիպտացւոց և Մարաց, Պարթևաց և պարսկաստանեայցւոց. Բայց պատճառ տիրելոյ նոցա այս է. Լեալ էր իշխան ոմն կողմանցն Դամասկոսի Սարգիս անուն. Նա բազում ինչ յաւիշատակէր յիմաստելազգեան մահմեդականաց. զոր երկուս աղերսիւ Քրիստոնեն (այլ օրինակք գրեն Քրիստթի կամ Քարիերթի) խնդրեալ և նորա ոչ թողացուցեալ. ապա ժողովեալ զնորոյ ազգին զայր և զկին, և երկուս առպատահեալ առ ին զիւրեանցն և զնոցայն. և յորժամ զօրացաւ 'ի վերայ Հայոց, ապա սկսան շրջել զհաւատս Հայոց. և նոքա ոչ հաւանէին։ Իսկ իշխանին Իսմայէլի (Քալիֆաթի) զատեալ խորհրդակից զոմն Մահմէտ անուն, զլուխ մահմեդականացն եղելոյ, որ առեղեալ էր նուաղ օրինացն Մովսեսի, բայց հաստատեալ էր աղանդաւն Արիոսի և Կերինթոսի... Զաս սատացեալ օրէնսդիր, պատգամաբեր և զօրավար նմա քան. և կոտորեցին զՔրիստոնեայս, զԱսորիս, և զՅարոն"։ Պատմէ ապա զհարկն եդեալ, զոր մէկ սորա։

գաւառին Կոգայովտի, 'ի սահմանս Բագրեւանդոյ և Մարդուձայից ,,։ Այսպէս պատմէ թէ զիարդ Թէոդորոս Ռշտունի զօրավար Հայոց՝ ազդ առնէր Պռոկոպայ յոյն զօրավարի զգալուստ Հինից արշաւանաց, և յորդորէր ընդդէմ ելանել նոցա. իսկ յոչ անսալն նորա՝ իւրովն Թէոդորոս զօրօք իւրովք զարմանամբ լինելով կոտորէր զնոսա, և զնայլ 'ի Գառնի 'ի քառասներորդ երկրորդ ամին Աղուպեքրայ։ Ասողիկ Բ. 3. յայսմ յարձակմանս յերիս մասունս բաժանեալ առնէ արշաւանս զզօրս իւրեանց, յորոց մեծ մասն ասպատակեցին յայն երկիրս Հայոց՝ զորս յիշեաց 'ի վերոյ Ղեւոնդ.

Երկրորդ անգամ արշաւեցին արաբացիք յետ դադարելոյ զամս երիս 'ի քառասներորդ վեցերորդ ամի իշխանութեան իւրեանց ըստ ասելոյ Ղեւոնդեայ, և յերկրորդ ամի [1] Կոստանդնի կայսեր որ էր Թոռն Հերակլի, հասեալ 'ի Դուին և թափուր գտեալ զայն 'ի պատերազմօղ արանց, զի ամենեքին զհետ Թէոդորոսի Ռշտունւոյն գնացեալ էին, զարս գտեալս 'ի նմա կոտորեցին, "Եւ զկանայս և զմանկտին վարեցին 'ի գերութիւն ոգիս երեսուն և հինգ հազար ,,։ Ասողիկ Բ. 3. յաւելու և զայլ պարագայս. "Եւ, ասէ, զօրն Իսմայէլի յաւուրստանն ընդ Ճանապարհ Ձորոյ յերկիրն Տարօնոյ, ընդ Բզնունիս, ընդ Բերկրոյ ձորն, յԱյրարատ թափեցան. և առին զԴուին քաղաք, և զգտեալ արս 'ի նմա կոտորեցին, և զկանայս և զմանկունս 'ի գերութիւն վարեցին ոգիս երեսուն և հինգ հազար, որ օր քառն էր Տեառն ամսոյն 'ի կուրթս այգեստանի [2]։ Եղպատճառ այսպիսի յանդուգն յարձակմանս նոցա նշանակէ Յովհաննէս կաթողիկոս ասելով. "Եւ վասն զի նախարարք ազգիս մերոյ անմիաբան լեալք, և ոչ ոք էր որ անմա զօրավարէր, յայնժամ ապականիչ զօրն Հագարու համարձակութիւն առեալ յասորեստանեան կողմանէ ասպատակ 'ի Հայս սփռէին ,,։

Երրորդ անգամ արշաւեցին յետ դադարելոյ զամս 10. յերեսուն և վեցերորդ ամի իշխանութեան իւրեանց ըստ գրելոյ Ղեւոնդեայ. գլխաւոր իւրեանց ունելով զՕթման և զՈքբայ, և յերիս առաջս բաժանելով, որոց մին խաղայր ընդ կողմն Վասպուրականի, առեալ զաւանս և զամ

1 Այս թիւ զոր դնէ Ղեւոնդ, ոչ յարմարի ժամանակագրութեանց. զի այս Կոստանդին զամս երիս ևեթ թագաւորեաց։

2 Կիրակոս զթիւ կոտորելոցն դնէ ոգիս երկոտասան հազար։ Դիոնեսիոս պատմագիր առեալ զայս գերութիւն և կոտորած դնէ յամին 641։

րոցս մինչև 'ի Նախջաւան քաղաք. երկրորդն 'ի կողմն Տարօնոյ. իսկ երրորդն 'ի Կոգովիտ հասեալ՝ զամրոցն Արծափ գիշերային գաղտագողի առնուին. "Եւ այն օր (գրէ Ասողիկ Բ. 3. վասն արաբացւոց) յանհոգս եղեալ զաղբալի պղծութիւն կային. յորոց վերայ հասեալ իշխանն Թէոդորոս (Ռշտունի) վեց հարիւր արամբք, և զամենեսին 'ի սուր սուսերի մաշեաց որք էին երեք հազարք. և զգերեալսն դարձոյց և զկապուտսն. և մեռան Աղուբաքր և Օթման":

Չորրորդ անգամ յամին 646. արշաւեցին արաբացիք 'ի Բզնունիս, յԱղիովիտ և յԱյրարատ. և յայնժամ Թէոդորոս Ռշտունի զօրավար՝ և Սմբատ կիւրապաղատ՝ պակուցեալ յահէ հինիցն, ասէ Յոհաննէս կաթողիկոս, հնազանդեցան արաբացւոց 'ի բաց կացեալք 'ի կայսերէն. կայսրն Կոստանդին բաղում զօրօք եկ 'ի նուաճել զՀայս. "Որում ոչ ոք թերևս գտաւ հնազանդեալ բաց 'ի Վրաց աշխարհէն", որպէս ասէ Յոհաննէս կաթողիկոս: Յայնմ ժամանակի զբարկութիւն կայսեր զիջոյց և հաշտեցոյց Գ. Ներսէս կաթողիկոս: Իսկ արաբացիք առ 'ի մնքոյթ կալ 'ի վերայ տիրապետութեան Հայոց՝ յայլ իմն գործ ձեռնարկեն. զի որպէս գրէ Յոհաննէս կաթողիկոս, "Յետ միանգամ և երկիցս ասպատակի իսմայելեան զօրու 'ի Հայս՝ և սպառսպուռ տիրելոյ՝ առին պատանդ յամենայն գլխաւորաց աշխարհին զկանայս և զուստերս և զդստերս. բայց Թէոդորոս Ռշտունեաց տէր գնաց ընդ իսմայելեան զօրուն յասորեստան իւրայովքն համազգօք և անդ մեռաւ", 'ի 654 ամի տեառն:

Հինգերորդ անգամ լինի արշաւել արաբացւոց ըստ գրելոյ Ասողկայ Բ. 3. յորում ժամանակի "Սմբատ բագրատունին և զօրավարն Յունաց հրամանաւ Կոստանդնի (կայսեր) երթեալ պատերազմեցան ընդ նոսա, անցեալ ընդ կողմն Եփրատայ, և պարտեալ 'ի փախուստ դարձան": Ի պարտութէ և 'ի կոտորածէ աստի լքաւ, ասէ Ղևոնդ, սիրտ Կոստանդնի կայսեր, և ոչ ևս յաւել ընդդէմ ելանել արաբացւոց. այլ այնչափ ծանրացաւ լուծ արաբացւոց՝ մինչև, որպէս գրէ Յոհաննէս կաթողիկոս, "Սակս անհնարին և ծանրաբեռն ծառայութեան 'ի բաց կացեալ Հայք յիսմայելեան բռնակալացն հնազանդէին 'ի ծառայութիւն կայսեր. և մեծին Ներսէսի խնդրեալ յարքայէ առնել կիւրապաղատ զՀամազասպ, և հրամանատար հայաստանեայցս. զոր ապա լուեալ ամիրապետին՝ զամե-

նայն [1] պատանդսն Հայոց առհասարակ կոտորէ հոգիք իբրև հազար եօթն հարիւր եօթանասուն և հինգ „: Յետ այսորիկ անկաւ ոգի խռովութեան յարաբացիս ընդ նորանն գրելոյ, որով զմիմեանս կոտորէին. յայնմ խռովութեան ժամանակի զօրացեալ Միւաւիէ ինքն նստաւ ամիրապետ, և եհատ հարկ 'ի վերայ աշխարհիս Հայոց. բայց և այնու չեղև անդորրութեան աշխարհիս. զի յորժամ խազիրք սպանին զԳրիգոր հրամանատար Հայոց, "Յայնմ հետէ ապա խաղաղութիւն վրդովեցաւ, և սասանութեան սաստիկ զհայաստանեայս պատեալ պաշարեաց „: Եւ 'ի չորրորդում ամի իշխանութեան Աշոտոյ պատրկի՝ որ եղև հրամանատար Հայոց յամին 685. գունդ մի իսմայելացւոց՝ ըստ ասելոյ Ղևոնդայ գլ. Է. յարձակեցան յաշխարհս Հայոց. յորոց վերայ 'ի խաղալն Աշոտոյ մարտիւ պատերազմի, մեռանի:

Վեցերորդ անգամ, յետ վեշտասաներորդ ամի իշխանութեան Աբդիւլմէլիքի ամիրապետին դարձեալ գրգռեալ սիրտ նորա 'ի չարախորհուրդ արանց՝ հրամայեաց, ասէ Ղևոնդ գլ. Է. զօրաց իւրոց արշաւել 'ի վերայ աշխարհիս Հայոց, որոց զօրագլուխ եղև Մահմէտ անուն այր արիւնարբու. "Որոյ դաշինս անօրէնութեան ուխտեալ էր առ իշխանն իւրեանց երդմամբ, չդարձուցանել զսուրն 'ի պատեանս մինչև 'ի մէջ աշխարհիս „: Մի 'ի մեծամեծ չարեացն այն էր՝ զի և զամրացեալս 'ի բերդորայս, սուտ ապաստանութիւ խոստանալով խաղաղութիւն առ ինքն իջուցանէր, ապա կամ կոտորէր և կամ գերի վարէր. յայն վայր թշուառութեան հասեալ էր յայնժամ Հայաստան, "մինչև երանել զմեռեալսն, որք խաղաղական հանգստեանն յաշ-

1 Թէպէտ զամենայն պատանդսն կոտորեալ ասէ աստ Յովհաննէս կաթողիկոս. բայց այլուր ասէ, թէ յորժամ մեռաւ Համազասպ մամիկոնեան որ 'ի կայսերէ էր կացուցեալ հրամանատար, "Հայքն կացուցանել յիշխանական պետութեան Հայոց 'ի Մահմեդայ ամիրապետէ զԳրիգոր մամիկոնեան, որ 'ի պատանդացն իւր առ նմա կացեալ էր „:

Զոր ինչ գրեցաք մինչև ցաստ՝ Ասողիկ Բ. 2. այսպէս համառօտելով գնէ. "Յիշխանութէ Թէոդորոսի ռըշտունւոյ ձզ. թուին (637) եղև առաջին ելք 'ի Հայս՝ Տաճկաց, հրամանաւ Ոմարայ Ամիրմումնոյ՝ որ էր երկրորդ 'ի Մահմետէ: Եւ 'ի ղե. ամի Թուականութեան (646) դարձեալ առաւել զօրու եկեալ Տաճկաց առին զԴուին քաղաք. և եղև համար գերութեան երեսուն և հինգ հազար. և ապա ապրեցին Հայոց, Վրաց և Աղուանից: Իսկ աշխարհս Հայոց 'ի բաց կացեալ 'ի Տաճկաց հնազանդութենէ կայսեր. և 'ի խնդրոյ Ներսէսի (շինողի) ընտրի Համազասպ հրամանատար Հայոց 'ի ճգ. թուին (654). զոր լուեալ ամիրապետին՝ զայրացեալ կոտորեաց զպատանդսն Հայոց ոգիս իբրև հազար եօթն հարիւր եօթանասուն և եօթն „:

խարհէ փոխեցան, քան այնպիսի նեղութեամբք զկենդանութիւն կրել»[1]։

Բայց քան զամենայն չարիս արաբացւոց դժնդակագոյն այն էր, զի խորհուրդ վատ 'ի միտի եդեալ վճռեցին, ասէ Ղեւոնդ, «բառնալ զազատախումբ տոհմն յաշխարհէս Հայոց հանդերձ հեծելովք»։ Զմտաւ ածեալ թէ 'ի բառնալ զսոսա միանգամ, այնուհետեւ կարեմք անաշխատ տիրեսցեն բոլորովին 'ի վերայ ժողովրդեան համօրէն աշխարհիս Հայոց։ Զայս իմացեալ Սմբատայ Բագրատունւոյ որ էր հրամանատար Հայոց, խորհուրդ կալեալ ընդ նախարարսն սկսան փախչել առ Յոյնս, եւ 'ի հետամուտ լինել արաբացւոց զկնի նոցա՝ եղեւ անուանի պատերազմն այն 'ի Վարդանակերտ 'ի 694[2]. յորում հինգ հազար զօրք արաբացւոց կոտորեցան 'ի զօրաց Հայոց՝ որք նուազ էին քան զերկուս հազարս։ Այլ այս յաղթութիւն Հայոց 'ի միոյ կողմանէ եղեւ վնասակար. զի լուեալ ամիրապետին զպարտութիւն զօրաց իւրոց՝ առաքեաց զոմն Մահմետ Ոգբայ անուն զօրավար 'ի կոտորել զՀայս. իշխանք Հայոց զՍահակ Դ. կաթողիկոս առաքեցին առ Մահմետ 'ի հաշտեցուցանել. եւ քանզի Սահակ 'ի ճանապարհի մեռաւ յամին 703. եւ 'ի մեռանել իւրում գրեալ էր գիր աղաչանաց առ նա ասելով. «Ունիմ զգիր 'ի ձեռին՝ Մահմետի օրհնութեան քո, որ պարտին քեզ հարկս տալ ազգատոհմն իմ, եւ ծառայել միամտութեամբ եւ հնազանդել որպէս վայել է տերանց, եւ քեզ զարժանն առնուլ զհարկսն եւ զհնազանդութիւն, եւ մի բարկանալ եւ ա-

1 Այս հատուածք են զորս յիշէ Յովհաննէս կաթողիկոս. բայց զանուն տաճկականին փոխանակ գնելոյ Մահմետ՝ եդեալ է Մրուան, ասելով. «Յայնժամ վայրի Մրուան ոմն յիշխանեալ տոհմէ տաճկաց 'ի Հայս առաքեալ, մարտ ընդ բոլորից խոկ ամրոցաց Հայոց դնէր. եւ զորս միանգամ յինքն գրաւէր՝ առ հասարակ քանդեալ աւերեալ 'ի վայր կործանէր։ Իսկ Սեւան կղզի... զինի երկեամ մի ամաց մնացեալ 'ի ձեռս նորա. եւ որ միանգամ բնակեալ կային յամրոցի անդ՝ գերի առեալ տանէր, եւ զկապուտ կողոպտուան յաւարի առեալ՝ ապստամբութեան աւերէր զամրոցն»։ Յետ զայս գրելոյ ասէ անդէն. «Եւ զկնի Մահմետի այլ տաճկան առաքեցաւ Աբդլա անուն»։ Յորմէ յայտ է թէ վերոյգրեալ Մրուանն պարտի լինել Մահմետ համանգոյն ազգոյ. զի առանց ինչ յիշելոյ զանուն Մահմետ՝ ոչ կարէր գրել զկնի Մահմետի։ Իսկ վասն Աբդլայի գրէ անդէն, թէ գոլով այր ժանտ եւ ժպիրհ, «կալանաւոր կապանօք չարչարէր զիշխանս եւ զազատս աշխարհիս Հայոց, եւ յաւարի առնոյր զինչս նոցա եւ զստացուածս բազմաց. ապա եւ զմեծն Սահակ կապեալ 'ի շղթայս տայր տանել 'ի Դամասկոս, ընդ նմին եւ զիշխանսն Հայոց զՍմբատ որդի Սմբատայ. եւ առ հասարակ տայր զամենայն եկեղեցիս քնի 'ի բոլոր գաւառս կապուտ կողոպուտ թողուլ, եւ յարատոյր կախաղանաւ եւ 'ի սուր եւ 'ի տառապանութիւն զծերս եւ զորբս բերէր»։

2 Զայս պատերազմ Վարդանակեր-

ւերէր զազգատոհմին իմոյ աշխարհ որպէս Թշնամեաց ։ Եւ արդ հողալ պարտիս զաշխարհս մեր որպէս զաշխարհն քո . . . և զհարկսն և զմաքսն որ տացեն ձեզ՝ խաղաղութեամբ վայելեա դու և զօրք քո ,,։ Սոյն այս Մահմետ յընթեռնուլն զայս գիր՝ անդէն խոստացաւ գրով կատարել զխնդիր կաթողիկոսին զայս օրինակ . “Այժմ հաստատեցից զգիրս Մահմետայ օրէնսդրին իմոյ, և զերից ամաց զհարկս թողեալ եմ յաղագս մահուան որդւոյ՝ հայրապետին ,,։

## ԴԱՐ Ը

“ Ութն տարին (ասէ Ղեւոնդ գլ. Է.) բնակիչք աշխարհիս (Հայոց) վասն երդման խոստմանն գրոյն՝ վստահ եղեն 'ի նա . և ծառայեցին յայնմհետէ իսմայէլացւոցն 'ի ծառայութիւն սաստիկ ,,։ Բայց նա ինքն Մահմետ զօրավար երկրորդ անգամ եւ յաշխարհս Հայոց զօրու ծանու յաւուրս Աբտիւլմէլէք ամիրապետին . “Եւ զամս երիս հանդարտեալ դադարէր, ասէ 'ի գլ. Ը. և ոչինչ չարեացն յուշ լինէր վասն անցիցն զոր էանց ընդ զօրն Տաճկաց 'ի Վարդանակերտն յաւանի . այլ հաստատուն պահէր զերդումն գրոյն զոր տուեալ էր, և միայն ընդ ակամբ հայէր նախարարացն Հայոց ,,։

Օայն խորհուրդ զոր կալան 'ի սկզբան անդ յետ կոտորածի զօրաց իւրեանց 'ի քաջութեն նախարարացն Հայոց, համապազ երկնչէին 'ի սրտի յաւուր միում 'ի գործ դնել և կոտորել զամենայն նախարարս, որպէս զի համօրէն հայաստան 'ի ձեռս նոցա լիցի , 'ի մեռանել Աբդիւլմէլէքի յորժամ Վլիթ կամ Վալիտ եկաց ամիրապետ, “Սա յառաջնում ամի իշխանութեան իւրոյ, ասէ, խորհեցաւ բառնալ յաշխարհէս Հայոց զտոհմն նախարարաց նոցին հեծելօք վասն քինուն զոր ունէին առ Սմբատ կուրապաղատ . զի ասէր թէ միշտ խոչ և գայթակղութեան լինելոց են իշխանութեան մերոյ ,,։ Սմբատ օգնութեան խնդրեաց յայնժամ 'ի կայսերէն Յունաց [1]. և նա առաքեաց նմա զօրս յօգնութիւն 'ի գաւառն Վանանդայ, ուր հասեալ Մահմետ Ճակատեցան ընդ իրեարս սաստիկ կռուով. և եհար Մահմետ զզօրս Յունաց “աւելի քան զհինգ բիւր արանց սուսերամերկաց (որ է 50 հազար.) և զաւկամնացորդս փախստական առնէր յաշխարհէս Հայոց. և իւր

ա) Սամուէլ դնէ 'ի Թուականին ՃԾ. 701։ 1 Զայս յառաջ լեալ պատմեն այլք։

(Մահմետի) ժողովեալ զզօրս բանակին դառնայր 'ի քաղաքն Դուին ,, ։

Իսկ եւս ասէ Վլիթ ամիրապետն [1] 'ի սկիզբն ութերորդ դարուն, "թէ առաջնորդք եղեն զօրացն Յունաց իշխանք Հայոց, դարձեալ զնոյն խորհուրդ խորամանկութեան հրամայէր Մահմետի կատարել ,,։ Իսկ Մահմետ իբր ոչ կամելով անձամբ ընդդէմ իւրոյ երդմանն առնել, Կասմոյ ումեմն հրամայէր զայն խորհուրդ 'ի գործ դնել, որ էր հրամանատար ընդ ձեռամբ նորա 'ի կողմանս Նախջուան քաղաքի. այս Կասըմ առ ինքն կոչէր, ասէ 'ի գլ. Թ. "զնախարարս Հայոց նոցին հեծելովք իբրեւ պատճառանօք եթէ անցուցանել 'ի համարու արքունի, առնուլ հռոգ եւ դառնալ ,,։ Իսկ նոքա պարզմտութեամբ գնային, անդէն վաղվաղակի յերկուս բաժանեալ զկէսն յեկեղեցին Նախջուանու, եւ զկէսն յեկեղեցին Խրամու տայր ժողովել. անդ 'ի բաց որոշեալ 'ի նոցանէ զազատագլխոն՝ զմնացեալսն հրկէզ առնէին յեկեղեցւոջ [2]. իսկ զազատսն 'ի տանջանս արկեալ պահանջէին դրամս. զորմէ ստորեւ ։ Այս այրումն որ 'ի Նախջուան եւ 'ի Խրամ, մեծ փոփոխութիւն եած 'ի Հայաստան թէ 'ի կողմանէ կառավարութեան, եւ թէ 'ի կողմանէ նուազման ազգիս. զի յետ այրելոյ զնոսա սկսան կոտորել զնախարարս. եւ բազումք յիշխանաւորացն սկսան փախչել ։

Ի վախճան ութերորդ դարուս այնչափ սաստկացաւ բռնաւորութիւն արաբացւոց 'ի վերայ աշխարհիս Հայոց, մինչեւ առանց պատճառաց եւ զեկեղեցիս կողոպտել ։ Աղէտալի դիպուած է այն՝ զոր բազումք 'ի մերոց պատմագրաց պատմեն [3]. Եզիտ ոստիկան յետ նահատակելոյ զիշխանսն Արծրունեաց զՍահակ եւ զՀամազասպ, առաքեաց 'ի Բագրեւանդ գաւառ զոմն յիւրոց իբր գործակալ Ալի անուն. որոյ տեսեալ զվայելչութիւն սպասուցն ուխտի սրբոյն Գրիգորի 'ի գեօղն Բագաւան, 'ի բազմաց հետէ անդ բերեալ 'ի նմա 'ի պարգեւելոյ թագաւորաց եւ իշխանաց, հնարս յափշտակելոյ խորհելով զմի յանարգ ծառայից

1 Այլք դնեն զայս յաւուրս Աբդ-ուլմելիքի ամիրապետին, զոր եւ կոչեն Աբդլայ ։

2 Սամուէլ 'ի Թուին ՃԾԴ. 705. գրէ. "Կոչմամբ ամիրայի զՎասպուրականին իշխանսն կոտորեաց ,, ։ Իսկ 'ի Թուին ՃԿ. 711. գրէ. "Սա այսու ժամանակօք 'ի ՃԾԸ. Թուին (709) այրեցին զիշխանսն Հայոց 'ի Նախճաւանի ,, ։

3 Զայս դիպուած Յովհաննէս Կաթողիկոս դնէ յաւուրս Յովսէփայ Կաթողիկոսի. Ասողիկ բազմօք յառաջ դնէ յաւուրս Սահակայ. իսկ Վարդան յերկուս տեղիս եւս յիշէ ։

իւրոց խեղդամահ արարեալ, եւ ընկենուլ 'ի ծածուկ 'ի խորափիտ նորին մենաստանի, որով որպէս թէ զմիաբանեան ուխտին նիւթօղ գտեալ նորին սպանմանն, նախ զամենեսին ծայրակտուր արարեալ 'ի ձեռաց և յոտից, ապա եւ կախել զփայտէ յամին 787, և զամենայն ինչս եկեղեցւոյն յաւարի առեալ կողոպտեաց:

Ի կատարածից աստի արաբացւոց՝ թէ յինչ վիճակ աղէտից կայր աշխարհս մեր 'ի վախճան այսր դարու, յանդիմանն առնէ այս բան Յոհաննու կաթողիկոսի. « Եւ վասն զի սպառասպուռ հագարացիք աւերեցին կալան զհայաստանեայս, և մեծամեծք աշխարհիս նուաղեցան, և մնացեալքն զօղեալ դադարեալ կային ընդ լծով ծառայութեան նոցա, սակս այսորիկ իսկ յայսմ վայրի պակասեաց 'ի պատմութեան աստի զրոյցք իշխանաց մերոց »[1]: Այնչափ էր բռնացեալ արաբացւոց 'ի վերայ ամենայն երկրիս Հայոց՝ զի ոստիկանն խուզիմայ համարձակ բրածեծ առնէր զկաթողիկոսն Է. Յովսէփ որ նստաւ յամին 795. զի զդաստակերտն կաթողիկոսարանին որ 'ի Դուին՝ ինքեան տացէ իւր վաճառելով. որոյ յընդդիմանալն՝ էառ ապա բռնութեամբ զԱրտաշատն՝ որ էր մի 'ի դաստակերտից. և առ մախանացն սպան նաև զեղբայր կաթողիկոսին:

ԴԱՐ Թ

Յաւուրս արաբացւոց դժնդակագոյն քան զամենայն աւերս աշխարհիս՝ եղև յաւուրս Բուղայի ոստիկանին. զորոյ զպատճառն թէպէտ բազումք պատմեն, այլ ճոխագոյն քան զամենեսին Թովմա արծրունի ժամանակակից, սկսեալ 'ի Գ. 5. գլխոյն. յորոյ բանիցն առեալ համառօտելով պատմեսցուք, որովհետև սորայս չև ևս գոլով անցեալ 'ի գիրս տպագրեալս՝ յայտնի լինեին ինչ ինչ տարբերութիւնք որք գտանին յայլ պատմագիրս:

Ջափր ամիրապետ ընդ սադրելոյ ոմանց զոմն յաւագնախարարաց իւրոց Ապուսէթ անուն առաքեաց 'ի վերակացութին աշխարհիս Հայոց. սա յորժամ եկն մերձ 'ի սահմանս Տարօնոյ, իշխանն Տարօնոյ Բագարատ՝ որ « ունէր, ասէ, յայնժամ զգլխաւորութիւն բարձակցութեան իշխանաց Հայոց՝ որ էր 'ի տոհմէն Բագրատունեաց, առաքեաց առ նա զոմանս 'ի մեծամեծաց իւրոց պատարագօք, ա-

1 Զայս բան Յոհաննու կաթողիկոսի յիշէ և Սամուէլ 'ի Թուականին ձկ:

ղաչելով մի ելանել յերկիրս Հայոց · բայց քանզի արդարացիք 'ի մտի եդեալ էին Թերեւս պատիր խաբէութեամբ կալասցեն բառնալ զնոսա յիւրաքանչիւր տէրութենէ „ · վասն որոյ չունէր ամենեւին անսալ աղաչանաց նորա · այլ իբրեւ ծանեաւ թէ անլոյծ միաբանութիւն է Բագարատայ ընդ Աշոտոյ իշխանին Վասպուրականի, որ էր այր քաջ և զօրաւոր, ոչ 'ի վեր համարեալ զմիտս իւր Ապուսէթ, այլ առեալ միայն զհարկն դարձաւ առ ամիրապետն 'ի Սամառայ, և ծանուցեալ նմա զմիաբանութիւն իշխանաց Հայոց՝ ամբաստան լինի յոյժ զԱշոտոյ հանդերձ Թղթովք Տաճկաց · Թողեալ զվերակացութիւն աշխարհիս Հայոց 'ի ձեռս Մուսէի ։

Սորա յոյժ հակառակութեամբ լեալ ընդ Բագարատայ պատճառաւ հարկաց՝ ամենայն զօրօք իւրովք եմուտ յերկիրն Տարօնոյ պատերազմել ընդ Բագարատայ · իսկ Բագարատ օգնութեամբ Նորին Աշոտոյ խորտակեաց զզօրս Մուսէի, և փախստական արար մինչև 'ի Բաղէշ · ուր տիկինն արտաքս ելեալ հետիոտս այնպէս աղաչէր խնայել, որ էր, ասէ, քոյր Բագարատայ ։ Մուսէ ամօթահար դարձեալ՝ գուժկան առաքեաց առ ամիրապետն · իսկ Ապուսէթ առաքեաց զոմն Ովայ անուն 'ի Վասպուրական, պատուիրելով մնալ անդ զօրօք մինչև 'ի ժողովել զհարկս ամենայն կողմանց Հայոց · այլ նա եկեալ 'ի գաւառն Վասպուրականի յԱղբակ՝ ասպատակ սփռելով աւերէր զամենայն երկիրն ։ Աշոտ իշխան Վասպուրականի պատգամ առաքեաց առ նա, թէ դու առաքեցար ժողովել զհարկս · երթ նիստ 'ի միումն 'ի քաղաքացն Հայոց որպէս օրէն է, և մեք տացուք քեզ զսովորական հարկսն · զի մեր չէ ինչ գործեալ գործ ապստամբութեան · դու ընդէ՞ր ապստամբելով աւերես զաշխարհս ։ Ովայ և ոչ պատասխանւոյ անգամ արժանի համարեալ, դարձեալ ասպատակէր · յայնժամ Աշոտ ժողովեալ զիշխանս Վասպուրականի իւրաքանչիւր զօրօք իւրեանց՝ այնպէս յարձակեցաւ 'ի վերայ նորա, մինչև ինքն Ովայ հազիւ զերծաւ 'ի կողմանս Բերկրոյ ։ Այլ այս յաղթութիւն պատճառ եղև ամբաստանելոյ զԱշոտոյ · մանաւանդ կանայք կոտորելոցն կական բարձեալ այնպէս բողոք բառնային 'ի դուռն ամիրապետին · և որ առաւել չար էր՝ Վասակ արծրունի, որ կայր առ ամիրապետին, քսուէ առնելով յոյժ առաւել քան զՏաճիկս դրդուեաց ընդդէմ ամենայն նախարարաց Հայոց ։

Յայնժամ ամիրապետին խորհուրդ 'ի մէջ առեալ 'ի

'ի գմբէթ բարձր եկեղեցւոյ Փրկչին՝ աշտէիւ հարեալ տապանին¹. զոր Սամուէլ դնէ 'ի թուին մղգ. 844: Զայն լուեալ ամիրապետին 'ի խորհուրդ եմուտ ընդ մեծամեծս իւր. նոքա խորհուրդ ետուն բազմութի զօրաց ժողովել և այնպէս մտանել յաշխարհն Հայոց. մի պահանջել վրէժս վասն մնասու և խափանելոյ հարկաց. "Այլ ստիպեսցուք, ասեն, զըմբոստեալսն 'ի բաց կալ 'ի հաւատոյն քրիստոնէութեն ... խոշտանգեսցուք զնոսա գանիւ և բանտիւ և պէսպէս տանջանօք, սպառնալեօք և տուգանօք, և ընչից պատրանօք արկցուք զնոսա 'ի ներքոյ կամաց թագաւորութե մերոյ. և 'ի բաց բարձցուք զանուն քրիստոնէութեան 'ի միջոյ նոցա: Եւ յոյժ հաճոյ թուեցաւ խորհուրդս այս առաջի թագաւորին (ամիրապետին), և մեծապէս ուրախ լինէր»: Որ և ժողովեալ զօրս յամենայն ազգաց՝ զօրագլուխ կացոյց նոցա զոմն Բուղայ՝ ազգաւ Թուրք², որ էր հրամանատար ամենայն տէրութեն Տաճկաց. այլ և ինքն ամիրապետն հրամանի նորա անսայր. այս Բուղայ եկն 'ի Վասպուրական և պաշարեաց զՆկան բերդ, ուր ամրացեալ կայր արծրունի իշխանն Աշոտ. որ և ըստ քաջութեն իւրում ոչինչ համարէր զանչափ բազմութի և զմարտս թշնամեաց, համախոհ իւր կարծելով զզօրս և զզօրագլուխս և զգունդ ազատացն որք ընդ նմա մտեալ էին 'ի բերդն Նկան. այլ ոչ գիտէր թէ նոքա 'ի ծածուկ խորհուրդ առնէին կատարել զամենայն զոր խնդրէ Բուղայ, տալ նմա զերդս և հարկս արքունիս և պատանդս. Իսկ այլք ոմանք բոլորովին քակեալ 'ի միաբանութէ՝ 'ի ձեռն Վահրամայ ուրումն առն առնել հրովարտակ առ Բուղայ՝ գրելով այսպէս. "Միայն թէ ընդարձակեսցես մեզ և տոհմի մերոյ բնակաց երկրի մերոյ մնալ յիւրաքանչիւր տունս բնակութեց կալ խաղաղութե. մեք տացուք զԱշոտ 'ի ձեռս քո առանց զինու և մարտից»: Նաև

1 «Եւ ինքնին (ասէ Թովմա արծրունի) աչօք իմովք տեսի զայլն զայն որ հարեալ էր զնա. և 'ի նմանէ սաստկեցի վասն նորա»: յորմէ անկ է բանիւ նորին Թովմայի ուղղագրել զանուն այլոց պատմագրաց որք ասորքերէն:

2 Յովհաննէս կաթողիկոս՝ ընդունելին ամիրապետին կոչէ զԲուղայ. որում հրաման եւս, ասէ, «զի զերկեալս աշխարհիս և զանկարգ հանդուցանեսցէ 'ի կապանս ընդունելով առ ինքն տարցէ. և զայլս եւս ամենայն հնազանդեալս որ առ իւր յարգեսցէ ունել մարմնացեալ, և կամ զէն շարժեալ, զամենեսեան սատակեսցէ. բայց միայն թէ 'ի լուսաւորութենէ ոմանց 'ի պաշտօն օրինացն Մահմետի որ գործցին, զնոսա ընդ իւր առցէ»: Որ էր առել, զամենայն կարօղս ընտրելով առնել 'ի միջոյ, որպէս զի միայն ռամիկ և անկար ժողովրդեան ևեթ մնալով 'ի հայաստանի, դիւրաւ տարացուցանել այն աշխարհ և այն ժողովուրդ:

այսպէս բոլորովին ապականեալ անմարդացան յայնժամ Տարօն, Վասպուրական, Սիւնիք, Գարդման և Ուտիք։

Նա 'ի յայտ ածանել զանհնարին խորամանկութիւն Բուղայի, և զծայրայեղ միամտութիւն մերոցն՝ յառաջ բերցուք զդիպուածն Սահակայ քաղաքապետի Տփխեաց, զոր կարծեմ 'ի մերոց հայկազանց լինել, որոյ մարթ էր փախչել 'ի պաշարմանէ՝ բայց ինքնակամ մատնեաց զանձն իւր 'ի ձեռս նորա. "Իսկ քաղաքապետն (Տփխեաց, ասէ Թովմա գ. 8.) ելեալ ընդ դուռնն՝ որ ելանէ 'ի բերդն Շամշղտայ, սամոյր զինքեամբ արկեալ և զաւազան 'ի ձեռին առեալ, յիմարեալ միօք կորոյս զփախուստն իւր՝ որ կարող էր գնալ յոր և կամիցի. յղեաց առ զօրավարն Ժիրաք, ասէ. փութա 'ի հանդիպումն իմ. և նա ոչ հաւատայր երթեալոցն կոչնականաց մինչև կրկնեաց և երեքկնեաց. և գնացեալ Ժիրաքն՝ առնու զնա, ածէ կացուցանէ առաջի Բուհայի, (որ) և քան ընդ ապստամբելն 'ի նմանէ՝ ընդ յոյժ անմտութեան գալն առ նա զարմացաւ,,։ Ի վերայ այսորիկ և կէս նորա զառաւելագոյնն յաւել զանմտութիւն. "Լուեալ կնոջն Սահակայ, ասէ, թէ ըմբռնեցաւ, և քանզի էր կին գեղեցիկ՝ փութացաւ գնաց եկաց առաջի Բուհայի, թերևս կարասցէ ըստ պատշաճ գեղոյն և ըստ բազմաձեռն գանձուց ապրեցուցանել զայրն իւր, որ առաւել մահու քան թէ կենաց պատճառ եղև նմա. և հրամայեաց Բուհայ դահճացն բառնալ զգլուխ նորա։ Իսկ կինն ձիչ բարձեալ ասէ. առ թագաւորն (ամիրապետն) հասցէ գոյժ իմ. շրջելով ընդ բանակն հոլանի՝ զոր չէր օրէն տաճկական ազգի կանանց, բայց ոչինչ օգնեաց. այլ հատեալ զգլուխն Սահակայ ետ տանել յարքունիս (ամիրապետին), և զկինն՝ առ իւր Բուհայ կնութեան։ Կինն դարձեալ ձիչ բարձեալ ասէ. վասն իմ սպաներ զայր իմ. ես ոչ վայել եմ քեզ կին, այլ մեծի թագաւորին. իսկ զկինն կալաւ ընդ իւր Բուհայ. ապա յղէ առ թագաւորն (ամիրապետն) լինել նմա կին. և կինն անցեալ պատմեաց թագաւորին որ ինչ եղեն ... որ եղև իսկ պատճառ կորստեան Բուհայի, զոր ցուցանեմ յիւրում կարգի,,։ Պատմէ ապա գ. 14. թէ սակս բողոքելոյ կնոջն առ Ջափր ամիրապետ, զոր էառ 'ի կնութիւն իւր, ամիրապետն յղեաց զԲուղայ 'ի Խորասան՝ նմա հաւատալով զվերակացութիւն աշխարհին. անդ ապա գաղտնի ետ սպանանել։

Յետ զայս ամենայն տեսանելոյ զարմանք են թէ զիարդ ապա մնացեալ իշխանքն, որք ամրացեալ կային յամուրս

այլ ըստ կամի զօ և կամէին՝ զայն կացուցանէին , և յայնմանէ 'ի բազում բաժանէր տէրութիւն նոցա . զի Սօփարն տիրէր աշխարհին Խորասանայ , Ալաւիկն Ապուլթուրապ 'ի Պասրա , Ցիսէ որդին Ըեխայ 'ի Պաղեստին , և որդին Ապըլտուփոյ 'ի Դեղմաց աշխարհին , և այլք ոմանք 'ի տեղիս տեղիս . յաճախմանէ բռնութեանն Ջանային տիրել 'ի վերայ միմեանց . վասն որոյ զմնուանս նոցա դժուարին է ըստ զըրով փակել ։ Ի սոցանէ և ոստիկանք չարք , ասէ , յարձակեցան յաշխարհս մեր . որպէս գազանաբարոյն Բուղայ , անօրինագոյն Աֆշին որդի չարագործին Ապուսիճթայ , Յուսուփ եղբայր Աֆշնի , Նըսըր որ Սըբքի կոչիւր . “ որք մինչև ցբառնալ ամիրմումնեայն , (և մինչև) ցիշխել և ցտիրելն սկիւթականն ազգին որ արդ եւս է՝ ոչ պակասեցին յաւար հարկանել զաշխարհս հայաստանեայցս „ ։

Ո՛րչափ և դժնդակ եղև յայսմ դարու աղէտք աշխարհիս զոր ած Յուսուփ ոստիկան , զի և վնասաբարբառն որք անձնատուր լինէին կոտորածներ , որպէս ասէ Յովհաննէս կաթողիկոս . “ Եւ գրեթէ 'ի պատուականաց անտի 'ի մեծամեծացն՝ յանձնատուր նմա եղելոցն՝ և ըստ ձեռամբ անցելոցն՝ ոչ ոք ապրեցաւ 'ի չարախառնաւորա և 'ի խարդաւանական մահուան տուգանաց „ ։ Վասն որոյ ասէ զկնի . “ Եւ ապա սպառեալ ամենայն աշխարհին տոհմեցին յայլս , թաքեան յանտառս „ ։ Այսմ ամենայնի դարման տանել զուն գործեաց Ս. Սմբատ թագաւոր՝ զմեծ զիշխանն Հայոց զԳրիգոր առաքելով առ ամիրապետն խնդրել զխաղաղութիւն . բայց դուռն ամիրապետին չփութեալ գոլով յայնժամ յեգիպտացւոց ապստամբաց ոչինչ կարաց գործել ։ Վասիլ կայսր լուեալ զաղէտսն՝ ժողովեաց զօր գալ յօգնութիւն Սմբատայ , բայց յանկարծ մեռաւ ։ Աղեքսանդր եղբայր նորա յաջորդ Վասլի չփութեալ յապստամբաց ոչ կարաց ժամանել ։ Էին և ոմանք 'ի նախարարաց որք կարող էին օգնել , բայց և վասն նոցա գրէ Յովհաննէս կաթողիկոս . “ Առանց հարկի պատճառանաց մերձաւորք և հեռաւորք յաւէտ հեռի եղեն 'ի նմանէ ( 'ի Սմբատայ ) արդեամբք և խորհրդեամբք . և ծանեան զօտարս քան զնա . և զոր նախ սիրէր բարեկամութիւնն՝ քեցեալ 'ի բաց բերան 'ի նմանէ խառնեալք ընդ թշնամիսն . իսկ ոմանք ընդվզեալք և 'ի վերայ յարուցեալք արձակէին ընդդէմ նորա նախատանօք առ 'ի սահ ըստ սաղմոսերգուին հազարացւոյն , որպէս երբեմն առ մերոյն Տրդատայ „ ։

Նայողքիւք և այլ ևս բազմադիմի աղէտիւք լցաւ աշխարհս մեր. զի բաց ՚ի կոտորածէ զոր առնէր Յուսուփ ՚ի մտի դնելով զամենայն նախարարս սպառել, նաև մերձակայ ազգք սկսան քանդել զերկիրն յորոց բազումք էին քրիստոնեայք. որք զմտաւ ածեալ՝ մի գուցէ ոստիկանն յետ հարկանելոյ զՀայս՝ հարցէ և զնոսա, իւրաքանչիւր ձեռօք իւրեանց սկսան աւերել զայն քաղաքս աշխարհիս Հայոց որք մերձ էին առ նոսա, որպէս զի մի գտցէ շէն ինչ. այսմ զհետ եկն և այլ աղէտք, զի զայն տեսեալ սրիկայք երկրին, ինքեանք ևս ՚ի նոյն մխեցան գործ. « Դրացիք մեր, ասէ Յովհաննէս կաթողիկոս, և ազգք որ շուրջ զմեօք են, յունականք և եգերացիք և գուգարացիք և ուտէացիք և հիւսիսականն ազգք բնակեալք առ ստորոտն Կովկասու ՚ի մտի եդեալ եթէ գուցէ յինքեանս հետի աղաղս գտանել, մարթացեալ ոստիկանն չար թէ երբէք շէն գտցէ զքաղաքս և զաւանս և զգեօղս, վասն այսորիկ ՚ի խլել և ՚ի բրել, կործանել և յատակել ջանացան առ ստորոտով իւրաքանչիւր աշխարհաց իւրեանց: Եւ արդ խառն ընդ նոսին աւազակք և սրիկայք եկին ՚ի մարտս ընդ երկրի մերում. և բազում ինչ այն էր որ ՚ի նմանէ անցք ընդ աստուածաշէն եկեղեցիս անցանէին յեղծումն և ՚ի խաղանութիւն և յապականութիւն վարակեալ »:

Այսն վիճակ եհաս յայնժամ Հայաստան աշխարհ, զի ըստ ասելոյ նորուն, « Մեծամեծք աւագանւոյն ձորոց և լերանց և անապատից և քարաժայռից և ամրոցաց ապաւինէին. և այլ ևս խառնիճաղանջքն բոկոտն մերկանդամ և թափառականք՝ ՚ի սով և ՚ի ծարաւ և ՚ի ցրտոյ հարեալք և հաշեալք, ցան և ցիր լերանց և դաշտաց բերէին »: Յետ այնորիկ տիրեաց սովն, զորոյ զկոտորածն գրեալ եմք ՚ի գլուխն Սակաւամարդութե:

Ի յետագայ մետասաներորդ դարու վասն արշաւանաց արաբացւոց երևելի ինչ յիշատակաւ ոչ գտանեմք, բայց միայն վասն Փադլունն ամիրային առ Վարդանայ յաւուրս Բ. Գագկայ վերջին թագաւորին Անւոյ, զորմէ գրէ. « Գնացեալ առ նա (առ Փադլունն) Փիլիպէ որդին Գրիգորոյ սիրոյ աղագաւ, ըմբռնէ (Փադլունն) զնա ՚ի կալանս զկնի մահուան հօրն, և առնու ՚ի նմանէ զՇաշուաղ և զՇօթս, և կոչեցեալ առ ինքն զԳագիկ որդի Համամայ զտէրն Տանձեաց՝ սպանանէ, և առնու զերկիր նորա: Եւ այսպէս զօրացեալ տիրէ Խաչենոյ և Գորոզայ և Սևորդեաց. և գոռ դնէ ընդ Գագկայ թագաւորին Ձորոյգետոյ, և

ընդ Կիւրիկէի Թագաւորին Աղուանից, և ընդ Բագարատայ Թագաւորին Վրաց. և նեղէր զնոսա»։

Հարկապահանջութիւնք Արաբացւոց։

Մինչև ցայսր գրեցաք զերկուց մնասուցն արաբացւոց զոր գործէին յարշաւանս իւրեանց, այսինքն է զաւերելոյ և զքանդելոյ քաղաքաց, և զկոտորածէ բնակչաց. իսկ զերրորդ մնասն աստանօր ուրոյն թողաք արձանագրել, որ էր հարկապահանջութիւն նոցա։ Քանզի 'ի դառնութեան ժամանակին առաջի կայր հայաստանեայց ընտրել զմի յերից աստի, տալ հարկս ծանունս, կամ գերի վարիլ և կամ մեռանել. «Ածեալ իբրև զչխարս 'ի սպանդ իսմայելեան երկաթոյն՝ որ ոչն ևս առնու յագուրդ» ասէ Յովհաննէս կաթողիկոս։

Զառաջին հարկել աշխարհիս Հայոց՝ Սամուէլ 'ի ժամանակս նորին իսկ Մահմէտի դնէ, գրելով 'ի թուին ՂԵ. 646. «Մահմէտս այս արգել զսուրն. և բանիւ խրատու նորա հնազանդեցուցին զմեծ մասն տիեզերաց, և անմռունչ երդմամբ կնքեաց մուրհակ Հայոց աշխարհիս համարձակ ունել զքրիստոնէութիւն, և վաճառեաց նոցա զհաւատս նոցա, յամենայն տանէ առեալ չորս դրամ և երեք մոթ խորբալ և ձիատոպրակ մի և պարան մի մազէ և ձեռնարար մի։ Իսկ 'ի քահանայից և յազատաց և 'ի հեծելոց ոչ հրամայեաց առնուլ զհարկն»[1]։ Բայց Ղևոնդ զառաջին հարկել աշխարհիս յիշէ յաւուրս Միւավիէի ամիրապետին, յորում ժամանակի Գրիգոր Մամիկոնեան էր հրամանատար Հայոց. գրելով գլ. Գ. «Հատանէր 'ի վերայ աշխարհիս Հայոց հարկս հինգ հարիւր դահեկան 'ի միում ամի հատուցանել նոցա, և աներկիւղ մնալ 'ի բնակութիւն իւրեանց... Եւ եղև բազում խաղաղութիւն յաւուրս նորա իշխանութեանն. և յետ նորա Իզիտ որդի Մաւեայ. և ապրի ամս երկու և ամիս հինգ և վախճանի. և նա վարեաց զաշխարհս Հայոց 'ի նոյն սակ հարկի»։ Զայս յիշէ և Վարդան։

Յութերորդ դարուն Աբդլլայ կամ Աստիւլմէլիք ծանրացոյց զհարկն, զորմէ գրէ Ասողիկ Բ. Գ. «Տիրեաց փոխանակ Մրուանայ Աբդլլայ, և առաքէ զեղբայր իւր զՄուս

[1] Կիրակոս բառ առ բառ օրինակէ զայս բան Սամուէլի։

Եգիպտի նստաւ յամին 742. «Ծանրացոյց զլուծ հարկի աշխարհիս Հայոց», որպէս գրէ Ասողիկ Բ. 4: Իսկ Վարդան ասէ. «Ջմնի Հեշմայ նստաւ Վլիթ զաղրագործ (որ է Վլիթ Բ.) որ և հրամանաւ կուռայիցն սպանաւ, և եդաւ Սուլիման, և սպան զնա Մրուան և ինքն տիրեաց. և տայնն Հայոց զօրուն ամի ամի հարիւր հազար դահեկան խածիլթայս»: Աւաւել ծանրացաւ 'ի նմին ութերորդ դարու, ըստ պատմելոյ նորին Ասողկայ անդէն. «Այլ յիշխանութեան Աբդլայի միւսոյ (որ է Ջաֆր կամ Ճաֆար Աբդլա), և 'ի հրամանատարութեան Իզիտի յոյժ ծանրացաւ անուր լծոյ հարկապահանջութեան 'ի վերայ երկրիս Հայոց, զի ոչ ըստ երդ պահանջումն, այլ ըստ գլուխս արանցն. մինչև նախարարքն և մեծամեծքն 'ի չքաւոր աղքատութիւն անկան. զորմէ թէպէտ և բազում անգամ բողոքէր իշխանն Սահակ և հայրապետն Տրդատ, ոչինչ օգտէին»: Իսկ ընդարձակօղ Սամուէլի գրէ 'ի թուին Մ. 751. «Այս Ջաֆարս այնքան ճշդիւ ժողովեաց 'ի քրիստոնէից զոսկի և զարծաթ, մինչև զգերեզմանս մեռելոցն բանայինն, և զոսկին առեալ տայինն 'ի նա»:

Առաւել ես ծանրացաւ զինի յաւուրս Եսայեայ կաթողիկոսի, որ նստաւ 775-787. յետ Մուսէի ամիրապետի, գրէ Ասողիկ, տիրեաց Աշոտան եղբայր նորա. որ է Հարոն Րէշիտ. «Սա տայ զԱտրպատականն և զՀայս հանդերձ Վրօք և Աղուանիւք եղբօր իւրում Օբեթլայ. սա զխոյն Դօկլ յագգէ Հոռոմ առաքէ հարկահան'ի Հայս: Որոյ եկեալ 'ի քաղաքն Դուին սաստիկ հարկապահանջութեամբ խոշտանգէր զմնացեալս երկրին. առ որ ժողովեալ ամենայն նախարարքն և կաթողիկոսն Եսայի՝ աղաչէին թեթեւացուցանել զանուր ծանրութեն հարկին զոր պահանջէր, և ոչինչ օգտէին: Այլ անողորմն յոյժ պահանջօղս կրկին քան զառաջինսն ժողովել, և տայր կնիք կապարեայ զնել յամենեցուն պարանոցս, և առ մի մի պահանջէր բազում զուզէս, մինչև հատանել մարդկանն յետին անանկութեն յանհամբեր նեղութեանցն առ 'ի չարաչուք դահճեն»: Յայնժամ լինէր բազմաւն Հայոց թողուլ զերկիր իւրեանց և փախչել, զորմէ գրեալ եմք 'ի գլուխն Սակաւամարդութեն. «Իսկ սկնկլքօրքն որ մնացին, ասէ, յաշխարհս մեր՝ առ սաստիկ կարօտութեն անձնատուրք եղեն 'ի ծառայութե որդւոցն Իսմայէլի, փայտակոտորք և ջրաբերք նոցին եղեալք»: Յայն չարութիւն եհաս Իսկ Դօկլ՝ զի «զամենայն գանձս և զպասս եկեղեցեացն սպառնայլեօք և ա-

ցեայ և ժողովրդեանն տեառն. վասն որոյ սրտմտեալ տատա-կութիւն Յուսուփ յարձակեցաւ 'ի վերայ հայաստանեայցս անհուն զօրու և զինու, և բազում անցս աղետից 'ի վե-րայ մեր հասին»։

Բայց ըստ ճշգրիտ պատմութեան Յոհաննու կաթողիկոսի կամակար լեալ տեսանեմք զՍմբատ 'ի մճարութեան հարկաց, ոչ միայն յաւուրս Յուսփայ զորմէ պատմեցաք, այլ նաև յաւուրս Աֆշնի ոստիկանին. զի ըստ պահանջելն Աֆշնի «տալ զհաս զհարկն արքունի . . . արքայն (Սմբատ, ասէ,) անօրինեալ աշխարհի զխաղաղութիւն, անյապաղ զմնողիրսն կատարէր. և երևելի պատուականս օժտութիւնս ընծայից նմա մատուցանէր»։ Նոյնպէս և յորժամ վասն արձակելոյ զկաթողիկոսն 'ի կապանաց զանձս ոսկւոյ և արծաթոյ պահանջէր Աֆշինն՝ վաղվաղակի, ասէ Յոհաննէս կաթողիկոս, «ըստ հրամանի արքային Սմբատայ» ժողովեալ առաքեցաք։ Արդ եթէ յաւուրս Յուսփայ ոստիկանին յետս եկաց 'ի տալոյ, զոր գուցէ ոչ պատմէ Յոհաննէս կաթողիկոս, յայտ է թէ էին առաւել պահանջմունք Յուսփայ քան զօրինականն, և գուցէ կրկնապատիկ և եռապատիկ աւելի։

Նաև յերս տասներորդ դարուն յաւուրս Բ. Սմբատայ արքային յիշատակի առ Ասողկայ Գ. 18. հարկատուութի. «Ի նլզ. Թուին (987, ասէ) Աղլհաճայ որդի Բոզադայ ամիրայ Ատրպատականի . . . գայ հասանէ 'ի Դուին քաղաք և առնու զնա, խնդրէ հարկսն զանցեալ ամացն 'ի Հայոց, զոր ընդդէմ (այսինքն ընդ առաջ) յուղարկեալ զհարկսն թագաւորն Սմբատ (որ է Բ. Սմբատ) մեծամեծ ընծայիւք դարձոյց»։

Ի մէջն անդ մետասաներորդ դարուն յաւուրս վերջին Գագկայ թագաւորին գրէ Վարդան վասն Փառլուն ամիրային թէ տիրեաց Խաչենոյ, Գորոզոյ և Սևորդեացն. «Տիրեաց և Դուինայ, և եդ հարկս 'ի վերայ Հայոց երեք հարիւր հազար դրամ»։

Երկոտասաներորդ դարուն 'ի շհգ. Թուին 1124. գրէ Սամուէլ՝ թէ Հայք հարկատրեալ՝ զԱնի քաղաք յանձնեցին առ Փառլուն ամիրայն. «յորոյ իշխանականութեան թէպէտ և խաղաղանայր երկիրս 'ի տաճկական հինից, այլ յաղագս վերոյգրեալ նեղութեանց և վասն հարկապահանջ յափշտակութեանց եկն եհաս 'ի վերայ մեր յետին աղքատութիւն և տառապանք անհնարինք, որ յառաջագոյն ժամանակօք ունէր զաշխարհս Հայոց. և սատանոր յա-

այլ ըստ կամի զո և կամէին՝ զայն կացուցանէին, և յայնմանէ 'ի բազումս բաժանէր տէրութիւն նոցա. զի Սոփաց տիրէր աշխարհին Խորասանայ, Ալաուինն Ապուլթաւրազ 'ի Պասրա, Ցիսէ որդին Շէխայ 'ի Պաղեստին, և որդին Ապլըլափայ 'ի Դեղմաց աշխարհին, և այլք ոմանք 'ի տեղիս տեղիս. յայնմանէ բռնութեամբ Ջանային տիրել 'ի վերայ միմեանց. վասն որոյ զանուանս նոցա դժուարին է ընդ գրով փակել: Ի սոցանէ և ոստիկանք չարք, ասէ, յարձակեցան յաշխարհս մեր. որպէս գազանաբարոյն Բուղայ, անօրինագոյն Աֆշին որդի չարագործին Ապուսիճթայ, Յուսուփ եղբայր Աֆշնի, Նըսըր որ Սըբքի կոչիւր. “որք մինչև ցքառասնալ ամիրմումնեացն, (և մինչև) ցիշխել և ցտիրելն սկիւթականն ազգին որ արդ ես է՝ ոչ պակասեցին յաւար հարկանել զաշխարհս Հայաստանեայցս„:

Մանաւանդ դժնդակ եղև յայսմ դարու աղէտք աշխարհիս զոր ած Յուսուփ ոստիկանն, զի և վնասաբարոյն որք անձնատուր լինէին կորուսանէր, որպէս ասէ Յովհաննէս կաթողիկոս. “Եւ զրեթէ 'ի պատուականաց անտի 'ի մեծամեծացն՝ յանձնատուր նմա եղելոցն՝ և ընդ ձեռամբ անցելոցն՝ ոչ ոք ապրեցաւ 'ի չարախտաւլատ և 'ի խարդաւանական մահուն տուգանաց„: Վասն որոյ ասէ զկնի. “Եւ ապա սարսեալ ամենայն աշխարհն տարեցին յայլս, թաքեան յանտառս„: Այսմ ամենայնի դարման տանել ջան գործեաց ա՟. Սմբատ թագաւոր՝ զմեծ զիշխանն Հայոց զԳրիգոր առաքելով առ ամիրապետն խնդրել զխաղաղութի. բայց դուռն ամիրապետին շփոթեալ գոլով յայն ժամ յեգիպտացւոց ապստամբաց ոչինչ կարաց գործել: Վասիլ կայսր լուեալ զաղէտսն՝ ժողովեաց զօր գալ յօգնութի Սմբատայ, բայց յանկարծ մեռաւ: Աղէքսանդր եղբայր նորա յաջորդ Վասիլի շփոթեալ յապստամբաց ոչ կարաց ժամանել: Էին և ոմանք 'ի նախարարաց որք կարող էին օգնել, բայց և վասն նոցա գրէ Յովհաննէս կաթողիկոս. “Առանց հարկի պատճառանաց մերձաւորք և հեռաւորք յաւէտ հեռի եղեն 'ի նմանէ ('ի Սմբատայ) արդեամբք և խորհրդեամբք. և ծանեան զտէրս քան զնա. և զոր նայն սիրէր բարեկամութի՝ քեցեալ 'ի բաց բերան 'ի նմանէ խառնեալք ընդ թշնամիսն. իսկ ոմանք ընդվզեալք և 'ի վերայ յարուցեալք արձակէին ընդդէմ նորա նախատանօք առ 'ի սահ բառ սաղբելոյ հազարացւոյն, որպէս երբեմն առ մերոյն Տրդատայ„:

*Մայրաքիւք և այլ ևս բազմազխմի աղէտիւք լցաւ աշխարհս մեր. զի բաց 'ի կոտորածէ զոր առնէր Յուսուփ 'ի մտի դնելով զամենայն նախարարս սպանել, նաև մերձակայ ազգք սկսան քանդել զերկիրն յորոց բազումք էին քրիստոնեայք. ոքա զմտաւ ածեալ՝ մի գուցէ ոստիկանն յետ հարկանելոյ զՀայս՝ հարցէ և զնոսա, իւրաքանչիւր ձեռօք իւրեանց սկսան աւերել զայն քաղաքս աշխարհին Հայոց որք մերձ էին առ նոսա, որպէս զի մի գտցէ շէն ինչ. այսմ զհետ եկն և այլ աղէտք, զի զայն տեսեալ որիկայք երկրին, ինքեանք ևս 'ի նոյն մխեցան գործ. « Դրացիք մեր, ասէ Յովհաննէս կաթողիկոս, և ազգք որ շուրջ զմեօք են, յունականք և եգերացիք և գուգարացիք և ուտէացիք և հիւսիսական ազգք ընտանեալք առ ոտամբն Կովկասու 'ի մտի եդեալ եթէ գուցէ յինքեանս հեռի աղագս գտանել մարթասցէ ոստիկանն չար թէ երբէք շէն գտցէ զքաղաքս և զաւանս և զգեօղս, վասն այսորիկ 'ի խլել և 'ի քրել, կործանել և յատակել ջանացան առ ստորոտով իւրաքանչիւր աշխարհաց իւրեանց. Եւ ապա խառն ընդ նոսին աւազակք և որիկայք եկին 'ի մարտս ընդ երկիր մերում. և բազում ինչ այն էր որ 'ի նմանէ անցք ընդ աստուածաշէն եկեղեցիս անցանէին յեղծումն և 'ի խոպանումն և յապականումն վարակեալ»։*

*Այսն վիճակ եհաս յայնժամ հայաստան աշխարհ, զի ըստ ասելոյ նորուն, «Մեծամեծք աւագանւոյն ձորոց և լերանց և ամրապատից և քարածայռից և ամրոցաց պարսպէին. և այլ ևս խառնիճաղանջքն բռնկան մերկանդամ և թափառականք՝ 'ի սով և 'ի ծարաւ և 'ի լքումն հարեալք և հաշեալք, ցան և ցիր լերանց և դաշտաց բռնէին»։ Յետ այսորիկ տիրեաց սովն, զորոյ զկատարածն գրեալ եմք 'ի գլուխն Սակաւամարդութե։*

*Ի յետագայ մետասաներորդ դարու վասն արշաւանաց արաբացւոց երևելի ինչ յիշատակուն ոչ գտանեմք, բայց միայն վասն Փատլուն ամիրային առ Վարդանայ յաւուրսն. Գագկայ վերջին թագաւորին Անւոյ, զորմէ գրէ. « Գնացեալ առ նա (առ Փատլունն) Փիլիպէ որդին Գրիգորոյ տիրոյ աղադաւ, ըմբռնէ (Փատլունն) զնա 'ի կալանս զկնի մահուն հօրն, և առնու 'ի նմանէ զՇաշուադ և զՇօթս, և կոչեցեալ առ ինքն զԳագիկ որդի Համամայ զտէրն Տանձեաց՝ սպանանէ, և առնու զերկիր նորա։ Եւ այսպէս զօրացեալ տիրէ Խաչենոյ և Գորոզայ և Սևորդեաց. և գոռ դնէ ընդ Գագկայ թագաւորին Ձորոյգետոյ, և*

ընդ Կիւրիկէի Թագաւորին Աղուանից, և ընդ Բագարատայ Թագաւորին Վրաց. և նեղէր զնոսա»:

Հարկապահանջութիւնք Արաբացւոց:

Մինչև ցայսր գրեցաք զերկուց մասանցն արաբացւոց զոր գործէին յարշաւանս իւրեանց, այսինքն է զաւերելոյ և զքանդելոյ քաղաքաց, և զկոտորածէ բնակչաց. իսկ զերրորդ մասն աստանօր ուրոյն թողաք արձանագրել, որ էր հարկապահանջութիւն նոցա: Քանզի 'ի դառնութեան ժամանակին առաջի կայր հայաստանեայց ընտրել զմի յերից աստի, տալ հարկս ծանունս, կամ գերի վարիլ և կամ մեռանել. «Ածեալ իբրև զոչխարս 'ի սպանդ խոնայելեան երկաթոյն՝ որ ոչն եւս առնու յագուրդ» ասէ Յովհաննէս կաթողիկոս:

Զառաջին հարկել աշխարհիս Հայոց՝ Սամուէլ 'ի ժամանակս նորին իսկ Մահմետի դնէ, գրելով 'ի թուին ՂԵ. 646. «Մահմետս այս արգել զսուրն. և բանիւ խրատու նորա հնազանդեցուցին զմեծ մասն տիեզերաց, և անմոռաց երդմամբ կնքեաց մուրհակ Հայոց աշխարհիս համարձակ ունել զքրիստոնէութիւն, և վաճառեաց նոցա զհաւատս նոցա, յամենայն տանէ առեալ չորս դրամ և երեք մոթ խորբալ և ձիատոպրակ մի և պարան մի մազէ և ձեռնարար մի: Իսկ 'ի քահանայից և յազատաց և 'ի հեծելոց ոչ հրամայեաց առնուլ զհարկն»[1]: Բայց Ղևոնդ զառաջին հարկել աշխարհիս յիշէ յաւուրս Մուաւիէի ամիրապետին, յորում ժամանակի Գրիգոր Մամիկոնեան էր հրամանատար Հայոց. գրելով գլ. Է. «Հատին 'ի վերայ աշխարհիս Հայոց հարկս հնգ հարիւր դահեկան 'ի միում ամի հատուցանել նոցա, և աներկիւղ մնալ 'ի բնակութիւս իւրեանց... Եւ եղև բազում խաղաղութիւն յաւուրս նորա իշխանութեան. և յետ նորա Իզիտ որդի Մաւեայ. և ապրի ամս երկու և ամիսս հինգ և վախճանի. և նա վարեաց զաշխարհս Հայոց 'ի նոյն սակ հարկի»: Զայս յիշէ և Վարդան:

Յութերորդ դարուն Աբդլլայ կամ Ապտիւլմելիք ծանրացոյց զհարկն, զորմէ գրէ Ասողիկ Բ. Դ. «Տիրեաց փոխանակ Մրուանայ Աբդլլայ, և առաքէ զեղբայր իւր զմիւս

1 Կիրակոս բառ առ բառ օրինակէ զայս բան Սամուէլի:

Արգելայ շրջիլ ընդ ամենայն աշխարհս իւրոյ իշխանութեան, առնուլ հարկս 'ի կենդանեաց և 'ի մեռելոց ըստ մարդաթուի : Բազում վշտօք և նեղութեամբ վշտացնէր զամենեսեան և հատուցանէր 'ի չքաւորութիւն . առնոյր զքահանայս յայտ ածել զթիւ մեռելոցն՝ զի զհարկն ընտանիքն հատուսցեն, և դնէր կնիք կապարեայ 'ի պարանոցս ամենեցուն ,, [1] : Յորժամ Մահմէտ զօրավար եհան զթուղթն 'ի Է . Սահակայ կաթողիկոսէ հանգուցելոյ, որով հրաւէր խնդրեալ էր նա չառնել չարիս, այլ միայն հարկս առնուլ, յայնժամ, ասէ Կիրակոս, « Ոստիկանս առաքեաց Հայոց հարկ եդեալ 'ի վերայ նոցա ,, :

Իսկ յորժամ հրկէզ արարին զզօրս Հայոց յեկեղեցին Նախիջևանու և Խրամու, յայնժամ, ասէ Ղեւոնդ գլ. Թ. « Զնախարարս ազատացն եդին 'ի կապանս բանտի, և յանհնարացուցելի տանջանս խոշտանգէին, և պահանջէին 'ի նոցանէ բազում ոսկի և կշիռս արծաթոյ . և խոստացան նոցա թէ յորժամ հատուցանեն նոցա զգանձ արծաթոյն՝ արձակեսցեն զնոսա կենդանիս . վասն որոյ երդմամբ զաշխոս արարեալ հաւատարմացուցանէին զերդումն առաթեանն . և նոքա առ վտանգի նեղութեան զբազում մթերս գանձուց իւրեանց, զորս 'ի պահեստի եդեալ յերեսաց նեղչացն 'ի ծովու և թէ 'ի ցամաքի, առաջին 'ի ձեռս թշնամեացն, զի թերևս ապրեսցեն զանձինս իւրեանց : Եւ իբրև ունայնացեալք 'ի գանձուցն եղեն, ձեռնամուխ եղեալ անօրինացն բառնային զկենդանութիւն նոցա . և զկայուէ առեալ զատապարտեալսն զնոսա . անդ ընկղմեցան Սմբատ որդի Աշոտի 'ի Բագրատունի տոհմէ, և Գրիգոր և Կորիւն 'ի տոհմէ Արծրունեաց, և Վարազշապուհ և եղբայր իւր 'ի տոհմէ Ամատունեաց . և բազում այլ 'ի նախարարացն Հայոց, զոր ոչ բաւեմ մի ըստ միոջէ պատմել, զնոսա զամենեսեան բարձեալ 'ի կենացն անժառանգ առնէին զաշխարհս 'ի նախարարացն ,, :

Դարձեալ Աշամ կամ Հեշամ ամիրապետ որ զկնի Է .

1 Կիրակոս յաւելու և զայլ համբաւանս ասելով . « Յետ Մրվանայ առնու զիշխանութիւն Իսմայելի Աբդլա, և յետ նորա միւս Աբդլա (որ է Աբդըլլա) այր ժանտ և արծաթասէր... Սա շինեաց զԲաղդատ . և առաքէ բազում չարիս ընդ աշխարհս Հայոց հարկապահանջութեամբ և յափշտակութեամբ . և այնչափ նեղեաց՝ մինչ զի զմեռելոցն հարկս 'ի կենդանեաց էառ . և հատուցին առ արծաթոյ յաշխարհէս Հայոց, (որով կարծեմ խիմանայ զհանքս արծաթոյ) . և կատարումն եղև քաղաքանաց, Յարքնոյ, Բաղնոյ, և այլ աւանաց ուրեք եւթն հազարեան, և զեկեղեցին աղեց հասուցեալ երկու հազարի . և Մաշեց մանկունս և Մանուէլ այրեաց աշխարհն Հայոց կաթողիկոսն ,, :

Եգիպտի նստաւ յամին 742. «Ծանրացոյց զսակ հարկի աշխարհիս Հայոց». որպէս գրէ Ասողիկ Գ. Դ: Իսկ Վարդան ասէ. «Ջլնի Հեշմայ նստաւ Վլիթ զաղրադործ (որ է Վլիթ Բ.) որ և հրամանաւ կուռայիցն սպանաւ, և եդաւ Սուլիման, և սպան զնա Մրուան և ինքն տիրեաց. և տայլին Հայոց զօրուն ամի ամի հարիւր հազար դահեկան խածիլթայս»: Առաւել ծանրացաւ 'ի նմին ութերորդ դարու, ըստ պատմելոյ նորին Ասողկայ անդէն. «Այլ յիշխանութեան Աբդլայի միւսոյ (որ է Ջափր կամ Ճաֆար Աբդլա), և 'ի հրամանատարութեան Իզիտի յոյժ ծանրացաւ անուր լծոյ հարկապահանջութեան 'ի վերայ երկրիս Հայոց, զի ոչ ըստ երդ պահանջումն, այլ ըստ գլուխս արանցն. մինչև նախարարքն և մեծամեծքն 'ի չքաւոր աղքատութիւն անկան. զորմէ թէպէտ և բազում անգամ բողոքէր իշխանն Սահակ և հայրապետն Տրդատ, ոչինչ օգտէին»: Իսկ ընդարձակօղ Սամուէլի գրէ 'ի թուին Մ. 751. «Այս Ջաֆարս այնքան ճշդիւ ժողովեաց 'ի քրիստոնէից զոսկի և զարծաթ, մինչև զգերեզմանս մեռելոցն բանայլին, և զոսկին առնուլ տայլին 'ի նոսա»:

Առաւել ևս ծանրացաւ գինի յաւուրս Եսայեայ կաթողիկոսի, որ նստաւ 775-787. յետ Մուսէի ամիրապետի, գրէ Ասողիկ, տիրեաց Ահարոն եղբայր նորա. որ է Հարոն Րէշիտ. «Սա տայ զԱտրպատական և զՀայս հանդերձ Վրօք և Աղուանիւք եղբօր իւրում Օբեյթլայ. սա զԽալն Գոկլ յազգէ Հռոմ առաքէ հարկահան'ի Հայս: Որոյ եկեալ 'ի քաղաքն Դուին սաստիկ հարկապահանջութե՛ խոշտանգէր զբնակիչս երկրին. առ որ ժողովեալ ամենայն նախարարքն և կաթողիկոսն Եսայի՝ աղաչէին թեթեւացուցանել զանուր ծանրութե հարկին զոր պահանջէր, և ոչինչ օգտէին: Այլ անդրէն յղէր պահանջօղս կրկին քան զառաջինսն ժողովել, և տայր կնիք կապարեայ դնել յամենեցուն պարանոցս, և առ մի մի պահանջէր բազում զուզէս, մինչև հասանել մարդկանն յետին անանկութե յանհամբեր նեղութեանցն առ 'ի չարաշուք դահճէն»: Յայնժամ լինէր բազմաց Հայոց թողուլ զերկիր իւրեանց և փախչել, զորմէ գրեալ եմք 'ի գլուխն Սակաւամարդութե. «Իսկ սինլքորքն որ մնացին, ասէ, յաշխարհս մեր՝ առ սաստիկ կարօտութե անձնատուրք եղեն 'ի ծառայութե որդւոցն Իսմայէլի, փայտահատք և ջրակիրք նոցին եղեալք»: Յայն չարութիւն եհաս Խալն Գոկլ զի «զամենայն զանձս և զսպաս եկեղեցւոյն սպառնայլէօք և ա-

ցւոյ և ժողովրդեանն տեառն. վասն որոյ սրտմտեալ սաստ-կութի Յուսուփ յարձակեցաւ ՚ի վերայ հայաստանեայցս անհնուն զօրու և զինու, և բազում անցս անցեալ ՚ի վե-րայ մեր հասին»:

Նայց ըստ Ճշգրիտ պատմութե Յոհաննու կաթողիկոսի կամակար լեալ տեսանելեմք զՍմբատ ՚ի մՃարտութի հարկաց, ոչ միայն յաւուրս Յուսուփայ զորմէ պատմեցաք, այլ նաև յաւուրս Աֆշնի ոստիկանին. զի ըստ պահանջելոյ Աֆշնի «տալ զնա զհարկն արքունի . . . արքայն (Սմբատ, ասէ,) անօրինեալ աշխարհի զխաղաղութի, անյապաղ զխնդիրսն կատարէր. և երևելի պատուական օժտութիս ընծայից նմա մատուցանէր»: Նոյնպէս և յորժամ վասն արձակե-լոյ զկաթողիկոսն ՚ի կապանաց զանձս ոսկւոյ և արծաթոյ պահանջէր Աֆշինն՝ վաղվաղակի, ասէ Յոհաննէս կաթո-ղիկոս, «ըստ հրամանի արքային Սմբատայ» ժողովեալ առաքեցաք: Այլ եթէ յաւուրս Յուսուփայ ոստիկանին յետս եկաց ՚ի տալոյ, զոր գուցէ ոչ պատմէ Յոհաննէս կաթողիկոս, յայտ է թէ էին առաւել պահանջմունք Յուսուփայ քան զառաջականն, և գուցէ կրկնապատիկ և եռապատիկ աւելի:

Նաև յետ տասներորդ դարուն յաւուրս Գ. Սմբա-տայ արքայի յիշատակի առ Ասողկայ Գ. 18. հարկատուու-թի. «Ի ՆԼԶ. թուին (987, ասէ) Ապլհաճայ որդի Ռովա-դայ ամիրայ Ատրպատականի . . . գայ հասանէ ՚ի Դուին քաղաք և առնու զնա, խնդրէ հարկսն զանցեալ ամացն ՚ի Հայոց, զոր ընդդէմ (այսինքն ընդ առաջ) յուղարկեալ զհարկսն թագաւորն Սմբատ (որ է Գ. Սմբատ) մեծա-մեծ ընծիւք դարձոյց»:

Ի մէջն անդ մետասաներորդ դարուն յաւուրս վերջին Գագկայ թագաւորին գրէ Վարդան վասն Փատլունն ամի-րային թէ տիրեաց Խաչենոյ, Գործոյ և Սևորդեացն. «Տիրեաց և Դւնայ, և եդ հարկս ՚ի վերայ Հայոց երեք հարիւր հազար դրամ»:

Երկոտասաներորդ դարուն ՚ի ՇՀԳ. թուին 1124. գրէ Սամուէլ՝ թէ Հայք հարկատրեալ զԱնի քաղաք յանձ-նեցին առ Փատլունն ամիրայն. «յորոյ իշխանականութենն թէպէտ և խաղաղանայր երկիրս ՚ի սովորական հինից, այլ յաղագս վերայդրեալ նեղութեց և վասն հարկապա-հանջ յափշտակութեց եկն եհաս ՚ի վերայ մեր յետին աղ-քատութի և տառապանք անհնարին, որ յառաջագոյն ժամանակօք ունէր զաշխարհս Հայոց. և տատանօր յա-

ւելոյ յանձախապէս մի ըստ միոյ մինչև յաւուրս յայսո-րիկ յորում եմք »։

Սերոյն տայր Հարկս և Թագաւորն Վասպուրականի. զի գրէ Յովհաննէս կաթողիկոս թէ Յուսուփ յորժամ կրկին անգամ եկաց ոստիկան, « զեսպան առ Թագաւորն (Վասպուրականի Գագիկ) առաքէր մեծարելով և զիւրապարտորդ Հաշտութեան. սակայն ըստ ընչաքաղցն ընկերոյ և օգնականութեան՝ 'ի բանանի. անգ զղապարեալ ամաց Հարկս արքունականս, այլ և զօժառնս ես ընծայից անձին առ-անձին Հայցէր տալ նմա »։ Զոր խորհեալ, ասէ, Թագաւորն Գագիկ, « Ընտրեալ առնէր զերկրորդն՝ տալ կրկին կամ երկերկին զոսկի Հարկին, և զանձնոյն ընկալաւ արքունի, և ոչ Հարկանիլ ընդ մեծամեծս . . . և ոխակալեաց ամփոփեալ զիւրն ստացուածս առաջի արկանէր. և առ Հա-սարակ յամենեցունց 'ի մերձաւորաց և յաղագաց և յամենայնուանց ժողովեալ արծաթ և ոսկի և կարասիս բազումս և ձիս. և Ջորիս տայր առնել նմա ա-ռատ ձեռնածրիւքն »։ Սոյնպէս և յորժամ Փառկինեի ոս-տիկանն Թագ. ընդդեմ ընդ իւր յանդիմանելեանն երկբայն պատկերաց զԳագիկ 'ի մերոյ Հայաստանեայցս՝ Գագիկ, ասէ Յովհաննէս կաթողիկոս, առաքէր առ անդրադարձն « զանձս ոսկւոյ և արծաթոյ, զկէսն 'ի տանն արքունի, և զայլսն ես 'ի նորաստ օժառն »։

Սերոյն տայլն Հարկս և Նախարարք՝ զէթ ամենք որ-պէս կարծեմ. զի ոստանեանք առ Յովհաննու կաթողիկոսի վասն իշխանին Անձևացեաց Ատոմայ տալ Հարկս։ Յու-սուփ, ասէ, « զեսպանս առ իշխանն Ատոմ առաքէր տալ նմա զոսկ Հարկացն արքունի. և ըստ սովորակի Հրահան-գացն առնել տալ զօծառն նորա, որպէս զի ընկալեալ երթայցէ զնացէ 'ի բաց . . . իսկ նա . . . Հատուցանէր նմա ըստ ձեռին բաւականի զՀասս Հարկին կրկին յաւե-լուածով. այլ և ընծայս ձեռաձիրս անասատապէս պարգևէր, և միացելոցն Հարկաց ըստ ծախուն խնդրեալին՝ պատասխանս յաղաստասանմէ առնել լինէր »։ Բայց պարտ է գիտել, զի Անձևացեաց իշխանք յայնժամ ժամանակի 'ի մեծի առ-տիճանի պատուոյ էին քան զիշխանս միւս գաւառաց, մինչ չև ոմանց նաև Թագաւոր կոչել զնոսա։

Ապստամբութիւն Վրաց յԱփխազաց։

Ի յուշոյ բանաւորութեան կրեալ մերոց յարաբացւոց ան-

տի՝ զորս մինչեւ ցարդ յիշատակեցաք, ընդ ժամանակս ժամանակս արիացան ընդդէմ ելանել նոցա, բայց ոչ որպէս պարտն էր, այսինքն մի միայն բանակ մեծ կազմել միաբանութեամբ նախարարացն բազմութեան. զի և մոռացեալ էր նոցա զայն կարգաւորութիւն զինուորական զոր սահմանեցին նախնի թագաւորքն մեր արշակունիք՝ ընդ չորս կողմանս աշխարհիս չորս բանակս կացուցանել, այլ իւրաքանչիւր յիշխանաց ջանայր զիւր առանձին երկիր պաշտպանել միայն, և իւրաքանչիւրոց զօրով սակաւաւորք՝ իւրաքանչիւրքն եւս տկարանային և հալածական լինէին 'ի բազմութենէ արշաւողաց:

Օրինակ լիցի առացելոցս պատերազմն Վարդանակերտի զոր 'ի վերոյ յիշեցաք. մեծ էր արդարև այն քաջութիւն Հայոց, բայց սակաւուց ումանց ընդ ձեռամբ Սմբատայ հրամանատարի, և 'ի մի կողմն աշխարհի. մեծ էր 'ի նմին ժամանակի և արարք Ներսեհի կամսարականի, բայց և այն յայլ կողմն աշխարհի: Առ 'ի քաջ իմանալ յառաջ ածցուք զոր պատմէ Յովհաննէս կաթողիկոս. "Զայսու ժամանակաւ ('ի 694) աստ լինի կռիւն 'ի Վարդանակերտի և ընդդիմնոյն կոտորումն իսմայելեան բանակին. վասն որոյ ցարդ եւս բան առ հագարացիսն բառ իւրեանց առխատորոյ բարւոյն պատմի, թէ Վարդանակերտ առիւ մի՛ շինեսցի մեզ: Եւ վասն զի յոյժ տագնապեալ տարակուսեալ տառապեալ նեղեցան մեծամեծք Հայոց (յարշաւանաց իսմայելացւոց), ապա յուսացեալք յերկնային այցելութիւն ընդդէմ դարձան ապստամբեալ հինից իսմայելեան զօրուն: Եւ վասն զի Ոգբա ոմն զօրապետ մեծ հանդերձ զօրօք բազմօք շրջէր ընդ կողմամբ Վանանդայ, անդ ապա հասեալ 'ի վերայ Կամսարականն հանդերձ առաւօտըն Վանանդայ՝ կոտորեցին սպառասպուռ զզօրս նորա":
Ահա երկու յաղթութիւնք, բայց չարարին ինչ օգուտ համօրէն աշխարհին առ 'ի խափանել զարշաւանս թշնամեաց, զի չէին կարգաւորեալք 'ի պաշտպանութիւն աշխարհին, այլ առանձին քաջութիւնք ումանց յայլեւայլ տեղիս. վասն որոյ և արդիւնք քաջութեան ոչ մշտատեւ և ոչ համօրէն:

Միաբանեցան երբեմն և իշխանքն ապստամբել 'ի մէջին անդ ութերորդ դարուն, այլ Աշոտ պատրիկ որդի Վասակայ որ հրամանատար էր՝ ոչ միաբանեցաւ յախուժամ, թերևս վասն չմիաբանելոյ ընդ նմա միահամուռ ամենայն նախարարացն՝ զոր օրինակ էին Արծրունեացն և Սիւնեաց

և այլոց նախարարաց. որոց նախանձու լինէր այնն աշխարհական՝ թէ այն միաբանութիւն սակաւուց միայն նախարարաց՝ չէր. բաւական յետ ապստամբելոյ զդէմ ունել յարձակմանց արաբացւոց. որպէս արդեամբք եւ 'ի գլուխ յետագայ դիպուածոցն. զի թէպէտ և յետ այնորիկ աւանց Աշոտոյ ապստամբեալ յարեան 'ի վերայ արաբացւոց, բայց 'ի մնաս խուերանց: Զայսոսիկ պատմէ Վարդան ասելով. "Զայսու ժամանակաւ ապստամբութիւն խորհեցան իշխանքն Հայոց, և ոչ կամեցաւ պատրիկն Աշոտ. և կալեալ կուրացուցին զնա մամիկոնեանքն Գրիգոր. և Դաւիթ... Եւ սպանաւ Մրվան, և տիրեցին Աբդլայքն, և 'ի մեռանելոյն եւս պահանջէին հարկս. և առաքեցին 'ի Հայս զԻզիտ զասանն ներդիչ, և ապա զԲաքր, ապա զՀասան կատապն, ընդ որ զառնացեալ Մուշեղ մամիկոնեան՝ ապստամբեալ յիսմայելէ երկու հարիւր այր, և ապա չորեք հազար. և ապա խաբեալք 'ի մանանաղանէ մոգէ որ տեսիլ սուտ պատմէր, և ասէր թէ կատարեալ են ժամանակքն իսմայելի, ժողովեցան հինգ հազարք, որոց գլխաւորք Մուշեղ և Սմբատ, որք մարտեան ընդ երեսուն հազարաց. և մեռան երեք հազարքն, և Մուշեղ և Սմբատ»: Զոր և յիշէ Սամուէլ 'ի թուին միբ. 773. ասելով. "Մուշեղ մամիկոնեան և Սամուէլ այլօք բարեկամօք և ազատազունդ զօրօքն Հայոց կոտորեցան յաւուրս զաւակացն յազգէն իսմայելացւոց»:

Նոյնպէս անխորհուրդ միաբանութիւն էր Սմբատայ սպարապետի և Սահակայ Սիւնեաց տեառն և այլոց նախարարաց ոմանց միաբանիլ ընդ Սևադայի առ 'ի սպանանել զՀօլ ոստիկան, որպէս պատմէ Յովհաննէս կաթողիկոս. զի ոչ օգուտ ինչ էր համօրէն աշխարհիս մերոյ, այլ միայն Սևադայի այլազգւոյն և ազգականաց նորա. ըստ որում կին նորա դուստր բագրատունի Աշոտ անուն, զերկիրս Բագրատունեաց կամէր 'ի բաց հանել յիշխանութէ ոստիկանին և յինքն գրաւել: Յայս գործ մեծ այնչափ սակաւ էր պատրաստութի սոցա, զի ոչ կարացին երից հազար զօրաց ոստիկանին Հոլայ զդէմ ունել. Սմբատ ընդ նմին և Սևադայ մազապուրծ փախեան. իսկ Սահակ սիւնի մեռաւ 'ի սկիզբն իններորդ դարուն:

Աարի անխորհուրդ էր և միաբանութիւնն որ 'ի մէջն անդ իններորդ դարուն յառնել սակաւուց ոմանց բնակչաց Սիմ լերինն 'ի վերայ Ապուսէթայ ոստիկանին միայն և սպանանել զնա ոչ առ օգուտ ինչ աշխարհիս, այլ առ աւան-

ձին վրէժխնդրութիւն իւրեանց, որ և պատճառ եղև ածելոյ զԲուղայ 'ի Հայս զաւրաւել չարագործն, ընդ նմին և զանհնարին հարուածս զորս յիշեցաք 'ի վերոյ :

Դիպուածք յաւուրս Արաբացւոց :

Ինչ ժամանակս ժամանակս լինէր և դադար ինչ դադարել կամ մեղմանալ բռնաւորութեանց արաբացւոց, զորս յիշել արժանի համարիմք աստանօր :

Զառաջինն յիշատակեալ գտանեմք առ Ղևոնդեայ գլ. Է. յաւուրս Մամիկոնեան Գրիգորի որ եղև հրամանատար Հայոց 'ի 660-682. զորմէ գրէ. "Իսկ Գրիգոր իշխանն Հայոց յաւուրս իւրոյ իշխանութեան խաղաղացոյց զաշխարհս Հայոց յամենայն հինից և յարձակմանց ":

Երկրորդ դիւրութին եղև 'ի խնդրոյ Յոհաննու կաթողիկոսի 'ի սկիզբն ութերորդ դարուն. զի սա ըստ գրելոյ Կիրակոսի, զերիս շնորհս խնդրեաց յամիրապետէն, յորոց մին էր, ասէ, "Զազատութիւն եկեղեցւոյ ընդ հարկաւ մի դնիցեն, և մի ինչ առցեն յերիցանց և 'ի սարկաւագաց ". որում, ասէ, "Վաղվաղակի հրամայեաց գրել գիր ըստ խնդրոյ նորա, և կնքեաց մատանեաւ իւրով ":

Երրորդ դիւրութիւն պատմեալ գտանեմք առ Ղևոնդեայ գլ. Ժ. յաւուրս Վլիթ ամիրապետին. առ որ հասեալ բողոք հայաստանեայցս սակս անիրաւութեանց գործելոց 'ի Մահմէտ զօրավարէ նորա, փոխանակ Մահմէտին առաքէր յամին 732 զԱպտլազիզ. որոյ երդմամբ խոստանալով զխաղաղութիւն և զապահովութիւն եւ բերել զնախարարս Հայոց, որոց հատուածեալ փախստեայ գնացեալ էին 'ի սահմանս Յունաց. "Այսուհետև, ասէ, Ապտլազիզ տիրեալ 'ի վերայ աշխարհիս Հայոց՝ խաղաղացոյց զամենայն արձակմունս անիրաւուն յաշխարհէս, և ընդխորոխատացեալ անզգամութիւն որդւոցն Իսմայէլի սաստիկ կշտամբութեամբ ցածուցանէր. շինէր վերստին զքաղաքն Դուին ":

Չորրորդ դիւրութին պատմի ըստ Ղևոնդեայ գլ. Է. յաւուրս Ապտուլմէլիքայ որդւոյ Մրուանայ, յորժամ եղև սաստիկ պատերազմ 'ի մէջ արաբացւոց զմիմեանս կոտորելով. յայնժամ " ժամանակի պատերազմին, ասէ, որ 'ի մէջ Տաճկաց (արաբացւոց), դադարեցան 'ի հարկատուութենէ նոցա Հայք, Վիրք, Աղուանք, ծառայել նոցա ամս երեսուն ": Այլ ք դնեն զխռովութին նոցա յորժամ պա-

## ԴԱՐ Ժ

Որ ինչ եղեն յաւուրս Վասլի և Կոստանդեայ կայսերաց՝ և յաւուրս Սարգսի կաթողիկոսի, պատմին առ Մատթէոսի ծէ. 'ի Թուին նխգ. 994. "Ելանէր (ասէ, մեծ տունն Հոռոմոց), և գայր բազում զօրօք 'ի վերայ աշխարհին Հայոց սրօք և գերութք անողորմ յարձակեցաւ 'ի վերայ հաւատացելոց Քրիստոսի, և գազանաբար ապականմամբ ընթանայր իբրև զօձ թիւնաւոր, որ ելից զանեղի անհաւատ ազգաց. և եղև 'ի մտանելն նորա յաշխարհն Հայոց՝ ժողովեցան ընդ առաջ նորա զօրք Հայոց ազատացն, և 'ի գլխաւորն ընդ միմեանս՝ բախեցին գազանաբար. և քաջք ընդ քաջս եղանէին, և անպարտելի հանդիսանային յերկոցունց կողմանցն. և յայնժամ 'ի սաստկանալն մեծի պատերազմին՝ եղեն պարտեալ զօրքն Հոռոմոց առաջի զօրացն Հայոց, և դարձան 'ի փախուստ,,:

## ԴԱՐ ԺԱ

Յետ մեռանելոյ Յովհաննու թագաւորին 'ի Թուին նղ. 1041. ըստ Մատթէոսի, որ է յաւուրս Է. Միքայէլ կայսեր, 'ի պատճառս քաղաքին Անւոյ եղև սաստիկ արշաւանք Յունաց 'ի Հայս. "Յայսմ ամի (Թիւ նղ.) յարեան Հոռոմք կրկնակի 'ի վերայ աշխարհին Հայոց. և առ 'ի չըգոյէ գլխոյ զօրացն Հայոց՝ բազում տեղիք հաւանեցան Հոռոմոց. և վասն զի էր կատարած մեծ 'ի վերայ աշխարհին Հայոց. և յայնժամ ժողովեցան զօրք Հոռոմոց 'ի վերայ թագաւորանիստ քաղաքին Անւոյ հարիւր հազարաւ. և բանակ հարկանէին 'ի դուռն քաղաքին Անւոյ: Յայնժամ ժողովեցան միացեալ զօրքն Հայոց առ մեծ սպարապետն Վահրամ պահլաւունին, և խնդրէին ելանել 'ի պատերազմ 'ի վերայ զօրացն Հոռոմոց. վասն զի զօրքն Հոռոմոց սաստիկ հայհոյութք և բազում նախատանօք գային 'ի վերայ պատերազմել,,: Պատմէ ապա թէ զօրք Հայոց յոյժ սրտմտեալ յարձակեցան և կոտորեցին, մինչև Ջուր Ախուրեան գետոյն դարձաւ յարիւն. զորս հալածէ զաղապատեցոյց Վահրամ. "Եւ այլ ոչ եւս խնդրէին, ասէ, զօրքն Հոռոմոց զքաղաքն Անի. և դարձան ամօթով, և գնացին 'ի Կոստանդնուպօլիս առ Միխայէլն,,:

Ի Թուին շը. 1059. յորում ժամանակի Կոստանդին

հարկք, բայց նոքին չէին հարկք առեալք 'ի թագաւորաց մերոց, այլ 'ի բաժնէ աշխարհիս՝ որ էր ընդ տէրութեամբ նոցա, երբ չգոյր անդ թագաւոր ։ Ըստ այսմ է զոր յիշէ Ասողիկ Գ. 6. վասն Թէոփիլոսի կայսեր որ յիններորդ-դարու. "Եւ ինքն առեալ հարկս 'ի Թէոդուպօլսեցւոց դարձաւ անդրէն". ըստ այսմ յիշէ և Լաստիվերտցի Ե. "Իսկ 'ի ՆԿԷ. ամի Թուականիս մերոյ (1018) առաքէ ինքնակալ թագաւորն (Հոռոմոց) զՆիկոմիդացի իշխան ոմն, որ եկեալ մարզահարկ արկանէ յերկիրս. և ժողովեալ բազմութիւն մարդկան սկիզբն առնէ վերստին շինելոյ զԹէոդոսուպօլիս"։

## Զ. Արշաւանք Մելիքշահայ, այսինքն Թուրքաց Տուղրիլեանց, որք կոչին Սելճուկեան ; նախ յանուն Պարսից ։

## ԴԱՐ ԺԱ

Զարհուրելի եղև յայսմ դարու արշաւանք Տուղրիլեանց, զորս ուրեք Թուրք անուամբ կոչեն պատմագիրք մեր և ուրեք Պարսիկք. զի Տուղրիլ՝ թէպէտ ազգաւ էր Թուրք Սելճուկեան՝ բայց սիրելի լեալ ամիրապետին արաբացւոց՝ թագաւորեաց 'ի վերայ Պարսից ։ Իսկ հին անուամբ կոչեն Սկիւթացիս, որպէս կոչեն Սամուէլ և Կիրակոս. ընդարձակօղն Թոմայի Արծրունւոյ կոչէ "Զարմն Ելիմայ որ են ազգք Թուրքաց". և ստորև. "Ազգն եղիմացւոց... զազրամտիտ ազգին Ելիմայ ... արքային եղիմացւոց որ կոչէր սուլտան անուամբ Տուղլուփ". փոխանակ գրելոյ Տուղրուլ ։

Այս Տուղրիլ և այլք իւր իրազեկ լեալ թէ աշխարհս Հայոց յետ տալոյ զԱնի քաղաք առ Յոյնս, քանզի նուաստ արամբք կառավարեալ լինէր 'ի Յունաց, հորդան տուեալ յարձակեցան 'ի Հայս 'ի ՆՂԸ. Թուին. 1049. "Զարթեաւ (ասէ Մատթէոս 'ի Թիւն ՆՂԸ.) աստուածասաստ բարկութիւն 'ի տանէն Պարսից հրամանաւ Տուղրիլ սուլտանին... և անթիւ բազմութիւն զանս 'ի յաշխարհն Հայոց. վասն զի 'ի ձեռաց Հոռոմոց զխոացին (լինել) անտէր և անպահապան զամենայն աշխարհն Հայոց"։ Զոր առաւել ընդարձակեալ Լաստիվերտցւոյն գլ. ԺԱ. ասէ. Ի ՆՂԷ. 1048. բազմութիւն 'ի տոյանէ ահագին ծփանօք "եկեալ հեղաւ յընդարձակ

դաշտն Բասենոյ և Կարնոյ և Ցայտուկս Հեղեղատեն. կալաւ զչորս անկիւնս երկրին. յարևմուտս՝ մինչև 'ի Խաղտեաց գաւառն, իսկ 'ի հիւսիսի (կողմն) մինչև 'ի Սպեր, և մինչև յամուրսն Տայոց և Արշարունեաց. իսկ 'ի հարաւ՝ մինչև 'ի Տարօն և մինչև 'ի գաւառն Հաշտենից, մինչև յանտառսն Խորձենոյ. և զերագ առեալ դադարեաց ուրուք չարեքատասան. և ծովացեալ ծածկեաց զերեսս և զմացեալ վայրս և կալաւ ըստ զաշխարհս,,: Ուրանոր Մատթէոս յետ պատմելոյ զառումն Արծնւ քաղաքին՝ որ յայնմ ժամանակի էր փարթամ յոյժ և բազմամարդ՝ ողբալով ասէ. "Որպէս լալով ասացից զանցումն իշխանացն, և զքահանայիցն, որ անթաղք՝ կերակուր գազանաց լեալք, և փառաւոր կանայք հանդերձ ազայօքն վարեցան 'ի գերութի յաշխարհն Պարսից (տուղրիլեանց) յանգէն ծառայութե. և ահա այս սկիզբն եղև Հայոց կորստեանս,, :

Տուղրիլ 'իշխ. 1053. դարձեալ եւ 'ի Բերկրի, զոր առեալ զերի վարեաց. եկն յԱրճէշ, որոյ բնակիչք յետ ութ աւուրց բացին զդուռն առաջի նորա և առաքեցին 'ի Մանծկերտ, որ ընդդէմ եկաց և ոչ կարաց առնուլ զնա. զորմէ Ճռիստոդոսս գրելով Լաստիվերտցին ժէ. ասէ. "Խաղաց գաղանն մահաշունչ (որ է Տուղրիլ սուլտան), արիւնարբուն և մարդախոշոշն անհամար զօրօք փղօք կառօք և երիվարօք, կանամբք և որդովք, և բազում պատրաստութեմբք, զանց արարեալ զԱրճիշաւ և զԲերկրով, եկեալ բնակեցաւ շուրջ զքաղաքաւն որ կոչի Մանազկերտ 'ի գաւառն Ապահունեաց, և կալաւ բովանդակ զընդարձակ վայրս դաշտացն, և արձակեաց ասպատակս յերեսն կողմանս աշխարհիս՝ 'ի հիւսիսի մինչև յամուրսն (Տայոց), և մինչև 'ի լեառն որ կոչի Պարխար, և մինչև ցատորասն Կովկասայ. և յարևմուտս՝ մինչև յանտառսն Ճանեթոյ[1]. իսկ 'ի հարաւ՝ մինչև ցՍիմն կոչեցեալ լեառն, և բովանդակ կալեալ զաշխարհս իբրև հնձօղք ոճոյ ագարակի: Արդ զայնմ ժամու զչարիսն զոր նոքա աշխարհիս հասուցին՝ ով կարէ ընդգրով արկանել, կամ ոյր միտք բաւեն 'ի համար ածել . . . և այսպիսի ձեռնարկութեամբ ապականեցին զաշխարհս ամենայն՝ ոչ միանգամ այլ երիցս անգամ մի 'ի վերայ միոյ դարձ արարեալ, մինչև առհասարակ հասաւ երկիրս 'ի

1 Ճանիկ էր գաւառ եկեղեաց գաւառ մինչև 'ի Սաաբանձոս կէօլն ձգէ կամ Կողբեայ. այժմ կոչի Ճանիկ, և այժմ անուն մեծ։
որ է գաւառ Ցրտայկէդնի. ուստի այս.

ընակչաց, և բարձաւ կառաչ անասնոցն... զխորձեան և զՀանձէթն յորժամ յիշեմ, և որ 'ի նոսա գործեցաւ, հառաչ կլեմ, արտասուօք փղձկի սիրտ իմ... բազում և անհամար հոգիք 'ի վերագոյն գաւառացն վասն տեղւոյն ամրութեան անդր ժողովեալ էին. յորոց վերայ հասեալ անօրինացն... անյագաբար կոտորեցին զորս և գտին... 'ի միում վայրկենի երկիրն որ իբրև զքաղաք մարդախիտ առատութեամբ խռնողեալ էր՝ եղև անմարդ. ամայի յերկուս բաժանեալ, կամ սրակոտոր՝ կամ գերի... իսկ զոր 'ի Դերջան և յԵկեղեաց և 'ի միջնաշխարհն նոցա եղև կոտորումն՝ և ընդգրով արկանել չէ ողջ բաւական... իսկ որ 'ի Տայոց մտին՝ առեալ զերկիրն և հասեալք մինչև 'ի գետն մեծ որ կոչի Ճորոխ, և զկնի գետոյն դարձեալ իջին յաշխարհն Խաղտեաց. և առեալ զառ և զգերի գաւառին դարձան„:

Մատթէոս 'ի Ճժը. գրէ և վասն արշաւանացն զոր գործեցին 'ի շԸ. 1059. ասելով. “Շարժեցաւ առհասարակ ամենայն տունն Պարսից (տուղրիլեանց). և յարուցեալ գայլքն ահագինն բազմութեամբ առանց համարոյ որպէս զաւազ ծովու. և խաղայր գայր հասանէր 'ի վերայ հաւատացելոց տանն Հայոց. և բազում գաւառք մաշեալ լինէին սրով և գերութեամբ յերեց ամբարիշտ գազանացս այսոցիկ, որք ելին 'ի տիւանէն Տուղրիլ սուլտանին ամիրայք երեք... հասանէին 'ի բազմամբոխ և 'ի նշանաւոր քաղաքն Սեբաստիոյ.... մանաւանդ խորհեցան 'ի միտս իւրեանց ձերբակալ առնել զորդիսն Սենեքերիմայ, զորդիս թագաւորին Հայոց զԱտոմ և զԱպուսահլ, զոր յառաջագոյն նոցա լուեալ զքաջ զօրացն այլազգեաց՝ և փախեան 'ի խաւատանէքն, և այլ բազում իշխանքն գնացին զհետ„[1]:

Յետ պատմելոյ աստանօր զհարուածս զոր արարին որք Տուղրիլ սուլտանին 'ի Պաղին, յԱրկնի, 'ի Թլխորմոյ գաւառ՝ գուշէ ողբալով Մատթէոս 'ի թիւն Ճժդ. “Արդ ով կարասցէ պատմել զկոտորածս և զանցումն կատարածին տանն Հայոց. զի արեամբք ծածկեցաւ առհասարակ ամենայն արարածք... և 'ի բազմութենէ դիականացն լցաւ ամենայն տունն Պարսից (տուղրիլեանց). և արեամբ

1 Հայելով 'ի տարապայմանութիւն արշաւանացս զորս պատմէ Մատթէոս, թուի ընկնել նոյն՝ զորս գրեաց 'ի վերոյ Լաստիվերտցին: Գոլով երկոքեան զօրավարք Տուղրիլայ՝ թուի թէ յերկու կողմանս արշաւեալ իցէ նոցա. յորմէ և Լաստիվերտցի զգաւառաց միջին Հայոց զարշաւանս պատմելոց, իսկ Մատթէոս զփոքուն Հայոց. մինն եղև յայս կողմ թուականին և միւսն յայլ. վասն որոյ նաև թուականքն նշանակեալք 'ի նոցանէ՝ տարբերին:

մուլթի խուռով մտաւ յաշխարհն Վրաց, և մեծաւ սրտմտութեամբ մատնեաց զնոսա 'ի սուր և 'ի գերութիւն. և իջեալ բանակեցաւ 'ի գաւառն որ կոչի Ջաւախս[1], և պատերազմաւ մեծաւ պատեաց զքաղաքն որ կոչի Ախալ. և ուժգին զօրութեամբ առաւ Ախալ քաղաքն. և առհասարակ զամենայն քաղաքս սրով կոտորեաց, զայր և զկին՝ անողորմ. և զամենայն քահանայսն և զկրօնաւորսն և զիշխանսն սրախողխող արարեալ. և լցաւ ամենայն քաղաքն արեամբ. և անհամար մանկունս և աղջկունս տարան 'ի Պարսիկս 'ի գերութիւն. և զանձս ոսկւոյ և արծաթոյ, ականց և մարգարտաց որ ոչ գոյ թիւ,,։ Այս պատմէ զխաղալ նորա 'ի վերայ Անի քաղաքին, զորմէ գրեալ եմք 'ի մեծ Հայս[2]։

Դիւցազնութիւնք յառաջոյ Տուղրիլեանց Պարսից ։

Յաւուրս տէրութեան սորա՝ միայն վասն Մէլիք շահին գտանեմք 'ի գիրս դիւրութիւն արարեալ աշխարհիս, որ թագաւորեաց յետ մետասաներորդ դարուն զկնի Ալփասլանայ։ Զսա Վարդան կոչէ "Այր ողորմած և բարեմիտ, առաւել ազգիս մեր,,։ Բայց ոչ միայն ազգիս այլև առհասարակ ամենեցուն. որովհետև տէրութիւն նորա ձգեցաւ ընդարձակ յոյժ. զի ասէ Վարդան. "Այլ սուլտան Մէլիք շահն խաղաղասէր և քրիստոնէասէր բարուք տիրեաց 'ի Կասբից ծովէն մինչև ցծովն Պոնտոսի երկոտասան թագաւորութեանց. և բարձեալ աւազ յՈվկիանոս՝ տարաւ 'ի Պարսս և էարկ 'ի վերայ գերեզմանի հօր իւրոյ և ասաց. ահա հայր, աւետիք քեզ. զի որդի քո զոր թողեր տղայ, տիրեաց մինչև 'ի ծագս երկրի,,[3]։

1 Որ Վրաց է գաւառս, այլ աշխարհիս Հայոց 'ի նահանգին Գուգարաց։

2 Վարդան յաւելու և այլ ինչ աւանդել. "Իսկ զկնի բառնալոյ թագաւորութեանն Հայոց 'ի յԱնւոյ՝ եւ 'ի Հայս հօրեղբօրորդի Տուղրիլին Ալփասլան, և աւերեաց զանի և չորս գաւառս, զի էր զօրագլուխ սուլտանին, որ և զկնի մահուան նորա սուլտանացաւ. և եկն զարձեալ հարկեր հազարաւ, և առ զնոր քաղաքս, զոր Վիրք Ախալ քաղաք ասեն. և զԱմաշուակ. և առնու կէս զդուստր Կիւրիկէի թագաւորին (Աղուանից), և զդուստր քեռ թագաւորին Վրաց Բագարատայ։ Առնու և զԱնի. և հազար այր զենու 'ի փոս մի և ընդանեաց յորդեանն. զոհ մեռելոց իւրոց արարեալ զայն՝ ասեմք ասեն... գործեցաւ այս զկնի մահուանն Յովհաննիսի թագաւորին քսան և երեք ամաւ 'ի չժԳ թուին,,. որ է ամ տեառն 1064։

3 Ըստ այսմ գրէ և Մատթէոս ձծէ. ընդմանէ առեալ 'ի թուին չլե. 1086. "Յայսմ ամի տիրեաց սուլտանն աշխարհին Հայոց և Հոռոմոց... և ոչ մնաց աշխարհ որ ոչ հնազանդեցաւ նորա թագաւորութեանն. և եղեն հարկատուք, և հնազանդեցան նմա երկոտասան ազգ թագաւորաց,,։ Բայց սորա տիրելն բազում գաւառաց՝

Սա դիւրացոյց զհարկս աշխարհիս. զորմէ գրէ Մատթէոս 'ի ՃԿԸ. թւ. 'ի ՇԼԹ. 1090, “Նորէն զհաստացեալսն Քրիստոսի 'ի տեղիս տեղիս, և հարկս պահանջէին յեկեղեցեացն Աստուծոյ և յամենայն ժառանգաւորաց նորա. և զվանորայսն և զեպիսկոպոսունսն հարկիւ չարչարէին. և յայնժամ կաթողիկոսն տէր Բարսեղ... առեալ ընդ իւր նուէրս սուլտանին իբրև բիւրս ոսկոյ և արծաթոյ և դիպակաց, և համաշերձ ազատօք և եպիսկոպոսօք և քահանայիւք առեալ վարդապետս զհետ իւր և գնաց 'ի Պարսիկս առ աստուածասէր սուլտանն։ Եւ տեսեալ սուլտանին (տիեզերակալ Մելիք շահի, զոր յոյժ գովէ,) զտէր Բարսեղ, յոյժ մեծարեաց զնա, և կատարեաց զամենայն խնդրուածս նորա. և արարեալ զամենայն կամս տէր Բարսեղի, և ազատեաց զամենայն եկեղեցիս և զվանորայս և զքահանայս. և առեալ գիր ազատութե, և հրովարտակօք և մեծարանօք արձակեաց զհայրապետն Հայոց. և ահա եկեալ գայր արքունական հրամանօք տէր Բարսեղ մեծաւ ուրախութբ, և այլք փառաւորք 'ի սուրբ տանէն զհետ իւր”։

Յետ մեռանելոյ Մելիք շահին 'ի ՇԽԱ. 1092. ըստ գրելոյ Մատթէոսի 'ի ՃԿԷ. զաւագ որդի նորա զՊարկիարուխն եդին սուլտան ամենայն Պարսից. և զԱմիր Խոմայէլն զքեռին իւր կացուցին ասէ երեսփոխան “'ի վերայ ամենայն աշխարհին Պարսից. զի էր այր բարի և յոյժ ողորմած և շինօղ աշխարհի. այս Խոմայէլս տիրեալ էր իբրև զթագաւոր 'ի վերայ ամենայն աշխարհին Հայոց. և սա արար սկիզբն շինման ամենայն աշխարհին Հայոց. և զամենայն վանորայսն ազատ պահէր 'ի չարեացն Պարսից”։ Զոր գովէ և 'ի թիւն ՃՀԲ. ասելով. “Էր սա յամենայն կողմանց քաղցր և ողորմած և շինօղ ամենայն աշխարհին Հայոց. զարդարիչ վանորէից և մխիթարիչ կրօնաւորաց. և ազատ պահէր զհաւատացեալսն յամենայն չարեացն Պարսից. և ամենայն որք տիրեալ էր հայրենեաց իւրոց յաւուրս նորա. և 'ի ժամանակս սորա կայր ուրախութի լցեալք ամենայն Հայք”։ Բայց յետ սակաւուց սպանին իւրքն զնա։

Այլովք մասամբք պատմէ զայս Վարդան ասելով. “Թաղեցաւ Մելիք շահն 'ի Մարանդ առ հօր իւրում Ալփասլանայ... և Դուդուշն եղբայր Մելիք շահին

եղև խաղաղութեամբ առանց պատերազմաց։

սուլտանացաւ 'ի կողմանս Յունաց : Եւ Բեգլարբեկն 'ի վերայ Պարսից և Հայոց, որ և զքեռին իւր զԽամայինն առարեալ Հեջուալ՝ կարի քաղցր և բարեմիտ առ Հայս. վասն որոյ խնամ ածեալ ազգիս շինեցաւ աշխարհս. ազատս Թողեալ զվանորայս և զամենայն եկեղեցականս ,, : Բայց Սարկաւագ վարդապետ առ Սամուէլի 'ի Թուականիս շխա. նմին Մելիք շահի տայ զայս խաղաղութիւն այսպէս գովելով. “ Իբրև առնոյր զփառս իշխանութեան բարեբախտն Մելիք շահ զհետ մահուանն Ալփասլանն կոչեցելոյն՝ մեծապէս կարգօք յօրինէր զԹագաւորութիւն. ըստ անուան արդարև եղեալ արքայ արքայից ... իմաստաբար քաղաքավարութեան կարգօք պատրաստէր զամենայն ... ոչ այնքան տանէր հոգ՝ որքան արդարութեան առ ամենեսին վարիլ, զի մի ոք լիցի տրտում 'ի զրկելոց, և հպարտ 'ի գոռոզաց. էր և ազատաբարոյ և մեծախորհուրդ. այլ և տեսիլ մարմնոյն արժանի Թագաւորութեան. ընդ որում հեզութիւն 'ի քաղցրութեան բարուցն լծակցեալ առնէր սիրելի ամենեցուն, զոր միայն կոչեցից Թագաւոր և փարթամ ,,[1] :

Է. Արշաւանք Մուսուլ Թագաւորաց, զորս և կոչեն մերքն Ազգ Նեփողաց :

## ԴԱՐ ԺԳ

Մինչդեռ յայս վիճակի Թշուառութեան կայր Հայաստան ըստ պատմելոցս մինչև ցարդ՝ նախ յարաբացւոց, ապա 'ի տուղրիլեանց, և ահա յայսմ երեքտասաներորդ դարու

[1] Արժան է անզեալ լինել և բանից նորին Սամուէլի զոր ինչ գրէ 'ի շխբ. 1093. վասն նորին Մելիք շահի. “ Իսկ զի յաւուրս Թագաւորութեան սորա առաւել խաղաղացաւ աշխարհ ամենայն, մանաւանդ երկիրս Հայոց. որ 'ի նախնի բռնակալացն ստասպուռ զկործանման բաժակն արբեալ էր յանցեալ ժամանակս, ախորժելի եղև բանիւք գրուանիւք (Սարկաւագ) վարդապետին որոյ գրեալ ... (որ) զմահուանէն այսպէս է գրեալ. Թէ 'ի շխա. Թուականին ազատաւ մեծ հարստապետն արքային Պարսից Մելիք շահին՝ որում անուն էր Հասան. Իսկ ըստ պատմոյ տառէնանցն (կոչէր) Վեզրուհ Խոջայ. և զինի աւուրց քսան և ութից մեռանի և ինքն Մելիք շահն ... որ էր հեզ առ ամենեսեան, և քաղցր բարուք յաւէտ առ ազգս քրիստոնէից ... որոյ երկեք և աշխատութիւնք Թագաւորականք ուրոյն, և շահն և օգուտն հասարակաց ամենեցուն, մեծամեծք և ընտրելիք. մանաւանդ զխաղաղականն առնէր զգիտուն և զանկարօտս և զանհոգաւորսն. զի սիրէր զազգս մեր, այնքան՝ մինչ զի ազգօթս հայցէր և զօրհնութիւնս ,, :

կիրճս դուդարացուց առ դաշտավայրօքն 'ի կողմանց Աղուանից իբրև թէ քանի հազար, և կոտորէին զամենայն կենդանիս զորս գտանէին, և փութով դառնային ,, ։

Ի նոյն ամի. թուականին դնէ և Կիրակոս, բայց այլովք մասամբք պատմէ ասելով, թէ մինչդեռ յուրախութեան կային զօրք Իւանէի հազարապետին Վրաց սակս յաղթութեանն զոր արարին ընդդէմ Տաճկաց կամ արաբացւոց, յինքեանս կորզելով զբազում գաւառս Հայոց, ահա յեղակարծում ժամու եհաս աղէտք 'ի սկիւթացւոց որք են թաթարք։ Զի ելեալ նոցա ընդ դուռն Դարբանդայ՝ և անցեալ յաշխարհն Աղուանից՝ եկին յաշխարհս Հայոց և Վրաց. և զոր ինչ գտին 'ի Ճանապարհի՝ զամենեսին սրոյ ճարակ եդուն զմարդ և զանասուն, մինչև պշուծս անդամ. ոչինչ փոյթ ունէին մեծագին հանդերձից և ընչից՝ բայց միայն ձիոյ։ Արշաւեցին մինչև 'ի քաղաքն Տփխիս. դարձեալ եկին յաշխարհն Աղուանից 'ի Շամքոր քաղաք. և զի սուտ համբաւ հանեալ էր նոցա, թէ քրիստոնեայ են և եկեալ 'ի վրէժխնդրութիւն քրիստոնէից առ 'ի զերծուցանել 'ի բռնութենէ Տաճկաց. ունէին եկեղեցի վրանեայ, և խաչ սքանչելագործ, վասն որոյ և բնակիչք աշխարհին ոչինչ զգուշացան. "Եւ այսպէս, ասէ, անհոգս տեսեալ՝ զգաւառսն կոտորեցին, և աւերեցին զչոլով տեղիս, և ինքեանք ամրացուցին զաղխս իւրեանց որ կայ 'ի մէջ երկուց քաղաքաց Պարտաւայ և Բեղուկանայ, յամբարդոյն տեղիս զոր Բեղամէջն կոչեն. և ինքեանք յանդուգն յարձակմամբ աւերէին զբազում գաւառս ,,։ Զօրաց զգլխաւորի զանունն կոչէ Սաբա Սաբահատուր. միայն յայսմ պատմութեան պարտ է որոշումն առնել, զի աշխարհ Վրաց կոչէ նաև զԳուգարս. և Աղուանք կոչէ նաև զՈւտի և զԱրցախ նահանգս մեծին Հայոց։ Այպա պատմելով զմեռանել Ճինկիզ խանին՝ զոր դնեն 'ի 1226. այլք դնեն 'ի 1229. և զնստիլ 'ի տեղի նորա կրտսեր որդւոյն, ասէ անդէն. "Զօր գումարեաց անթիւ բազմութիւն իբրև զաւազ ծովու անհամար 'ի բազմութենէ զիւր սեպհական ազգն՝ զոր Մուղալ թաթար անուանէին... և բաժանեաց զնոսա յերիս առաջս... զերրորդն ընդ արևելս հիւսիսոյ, 'ի վերայ կարգեալ զայր մի որում անուն էր Չարմաղան[1], այր խորագէտ և իմաստուն և յաջողած 'ի գործ

1 Պատմութիւն թաթարաց զանունն կից խանն յետ առեալ նմա զԱյլթասորա լինել ասէ Չօրման. այլս Ճին. նոյ խաթունն 'ի կնութեան՝ կոչեաց

պատերազմի . պատուէր տուեալ նոցա աւերել քանդել զամենայն աշխարհ և զԹագաւորութիւն ,, :

Սոքա խաղացին 'ի վերայ Ջալալատին սուլդանին Խորասանայ , և զաւառացն որ շուրջ զնովաւ . ապա հասին յաշխարհն Աղուանից 'ի դաշտն Մուղանայ . առին քանդեցին զքաղաքն Գանձակ 'ի ռՁԴ . 1235 : Իսկ զինի ասէ . " Ամաց ինչ անցելոյ աւերմանն քաղաքին Գանձակայ՝ այս զօրք մելեկան և խորասանեկ իւրև վիճակաւ բաժանեալ զաշխարհս Հայոց , Վրաց և Աղուանից՝ իւրաքանչիւր գլխաւորի ըստ մեծութեան զքաղաքս և զգաւառս , զաշխարհս և զբերդս առնուլ քանդել և աւերել . և չոգան յիւրաքանչիւր մասն բաժնի կանամբք և որդւովք և ամենայն աղխիւք բանակի իւրեանց , ուղտիւք և անասնովք իւրեանց ... և նոքա սփռեալք առհասարակ ընդ երեսս դաշտաց լերանց և ձորոց իբրև զմարախ բազմութեամբ ... մինչ էր տեսանել զաւրս յանխնայ կոտորելոցն զարս և զկանայս , զերիտասարդս և զմանկունս , զեպիսկոպոսս և զքահանայս և զսարկաւագունս . մանկունք անողորմեալք զքարի հարեալք , և կուսանք գեղեցիկք խայտառակեալք և գերեալք : Ահագին էր տեսիլ կերպարանաց նոցա [1] ... 'ի սպանութիւն ուրախութեամբ ընթանային իբր 'ի հարսանիս կամ 'ի զբօսանս . լցաւ երկիրն ամենայն դիակամբք մեռելոց , և ոչ ոք էր որ թաղէր զնոսա ... երկիր թափուր մնաց 'ի բնակչաց իւրոց , և շրջէին 'ի նմա օտարաց որդիք ... շրջէին այսր և անդր անդադար արագութեամբ իբրև զայծեմնունս , և կեղեքէին պատառէին իբրև զգայլս . երիվարք նոցա ոչ վաստակէին յընթացս (որպէս է տեսանել և զարդիս յերիվարս Ղազախ Թաթարաց ), և ոչ ինքեանք ձանձրանային 'ի ժողովել զաւարս ... իբրև առին զստացուածս և զգերիս բազմութիւն որ

զնա Չօրմաղան : Բայց վասն ժամանակի արշաւանաց Չարմաղանեան՝ ոչ համաձայնին ընդարձակօքն Սամուէլի որ դնէ յաւուրս կենդանութեան Ճէնկիզ խանի . " Ի ռՁԴ . թուին (ասէ , յամին 1235) Թաթարն եկն հրամանաւ Չանկիզ խանին , որ (որոյ) էր զօրավար Չարմաղանն նուէին , և աւերեաց զքաղաքս գաւառս , զՀայոց , զՎրաց և զԱղուանից . և գերի վարեաց զամենայն ,, : Այլ որպէս գրեցաք 'ի վերոյ բազում ամօք յառաջ քան զամն 1235 մեռեալ էր Ճէնկիզ խանն :

1 Պատմութիւն Թաթարաց այսպէս ստորագրէ զնոսա . տեսիլ կերպարանաց նոցա ահագին էր ասէ և անպատմելի , գլուխք նոցա մեծ իբրև զգոմշոյ , աչք նոցա մանունք իբրև զձագուց . ունչ կարճ իբրև զկատուի , նորբամէջք իբրև զմրջիմն , կարճատունք իբրև զխոզի . կզակ սրածայր երկայնեալ իբրև զգառուկ շան , լերկ անմօրուս ամենեքին . զօրաւորք կերակրէին , այլ հաց ամենեքին ոչ ուտէին : Զերկարութիւն կենաց նոցա ձգէ մինչև ցերկերիւր ամս :

յարձակ վայրս՝ սկսան այնուհետեւ մարտնչել ընդ ամրոցս ամենայն, և ընդ քաղաքս բազումս և ազգի ազգիս. զի յոյժ խորամանկ և հնարաւորք էին,,: Այս զօրք էին որք զվերջին աւերումն բերին Անի քաղաքին և Կարուց բերդին՝ զորմէ պատմէ անդէն:

Յայնմ ժամանակի երկու զօրավարք էին Թաթարաց երևելիք, ասէ Կիրակոս, մին 'ի կողմանս հիւսիսոյ որում անուն էր Բաթու, մօտաւոր ազգական Ղանի՝ որ ամենեցուն իշխէր, այլ և Ղանն առանց հրամանի նորա ոչ նստէր յաթոռն. իսկ միւսն կոչէր Բաչու. "Որք ընդ Բաչուին էին, ասէ, 'ի կողմանս արևելից, որք ըմբռնեալ էին զամենայն աշխարհս Հայոց և Վրաց,,, յարձակեցան 'ի Թըւին ոդբ. 1243.[1] տիրել աշխարհին Հոռոմոց. այսինքն է՝ որոց իշխէր սուլտանն Հոռոմոց, որ նստէր յԻկոնիոն. և առին "զամենայն գաւառս իշխանութեան նորա մինչև 'ի ծովն Ովկիանոս (միջերկրական ծովու) և Պոնտոսի, կոտորելով զնոսա և յափշտակելով զնոսա. կոտորեցին և զԿարնոյ քաղաք և զԵզնկայն և զՍեւաստ և զԿեսարիա,,: Վասն որոյ 'ի քանդելն զերկիր սուլտանին Հոռոմոց՝ քանդեցին և զարևմտեան կողմն մեծին Հայոց և զփոքր Հայս: Այս յարձակումն Թաթարաց այսպէս պատմի 'ի պատմութեան Թաթարաց. նախ յարձակեցան 'ի Կարին. յետ պաշարելոյ զամիսս երկուս առին, և անխնայ կոտորեցին զբնակիչս. զվանորայս և զեկեղեցիս աւերելով անմարդաբնակ արարին, յորոց զնոյ առնուին ապա իշխանքն Հայոց և Վրաց "բազում գրեանս՝ Տօնական և Մարտիրոզ, Առաքեալ և Ընթերցուածք, Գործք և ուկեդիր Աւետարանք անմման փարթամութեամբ,,:

Զկնի ամի միոյ 'ի ոձթ. դարձեալ յարձակեցան 'ի վերայ աշխարհին Հոռոմոց. անուն գլխաւորի նոցա Բաչունուին. սուլտանն Հոռոմոց պատերազմէր ընդդէմ Թաթարաց հարիւր հազար զօրօք. և երբեմն վաթսուն հազար զօրօք. այլ Հայոց և Վրաց իշխանքն որ ընդ Թաթարսն էին՝ քաջապէս մարտուցեալ, մանաւանդ Աղբուղայ որ էր որդի մեծին Վահրամայ, Թոռն Բլու Զաքարէ

1 Զայս Թուական Հայոց 'ի խորհուրդ առեալ Վարդանայ գրէ. Թէ կոտորեցին "և զայլ աշխարհս և ըզգաւառս ուր մանաւանդ ազգք Հայոց վշտատեսաց բնակեալ էին, զի համարադիր Թուականին ողէ, էր խելն. և ըստ այն գործեցան արգիւնքն՝ արժանաւոր ողբոց և արտասուաց ոչ միայն բանականաց՝ այլ և անբանից, ըերանց և գաշտաց, որք ուռոգեցան արեամբ և արտասուօք, որ և այն ողբ կրկնեցաւ 'ի ողէ. Թուին,,:

էին . և բազում կոտորածս ածեալ 'ի վերայ, մինչև սուր-տանին և այլ զօրավարք նորա թողեալ զվրանսն ամենայն ունձկզք իւրեանց գիշերայն փախեան . Թաթարք մնեալ 'ի բանակին՝ որ էր 'ի դաշտավայրին որ ընդ մէջ Կարնոյ քա-ղաքին և Եզնկայի, "Զվրան սուլտանին, ասէ, տեսին բա-զում գանձիւք զարդարեալ ներքոյ և արտաքոյ, և զա-զանք վայրենիք կապեալք՝ խոզ և առիւծ և յովազ առ-դուրս վրանի սուլտանին ":

Յետ այնորիկ յարձակեցան Թաթարք 'ի վերայ Ամա-ցեալ աշխարհի սուլտանին Հոռոմոց . առին զԵզնկայն և զԿեսարիայն՝ առհասարակ կոտորելով զբնակիչսն և գերե-լով . զի կեսարացւոց ընդդէմ կացեալ էր նոցա կռուով . առին զԿոնն, և զաշխարհն համօրէն մեծամեծ գեղօք և վանորէիւք, և զՍեբաստիա . զորոյ զինչս յաւարի առեալ և զմարդիկ 'ի համար արկեալ եղին հարկս 'ի վերայ նո-ցա ըստ սովորութեան իւրեանց՝ մալ և թաղար :

Հարկապահանջութիւնք Թաթարաց :

Իսկ պատմելոյ Կիրակոսի՝ յետ առնլոյ զօրաց Չարմա-ղանին զԱնի քաղաք և զԿարուց բերդն՝ ժողովուրդք առ-խանն կամ առ մեծ արքայն Թաթարաց առաքեցին զԱ-ւագն, որ էր որդի Իւանէի հազարապետին . առ որ խանն սէր ցուցեալ, պատուով դարձոյց յիւր աշխարհն, որպէս զի նովին և զայլ ամենայն ապստամբսն նուաճեսցէ . "Որ և եղև իսկ, ասէ . զի իբրև եկն նա յաշխարհն իւր, և արարին զօրագլուխք զհրամանս արքային իւրեանց . և ե-կին 'ի հնազանդութիւն ծառայութեան Շահնշահ որդի Զա-քարէի, և Վահրամ իշխան, և որդին իւր Ցաղպուղայն, և Հասան որ Ջալալն կոչէին իշխան կողմանցն Խաչենոյ, և այլք բազումք . և զիւրաքանչիւր երկիր տային նոցա, և առ ժամանակ մի նեղուէին . և ապա սկսան հարկապահան-ջութեամբ և երթևեկութեամբ և զինուորութեամբ նեղել զնոսա . սակայն այսու ամենայնիւ՝ և որ առաւել քան զայս էր նեղէին զնոսա, բայց ոչ զոք սպանանէին : Եւ իբրև անցին ամք ինչ՝ նեղացաւ 'ի նոցանէ իշխանն (Աւագ) . զի կարի ժլատք էին . և ոչ զամենեսին զնոսա հաճել (կարէր զԹա-թարսն), զի ոչ բաւականանային միայն ուտելով կամ ըմ-պելով, այլ և պահանջէին երիվարս և հանդերձս մեծա-գինս . զի կարի յոյժ ձիասէրք էին : Վասն այսորիկ և քա-ղեցին զձի յամենայն երկրէ . և ոչ ոք իշխէր համարձակ

պահել զձիս և զջորիս, բայց 'ի ծածուկ ուրեք վասն հարկին զինուորութեն. զի ուր և գտանէին՝ յափշտակէին, և աւելի ևս՝ յորում գտանէին զնշանն իւրեանց. և զոր առնուին իւրաքանչիւր՝ զօրագլխոյն՝ իւրով նշանով կնքէր խարելով 'ի մի անդամն... մանաւանդ աւելի առնէին զայս՝ յորժամ մեռաւ զօրավար զօրուն (Թաթարաց) որում անուն էր Չաղատա»:

Իսկ ա. Հեթում թագաւոր վասն աշխարհին Կիլիկիոյ հոգացեալ, առաքեաց զեղբայր իւր զՍմպատ՝ որ էր սպարապետ Հայոց առ Սային ղանն՝ որ էր յաջորդ Ճինկիզ ղանին. և էառ 'ի նմանէ ազատութիւն քրիստոնէից երկրին իւրոյ, և վանորէից, զորմէ տեսցես 'ի Կիլիկիա: Այլ հարկապահանջութիւն Թաթարաց վասն Հայոց մեծաց որ ըստ օրէ առաւելաւ, զորմէ ասէ Կիրակոս. «Իբրև էառ զմեծ թագաւորութիւն Թաթար զօրուն որ յաշխարհն իւրեանց Զանեգիւղ, իսկոյն առաքեաց զարս հարկապահանջս 'ի զօրս իւր որ 'ի կողմանս և յաշխարհս՝ զոր հնազանդեցան նոքա, (տալ) տասանորդս ամենայն ստացուածոց զօրուն, և հարկս 'ի գաւառացն և թագաւորութեանց որք նուաճեալ էին նոցա, 'ի Պարսից, 'ի տաճկաց Թուրքաց, 'ի Հայոց, 'ի Վրաց, և յԱղուանից: Եւ հարկահանք արք խիստք և յափշտակողք, անուն միոյն Արղուն՝ որ ամենեցուն իշխէր. և երկրորդին Բուղա որ չարագոյն ևս էր... եկեալ 'ի զօրուն Թաթար՝ մտանէր 'ի տունս աւագանոյն, և զոր ինչ ախորժ թուէր՝ առնոյր անխնայ. և ոչ ոք իշխէր ասել ինչ նմա, զի ժողովեալ էր առ իւր արս որկայս 'ի Պարսից և 'ի Տաճկաց»: Սա կալաւ զբարեպաշտ իշխանն Ջալալ Հասան. քակեաց զանմարտնչելի բերդս նորա. բազում ոսկի արծաթ առեալ 'ի նմանէ, հազիւ եթող զնա:

Նոյն առաւել ծանրացաւ հարկապահանջութիւն Թաթարաց՝ յորժամ 'ի չգ. թուին 1254. Մանգու խանն նոցա հրամանն եհան աշխարհագիր առնել ընդ ամենայն ազգս որք ընդ ձեռամբ Թաթարին էին, և առնուլ հարկս ըստ մարդաթուի: Այս հարկապահանջք հասին և յաշխարհս Հայոց և Վրաց և Աղուանից. զի ասէ Կիրակոս. «Սկսեալք 'ի տասնամենից և 'ի վեր գրելով համարս արկանել զամենեսին, բաց 'ի կանանց, ամենեցունց պահանջել խստագոյն հարկս աւելի քան զկար մարդոյն. և սկսան չքաւորիլ և նեղիլ անհնարին կտտանօք և չարչարանօք և գելոցիւք. և որ թաքչէր՝ ըմբռնեալ սպանանէին. և որ

յոմանց բաղայ, և յայլոց ընտրեալ շուն և ձի ։ Այսպս գրէ ամողէն . « Եւ այս եղև 'ի Թուականութեանն Հայոց Չ. (1251) . և զկնի ցասմանս այսորիկ եկն գլխաւոր մի Թաթար Արղուն անուն՝ հրամանաւ Մանկու ղանին . և համարեաց զերկիրն արևելից վասն հարկի . և առնուին այնուհետև զհարկն 'ի գլխաթուայ մարդկան . քանզի որ գրեալ լինէր 'ի դաւթարն . և այսպէս այլ աւերեցին զաշխարհն արևելից . զի 'ի մի փոքր գեղն՝ յիսուն մարդ համարէին կամ երեսուն . 'ի հնգետասան տարեկանէն 'ի վերին զամենին համարէին մինչ 'ի վաթսուն տարեկանն, և յամենն գլխոյ որ համարէին՝ վաթսուն սպիտակ առնուին ... Եւ թէ ոք փախչէր կամ թաքչէր, յորժամ ըմբռնէին՝ կապէին անողորմ ձեռս 'ի յետս, և դալար գաւազանօք ծեծէին՝ մինչ զի մարմինն ամենայն տորոտէր, և յարենէն շաղախէր . և այսպս անողորմաբար զկատաղի շներն իւրեանց՝ զոր սովորեցուցեալ էին ուտել միս մարդոյ՝ 'ի ներքս թողուին, և ուտել տային զտառապեալս և զչունեւոր քրիստոնեայսն » ։ Զայսոսիկ լուեալ Հեթում թագաւոր՝ գնաց առ Ղանն 'ի միջնորդել ։

Դիւրութիւնք 'ի ժամանակս Թաթարաց ։

Առաջին դիւրութիւն եղև 'ի խնդրոյ Սմբատ իշխանին Հայոց, որ էր որդի Իւանէի . որոյ յոյժ նեղեալ և հալածական լեալ 'ի Թաթարաց՝ դեսպանս արձակեաց առ մեծ խանն աղաչելով . յորմէ եկն հրաման առ մեծամեծսն Թաթարաց մի՛ ինչ չար առնել, այլ միայն զհարկսն ժողովել և դիւրել նոցա ։

Երկրորդ եղև 'ի ձեռն Սիմէոնի Ռաբանայ, որ էր վարդապետ ասորի ազգաւ . որոյ գոլով հաճոյ և ընդունելի առաջի մեծի խանին Թաթարաց, հրովարտակաւ նորին եկն յաշխարհս քրիստոնէից, պատուէր առեալ մի՛ ումեք նեղել 'ի հպատակելոցն, այլ թողուլ յազատութեան նաև 'ի հաւատոյս առ 'ի յայտնի պաշտել զքրիստոնէութիւն . որով խաղաղութիւն մեծ եղև քրիստոնէից, որք համարձակ կատարէին զպաշտամունս եկեղեցւոյ նաև յայն քաղաքս՝ յորս բազմութիւն կային Թաթարաց . զոր օրինակ 'ի Նախիջևան և 'ի Գանձակ ։

Երրորդ՝ յաւուրս Մանգոյ կամ Մանկու խանին՝ որ թագաւորեաց 'ի Չ. թուին 1251 . առաւելաւ դիւրութիւն քրիստոնէից 'ի պատճառս Սարթախին՝ որ էր որ-

դի մեծի զօրավարին Թաթարաց Բաթու անուանելոյ. և 'ի մանկութենէ գոլով ընկալեալ զքրիստոնէութիւն, բազում դիւրութիւն արար եկեղեցեաց և քրիստոնէից. զի յորժամ Բաթու գնաց յաշխարհն իւր 'ի նստուցանել նոր խան կամ թագաւոր՝ զորդին իւր զՍարթախ կացոյց զօրագլուխ զօրաց փոխանակ իւր. որ եհան գիր ազատութեան նաև վասն քահանայից և եկեղեցեաց ընդ ամենայն կողմանս՝ չառնուլ հարկ 'ի նոցանէ. վասն այնորիկ, ասէ Կիրակոս; «Համարձակութիւն առեալ շրջանն առ նա վարդապետք, եպիսկոպոսք և երիցունք. և նա սիրով ընդունէր զամենեսեան և կատարէր զխնդրուածս նոցա... ընդ որս շրջաառ նա և մեծ իշխանն Խաչենոյ, և 'ի կողմանցն Արցախոյ Հասան՝ զոր Ջալալն կոչէին դդուանօք, այր աստուածապաշտ և երկիւղած և պարկեշտ՝ Հայ ազգաւ. և նա սիրով ընկալեալ զնա»: Ըստ այսմ եւս գիր ազատութեան և առ կաթողիկոսն Աղուանից տէր Ներսէս:

Նոյն Մանկու ղան՝ ըստ գրելոյ 'ի պատմութեան Թաթարաց՝ զեղբայր իւր զՀուլաւուն կացոյց ղան յաշխարհէն արևելից. յորոյ յաւուրս եղև դիւրութիւն մեծ առ քրիստոնեայս. զի որպէս ասէ, էր «սիրող քրիստոնէից և եկեղեցւոյ և քահանայից. նոյնպէս և օրհնեալ կինն իւր Տավուզ խաթունն. զի յամենայնի բարի էր և ողորմած առ աղքատս և կարօտեալս, և յոյժ սիրող ամենայն քրիստոնէից, Հայոց և Ասորոց, մինչ զի վրանէ եկեղեցի և ժամահար շրջեցուցանէր ընդ ինքեան, և բազում քահանայս Հայ և Ասորի: Իսկ լուեալ զայս բարեպաշտ թագաւորն Հայոց Հեթում՝ (որ է Ա. Հեթում) թէ Հուլաւուն ղան նստաւ, և այնպէս բարեսէր է և քրիստոնէասէր, առա և ինքն Հայոց թագաւորն գնաց յարևելք բազում ընծայիւք, և ետես զՀուլաւուն ղանն: Եւ տեսեալ զՀայոց թագաւորն յոյժ սիրեաց և պատուեաց զնա. և կրկին ազատութիւն գրեաց թագաւորութեան նորա. և առաւել եկեղեցեաց և եկեղեցականաց և ամենայն քրիստոնէից երկրիս. և այսպիսի պատուով և մեծահարկօք առաքեաց զթագաւորն Հայոց յաշխարհն իւր»:

Յետ արշաւանաց և աւերմանց Մուղալ Թաթարաց զհետ եկին արշաւանք և աւերումն Լէնկթէմուրին յետ չորեքտասաներորդ դարուն և 'ի սկիզբն հնգետասաներորդին. բայց յայսոսիկ դարս միջակ հայաստանեայց կորուսեալ էր զամենայն վայելչութիւն իւր և զհնութիւն. աթոռ թագաւորութեան և կաթողիկոսութեան 'ի բազմաց

հետէ բարձեալ և հաստատեալ յայլ աշխարհ, այսինքն է 'ի Կիլիկիա. Նախարարքն և իշխանք առհասարակ ցիրուցան աստ և անդ յօտար աշխարհս՝ զորմէ ճառեցաք յառաջագոյն, և փոխեալ իբր յայլ իմն նոր կերպարան. Նկարագրեալ ըստ մասին 'ի պատմութեան Թովմայի Մեծոփեցւոյ՝ որ ուրեք զիւր աշխարհէն խօսելով ասէ. "Եւ եկեալ տեսաք զաշխարհս մեր աւերակ, Թափուր և դատարկ յամենայն ընչից, և պակասեալ 'ի հոգևոր առաքինութեանց. ոչ ժամ և ոչ պատարագ. և դարձեալ սկիզբն արարին չենութեանց... և միւս ամին եկն Եուսուֆ Թուրքման, և վերստին աւերեաց զաշխարհս մեր": Վասն այնորիկ իբր արտաքոյ վիճակի հին հայաստանեայց, և արտաքոյ մերոյ առաջարկութեան համարեալ 'ի բաց թողումք. այլ զառաւելին քաղաքաց և զտեղեաց առմունս և աւերմունս՝ գտցեն ընթերցօղք 'ի ստորագրութեան մեծին և փոքուն Հայոց:

## ՎԱԽՃԱՆ ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐՈՅ



## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

### ՕԴ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅ

ՅՕԴ. Ա. Բարեխառնութիւն օդոյ և ցրտութիւն աշխարհիս ։ 40
ՅՕԴ. Բ. Ջերմն և յարկաւոր նորանշանն ։ 45
ՅՕԴ. Գ. Հիւսիսայք ։ 46
ՅՕԴ. Դ. Երկրաշարժութիւնք ։ 48
ՅՕԴ. Ե. Հիւանդութիւնք և մահք ։ 51

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

### ԼԵՐԻՆՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅ

ՅՕԴ. Ա. Լերինք գաւառաց
ՄԱՍԻՍ
Ա. Այլևայլ անուանք լերինս ։ 54
Բ. Մեծանուանք Մասիս լերին ։ 60
Գ. Տեղի Մասիս լերին ։ 62
Դ. Դիրք Մասիս լերին և գաւառք շրջակայք ։ 65
Ե. Բարձրութիւն Մասիս լերին ։ 68
Զ. Բերք Մասիս լերին ։ 70
ՏՕՐՈՍ
Ա. Անուն լերինս ։ 72
Բ. Ընթացք գաւառոյն Տօրոսի ։ 73
ԿՈՎԿԱՍ 77
ԿՈՐԴՈՒԱՑ ԼԵՐԻՆՔ
Ա. Անուն լերանցս ։ 79
Բ. Տեղի Կորդուաց լերանցն ։ 80
Գ. Գործք Կորդուաց լերանցն ։ 81
ՊԱՐԽԱՐ կամ ԲԱՐԻԱՏՐ 83
ՄՈՍՔԻՔԱՆ կամ ՄԱՍՔԱԿԱՆ 85
ՀԵՆԻՈՔԵԱՆ կամ ԻՆԻՈՔԵԱՆ 87
ՔՕՐԱՔՍԵԱՆ 88
ԴԻԶԱՓԱՑՑՈՒ ԼԵՐԻՆՔ . .
ԿԵՐԱՒՆԵԱՆ . .
ԱՆՏԻՏՕՐՈՍ 89
ՅՕԴ. Բ. Լերինք անգօրք ։ 89—106
ՅՕԴ. Գ. Լերանց Հրաբխայինք ։ 106

## ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

### ԳԵՏՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅ

ՅՕԴ. Ա. Զօրեղին մեծամեծ գետոց :

ԵՐԱՍԽ

Ա. Անուն գետոյս : 109
Բ. Ակն Երասխայ : 111
Գ. Ընթացք Երասխայ : 113
Դ. Քարաւազ Երասխայ : 115
Ե. Կամուրջք Երասխայ : 116
Զ. Հուն Երասխայ : 118
Է. Խառնուած Երասխայ 'ի Կուր և 'ի ծով : 119

ԿՈՒՐ 121

ԵՓՐԱՏ

Ա. Անուն գետոյս : 123
Բ. Ակն Եփրատայ : . . .
Գ. Առաջին վտակ Եփրատայ, որ 'ի Կարին : 124
Դ. Երկրորդ վտակ Եփրատայ, որ և Արածանի : 125
Ե. Ընթացք Եփրատայ : 128
Զ. Նաւարկութիւն Եփրատայ, և առատութիւն : 132
Է. Կամուրջք և Նեղուցք Եփրատայ : 134

ՏԻԳՐԻՍ

Ա. Անուն գետոյս : 136
Բ. Ակն Տիգրիսի : 137
Գ. Ընթացք Տիգրիսի : 139
Դ. Առատութիւն և Նաւարկութիւն Տիգրիսի : 141

ՃՈՐՈԽ 142

ՅՕԴ. Բ. Գետք մանունք : 148—158
ՅՕԴ. Գ. Ծովակք : 158—165
Լիճք : 165—166
Մօրք : 166—167
Ջերմուկք : 167

## ԳԼՈՒԽ ԵՕԹՆԵՐՈՐԴ

### ԲԵՐՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅ

ՅՕԴ. Ա. Պտուղք, Բանջարք, և այլ Բոյսք : 172

ՅՕԴ. Բ. Հանք, Մետաղք։ 178
ՅՕԴ. Գ. Ականք, կամ Քարինք պատուականք։ 191
ՅՕԴ. Դ. Կենդանիք։ 195
ՅՕԴ. Ե. Գազանք։ 202
ՅՕԴ. Զ. Թռչունք։ 203
ՅՕԴ. Է. Ձկունք։ 205

## ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ

### ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

ՅՕԴ. Ա. Ուղի և ճանապարհք վաճառականութեան։ 210
Ա. Առաջին ուղի ընդ Կասպից ծովն։ 211
Բ. Երկրորդ ուղի ընդ Պոնտոս։ 213
Գ. Երրորդ ուղի ընդ Եփրատ։ 216
ՅՕԴ. Բ. Վաճառատեղիք կամ Շահաստան քաղաքք, որ 'ի Հայս։ 218—231
ՅՕԴ. Գ. Վաճառատեղիք կամ Շահաստանք արտաքոյ Հայաստանեայց։ 231—241
ՅՕԴ. Դ. Դրամք։ 241

## ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ

### ԲՆԱԿԻՉՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

ՅՕԴ. Ա. Առաջին սկզբնաւորութեան բնակութիւն մարդկութեան յաշխարհին Հայոց։ 244
Ա. Ստորագրութիւն սուրբ Գրոց շրջակայ դրախտին։ 245
Բ. Յարմարութիւն դրից հայաստան աշխարհին։ 264
Եդեմ տեղւոյն յայտնեան դրից նորոց ստորագրեալ։ 265
ՅՕԴ. Բ. Երկրորդ բնակութիւն հայաստանեայց յառաջ քան Նոյի։ 271
Ա. Հաւաստիք ինչ պատմութեան Նոյի ջրհեղեղն 'ի հայաստան։ 277
Բ. Գիտելիք ինչ վասն անուան և բնակութեան Նոյի։ 281
Գ. Բնակութիւն Սեմայ որդւոյ Նոյի, և սերընդոց նորա 'ի Հայս։ 284—293

# ԳԼՈՒԽ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

## ԱՆՑՔ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

ՅՕԴ. Ա. Սկզբնաւորութիւն տիրապետելոյ աշխարհիս 'ի ձեռն մերոց Նահապետաց : 373
ՅՕԴ. Բ. Ընդարձակութիւն աշխարհիս և տէրութեան 'ի ձեռն մերոց աշխարհակալաց : 375
Ա. Ընդարձակօղք և աշխարհակալք : 375—385
Բ. Պահպանօղք կամ անդրէն շինօղք ա-ծօղք վնասելի ընդարձակեալ սահմանս : 385—391
ՅՕԴ. Գ. Նուաղումն աշխարհիս Հայոց : 391
Առաջին պարագայ Նուաղման՝
Բաժանումն հայաստանեայց յերկուս ա-պար թագաւորութիւնս : 402
Երկրորդ պարագայ Նուաղման՝
Արշաւանք զանազան թշնամեաց 'ի Հայաստան : 407
Ա. Արշաւանք և հարկապահանջութիւնք Հռոմայ-եցւոց : 409
Բ. Արշաւանք Հիւսիսայնոց : 411
Գ. Արշաւանք Պարսից : 415
Հարկապահանջութիւնք Պարսից : 418
Գերեվարք վասն ժամանակի արշաւանաց Պարսից : 420
Դ. Արշաւանք Արաբացւոց : 422
Հարկապահանջութիւնք Արաբացւոց : 439
Ապստամբութիւն մերոց յԱրաբացւոց : 444
Դժուարութիւնք յաւուրս Արաբացւոց : 447
Ե. Արշաւանք Յունաց : 449
Զ. Արշաւանք Սելջուկեանց կամ տաճկա-ցեալ Պարսից : 453
Դժուարութիւնք յաւուրս տաճկացեալ Պարսից : 457
Է. Արշաւանք Մողոլ Թաթարաց 459
Հարկապահանջութիւնք Թաթարաց : 464
Դժուարութիւնք 'ի ժամանակս Թաթարաց : 467

| ԷՋ | ՏՈՂ | ՎՐԻՊԱԿՔ | ՈՒՂՂԵԱԼՔ |
| --- | --- | --- | --- |
| 9 | 25 | ուրեաց | ուրեանց |
| 25 | 9 | համարին | համարիմ |
| 79 | 21 | տարաձայութն | տարաձայնութն |
| 92 | 15 | քաջագատուոյ | քաջագօտուոյ |
| 162 | 28 | հաագին | ահագին |
| 175 | 2 | զքաջարեութն | զքաջարերութն |
| ... | 15 | յուռթէ | յուռթի |
| 270 | 14 | անայլայելի | անայլայլելի |
| 299 | 6 | նորա | նոցա |
| 300 | 11 | նմանաձայութն | նմանաձայնութն |
| 332 | 34 | յայլուս | յայլուստ |
| 358 | 30 | յայլայեղու | յայլայլեղու |
| 397 | 5 | հայրենիս | զհայրենիս |

